Nor Ktakaran Tearn Mer, oy...

# ՆՈՐ

# ԿՏԱԿԱՐԱՆ

## ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ

# ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ



## ՅՈՒՆԱԿԱՆ ԲՆԱԳՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԱԾ


معارف عمومیه نظارت جلیله‌سنك ۷ ربیع الاول ۳۰۰ و ٤ كانون اول
۹۸ تاریخلی و ۸۷۲ نومرولی رخصتنامه‌سیله نشر اولنمشدر

مصارف آمریقان بیبل شركتی طرفندن تسویه اولنه‌رق طبع اولنمشدر

Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

Ի ՏՊԱՐԱՆԻ Ա. ՅԱԿՈԲ ՊՕՅԱՃԵԱՆ

1892

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՏԹԷՈՍԻ

## ԳԼՈՒԽ Ա

1 Գիրք ծննդեան Յիսուսի Քրիս-
տոսի Դաւիթի որդւոյն, Աբ-
րահամի որդւոյն ։
2 Աբրահամ ծնաւ Իսահակը ․ Ի-
սահակ ծնաւ Յակոբը ․ Յակոբ
ծնաւ Յուդան ու անոր եղբայրնե-
3 րը ․ Յուդա ծնաւ Փարէսը ու
Զարան Թամարէն ․ Փարէս ծը-
նաւ Եսրոնը ․ Եսրոն ծնաւ Արա-
4 մը ․ Արամ ծնաւ Ամինադաբը ․
Ամինադաբ ծնաւ Նաասոնը ․ Նա-
5 ասոն ծնաւ Սաղմոնը ․ Սաղմոն ծը-
նաւ Բոոսը Ռախաբէն ․ Բոոս
ծնաւ Ովբէդը Հռութէն ․ Ովբէդ
ծնաւ Յեսսէն ․ Յեսսէ ծնաւ Դա-
6 ւիթ թագաւորը ․ Դաւիթ թա-
գաւորը ծնաւ Սողոմոնը Ուրիայի
7 կնիկէն ․ Սողոմոն ծնաւ Ռոբովա-
մը ․ Ռոբովամ ծնաւ Աբիան ․ Ա-
8 բիա ծնաւ Ասան ․ Ասա ծնաւ
Յովսափատը ․ Յովսափատ ծնաւ
Յովրամը ․ Յովրամ ծնաւ Ոզիան ․
9 Ոզիա ծնաւ Յովաթամը ․ Յովա-
թամ ծնաւ Աքազը ․ Աքազ ծնաւ
10 Եզեկիան ․ Եզեկիա ծնաւ Մանա-
սէն ․ Մանասէ ծնաւ Ամոնը ․ Ամոն
11 ծնաւ Յովսիան ․ Յովսիա ծնաւ
Յեքոնիան ու անոր եղբայրները
Բաբիլոնեան գերութեանը ատեն-
12 ները ․ Բաբիլոն գերութեան եր-
թալէն ետև Յեքոնիա ծնաւ Սա-
ղաթիէլը ․ Սաղաթիէլ ծնաւ Զօ-
13 րաբաբէլը ․ Զօրաբաբէլ ծնաւ
Աբիուդը ․ Աբիուդ ծնաւ Եղիա-
կիմը ․ Եղիակիմ ծնաւ Ազովրը ․
14 Ազովր ծնաւ Սադովկը ․ Սադովկ
ծնաւ Աքիմը ․ Աքիմ ծնաւ Եղիու-
15 դը ․ Եղիուդ ծնաւ Եղիազարը ․
Եղիազար ծնաւ Մատթանը ․
16 Մատթան ծնաւ Յակոբը ․ Յա-
կոբ ծնաւ զՅովսէփ այրն Մարիա-
մայ, որմէ ծնաւ Յիսուս, որ
17 կ'ըսուի Քրիստոս ։ Արդ բոլոր
ազգերը Աբրահամէն մինչև Դա-
ւիթ տասնուչորս ազգ, և Դաւի-
թէն մինչև Բաբիլոնեան գերու-
թիւնը տասնուչորս ազգ, ու Բա-
բիլոնեան գերութենէն մինչև Քը-
րիստոս տասնուչորս ազգ ։
Եւ Յիսուսի Քրիստոսի ծնուն- 18
դը աս կերպով էր ․ անոր մայրը
Մարիամ Յովսեփին նշանուած,
դեռ իրարու քով չեկած՝ Սուրբ
Հոգիէն յղացած գտնուեցաւ ։ Եւ 19
Յովսէփ անոր էրիկը արդար մարդ
ըլլալով՝ ու չուզելով որ զանիկայ
խայտառակ ընէ, մտածեց որ ծած-
կաբար արձակէ զանիկայ ։ Եւ 20
քանի որ անիկայ աս բանը կը մը-
տածէր, ահա Տէրոջը հրեշտակը
երազի մէջ երևցաւ անոր ու ըսաւ ․
Յովսէփ Դաւիթի որդին, մի
վախնար քեզի առնել քու Մա-
րիամ կնիկդ, ինչու որ անոր ներսի
դին ծնածը Սուրբ Հոգիէն է ։ Եւ 21
որդի մը պիտի ծնանի, ու անոր
անունը Յիսուս դնես, քանզի ա-
նիկայ իր ժողովուրդը իրենց մեղ-
քերէն պիտի փրկէ ։ Եւ աս ամէ- 22
նը եղաւ որ կատարուի Տէրոջմէն
ըսուածը՝ մարգարէին ձեռքովը, որ
կ'ըսէ ․ Ահա կոյսը պիտի յղանայ 23
ու որդի պիտի ծնանի, և անոր
անունը Էմմանուէլ պիտի կոչեն,
որ կը թարգմանուի Աստուած մեզի
հետ ։ Եւ Յովսէփ քունէն ար- 24
թըննալով՝ ինչպէս որ Տէրոջը հը-
րեշտակը իրեն հրամայեց, այնպէս
ըրաւ ու իր կնիկը քովը առաւ ․
Եւ չէր գիտեր զանիկայ, մինչև իր 25
անդրանիկ որդին ծնաւ, ու անոր
անունը Յիսուս դրաւ ։

## ԳԼ․ Բ

Ու երբոր Յիսուս ծնաւ Հրէաս- 1
տանի Բեթլեհէմին մէջ Հե-
րովդէս թագաւորին օրերը, ահա
արևելքէն մոգեր եկան Երուսաղէմ,

2 Ու ըսին. Ո՞ւր տեղ է ան՝ որ Հըր-
րէաներուն թագաւոր ծնաւ. ինչու
որ մենք արեւելքի մէջ անոր աստղը
տեսանք, ու եկանք անոր երկրպա-
3 գութիւն ընելու։ Ու երբոր Հե-
րովդէս թագաւորը լսեց, խռովե-
ցաւ, և բոլոր Երուսաղէմը իրեն
4 հետ. Եւ ժողվելով բոլոր քա-
հանայապետները ու ժողովուրդին
դպիրները, հարցուց անոնց՝ թէ
Քրիստոս ո՞ւր պիտի ծնանի։
5 Անոնք ալ իրեն ըսին, Հրէաստանի
Բեթղեհեմին մէջ. ինչու որ ասանկ
գրուած է մարգարէին ձեռքովը.
6 Եւ դուն Բեթղեհէմ՝ Յուդայի
երկիրը, Յուդայի իշխաններուն
մէջ բնաւ պզտիկ մը չես. ինչու որ
քեզմէ իշխան մը պիտի ելլէ, որ
իմ Իսրայէլ ժողովուրդս պիտի
7 հովուէ։ Ան ատենը Հերովդէս
ծածկաբար մոգերը կանչեց, ու
ստուգեց անոնցմէ աստղին երե-
ւցած ատենը. Եւ զանոնք Բեթ-
ղեհէմ խրկելով՝ ըսաւ. Գացէք
ստոյգը իմացէք ան մանուկին վրա-
յով, ու երբոր գտնէք, ինծի իմա-
ցուցէ՛ք, որ ես ալ գամ՝ անոր եր-
9 կրպագութիւն ընեմ։ Ու երբոր
անոնք թագաւորէն ասոնք լսե-
ցին, գացին. և ահա ան աստղը
որ արեւելքի մէջ տեսեր էին, անոնց
առջեւէն գնաց, մինչեւ որ եկաւ կե-
ցաւ մանուկին եղած տեղին վրայ։
10 Երբոր տեսան աստղը, շատ մեծ
11 ուրախութիւնով ուրախացան։ Եւ
տունը մտնելով, տեսան մանուկը
իր մօրը Մարիամին հետ, ու ին-
կան երկրպագութիւն ըրին անոր,
և իրենց գանձերը բանալով՝ ըն-
ծաներ տուին անոր, ոսկի ու կնդ-
12 րուկ և զմուռս։ Ու հրաման առ-
նելով երազի մէջ՝ որ նորէն Հե-
րովդէսին չդառնան, ուրիշ ճամբով
գացին իրենց երկիրը։
13 Ու երբոր անկէ գացին անոնք,
ահա Տէրոջը հրեշտակը երազի մէջ
երեւցաւ Յովսէփին՝ ու ըսաւ. Ե-
լի՛ր առ մանուկը ու անոր մայրը,
ու Եգիպտոս փախիր, և հոն կե-
ցիր մինչեւ որ ես քեզի ըսեմ, քան-
զի Հերովդէս պիտի փնտռէ սա
մանուկը կորսնցնելու համար։
Ան ալ ելաւ, մանուկը ու անոր 14
մայրը գիշերով առաւ և գնաց
Եգիպտոս, ու մինչեւ Հերովդէսին
մահը հոն էր. Որ կատարուի Տէ- 15
րոջմէն ըսուածը մարգարէին ձեռ-
քովը, որ կ'ըսէ. Եգիպտոսէն կան-
չեցի իմ որդիս։
Ան ատենը երբոր տեսաւ Հե- 16
րովդէս թէ խաբուեցաւ մոգերէն,
սաստիկ սրդողեցաւ, ու խրկեց
ջարդեց Բեթղեհէմի և անոր ամէն
սահմաններուն մէջ գտնուած բոլոր
տղաքը՝ երկու տարուընէն վար,
ան ժամանակին համեմատ որ
մոգերէն ստուգեց։ Ան ատենը 17
կատարուեցաւ Երեմիա մարգարէին
ձեռքով ըսուածը, որ կ'ըսէ,
Ռամայի մէջ ձայն մը լսուեցաւ, 18
ողբ, լաց ու մեծ կոծ. Ռաքէլ
կու լար իր տղոցը համար, ու չէր
ուզեր մխիթարուիլ, ինչու որ չը-
կային։
Ու երբոր Հերովդէս մեռաւ, ա- 19
հա Տէրոջը հրեշտակը Եգիպտոս ե-
րազի մէջ Յովսէփին երեւցաւ, Ու 20
ըսաւ, Ելի՛ր՝ առ մանուկը ու անոր
մայրը, և գնա Իսրայէլի երկիրը,
քանզի մեռան անոնք որ մանուկին
կեանքը կը փնտռէին։ Ան ալ ելաւ՝ 21
մանուկը ու անոր մայրը առաւ և
եկաւ Իսրայէլի երկիրը։ Իսկ 22
երբոր լսեց թէ Արքեղայոս թագա-
ւորեց Հրէաստանի վրայ իր հօրը
Հերովդէսին տեղը, վախցաւ հոն
երթալու. ու երազի մէջ պատգամ
առնելով՝ Գալիլեայի կողմերը գը-
նաց. Եւ եկաւ Նազարեթ ըսուած 23
քաղաքը բնակեցաւ, որ մարգարէ-
ներուն խօսքը կատարուի՝ թէ Նա-
զովրեցի պիտի կոչուի։

## ԳԼ. Գ

Ան օրերը Յովհաննէս Մկրտիչը ե- 1
կաւ, ու Հրէաստանի անապա-
տին մէջ կը քարոզէր, Ու կ'ըսէր. 2
Ապաշխարեցէ՛ք, ինչու որ երկնից
թագաւորութիւնը մօտեցած է։
Ասիկա ան է՝ որուն հա- 3
մար Եսայի մարգարէին ձեռքով
ըսուեցաւ, որ կ'ըսէ. Անապատի

մէջ կանչողին ձայնը , Տէրոջը ճամ-
բան պատրաստեցէ՛ք , անոր շաւիղ-
4 ները շտկեցէ՛ք ։ Եւ այս Յով-
հաննէսը իր հանդերձը ուղտի մա-
զէ , ու իր մէջքը կաշիէ գօտի ու-
նէր . և իր կերակուրը մարախ ու
5 վայրենի մեղր էր ։ Այն ատենը Երու-
սաղէմ և բոլոր Հրէաստան ու
Յորդանանու բոլոր կողմերը իրեն
6 կ'ելլէին , Եւ կը մկրտուէին իրմէն
Յորդանանու մէջ , ու իրենց մեղ-
7 քերը կը խոստովանէին ։ Ու երբոր
տեսաւ Փարիսեցիներէն ու Սադու-
կեցիներէն շատերը իր մկրտութեա-
նը եկած , ըսաւ անոնց ; Իժերու
ծնունդներ , ո՞վ ցուցուց ձեզի գա-
8 լու բարկութենէն փախչիլ ։ Ու-
րեմն ապաշխարութեան արժանաւոր
9 պտուղ բերէք . Եւ մի՛ խորհիք ձեր
ձեր ներսի դին ըսել թէ Մենք մեզի
հայր՝ Աբրահամը ունինք . քանզի
կ'ըսեմ ձեզի որ Աստուած կարող է
այս քարերէս Աբրահամին որդիներ
10 հանել ։ Ահա հիմա կացինը ծառե-
րուն արմատին քովը կը դրուի .
ուստի ամէն ծառ որ բարի պտուղ
չբերեր , կը կտրուի ու կրակը կը
11 ձգուի ։ Ես ձեզ ջրով կը մկրտ-
տեմ ապաշխարութեան համար ,
բայց իմ ետևէս եկողը ինծմէ զօ-
րաւոր է , ու ես անոր կօշիկները
կրելու արժանի չեմ . անիկայ ձեզ
պիտի մկրտէ Հոգւով Սրբով ու
12 կրակով ․ Որուն հեծանոցը իր
ձեռքն է , և իր կալը պիտի մաքրէ
ու իր ցորենը համբարը պիտի ժողո-
վէ , և յարդը չմարելու կրակով
պիտի այրէ ։
13 Այն ատենը Յիսուս Գալիլիայէն
Յորդանան եկաւ Յովհաննէսին ,
14 որ անկէ մկրտուի ։ Եւ Յովհան-
նէս կ'արգիլէր անիկայ ու կ'ըսէր ,
Ինծի պէտք է որ քեզմէ մկրտուիմ ,
15 ու դուն ինծի՞ կու գաս ։ Յիսուս
պատասխան տուաւ ու ըսաւ անոր ,
Թո՛ղ տուր հիմա , ինչու որ այս-
պէս կը վայլէ մեզի որ բոլոր ար-
դարութիւնը կատարենք . Անիկայ
16 թող տուաւ անոր ։ Ու երբոր
Յիսուս մկրտուեցաւ , շուտ մը
ջուրէն դուրս ելաւ , և ահա երկինք-
քը անոր բացուեցաւ , ու տեսաւ
Աստուծոյ Հոգին որ աղաւնիի պէս
կ'իջնէր , ու կու գար իր վրայ ։
Եւ ահա երկինքէն ձայն մը եկաւ 17
որ կ'ըսէր . Ասիկա է իմ սիրելի
Որդիս , որուն հաւնեցայ ։

## ԳԼ. Դ

Այն ատենը Յիսուս անապատը 1
տարուեցաւ Սուրբ Հոգիէն՝ որ
Սատանայէն փորձուի . Եւ քառա- 2
սուն ցորեկ ու քառասուն գիշեր ծոմ
պահելէն ետքը՝ անօթեցաւ ։
Եւ փորձիչը անոր մօտենալով՝ 3
ըսաւ , Թէ որ դուն Աստուծոյ Որ-
դին ես , ըսէ՛ որ այս քարերը հաց
ըլլան ։ Անիկայ պատասխան տուաւ 4
ու ըսաւ , Գրուած է թէ Ո՛չ
միայն հացով կ'ապրի մարդ , հա-
պա ամէն խօսքով՝ որ Աստուծոյ
բերնէն կ'ելլէ ։
Այն ատենը Սատանան առաւ 5
տարաւ զանիկայ սուրբ քաղաքը ,
և կեցուց զանիկայ տաճարին
աշտարակին վրայ , Ու ըսաւ անոր , 6
Թէ որ դուն Աստուծոյ Որդին ես ,
քեզ վար ձգէ . ինչու որ
գրուած է թէ Իր հրեշտակներուն
պիտի պատուիրէ քեզի համար , ու
ձեռքերնուն վրայ պիտի վերցընեն
քեզ , որ չըլլայ թէ ոտքդ քարի
զարնես ։ Յիսուս ըսաւ անոր , 7
Դարձեալ գրուած է թէ Քու Տէր
Աստուածդ չփորձես ։
Սատանան նորէն առաւ հանեց 8
զանիկայ խիստ բարձր լեռան մը
վրայ , և ցուցուց անոր աշխարհի
բոլոր թագաւորութիւնները ու ա-
նոնց փառքը . Ու ըսաւ անոր , 9
Ասոնք ամէնը քեզի կու տամ , թէ
որ իյնաս՝ ինծի երկրպագութիւն
ընես ։ Այն ատենը Յիսուս ըսաւ 10
անոր , [Ետևս] գնա՛ Սատանայ .
ինչու որ գրուած է թէ Քու Տէր
Աստուածդ երկրպագութիւն ընես ,
ու միայն զանիկայ պաշտես ։ Այն 11
ատենը Սատանան զանիկայ թո-
ղուց . և ահա հրեշտակներ եկան
ու անոր սպասաւորութիւն կ'ընէ-
ին ։
Եւ երբոր լսեց Յիսուս թէ Յով- 12

հանիէս մատնուեցաւ, ելաւ գնաց
13 Գալիլեա ։ Ու ձգելով Նազարէ-
թը, եկաւ բնակեցաւ Կափառ-
նայում ծովեզերեայ քաղաքը, Զա-
բուղոնի ու Նեփթաղիմի սահման-
14 ներուն մէջ ։ Որ կատարուի Եսայի
մարգարէին ձեռքով ըսուած խօս-
15 քը՝ Զաբուղոնի երկիրը ու Նեփ-
թաղիմի երկիրը, ծովու ճամբով
Յորդանանու անդիի կողմը, հե-
16 թանոսաց Գալիլեան ։ Խաւարի
մէջ նստող ժողովուրդը մեծ լոյս
տեսաւ, և լոյս ծագեցաւ անոնց՝ որ
մահուան երկրին ու շուքին մէջ կը
17 նստէին ։ Անկէ ետև Յիսուս սկը-
սաւ քարոզել ու ըսել, Ապաշ-
խարեցէ՛ք, ինչու որ երկնից թա-
գաւորութիւնը մօտ է ։
18 Երբոր Յիսուս Գալիլեացւոց
ծովուն քովէրը կը պտըտէր, տե-
սաւ երկու եղբայրներ՝ Պետրոս կո-
չուած Սիմոնը և անոր եղբայրը
Անդրէասը՝ որ ծովը ուռկան կը ձը-
19 գէին, ինչու որ ձկնորս էին ։ Եւ ը-
սաւ անոնց, Իմ ետևէս եկէք, ու
20 ձեզ մարդոց որսորդ ընեմ ։ Անոնք
ալ շուտ մը ուռկանները թողու-
ցին ու անոր ետևէն գացին ։
21 Եւ անկէ առաջ երթալով՝ տեսաւ
ուրիշ երկու եղբայրներ, Զեբե-
դեան Յակոբոսը ու անոր եղբայրը
Յովհաննէսը նաւին մէջ իրենց հօ-
րը Զեբեդէոսին հետ, երբ իրենց
ուռկանները կը կարկըտէին ։ ու
22 կանչեց զանոնք ։ Անոնք ալ շուտ
մը նաւը ու հայրերնին թողուցին
ու անոր ետևէն գացին ։
23 Եւ Յիսուս բոլոր Գալիլեան
պտըտելով, կը սորվեցընէր անոնց
ժողովարաններուն մէջ, և արքա-
յութեան աւետարանը կը քարո-
զէր, ու ժողովուրդին մէջէն ամէն
կերպ հիւանդութիւնները ու ամէն
24 կերպ ցաւերը կը բժշկէր ։ Եւ ա-
նոր համբաւը բոլոր Ասորիս տա-
րածուեցաւ, և բերին անոր՝ բոլոր
հիւանդները որ կերպ կերպ ցաւե-
րով ու տանջանքներով կը նեղուէ-
ին, և դիւահարները ու լուսնոտ-
ները և անդամալոյծները ։ ու բը-
25 ժշկեց զանոնք ։ Եւ շատ ժողո-
վուրդներ անոր ետևէն կ'երթային՝
Գալիլեայէն ու Դեկապոլիսէն և
Երուսաղեմէն ու Հրէաստանէն
և Յորդանանու անդիի կողմէն ։

## ԳԼ. Ե

Եւ տեսնելով ժողովուրդները՝ լե- 1
ռը ելաւ. ու երբոր նստաւ
հօն, իր աշակերտները քովը գա-
ցին ։ Եւ իր բերանը բանալով 2
կը սորվեցընէր անոնց ու կ'ըսէր,
Երանի հոգւով աղքատներուն, 3
ինչու որ երկնից թագաւորութիւնը
անոնցն է ։ Երանի սգաւորնե- 4
րուն, ինչու որ անոնք պիտի մխի-
թարուին ։ Երանի հեզերուն, 5
ինչու որ անոնք պիտի ժառանգեն
երկիրը ։ Երանի անոնց՝ որ անօ- 6
թի ու ծարաւ են արդարութեան,
ինչու որ անոնք պիտի կշտանան ։
Երանի ողորմածներուն, ինչու որ 7
անոնք ողորմութիւն պիտի գտնեն ։
Երանի անոնց՝ որ սրտով մաքուր 8
են, ինչու որ անոնք պիտի տեսնեն
զԱստուած ։ Երանի խաղաղու- 9
թիւն ընողներուն, ինչու որ անոնք
Աստուծոյ որդիներ պիտի կոչուին ։
Երանի անոնց՝ որ հալածուած են 10
արդարութեան համար, ինչու որ
երկնից թագաւորութիւնը անոնցն
է ։ Երանի է ձեզի՝ երբոր կը 11
նախատեն ձեզ ու կը հալածեն, և
սուտ տեղը ամէն կերպ գէշ խօսքեր
կը խօսին վրանիդ, ինծի համար ։
Ուրախացէ՛ք և ցնծա՛ցէք, ինչու 12
որ ձեր վարձքը շատ է երկինքը ։
քանզի այս կերպով հալածեցին
ձեզմէ առաջ եղած մարգարէները ։
Դուք էք երկրի աղը ։ Հապա 13
թէ որ աղը իր համը կորսընցընէ,
ինքը ինչո՞վ պիտի աղուի ։ անկէ
ետև բանի մը չըլլար, միայն թէ
դուրս ձգուելու և մարդոց ոտքին
տակը կոխուելու ։ Դուք էք աշ- 14
խարհի լոյսը ։ քաղաք մը՝ որ լեռան
վրայ կեցած է, չկրնար պահուիլ ։
Ու ճրագը չեն վառեր և գներ գը- 15
րուանի տակ, հապա աշտանակի
վրայ, և լոյս կու տայ բոլոր տանը
մէջ եղողներուն ։ Անանկ թող 16
լուսաւորէ ձեր լոյսը մարդոց առ-

ջին, որ տեսնեն ձեր բարի գործ-
քերը, ու փառաւորեն ձեր Հայրը
որ երկինքն է։
17 Մի՛ կարծէք թէ ես եկայ օրէնքը
կամ մարգարէները աւրելու. չե-
կայ աւրելու, հապա կատարելու։
18 Վասնզի ճշմարտապէս կ՚ըսեմ ձեզի,
Մինչեւ որ երկինք ու երկիր անց-
նին, օրէնքէն յովտ մը կամ նշա-
նագիր մը պիտի չանցնի, մինչեւ
19 որ բոլորն ալ կատարուի։ Ուստի
ով որ այս ամենափոքր պատուի-
րաններուն մէկը աւրէ, ու մարդոց
անանկ սորվեցընէ, անիկայ ամենա-
փոքր պիտի կոչուի երկնից թագա-
ւորութեանը մէջ. բայց ով որ
ընէ և սորվեցընէ, անիկայ մեծ պի-
տի կոչուի երկնից թագաւորու-
20 թեանը մէջ։ Վասնզի կ՚ըսեմ
ձեզի, Թէ որ ձեր արդարութիւնը
դպիրներուն ու փարիսեցիներուն
արդարութենէն աւելի չըլլայ, բնաւ
պիտի չմտնէք երկնից թագաւորու-
թիւնը։
21 Լսեր էք որ ըսուեցաւ առաջին-
ներուն, Սպանութիւն մի՛ ըներ.
և ով որ սպանութիւն ընէ, դա-
տաստանի պարտաւոր պիտի ըլլայ։
22 Բայց ես ձեզի կ՚ըսեմ, Ո՛վ որ
իր եղբօրը պարապ տեղը սրդողի,
դատաստանի պարտաւոր պիտի ըլ-
լայ. և ով որ իր եղբօրը Ցի՛մար
ըսէ, ատեանի պարտաւոր պիտի
ըլլայ. և ով որ իր եղբօրը Անմիտ
ըսէ, գեհենի կրակին պարտաւոր
23 պիտի ըլլայ։ Ուրեմն թէ որ քու
ընծադ սեղանին վրայ բերես, ու
հոն միտքդ գայ թէ քու եղբայրդ
24 քեզի դէմ բան մը ունի, Հոն
ձգէ՛ քու ընծադ սեղանին առջեւը,
և գնա առաջ եղբօրդ հետ հաշ-
տուէ, ու ետքը եկուր որ քու
25 ընծադ մատուցանես։ Քու ոսո-
խիդ հետ շուտով միաբանէ՛, քանի
որ անոր հետ ճամբուն մէջն ես.
չըլլայ որ քու ոսոխդ քեզ դատա-
ւորին մատնէ, և դատաւորը դա-
26 հիճին, և բանտը ձգուիս։ Ճշմա-
րիտ կ՚ըսեմ քեզի, պիտի չելլես
անկէ, մինչեւ որ վերջի նաքարակի-
տը չվճարես։

Լսեր էք որ ըսուեցաւ, Շնու- 27
թիւն մի՛ ըներ։ Բայց ես ձեզի 28
կ՚ըսեմ, Ո՛վ որ կնիկ մարդու կը
նայի անոր ցանկանալու համար,
ալ անիկայ իր սրտին մէջ շնու-
թիւն ըրաւ անոր հետ։ Արդ թէ 29
որ քու աջ աչքդ քեզ կը գայ-
թակղեցընէ, հանէ՛ զանիկայ ու
քեզմէ ձգէ՛. ինչու որ աղէկ է քեզի
որ անդամներուդ մէկը կորսուի,
ու քու բոլոր մարմինդ դժոխքը
չձգուի։ Նաեւ թէ որ աջ ձեռքդ 30
քեզ կը գայթակղեցընէ, կտրէ՛
զանիկայ ու քեզմէ ձգէ՛. ինչու որ
աղէկ է քեզի որ անդամներուդ մէ-
կը կորսուի, ու քու բոլոր մար-
մինդ դժոխքը չձգուի։ Նաեւ՝ 31
ըսուեցաւ թէ Ո՛վ որ իր կնիկը
կ՚արձակէ, թող անոր արձակման
թուղթ տայ. Բայց ես ձեզի կ՚ըսեմ 32
թէ Ո՛վ որ իր կնիկը կ՚արձակէ
առանց պոռնկութեան պատճառի,
ինքը պատճառ կ՚ըլլայ անոր շնու-
թիւն ընելուն, և ով որ ան ար-
ձակուածը առնէ, շնութիւն կը
գործէ։
Դարձեալ լսեր էք որ ըսուեցաւ 33
առաջիններուն, Սուտ երդում մի՛
ըներ, հապա ըրած երդումներդ
վճարէ՛ Տէրոջը։ Բայց ես ձեզի 34
կ՚ըսեմ, Ամենեւին երդում մի՛ ը-
նէք, ոչ երկինքի վրայ՝ որ Աստու-
ծոյ աթոռն է, Նաեւ ոչ երկրի վրայ՝ 35
որ անոր ոտքերուն պատուանդանն
է, ոչ ալ Երուսաղէմի վրայ՝ որ
մեծ Թագաւորին քաղաքն է. Նաեւ 36
ոչ քու գլխուդ վրայ երդում ընես,
ինչու որ չես կրնար մէկ մազ մը
ճերմըկցընել կամ սեւցընել։ Հա- 37
պա ձեր խօսքը ըլլայ այո՛ այո, և
ոչը՝ ոչ. ու ասկէ աւելին չարէն
յառաջ կու գայ։
Լսեր էք որ ըսուեցաւ, Աչքի 38
տեղ աչք, ու ակռայի տեղ ակ-
ռայ. Բայց ես ձեզի կ՚ըսեմ, 39
Չարին հակառակ մի՛ կենաք, հա-
պա թէ որ մէկը ապտակ մը զարնէ
աջ ծնօտիդ՝ դարձուր անոր միւսն
ալ։ Նաեւ մէկը որ կ՚ուզէ քեզի 40
հետ դատ վարել ու քու շապիկդ
առնել, թող տուր անոր նաեւ վե-

41 բաճկոնդ ալ ։ Ու ով որ քեզ
պահանջ բռնէ ու մղոն մը ճամբայ
քշէ , գնա անոր հետ երկուք ։
42 Քեզմէ ուզողին տուր , ու երես մի՛
դարձըներ անկէ՝ որ կ'ուզէ քեզմէ
փոխ առնել ։
43 Լսեր էք որ ըսուեցաւ , Քու ըն-
կերդ սիրես ու թշնամիդ ատես ։
44 Բայց ես ձեզի կ'ըսեմ , Սիրեցէք
ձեր թշնամիները , օրհնեցէք ձեզ
անիծողները , բարի՛ ըրէք անոնց
որ ձեզ կ'ատեն , և աղօթք ըրէք
անոնց համար՝ որ ձեզ կը չարչըրկեն
45 ու կը հալածեն ․ Որ ձեր երկնաւոր
Հօրը որդիքը ըլլաք ․ ինչու որ իր
արեւը կը ծագեցնէ թէ՛ չարերուն
և թէ բարիներուն վրայ , և անձրև
կը խրկէ թէ՛ արդարներուն և թէ
46 մեղաւորներուն վրայ ։ Վասն զի
թէ որ դուք ձեզ սիրողները սիրէք ,
ի՞նչ վարձք կ'ունենաք ․ չէ՞ որ
մաքսաւորներն ալ նոյնը կ'ընեն ։
47 Ու թէ որ միայն ձեր եղբայրներուն
բարև տաք , ի՞նչ աւելի կ'ընէք
ուրիշներէն ․ չէ՞ որ մաքսաւորներն
48 ալ նոյնը կ'ընեն ։ Ուրեմն դուք
կատարեալ եղէք՝ ինչպէս որ ձեր
երկնաւոր Հայրն ալ կատարեալ
է ։

## ԳԼ. Զ.

1 Զգոյշ եղէք որ ձեր ողորմութիւնը
մարդոց առջևը չընէք՝ անոնց
երևնալու համար ։ եթէ ոչ վարձք
չէք առներ ձեր Հօրմէն՝ որ երկինքն
2 է ։ Ասոր համար երբոր ողորմութիւն
կ'ընես , առջևդ փող մի՛ հնչեցըներ ,
ինչպէս որ կեղծաւորները ժողովա-
րաններուն ու փողոցներուն մէջ
կ'ընեն , որ մարդոցմէ փառաւո-
րուին ․ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , ա-
նոնք իրենց վարձքը առած կ'ըլլան ։
3 Իսկ դուն երբոր ողորմութիւն կ'ը-
նես , ձախ ձեռքդ թող չգիտնայ
4 աջ ձեռքիդ ինչ գործելը ․ Որ քու
ողորմութիւնդ գաղտուկ ըլլայ ․ և
քու Հայրդ որ գաղտուկը կը տես-
նէ , քեզի յայտնապէս հատուցում
պիտի ընէ ։
5 Ու երբոր աղօթք կ'ընես , կեղ-
ծաւորներուն նման չըլլաս , որ կը
սիրեն ժողովարաններուն մէջ ու
հրապարակներուն անկիւնները կայ-
նելով աղօթք ընել , որ մարդոց
երևնան ․ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի ,
անոնք իրենց վարձքը առած կ'ըլլան ։
Իսկ դուն երբոր աղօթք կ'ընես , 6
մտի՛ր քու ներքին սենեակդ ու
դուռդ գոցէ՝ , և աղօթք ըրէ քու
Հօրդ որ գաղտուկ տեղ կը գըտ-
նուի ․ և քու Հայրդ որ գաղտուկը
կը տեսնէ , քեզի յայտնապէս հա-
տուցում պիտի ընէ ։ Ու երբոր 7
աղօթք կ'ընէք , հեթանոսներուն
պէս շատախօս մի՛ ըլլաք ․ վասն զի
կը կարծեն թէ իրենց շատ խօսելուն
համար պիտի լսուին ։ Ուրեմն ա- 8
նոնց չնմանիք ․ ինչու որ ձեր Հայ-
րը ձեզի պէտք եղածը գիտէ՝ դեռ
դուք իրմէ չխնդրած ։ Ասոր հա- 9
մար աղօթք ըրէք դուք ․
Ո՛վ Հայր մեր որ երկինքն ես ,
քու անունդ սուրբ ըլլայ ․ Քու 10
թագաւորութիւնդ գայ , քու կամքդ
ըլլայ , ինչպէս որ երկինքը՝ անանկ
ալ երկրիս վրայ ․ Մեր ամէն աւուր 11
հացը այսօր մեզի տուր ․ Ու մեզի 12
ներէ՛ մեր պարտքերը , ինչպէս որ
մենք ալ կը ներենք մեր պարտա-
կաններուն ․ Ու մեզ փորձութեան 13
մի՛ տանիր ․ հապա չարէն մեզ ա-
զատէ ․ ինչու որ քուկդ է թա-
գաւորութիւնը և զօրութիւնը ու
փառքը յաւիտեան ։ Ամէն ։
Վասն զի թէ որ դուք ներէք 14
մարդոց իրենց յանցանքները , ձեր
երկնաւոր Հայրն ալ ձեզի կը նե-
րէ ․ Հապա թէ որ դուք չներէք 15
մարդոց իրենց յանցանքները , ձեր
Հայրն ալ ձեզի չներեր ձեր յան-
ցանքները ։
Ու երբոր ծոմ կը պահէք , կեղ- 16
ծաւորներուն պէս տրտմերես մի՛
ըլլաք ․ քանզի իրենց երեսները
կ'աւրեն որ մարդոց երևնան թէ
ծոմ կը պահեն ․ Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի , Անոնք իրենց վարձքը առած
կ'ըլլան ։ Բայց դուն երբոր ծոմ 17
կը պահես , գլուխդ օծէ՛ ու երեսդ
լուա , Որ մարդոց ծոմ պահողի 18
պէս չերևնաս , հապա քու Հօրդ՝
որ գաղտուկ տեղ կը գտնուի ․ և

նէր պիտի տայ անոնց՝ որ իրմէ կը
խնդրեն ։
12 Ուստի ամէն ինչ որ կ'ուզէք որ
մարդիկ ձեզի ընեն, դուք ալ ա-
նոնց անանկ ըրէք, քանզի աս է
օրէնքը ու մարգարէները ։
13 Նեղ դռնէն ներս մտէք, ինչու
որ լայն է այն դուռը ու ընդարձակ
այն ճամբան, որ դէպ 'ի կորուստ
կը տանի. և շատուոր են անոնք որ
14 անկէ կը մտնեն ։ Ինչու որ նեղ է
այն դուռը ու նեղուցը է այն ճամ-
բան, որ դէպ 'ի կեանք կը տանի.
և քիչուոր են անոնք որ զանիկայ կը
գտնեն ։
15 Զգոյշ կեցէք սուտ մարգարէ-
ներէն՝ որոնք ձեզի կու գան ոչխարի
հանդերձներով, բայց ներսէն յա-
16 փշտակող գայլեր են ։ Իրենց պը-
տուղէն պիտի ճանչնաք զանոնք.
միթէ փուշերէն խաղող կը քա-
ղե՞ն, կամ տատասկէն՝ թուզ.
17 Անանկ ալ ամէն բարի ծառ բարի
պտուղ կու տայ, և չար ծառ չար
18 պտուղ կու տայ ։ Բարի ծառը
չկրնար չար պտուղ տալ, ոչ ալ
19 չար ծառը բարի պտուղ տալ ։ Ա-
մէն ծառ որ բարի պտուղ չտար՝ կը
կտրուի ու կրակը կը ձգուի ։
20 Ուրեմն իրենց պտուղէն պիտի
ճանչնաք զանոնք ։
21 Ո՛չ թէ ամէն մէկը որ ինծի
Տէ՛ր Տէ՛ր կ'ըսէ, պիտի մտնէ երկ-
նից թագաւորութիւնը, հապա ա-
նիկայ որ իմ երկնաւոր Հօրս կամ-
22 քը կը կատարէ ։ Շատերը այն
օրը ինծի պիտի ըսեն, Տէ՛ր Տէ՛ր
չէ՞ որ քու անունովդ մարգարէու-
թիւն ըրինք, և քու անունովդ
դեւեր հանեցինք, ու քու անունովդ
23 շատ հրաշքներ ըրինք ։ Ու ան ա-
տենը անոնց յայտնապէս պիտի ը-
սեմ թէ Ես բնաւ ձեզ չէի ճանչ-
նար. մէկդի՛ գացէք քովէս դուք
որ անօրէնութիւն կը գործէիք ։
24 Արդ ով որ աս իմ խօսքերս կը
լսէ ու կը կատարէ անոնք, զանի-
կայ պիտի նմանցընեմ խելացի մար-
դու մը՝ որ իր տունը վէմի վրայ
25 շինեց. Ու անձրև իջաւ, ու
գետերը վազեցին ու հովերը փչե-
ցին, և զարկին այն տանը, ու
չիյնաւ. ինչու որ վէմի վրայ հաս-
տատուած էր ։ Ու ով որ աս իմ 26
խօսքերս կը լսէ ու չկատարեր ա-
նոնք, կը նմանի անխելք մարդու
մը՝ որ իր տունը աւազի վրայ շինեց.
Ու անձրև իջաւ ու գետերը վազե- 27
ցին ու հովերը փչեցին, և զար-
կին այն տանը. ու իյնաւ, և մեծ
էր անոր կործանումը ։
Ու երբոր Յիսուս լմնցուց աս 28
խօսքերը, ժողովուրդները կը զար-
մանային անոր վարդապետութեանը
վրայ. Ինչու որ իշխանութիւն ու- 29
նեցողի մը պէս կը սորվեցընէր ա-
նոնց, ու չէ՛ թէ դպիրներուն պէս ։

## ԳԼ. Ը

Ու երբոր ան լեռնէն վար իջաւ, 1
շատ ժողովուրդներ գացին անոր
ետեւէն ։ Ու ահա բորոտ մը եկաւ, 2
երկրպագութիւն կ'ընէր անոր ու
կըսէր, Տէ՛ր՝ թէ որ ուզես, կրնաս
զիս մաքրել ։ Ու Յիսուս իր ձեռ- 3
քը երկնցընելով դպաւ անոր ու
ըսաւ, Կ'ուզեմ՝ մաքրուէ՛. և շուտ
մը անոր բորոտութիւնը մաքրուե-
ցաւ ։ Ու Յիսուս ըսաւ անոր, 4
Զգոյշ կեցի՛ր՝ մէկու մը չըսես,
հապա գնա՛ քեզ քահանային ցու-
ցո՛ւր, և Մովսէսին պատուիրած
ընծան տո՛ւր, անոնց վկայութիւն
ըլլալու համար ։
Ու երբոր Կափառնայում մտաւ, 5
հարիւրապետ մը եկաւ քովը, կ'ա-
ղաչէր անոր, Ու կ'ըսէր, Տէ՛ր իմ 6
ծառաս տունը անդամալոյծ պառ-
կած չարաչար կը տանջուի ։ Ու 7
Յիսուս ըսաւ անոր, Ես կու գամ
ու զանիկայ կը բժշկեմ ։ Ու հա- 8
րիւրապետը պատասխան տալով՝
ըսաւ, Տէ՛ր ես արժանի չեմ որ
դուն իմ յարկիս տակը մտնես.
միայն թէ խօսքո՛վ զրուցէ, ու իմ
ծառաս պիտի բժշկուի. Ինչու որ 9
ես ալ իշխանութեան տակ մարդ
մըն եմ, ու իմ հրամանիս տակը
զինուորներ ունիմ. և ասոր կ'ը-
սեմ, Գնա՛, ու կ'երթայ. և միւ-
սին՝ թէ Եկո՛ւր, ու կու գայ. և
ծառայիս՝ թէ Աս բանը ըրէ՛, ու

10 կ'ընէ ։ Յիսուս երբոր լսեց՝ զար-
մացաւ, և իր ետեւէն գացողներուն
ըսաւ ։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի,
Իսրայէլի մէջ անգամ ես այսչափ
11 հաւատք չգտայ ։ Ու ձեզի կ'ըսեմ
որ արեւելքէն ու արեւմուտքէն շա-
տեր պիտի գան, ու երկնից թա-
գաւորութեանը մէջ պիտի բազմին
Աբրահամին ու Իսահակին և Յա-
12 կոբին հետ ․ Իսկ թագաւորու-
թեանը որդիքը դուրսի խաւարը
պիտի հանուին ․ հոն պիտի ըլլայ
13 լալ ու ակռաներ կրճտել ։ Ու
Յիսուս հարիւրապետին ըսաւ ․
Գնա՛, ու ինչպէս որ դուն հաւա-
տացիր, անանկ թող ըլլայ քեզի ․
և նոյն ժամուն անոր ծառան բժշ-
կուեցաւ ։
14 Ու Յիսուս Պետրոսին տունը
գալով՝ տեսաւ որ անոր զոքանչը
15 ջերմէն բռնուած պառկած էր ․ Ու
անոր ձեռքէն բռնեց, ու ջերմը
թող տուաւ զանիկայ ․ ան ալ
ոտքի ելլալ ելաւ․ և անոնց սպասա-
ւորութիւն կ'ընէր ։
16 Իրիկուն եղաւ, շատ
դիւահարներ բերին անոր, ու խօս-
քով հանեց չար ոգիները ․ և բոլոր
17 հիւանդները բժշկեց ․ Որ Եսայի
մարգարէին ձեռքով ըսուած խօսքը
կատարուի ․ Նոյնիկայ մեր հիւան-
դութիւնները վերցուց ․ և մեր ցա-
ւերը կրեց ։
18 Յիսուս իր բոլորտիքը շատ ժո-
ղովուրդ տեսնելով, հրաման ըրաւ
19 որ միւս կողմը երթան ։ Ու
դպիր մը մօտենալով՝ ըսաւ անոր ․
Վարդապետ՝ ես քու ետեւէդ պիտի
20 գամ, ուր որ երթաս ։ Ու Յի-
սուս ըսաւ անոր ․ Աղուեսները որ-
ջեր ունին, ու երկնից թռչունները
բոյներ ․ բայց Որդին մարդոյ տեղ
մը չունի, որ հոն իր գլուխը դնէ ։
21 Ու մէկ ուրիշ՝ որ անոր աշակերտ-
ներէն էր, ըսաւ անոր ․ Տէ՛ր՝ ինծի
հրաման տուր, որ երթամ առաջ
22 իմ հայրս թաղեմ ։ Յիսուս ըսաւ
անոր ․ Ինծի՛ եկուր իմ ետեւէս, ու
թող տուր մեռելները որ թաղեն
իրենց մեռելները ։
23 Ու երբոր նաւը մտաւ, իր աշա-
կերտները իր ետեւէն գացին ․ Ու 24
ահա մեծ ալեկոծութիւն մը եղաւ
ծովուն մէջ, անանկ որ նաւը ա-
լիքներէն կը ծածկուէր ․ իսկ ինքը
կը քնանար ։ Ու աշակերտները 25
մօտ գացին՝ արթնցուցին զանի-
կայ ու ըսին ․ Տէ՛ր՝ ազատէ մեզ ․
մեռա՛նք կը կորսուինք ։ Ու ըսաւ 26
անոնց ․ Թերահաւատներ՝ ինչո՞ւ
ատանկ վախկոտ էք ․ ան ատենը
ելաւ հովերուն ու ծովուն սաստեց,
և մեծ խաղաղութիւն եղաւ ։ Ու 27
մարդիկը զարմացան՝ և կ'ըսէին ,
Ի՞նչպէս մարդ է աս՝ որ հովերը ու
ծովը ասոր կը հնազանդին ։
Ու երբոր միւս կողմը Գերգե- 28
սացւոց երկիրը անցաւ, երկու
դիւահար պատահեցան իրեն՝ գե-
րեզմաններէն ելած՝ սաստիկ կատա-
ղած, անանկ որ մարդ չէր կրնար մը
ան ճամբայէն անցնիլ ․ Ու ահա 29
աղաղակեցին ու ըսին ․ Յիսուս Որ-
դի Աստուծոյ՝ դուն մեր հետ ի՞նչ
բան ունիս, ատենէն առաջ մեզ
տանջելո՞ւ համար հոս եկար ։ Ու 30
անոնցմէ հեռու շատ խոզերու երա-
մակ մը կար, որ կ'արածուէին ։
Ու դեւերը կ'աղաչէին իրեն ու կ'ը- 31
սէին ․ Թէ որ մեզ կը հանես,
հրաման տուր մեզի որ երթանք
խոզերուն երամակին մէջը մտնենք ։
Ու ըսաւ անոնց ․ Գացէք ․ ու ա- 32
նոնք ելան գացին խոզերուն երա-
մակին մէջը մտան ․ և ահա բոլոր
երամակը գահավէժ տեղէն ծովը
վազեցին, ու ջուրերուն մէջը մե-
ռան ։ Խոզարածներն ալ փախան, 33
և քաղաքը երթալով բոլորը պատ-
մեցին, ու դիւահարներուն պա-
տահած բաները ։ Ու ահա բոլոր 34
քաղաքը Յիսուսին դէմը ելաւ ․ ու
երբոր տեսան զանիկայ, աղաչեցին
որ իրենց սահմաններէն երթայ ։

## ԳԼ․ Թ

Ու նաւը մտնելով՝ անդիի կողմը 1
անցաւ, ու եկաւ իր քաղաքը ։
Ու ահա բերին իրեն անդամալոյծ 2
մը, որ մահիճի մէջ պառկած էր ․
և Յիսուս անոնց հաւատքը տեսնե-
լով՝ ըսաւ անդամալոյծին ․ Քաջա-

Քաջալերուէ՛ որդեակ, քու մեղքերդ
3 քեզի ներուած են։ Եւ ահա դը-
պիրներէն ոմանք իրենց մտքին մէջ
ըսին. Ասիկայ հայհոյութիւն կ'ը-
4 նէ։ Յիսուս ալ անոնց խորհուրդ-
ները գիտնալով ըսաւ. Ինչո՞ւ
սրտերնուդ մէջ չար բաներ կը խոր-
5 հիք. Քանզի ո՞րը աւելի դիւրին
է. Քու մեղքերդ ներուած են՝ ը-
սե՞լը, թէ Ելի՛ր ու քալէ՛ ըսելը.
6 Բայց որպէս զի գիտնաք թէ Որդին
մարդոյ իշխանութիւն ունի երկրի
վրայ մեղքերու թողութիւն տա-
լու, (այն ատենը անդամալոյծին
ըսաւ,) Ելի՛ր՝ մահիճդ առ ու
7 տունդ գնա։ Եւ անիկայ ելաւ՝
8 իր տունը գնաց։ Ժողովուրդները
երբոր տեսան՝ զարմացան, ու փա-
ռաւորեցին զԱստուած, որ մարդոց
անանկ իշխանութիւն տուեր էր։
9 Եւ Յիսուս անկէ առաջ անցնե-
լով՝ մարդ մը տեսաւ Մատթէոս
անունով, որ մաքս ընդունելու
տեղը նստեր էր, ու ըսաւ անոր,
Ետեւէս եկուր. ան ալ ելաւ անոր
10 ետեւէն գնաց։ Եւ եղաւ որ տունը
սեղան նստած ատենը՝ ահա ուրիշ
շատ մաքսաւորներ և մեղաւորներ
եկած՝ ու սեղան նստած էին Յի-
սուսին ու անոր աշակերտներուն
11 հետ։ Եւ փարիսեցիները երբոր
տեսան, ըսին անոր աշակերտնե-
րուն, Ինչո՞ւ ձեր վարդապետը
մաքսաւորներուն ու մեղաւորներուն
12 հետ կ'ուտէ։ Բայց Յիսուս երբոր
լսեց, ըսաւ անոնց, Առողջներուն
բժիշկ պէտք չէ, հապա հիւանդ-
13 ներուն։ Գացէք՝ սորվեցէք թէ
ի՛նչ է այս խօսքը՝ Ողորմութիւն
կ'ուզեմ և չէ թէ զոհ. Ինչու որ ես
արդարները կանչելու չեկայ, հապա
մեղաւորները ապաշխարութեան։
14 Այն ատենը Յովհաննէսին աշա-
կերտները անոր եկան ու ըսին,
Ինչո՞ւ մենք ու փարիսեցիները շատ
անգամ ծոմ կը պահենք, և քու
15 աշակերտներդ չեն պահեր։ Եւ
Յիսուս ըսաւ անոնց, Միթէ կա-
րելի՞ է որ հարսնիքին տղաքը սուգ
պահեն քանի որ փեսան իրենց հետն
է. բայց օրեր պիտի գան որ երբ
փեսան իրենցմէ վերցուի, այն ատե-
նը ծոմ պիտի պահեն։ Եւ մէկը 16
չնջեր նոր լաթի կտոր հին հանդ-
երձի վրայ, քանզի ան որ անոր
լրութեանը համար դրուած է,
կ'առնէ հանդերձէն, ու պատռ-
ուածքը ալ աւելի գէշ կ'ըլլայ։
Ո՛չ ալ նոր գինին հին տիկերու 17
մէջ կը դնեն. եթէ ոչ՝ տիկերը
կը պատռին ու գինին կը թափի,
և տիկերը կը կորսուին. հապա նոր
գինին նոր տիկերու մէջ կը դնեն,
ու երկուքն ալ կը պահուին։
Երբոր անիկայ անոնց հետ այս 18
բաները կը խօսէր, ահա իշխան մը
եկաւ, երկրպագութիւն կ'ընէր ա-
նոր ու կ'ըսէր, Աղջիկս ալ մինչեւ
հիմա մեռած է, բայց եկուր ձեռքդ
անոր վրան դիր, ու պիտի ապրի։
Եւ Յիսուս ելաւ ու իր աշա- 19
կերտներուն հետ անոր ետեւէն գը-
նաց։
Եւ ահա տասուերկու տարուան 20
արիւնահոսէ կին մը մօտեցաւ ետեւէն՝
անոր հանդերձին քղանցքին դպաւ.
Քանզի իր մտքին մէջ կ'ըսէր, Թէ 21
որ միայն անոր հանդերձին դպչիմ,
պիտի բժշկուիմ։ Բայց Յիսուս 22
երբոր ետին դարձաւ ու տեսաւ
զանիկայ, ըսաւ, Քաջալերուէ՛
աղջիկ, քու հաւատքդ քեզ բժշ-
կեց. և կինը նոյն ժամէն բժշ-
կուեցաւ։
Եւ երբոր Յիսուս իշխանին տու- 23
նը եկաւ, ու տեսաւ փողահարները
և խռովեալ բազմութիւնը, Ըսաւ 24
անոնց, Մէկդի՛ գացէք, ինչու
որ աղջիկը մեռած չէ, հապա կը
քնանայ. և ծաղր կ'ընէին անիկայ։
Եւ երբոր բազմութիւնը դուրս 25
ձգուեցաւ, ինքը ներս մտաւ՝ անոր
ձեռքէն բռնեց, ու աղջիկը ոտք
ելաւ։ Եւ այս լուրը այն բոլոր եր- 26
կիրը տարածուեցաւ։
Եւ երբոր Յիսուս անկէ՝ առաջ 27
անցաւ, երկու կոյր ինկան անոր
ետեւէն, կ'աղաղակէին ու կ'ըսէին,
Ողորմէ՛ մեզի՛ Որդի՛ Դաւթի։
Եւ երբոր տուն եկաւ, կոյրերը ի- 28
րեն եկան. և Յիսուս անոնց ը-
սաւ, Կը հաւատա՞ք թէ կրնամ

որ ձեզ մատնեն , հոգ մի՛ ընէք թէ
ինտո՞ր կամ ինչ պիտի խօսիք .
ինչու որ ձեզի պիտի տրուի այն ժա-
20 մանն՝ ինչ որ պիտի խօսիք ։ Վասն
զի չէ՛ թէ դուք էք որ կը խօսիք ,
հապա ձեր Հօրը Հոգին՝ որ ձեր
21 ներսէն դուրս կը խօսի ։ Ու եղբայր
եղբայրը մահուան պիտի մատնէ ,
և հայրը՝ որդին . և որդիք իրենց
ծնողացը վրայ պիտի ելլեն ու մեռ-
22 ցընեն զանոնք ։ Ու իմ անունիս
համար ամենուն ատելի պիտի ըլ-
լաք . բայց ով որ մինչև վերջը
համբերէ , անիկայ պիտի ապրի ։
23 Ու երբոր աս քաղաքին մէջ ձեզ
կը հալածեն , ուրիշ տեղուոյ փա-
խէք . Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի , Իս-
րայէլի քաղաքները պիտի չհատցը-
նէք , մինչև որ Որդին մարդոյ գայ ։
24 Աշակերտը իր վարդապետէն աւելի
չէ՛ , և ոչ ծառան իր տիրոջմէն ։
25 Հերիք է աշակերտին՝ որ իր վար-
դապետին պէս ըլլայ , ու ծառային՝
իր տիրոջը պէս . թէ որ տանուտէ-
րը Բէեղզեբուղ կոչեցին , որչափ
26 աւելի անոր ընտանիքը ։ Ասոր
մի՛ վախնաք անոնցմէ , ինչու որ
բան մը չկայ ծածուկ՝ որ պիտի չյ-
յայտնուի , և գաղտուկ՝ որ պիտի
27 չգիտցուի ։ Ի՛նչ որ ձեզի մութի
մէջ կ՚ըսեմ , անիկայ լոյսի մէ՛ջ
խօսեցէք , և ի՛նչ որ ականջն 'ի
վար կը լսէք , տանիքներուն վրայ
28 քարոզեցէք ։ Ու մի՛ վախնաք ա-
նոնցմէ՝ որ մարմինը կը սպաննեն ,
ու չեն կրնար հոգին սպաննել .
հապա աւելի անկէ վախցէք դուք ,
որ կրնայ հոգին ու մարմինը գեհենին
29 մէջ կորսնցընել ։ Չէ՞ որ երկու
ճնճղուկ մէկ դանկի կը ծախուին ,
և անոնցմէ մէկը գետինը չիյնար
30 առանց ձեր Հօրը ։ Բայց ձեր
գլխուն բոլոր մազերն ալ համրուած
31 են ։ Ուրեմն մի՛ վախնաք , ինչու
որ շատ ճնճղուկներէն լաւ էք դուք ։
32 Արդ ով որ մարդոց առջև զիս կը
դաւանի , ես ալ անիկայ պիտի
դաւանիմ իմ Հօրս առջևը որ եր-
33 կինքն է . Ու ով որ մարդոց առջև
զիս կ՚ուրանայ , ես ալ անիկայ պի-
տի ուրանամ իմ Հօրս առջևը որ
երկինքն է ։ Մի՛ կարծէք թէ ես 34
երկրի վրայ խաղաղութիւն ձգելու
եկայ . խաղաղութիւն ձգելու չե-
կայ , հապա սուր . Ինչու որ եկայ 35
մարդը իր հօրմէն զատելու , ու աղ-
ջիկը՝ իր մօրմէն , ու հարսը՝ իր կե-
սուրէն . Ու մարդուն թշնամիները 36
իր ընտանիքը պիտի ըլլան ։ Ան որ 37
հայրը կամ մայրը ինծմէ աւելի կը
սիրէ , ինծի արժանի չէ՛ . և ան որ
տղան կամ աղջիկը ինծմէ աւելի կը
սիրէ , ինծի արժանի չէ՛ . Ու ան 38
որ իր խաչը չառներ ու իմ ետևէս
գար , ինծի արժանի չէ՛ ։ Ան որ 39
իր անձը կը գտնէ , պիտի կորսնը-
ցընէ զանիկայ . և ան որ իր անձը
ինծի համար կը կորսնցընէ , պիտի
գտնէ զանիկայ ։ Ան որ ձեզ կ՚ըն- 40
դունի , զիս կ՚ընդունի . և ան որ
զիս կ՚ընդունի , զիս խրկողը կ՚ըն-
դունի ։ Ան որ մարգարէ մը կ՚ըն- 41
դունի մարգարէի անունով , մար-
գարէի վարձք կ՚առնէ . և ան որ
արդար մը կ՚ընդունի արդարի ա-
նունով , արդարի վարձք կ՚առնէ ։
Ու ան որ աս պզտիկներէն մէկուն 42
միայն գաւաթ մը պաղ ջուր կը
խմցընէ աշակերտի անունով , ճըշ-
մարիտ կ՚ըսեմ ձեզի , բնաւ իր
վարձքը պիտի չկորսնցընէ ։

## ԳԼ . ԺԱ

Ու եղաւ որ երբ Յիսուս լմնցուց 1
իր տասուերկու աշակերտներուն
պատուէր տալը , գնաց անկէ ա-
նոնց քաղաքներուն մէջ քարոզելու
և սորվեցընելու ։
Իսկ Յովհաննէս բանտին մէջը 2
երբոր լսեց Քրիստոսի գործքերը ,
իր աշակերտներէն երկուքը խրկե-
լով՝ Ըսաւ անոր , Դուն ա՞ն ես որ 3
գալու էիր , թէ ուրիշ մը սպա-
սենք ։ Ու Յիսուս պատասխան 4
տալով՝ անոնց ըսաւ , Գացէ՛ք
պատմեցէ՛ք Յովհաննէսին ինչ որ
կը լսէք ու կը տեսնէք . Կոյրերը 5
կը տեսնեն , կաղերը կը քալեն ,
բորոտները կը մաքրուին , խուլերը
կը լսեն , մեռելները յարութիւն
կ՚առնեն ու աղքատներուն աւե-
տարան կը քարոզուի ։ Ու երանի 6

անոր որ իմ վրայովս չգայթակ-
ղի :
7 Ու երբոր անոնք գացին, Յիսուս
սկսաւ ժողովուրդներուն ըսել Յով-
հաննէսին համար. Ի՞նչ տեսնե-
լու ելաք անապատին մէջ. եղէ՞գ
8 մը հովէն շարժուած : Հապա ի՞նչ
տեսնելու ելաք. փափուկ հանդերձ-
ներ հագած մա՞րդ մը. ահա փա-
փուկ հանդերձներ հագնողները թա-
9 գաւորաց տուներն են : Հապա
ի՞նչ տեսնելու ելաք. մարգարէ՞.
այո՛ կ'ըսեմ ձեզի, մարգարէէ մըն
10 ալ աւելի : Ինչու որ ասիկա է՝
որուն համար գրուած է. Ահա ես
իմ դեսպանս կը խրկեմ քու երե-
սիդ առջեւէն, որ քու ճամբադ պի-
տի պատրաստէ քու առջեւդ :
11 Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Կնիկնե-
րէն ծնածներուն մէջը Յովհաննէս
Մկրտիչէն մեծը ելած չէ. սակայն
երկնից թագաւորութեանը մէջ
12 պզտիկ եղողը՝ անկէ մեծ է : Ու
Յովհաննէս Մկրտիչին օրերէն մինչեւ
հիմա երկնից թագաւորութիւնը
ուժով կ'առնուի, և ուժեղները
13 կը յափշտակեն անիկա : Ինչու որ
բոլոր մարգարէները ու օրէնքը մին-
չեւ Յովհաննէս մարգարէութիւն ը-
14 րին. Ու եթէ կ'ուզէք ընդունիլ,
անիկա է Եղիան՝ որ պիտի գար :
15 Ան որ լսելու ականջ ունի, թող
16 լսէ : Բայց որո՞ւ նմանցընեմ աս
ազգը. կը նմանի տղոց, որ շու-
կաները նստելով՝ իրենց ընկերնե-
17 րուն կը կանչեն, Ու կ'ըսեն, Փող
հնչեցուցինք ձեզի ու չպարեցիք,
ողբ կարդացինք ձեզի՝ ու լաց չը-
18 րիք : Վասն զի Յովհաննէս եկաւ,
ոչ կ'ուտէր և ոչ կը խմէր, ու
կ'ըսեն, Դեւ կայ անոր ներսի
19 դին : Որդին մարդոյ եկաւ՝ կ'ուտէ
ու կը խմէ, և կ'ըսեն, Ահա ա-
սաղ և արբեցող մարդ մը՝ մաք-
սաւորներու ու մեղաւորներու բա-
րեկամ. և իմաստութիւնը ար-
դարացաւ իր որդւոցմէն :
20 Ան ատենը սկսաւ նախատել ան
քաղաքները, որոնց մէջ գործուեր
էին իր հրաշքներուն շատերը.
21 քանզի չապաշխարեցին. Վա՜յ քեզ՝
Քորազին, վա՜յ քեզ՝ Բեթսայիդա.
Ինչու որ եթէ Տիւրոսի ու Սիդոնի
մէջ եղած ըլլային ան հրաշքները՝
որ ձեր մէջը եղան, շատոնցմէ
քուրձով ու մոխիրով ապաշխարած
պիտի ըլլային : Բայց ձեզի կ'ը- 22
սեմ, Տիւրոսին և Սիդոնին աւելի
դիւրին պիտի ըլլայ դատաստանին
օրը՝ քան թէ ձեզի : Ու դուն 23
Կափառնայում՝ որ մինչեւ երկինքը
բարձրացած ես, մինչեւ դժոխքը
պիտի իջնես, Ինչու որ եթէ Սո-
դոմի մէջ եղած ըլլային ան հրաշք-
ները՝ որ քու մէջդ եղան, իրաւ որ
մինչեւ աս օրս դեռ պիտի մնար :
Բայց ձեզի կ'ըսեմ որ Սոդոմացւոց 24
երկրին աւելի դիւրին պիտի ըլլայ
դատաստանին օրը, քան թէ քե-
զի :
Նոյն ժամանակին պատասխան 25
տուաւ Յիսուս ու ըսաւ, Շնոր-
հակալ եմ քեզմէ ով Հայր՝ Տէր
երկնի և երկրի, որ աս բաները ծա-
ծուկ պահեցիր իմաստուններէն և
գիտուններէն, ու տղոց յայտնե-
ցիր : Այո՛ ով Հայր, ինչու որ 26
քու առջեւդ ասանկ հաճելի եղաւ :
Ամէն բան ինծի տրուեցաւ իմ 27
Հօրմէս, ու մէկը չճանչնար Որդին՝
բայց Հայրը. և մէկը չճանչնար
Հայրը՝ բայց Որդին, և ան՝ որուն
որ Որդին կ'ուզէ յայտնել : Եկէ՛ք 28
ինծի բոլոր յոգնած ու բեռնաւո-
րածներ, և ես ձեզ պիտի հանգ-
չեցընեմ : Իմ լուծս ձեր վրայ ա- 29
ռէք, և ինծմէ սորվեցէք որ հեզ
եմ ու սրտով խոնարհ, և ձեր
անձերուն հանգստութիւն պիտի
գտնէք : Ինչու որ իմ լուծս քաղցր 30
է, և իմ բեռս թեթեւ :

## ԳԼ. ԺԲ

Ան ատենը Յիսուս շաբաթ օրը 1
գնաց արտերուն մէջէն. և իր
աշակերտները անօթեցան, ու սկը-
սան ցորենի հասկեր փրցընել և ու-
տել : Փարիսեցիները երբոր տե- 2
սան, ըսին անոր, Ահա քու աշա-
կերտներդ կը գործեն ինչ որ օրի-
նաւոր չէ շաբաթ օրը գործել : Ան 3
ալ անոնց ըսաւ, Չէ՞ք կարդացեր

որ լսելու ականջ ունի , թող լը-
սէ :
10 Ու աշակերտները մօտենալով՝
ըսին իրեն , Ինչո՞ւ համար առակ-
11 ներով կը խօսիս անոնց : Ան ալ
պատասխան տուաւ ու ըսաւ ա-
նոնց : Անոր համար՝ որ ձեզի տը-
րուած է գիտնալ երկնից թագա-
ւորութեան խորհուրդները , և
12 անոնց տրուած չէ : Վասն զի ով
որ ունի անոր պիտի տրուի՝ ու պի-
տի աւելնայ . և ով որ չունի , ու-
նեցածն ալ անկէ պիտի առնուի :
13 Անոր համար առակներով կը խօսիմ
անոնց , որ կը տեսնեն՝ ու չեն
տեսներ , և կը լսեն՝ ու չեն լսեր
14 ու միտք չեն առներ : Եւ անոնց
վրայ կը կատարուի Եսայիին մար-
գարէութիւնը որ կ'ըսէ , Լսելով
պիտի լսէք՝ ու պիտի չիմանաք , և
տեսնելով պիտի տեսնէք՝ ու պիտի
15 չտեսնէք : Ինչու որ այս ժողո-
վուրդին սիրտը թանձրացաւ , և ի-
րենց ականջներովը ծանր լսեցին ,
ու աչքերնին գոցեցին , որ չըլլայ
թէ բնաւ աչքերով տեսնեն և ա-
կանջներով լսեն և սրտով իմա-
նան ու դարձի գան , և ես անոնք
16 բժշկեմ : Բայց երանի է ձեր աչ-
քերուն որ կը տեսնեն , ու ձեր ա-
17 կանջներուն՝ որ կը լսեն . Վասն զի
ճշմարիտ կ'ըսեմ ձեզի որ շատ
մարգարէներ և արդարներ փափա-
քեցան ձեր տեսածները տեսնելու՝
ու չտեսան , և ձեր լսածները լսելու՝
ու չլսեցին :
18 Ուրեմն դուք սերմնացանին ա-
19 ռակը լսեցէք : Ան ամէնը որ թա-
գաւորութեան խօսքը կը լսէ ու
միտք չառներ , չարը կու գայ ու
անոր սրտին մէջ ցանուածը կը
յափշտակէ . ասիկայ ան է որ ճամ-
20 բուն քովը ցանուեցաւ : Եւ ապա-
ռաժուտ տեղերու վրայ ցանուածը
ան է՝ որ երբ կը լսէ խօսքը , շուտ
մը ուրախութեամբ կ'ընդունի զա-
21 նիկայ . Բայց իր մէջը արմատ չու-
նենալով՝ քիչ ժամանակ կը տևէ .
ու երբոր նեղութիւն կամ հալա-
ծանք ըլլայ խօսքին համար , շուտ
22 մը կը գայթակղի : Եւ փուշերուն
մէջ ցանուածը ան է՝ որ երբ կը
լսէ խօսքը , աշխարհիս զբաղմունքը
և հարստութեան խաբէութիւնը
խօսքը կը խեղդեն , ու կ'ըլլայ ան-
պտուղ : Իսկ աղէկ հողի մէջ 23
ցանուածը ան է՝ որ երբ կը լսէ
խօսքը , միտք կ'առնէ , և պտուղ
կու տայ՝ մէկը հարիւր , մէկը վաթ-
սուն , ու մէկը երեսուն :
Ուրիշ առակ մըն ալ յառաջ 24
բերաւ անոնց ու ըսաւ , Երկնից
թագաւորութիւնը նմանեցաւ մէկ
մարդու մը , որ իր արտին մէջ բա-
րի սերմ ցանեց . Ու երբոր մարդիկ 25
կը քնանային , իր թշնամին եկաւ
ու ցորենին մէջ որոմ ցանեց և
գնաց . Ու երբոր խոտը բուսաւ 26
ու պտուղ բերաւ , անկէ ետև ո-
րոմն ալ երևցաւ : Ուստի տա- 27
նուտիրոջը ծառաները մօտեցան ու
իրեն ըսին , Տէ՛ր , չէ՞ որ դուն քու
արտիդ մէջ բարի սերմ ցանեցիր ,
ուրեմն որոմը ուրկէց ունի : Եւ 28
անիկայ ըսաւ անոնց , Մէկ թշնա-
մի մարդ մը ըրած է ասիկայ . ծա-
ռաները իրեն ըսին , Ուրեմն կ'ու-
զե՞ս որ երթանք անիկայ մէկդի
քաղենք : Ան ալ ըսաւ , Ոչ , 29
չըլլայ թէ որոմը քաղած ատենիդ
ցորենն ալ անոր հետը փրցընէք :
Թո՛ղ տուէք որ երկուքն ալ մէկ- 30
տեղ աճին մինչև հունձքի ատենը .
և հունձքին ատենը հնձողներուն պի-
տի ըսեմ , Առաջ որոմը քաղեցէք ,
և անիկայ խուրձ խուրձ կապեցէք
այրելու համար , իսկ ցորենը իմ
ամբարս ժողվեցէք :
Ուրիշ առակ մըն ալ յառաջ 31
բերաւ անոնց ու ըսաւ , Երկնից
թագաւորութիւնը մանանեխի հա-
տի նման է , զոր որ մարդ մը առաւ՝
իր արտին մէջը ցանեց . Որ ամէն 32
սերմերէն պզտիկ է , ու երբոր աճի՝
ամէն բանջարեղէններէն մեծ է , ու
ծառ կ'ըլլայ , այնպէս որ երկնից
թռչունները կու գան և անոր
ճիւղերուն վրայ կը հանգչին :
Ուրիշ առակ մըն ալ զրուցեց 33
անոնց ու ըսաւ , Երկնից թագա-
ւորութիւնը խմորի նման է , զոր
որ կին մը առաւ՝ երեք գրիւ ալիւ-

րի մէջ պահեց, մինչև որ ամէնն
ալ խմորեցաւ ։
34 Յիսուս այս ամէն բաները առակ-
ներով խօսեցաւ ժողովուրդին, ու
առանց առակի բան մը չէր խօսեր
35 անոնց ․ Որ կատարուի մարգարէին
ձեռքով ըսուած խօսքը ․ Առակ-
ներով պիտի բանամ իմ բերանս,
աշխարհի սկիզբէն 'ի վեր ծած-
կուած բաները յառաջ պիտի բե-
րեմ ։
36 Այն ատենը Յիսուս ժողովուրդ-
ները թողուց, տունը եկաւ ․ և
իր աշակերտները մօտեցան իրեն ու
ըսին, Արտին որոմներուն առակը
37 մեկնէ՛ մեզի ։ Ան ալ պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Բարի
սերմը ցանողը Որդին մարդոյ է ․
38 Եւ արտը աշխարհս է ․ իսկ բարի
սերմը անոնք են որ թագաւորու-
թեանը որդիքն են, բայց որոմը
39 չարին որդիքն են ․ Եւ թշնամին
որ անիկայ ցանեց Սատանան է,
և հունձքը աշխարհիս վերջն է, ու
40 հնձողները հրեշտակներն են ։ Արդ
ինչպէս որ որոմը կը ժողվուի ու
կրակի մէջ կ'այրի, աշխարհիս
վերջն ալ անանկ պիտի ըլլայ ։
41 Որդին մարդոյ իր հրեշտակները
պիտի ղրկէ, ու պիտի ժողվեն ա-
նոր թագաւորութենէն բոլոր գայ-
թակղութիւնները՝ և անոնք որ ա-
42 նօրէնութիւն կը գործեն, Եւ կրա-
կի հնոցին մէջ պիտի ձգեն զանոնք ․
հոն պիտի ըլլայ լալ ու ակռաներ
43 կրճտել ։ Այն ատենը արեւի պէս
պիտի փայլին արդարները իրենց
Հօրը թագաւորութեանը մէջ ։
Ան որ լսելու ականջ ունի, թող
լսէ ։
44 Դարձեալ երկնից թագաւորու-
թիւնը արտի մէջ պահուած գանձի
նման է, որ անիկայ մէկ մարդ մը
գտնելով՝ կը ծածկէ, և ուրախու-
թենէն կ'երթայ բոլոր ունեցածը
կը ծախէ, ու այն արտը կը գնէ ։
45 Դարձեալ երկնից թագաւորու-
թիւնը վաճառական մարդու մը նը-
ման է, որ գեղեցիկ մարգարիտներ
46 կը փնտռէ ․ Եւ մէկ պատուական
մարգարիտ մը գտնելով՝ գնաց իր
բոլոր ունեցածը ծախեց, ու զանի-
կայ գնեց ։
Դարձեալ երկնից թագաւորու- 47
թիւնը ծովը ձգուած ուռկանի մը
նման է, որ ամէն տեսակէն կը ժող-
վէ ․ Որ երբոր լեցուեցաւ՝ ցամաքը 48
հանեցին, ու նստան աղէկները ա-
մաններու մէջ ժողվեցին և անշա-
հը դուրս ձգեցին ։ Անանկ պիտի 49
ըլլայ աշխարհիս վերջը ․ հրեշտակ-
ները պիտի ելլեն՝ ու արդարներուն
մէջէն չարերը պիտի զատեն, Եւ 50
պիտի ձգեն զանոնք կրակի հնոցին
մէջ ․ հոն պիտի ըլլայ լալ ու ակ-
ռաներ կրճտել ։
Ըսաւ անոնց Յիսուս, Հասկը- 51
ցա՞ք այս ամէն բաները ․ ըսին ա-
նոր, Այո՛ Տէր ։ Եւ անիկայ ը- 52
սաւ անոնց, Անոր համար ամէն դը-
պիր որ երկնից թագաւորութեան
աշակերտեալ է, նման է տանուտէր
մարդու մը՝ որ իր գանձէն նոր ու հին
բաներ կը հանէ ։
Եւ երբոր կատարեց Յիսուս այս 53
առակները, անկէ մեկնեցաւ ․ Եւ 54
եկաւ իր գաւառը, ու անոնց կը
սորվեցընէր իրենց ժողովարանին
մէջը ․ մինչև որ կը զարմանային
անոնք ու կ'ըսէին, Ասիկայ ո՞ւսկից
ունի այս իմաստութիւնը և հրաշք-
ները ․ Ասիկայ հիւսին որդին չէ՞ ․ 55
ասոր մայրը Մարիամ չէ՞ կոչուիր,
ու ասոր եղբայրները՝ Յակոբոս և
Յովսէս ու Սիմոն և Յուդա ։
Եւ ասոր քոյրերը՝ ամէնը մեր քովը 56
չե՞ն ․ ալ ինքը ո՞ւսկից ունի այս
ամէն բաները ։ Եւ անոր վրայով 57
կը գայթակղէին ․ բայց Յիսուս ը-
սաւ անոնց, Մարգարէ մը անպա-
տիւ չէ՝ բայց միայն իր գաւառին ու
իր տանը մէջ ։ Եւ հոն շատ հը- 58
րաշքներ չըրաւ անոնց անհաւա-
տութեանը համար ։

## ԳԼ․ ԺԴ

Այն ժամանակը Հերովդէս չորրոր- 1
դապետը Յիսուսին համբաւը
լսեց ․ Եւ իր ծառաներուն ըսաւ, 2
Ասիկայ Յովհաննէս մկրտիչն է ․
անիկայ մեռելներէն յարութիւն ա-

ռած է , և անոր համար հրաշքներ
կ'ըլլան անով :
3 Վասնզի Հերովդէս Յովհաննէսը
բռներ , զանիկայ կապեր ու բանտը
դրեր էր իր եղբօրը Փիլիպպոսին
կնկանը Հերովդիային համար :
4 Վասն զի Յովհաննէս անոր կ'ըսէր ,
Քեզի օրինաւոր չէ անիկայ կնիկ ու-
5 նենալ : Ուստի կ'ուզէր զանիկայ
սպաննել , բայց ժողովուրդէն կը
վախնար , ինչու որ իբրև մարգարէ
6 կ'ընդունէին զանիկայ : Ու երբոր
Հերովդէսին ծննդեան օրը եղաւ ,
Հերովդիային աղջիկը խաղաց հան-
դէսի սրահին մէջ , ու Հերովդէսին
7 հաճելի եղաւ : Ուստի երդումով
խոստացաւ որ տայ անոր ինչ որ
8 ուզելու ըլլայ : Եւ անիկայ առաջ
իր մօրմէն խրատուելով՝ ըսաւ ,
Տուր ինծի հոս Յովհաննէս մկրտի-
չին գլուխը սկուտեղի մը վրայ :
9 Եւ թագաւորը տրտմեցաւ . բայց
երդումներուն համար ու իր հետը
նստողներուն համար հրաման ըրաւ
10 որ տրուի : Եւ մարդ ղրկելով՝
Յովհաննէսը բանտին մէջ գլխա-
11 տեց : Եւ անոր գլուխը սկուտե-
ղով բերուեցաւ ու տրուեցաւ
աղջկանը , ան ալ իր մօրը տա-
12 րաւ : Եւ անոր աշակերտները ե-
կան ու մարմինը վերցընելով թա-
ղեցին , և գացին Յիսուսին պատ-
մեցին :
13 Ու երբոր լսեց Յիսուս , անկէ
նաւով անապատ տեղ մը գնաց ա-
ռանձին . երբոր լսեցին ժողովուրդ-
ները՝ ոտքով անոր ետևէն գացին
իրենց քաղաքներէն :
14 Ու երբոր դուրս ելաւ , շատ ժո-
ղովուրդ տեսնելով խղճաց անոնց
վրայ , ու անոնց հիւանդները բժշկե-
կեց :
15 Եւ իրիկուան ատեն իր աշա-
կերտները իրեն եկան , ու ըսին ,
Հոս անապատ տեղ մըն է , և ժա-
մանակը ուշացած է . արձակէ ժո-
ղովուրդները , որ գիւղերը երթան՝
16 ու իրենց կերակուր գնեն : Եւ
Յիսուս անոնց ըսաւ , Հարկ չէ
որ անոնք երթան , դուք տուէք ա-
17 նոնց որ ուտեն : Անոնք ալ ըսին
անոր , Հոս աւելի բան մը չունինք ,
բայց միայն հինգ նկանակ ու երկու
ձուկ : Ու ըսաւ անոնց , Հոս ինծի 18
բերէք զանոնք : Եւ հրաման ըրաւ 19
որ ժողովուրդները խոտին վրայ նըս-
տին . և հինգ նկանակը ու երկու ձու-
կը առաւ , ու դէպ 'ի երկինքը նայե-
լով օրհնեց , ու կտրելով նկանակնե-
րը աշակերտներուն տուաւ , և ա-
շակերտները ժողովուրդին : Եւ 20
ամէնքը կերան ու կշտացան , և տաս-
ներկու կողով լեցուն՝ աւելցած
կտորուանքները վերցուցին : Եւ 21
անոնք որ կերան , հինգ հազարի
չափ էրիկ մարդիկ էին՝ կնիկներէն
և տղաքներէն 'ի զատ :
Եւ շուտ մը աշակերտները ստի- 22
պեց որ նաւը մտնեն , և իրմէ
առաջ անդիի կողմը անցնին , մինչև
որ ինքը ժողովուրդները արձակէ :
Եւ ժողովուրդները արձակելէն ետե- 23
քը՝ ինքը լեռը ելաւ առանձին ա-
ղօթք ընելու . ու երբոր իրիկուն
եղաւ , հոն մինակ էր . Իսկ նաւը 24
արդէն ծովուն մէջտեղը ալեկոծու-
թեան մէջ էր , ինչու որ հովը դէմ
էր : Ու գիշերուան չորրորդ պա- 25
հուն Յիսուս դէպ 'ի անոնց գնաց՝
ծովուն վրայ քալելով : Եւ աշա- 26
կերտները երբոր անիկայ տեսան՝
որ ծովուն վրայ կը քալէր , խռո-
վեցան , և ըսին թէ աչքի երևոյթ-
բան մըն է . ու վախերնուն կան-
չուըռտեցին : Եւ շուտ մը Յիսուս 27
խօսեցաւ անոնց ու ըսաւ , Քաջ
եղէք՝ ես եմ , մի վախնաք : Պետ- 28
րոս պատասխան տուաւ անոր ու
ըսաւ , Տէր՝ թէ որ դուն ես , հրա-
ման ըրէ ինծի որ քեզի գամ ջուրե-
րուն վրայէն : Ան ալ ըսաւ , 29
Եկուր . Պետրոս ալ նաւէն իջաւ ,
ջուրերուն վրայէն քալեց որ Յի-
սուսի քովը երթայ . Բայց հովը 30
սաստիկ տեսնելով՝ վախցաւ , ու
երբոր սկսաւ ընկղմիլ , աղաղա-
կեց ու ըսաւ , Տէր՝ ազատէ զիս :
Եւ Յիսուս շուտ մը իր ձեռքը եր- 31
կընցուց , բռնեց զանիկայ ու անոր
ըսաւ , Թերահաւատ՝ ինչո՞ւ երկ-
մտեցար : Ու երբոր նաւը ե- 32
լան , հովը դադարեցաւ : Եւ ա- 33

ներն ալ իրենց տէրոջը սեղանէն
ինկած փշրանքներէն կը կերակ-
28 րուին : Ան ատենը Յիսուս պա-
տասխան տալով անոր ըսաւ .
Ո՛վ կին՝ քու հաւատքդ մեծ է .
քու ուզածիդ պէս ըլլայ քեզի . և
նոյն ժամէն անոր աղջիկը բժշկուե-
ցաւ :
29 Ու Յիսուս անկէ գնաց՝ Գալի-
լեայի ծովեզերքը եկաւ, և լեռը
30 ելլելով հոն նստաւ : Ու շատ
ժողովուրդներ իրեն եկան, որ ի-
րենց հետ ունէին կաղեր, կոյրեր,
համրեր, հաշմանդամներ, և ուրիշ
շատեր . ու ձգեցին անոնք Յիսուսի
31 ոտքը, և բժշկեց զանոնք . Այնպէս
որ ժողովուրդները զարմացան, տես-
նելով որ համրերը կը խօսէին,
հաշմանդամները կը բժշկուէին,
կաղերը կը քալէին և կոյրերը կը
տեսնէին, ու Իսրայէլի Աստուածը
կը փառաւորէին :
32 Ու Յիսուս իր աշակերտները
քովը կանչելով՝ ըսաւ : Կը խղճամ
այս ժողովուրդին վրայ ; քանզի որ
հիմա իրեք օր է որ իմ քովս են, և
բան մը չունին ուտելու . ու անոնք
անօթի արձակել չեմ ուզեր, չըլ-
33 լայ որ ճամբան մարին : Իսկ աշա-
կերտները անոր ըսին, Մենք անա-
պատի մէջ ո՞ւստից պիտի ունենանք
այնչափ հաց, որ այսչափ բազմու-
34 թիւնը կշտացընենք : Ու Յիսուս
ըսաւ անոնց ; Քանի՞ նկանակ ու-
նիք . անոնք ալ ըսին ; Եօթը,
35 ու քանի մը մանր ձուկեր : Ու
հրաման ըրաւ ժողովուրդին որ գետ-
36 նին վրայ նստին : Ու եօթը նկա-
նակը և ձուկերը առաւ, գոհացաւ
և կոտրեց ու տուաւ աշակերտնե-
րուն, աշակերտներն ալ՝ ժողովուր-
37 դին : Կերան ամէնքը և կշտա-
ցան, ու եօթը զամբիւղ լեցուն՝
աւելցած կտորուանքները վերցու-
38 ցին : Ու անոնք որ կե-
րան՝ չորս հազար էրիկ մարդիկ
էին կնիկներէն և տղաքներէն ՚ի
զատ :
39 Ու երբոր ժողովուրդը արձակեց,
նաւը մտաւ ու Մագդաղայի սահ-
մանները եկաւ :

## ԳԼ. ԺԶ.

Ու փարիսեցիները ու սադուկե- 1
ցիները քովը եկան՝ փորձելով
իրմէն կ'ուզէին որ երկինքէն նշան
մը ցուցընէ իրենց : Անիկայ պա- 2
տասխան տուաւ ու ըսաւ անոնց,
Երբոր իրիկուն կ'ըլլայ, կ'ըսէք
թէ Պարզ պիտի ըլլայ, քանզի որ
երկինքը կարմրած է : Ու առ- 3
տուանց՝ Այսօր մրրիկ պիտի ըլլայ,
քանզի որ երկինքը մռայլած ու
կարմրած է : Կեղծաւորներ՝ եր-
կինքին երեսը քննելը գիտէք, բայց
ժամանակներուն նշանները չէ՞ք կըր-
նար գիտնալ : Չար ու շնացող 4
ազգը նշան կ'ուզէ . և ուրիշ նշան
պիտի չտրուի անոր, բայց Յովնան
մարգարէին նշանը . և թողուց ա-
նոնք՝ ու գնաց :
Ու երբոր իր աշակերտները ան- 5
դիի կողմը անցան՝ հաց առնելու
մոռցեր էին : Ու Յիսուս անոնց 6
ըսաւ . Նայեցէ՛ք ու զգուշացէ՛ք
փարիսեցւոց և սադուկեցւոց խմո-
րէն : Անոնք մէջերնին կը խորհէին 7
ու կ'ըսէին թէ Հաց չառինք
հետերնիս : Իսկ Յիսուս անոնց 8
խորհուրդը գիտնալով ըսաւ ա-
նոնց, Մէջերնիդ ինչո՞ւ կը խոր-
հիք՝ թերահաւատներ, թէ հաց
չառիք : Տակաւին չէ՞ք հասկընար 9
և չէ՞ք յիշեր հինգ նկանակը՝ հինգ
հազարին, ու քանի՛ կողով վեր-
ցուցիք . Ո՞չ ալ եօթը նկանակը՝ 10
չորս հազարին, ու քանի՛ զամբիւղ
վերցուցիք : Ի՞նչպէս չէք հաս- 11
կընար թէ ես հացի համար չըսի
ձեզի՝ փարիսեցւոց և սադուկեցւոց
խմորէն զգոյշ կենալ : Ան ատենը 12
հասկըցան որ հացի խմորէն զգու-
շանալ չըսաւ, հապա փարիսեցւոց
ու սադուկեցւոց վարդապետութե-
նէն :
Ու Յիսուս Փիլիպպոսի Կեսա- 13
րիային կողմերը երթալով, իր ա-
շակերտներուն հարցուց ու ըսաւ ;
Մարդիկ ո՞վ կ'ըսեն թէ եմ ես
Որդի մարդոյ : Ու անոնք ըսին ; 14
Ոմանք կ'ըսեն թէ Յովհաննէս մկըր-
տիչն ես, ուրիշները՝ Եղիան, ու-

11 առաջ Եղիան գայ։ Պատասխան
տուաւ Յիսուս ու ըսաւ անոնց,
Յիրաւի առաջ Եղիան կու գայ և
12 ամէն բան կարգի կը դնէ։ Բայց
ձեզի կ'ըսեմ որ Եղիան արդէն
եկած է, և անիկայ չճանչցան, հա-
պա ինչ որ ուզեցին՝ ըրին անոր.
անանկ ալ Որդին մարդոյ անոնցմէ
13 պիտի չարչարուի։ Են ատենը
հասկցան աշակերտները, որ Յով-
հաննէս մկրտչին համար ըսաւ ա-
նոնց։
14 Ու երբոր ժողովուրդին քովը ե-
կան, մարդ մը մօտեցաւ անոր, և
ծնկան վրայ գալով՝ կ'ըսէր, Տէր՝
իմ որդւոյս ողորմէ, որ կը լուսնո-
տի և չարաչար կը տանջուի, քան-
զի շատ անգամ կրակի մէջ կ'իյնայ
15 ու շատ անգամ ջուրի մէջ։ Եւ
անիկայ քու աշակերտներուդ բերի,
16 ու չկրցան զանիկայ բժշկել։ Յի-
սուս պատասխան տուաւ ու ըսաւ,
Ո՜վ անհաւատ և խոտորեալ ազգ՝
մինչև ե՞րբ ձեզի հետ պիտի ըլլամ,
մինչև ե՞րբ ձեզի պիտի համբերեմ.
17 զանիկայ հոս ինծի բերէք։ Եւ
Յիսուս սաստեց անոր, ու դևը
անկէ ելաւ, և բժշկուեցաւ տղան
18 նոյն ժամէն։ Են ատենը աշա-
կերտները առանձին Յիսուսի քո-
վը երթալով՝ ըսին, Մենք ինչո՞ւ
19 չկրցանք անիկայ հանել։ Եւ
Յիսուս ըսաւ անոնց, Ձեր թե-
րահաւատութեանը համար. քան-
զի ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Թէ որ
մանանեխի հատի չափ հաւատք ու-
նենաք, աս լեռանս պիտի ըսէք՝
Ասկէ անդին փոխադրուէ, և պիտի
փոխադրուի. ու բան մը անկարելի
20 պիտի չըլլայ ձեզի։ Անկայն աս
տեսակը ուրիշ բանով չելլեր, բայց
միայն աղօթքով և ծոմապահու-
թեամբ։
21 Ու երբոր անոնք Գալիլեայի մէջ
կը պտըտէին՝ Յիսուս ըսաւ անոնց,
Որդին մարդոյ պիտի մատնուի մար-
22 դոց ձեռքը, Եւ զանիկայ պիտի
մեռցընեն, ու երրորդ օրը յարու-
թիւն պիտի առնէ. ու խիստ
տրտմեցան։
23 Երբոր անոնք Կափառնայում ե-
կան, երկդրամեան պահանջող-
ները Պետրոսին եկան ու ըսին,
Ձեր վարդապետը երկդրամեանը
չը՞հատուցաներ. Եւ անիկայ ըսաւ,
Այո, կը հատուցանէ։ Ու երբոր 24
տունը մտաւ, Յիսուս անոր դէմը
ելաւ ու ըսաւ, Քեզի ի՞նչպէս
կ'երևնայ՝ Սիմոն, երկրիս թագա-
ւորները որմէ՞ն կ'առնեն հարկը
կամ տուրքը, իրենց որդիներէ՞ն,
թէ օտարներէն։ Պետրոս անոր 25
ըսաւ թէ Օտարներէն. Յիսուս
անոր ըսաւ, Ուրեմն որդիքը ա-
զատ են։ Բայց չըլլայ որ անոնք 26
գայթակղեցընենք, գնա ծովը և
կարթ ձգէ, ու առջի ձուկը որ
կ'ելլէ՝ առ, և անոր բերանը բանա-
լով՝ սատեր մը պիտի գտնես. զա-
նիկայ առ՝ անոնց տուր ինծի և քե-
զի համար։

## ԳԼ. ԺԸ.

Նոյն ժամանակը աշակերտները 1
Յիսուսի քովը եկան ու ըսին,
Ո՞վ է մեծ երկնից թագաւորու-
թեանը մէջ։ Եւ Յիսուս տղայ 2
մը կանչեց իրեն, զանիկայ անոնց
մէջտեղը կայնեցուց, Ու ըսաւ, 3
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, Թէ որ
դարձի չգաք և տղոց պէս չըլլաք,
երկնից թագաւորութիւնը ընաւ
պիտի չմտնէք։ Ուստի ով որ իր 4
անձը աս տղուն պէս խոնարհեցընէ,
անիկայ է մեծ երկնից թագաւորու-
թեանը մէջ։ Եւ ով որ ասանկ 5
տղայ մը ընդունի իմ անունովս,
զիս կ'ընդունի։ Եւ ով որ գայ- 6
թակղեցընէ աս պզտիկներուն մէկը
որ ինծի կը հաւատան, աղէկ է ա-
նոր՝ որ իր պարանոցէն իշու աղաց-
քի քար մը կախուի, ու ծովուն
անդունդին մէջ ընկղմի։
Վա՜յ աշխարհքին՝ գայթակղու- 7
թիւններու պատճառաւ. վասն զի
հարկ է որ գայթակղութիւնները
գան, բայց վա՜յ այն մարդուն՝ որուն
ձեռքովը գայթակղութիւնը կու
գայ։ Արդ թէ որ քու ձեռքդ կամ 8
ոտքդ քեզ կը գայթակղեցընէ,
կտրէ՛ անիկայ ու քեզմէ ձգէ՛. ա-
ղէկ է քեզի կաղ կամ պակասաւոր

մտնել կեանքը, քան թէ երկու
ձեռք կամ երկու ոտք ունենալով ու
յաւիտենական կրակին մէջը ձը-
9 գուիլ։ Ու թէ որ աչքդ քեզ
կը գայթակղեցընէ, հանէ՛ անիկայ
և քեզմէ ձգէ՛. աղէկ է քեզի մէկ
աչքով կեանքը մտնել, քան թէ
երկու աչք ունենալով ու կրակին
գեհենը ձգուիլ։
10 Զգո՛յշ կեցէք որ չանարգէք ասա
պզտիկներէն մէկը. քանզի կ՚ըսեմ
ձեզի որ երկինքին մէջ անոնց հրեշ-
տակները միշտ կը տեսնեն իմ Հօ-
11 րըս երեսը՝ որ երկինքն է։ Ինչու
որ Որդին մարդոյ եկաւ կորսուածը
փրկելու։ Ի՞նչպէս կ՚երեւնայ ձե-
զի. թէ որ մարդ մը հարիւր ոչխար
ունենայ, և անոնց մէկը մոլորի,
իննսունըինը ոչխարը լեռները չը՞-
ձգեր, ու երթար մոլորածը փնտռը-
13 տեր։ Ու թէ որ գտնելու ըլլայ
զանիկայ, ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի,
որ աւելի ուրախ կ՚ըլլայ անոր վրայ
քան թէ իննսունըինըին որ մոլո-
14 րած չեն։ Նոյնպէս ալ ձեր երկնա-
ւոր Հօրը չհաճիր որ ասա պզտիկ-
ներէն մէկը կորսուի։
15 Թէ որ քու եղբայրդ քեզի դէմ
մեղանչէ, գնա յանդիմանէ՛ անի-
կայ՝ երբոր դուն և ան մինակ էք.
թէ որ քեզի մտիկ ընէ, շահեցար
16 քու եղբայրդ։ Հապա թէ որ
մտիկ չընէ քեզի, քու հետդ մէկ
ուրիշ մը կամ երկուք ալ առ, որ
երկու կամ իրեք վկաներու բերնէն
17 ամէն բան հաստատուի։ Ու թէ
որ անոնց ալ մտիկ չընէ, եկեղե-
ցիի՛ն ըսէ. իսկ թէ որ եկեղեցիին
ալ մտիկ չընէ, հեթանոսի ու մաք-
սաւորի պէս թող ըլլայ քեզի։
18 Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի, Երկ-
րի վրայ ինչ որ կապէք, երկինքի
մէջ կապուած պիտի ըլլայ. ու երկ-
րի վրայ ինչ որ արձակէք, երկին-
քի մէջ արձակուած պիտի ըլլայ։
19 Դարձեալ կ՚ըսեմ ձեզի, Թէ որ
ձեզմէ երկու հոգի երկրի վրայ միա-
բանին ամէն ինչ բանի համար որ
խնդրեն, պիտի ըլլայ անոնց իմ
20 Հօրմէս՝ որ երկինքն է։ Վասնզի
ուր որ երկու կամ իրեք հոգի ժող-
վուած ըլլան իմ անունովս, հոն եմ
ես անոնց մէջը։
Ան ատենը Պետրոս մօտեցաւ ա- 21
նոր ու ըսաւ, Տէր քանի՞ անգամ
թէ որ եղբայրս ինծի դէմ մեղանչէ՝
ներեմ անոր. մինչև եօ՞թը ան-
գամ։ Յիսուս անոր ըսաւ, Քեզի 22
չեմ ըսեր թէ մինչև եօթը անգամ,
հապա մինչև եօթանասուն անգամ
եօթը։ Նոյն համար երկնից թա- 23
գաւորութիւնը կը նմանի թագա-
ւորի մը, որ իր ծառաներէն հաշիւ
առնել ուզեց։ Ու երբոր սկսաւ 24
առնել, տասը հազար տաղանդի
պարտական մը բերուեցաւ իրեն։
Բայց անիկայ վճարելու կարողու- 25
թիւն չունենալով, իր տէրը հրա-
ման ըրաւ որ անիկայ և անոր կինը
ու որդիքը և անոր բոլոր ունեցածը
ծախուի, ու պարտքը վճարուի։
Իսկ ծառան անոր առջևը իյնալով 26
երկրպագութիւն կ՚ընէր ու կ՚ըսէր,
Տէր՝ համբերէ՛ ինծի և ամէնը
քեզի կը վճարեմ։ Ու ան ծա- 27
ռային տէրը վրան խղճալով ար-
ձակեց զանիկայ, ու պարտքը շնոր-
հեց անոր։ Ու նոյն ծառան ելաւ, 28
իր ծառայակիցներէն մէկը գտաւ
որ իրեն հարիւր դահեկան պարտք
ունէր, ու զանիկայ բռնելով կը
խեղդէր ու կ՚ըսէր, Վճարէ՛ ին-
ծի ունեցած պարտքդ։ Ուստի 29
անոր ծառայակիցը անոր ոտքը
ինկաւ, կ՚աղաչէր անոր ու կ՚ը-
սէր, Համբերէ՛ ինծի ու քեզի
կը վճարեմ։ Ու ինքը չէր ու- 30
զեր, հապա գնաց՝ բանտը դրաւ
զանիկայ, մինչև որ պարտքը վը-
ճարէ։ Երբոր իր ծառայակից- 31
ները տեսան եղած բաները, խիստ
տրտմեցան, ու եկան իրենց տիրոջը
հասկըցուցին բոլոր եղածը։ Ան 32
ատենը անոր տէրը կանչեց զանիկայ
ու ըսաւ անոր, Չար ծառայ՝ ան
բոլոր պարտքը ես քեզի շնորհեցի՝
ինծի աղաչելուդ համար. Ուրեմն 33
պէտք չէ՞ր քեզի ալ քու ծառա-
յակցիդ ողորմիլ, ինչպէս որ ես
քեզի ողորմեցայ։ Ու անոր տէ- 34
րը բարկանալով՝ դահիճներուն
մատնեց զանիկայ, մինչև որ բոլոր

35 պարտքը վճարէ ։ Նոյնպէս ալ իմ
երկնաւոր Հայրս պիտի ընէ ձեզի ,
թէ որ ձեր սրտերէն չէք ներեր
ամէն մէկդ իր եղբօրը՝ իրենց յան-
ցանքները ։

## ԳԼ. ԺԹ

1 Ու եղաւ որ երբ Յիսուս աս խօսքե-
րը լմնցուց , Գալիլեայէն ելաւ ,
ու եկաւ Հրէաստանի սահմանները
2 Յորդանանու անդիի կողմը ։ Ու
անոր ետեւէն շատ ժողովուրդներ
գացին , ու հոն բժշկեց զանոնք ։
3 Ու փարիսեցիները անոր մօտե-
նալով , զանիկայ կը փորձէին ու
կ'ըսէին թէ Արժա՞ն է որ մարդ մը
իր կնիկը արձակէ ամէն պատճառի
4 համար ։ Անիկայ ալ պատասխան
տուաւ ու անոնց ըսաւ , Չէ՞ք
կարդացեր թէ ան որ սկիզբէն
ստեղծեց , արու և էգ ստեղծեց զա-
5 նոնք՝ ու ըսաւ ։ Ասոր համար մարդ
իր հայրը ու մայրը պիտի ձգէ և
իր կնկանը պիտի յարի , ու եր-
կուքը մէկ մարմին պիտի ըլլան ։
6 Ուստի ալ երկուք չեն , հապա մէկ
մարմին . ուրեմն ան որ Աստուած
7 միաւորեց՝ մարդ թող չզատէ ։ Ը-
սին իրեն , Հապա Մովսէս ին-
չո՞ւ պատուիրեց արձակման թուղթ
8 տալ և արձակել ։ Ըսաւ անոնց ,
Մովսէս ձեր սրտերուն կարծրու-
թեանը համար ձեզի հրաման տուաւ
կնիկներնիդ արձակել , բայց սկիզ-
9 բէն անանկ չէղաւ ։ Սակայն ձեզի
կ'ըսեմ , Ո՛վ որ առանց պոռնը-
կութեան պատճառի իր կնիկը ար-
ձակէ և ուրիշ մը առնէ , շնութիւն
կ'ընէ . և ով որ արձակուածը առնէ՝
10 շնութիւն կ'ընէ ։ Իր աշակերտա-
ները ըսին իրեն , Թէ որ ասանկ
բան կայ էրկան ու կնկան մէջտեղը՝
11 չամուսնանալը աղէկ է ։ Ու ինքը
անոնց ըսաւ , Ամէնը բաւական չեն
աս բանին , հապա անոնք՝ որոնց
12 տրուած է ։ Ինչու որ կան ներ-
քինիներ , որ իրենց մօրը որովայնէն
անանկ ծնան . և կան ներքինիներ ,
որ մարդոցմէ ներքինի եղան . և
կան ներքինիներ՝ որ ինքզինքնին
ներքինի ըրին երկնից թագաւորու-
թեանը համար . ով որ կրնայ առ-
նել , թող առնէ ։
Ան ատենը մանր տղաք բերուե- 13
ցան իրեն , որ անոնց վրայ ձեռք
դնէ և աղօթք ընէ , ու աշակերտա-
ները կը յանդիմանէին զանոնք ։
Բայց Յիսուս ըսաւ , Թո՛ղ տուէք 14
աս մանր տղոցը , և մի՛ արգիլէք
անոնք ինծի գալէն , ինչու որ երկ-
նից թագաւորութիւնը անանկնե-
րունն է ։ Ու անոնց վրայ ձեռք 15
դնելէն ետեւ գնաց անկէ ։
Ու ահա մէկը մօտենալով՝ ըսաւ 16
անոր , Բարի՛ վարդապետ՝ ինչ
բարի գործ գործեմ , որ յաւիտե-
նական կեանքը ընդունիմ ։ Ու 17
անիկայ ըսաւ անոր , Ինչո՞ւ զիս
բարի կ'անուանես . մէկէն 'ի զատ
բարի չկայ , որ է Աստուած . հապա
թէ որ կ'ուզես կեանքը մտնել ,
պատուիրանքները պահէ՛ ։ Ըսաւ 18
անոր , Որո՞նք . և Յիսուս ըսաւ ,
Ասոնք . Սպանութիւն մի՛ ըներ ,
Շնութիւն մի՛ ըներ , Գողութիւն
մի՛ ըներ ; Սուտ վկայութիւն մի՛
ըներ , Քու հայրդ ու մայրդ պա- 19
տուէ՛ , և Քու ընկերդ քու անձիդ
պէս սիրես ։ Պատանին ըսաւ ա- 20
նոր , Ասոնք ամէնը մանկութենէս
'ի վեր պահեր եմ . ալ ի՞նչ բա-
նով պակաս եմ ։ Ըսաւ անոր 21
Յիսուս , Թէ որ կ'ուզես կատա-
րեալ ըլլալ , գնա ունեցածդ ծա-
խէ՛ և տուր աղքատներուն , ու
երկինքը գանձ պիտի ունենաս , և
եկո՛ւր իմ ետեւէս ։ Երբոր պա- 22
տանին աս խօսքը լսեց՝ տրտմած
գնաց , ինչու որ շատ ստացուածք
ունէր ։
Ու Յիսուս ըսաւ աշակերտնե- 23
րուն , Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի որ
հարուստը դժուարաւ պիտի մտնէ
երկնից թագաւորութիւնը ։ Դար- 24
ձեալ կ'ըսեմ ձեզի , Դիւրին է որ
ուղտը ասեղին ծակէն անցնի , քան
թէ հարուստը Աստուծոյ թագա-
ւորութիւնը մտնէ ։ Աշակերտները 25
երբոր լսեցին , շատ զարմացան ու
ըսին , Ուրեմն ո՞վ կրնայ փրկուիլ ։
Յիսուս անոնց նայելով ըսաւ , 26
Ասիկայ մարդոց կողմանէ անկարելի

խմել այն գաւաթը՝ որ ես պիտի
խմեմ , կամ այն մկրտութիւնովը
մկրտուիլ՝ որ ես պիտի մկրտուիմ .
23 ըսին իրեն , Կրնանք . Եւ ըսաւ ա-
նոնց , Իմ գաւաթս պիտի խմէք ,
և այն մկրտութիւնովը՝ որ ես մկր-
տուելու եմ , պիտի մկրտուիք .
բայց իմ աջ կողմս ու ձախ կողմս
նստիլը՝ իմս չէ տալը , հապա որոնց
որ պատրաստուած է իմ Հօրմէս :
24 Ու երբոր միւս տասը առաքեալները
լսեցին , այն երկու եղբայրներուն
25 նեղացան : Իսկ Յիսուս իրեն
կանչեց զանոնք ու ըսաւ : Գիտէք
որ ազգաց իշխանները կը տիրեն
անոնց , և մեծամեծները կ'իշխեն
26 անոնց . Բայց ձեր մէջը անանկ պի-
տի չըլլայ , հապա ձեզմէ ով որ
մեծ ըլլալ կ'ուզէ , թող անիկայ
27 ձեր սպասաւորը ըլլայ . Ու ձեզմէ
ով որ առաջին ըլլալ կ'ուզէ , թող
28 անիկայ ձեր ծառան ըլլայ . Ինչպէս
Որդին մարդոյ չեկաւ սպասաւորու-
թիւն ընդունելու , հապա սպասա-
ւորութիւն ընելու , և իր կեանքը
շատերուն համար փրկանք տալու :
29 Ու երբոր անոնք Երիքովէն ե-
լան , մեծ բազմութիւն անոր ետևէն
30 գնաց : Եւ ահա Ճամբուն քովը
երկու կոյր նստած էին . երբոր լսե-
ցին թէ Յիսուս կ'անցնի , աղաղա-
կեցին ու ըսին , Ողորմէ մեզի Տէր՝
31 որդի Դաւթի : Եւ բազմու-
թիւնը կը յանդիմանէր զանոնք
որ լռեն . բայց անոնք՝ աւ աւելի
կ'աղաղակէին ու կ'ըսէին , Ողորմէ
32 մեզի Տէր՝ որդի Դաւթի : Եւ
Յիսուս կանգ առնելով կանչեց
զանոնք ու ըսաւ , Ի՞նչ կ'ուզէք
33 որ ձեզի ընեմ : Ըսին անոր , Տէր՝
34 որ աչքերնիս բացուին : Եւ Յի-
սուս խղճալով՝ անոնց աչքերուն
դպաւ . և շուտ մը անոնց աչքերը
բացուեցան , ու անոր ետևէն գա-
ցին :

## ԳԼ . ԻԱ

1 Ու երբոր Երուսաղէմին մօտեցան
ու եկան Բեթփագէ դէպ 'ի
Ձիթենեաց լեռը , այն ատենը Յի-
սուս իր աշակերտներէն երկուքը
խրկեց . Եւ ըսաւ անոնց , Գացէ՛ք 2
առ ձեր դիմացի գեղը , և շուտ մը
պիտի գտնէք կապած էշ մը ու
անոր հետ աւանակ մը . արձակեցէ՛ք
անոնք ու ինծի բերէք . Եւ թէ 3
որ մէկը ձեզի բան մը ըսէ , ըսէ՛ք
թէ՝ Տէրոջը պէտք են . և շուտ մը
անոնք պիտի խրկէ : Ասոր ամէն 4
բաները եղաւ , որ կատարուի մար-
գարէին խօսքը որ կ'ըսէ , Ըսէ՛ք 5
Սիոնի աղջկանը , Ահա քու թա-
գաւորդ քեզի կու գայ , հեզ՝ ու ի-
շու վրայ հեծած՝ և իշու ձագի աւա-
նակի վրայ : Աշակերտները գա- 6
ցին , և ինչպէս որ Յիսուս իրենց
պատուիրեր էր , ըրին . Ու բերին 7
էշը և աւանակը , և անոնց վրայ
իրենց հանդերձները դրին , ու
նստաւ անոնց վրայ : Եւ ժողո- 8
վուրդէն շատերը իրենց հանդերձ-
ները ճամբուն վրայ փռեցին , և ու-
րիշները ծառերէն ճիւղեր կը կտր-
րէին ու ճամբուն վրայ կը տարա-
ծէին : Եւ ժողովուրդները որ 9
առջևէն ու ետևէն կ'երթային ,
կ'աղաղակէին ու կ'ըսէին , Ովս-
աննա Որդւոյ Դաւթի , օրհնեալ
է ան որ Տէրոջը անունովը կու գայ .
Ովսաննա 'ի բարձունս :
Ու երբոր անիկայ Երուսաղէմ 10
մտաւ , բոլոր քաղաքը շարժեցաւ
ու ըսաւ , Ո՞վ է աս : Եւ ժողո- 11
վուրդները ըսին , Անիկայ Յիսուս
մարգարէն է՝ Գալիլեայի Նազարե-
թէն :
Եւ Յիսուս Աստուծոյ տաճարը 12
մտաւ , ու դուրս հանեց ամէն ա-
նոնք որ տաճարին մէջ կը ծախէին
ու կը գնէին , և սակ փոխողնե-
րուն սեղանները ու աղաւնի ծա-
խողներուն աթոռները կործանեց .
Եւ ըսաւ անոնց , Գրուած է թէ 13
Իմ տունս աղօթքի տուն պիտի կո-
չուի , բայց դուք ատիկայ աւազակ-
ներու այր ըրիք :
Եւ տաճարին մէջ կոյրեր ու կա- 14
ղեր եկան իրեն , և բժշկեց զանոնք :
Երբոր քահանայապետները ու դը- 15
պիրները տեսան անոր ըրած հրաշք-
ները , և տղաքը որ տաճարին մէջ
կ'աղաղակէին ու կ'ըսէին , Ովսան-

զանիկայ՝ այգիէն դուրս հանեցին
40 ու սպաննեցին ։ Ուստի երբոր
այգիին տէրը գայ , ի՞նչ պիտի
41 ընէ այն մշակներուն ։ Ըսին իրեն ,
Այն չարերը չարաչար պիտի կոր-
սնցընէ , և այգին պիտի յանձնէ
ուրիշ մշակներու , որոնք պտուղ-
ները իրենց ժամանակին պիտի տան
42 իրեն ։ Ըսաւ անոնց Յիսուս ,
Դուք չէ՞ք կարդացեր գրքին մէջ ,
Այն քարը որ շինողները անարգե-
ցին , անիկայ անկիւնին գլուխը
եղաւ . ասիկայ Տէրոջմէ եղաւ և
43 զարմանալի է մեր աչքերուն . Անոր
համար կ'ըսեմ ձեզի , որ Աստուծոյ
թագաւորութիւնը ձեզմէ պիտի
առնուի , ու անանկ ազգի մը պիտի
տրուի՝ որ անոր պտուղները բերէ ։
44 Եւ ով որ աս քարին վրայ իյնայ՝
պիտի կոտրուի , և որուն վրայ որ
իյնայ՝ պիտի փշրէ զանիկայ ։
45 Ու երբոր քահանայապետները և
փարիսեցիները անոր առակները լը-
սեցին , իմացան որ իրենց համար
46 կ'ըսէր ։ Եւ կը փնտռէին բռ-
նելու զանիկայ , բայց ժո-
ղովուրդէն վախցան ։ Ինչու որ
մարգարէի պէս կ'ընդունէին զա-
նիկայ ։

## ԳԼ. ԻԲ

1 Դարձեալ պատասխան տուաւ Յի-
սուս և առակներով ըսաւ ա-
2 նոնց , Երկնից թագաւորութիւնը
թագաւոր մարդու մը կը նմանի ,
որ իր որդւոյն համար հարսնիք ը-
3 րաւ ։ Եւ իր ծառաները ղրկեց
որ կանչեն հարսնիքի հրաւիրուած-
ները , և անոնք չուզեցին գալ ։
4 Նորէն ուրիշ ծառաներ ղրկեց ու
ըսաւ , Ըսէք հրաւիրուածներուն ,
Ահա իմ ճաշս պատրաստեցի ,
զուարակներս ու գէր կենդանիներս
մորթուած են , և ամէն բան պատ-
5 րաստ է . հարսնիքի եկէք ։ Բայց
անոնք անհոգութիւն ընելով գա-
ցին , մէկը իր արտը , ու մէկալը
6 իր առուտուրին . Եւ ուրիշները
անոր ծառաները բռնեցին , նախա-
7 տեցին ու սպաննեցին ։ Թագա-
ւորն ալ երբոր լսեց՝ բարկացաւ ,
և իր զօրքերը ղրկեց ու այն սպան-
նողները սատկեցուց , ու անոնց
քաղաքը այրեց ։ Այն ատենը իր 8
ծառաներուն ըսաւ , Հարսնիքը
պատրաստ է՝ բայց հրաւիրուածնե-
րը արժանի չէին ։ Ուստի գացէք 9
ճամբու գլուխները , և ով որ գըտ-
նելու ըլլաք՝ հարսնիքի՛ հրաւիրե-
ցէք ։ Եւ այն ծառաները ելան 10
ճամբաներուն վրայ , ու ով որ գը-
տան թէ՛ չար և թէ բարի՝ ա-
մէնն ալ ժողվեցին , ու հարսնիքը
հարսնեւորներով լեցուեցաւ ։ Եւ 11
թագաւորը երբոր մտաւ հարսնե-
ւորները տեսնելու , հոն մէկ մարդ
մը տեսաւ , որ հարսնիքի հանդերձ
հագած չէր . Եւ ըսաւ անոր , 12
Ընկե՛ր՝ ինչո՞ւ համար հոս մտար ,
առանց հարսնիքի հանդերձ ունե-
նալու . և անիկայ պապանձեցաւ ։
Այն ատենը թագաւորը սպասաւոր- 13
ներուն ըսաւ , Կապեցէք ասոր
ոտքերը ու ձեռքերը , և առէք ու
հանեցէք զանիկայ դուրսի խաւա-
րը . հոն պիտի ըլլայ լալ ու ակ-
ռաներ կրճտել . Ինչու որ կան- 14
չուածները շատ են ու ընտրուած-
ները քիչ ։
Այն ատենը փարիսեցիները գա- 15
ցին խորհուրդ ըրին , թէ ինչպէս
անոր որոգայթ մը դնեն խօսքով ։
Եւ իրենց աշակերտները Հերովդէ- 16
սեաններուն հետ մէկտեղ ղրկե-
ցին անոր ու ըսին , Վարդապետ՝
գիտենք որ ճշմարիտ ես , և ճշմար-
տութեամբ Աստուծոյ ճամբան կը
սորվեցընես , ու մէկու մը համար
հոգ չէ , քանզի մարդոց երես-
պաշտութիւն չես ըներ ։ Ուստի 17
մեզի ըսէ՛ , քեզի ի՞նչպէս կ'երեւ-
նայ . Կայսրին տուրք տալ արժա՞ն
է թէ չէ ։ Յիսուս գիտնալով ա- 18
նոնց խորամանկութիւնը՝ ըսաւ ,
Ինչո՞ւ զիս կը փորձէք՝ կեղծաւոր-
ներ . Ցուցուցէք ինծի տուրքին 19
դրամը . և անոնք դահեկան մը բե-
րին իրեն ։ Ու ըսաւ անոնց , Ո- 20
րո՞ւնն է աս պատկերը ու գիրը ։
Ըսին անոր՝ Կայսրին . այն ատենը 21
ըսաւ անոնց , Ուրեմն ան որ կայս-
րինն է՝ կայսրին տուէք , և ան որ

Աստուծոյն է՝ Աստուծոյ տուէք ։
22 Երբոր լսեցին՝ զարմացան, և թո-
ղուցին զանիկայ ու գացին ։
23 Նոյն օրը անոր քովը եկան սա-
դուկեցիները, որոնք կ'ըսեն թէ
յարութիւն չկայ, և անոր հար-
24 ցուցին՝ Ըսելով, Վարդապետ՝
Մովսէս ըսաւ, Թէ որ մէկը ա-
ռանց զաւակի մեռնելու ըլլայ, ա-
նոր եղբայրը առնէ անոր կնիկը, և
25 իր եղբօրը զաւակ հանէ ։ Արդ
եօթը եղբայրներ կային մեր մէջը,
և առջինը կնիկ առաւ ու մեռաւ,
և զաւակ չունենալուն համար՝ իր
26 կնիկը ձգեց իր եղբօրը ։ Նոյնպէս
ալ երկրորդը՝ ու երրորդը՝ մինչև
27 եօթներորդը ։ Ամենէն ետքը կնիկն
28 ալ մեռաւ ։ Ուրեմն յարութեան
ատենը այն եօթնէն որո՞ւն կնիկը
պիտի ըլլայ, ինչու որ ամէնքն ալ
29 զանիկայ կնի՞կ ունեցան ։ Եւ Յի-
սուս պատասխան տալով՝ անոնց ը-
սաւ, Դուք մոլորած էք, որ ոչ
գիրքերը գիտէք՝ և ոչ Աստուծոյ
30 զօրութիւնը. Վասնզի յարութեան
ատենը ոչ կնիկ կ'առնեն՝ և ոչ
էրկան կը տրուին, հապա երկինքի
մէջ Աստուծոյ հրեշտակներուն պէս
31 են ։ Բայց մեռելներուն յարու-
թիւն առնելուն համար՝ չէ՞ք կար-
դացեր Աստուծմէ ձեզի ըսուած
32 խօսքը. Ես եմ Աբրահամին Աս-
տուածը, և Իսահակին Աստուա-
ծը, ու Յակոբին Աստուածը.
Աստուած մեռելներուն Աստուածը
33 չէ, հապա կենդանիներուն ։ Ու
ժողովուրդները լսելով՝ կը զարմա-
նային անոր վարդապետութեանը
վրայ ։
34 Բայց փարիսեցիները երբոր լսե-
ցին թէ անիկայ պապանձեցուց
սադուկեցիները, մէկտեղ ժող-
35 վուեցան. Եւ անոնցմէ մէկը՝ օրէ-
նական մը հարցուց՝ զանիկայ փոր-
36 ձելով, ու ըսաւ, Վարդապետ՝
ո՞ր պատուիրանքը մեծ է օրէնքին
37 մէջ ։ Եւ Յիսուս ըսաւ անոր,
Քու Տէր Աստուածդ սիրես քու
բոլոր սրտովդ և քու բոլոր անձովդ
38 ու քու բոլոր մտքովդ. Աս է առա-
39 ջին ու մեծ պատուիրանքը ։ Ու
երկրորդը ասոր նման՝ Քու ընկերդ
սիրես քու անձիդ պէս ։ Աս երկու 40
պատուիրանքէս կախուած են բոլոր
օրէնքը և մարգարէները ։
Ու երբոր փարիսեցիները ժող- 41
վուեցան, Յիսուս հարցուց անոնց
ու ըսաւ, Քրիստոսի վրայով ի՞նչ 42
կարծիք ունիք. անիկայ որո՞ւ որ-
դին է ։ Ըսին իրեն, Դաւիթին ։ 43
ըսաւ անոնց Յիսուս, Հապա
ի՞նչպէս Դաւիթ Հոգիով զանի-
կայ Տէր կը կոչէ ու կ'ըսէ, Տէրը 44
իմ Տէրոջս ըսաւ, Նստէ իմ աջ
կողմս, մինչև որ քու թշնամիներդ
ոտքերուդ պատուանդան ընեմ ։
Ուրեմն թէ որ Դաւիթ զանիկայ 45
Տէր կը կոչէ, ի՞նչպէս անիկայ ա-
նոր որդին կ'ըլլայ ։ Եւ մէկը չէր 46
կրնար անոր խօսք մը պատասխա-
նել. ու այն օրէն ետև մէկը չէր
համարձակեր անոր բան մը հարցը-
նելու ։

## ԳԼ. ԻԳ

Այն ատենը Յիսուս խօսեցաւ ժո- 1
ղովուրդներուն և իր աշակերտ-
ներուն ու ըսաւ, Մովսէսին աթո- 2
ռը դպիրները և փարիսեցիները
նստած են. Ուրեմն ինչ որ ձեզի 3
կ'ըսեն որ պահէք, պահեցէ՛ք ու
ըրէ՛ք, բայց անոնց գործքերուն պէս
մի՛ ընէք. ինչու որ կ'ըսեն ու չեն
ըներ ։ Վասնզի ծանր և տանելու 4
դժուար բեռներ կը կապեն ու կը
դնեն մարդոց ուսերուն վրայ, և
իրենց մատովը չեն ուզեր զանոնք
շարժել ։ Եւ իրենց ամէն գործ- 5
քերը մարդոց երևնալու համար
կ'ընեն. կը լայնցընեն իրենց գրա-
պանակները, ու կ'երկընցընեն ի-
րենց հանդերձներուն քղանցքները.
Ընթրիքներու մէջ առաջին բազ- 6
մոցները կը սիրեն, և ժողովարան-
ներուն մէջ առաջին աթոռները, ու
շուկաներուն մէջ բարևները, Եւ 7
մարդոցմէ Ռաբբի՛ Ռաբբի՛ կոչուիլ ։
Բայց դուք Ռաբբի մի՛ կոչուիք, 8
ինչու որ ձեր ուսուցիչը մէկ մըն է,
այսինքն Քրիստոս, և դուք ամէնքդ
եղբայր էք ։ Ու երկրի վրայ մէկը 9
ձեզի Հայր մի՛ կոչէք, ինչու որ ձեր

11 առաջ Եղիան գայ ։ Պատասխան
տուաւ Յիսուս ու ըսաւ անոնց ,
Յիրաւի առաջ Եղիան կու գայ և
12 ամէն բան կարգի կը դնէ ։ Բայց
ձեզի կ'ըսեմ որ Եղիան արդէն
եկած է , և անիկայ չճանչցան , հա-
պա ինչ որ ուզեցին՝ ըրին անոր ․
անանկ ալ Որդին մարդոյ անոնցմէ
13 պիտի չարչարուի ։ Ան ատենը
հասկըցան աշակերտները , որ Յով-
հաննէս մկրտչին համար ըսաւ ա-
նոնց ։
14 Ու երբոր ժողովուրդին քովը ե-
կան , մարդ մը մօտեցաւ անոր , և
ծնկան վրայ գալով՝ կ'ըսէր , Տէ՛ր
իմ որդւոյս ողորմէ , որ կը լուսնո-
տի և չարաչար կը տանջուի , քան-
զի շատ անգամ կրակի մէջ կ'իյնայ
15 ու շատ անգամ ջուրի մէջ ։ Եւ
անիկայ քու աշակերտներուդ բերի ,
16 ու չկրցան զանիկայ բժշկել ։ Յի-
սուս պատասխան տուաւ ու ըսաւ ,
Ո՛վ անհաւատ և խոտորեալ ազգ՝
մինչև ե՞րբ ձեզի հետ պիտի ըլլամ ,
մինչև ե՞րբ ձեզի պիտի համբերեմ ․
17 զանիկայ հոս ինծի բերէք ։ Եւ
Յիսուս սաստեց անոր , ու դևը
անկէ ելաւ , և բժշկուեցաւ տղան
18 նոյն ժամէն ։ Ան ատենը աշա-
կերտները առանձին Յիսուսի քո-
վը երթալով՝ ըսին , Մենք ինչո՞ւ
19 չկրցանք անիկայ հանել ։ Եւ
Յիսուս ըսաւ անոնց , Ձեր թե-
րահաւատութեանը համար ․ քան-
զի ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , Թէ որ
մանանեխի հատի չափ հաւատք ու-
նենաք , աս լերանս պիտի ըսէք՝
Ասկէ անդին փոխադրուէ , և պիտի
փոխադրուի ․ ու բան մը անկարելի
20 պիտի չըլլայ ձեզի ։ Սակայն աս
տեսակը ուրիշ բանով չելլեր , բայց
միայն աղօթքով և ծոմապահու-
թեամբ ։
21 Ու երբոր անոնք Գալիլեայի մէջ
կը պտըտէին՝ Յիսուս ըսաւ անոնց ,
Որդին մարդոյ պիտի մատնուի մար-
22 դոց ձեռքը , Եւ զանիկայ պիտի
մեռցընեն , ու երրորդ օրը յարու-
թիւն պիտի առնէ ․ ու խիստ
տրտմեցան ։
23 Երբոր անոնք Կափառնայում ե-
կան , երկդրամեան պարտը առնող-
ները Պետրոսին եկան ու ըսին ,
Ձեր վարդապետը երկդրամեանը
չը՞ հատուցաներ ․ և անիկայ ըսաւ ,
Այո , կը հատուցանէ ։ Ու երբոր 24
տունը մտաւ , Յիսուս անոր դէմը
ելաւ ու ըսաւ , Քեզի ի՞նչպէս
կ'երևնայ՝ Սիմոն , երկրիս թագա-
ւորները որմէ՞ն կ'առնեն հարկը
կամ տուրքը , իրենց որդիներէ՞ն ,
թէ օտարներէն ։ Պետրոս անոր 25
ըսաւ թէ Օտարներէն ․ Յիսուս
անոր ըսաւ , Ուրեմն որդիքը ա-
զատ են ։ Բայց չըլլայ որ անոնք 26
գայթակղեցընենք , գնա ծովը և
կարթ ձգէ , ու առջի ձուկը որ
կ'ելլէ՝ առ , և անոր բերանը բանա-
լով՝ սատեր մը պիտի գտնես ․ զա-
նիկայ առ՝ անոնց տուր ինծի և քե-
զի համար ։

## ԳԼ․ ԺԸ

Նոյն ժամանակը աշակերտները 1
Յիսուսի քովը եկան ու ըսին ,
Ո՞վ է մեծ երկնից թագաւորու-
թեանը մէջ ։ Եւ Յիսուս տղայ 2
մը կանչեց իրեն , զանիկայ անոնց
մէջտեղը կայնեցուց , Ու ըսաւ , 3
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , Թէ որ
դարձի չգաք և տղոց պէս չըլլաք ,
երկնից թագաւորութիւնը բնաւ
պիտի չմտնէք ։ Ուստի ով որ իր 4
անձը աս տղուն պէս խոնարհեցընէ ,
անիկայ է մեծ երկնից թագաւորու-
թեանը մէջ ։ Եւ ով որ ասանկ 5
տղայ մը ընդունի իմ անունովս ,
զիս կ'ընդունի ։ Եւ ով որ գայ- 6
թակղեցընէ աս պզտիկներուն մէկը
որ ինծի կը հաւատան , աղէկ է ա-
նոր՝ որ իր պարանոցէն իշու աղօրյ-
քի քար մը կախուի , ու ծովուն
անդունդքին մէջ ընկղմի ։
Վա՜յ աշխարհին՝ գայթակղու- 7
թիւններու պատճառաւ ․ վասն զի
հարկ է որ գայթակղութիւնները
գան , բայց վա՜յ ան մարդուն՝ որուն
ձեռքովը գայթակղութիւնը կու
գայ ։ Արդ թէ որ քու ձեռքդ կամ 8
ոտքդ քեզ կը գայթակղեցընէ ,
կտրէ՛ անիկայ ու քեզմէ ձգէ՛ ․ ա-
ղէկ է քեզի կաղ կամ պակասաւոր

անմտել կեանքը , քան թէ երկու
ձեռք կամ երկու ոտք ունենալ ու
յաւիտենական կրակին մէջը ձը-
9 գուիլ : Նաև թէ որ աչքդ քեզ
կը գայթակղեցնէ , հանէ' անիկայ
և քեզմէ ձգէ' . աղէկ է քեզի մէկ
աչքով կեանքը մտնել , քան թէ
երկու աչք ունենալ ու կրակին
գեհենին ձգուիլ :
10 Զգո՛յշ կեցէք որ չանարգէք աս
պզտիկներէն մէկը . քանզի կ'ըսեմ
ձեզի որ երկինքի մէջ անոնց հրեշ-
տակները միշտ կը տեսնեն իմ Հօ-
11 րըս երեսը՝ որ երկինքն է : Ինչու
որ Որդին մարդոյ եկաւ կորսուածը
փրկելու : Ի՞նչպէս կ'երևնայ ձե-
զի . թէ որ մարդ մը հարիւր ոչխար
ունենայ , և անոնց մէկը մոլորի ,
իննսունըինը ոչխարը լեռները չթո՞-
ղուր , ու երթար մոլորածը փնտր-
13 ուեր : Նաև թէ որ գտնելու ըլլայ
զանիկայ , ճշմարիտ կ'ըսեմ ձեզի ,
որ աւելի ուրախ կ'ըլլայ անոր վրայ
քան թէ իննսունըիննին որ մոլո-
14 րած չեն : Նոյնպէս ալ ձեր երկնա-
ւոր Հայրը չհաճիր որ աս պզտիկ-
ներէն մէկը կորսուի :
15 Թէ որ քու եղբայրդ քեզի դէմ
մեղանչէ , գնա յանդիմանէ' զանի-
կայ՝ երբոր դուն և ան միայնակ էք .
թէ որ քեզի մտիկ ընէ , շահեցար
16 քու եղբայրդ : Հապա թէ որ
մտիկ չընէ քեզի , քու հետդ մէկ
ուրիշ մը կամ երկու ալ առ , որ
երկու կամ երեք վկաներու բերնէ
17 ամէն բան հաստատուի : Նաև թէ
որ անոնց ալ մտիկ չընէ , եկեղե-
ցիի՛ն ըսէ . իսկ թէ որ եկեղեցիին
ալ մտիկ չընէ , հեթանոսի ու մաք-
սաւորի պէս թող ըլլայ քեզի :
18 Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , Երկի-
րի վրայ ինչ որ կապէք , երկինքի
մէջ կապուած պիտի ըլլայ . ու երկ-
րի վրայ ինչ որ արձակէք , երկին-
քի մէջ արձակուած պիտի ըլլայ :
19 Դարձեալ կ'ըսեմ ձեզի , Թէ որ
ձեզմէ երկու հոգի երկրի վրայ միա-
բանին ամէն ինչ բանի համար որ
խնդրեն , պիտի ըլլայ անոնց իմ
20 Հօրմէս՝ որ երկինքն է : Վասնզի
ուր որ երկու կամ երեք հոգի ժող-
վուած ըլլան իմ անունովս , հոն եմ
ես անոնց մէջը :
Ան ատենը Պետրոս մօտեցաւ ա- 21
նոր ու ըսաւ , Տէր քանի՞ անգամ
թէ որ եղբայրս ինծի դէմ մեղանչէ՝
ներեմ անոր . մինչև եօ՞թը ան-
գամ : Յիսուս անոր ըսաւ , Չեմ 22
ըսեր թէ մինչև եօթը անգամ ,
հապա մինչև եօթանասուն անգամ
եօթը : Անոր համար երկնից թա- 23
գաւորութիւնը կը նմանի թագա-
ւորի մը , որ իր ծառաներէն հաշիւ
առնել ուզեց : Ու երբոր սկսաւ 24
առնել , տասը հազար տաղանդի
պարտական մը բերուեցաւ իրեն :
Ու այս անիկայ վճարելու կարողու- 25
թիւն չունենալով , իր տէրը հրա-
ման ըրաւ որ անիկայ և անոր կինը
ու որդիքը և անոր բոլոր ունեցածը
ծախուի , ու պարտքը վճարուի :
Իսկ ծառան անոր առջևը իյնալով 26
երկրպագութիւն կ'ընէր ու կ'ըսէր ,
Տէ՛ր՝ համբերէ՛ ինծի և ամէնը
քեզի կը վճարեմ : Նաև ան ծա- 27
ռային տէրը վրան խղճալով ար-
ձակեց զանիկայ , ու պարտքը շնոր-
հեց անոր : Նաև նոյն ծառան ելաւ , 28
իր ծառայակիցներէն մէկը գտաւ
որ իրեն հարիւր դահեկան պարտք
ունէր , ու զանիկայ բռնելով կը
խեղդէր ու կ'ըսէր , Վճարէ՛ ին-
ծի ունեցած պարտքդ : Ուստի 29
անոր ծառայակիցը անոր ոտքը
իյնալով , կ'աղաչէր անոր ու կ'ը-
սէր , Համբերէ՛ ինծի ու քեզի
կը վճարեմ : Նաև ինքը չէր ու- 30
զեր , հապա գնաց՝ բանտը դրաւ
զանիկայ , մինչև որ պարտքը վը-
ճարէ : Երբոր իր ծառայակից- 31
ները տեսան եղած բաները , խիստ
տրտմեցան , ու եկան իրենց տիրոջը
հասկցուցին բոլոր եղածը : Ան 32
ատենը անոր տէրը կանչեց զանիկայ
ու ըսաւ անոր , Չար ծառայ՝ ան
բոլոր պարտքը ես քեզի շնորհեցի՝
ինծի աղաչելուդ համար . Ուրեմն 33
պէտք չէ՞ր քեզի ալ քու ծառա-
յակիցիդ ողորմիլ , ինչպէս որ ես
քեզի ողորմեցայ : Նաև անոր տէ- 34
րը բարկանալով՝ դահիճներուն
մատնեց զանիկայ , մինչև որ բոլոր

35 պարտքը վճարէ ։ Ասանկ ալ իմ
երկնաւոր Հայրս պիտի ընէ ձեզի ,
թէ որ ձեր սրտերէն չէք ներեր
ամէն մէկդ իր եղբօրը իրենց յան-
ցանքները ։

## ԳԼ. ԺԹ

1 Եւ եղաւ որ երբ Յիսուս աս խօսքե-
րը լմնցուց , Գալիլեայէն ելաւ ,
ու եկաւ Հրէաստանի սահմանները
2 Յորդանանու անդիի կողմը ։ Եւ
անոր ետեւէն շատ ժողովուրդներ
գացին , ու հոն բժշկեց զանոնք ։
3 Եւ փարիսեցիները անոր մօտե-
նալով , զանիկայ կը փորձէին ու
կ'ըսէին թէ Արժա՞ն է որ մարդ մը
իր կնիկը արձակէ ամէն պատճառի
4 համար ։ Անիկայ ալ պատասխան
տուաւ ու անոնց ըսաւ , Չէ՞ք
կարդացեր թէ ան որ սկիզբէն
ստեղծեց , արու և էգ ստեղծեց զա-
5 նոնք՝ ու ըսաւ ։ Ասոր համար մարդ
իր հայրը ու մայրը պիտի ձգէ և
իր կնկանը պիտի յարի , ու եր-
կուքը մէկ մարմին պիտի ըլլան ։
6 Ասոր ալ երկուք չեն , հապա մէկ
մարմին ։ ուրեմն ան որ Աստուած
7 միաւորեց՝ մարդ թող չզատէ ։ Ը-
սին իրեն , Հապա Մովսէս ին-
չո՞ւ պատուիրեց արձակման թուղթ
8 տալ և արձակել ։ Ըսաւ անոնց ,
Մովսէս ձեր սրտերուն կարծրու-
թեանը համար ձեզի հրաման տուաւ
կնիկներնիդ արձակել , բայց սկիզ-
9 բէն անանկ չէղաւ ։ Սակայն ձեզի
կ'ըսեմ , Ո՛վ որ առանց պոռնը-
կութեան պատճառի իր կնիկը ար-
ձակէ և ուրիշ մը առնէ , շնութիւն
կ'ընէ ։ և ով որ արձակուածը առնէ՝
10 շնութիւն կ'ընէ ։ Իր աշակերտ-
ները ըսին իրեն , Եթէ որ ասանկ
բան կայ էրկան ու կնկան մէջտեղը՝
11 չամուսնանալը աղէկ է ։ Եւ ինքը
անոնց ըսաւ ։ Ամէնը բաւական չեն
աս բանին , հապա անոնք՝ որոնց
12 տրուած է ։ Ինչու որ կան ներ-
քինիներ , որ իրենց մօրը որովայնէն
անանկ ծնան ։ և կան ներքինիներ ,
որ մարդոցմէ ներքինի եղան ։ և
կան ներքինիներ՝ որ ինքզինքնին
ներքինի ըրին երկնից թագաւորու-
թեանը համար ։ Ով որ կրնայ առ-
նել , թող առնէ ։
Ան ատենը մանր տղաք բերուե- 13
ցան իրեն , որ անոնց վրայ ձեռք
դնէ և աղօթք ընէ , ու աշակերտ-
ները կը յանդիմանէին զանոնք ։
Բայց Յիսուս ըսաւ , Թո՛ղ տուէք 14
որ մանր տղաքը , և մի՛ արգիլէք
զանոնք ինծի գալէն ։ ինչու որ երկ-
նից թագաւորութիւնը ասանկնե-
րունն է ։ Եւ անոնց վրայ ձեռք 15
դնելէն ետեւ գնաց անկէ ։
Եւ ահա մէկը մօտենալով՝ ըսաւ 16
անոր , Բարի վարդապետ՝ ինչ
բարի գործ գործեմ , որ յաւիտե-
նական կեանքը ընդունիմ ։ Եւ 17
անիկայ ըսաւ անոր , Ինչո՞ւ զիս
բարի կ'անուանես ։ մէկէն 'ի զատ
բարի չկայ , որ է Աստուած ։ հապա
թէ որ կ'ուզես կեանքը մտնել ,
պատուիրանքները պահէ ։ Ըսաւ 18
անոր , Որո՞նք ։ և Յիսուս ըսաւ ,
Ասոնք ։ Սպանութիւն մի՛ ըներ ,
Շնութիւն մի՛ ըներ , Գողութիւն
մի՛ ըներ ; Սուտ վկայութիւն մի՛
ըներ , Քու հայրդ ու մայրդ պա- 19
տուէ , և Քու ընկերդ քու անձիդ
պէս սիրես ։ Պատանին ըսաւ ա- 20
նոր , Ասոնք ամէնը մանկութենէս
'ի վեր պահեր եմ ։ ալ ի՞նչ բա-
նով պակաս եմ ։ Ըսաւ անոր 21
Յիսուս , Եթէ որ կ'ուզես կատա-
րեալ ըլլալ , գնա ունեցածդ ծա-
խէ և տուր աղքատներուն , ու
երկինքը գանձ պիտի ունենաս , և
եկուր իմ ետեւս ։ Երբոր պա- 22
տանին աս խօսքը լսեց՝ տրտմած
գնաց , ինչու որ շատ ստացուածք
ունէր ։
Եւ Յիսուս ըսաւ աշակերտնե- 23
րուն , Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի որ
հարուստը դժուարաւ պիտի մտնէ
երկնից թագաւորութիւնը ։ Դար- 24
ձեալ կ'ըսեմ ձեզի , Դիւրին է որ
ուղտը ասեղին ծակէն անցնի , քան
թէ հարուստը Աստուծոյ թագա-
ւորութիւնը մտնէ ։ Աշակերտները 25
երբոր լսեցին , շատ զարմացան ու
ըսին , Ուրեմն ո՞վ կրնայ փրկուիլ ։
Յիսուս անոնց նայելով ըսաւ , 26
Ասիկայ մարդոց կողմանէ անկարելի

է՝ բայց Աստուծոյ կողմանէ ամէն
բան կարելի է ։
27 Այն ատենը Պետրոս պատասխան
տուաւ ու ըսաւ անոր ։ Ահա՛ մենք
ամէն բան թողուցինք և քու ետե-
ւէդ եկանք . ուստի մեզի ի՞նչ պի՛-
28 տի ըլլայ ։ Ըսաւ անոնց Յիսուս ,
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , թէ դուք
որ իմ ետեւէս եկաք , միւսանգամ
գալուստին երբոր Որդին մարդոյ իր
փառաց աթոռը նստի , դուք ալ
տասնուերկու աթոռներու վրայ պի-
տի նստիք՝ Իսրայէլի տասնուերկու
29 ցեղերը դատելու ։ Ու ամէն որ
թողուց տուներ , կամ եղբայրներ ,
կամ քոյրեր , կամ հայր , կամ
մայր , կամ կին , կամ որդիներ ,
կամ արտեր՝ իմ անուանս համար ,
հարիւրապատիկ պիտի առնէ , և
յաւիտենական կեանք պիտի ժա-
30 ռանգէ ։ Բայց շատ առաջիններ
պիտի ըլլան յետին , և յետիններ՝
առաջին ։

## ԳԼ. Ի

1 Վասնզի երկնից թագաւորութիւ-
նը տանուտէր մարդու մը նման
է , որ առտուանց կանուխ ելաւ՝ իր
այգիին համար բանւորներ բռնե-
2 լու ։ Ու բանւորներուն հետ օրը
մէկ դահեկանի մը խօսք կապեց , ու
3 ղրկեց զանոնք իր այգին ։ Ու
ժամը իրեքին ատենները ելաւ՝ ու-
րիշները տեսաւ , որ շուկային մէջ
4 պարապ կայներ էին . Ու ըսաւ ա-
նոնց , Դո՛ւք ալ գացէք իմ այգիս ,
և ինչ որ արժան է՝ կու տամ ձե-
5 զի ։ Անոնք ալ գացին . ու նորէն
ժամը վեցին և ժամը իննին ատեն-
6 ները ելաւ՝ անանկ ըրաւ ։ Ու
ժամը տասնմէկին ատենները ե-
լաւ , ուրիշները գտաւ՝ որ պարապ
կայներ էին ։ ու անոնց ըսաւ ,
Ինչո՞ւ հոս բոլոր օրը պարապ կայ-
7 ներ էք ։ Ըսին իրեն , Անոր հա-
մար որ մէկը մեզ վարձքով չբռ-
նեց . ըսաւ անոնց , Դո՛ւք ալ
այգին գացէք , ու ինչ որ արժան
8 է՝ պիտի առնէք ։ Ու իրիկուն որ
եղաւ , այգիին տէրը իր տնտեսին
ըսաւ , Բանւորները կանչէ՛ , և
անոնց վարձքը տուր , ետքիններէն
սկսելով մինչև առջինները ։ Ու 9
երբոր եկան անոնք որ ժամը տաս-
նումէկին գացեր էին , մէյմէկ դա-
հեկան առին . Ու առջինները գա- 10
լով՝ կը կարծէին որ աւելի պիտի
առնեն , ու անոնք ալ առին մէյմէկ
դահեկան ։ Երբոր առին , տանը 11
տիրոջը դէմ տրտունջ կ'ընէին ու
կ'ըսէին թէ Աս ետքինները մէկ 12
ժամ մը գործեցին , և անոնք հա-
ւասար ըրիր մեզի , որ օրուան ծան-
րութիւնը ու տաքութիւնը քաշե-
ցինք ։ Անիկայ պատասխան տուաւ 13
անոնցմէ մէկուն ու ըսաւ , Ընկեր՝
ես քեզ չեմ զրկեր . չէ՞ որ դուն
իմ հետս մէկ դահեկանի մը խօսք
կապեցիր . Ա՛ռ քուկդ ու գնա՛ . 14
կ'ուզեմ որ աս ետքինին քեզի
տուածիս պէս տամ ։ Միթէ ես 15
իշխանութիւն չունի՞մ իմ բանե-
րուս վրայ՝ ինչ որ ուզեմ ընելու .
կամ թէ քու աչքդ չա՞ր է որ ես
բարերար եմ ։ Այսպէս յետինները 16
առաջին պիտի ըլլան , և առաջին-
ները՝ յետին . Քանզի կանչուած-
ները շատ են , բայց ընտրուածները
քիչ ։
Ու երբոր Յիսուս Երուսաղէմ 17
կ'ելլէր , ճամբան տասնուերկու ա-
շակերտները հետը առաւ առանձ-
նին , ու ըսաւ անոնց , Ահա՛ Երու- 18
սաղէմ կ'ելլենք , և Որդին մարդոյ
պիտի մատնուի քահանայապետնե-
րուն ու դպիրներուն , և զանիկայ
մահուան պիտի դատապարտեն ,
Ու զանիկայ հեթանոսներուն պիտի 19
մատնեն՝ ծաղր ընելու ու ծեծելու
և խաչը հանելու . ու երրորդ օրը
յարութիւն պիտի առնէ ։
Այն ատենը Զեբեդեանց որ- 20
դւոցը մայրը իր որդւոցը հետ եկաւ
անոր , երկրպագութիւն կ'ընէր՝ ու
բան մը կը խնդրէր անկէ ։ Ան ալ 21
ըսաւ անոր , Ի՞նչ կ'ուզես ։ Ը-
սաւ անոր , Ըսէ՛ որ աս իմ երկու
որդիքս մէկը աջ կողմդ , և միւսը
ձախ կողմդ նստին քու թագաւո-
րութեանդ մէջ ։ Պատասխան 22
տուաւ Յիսուս ու ըսաւ , Չէ՛ք
գիտեր ինչ կը խնդրէք . կրնա՞ք

խմել այն գաւաթը՝ որ ես պիտի
խմեմ, կամ այն մկրտութիւնովը
մկրտուիլ՝ որ ես պիտի մկրտուիմ.
23 ըսին իրեն, Կրնանք. Իսկ ըսաւ ա-
նոնց, Իմ գաւաթս պիտի խմէք,
և այն մկրտութիւնովը՝ որ ես մկըր-
տուելու եմ, պիտի մկրտուիք.
բայց իմ աջ կողմս ու ձախ կողմս
նստիլը՝ իմս չէ տալը, հապա որոնց
որ պատրաստուած է իմ Հօրմէս:
24 Ու երբոր միւս տասը աշակերտները
լսեցին, այն երկու եղբայրներուն
25 նեղացան: Իսկ Յիսուս իրեն
կանչեց զանոնք ու ըսաւ: Գիտէք
որ ազգաց իշխանները կը տիրեն
անոնց, և մեծամեծները կ'իշխեն
26 անոնց. Բայց ձեր մէջը անանկ պի-
տի չըլլայ, հապա ձեզմէ մէկ՝ որ
մեծ ըլլալ կ'ուզէ, թող անիկայ
27 ձեր սպասաւորը ըլլայ. Ու ձեզմէ
մէկ որ առաջին ըլլալ կ'ուզէ, թող
28 անիկայ ձեր ծառան ըլլայ. Ինչպէս
Որդին մարդոյ չեկաւ սպասաւորու-
թիւն ընդունելու, հապա սպասա-
ւորութիւն ընելու, և իր կեանքը
շատերուն համար փրկանք տալու:
29 Ու երբոր անոնք Երիքովէն ե-
լան, մեծ բազմութիւն անոր ետեւէն
30 գնաց: Ու ահա ճամբուն քովը
երկու կոյր նստած էին. երբոր լսե-
ցին թէ Յիսուս կ'անցնի, աղաղա-
կեցին ու ըսին, Ողորմէ՛ մեզի Տէ՛ր
31 որդի Դաւթի: Ու բազմու-
թիւնը կը յանդիմանէր զանոնք
որ լռեն. բայց անոնք՝ աւելի
կ'աղաղակէին ու կ'ըսէին, Ողորմէ՛
32 մեզի Տէ՛ր որդի Դաւթի: Ու
Յիսուս կանգ առնելով կանչեց
զանոնք ու ըսաւ, Ի՞նչ կ'ուզէք
33 որ ձեզի ընեմ: Ըսին անոր, Տէ՛ր
34 որ աչքերնիս բացուին: Ու Յի-
սուս խղճալով՝ անոնց աչքերուն
դպաւ. և շուտ մը անոնց աչքերը
բացուեցան, ու անոր ետեւէն գա-
ցին:

## ԳԼ. ԻԱ

1 Ու երբոր Երուսաղէմին մօտեցան
ու եկան Բեթփագէ՝ դէպ 'ի
Ձիթենեաց լեռը, այն ատենը Յի-
սուս իր աշակերտներէն երկուքը
խրկեց. Ու ըսաւ անոնց, Գացէ՛ք 2
առ ձեր դիմացի գիւղը, և շուտ մը
պիտի գտնէք կապուած էշ մը ու
անոր հետ աւանակ մը. արձակեցէ՛ք
անոնք ու ինծի բերէք. Ու թէ 3
որ մէկը ձեզի բան մը ըսէ, ըսէ՛ք
թէ՝ Տէրոջը պէտք են. և շուտ մը
անոնք պիտի խրկէ: Աս ամէն 4
բաները եղաւ, որ կատարուի մար-
գարէին խօսքը որ կ'ըսէ, Ըսէ՛ք 5
Սիօնի աղջկանը, Ահա քու թա-
գաւորդ քեզի կու գայ, հեզ՝ ու ի-
շու վրայ հեծած՝ և իշու ձագի աւա-
նակի վրայ: Աշակերտները գա- 6
ցին, և ինչպէս որ Յիսուս իրենց
պատուիրեր էր, ըրին. Ու բերին 7
էշը և աւանակը, և անոնց վրայ
իրենց հանդերձները դրին, ու
նստաւ անոնց վրայ: Ու ժողո- 8
վուրդէն շատերը իրենց հանդերձ-
ները ճամբուն վրայ փռեցին, և ու-
րիշները ծառերէն ճիւղեր կը կըտ-
րէին ու ճամբուն վրայ կը տարա-
ծէին: Ու ժողովուրդները որ 9
առջեւէն ու ետեւէն կ'երթային,
կ'աղաղակէին ու կ'ըսէին, Ովսա-
աննա Որդւոյ Դաւթի, օրհնեալ
է ան որ Տէրոջը անունովը կու գայ.
Ովսաննա 'ի բարձունս:
Ու երբոր անիկայ Երուսաղէմ 10
մտաւ, բոլոր քաղաքը շարժեցաւ
ու ըսաւ, Ո՞վ է աս: Ու ժողո- 11
վուրդները ըսին, Անիկայ Յիսուս
մարգարէն է՝ Գալիլեայի Նազարե-
թէն:
Ու Յիսուս Աստուծոյ տաճարը 12
մտաւ, ու դուրս հանեց ամէն ա-
նոնք որ տաճարին մէջ կը ծախէին
ու կը գնէին, և սատակ փոխողնե-
րուն սեղանները ու աղաւնի ծա-
խողներուն աթոռները կործանեց.
Ու ըսաւ անոնց, Գրուած է թէ 13
Իմ տունս աղօթքի տուն պիտի կո-
չուի, բայց դուք աւազակներու
աւազակ-
ներու այր ըրիք:
Ու տաճարին մէջ կոյրեր ու կա- 14
ղեր եկան իրեն, և բժշկեց զանոնք:
Երբոր քահանայապետները ու դը- 15
պիրները տեսան անոր ըրած հրաշք-
ները, և տղաքը որ տաճարին մէջ
կ'աղաղակէին ու կ'ըսէին, Ովսան-

զանիկայ՝ այգիէն դուրս հանեցին
40 ու սպաննեցին ։ Արդ երբոր
այգիին տէրը գայ, ի՞նչ պիտի
41 ընէ այն մշակներուն ։ Ըսին իրեն,
Այն չարերը չարաչար պիտի կոր-
սնցընէ, և այգին պիտի յանձնէ
ուրիշ մշակներու, որոնք պտուղ-
ները իրենց ժամանակին պիտի տան
42 իրեն ։ Ըսաւ անոնց Յիսուս.
Նաւ չէ՞ք կարդացեր գրքին մէջ,
Այն քարը որ շինողները անարգե-
ցին, անիկայ անկիւնին գլուխը
եղաւ. ասիկայ Տէրոջմէ եղաւ և
43 զարմանալի է մեր աչքերուն. Ասոր
համար կ՚ըսեմ ձեզի, որ Աստուծոյ
թագաւորութիւնը ձեզմէ պիտի
առնուի, ու անանկ ազգի մը պիտի
տրուի՝ որ անոր պտուղները բերէ ։
44 Ու ով որ այս քարին վրայ իյնայ՝
պիտի կոտրուի, և որուն վրայ որ
իյնայ՝ պիտի փշրէ զանիկայ ։
45 Ու երբոր քահանայապետները և
փարիսեցիները անոր առակները լը-
սեցին, իմացան որ իրենց համար
46 կ՚ըսէր ։ Ու կը փնտռէին թէ
ի՞նչպէս բռնեն զանիկայ, բայց ժո-
ղովուրդէն վախցան ։ Ինչու որ
մարգարէի պէս կ՚ընդունէին զա-
նիկայ ։

## ԳԼ. ԻԲ

1 Դարձեալ պատասխան տուաւ Յի-
սուս և առակներով ըսաւ ա-
2 նոնց, Երկնից թագաւորութիւնը
թագաւոր մարդու մը կը նմանի,
որ իր որդւոյն համար հարսնիք ը-
3 րաւ ։ Ու իր ծառաները ղրկեց
որ կանչէն հարսնիքի հրաւիրուած-
ները, և անոնք չուզեցին գալ ։
4 Նորէն ուրիշ ծառաներ ղրկեց ու
ըսաւ, Ըսէք հրաւիրուածներուն,
Ահա իմ ճաշս պատրաստեցի,
զուարակներս ու գէր կենդանիներս
մորթուած են, և ամէն բան պատ-
5 րաստ է. հարսնիք եկէք ։ Բայց
անոնք անհոգութիւն ընելով գա-
ցին, մէկը իր արտը, ու միւսը
6 իր առեւտուրին. Ու ուրիշները
անոր ծառաները բռնեցին, նախա-
7 տեցին ու սպաննեցին ։ Թագա-
ւորն ալ երբոր լսեց՝ բարկացաւ,
և իր զօրքերը ղրկեց ու այն սպան-
նողները կորսնցուց, ու անոնց
քաղաքը այրեց ։ Այն ատենը իր 8
ծառաներուն ըսաւ, Հարսնիքը
պատրաստ է՝ բայց հրաւիրուածնե-
րը արժանի չէին ։ Արդ գացէ՛ք 9
ճամբու գլուխները, և ով որ գը-
տնելու ըլլաք՝ հարսնիքի՛ հրաւիրե-
ցէք ։ Ու այն ծառաները ելան 10
ճամբաներուն վրայ, ու ով որ գը-
տան թէ՛ չար և թէ բարի՝ ա-
մէնն ալ ժողվեցին, ու հարսնիքը
հարսնեւորներով լեցուեցաւ ։ Ու 11
թագաւորը երբոր մտաւ հարսնե-
ւորները տեսնելու, հոն մէկ մարդ
մը տեսաւ, որ հարսնիքի հանդերձ
հագած չէր. Ու ըսաւ անոր, 12
Ընկե՛ր, ինչո՞ւ համար հոս մտար,
առանց հարսնիքի հանդերձ ունե-
նալու. և անիկայ պապանձեցաւ ։
Այն ատենը թագաւորը սպասաւոր- 13
ներուն ըսաւ, Կապեցէ՛ք ասոր
ոտքերը ու ձեռքերը, և առէք ու
հանեցէ՛ք զանիկայ դուրսի խաւա-
րը. հոն պիտի ըլլայ լալ ու ակ-
ռաներ կրճտել. Ինչու որ կան- 14
չուածները շատ են ու ընտրուած-
ները քիչ ։
Այն ատենը փարիսեցիները գա- 15
ցին խորհուրդ ըրին, թէ ինչպէս
անոր որոգայթ մը դնեն խօսքով ։
Ու իրենց աշակերտները Հերովդէ- 16
ականներուն հետ մէկտեղ ղրկե-
ցին անոր ու ըսին, Վարդապետ՝
գիտենք որ ճշմարիտ ես, և ճշմար-
տութեամբ Աստուծոյ ճամբան կը
սորվեցընես, ու մէկու մը համար
հոգ չէ, քանզի մարդոց երես-
պաշտութիւն չես ըներ ։ Արդ 17
մեզի ըսէ՛, քեզի ի՞նչպէս կ՚երե-
նայ. Կայսրին տուրք տալ արժա՞ն
է թէ չէ ։ Յիսուս գիտնալով ա- 18
նոնց խորամանկութիւնը՝ ըսաւ,
Ինչո՞ւ զիս կը փորձէք՝ կեղծաւոր-
ներ. Ցուցուցէ՛ք ինծի տուրքին 19
դրամը. և անոնք դահեկան մը բե-
րին իրեն ։ Ու ըսաւ անոնց, Ո- 20
րո՞ւն է այս պատկերը ու գիրը ։
Ըսին անոր՝ Կայսրին. այն ատենը 21
ըսաւ անոնց, Ուրեմն այն որ կայս-
րինն է՝ կայսրին տուէք, և այն որ

Աստուծոյն է՝ Աստուծոյ տուէք ։
22 Երբոր լսեցին՝ զարմացան , և թո-
ղուցին զանիկայ ու գացին ։
23 Նոյն օրը անոր քովը եկան սա-
դուկեցիները , որոնք կ'ըսեն թէ
յարութիւն չկայ , և անոր հար-
24 ցուցին՝ Ըսելով , Վարդապետ՝
Մովսէս ըսաւ , Թէ որ մէկը ա-
ռանց զաւակի մեռնելու ըլլայ , ա-
նոր եղբայրը առնէ անոր կնիկը , և
25 իր եղբօրը զաւակ հանէ ։ Արդ
եօթը եղբայրներ կային մեր մէջը ,
և առջինը կնիկ առաւ ու մեռաւ ,
և զաւակ չունենալուն համար՝ իր
26 կնիկը ձգեց իր եղբօրը ։ Նոյնպէս
ալ երկրորդը՝ ու երրորդը՝ մինչև
27 եօթներորդը ։ Ամենէն ետքը կնիկն
28 ալ մեռաւ ։ Ուրեմն յարութեան
ատենը այն եօթնէն որո՞ւն կնիկը
պիտի ըլլայ , ինչու որ ամէնքն ալ
29 զանիկայ կնի՛կ ունեցան ։ Եւ Յի-
սուս պատասխան տալով՝ անոնց ը-
սաւ , Դուք մոլորած էք , որ ոչ
գիրքերը գիտէք՝ և ոչ Աստուծոյ
30 զօրութիւնը ․ Քանզի յարութեան
ատենը ոչ կնիկ կ'առնեն՝ և ոչ
էրկան կը տրուին , հապա երկինքի
մէջ Աստուծոյ հրեշտակներուն պէս
31 են ։ Բայց մեռելներուն յարու-
թիւն առնելուն համար՝ չէ՞ք կար-
դացեր Աստուծմէ ձեզի ըսուած
32 խօսքը ․ Ես եմ Աբրահամին Աս-
տուածը , և Իսահակին Աստուա-
ծը , ու Յակոբին Աստուածը ․
Աստուած մեռելներուն Աստուածը
33 չէ՛ , հապա կենդանիներուն ։ Եւ
ժողովուրդները լսելով՝ կը զարմա-
նային անոր վարդապետութեանը
վրայ ։
34 Բայց փարիսեցիները երբոր լսե-
ցին թէ անիկայ պապանձեցուց
սադուկեցիները , մէկտեղ ժող-
35 վուեցան ․ Եւ անոնցմէ մէկը՝ օրէ-
նական մը հարցուց՝ զանիկայ փոր-
36 ձելով , ու ըսաւ , Վարդապետ՝
ո՞ր պատուիրանքը մեծ է օրէնքին
37 մէջ ։ Եւ Յիսուս ըսաւ անոր ,
Քու Տէր Աստուածդ սիրես քու
բոլոր սրտովդ և քու բոլոր անձովդ
38 ու քու բոլոր մտքովդ ․ Աս է առա-
39 ջին ու մեծ պատուիրանքը ։ Եւ
երկրորդը ասոր նման՝ Քու ընկերդ
սիրես քու անձիդ պէս ։ Աս երկու 40
պատուիրանքէս կախուած են բոլոր
օրէնքը և մարգարէները ։
Եւ երբոր փարիսեցիները ժող- 41
վուեցան , Յիսուս հարցուց անոնց
ու ըսաւ , Քրիստոսի վրայով ի՞նչ 42
կարծիք ունիք ․ անիկայ որո՞ւ որ-
դին է ։ Ըսին իրեն , Դաւիթին ։ 43
ըսաւ անոնց Յիսուս , Հապա
ի՞նչպէս Դաւիթ Հոգիով զանի-
կայ Տէր կը կոչէ ու կ'ըսէ , Տէրը 44
իմ Տէրոջս ըսաւ , Նստէ՛ իմ աջ
կողմս , մինչև որ քու թշնամիներդ
ոտքերուդ պատուանդան ընեմ ։
Ուրեմն թէ որ Դաւիթ զանիկայ 45
Տէր կը կոչէ , ի՞նչպէս անիկայ ա-
նոր որդին կ'ըլլայ ։ Եւ մէկը չէր 46
կրնար անոր խօսք մը պատասխա-
նել ․ ու այն օրէն ետև մէկը չէր
համարձակեր անոր բան մը հարցը-
նելու ։

## ԳԼ․ ԻԳ

Ան ատենը Յիսուս խօսեցաւ ժո- 1
ղովուրդներուն և իր աշակերտ-
ներուն ու ըսաւ , Մովսէսին աթո- 2
ռը դպիրները և փարիսեցիները
նստած են ․ Ուրեմն ինչ որ ձեզի 3
կ'ըսեն որ պահէք , պահեցէ՛ք ու
ըրէ՛ք , բայց անոնց գործքերուն պէս
մի՛ ընէք ․ ինչու որ կ'ըսեն ու չեն
ըներ ։ Քանզի ծանր և տանելու 4
դժուար բեռներ կը կապեն ու կը
դնեն մարդոց ուսերուն վրայ , և
իրենց մատովը չեն ուզեր զանոնք
շարժել ։ Եւ իրենց ամէն գործ- 5
քերը մարդոց երևնալու համար
կ'ընեն ․ կը լայնցընեն իրենց գրա-
պանակները , ու կ'երկընցընեն ի-
րենց հանդերձներուն քղանցքները ․
Ընթրիքներու մէջ առաջին բազ- 6
մոցները կը սիրեն , և ժողովարան-
ներուն մէջ առաջին աթոռները , ու
շուկաներուն մէջ բարևները , Եւ 7
մարդոցմէ Ռաբբի՛ Ռաբբի՛ կոչուիլ ։
Բայց դուք Ռաբբի մի՛ կոչուիք , 8
ինչու որ ձեր ուսուցիչը մէկ մըն է ,
այսինքն Քրիստոս , և դուք ամէնքդ
եղբայր էք ։ Եւ երկրի վրայ մէկը 9
ձեզի Հայր մի՛ կոչէք , ինչու որ ձեր

Հայրը մէկ մըն է, որ երկինքն է ։
10 Ու դուք ուսուցիչներ մի՛ կոչուիք,
քանզի որ ձեր Ուսուցիչը մէկ մըն է,
11 Յիսուս Քրիստոս ։ Ու ձեր մէջէն
մեծը ձեր սպասաւորը պիտի ըլլայ ։
12 Ո՛վ որ իր անձը կը բարձրացընէ,
պիտի խոնարհի. և ով որ իր ան-
ձը կը խոնարհեցընէ, պիտի բարձ-
րանայ ։
13 Բայց վա՜յ ձեզի կեղծաւոր դպիր-
ներ ու փարիսեցիներ՝ որ երկնից
թագաւորութիւնը մարդոց առջևը
կը գոցէք. քանզի դուք չէք մըտ-
ներ, և մտնողներն ալ չէք թողուր
14 որ մտնեն ։ Վա՜յ ձեզի կեղծաւոր
դպիրներ ու փարիսեցիներ՝ որ որ-
բևարիներուն տուները կ'ուտէք,
ու մարդոց երևնալու համար աղօթ-
քը կ'երկընցընէք. անոր համար
աւելի դատապարտութիւն պիտի
15 ընդունիք ։ Վա՜յ ձեզի կեղծաւոր
դպիրներ ու փարիսեցիներ՝ որ ծով
ու ցամաք կը պտըտիք մէկը նորա-
հաւատ ընելու. ու երբոր ըլլայ,
զանիկայ ձեզմէ երկու անգամ աւելի
16 գեհենի որդի կ'ընէք ։ Վա՜յ ձեզի
կո՛յր առաջնորդներ՝ որ կ'ըսէք թէ
Ո՛վ որ տաճարին վրայ երդում
ընէ, բան մը չէ. բայց ով որ տա-
ճարին մէջի ոսկիին վրայ երդում
17 ընէ, պարտաւոր կ'ըլլայ ։ Ո՛վ
յիմարներ ու կոյրեր՝ ո՞րը մեծ է,
ոսկի՞ն եթէ տաճարը որ կը սըր-
18 բացընէ ոսկին ։ Ու թէ՝ Ո՛վ որ
սեղանին վրայ երդում ընէ, բան
մը չէ, բայց ով որ սեղանին վրայի
պատարագին վրայ երդում ընէ,
19 պարտաւոր կ'ըլլայ ։ Յիմարներ
ու կոյրեր՝ ո՞րը մեծ է, պատարագը
եթէ սեղանը, որ կը սրբացընէ պա-
20 տարագը ։ Ուստի ով որ սեղանին
վրայ երդում ընէ, երդում կ'ընէ
անոր վրայ՝ և անոր վրայի ամէն բա-
21 ներուն վրայ. Ու ով որ տաճարին
վրայ երդում ընէ, երդում կ'ընէ
անոր վրայ՝ և անոր մէջ բնակողին
22 վրայ. Ու ով որ երկինքին վրայ
երդում ընէ, երդում կ'ընէ Աս-
տուծոյ աթոռին վրայ՝ և անոր վրան
23 նստողին վրայ ։ Վա՜յ ձեզի կեղծա-
ւոր դպիրներ ու փարիսեցիներ՝ որ
անանուխին ու սամիթին և չաման-
ներին տասանորդը կը վճարէք, ու
կը ձգէք օրէնքին ծանր ծանր բա-
ները՝ դատաստանը և ողորմու-
թիւնը ու հաւատքը. ասոնք
պէտք էր ընել և անոնք չձգել ։
Կո՛յր առաջնորդներ՝ որ մժղուկը 24
կը քամէք և ուղտը կը կլլէք ։
Վա՜յ ձեզի կեղծաւոր դպիրներ 25
ու փարիսեցիներ՝ որ գաւաթին
ու պնակին դուրսի կողմը կը
մաքրէք, ու ներսէն յափշտա-
կութեամբ և անիրաւութեամբ լե-
ցուն են ։ Կո՛յր փարիսեցի՝ առաջ 26
գաւաթին ու պնակին ներսի կողմը
մաքրէ, որ անոնց դուրսի կողմն ալ
մաքուր ըլլայ ։ Վա՜յ ձեզի կեղծա- 27
ւոր դպիրներ ու փարիսեցիներ՝ որ
կը նմանիք ծեփած գերեզմաններու,
որոնք դուրսէն գեղեցիկ կ'երևնան,
և ներսէն մեռելներու ոսկորներով
և ամէն կերպ պղծութիւնով լեցուն
են ։ Նոյնպէս ալ դուք դուրսէն 28
մարդոց արդար կ'երևնաք, ու ներ-
սէն կեղծաւորութեամբ և անօրէ-
նութեամբ լեցուն էք ։ Վա՜յ ձեզի 29
կեղծաւոր դպիրներ ու փարիսե-
ցիներ՝ որ մարգարէներուն տապան-
ները կը շինէք, և արդարներուն
գերեզմանները կը զարդարէք. Ու 30
կ'ըսէք, Թէ որ մեր հայրերուն
օրերը ըլլայինք, անոնց հետ մար-
գարէներուն արեանը մասնակից չէ-
ինք ըլլար ։ Ուրեմն դուք ձեր վը- 31
րայ կը վկայէք թէ անոնց զաւակ-
ներն էք՝ որ մարգարէները կը
սպաննէին ։ Ուստի դուք ալ ձեր 32
հայրերուն չափը լեցուցէ՛ք ։ Օ՛ձեր՝ 33
իժերու ծնունդներ, ի՞նչպէս պիտի
փախչիք գեհենին դատապարտու-
թենէն ։ Անոր համար ահա ես 34
կը խրկեմ ձեզի մարգարէներ և ի-
մաստուններ ու դպիրներ, և ա-
նոնցմէ մէկ քանիները պիտի սպան-
նէք ու խաչը հանէք, և մէկ քա-
նիները ձեր ժողովարաններուն
մէջը պիտի ծեծէք, ու քաղաքէ
քաղաք հալածէք. Որպէս զի երկ- 35
րի վրայ թափուած բոլոր արդար
արիւնը ձեր վրայ գայ, արդար
Աբէլին արիւնէն մինչև Բարաքիա-

մը որդւոյն Զաքարիային արիւնը ,
որ տաճարին ու սեղանին մէջտեղը
36 սպաննեցիք : Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի , Ասոր ամէն բաները պիտի գան
աս ազգիս վրայ :
37 Ո՛վ Երուսաղէմ՝ Երուսաղէմ ,
որ մարգարէները կը սպաննէիր ,
ու քեզի խրկուածները կը քարկո-
ծէիր . քանի՜ անգամ քու տը-
ղաքներդ ժողվել ուզեցի՝ ինչպէս
որ հաւը իր ձագերը թեւերուն տա-
կը կը ժողվէ , և դուք չուզեցիք :
38 Ահա ձեր տունը ձեզի աւերակ պի-
39 տի մնայ . Ինչու որ ձեզի կ'ըսեմ
որ ալ ասկէ ետև պիտի չտեսնէք
զիս , մինչև որ ըսէք , Օրհնեալ է
ան որ Տէրոջը անունովը կու գայ :

## ԳԼ . ԻԴ

1 Եւ Յիսուս տաճարէն դուրս ելլե-
լով՝ կ'երթար , ու աշակերտ-
ները անոր քովը գացին՝ տաճարին
2 շէնքերը իրեն ցուցնելու : Եւ
Յիսուս անոնց ըսաւ , Չե՞ք տես-
ներ աս ամէն բաները . Ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի , պիտի չմնայ հոս քար
քարի վրայ՝ որ չքակուի :
3 Ու երբոր անիկայ Ձիթենեաց
լեռը նստեր էր , աշակերտները ի-
րեն եկան առանձին ու ըսին , Ըսէ՛
մեզի՝ Ե՞րբ պիտի ըլլան աս բանե-
րը . և քու գալուստիդ ու աշխար-
հիս վերջին նշանը ի՞նչ պիտի ըլ-
4 լայ : Եւ Յիսուս պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց , Զգո՛յշ
կեցէք՝ չըլլայ որ մէկը ձեզ խաբէ .
5 Ինչու որ շատերը պիտի գան իմ
անունովս ու ըսեն թէ Ես եմ
Քրիստոսը , ու շատերը պիտի մո-
6 լորցընեն : Եւ պիտի լսէք պատե-
րազմներ ու պատերազմներու լու-
րեր . զգո՛յշ կեցէք որ չխռովիք ,
ինչու որ սա ամէն բաները պէտք է
որ ըլլան , բայց դեռ վերջը չէ :
7 Վասն զի ազգ ազգի վրայ պիտի ել-
լէ , ու թագաւորութիւն թագա-
ւորութեան վրայ , և տեղ տեղ
սովեր ու մահտարաժամներ և երկ-
րաշարժութիւններ պիտի ըլլան :
8 Բայց ասոնք ամէնը ցաւերուն ս-
9 կիզբն են : Ան ատենը ձեզ նեղու-
թեան պիտի մատնեն և ձեզ պի-
տի սպաննեն , ու իմ անունիս հա-
մար ամէն ազգերուն ատելի պիտի
ըլլաք : Եւ ան ատենը շատերը 10
պիտի գայթակղին , ու մէկզմէկ
պիտի մատնեն , և մէկզմէկ պիտի
ատեն : Եւ շատ սուտ մարգարէ- 11
ներ պիտի ելլեն , ու շատերը պիտի
մոլորցընեն : Եւ անօրէնութիւնը 12
շատնալուն համար շատերուն սէրը
պիտի պաղի : Բայց ով որ մինչև 13
վերջը համբերէ , անիկայ պիտի
ապրի : Եւ արքայութեան աս ա- 14
ւետարանը բոլոր աշխարհի մէջ
պիտի քարոզուի՝ բոլոր ազգերուն
վկայութիւն ըլլալու , և անկէ ետև
վերջը պիտի գայ :
Ուստի երբոր տեսնէք աւերմուն- 15
քին պղծութիւնը՝ որ Դանիէլ մար-
գարէին ձեռքովը ըսուած է , թէ
սուրբ տեղը կը կենայ . (ով որ
կարդայ՝ թող հասկընայ .) Ան ա- 16
տենը Հրէաստանի մէջ եղողները
լեռները թող փախչին . Եւ ան 17
որ տանիքին վրայ է՝ թող չիջնէ
իր տունէն բան մը առնելու . Եւ 18
ան որ արտին մէջն է՝ թող ետ չը-
դառնայ իր հանդերձները առնելու :
Բայց վա՜յ ան օրերը յղի եղողներուն 19
ու ծիծ տուողներուն : Եւ աղօթք 20
ըրէք որ ձեր փախչիլը ձմեռը չըլ-
լայ , ոչ ալ շաբաթ օրը . Վասն- 21
զի ան ատենը անանկ մեծ նեղու-
թիւն պիտի ըլլայ , որուն նմանը
աշխարհի սկիզբէն մինչև հիմա ե-
ղած չէ , ոչ ալ պիտի ըլլայ : Եւ 22
թէ որ ան օրերը չքիչնային , բնաւ
մէկ մարմին մը պիտի չազատէր . բայց
ընտրեալներուն համար ան օրերը
պիտի քիչնան : Ան ատենը թէ 23
որ մէկը ձեզի ըսէ թէ Ահա հոս է
Քրիստոսը կամ հոն , մի՛ հաւա-
տաք . Ինչու որ սուտ քրիստոսներ 24
և սուտ մարգարէներ պիտի ելլեն ,
ու մեծ նշաններ և հրաշքներ պիտի
ցուցընեն , որ եթէ կարելի էր՝ ըն-
տրեալներն ալ մոլորցընեն : Ահա 25
ձեզի առաջուց ըսի : Ուստի թէ 26
որ ձեզի ըսեն թէ Ահա անապատին
մէջն է , մի՛ ելլէք . և թէ՝ Ահա
ներքին սենեակներուն մէջն է , մի՛

27 հաւատաք ։ Վասն զի ինչպէս որ
փայլակը արեւելքէն կ'ելլէ ու մինչեւ
արեւմուտք կ'երեւնայ , անանկ պիտի
ըլլայ Որդւոյ մարդոյ գալուստը ։
28 Վասնզի ուր որ մեռած մարմին կայ ,
հոն պիտի ժողվուին արծիւները ։
29 Ու շուտ մը այն նեղութեան օրե-
րէն ետեւ արեգակը պիտի խաւա-
րի , ու լուսինը իր լոյսը պիտի
չտայ , և աստղերը երկինքէն պիտի
իյնան , ու երկնից զօրութիւնները
30 պիտի շարժին ։ Ու այն ատենը
Որդւոյ մարդոյ նշանը պիտի երեւնայ
երկինքի մէջ , ու այն ատենը երկ-
րիս բոլոր ազգերը կոծ պիտի ընեն ,
ու պիտի տեսնեն Որդին մարդոյ
երկինքի ամպերուն վրայ եկած զօ-
31 րութիւնով ու մեծ փառքով ։ Ու
անիկայ իր հրեշտակները պիտի
խրկէ մեծաձայն փողով , ու պիտի
ժողվեն իր ընտրեալները չորս հո-
վերէն՝ երկինքին մէկ ծայրէն մինչեւ
միւս ծայրը ։
32 Թզենիէն առակ մը սորվեցէք ․
որ երբ անոր ոստերը կը կակուղ-
նան ու տերեւները կը ցցուին ,
33 գիտէք թէ ամառը մօտ է ։ Նոյն-
պէս ալ դուք երբոր աս ամէն բա-
ները տեսնէք , գիտցէ՛ք որ մօտ է
34 դռներուն քովը ։ Ճշմարիտ կ'ը-
սեմ ձեզի որ աս ազգը պիտի
չանցնի մինչեւ որ աս ամէն բա-
35 ները ըլլան ։ Երկինք ու երկիր
պիտի անցնին , բայց իմ խօսքերս
բնաւ պիտի չանցնին ։
36 Իսկ այն օրուան և այն ժամուն
համար մէկը չգիտեր , ո՛չ ալ
երկնից հրեշտակները , հապա միայն
37 իմ Հայրս ։ Բայց ինչպէս որ
Նոյի օրերը եղան , Որդւոյ մարդոյ
գալուստն ալ այնպէս պիտի ըլլայ ։
38 Վասնզի ինչպէս էին այն օրերը ջըր-
հեղեղէն առաջ , կ'ուտէին՝ կը խը-
մէին՝ կնիկ կ'առնէին ու էրկան կու
տային , մինչեւ այն օրը որ Նոյ
39 տապանը մտաւ , Ու չգիտցան՝
մինչեւ որ ջրհեղեղը եկաւ ու ա-
մէնը վերցուց ․ Որդւոյ մարդոյ
գալուստն ալ այնպէս պիտի ըլլայ ։
40 Այն ատենը թէ որ երկու հոգի արտի
մը մէջ ըլլան , մէկը պիտի առնուի

ու միւսը ձգուի ․ Ու թէ որ երկու 41
կնիկ մէկ աղօրիքի մէջ աղալու վը-
րայ գտնուին , մէկը պիտի առնուի
ու միւսը ձգուի ։
Ուրեմն արթո՛ւն կեցէք , ինչու 42
որ չէք գիտեր թէ ո՛ր ժամուն ձեր
Տէրը կու գայ ։ Բայց աս գիտ- 43
ցէ՛ք , որ եթէ տանուտէրը գիտ-
նար թէ գիշերուան ո՛ր պահուն գո-
ղը կու գայ , արթուն կը կենար
և թող չէր տար որ իր տունը ծա-
կեն ։ Անոր համար դուք ալ պատ- 44
րաստ կեցէք , քանզի Որդին մարդոյ
կու գայ անանկ ժամու մէջ՝ որ դուք
չէք կարծեր ։ Ուստի ո՞վ է այն 45
հաւատարիմ ու իմաստուն ծառան՝
որն որ իր տէրը իր ծառաներուն
վրայ դրաւ , որ ատենին անոնց կե-
րակուր տայ ։ Երանի՜ է այն ծա- 46
ռային , որն որ իր տէրը եկած ա-
տենը անանկ ըրած պիտի գտնէ ։
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի որ իր 47
բոլոր ունեցածին վրայ պիտի կե-
ցընէ զանիկայ ։ Հապա թէ որ 48
այն չար ծառան իր սրտին մէջը
ըսէ ․ Իմ տէրս իր գալը կ'ուշա-
ցընէ ․ Ու սկսի իր ծառայակից- 49
ները ծեծել , ու գինովներուն հետ
ուտել ու խմել , Այն ծառային 50
տէրը պիտի գայ անանկ մէկ օր մը՝
որ չսպասեր , և անանկ մէկ ժամ
մը՝ որ չգիտեր ․ Ու զանիկայ մէջ- 51
տեղէն պիտի կտրէ , ու անոր բա-
ժինը կեղծաւորներուն հետ պիտի
դնէ ․ հոն պիտի ըլլայ լալ ու
ակռաներ կրճտել ։

## ԳԼ․ ԻԵ

Այն ատենը երկնից թագաւորու- 1
թիւնը պիտի նմանի տասը կոյ-
սերու , որոնք իրենց լապտերները
առնելով՝ փեսան դիմաւորելու ե-
լան ։ Անոնցմէ հինգը իմաստուն 2
էին , և հինգը յիմար , Որ յիմար- 3
ները առին իրենց լապտերները , ու
հետերնին եղ չառին ․ Բայց իմաս- 4
տունները իրենց լապտերներուն հետ
ամաններով եղ ալ առին ։ Ու 5
փեսան որ ուշացաւ , ամէնն ալ
թմրեցան ու քնացան ։ Ու կէս 6
գիշերին ձայն մը եղաւ , Ահա փե-

սան կու գայ՝ զանիկայ դիմաւորելու
7 ելէք ։ Ան ատենը բոլոր կոյսերը
ելան ու իրենց լապտերները շի-
8 կեցին ։ Ու յիմարները ըսին ի-
մաստուններուն , Տուէք մեզի ձեր
եղէն , ինչու որ մեր լապտերները
9 մարելու վրայ են ։ Պատասխան
տուին իմաստունները ու ըսին ,
Չըլլայ որ մեզի ու ձեզի չբաւակա-
նանայ . այլ յաւէտ ծախողներուն
գացէք և գնեցէք ձեզի համար ։
10 Երբոր անոնք գացին գնելու՝ փեսան
եկաւ ու պատրաստ եղողները ա-
նոր հետ հարսնիքը մտան , և դու-
11 ռը գոցուեցաւ ։ Ետքը միւս
կոյսերը եկան ու ըսին , Տէ՛ր Տէ՛ր
12 բա՛ց մեզի ։ Նայց անիկայ պա-
տասխան տուաւ ու ըսաւ , Ճշ-
մարիտ կ'ըսեմ ձեզի թէ Ես ձեզ
13 չեմ ճանչնար ։ Ուրեմն արթուն
կեցէք , ինչու որ ո՛չ օրը գիտէք
և ո՛չ ժամը ։
14 Քանզի ինչպէս օտար երկիր գա-
ցող մարդ մը կանչեց իր ծառանե-
րը , և իր ունեցածը անոնց յանձ-
15 նեց ։ Մէկուն տուաւ հինգ տա-
ղանդ , ու մէկուն՝ երկուք , և
մէկուն՝ մէկ , ամէն մէկուն իր կա-
րողութեանը չափ , ու անմիջապէս
16 ճամբայ ելաւ ։ Ու ան որ հինգ
տաղանդը առած էր , գնաց անոնց-
մով գործ տեսաւ , և ուրիշ հինգ
17 տաղանդ շահեցաւ ։ Նմանապէս
ան որ երկուքը առած էր , ուրիշ
18 երկուք ալ շահեցաւ ։ Իսկ ան որ
մէկը առած էր , գնաց գետինը փո-
րեց , ու իր տիրոջը ստակը պա-
19 հեց ։ Շատ ժամանակէ ետև ան
ծառաներուն տէրը եկաւ , և ա-
20 նոնցմէ հաշիւ ուզեց ։ Ու հինգ
տաղանդը առնողը եկաւ՝ ուրիշ
հինգ տաղանդ ալ բերաւ , ու ը-
սաւ , Տէ՛ր հինգ տաղանդ յանձ-
նեցիր ինծի , ահա՛ ուրիշ հինգ
տաղանդ ալ անոնց վրայ շահեցայ ։
21 Ըսաւ անոր իր Տէրը , Ապրի՛ս
բարի՛ ու հաւատարիմ ծառայ ,
դուն որ քիչ բանին մէջ հաւատա-
րիմ եղար , քեզ շատ բաներու
վրայ պիտի կեցընեմ . մտիր քու
22 տիրոջդ ուրախութեանը մէջ ։ Եր-
կու տաղանդը առնողն ալ եկաւ ու
ըսաւ , Տէ՛ր երկու տաղանդ յանձ-
նեցիր ինծի , ահա՛ ուրիշ երկու
տաղանդ ալ անոնց վրայ շահեցայ ։
Ըսաւ անոր իր տէրը , Ապրի՛ս 23
բարի՛ ու հաւատարիմ ծառայ ,
դուն որ քիչ բանին մէջ հաւատա-
րիմ եղար , քեզ շատ բաներու վը-
րայ պիտի կեցընեմ . մտիր քու
տիրոջդ ուրախութեանը մէջ ։ Մէկ 24
տաղանդը առնողն ալ եկաւ ու ը-
սաւ , Տէ՛ր գիտէի որ դուն խիստ
մարդ մըն ես , չսերմանած տեղէդ
կը հնձես , ու չցանած տեղէդ կը
ժողվես . Ուստի վախնալով , գա- 25
ցի քու տաղանդդ գետնին տակը
պահեցի . [illegible] ահա՛ քուկդ քեզի ։
Պատասխան տուաւ անոր տէրը ու 26
ըսաւ անոր , Չա՛ր և ծոյլ ծառայ՝
գիտէիր որ չսերմանած տեղէս կը
հնձեմ ու չցանած տեղէս կը ժող-
վեմ . Ուրեմն պէտք էր քեզի որ 27
իմ ստակս սեղանաւորներուն տա-
յիր , որ ես եկած ատենս շահովը
առնէի իմս ։ Արդ առէք անկէ 28
տաղանդը , ու տասը տաղանդ ու-
նեցողին տուէք ։ Ինչու որ ամէն 29
ունեցողին պիտի տրուի , ու պիտի
աւելնայ . և չունեցողին ունեցածն
ալ անկէ պիտի առնուի ։ Ու այս 30
անպիտան ծառան դուրսի խաւարը
հանեցէք . հոն պիտի ըլլայ լալ
ու ակռաներ կրճտել ։
Ու երբոր Որդին մարդոյ իր 31
փառքովը գայ , և բոլոր սուրբ հրեշ-
տակները իր հետը , ան ատենը իր
փառաց աթոռը պիտի նստի . Ու 32
անոր առջևը պիտի ժողվուին բոլոր
ազգերը , ու զանոնք իրարմէ պի-
տի զատէ , ինչպէս որ հովիւ մը
ոչխարները այծերէն կը զատէ .
Ու ոչխարները իր աջ կողմը պի- 33
տի կայնեցընէ , ու այծերը՝ ձախ
կողմը ։
Ան ատենը Թագաւորը իր աջ 34
կողմը եղողներուն պիտի ըսէ , Ե-
կէք իմ Հօրս օրհնածները , աշ-
խարհի սկիզբէն ձեզի համար պատ-
րաստուած թագաւորութիւնը ժա-
ռանգեցէք . Ինչու որ անօթեցայ , 35
և ինծի ուտելիք տուիք . ծարա-

ւեցայ , ու ինծի խմցուցիք • օտա-
րական էի , և զիս ներս առիք •
36 Մերկ էի , և զիս հագուեցուցիք •
հիւանդ էի , ու ինծի տես եկաք •
բանտի մէջ էի , և ինծի եկաք ։
37 Ան ատենը արդարները անոր պա-
տասխան պիտի տան ու ըսեն , Տէ՛ր
ե՞րբ քեզ անօթեցած տեսանք՝ ու
կերակրեցինք , կամ ծարաւած՝ ու
38 խմցուցինք • Ե՞րբ քեզ օտարական
տեսանք՝ և ներս առինք , կամ մերկ՝
39 ու հագուեցուցինք • Ե՞րբ քեզ
հիւանդ կամ բանտի մէջ տեսանք ,
40 ու քեզի եկանք ։ Եւ թագաւորը
պատասխան տալով պիտի ըսէ ա-
նոնց , Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի ,
Որովհետև աս իմ եղբայրներուս
պինտ պզտիկներէն մէկուն ըրիք ,
ինծի ըրիք ։
41 Ան ատենը ձախ կողմը եղողնե-
րուն ալ պիտի ըսէ , Մէկդի՛ գա-
ցէք ինծմէ անիծեալներ՝ յաւիտե-
նական կրակին մէջը , որ պատ-
րաստուած է Սատանայի ու իր
42 հրեշտակներուն ։ Ինչու որ անօ-
թեցայ , և ինծի ուտելիք չտուիք •
ծարաւեցայ , ու ինծի չխմցուցիք •
43 Օտարական էի , և զիս ներս չա-
ռիք • մերկ էի , և զիս չհագուե-
ցուցիք • հիւանդ ու բանտի մէջ
44 էի , և ինծի տես չեկաք ։ Ան ա-
տենը անոնք ալ պատասխան պիտի
տան ու ըսեն , Տէ՛ր ե՞րբ տեսանք
քեզ անօթեցած կամ ծարաւած՝ կամ
օտարական՝ կամ մերկ՝ կամ հիւանդ՝
կամ բանտի մէջ , ու քեզի սպա-
45 սաւորութիւն չըրինք ։ Ան ատենը
պատասխան պիտի տայ անոնց ու
ըսէ , Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի ,
Որովհետև ասոնց պինտ պզտիկ-
ներէն մէկուն չըրիք , ինծի ալ
չըրիք ։
46 Եւ ասոնք պիտի երթան յաւի-
տենական տանջանքը , իսկ արդա-
րները՝ յաւիտենական կեանքը ։

## ԳԼ • ԻԶ

1 Ու երբոր Յիսուս լմնցուց աս բո-
լոր խօսքերը , ըսաւ իր աշա-
2 կերտներուն • Գիտէք որ երկու օ-
րէն ետև զատիկ կ'ըլլայ , և Որդին
մարդոյ կը մատնուի խաչը ելլելու ։
Ան ատենը քահանայապետները 3
ու դպիրները և ժողովուրդին ծե-
րերը ժողվուեցան քահանայապե-
տին սրահը , որուն անունը Կայիա-
փա էր • Ու խորհուրդ ըրին որ 4
նենգութեամբ բռնեն Յիսուսը ու
մեռցընեն ։ Բայց կ'ըսէին թէ 5
Ո՛չ տօնին ատենը , որ ժողովուր-
դին մէջ խռովութիւն չըլլայ ։
Ու երբոր Յիսուս Բեթանիա էր 6
բորոտ Սիմոնին տունը , Կնիկ մը 7
եկաւ անոր՝ որ ունէր ծանրագին ե-
ղի շիշ մը , և թափեց անոր գլը-
խուն վրայ՝ երբոր անիկայ սեղան
նստած էր ։ Եւ անոր աշակերտ- 8
ները տեսնելով դժուարեցան՝ ու
ըսին , Ինչո՞ւ աս կորուստը ըլլայ •
Քանզի աս եղը կրնար սուղ դնով 9
ծախուիլ , ու աղքատներուն տը-
րուիլ ։ Եւ Յիսուս իմանալով՝ 10
ըսաւ անոնց , Ինչո՞ւ անհանգիստ
կ'ընէք կնիկը • քանզի ատիկայ բա-
րի գործ մը գործեց ինծի ։ Ինչու 11
որ աղքատները ամէն ատեն ձեր հե-
տը ունիք , բայց զիս ամէն ատեն
չունիք ։ Վասն զի ատիկայ՝ որ աս 12
եղը իմ մարմինիս վրայ թափեց , իմ
թաղմանս համար ըրաւ ։ Ճշմա- 13
րիտ կ'ըսեմ ձեզի թէ բոլոր աշ-
խարհի մէջ՝ ուր որ աս աւետարանս
քարոզուի , ատոր ըրածն ալ պիտի
խօսուի՝ իրեն յիշատակ ըլլալու հա-
մար ։
Ան ատենը տասուերկուքէն մէկը՝ 14
որ Յուդա Իսկարիովտացի կ'ը-
սուէր , գնաց քահանայապետնե-
րուն՝ ու ըսաւ • Ի՞նչ կ'ուզէք ին- 15
ծի տալ , ու ես ձեզի մատնեմ զա-
նիկայ • և անոնք երեսուն սիկղ ար-
ծաթ խոստացան անոր ։ Եւ անկէ 16
ետև պատեհութիւն մը կը փնտռէր ,
որ զանիկայ մատնէ անոնց ։
Եւ բաղարջակերաց առջի օրը ա- 17
շակերտները Յիսուսի եկան ու ա-
նոր ըսին , Ո՞ւր կ'ուզես որ քեզի
պատրաստենք՝ զատիկը ուտելու հա-
մար ։ Եւ անիկայ ըսաւ , Գնացէ՛ք 18
քաղաքը այս ինչ մարդուն ու ըսէ՛ք
անոր , Վարդապետը կ'ըսէ , Ժա-
մանակս մօտ է , աշակերտներուս

Հետ մէկտեղ քու քովդ պիտի ը-
19 նեմ զատիկը ։ Աշակերտներն ալ
ըրին ինչպէս որ Յիսուս իրենց հը-
րամման ըրաւ , ու պատրաստեցին
զատիկը ։
20 Ու երբոր իրիկուն եղաւ , տաս-
ներկուքին հետ սեղան նստաւ ։
21 Եւ քանի որ կ'ուտէին՝ ըսաւ ,
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , որ ձեզմէ
22 մէկը զիս պիտի մատնէ ։ Ու շատ
տրտմեցան , և անոնցմէ ամէն մէկը
սկսաւ ըսել անոր ; Տէ՛ր՝ միթէ ե՞ս
23 եմ ։ Անիկայ պատասխան տուաւ
ու ըսաւ , Ան որ իմ հետս իր ձեռ-
քը պնակը խօթեց , նոյնը պիտի
24 մատնէ զիս ։ Յիրաւի Որդին մար-
դոյ կ'երթայ՝ ինչպէս որ գրուած է
իրեն համար , բայց վայ այն մար-
դուն՝ որուն ձեռքովը Որդին մարդոյ
կը մատնուի . աղէկ էր այն մար-
25 դուն որ ծնած չըլլար ։ Պատաս-
խան տուաւ Յուդա որ անիկայ
պիտի մատնէր՝ ու ըսաւ , Վարդա-
պետ՝ միթէ ե՞ս եմ . ըսաւ անոր ,
Դուն ըսիր ։
26 Եւ քանի որ անոնք կ'ուտէին ,
Յիսուս հաց առաւ՝ օրհնեց ու կոտ-
րեց , և տուաւ աշակերտներուն ու
ըսաւ , Առէ՛ք՝ կերէ՛ք , աս է իմ
27 մարմինս ։ Եւ գաւաթը առաւ՝
գոհացաւ , ու տուաւ անոնց և ը-
սաւ , Ամէնքդ ալ խմեցէ՛ք ասկէ .
28 Ինչու որ ասիկայ է իմ արիւնս նոր
ուխտի , որ շատերու համար կը
թափուի մեղաց թողութեան հա-
29 մար ։ Բայց կ'ըսեմ ձեզի , Ասկէ
ետև որթին բերքէն բնաւ պիտի
չխմեմ մինչև այն օրը՝ երբոր ձեր
հետը անիկայ նոր խմեմ իմ Հօրս
թագաւորութեանը մէջ ։
30 Եւ օրհնութիւն մը երգելէն ետև
31 Ձիթենեաց լեռը ելան ։ Ան ատե-
նը Յիսուս ըսաւ անոնց , Դուք ա-
մէնքդ աս գիշեր իմ վրայովս պիտի
գայթակղիք . ինչու որ գրուած է
թէ Հովիւը պիտի զարնեմ , ու
հօտին ոչխարները պիտի ցրուին ։
32 Բայց յարութիւն առնելէս ետև
ձեզմէ առաջ Գալիլեա պիտի եր-
33 թամ ։ Պատասխան տուաւ Պետ-
րոս ու ըսաւ անոր , Թէպէտ ա-
մէնքն ալ քու վրայովդ գայթակղին ,
բայց ես բնաւ պիտի չգայթակղիմ ։
Ըսաւ անոր Յիսուս , Ճշմարիտ 34
կ'ըսեմ քեզի , Աս գիշեր դեռ հա-
ւը չխօսած՝ երեք անգամ զիս պիտի
ուրանաս ։ Ըսաւ անոր Պետրոս , 35
Թէև քեզի հետ մեռնելու ալ ըլ-
լամ՝ բնաւ քեզ պիտի չուրանամ .
նմանպէս կ'ըսէին նաև ամէն աշա-
կերտները ։
Ան ատենը Յիսուս անոնց հետ 36
տեղ մը եկաւ , որուն անունը
Գեթսեմանի էր , ու ըսաւ աշա-
կերտներուն , Հոս նստեցէ՛ք մինչև
որ ես երթամ հոն աղօթք ընեմ ։
Եւ իր հետը առնելով Պետրոսը 37
ու Զեբեդէոսին երկու որդիքը ,
սկսաւ տրտմիլ և վշտանալ ։ Ան 38
ատենը ըսաւ անոնց , Իմ անձս
մեռնելու չափ տրտում է . հոս կե-
ցէք և ինծի հետ արթուն մնա-
ցէք ։ Ու քիչ մը առաջ երթա- 39
լով՝ իր երեսին վրայ ինկաւ և
աղօթք ըրաւ՝ ըսելով , Ո՛վ Հայր
իմ՝ թէ որ կարելի է , թող աս
գաւաթը ինծմէ անցնի . բայց ոչ
թէ ինչպէս որ ես կ'ուզեմ , հապա
ինչպէս որ դուն կ'ուզես ։ Եւ 40
եկաւ աշակերտներուն ու զանոնք
քնացած գտաւ , և ըսաւ Պետրո-
սին , Այդպէս մէկ ժամ մըն ալ
չկրցա՞ք ինծի հետ արթուն կենալ ։
Արթուն կեցէք և աղօթք ըրէք , 41
որ փորձութեան մէջ չմտնէք . հո-
գին յօժար է , բայց մարմինը տը-
կար ։ Դարձեալ երկրորդ անգամ 42
գնաց աղօթք ըրաւ՝ ըսելով , Ո՛վ
Հայր իմ՝ եթէ անկարելի է որ աս
գաւաթը ինծմէ անցնի առանց ան-
կէ խմելու , թող քու կամքդ
ըլլայ ։ Եւ եկաւ զանոնք նորէն 43
քնացած գտաւ , ինչու որ աչքեր-
նին ծանրացած էր ։ Եւ թողուց 44
անոնք , ու նորէն գնաց երրորդ ան-
գամ աղօթք ըրաւ՝ նոյն խօսքը ը-
սելով ։ Ան ատենը եկաւ իր ա- 45
շակերտներուն՝ ու ըսաւ անոնց ,
Ասկէ ետև քնացէք ու հանգչեցէք .
ահա ժամը հասաւ , և Որդին մար-
դոյ մեղաւորներուն ձեռքը կը մատ-
նուի ։ Ելէ՛ք ասկէ երթանք . ա- 46

հա մօտեցաւ անիկայ՝ որ զիս պիտի
մատնէ ։
47 Եւ դեռ անիկայ աս որ կը խօ-
սէր՝, ահա Յուդա՝ տասուերկու-
քէն մէկը եկաւ ․ և իր հետը շատ
բազմութիւն սուրերով ու բիրերով՝
քահանայապետներէն և ժողովուր-
48 դին ծերերէն ։ Եւ զանիկայ մատ-
նողը անոնց նշան մը տուեր էր՝ ը-
սելով ․ Ո՛վ որ ես համբուրեմ՝
49 ան է, բռնեցէ՛ք անիկայ ։ Եւ
շուտ մը Յիսուսին մօտենալով ը-
սաւ ․ Ողջո՛յն քեզ՝ վարդապետ ․
50 ու համբուրեց զանիկայ ։ Եւ Յի-
սուս ըսաւ անոր ․ Ընկե՛ր՝ ինչո՞ւ
համար եկար դուն ․ ան ատենը մօ-
տեցան՝ ձեռք զարկին Յիսուսին ու
51 բռնեցին զանիկայ ։ Եւ ահա Յի-
սուսի հետ եղողներուն մէկը ձեռքը
երկընցուց և իր սուրը հանելով՝
զարկաւ քահանայապետին ծառա-
յին, և անոր ականջը մէկդի հա-
52 նեց ։ Ան ատենը Յիսուս ըսաւ
անոր ․ Սուրդ իր տեղը դարձուր ․
ինչու որ ամէն սուր առնողները
53 սրով պիտի կորսուին ։ Կը կար-
ծե՞ս թէ չեմ կրնար հիմա իմ
Հօրս աղաչել, և ինծի հասցնէ
տասուերկու գունդէն աւելի հրեշ-
54 տակներ ։ Բայց ի՞նչպէս պիտի
կատարուին գիրքերը, թէ պէտք է
ասանկ ըլլալ ։
55 Ան ատենը Յիսուս ըսաւ ան
բազմութեանը ․ Իբր թէ աւազա-
կի՞ վրայ ելաք սուրերով ու բիրե-
րով զիս բռնելու ․ ամէն օր տաճա-
րին մէջ ձեզի հետ կը նստէի ու կը
սորվեցնէի, և զիս չըռնեցիք ։
56 Բայց աս ամէն բաները եղաւ՝ որ
կատարուին մարգարէից գիրքերը ։
Ան ատենը բոլոր աշակերտները
թողուցին անիկայ ու փախան ։
57 Եւ անոնք որ Յիսուսը բռնեցին,
Կայիափա քահանայապետին տա-
րին, ուր որ դպիրները ու ծերերը
58 ժողվուեր էին ։ Եւ Պետրոս հե-
ռուանց անոր ետևէն գնաց մինչև
քահանայապետին գաւիթը, ու
ներս մտաւ սպասաւորներուն հետ
59 նստաւ որ վերջը տեսնէ ։ Իսկ
քահանայապետները ու ծերերը և
բոլոր ժողովքը Յիսուսի դէմ սուտ
վկայութիւն մը կը փնտռէին, որ
անիկայ մեռցընեն ։ Ու չգտան ․ 60
թէև շատ սուտ վկաներ ալ եկան,
բայց չգտան ․ ետքը երկու սուտ
վկայ եկան, Ու ըսին թէ Ասիկայ 61
ըսաւ, Ես կրնամ Աստուծոյ տա-
ճարը քակել, և զանիկայ իրեք
օրուան մէջ շինել ։ Եւ քահա- 62
նայապետը ոտք ելլելով ըսաւ ա-
նոր ․ Պատասխան մը չե՞ս տար ․
ինչ կը վկայեն ասոնք քեզի դէմ ։
Եւ Յիսուս լուռ կը կենար ։ Պա- 63
տասխան տուաւ քահանայապետը
ու ըսաւ անոր ․ Կենդանի Աստու-
ծով քեզ կ'երդմնցընեմ որ մեզի
ըսես, թէ դո՞ւն ես Քրիստոս Որ-
դին Աստուծոյ ։ Ըսաւ անոր Յի- 64
սուս ․ Դուն ըսիր ․ բայց կ'ըսեմ ձե-
զի ․ Ասկէ ետև պիտի տեսնէք Որ-
դին մարդոյ Զօրութեան աջ կողմը
նստած, ու երկնից ամպերուն վրայ
եկած ։ Ան ատենը քահանայա- 65
պետը իր հանդերձները պատռեց՝
ու ըսաւ ․ Հայհոյութիւն ըրաւ ․
ալ ի՞նչ պէտք է մեզի վկաներ ․
ահա հիմա լսեցիք անոր հայհոյու-
թիւնը ․ Ձեզի ի՞նչպէս կ'երևնայ ․ 66
անոնք պատասխան տուին ու ըսին ․
Մահապարտ է ։ Ան ատենը անոր 67
երեսը թուքին, ու բռունցով ծե-
ծեցին անիկայ ․ ոմանք ալ ապտակ
զարնելով՝ ըսին ․ Մարգարէացի՛ր 68
մեզի՝ դուն Քրիստոս, ո՞վ է ան
որ քեզի զարկաւ ։
Իսկ Պետրոս դուրսը գաւիթը 69
նստեր էր ․ և մէկ աղախին մը եկաւ
անոր՝ ու ըսաւ ․ Դուն ալ Գալի-
լեացի Յիսուսին հետն էիր ։ Բայց 70
անիկայ ամենուն առջևը ուրացաւ
ու ըսաւ ․ Չեմ գիտեր դուն ինչ
կը խօսիս ։ Ու երբոր դուռը ե- 71
լաւ, ուրիշ աղախին մը զանիկայ
տեսաւ, և հոն եղողներուն ըսաւ ․
Ասիկայ ալ Յիսուս Նազովրեցիին
հետն էր ։ Եւ Պետրոս նորէն եր- 72
դում ընելով ուրացաւ, թէ Ես
ան մարդը չեմ ճանչնար ։ Ու քիչ 73
մը ատենէն ետև հոն եղողները ե-
կան և ըսին Պետրոսին ․ Յիրաւի
դուն ալ անոնցմէ ես, ինչու որ

քու զրուցուածքդ ալ քեզ յայտնի
74 կ՚ընէ ։ Այն ատենը սկսաւ անիծել
ու երդում ընել՝ ըսելով թէ Ես
այն մարդը չեմ ճանչնար . և իս-
75 կոյն հաւը խօսեցաւ ։ Եւ Պետ-
րոս միտքը բերաւ Յիսուսի խօսքը՝
որ իրեն ըսեր էր թէ Դեռ հաւը
չխօսած՝ երեք անգամ պիտի ուրա-
նաս զիս . ու դուրս ելլելով դառ-
նապէս լացաւ ։

## ԳԼ. ԻԷ

1 Երբոր առտու եղաւ , բոլոր քա-
հանայապետները ու ժողովուր-
դին ծերերը Յիսուսի դէմ խոր-
հուրդ ըրին որ զանիկայ մեռցընեն ։
2 Եւ կապելով զանիկայ տարին , ու
Պոնտացի Պիղատոս կուսակալին
ձեռքը տուին ։
3 Այն ատենը Յուդա ՝ որ զանիկայ
մատնեց , տեսնելով թէ դատա-
պարտուեցաւ , զղջի եկաւ , ու
երեսուն արծաթը ետ դարձուց քա-
հանայապետներուն և ծերերուն ,
4 Ու ըսաւ , Մեղայ , որ անմեղ ա-
րիւն մատնեցի . և անոնք ըսին ,
5 Մեզի ի՞նչ , դուն նայէ ։ Եւ
արծաթը տաճարին մէջ ձգեց ու
դուրս ելաւ , և գնաց ինքզինքը
6 խեղդեց ։ Քահանայապետներն ալ
արծաթը առնելով՝ ըսին , Արժան
չէ՛ ատիկայ կորբանին մէջ դնել ,
7 ինչու որ արեան գին է ։ Ուստի
խորհուրդ ըրին , և անով բրուտին
արտը ծախու առին՝ օտարներու
գերեզմանատուն ըլլալու համար ։
8 Ասոր համար այն արտը Արեան
9 արտ ըսուեցաւ մինչև այսօր ։ Այն
ատենը կատարուեցաւ Երեմիա
մարգարէին ձեռքով ըսուած խօս-
քը , Եւ առին երեսուն արծաթը՝
գին կտրուածին գինը , որ Իսրայէլի
10 որդւոցմէ ոմանք գին կտրեցին , Ու
տուին անիկայ բրուտին արտին ,
ինչպէս որ ինծի հրամայեց Տէ-
րը ։
11 Եւ Յիսուս կուսակալին առջևը
կայնեցաւ . և կուսակալը հարցուց
անոր ու ըսաւ , Հրէից Թագա-
ւորը դո՞ւն ես ։ Եւ Յիսուս ըսաւ
12 անոր , Դուն կ՚ըսես ։ Ու քահա-
նայապետներէն և ծերերէն ամբաս-
տանուած ատենը բնաւ պատաս-
խան մը չտուաւ ։ Այն ատենը 13
Պիղատոս ըսաւ անոր , Չե՞ս լսեր
թէ որչափ քեզի դէմ կը վկայեն
ասոնք ։ Եւ անոր բան մը պա- 14
տասխան չտուաւ , մինչև շատ զար-
մացաւ կուսակալը ։
Բայց կուսակալը սովորութիւն 15
ունէր որ տօնին ատենը կապուած
մը արձակէր ժողովուրդին , ով որ
ուզէին ։ Այն ատենը Բարաբբա 16
անունով մէկ երևելի բանտարկեալ
մը ունէին ։ Երբոր ժողվուեցան՝ 17
ըսաւ անոնց Պիղատոս , Ո՞րը կ՚ու-
զէք որ ձեզի արձակեմ . Բարաբ-
բա՞ն թէ Յիսուսը՝ որ Քրիստոս
կ՚ըսուի . Քանզի գիտէր թէ նա- 18
խանձի համար մատնեցին զանի-
կայ ։
Ու երբոր անիկայ ատեանը նստեր 19
էր , անոր կնիկը մէկը խրկեց անոր
ու ըսաւ , Դուն այն արդարին հետ
բան մը չունենաս , ինչու որ այս-
օր երազիս մէջ շատ դիպուածներ
անցան գլխէս անոր համար ։
Բայց քահանայապետները և ծե- 20
րերը ժողովուրդը համոզեցին որ
Բարաբբան խնդրեն ու Յիսուսը
կորսնցընեն ։ Պատասխան տուաւ 21
կուսակալը ու ըսաւ անոնց , Աս
երկուքէս ո՞րը կ՚ուզէք որ ձեզի
արձակեմ . և անոնք ըսին , Բա-
րաբբան ։ Ըսաւ անոնց Պիղատոս , 22
Հապա ի՞նչ ընեմ Յիսուսը՝ որ
Քրիստոս կ՚ըսուի ։ Ամէնքն ալ 23
ըսին անոր , Թող խաչուի . և
կուսակալը ըսաւ , Բայց ի՞նչ չար
գործ ըրաւ . և անոնք ևս առաւել
կ՚աղաղակէին ու կ՚ըսէին , Թող
խաչուի ։ Եւ Պիղատոս տեսնե- 24
լով որ օգուտ մը չըլլար , հապա
ալ աւելի խռովութիւն կ՚ըլլայ ,
ջուր առաւ՝ ձեռքերը լուաց ժողո-
վուրդին առջևը՝ ու ըսաւ , Ես ատ
արդարին արիւնէն անպարտ եմ .
դուք մտածեցէք ։ Եւ բոլոր ժո- 25
ղովուրդը պատասխան տալով ը-
սաւ , Անոր արիւնը մեր վրայ ու
մեր որդւոցը վրայ ըլլայ ։ Այն ա- 26
տենը Բարաբբան արձակեց անոնց ,

և Յիսուսը ծեծելով՝ անոնց ձեռքը
տուաւ որ խաչուի ։
27 Ան ատենը կուսակալին զինուոր-
ները պալատին ներսը առին Յի-
սուսը , ու բոլոր զինուորներուն
28 գունդը անոր վրայ ժողվեցին ․ Եւ
զանիկայ մերկացընելով՝ կարմիր
վերարկու մը հագցուցին անոր ։
29 Ու փուշերէ պսակ մը հիւսելով՝
անոր գլուխը դրին , ու եղէգ մը
անոր աջ ձեռքը ․ և անոր առջևը
ծնկան վրայ գալով ծաղր կ'ընէին
զանիկայ , ու կ'ըսէին , Ողջոյն քեզ՝
30 Հրէից Թագաւոր ։ Եւ թքնելով
անոր վրայ՝ եղէգը կ'առնէին ու
31 անոր գլուխը կը ծեծէին ։ Ու
երբոր ծաղր ըրին անիկայ , վերար-
կուն վրայէն հանեցին ու իր հան-
դերձները հագցուցին անոր , և տա-
րին զանիկայ խաչը հանելու ։
32 Եւ դուրս ելլելով՝ Կիւրենացի
մարդ մը գտան Սիմոն անունով ,
զանիկայ պահակ բռնեցին՝ որ անոր
33 խաչը վերցընէ ։ Ու եկան Գող-
գոթա ըսուած տեղը , որ է գանկի
34 տեղ ․ Եւ լեղիով խառնուած քացախ
տուին անոր որ խմէ ․ ու երբոր
համը առաւ , խմել չէր ուզեր ։
35 Եւ զանիկայ խաչը հանելով , անոր
հանդերձները վիճակով բաժնեցին ․
[ որ․ մարգարէէն ըսուածը կատա-
րուի , Իմ հանդերձներս իրենց մէ-
ջը բաժնեցին , և իմ պատմուճանիս
36 վրայ վիճակ ձգեցին ։ ] Ու նստեր
37 անիկայ կը պահէին ։ Եւ անոր
գլխուն վրայ իր յանցանքը գրուած
դրին , Թէ Ասիկայ է Յիսուս՝ Հը-
38 րէից Թագաւորը ։ Ան ատենը ա-
նոր հետ երկու աւազակ խաչուե-
ցան , մէկը անոր աջ կողմէն , ու
մէկը ձախ կողմէն ։
39 Եւ անոնք որ կ'անցնէին՝ կը հայ-
հոյէին անոր , գլուխնին կը շար-
40 ժէին , Ու կ'ըսէին , Դուն որ տա-
ճարը կը քակէիր և իրեք օրուան
մէջ կը շինէիր , ինքզինքդ ազատէ ․
Թէ որ Աստուծոյ Որդին ես , իջիր
41 ատ խաչէդ ։ Նոյնպէս ալ քահա-
նայապետները դպիրներուն ու ծերե-
րուն հետ ծաղր ընելով՝ կ'ըսէին ,
42 Ուրիշները ազատեց , ինքզինքը
չկրնար ազատել ․ Թէ որ Իսրայէ-
լի Թագաւոր է , Թող հիմա իջնէ
խաչէն , և իրեն հաւատանք ։ Աս- 43
տուծոյ յուսացեր է , հիմա Թող
փրկէ զանիկայ՝ եթէ կ'ուզէ զանիկայ ․
ինչու որ ըսաւ , Թէ Ես Որդի Աս-
տուծոյ եմ ։ Իր հետը խաչուած 44
աւազակներն ալ նոյնպէս կը նա-
խատէին զանիկայ ։
Եւ վեցերորդ ժամէն մինչև ին- 45
ներորդ ժամը՝ բոլոր երկրին վրայ
խաւար եղաւ ։ Եւ ժամը իննին 46
ատենները Յիսուս մեծ ձայնով ա-
ղաղակեց ու ըսաւ , Էլի՛ Էլի՛ լա-
մա սաբաքթանի ․ որ ըսել է՝ Աս-
տուած իմ , Աստուած իմ , ինչո՞ւ
զիս թողուցիր ։ Անոնցմէ ոմանք՝ 47
որ հոն կայներ էին , երբոր լսեցին՝
կ'ըսէին , Ասիկայ Եղիան կը կան-
չէ ։ Եւ շուտ մը անոնցմէ մէկը 48
վազեց սպունգ մը առաւ՝ քացախով
լեցուց , ու եղէգի մը անցընելով՝
տուաւ անոր որ խմէ ։ Ու միւս- 49
ները կ'ըսէին , Թող տուր՝ տես-
նենք թէ Եղիան կու գա՞յ զանիկայ
ազատելու ։
Եւ Յիսուս դարձեալ մեծ ձայ- 50
նով աղաղակեց՝ ու հոգին աւանդեց ։
Եւ ահա տաճարին վարագուրը 51
վերէն 'ի վար երկուքի ճեղքուեցաւ ,
ու երկիրը շարժեցաւ , և քարերը
պատռեցան , Եւ գերեզմանները 52
բացուեցան , ու շատ սուրբ ննջե-
ցեալներու մարմիններ յարութիւն
առին , Եւ գերեզմաններէն ելան 53
անոր յարութենէն ետև , մտան
սուրբ քաղաքը ու շատերուն երև-
ցան ։
Բայց հարիւրապետը և անոր հետ 54
Յիսուսը պահողները՝ երբոր տեսան
երկրաշարժը ու եղած բաները ,
շատ վախցան՝ ու ըսին , Յիրաւի
ասիկայ Որդի Աստուծոյ էր ։
Եւ հոն շատ կնիկներ կային որ 55
հեռուէն կը նայէին , որոնք Գալի-
լեայէն Յիսուսի ետևէն եկան իրեն
ծառայութիւն ընելու ․ Որոնց մէջն 56
էր Մարիամ Մագդաղենացին և
Յակոբոսին ու Յովսէսին մայրը
Մարիամ և Զեբեդէոսի որդւոց
ը մայրը ։

57 Ու երբոր իրիկուն եղաւ, Արի-
մաթիայէն հարուստ մարդ մը եկաւ՝
որուն անունը Յովսէփ էր, որ ինքն
58 ալ Յիսուսի աշակերտ էր։ Ասի-
կայ Պիղատոսին՝ քովը երթալով՝
Յիսուսին մարմինը խնդրեց. ան
ատենը Պիղատոս հրաման ըրաւ որ
59 մարմինը տրուի։ Եւ Յովսէփ
մարմինը առաւ՝ մաքուր կտաւով
60 պատեց, Ու դրաւ իր նոր գերեզ-
մանին մէջ՝ որն որ քարէ փորած էր.
և գերեզմանին դուռը մեծ քար մը
61 գլտորցընելով գնաց։ Եւ հոն էր
Մարիամ Մագդաղենացին և միւս
Մարիամը՝ գերեզմանին դիմացը
նստած։
62 Եւ հետևեալ օրը՝ որ ուրբաթէն
ետև էր, քահանայապետները ու
փարիսեցիները ժողվուեցան Պի-
63 ղատոսին քովը, Ու ըսին. Տէ՛ր՝
կը յիշենք որ ան մոլորեցուցիչը իր
կենդանութեան ատենը կ'ըսէր
թէ Երեք օրէն ետև յարութիւն
64 կ'առնեմ։ Ուստի հրաման ըրէ որ
մինչև երրորդ օրը գերեզմանին զգու-
շութիւն ընեն. չըլլայ թէ իր
աշակերտները գիշերով գան զանի-
կայ գողնան, և ժողովուրդին ըսեն
թէ Մեռելներէն յարութիւն ա-
ռաւ. ու ետքի մոլորութիւնը ա-
65 ռջինէն գէշ ըլլայ։ Պիղատոս ա-
նոնց ըսաւ. Դուք ունիք պահա-
պան զինուորներ. գացէ՛ք՝ զգու-
շութիւն ըրէք ինչպէս որ գիտէք։
66 Անոնք ալ գացին գերեզմանին զգու-
շութիւն ըրին, քարը կնքե-
լով ու պահապան զինուորներ
դնելով։

## ԳԼ. ԻԸ

1 Եւ շաբաթ գիշերը որ մէկշաբթին
կը լուսնար, եկաւ Մարիամ
Մագդաղենացին ու միւս Մարիա-
2 մը՝ գերեզմանը տեսնելու։ Եւ
ահա մեծ երկրաշարժ մը եղաւ,
ինչու որ Տէրոջը հրեշտակը երկին-
քէն իջնելով, գնաց դռնէն մէկդի
գլտորեց քարը, ու անոր վրայ
3 նստաւ։ Եւ անոր տեսքը փայլակի
պէս էր, ու անոր հանդերձները
4 ձիւնի պէս ճերմակ։ Եւ անոր
վախէն պահապանները խռովեցան,
ու մեռածի պէս եղան։ Պատաս- 5
խան տուաւ հրեշտակը ու ըսաւ
կնիկներուն, Դուք մի՛ վախնաք.
քանզի գիտեմ որ կը փնտռէք Յի-
սուսը՝ որ խաչուեցաւ. Անիկայ հոս 6
չէ՛, ինչու որ յարութիւն առաւ,
ինչպէս որ ըսաւ. եկէ՛ք տեսէ՛ք ան
տեղը՝ ուր որ Տէրը պառկած էր։
Եւ շուտ մը գացէ՛ք անոր աշա- 7
կերտներուն ըսէ՛ք թէ անիկայ
մեռելներէն յարութիւն առաւ. և
ահա ձեզմէ առաջ Գալիլեա կ'եր-
թայ, հոն պիտի տեսնէք զանիկայ.
ահա ձեզի զրուցեցի։ Եւ անոնք 8
շուտ մը գերեզմանէն ելան վախով
ու մեծ ուրախութիւնով՝ և կը վա-
զէին աշակերտներուն պատմելու։
Ու երբոր կ'երթային անոր աշա- 9
կերտներուն պատմելու, ահա Յի-
սուս անոնց դէմը ելաւ ու ըսաւ.
Ողջոյն ձեզ։ Եւ անոնք մօտենա-
լով՝ անոր ոտքերը բռնեցին, ու
երկրպագութիւն ըրին անոր։ Ան 10
ատենը Յիսուս ըսաւ անոնց. Մի՛
վախնաք, գացէ՛ք իմ եղբայրներուս
ըսէ՛ք որ Գալիլեա երթան, ու հոն
զիս պիտի տեսնեն։
Երբոր անոնք կ'երթային՝ ահա 11
պահապան զինուորներէն մէկ քա-
նին քաղաքը եկան, ու քահանա-
յապետներուն պատմեցին բոլոր ե-
ղած բաները։ Եւ անոնք ծերե- 12
րուն հետ մէկտեղ ժողվուելով
ու խորհուրդ ընելով՝ շատ ըս-
տակ տուին զինուորներուն, Ու 13
ըսին, Ըսէ՛ք թէ Անոր աշա-
կերտները գիշերով եկան անիկայ
գողցան՝ երբոր մենք կը քնանայինք։
Եւ թէ որ աս բանը կուսակալին 14
ականջը հասնի, մենք անիկայ կը
համոզենք, և ձեզ ապահով
կ'ընենք։ Անոնք ալ ստակը ա- 15
ռին՝ ու սորվածնուն պէս ըրին. և
աս խօսքը Հրէից մէջ տարածուե-
ցաւ մինչև աս օրս։
Իսկ տասնըմէկ աշակերտները 16
գացին Գալիլեա ան լեռը՝ ուր որ
Յիսուս իրենց որոշեր էր։ Ու 17
երբոր զանիկայ տեսան, երկրպա-
գութիւն ըրին անոր, բայց ոմանք

18 տարակուսեցան ։ Եւ Յիսուս մօ-
տենալով՝ խօսեցաւ անոնց ու ըսաւ ,
Ամէն իշխանութիւն ինծի տրուե-
19 ցաւ երկինքի ու երկրի մէջ ։ Ու-
րեմն գացէ՛ք բոլոր ազգերը աշա-
կերտեցէ՛ք , մկրտեցէ՛ք զանոնք յա-
նուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն
Սրբոյ . Սորվեցուցէ՛ք անոնց որ ան 20
ամէն բաները պահեն՝ ինչ որ ես
ձեզի պատուիրեցի . և ահա ամէն
օր ես ձեզի հետ եմ մինչև աշխար-
հիս վերջը ։

---

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՄԱՐԿՈՍԻ

## ԳԼՈՒԽ Ա

1 Աստուծոյ Որդւոյն Յիսուս Քրիս-
տոսի աւետարանին սկիզբը ։
2 Ինչպէս որ մարգարէից մէջ գրուած
է , Ահա ես իմ դեսպանս կը ղր-
կեմ քու երեսիդ առջևէն , որ քու
ճամբադ պիտի պատրաստէ քու
3 առջևէդ ։ Անապատի մէջ կան-
չողին ձայնը , Տէրոջը ճամբան
պատրաստեցէ՛ք , անոր շաւիղները
4 շիտկեցէ՛ք . Յովհաննէս անապա-
տին մէջ կը մկրտէր , և ապաշխա-
րութեան մկրտութիւն կը քարո-
զէր՝ մեղքերու թողութեան հա-
5 մար ։ Եւ բոլոր Հրէաստանի
երկիրը ու Երուսաղէմացիք կ'եր-
թային անոր , ու ամէնքը կը մկր-
տուէին անկէ Յորդանան գետին
մէջ՝ մեղքերնին խոստովանելով ։
6 Եւ Յովհաննէս հագեր էր ուղտի
մազ , և իր մէջքը կաշիէ գօտի .
ու իր կերակուրը մարախ ու վայ-
7 րենի մեղր էր ։ Եւ կը քարոզէր
ու կ'ըսէր , Իմ ետևէս ինծմէ զօ-
րաւորը կու գայ , որ ես արժանի
չեմ ծռելու և անոր կօշիկներուն
8 կապերը արձկելու ։ Ես ձեզ ջը-
րով մկրտեցի , բայց անիկայ ձեզ
Սուրբ Հոգիով պիտի մկրտէ ։
9 Ու եղաւ որ այն օրերը Յիսուս
Գալիլեայի Նազարեթէն եկաւ , ու
Յովհաննէսէն մկրտուեցաւ Յոր-
10 դանանու մէջ ։ Եւ շուտ մը ջու-
րէն ելլելուն պէս՝ երկինքը բացուած
տեսաւ , և Հոգին աղաւնիի պէս՝
11 որ իր վրայ կ'իջնէր ։ Եւ ձայն մը
եկաւ երկինքէն՝ որ կ'ըսէր , Դուն
ես իմ սիրելի Որդիս , որուն հաւ-
ներ եմ ։

Եւ շուտ մը Հոգին անապատը 12
հանեց զանիկայ ։ Ու քառասուն օր 13
հոն էր անապատին մէջ՝ Սատա-
նայէն փորձուած . և գազաններու
հետ էր , ու հրեշտակները իրեն
սպասաւորութիւն կ'ընէին ։
Եւ Յովհաննէսին մատնուելէն 14
ետև Յիսուս Գալիլեա եկաւ , Աս-
տուծոյ արքայութեան աւետարանը
կը քարոզէր ու կ'ըսէր , Թէ ժա- 15
մանակը լրացած է , և Աստուծոյ
թագաւորութիւնը մօտեցած է .
ապաշխարեցէ՛ք ու աւետարանին
հաւատացէ՛ք ։
Երբոր Գալիլեացւոց ծովուն քո- 16
վէրը կը պտըտէր , տեսաւ Սիմոնը
ու Սիմոնին եղբայրը Անդրէասը՝
ծովը ուռկան ձգած , ինչու որ ձկը-
նորս էին ։ Եւ Յիսուս ըսաւ ա- 17
նոնց , Իմ ետևէս եկէ՛ք , ու ես
ձեզ ընեմ որ մարդու որսորդ ըլ-
լաք ։ Անոնք ալ շուտ մը իրենց 18
ուռկանները թողուցին ու անոր
ետևէն գացին ։ Եւ անկէ քիչ մը 19
առաջ երթալով՝ տեսաւ Զեբե-
դեան Յակոբոսը ու անոր եղբայրը
Յովհաննէսը , որ անոնք ալ նա-
ւին մէջ ուռկանները կը կարկը-
տէին . Եւ շուտ մը զանոնք կան- 20
չեց . անոնք ալ իրենց հայրը Զե-
բեդէոսը վարձկաններուն հետ նա-
ւին մէջ ձգելով , անոր ետևէն
գացին ։
Ու մտան Կափառնայում . և 21
իսկոյն շաբաթ օրը ժողովարանը
մտնելով՝ կը սորվեցընէր ։ Եւ կը 22
զարմանային անոր վարդապետու-
թեանը վրայ , ինչու որ իշխանու-
թիւն ունեցողի մը պէս կը սորվե-
ցընէր անոնց , ու չէ թէ դպիրնե-

23 բուն պէս ։ Եւ անոնց ժողովարա-
նին մէջ մարդ մը կար, որ պիղծ
ոգի ունէր իր ներսի դին, որ աղա-
24 ղակեց ըսելով, Թո՛ղ տուր,
դուն մեզի հետ ի՞նչ բան ունիս՝
Յիսո՛ւս Նազովրեցի. միթէ մեզ
կորսընցընելու՞ եկար. գիտեմ քեզ՝
25 ո՛վ ես, Աստուծոյ Սուրբը ։ Եւ
Յիսուս սաստեց անոր՝ ըսելով,
26 Պապանձէ՛ ու ել անկէ ։ Եւ
պիղծ ոգին սաստիկ ցնցեց զանի-
կայ, ու մեծ ձայնով մը աղաղա-
27 կեց ու անկէ ելաւ ։ Եւ ամէնքը
զարմացան, անանկ որ իրարու հար-
ցուփորձ կ'ընէին ու կ'ըսէին, Աս
ի՞նչ է. ի՞նչ նոր վարդապետու-
թիւն է աս, որ իշխանութիւնով
պիղծ ոգիներուն ալ կը հրամայէ,
28 ու իրեն կը հնազանդին ։ Եւ շուտ
մը իր համբաւը Գալիլեացւոց ամէն
կողմերը ելաւ ։
29 Եւ շուտ մը ժողովարանէն ելլե-
լով՝ Սիմոնին ու Անդրէասին տունը
մտան Յակոբոսին և Յովհաննէսին
30 հետ ։ Ու Սիմոնին զոքանչը ջեր-
մէ բռնուած պառկած էր, և շուտ
31 մը անոր համար ըսին իրեն ։ Ու
Յիսուս մօտեցաւ անոր ձեռքէն բռը-
նեց՝ վերցուց անիկայ. և իսկոյն
ջերմը թող տուաւ զանիկայ, ու
անոնց սպասաւորութիւն կ'ընէր ։
32 Ու երբոր իրիկուն եղաւ՝ արե-
գակին մտած ատենը բոլոր հի-
ւանդները և դիւահարները իրեն
33 կը բերէին ։ Ու բոլոր քաղաքը
34 դուռը ժողվուեր էր ։ Եւ շատ
հիւանդներ կերպ կերպ ցաւերէ
բժշկեց, ու շատ դեւեր հանեց. ու
դեւերուն խօսիլ չէր տար, ինչու որ
զինքը կը ճանչնային ։
35 Եւ առաւօտուն շատ կանուխ
ելլելով դեռ լուսցած՝ ելաւ ու
գնաց անապատ տեղ մը, և հոն ա-
36 ղօթք կ'ընէր ։ Ու Սիմոն և իր
հետը եղողները գացին անոր ետևէն ։
37 Ու երբոր գտան զանիկայ՝ ըսին
անոր թէ Ամէնը քեզ կը փնտր-
38 ռեն ։ Եւ ըսաւ անոնց, Եկէ՛ք
երթանք մերձակայ գիւղաքաղաք-
ները, որ հոն ալ քարոզեմ,
քանզի աս բանիս համար ելեր եմ ։

Եւ անոնց ժողովարաններուն մէջը 39
կը քարոզէր բոլոր Գալիլեայի մէջ,
ու դեւեր կը հանէր ։
Մէկ բորոտ մը եկաւ անոր՝ կ'ա- 40
ղաչէր, ծունկ կը դնէր ու կ'ըսէր
անոր, Թէ որ ուզես, կրնաս զիս
մաքրել ։ Եւ Յիսուս խղճալով՝ 41
ձեռքը երկընցուց, դպաւ անոր՝ ու
ըսաւ անոր, Կ'ուզեմ՝ մաքրուէ ։
Ու երբոր աս ըսաւ անոր, շուտ մը 42
բորոտութիւնը անկէ գնաց, ու
մաքրուեցաւ ։ Եւ սաստիկ պա- 43
տուէր տալով անոր՝ շուտ մը դուրս
հանեց անիկայ, ու ըսաւ անոր,
Զգո՛յշ կեցիր՝ մէկուն բան մը չը- 44
սես. հապա գնա քեզ քահանային
ցուցո՛ւր, և տո՛ւր քու մաքրուե-
լուդ ընծան, որ Մովսէս պատուի-
րեց՝ անոնց վկայութիւն ըլլալու
համար ։ Բայց անիկայ ելլելով՝ 45
սկսաւ շատ հրատարակել ու բա-
նը տարածել, անանկ որ ալ ինքը
չէր կրնար յայտնի կերպով քաղաք
մը մտնել. հապա դուրսը անա-
պատ տեղուանք էր, և ամէն կող-
մերէն իրեն կու գային ։

## ԳԼ. Բ

Եւ նորէն Կափառնայում մտաւ 1
քանի մը օրէն ետև. Ու լսուե- 2
ցաւ որ անիկայ տան մէջ է, և
շուտով շատ մարդիկ ժողվուեցան,
անանկ որ՝ ալ տեղ չկար, ոչ ալ
դրանը քովերը. ու կը խօսէր ա-
նոնց Աստուծոյ խօսքը ։ Եւ կու 3
գային իրեն՝ չորս մարդով վերցուած
անդամալոյծ մը կը բերէին ։ Ու 4
երբոր բազմութենէն չէին կրնար
անոր մօտենալ, քակեցին տանը
յարկը՝ ուր որ Յիսուս էր, ու ծակ
մը բանալով՝ վար իջեցուցին մահի-
ճը՝ որուն վրայ պառկած էր անդա-
մալոյծը ։ Եւ Յիսուս անոնց 5
հաւատքը տեսնելով՝ ըսաւ անդա-
մալոյծին, Որդեակ՝ քու մեղքերդ
քեզի ներուած են ։ Ու դպիրներէն 6
մէկ քանիները կային որ հոն նստա-
եր էին, և իրենց սրտերուն մէջ կը
խորհէին՝ ըսելով, Ի՞նչու համար 7
ասիկայ ասանկ հայհոյութիւններ
կը խօսի. ո՞վ կրնայ մեղաց թո-

ղութիւն տալ , բայց միայն Աս-
8 տուած : Եւ Յիսուս իսկոյն իմա-
նալով իր հոգւոյն մէջ՝ որ անոնք
այնպէս կը խորհին միջերնին , ը-
սաւ անոնց , Ատ ի՞նչ կը խորհիք
9 սրտերնուդ մէջ : Ո՞րը աւելի դիւ-
րին է , անդամալոյծին ըսել՝ Քու
մեղքերդ ներուած են , եթէ ըսել ,
10 Ելի՛ր, մահիճդ առ ու քալէ՛ : Բայց
որպէս զի գիտնաք թէ Որդին մար-
դոյ իշխանութիւն ունի երկրի վը-
րայ մեղքերու թողութիւն տալու ,
11 ( ըսաւ անդամալոյծին , ) Քեզի
կ'ըսեմ , Ելի՛ր , մահիճդ առ ու
12 տո՛ւնդ գնա : Ան ալ շուտ մը
ելաւ , և իր մահիճը առնելով՝ ա-
մենուն առջևը դուրս ելաւ , ա-
նանկ որ ամէնքը ապշած մնացին ,
և փառք տուին Աստուծոյ ու ըսին
թէ Ասանկ բան մը ամենևին տեսած
չէինք :
13 Եւ ելաւ նորէն ծովեզերքը , ու
բոլոր ժողովուրդը իրեն կու գային ,
14 և կը սորվեցնէր անոնց : Ու
երբոր կ'անցնէր , տեսաւ Ղևի Ալ-
փէոսեանը , որ մաքս ընդունելու
տեղը նստեր էր . ու ըսաւ անոր ,
Եկո՛ւր իմ ետևէս . ան ալ ելաւ
15 անոր ետևէն գնաց : Ու եղաւ որ
երբոր սեղան նստած էր անոր տանը
մէջ , շատ մաքսաւորներ ու մեղա-
ւորներ ալ սեղան նստած էին Յի-
սուսի հետ ու անոր աշակերտներուն
հետ . քանզի շատուոր էին , ու ա-
16 նոր ետևէն կ'երթային : Եւ դպիրնե-
րը ու փարիսեցիները երբոր տեսան
թէ անիկայ մաքսաւորներուն ու մե-
ղաւորներուն հետ կ'ուտէ , ըսին
անոր աշակերտներուն , Ինչո՞ւ հա-
մար մաքսաւորներուն ու մեղաւոր-
ներուն հետ կ'ուտէ ու կը խմէ :
17 Եւ Յիսուս երբոր լսեց , ըսաւ ա-
նոնց , Առողջներուն բժիշկ պէտք
չէ՛ , հապա հիւանդներուն . ես ար-
դարները կանչելու չեկայ , հապա
մեղաւորները :
18 Եւ Յովհաննէսին ու փարիսեցի-
ներուն աշակերտները ծոմ կը պահէ-
ին . և եկան ու ըսին անոր , Ին-
չո՞ւ Յովհաննէսին ու փարիսեցի-
ներուն աշակերտները ծոմ կը պա-
հեն , ու քու աշակերտներդ ծոմ
չեն պահեր : Եւ Յիսուս ըսաւ 19
անոնց , Միթէ կարելի՞ է որ
հարսնիքին տղաքը՝ քանի որ փեսան
իրենց հետն է , ծոմ պահեն . ո՛ր-
չափ ժամանակ որ փեսան իրենց
հետը ունին , կարելի չէ ծոմ պա-
հել : Բայց օրեր պիտի գան՝ որ 20
երբ փեսան իրենցմէ վերցուի , հա-
պա ան օրը ծոմ պիտի պահեն :
Մէկը կարկըտան չձգեր նոր լաթի 21
կտոր մը հին հանդերձի վրայ . թէ
չէ՝ ան նորը որ անոր լրութեանը
համար դրուած էր , հինէն կ'առնէ ,
ու պատռուածքը ալ աւելի գէշ
կ'ըլլայ . Ո՛չ ալ մէկը նոր գինին 22
հին տիկերու մէջ կը դնէ . եթէ
ոչ՝ նոր գինին տիկերը կը պատռէ ,
ու գինին կը թափի և տիկերը
կը կորսուին . հապա նոր գինին նոր
տիկերու մէջ դնելու է :
Ու եղաւ որ շաբաթ օրը ինքը 23
արտերուն մէջէն կ'անցնէր , և իր
աշակերտները որ կ'երթային , սկը-
սան ցորենի հասկեր փրցնել : Ու 24
փարիսեցիները ըսին իրեն , Նայէ՛
շաբաթ օրը ի՞նչ կ'ընեն , որ ար-
ժան չէ : Ինքն ալ անոնց ըսաւ , 25
Նաև չէ՞ք կարդացեր դուք Դաւի-
թին ըրածը՝ երբոր պէտք ունեցաւ ,
և անօթեցաւ ինքը ու անոնք որ իր
հետն էին . Ինչպէս մտաւ Աստու- 26
ծոյ տունը Աբիաթար քահանայա-
պետին օրովը , և առաջաւորու-
թեան հացերը կերաւ , ու տուաւ
անոնց ալ որ իր հետն էին , որ
մէկու մը օրինաւոր չէ ուտել , բայց
միայն քահանաներուն : Եւ ըսաւ 27
անոնց , Շաբաթը մարդուն հա-
մար եղաւ , ու չէ թէ մարդը շա-
բաթին համար : Ուրեմն Որդին 28
մարդոյ շաբաթին ալ տէրն է :

## ԳԼ . Գ

Եւ նորէն ժողովարանը մտաւ , ու 1
հոն մարդ մը կար , որուն ձեռ-
քը չորցած էր : Եւ իրեն կը 2
սպասէին թէ արդեօք շաբաթ օրը
զանիկայ պիտի բժշկէ՞ , որ իր վրա-
յով ամբաստանութիւն ընեն : Եւ 3
ինքը ձեռքը չորցած մարդուն ը-

4 սաւ․ Ելի՛ր մէջտեղը կայնէ՛։ Եւ
ըսաւ անոնց, Շաբաթ օրը բա-
րի՞ք ընել արժան է, թէ չարիք
ընել․ հոգի մը ապրեցընե՞լ, թէ
մեռցընել․ բայց անոնք լուռ կե-
5 ցան։ Եւ Յիսուս բարկութեամբ
շուրջանակի անոնց վրայ նայելով՝
անոնց սրտերուն կուրութեանը հա-
մար տրտմած, ըսաւ ան մարդուն,
Ձեռքդ երկընցուր․ ան ալ եր-
կընցուց, և անոր ձեռքը ողջացաւ։
6 Եւ փարիսեցիները Հերովդէսեան-
ներուն հետ մէկտեղ շուտ մը դուրս
ելլելով, անոր դէմ խորհուրդ կ'ը-
նէին թէ ինչպէս կորսընցընեն զա-
նիկայ։
7 Բայց Յիսուս իր աշակերտներովը
ծովեզերքը գնաց․ և շատ բազ-
մութիւն անոր ետևէն գացին Գա-
8 լիլիայէն, ու Հրէաստանէն, Եւ
Երուսաղեմէն, ու Եդովմէն և
Յորդանանու անդիի կողմէն․ ու
անոնք որ Տիւրոսի ու Սիդոնի շըր-
ջակայ տեղերէն էին, շատ բազմու-
թիւն երբոր լսեցին ինչ որ կ'ընէր,
9 իրեն եկան։ Եւ իր աշակերտնե-
րուն ըսաւ որ նաւակ մը պատրաստ
կենայ իրեն համար՝ ժողովուրդին
բազմութեանը պատճառաւ, որ
10 զինքը չնեղեն։ Վասնզի շատերը
բժշկեց, անանկ որ ցաւ ունեցող-
ները վրան կը դիզուէին որ իրեն
11 դպչին։ Եւ պիղծ ոգիները երբոր
զինքը կը տեսնէին, կ'իյնային իր
առջևը, կը կանչուըռտէին ու կ'ը-
12 սէին, Դուն ես Աստուծոյ Որդին․
և ինքը սաստիկ կը յանդիմանէր
զանոնք, որ զինքը չյայտնեն։
13 Եւ լեռը ելլելով, իր ուզածնե-
րը իրեն կանչեց․ ու գացին անոր
14 քովը։ Եւ տասուերկու հոգի ո-
րոշեց, որ իր հետը ըլլան, և որ
15 անոնք խրկէ քարոզել, Ու իշխա-
նութիւն ունենալ ցաւերը բժշկե-
16 լու և դևերը հանելու։ Եւ Սի-
17 մոնին անունը Պետրոս դրաւ․ Եւ
Զեբեդեան Յակոբոսին՝ ու Յա-
կոբոսին եղբօրը Յովհաննէսին՝ ա-
նոնց անունները Բանէրգէս դրաւ,
18 որ ըսել է՝ Որդիք որոտման․ Եւ
Անդրէասը, ու Փիլիպպոսը, և
Բարթուղիմէոսը, ու Մատթէոսը,
և Թովմասը, ու Աղփէոսեան Յա-
կոբոսը, և Թադէոսը, ու Սիմոն
Կանանացին․ Եւ Յուդա Իսկա- 19
րիովտացին, որ նաև մատնեց զա-
նիկայ։
Տուն մը եկան, և նորէն ժողո- 20
վուրդը ժողվուեցաւ, անանկ որ
հաց ուտելու ալ ժամանակ չկրցան
գտնել։ Եւ երբոր իրենները լսե- 21
ցին, ելան որ զինքը բռնեն, քան-
զի կ'ըսէին թէ խելըռած է։ Եւ 22
ան դպիրները որ Երուսաղեմէն ի-
ջեր էին, կ'ըսէին թէ Անոր
ներսի դին Բէեղզեբուղ կայ, և
դևերուն իշխանովը դևերը կը հա-
նէ։ Եւ իրեն կանչելով զանոնք, 23
առակներով կ'ըսէր անոնց, Ի՞նչ-
պէս կրնայ Սատանան Սատանայ
հանել։ Եւ թէ որ մէկ թագա- 24
ւորութիւն մը իրեն դէմ բաժնուի,
ան թագաւորութիւնը չկրնար կե-
նալ։ Եւ թէ որ տուն մը իրեն 25
դէմ բաժնուի, ան տունը չկրնար
կենալ։ Եւ թէ որ Սատանան իրեն 26
դէմ ելաւ ու բաժնուած է, անի-
կայ չկրնար կենալ, հապա անոր
վերջը հասած է։ Մէկը չկրնար 27
զօրաւոր մարդու մը տունը մտնելով՝
անոր կարասիները յափշտակել,
թէ որ առաջ ան զօրաւոր մարդը
չկապէ, ու ետքը անոր տունը կո-
ղոպտէ։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի 28
որ Ամէն մեղքերը պիտի ներուին
մարդոց որդիներուն, և հայհոյու-
թիւնները՝ որչափ որ հայհոյեն․
Բայց ով որ Հոգւոյն Սրբոյ դէմ 29
հայհոյէ, յաւիտեան թողութիւն
պիտի չունենայ, հապա յաւիտե-
նական դատաստանի պարտաւոր
պիտի ըլլայ․ Վասն զի կ'ըսէին 30
թէ Պիղծ ոգի կայ անոր ներսի
դին։
Ետքը անոր մայրը ու եղբայր- 31
ները եկան, և դուրսը կայնելով՝
մարդ խրկեցին ու կը կանչէին զա-
նիկայ։ Եւ ժողովուրդը անոր բո- 32
լորտիքը նստեր էր․ ու իրեն ըսին
թէ Ահա քու մայրդ ու եղբայր-
ներդ դուրսը կայներ են և քեզ
կ'ուզեն։ Եւ անիկայ պատասխան 33

տուաւ անոնց ու ըսաւ, Ո՞վ է
34 իմ մայրս կամ եղբայրներս։ Ու
իր բոլորտիքը նստողներուն նայե-
լով՝ ըսաւ, Ահա՛ իմ մայրս ու
35 իմ եղբայրներս. Վասն զի ով որ
Աստուծոյ կամքը կը կատարէ, ա-
նիկայ է իմ եղբայրս և քոյրս ու
մայրս։

## ԳԼ. Դ

1 Դարձեալ սկսաւ սորվեցընել ծով-
եզերքին վրայ, և շատ ժո-
ղովուրդ անոր քովը ժողվուեցաւ,
անանկ որ ինքը նաւը մտաւ ու
նստաւ ծովուն վրայ, և բոլոր ժո-
ղովուրդը ցամաքը ծովուն եզերքն
2 էր։ Ու անոնց շատ բաներ կը
սորվեցընէր առակներով, ու կ՚ը-
սէր անոնց իր վարդապետութեանը
3 մէջ, Լսեցէ՛ք, ահա՛ սերմ ցանողը
4 ելաւ որ սերմ ցանէ։ Ու երբոր
կը ցանէր, մէկ քանին ճամբուն
քովը ինկաւ, և թռչունները եկան
5 ու կերան զանիկայ։ Ու ուրիշը
ինկաւ ապառաժուտ տեղի վրայ,
ուր որ շատ հող չկար. և շուտ
մը բուսաւ, հողը խորունկութիւն
6 չունենալուն համար. Սակայն ա-
րեւուն ծագած ատենը այրեցաւ,
ու արմատ չունենալուն համար չոր-
7 ցաւ։ Ու ուրիշը ինկաւ փուշերու
մէջ, և փուշերը ելան՝ ու խեղդե-
ցին զանիկայ, ու պտուղ չտուաւ։
8 Ու ուրիշը ինկաւ աղէկ հողի մէջ,
ու պտուղ կու տար, որ ելաւ
ու մեծցաւ, և կը բերէր մէ-
կուն տեղը երեսուն, ու մէկուն
տեղը վաթսուն, և մէկուն տեղը
9 հարիւր։ Ու կ՚ըսէր, Ան որ լսե-
լու ականջ ունի, թող լսէ՛։
10 Ու երբոր առանձին էր, իր քո-
վը եղողները տասնըերկուքին հետ
մէկտեղ հարցուցին իրեն ան առա-
11 կը։ Ու ըսաւ անոնց, Ձեզի
տրուած է գիտնալ Աստուծոյ թա-
գաւորութեանը խորհուրդը, բայց
անոնց որ դուրսէն են, ամէն բան
12 առակներով կ՚ըլլայ. Որ տեսնելով
տեսնեն՝ ու չտեսնեն, և լսելով
լսեն՝ ու չիմանան, որ չըլլայ թէ՛
դարձի գան, և իրենց մեղքը թո-
ղութիւն ըլլայ։ Ու ըսաւ անոնց, 13
Այս առակը չէ՞ք գիտեր. ուրեմն
ի՞նչպէս պիտի գիտնաք ամէն ա-
ռակները։ Սերմ ցանողը խօսքը 14
կը ցանէ։ Ու ճամբուն քովինե- 15
ները անոնք են՝ որոնց մէջ խօսքը
կը ցանուի. ու երբոր կը լսեն,
շուտ մը Սատանան կու գայ՝ և ա-
նոնց սրտերուն մէջ ցանուած խօսքը
կը հանէ։ Նոյնպէս ալ ապառա- 16
ժուտ տեղերու վրայ ցանուածները
անոնք են, որ երբոր կը լսեն խօս-
քը՝ շուտ մը ուրախութեամբ կ՚ըն-
դունին զանիկայ. Ու իրենց մէջը 17
արմատ չունենալով՝ քիչ ժամանակ
կը տեւեն, ետքը երբոր նեղութիւն
կամ հալածանք ըլլայ խօսքին հա-
մար, շուտ մը կը գայթակղին։
Ու փուշերուն մէջ ցանուածները 18
անոնք են՝ որ երբ խօսքը կը լսեն,
Աշխարհիս զբաղմունքները ու հա- 19
րըստութեան խաբէութիւնները,
և ուրիշ բաներուն ցանկութիւն-
ները մէջ մտնելով՝ խօսքը կը խեղ-
դեն, ու կ՚ըլլայ անպտուղ։ Ու ա- 20
ղէկ հողի մէջ ցանուածները անոնք
են, որ խօսքը կը լսեն՝ և կ՚ընդու-
նին, ու պտուղ կու տան՝ մէկուն
տեղը երեսուն, և մէկուն տեղը
վաթսուն, ու մէկուն տեղը հա-
րիւր։

Ու ըսաւ անոնց, Միթէ ճրագը 21
գրուանին կամ մահիճին տա՞կը
դրուելու համար կու գայ. չէ՞ որ
աշտանակին վրայ դրուելու համար։
Ինչու որ ծածուկ բան մը չկայ, որ 22
պիտի չյայտնուի. և գաղտուկ բան
մը չէ եղած՝ որ երևան պիտի չելլէ։
Թէ որ մէկը լսելու ականջ ունի, 23
թող լսէ՛։

Ու ըսաւ անոնց, Նայեցէք ինչ 24
կը լսէք. ինչ չափով որ դուք կը
չափէք, նոյն չափովը պիտի չափուի
ձեզի. և ձեզի՝ որ կը լսէք, պիտի
աւելնայ։ Վասն զի ով որ ունի, 25
անոր պիտի տրուի. և ով որ չու-
նի, ունեցածն ալ անկէ պիտի
առնուի։

Ու կ՚ըսէր, Աստուծոյ թագա- 26
ւորութիւնը անանկ է, որպէս թէ
մէկ մարդ մը հողին մէջը սերմ

27 ձգէ, Ու քնանայ և արթննայ գի-
շեր ու ցորեկ, և սերմը բուսնի
ու մեծնայ, ան ինքը չգիտեր թէ
28 ինչպէս։ Վասնզի հողը ինքիրմէն
պտուղ կու տայ, առաջ խոտը,
ետքը հասկը, անկէ ետև լեցուն
29 ցորենը հասկին մէջ։ Ու երբոր
պտուղը հասուննայ, շուտ մը մանգաղը կը ղրկէ, ինչու որ հունձքի
ատենը հասած է։
30 Ու կ՚ըսէր, Աստուծոյ թագա-
ւորութիւնը ի՞նչ բանի նմանցը-
նենք, կամ ի՞նչ առակով անիկայ
31 բաղդատենք։ Մանանեխի հատին
նման է, որ հողին մէջ ցանուած
ատենը՝ երկրի վրայ եղած սերմե-
32 րուն ամենէն պզտիկն է. Ու երբ-
որ ցանուի, կը բուսնի և ամէն
խոտեղէններէն ալ մեծ կ՚ըլլայ,
ու մեծ ճիւղեր կ՚արձակէ, անանկ
որ երկնից թռչուններուն հերիք
կ՚ըլլայ անոր շուքին տակը բնա-
կելու։
33 Ու ասանկ շատ առակներով կը
խօսէր անոնց հետ խօսքը՝ որչափ
34 որ կրնային մտիկ ընել. Ու առանց
առակի բան մը չէր խօսեր անոնց,
բայց առանձին իր աշակերտներուն
կը մեկնէր ամէնը։
35 Ու նոյն օրը երբոր իրիկուն կ՚ըլ-
լար, ըսաւ անոնց, Եկէ՛ք ծովուն
36 անդիի կողմը անցնինք։ Անոնք
ալ ժողովուրդը թող տալով՝ ա-
ռին զինքը ինչպէս որ էր նաւուն
մէջ. և ուրիշ նաւակներ ալ կա-
37 յին անոր հետ։ Ու հովի մեծ
փոթորիկ մը եղաւ, և ալիքները
նաւուն վրայ կու զարնէին, անանկ
38 որ գրեթէ կը լեցուէր։ Ու ինքը
նաւուն ետևի կողմը բարձի վրայ
կը քնանար. զարթընցուցին զանի-
կայ և կ՚ըսէին անոր, Վարդապետ՝
39 հոգ չէ՞ որ կը կորսուինք։ Ու
ելլելով՝ սաստեց հովին, և ծովուն
ըսաւ, Դադարէ՛ լո՛ւռ կեցիր. ու
հովը դադարեցաւ, և մեծ խաղա-
40 ղութիւն եղաւ։ Ու ըսաւ անոնց,
Ինչո՞ւ ասանկ վախկոտ էք, ի՞նչ-
պէս կ՚ըլլայ որ հաւատք չունիք։
Ու անոնք խիստ վախցան, ու կ՚ը-
սէին իրարու, Արդեօք ո՞վ է ասի-
կայ, որ հովը ու ծովը անոր կը
հնազանդին։

ԳԼ. Ե

Ու եկան ծովուն անդիի կողմը 1
Գադարացւոց երկիրը։ Ու 2
երբոր ինքը նաւէն ելաւ, գերեզ-
մաններէն ելած մարդ մը պատա-
հեցաւ իրեն, որ պիղծ ոգի ունէր.
Որ անոր բնակած տեղն ալ գերեզ- 3
մաններուն մէջն էր. ու շղթայով
ալ մէկը չէր կրնար զանիկայ կա-
պել. Որովհետև շատ անգամ 4
ոտնակապերով և շղթաներով կա-
պուեր էր, բայց անիկայ շղթաները
կտրեր ու ոտնակապերը կոտրտեր
էր, և մէկը չէր կրնար զանիկայ
նուաճել. Ու միշտ գիշեր ու ցո- 5
րեկ գերեզմաններուն մէջ ու լեռ-
ներուն մէջ կը կանչըռտէր, ու
իր մարմինը քարերով կը ճեղքըռ-
տէր։ Երբոր հեռուանց Յիսուսը 6
տեսաւ, վազեց ու երկրպագութիւն
ըրաւ անոր, Ու մեծ ձայնով մը 7
աղաղակեց ու ըսաւ, Դուն իմ
հետս ի՞նչ բան ունիս Յիսուս՝
Որդի Աստուծոյ բարձրելոյ, քեզ
Աստուծով կ՚երդմնեցընեմ, զիս մի՛
տանջեր։ (Վասնզի կ՚ըսէր անոր, 8
Պիղծ ոգի՛ ելիր աս մարդէն։)
Ու անոր հարցուց թէ Անունդ 9
ի՞նչ է. ու ըսաւ անոր, Իմ ա-
նունս Լեգէոն է, ինչու որ մենք
շատուոր ենք։ Ու շատ կ՚աղաչէին 10
անոր՝ որ զիրենք ան երկրէն դուրս
չհանէ։ Ու հոն լեռանը մօտ խո- 11
զերու մեծ երամակ մը կար՝ որ կ՚ա-
րածուէին։ Ու բոլոր դևերը ա- 12
ղաչեցին անոր ու ըսին, Մեզ
խոզերուն ղրկէ, որ անոնց մէջը
մտնենք։ Ու Յիսուս շուտ մը 13
հրաման տուաւ անոնց. ու երբոր
պիղծ ոգիները ելան՝ խոզերուն մէջը
մտան, և երամակը զառիվայրէն տա-
ռէն ծովը վազեց, (երկու հազարի
չափ կային,) ու ծովուն մէջը խեղ-
դուեցան։ Ու խոզարածները փա- 14
խան, ու պատմեցին քաղաքը ու
ագարակները, և մարդիկ ելան տես-
նելու՝ թէ ինչ բան է որ եղաւ։
Ու եկան Յիսուսին, և տեսան դի- 15

դահարը՝ որ լէգէոն ունէր, որ հա-
գուած ու խելքը վրան եկած նստեր
16 էր, ու վախցան։ Ու անոնք որ
տեսեր էին, պատմեցին անոնց թէ
ինչ եղաւ դիւահարին, նաև խո-
17 զերուն վրայով։ Ու սկսան ա-
ղաչել անոր, որ իրենց սահմաննե-
18 րէն երթայ։ Ու երբոր անիկայ
նաւը մտաւ, դիւահարը կ'աղաչէր
19 անոր՝ որ հետը ըլլայ։ Ու Յի-
սուս թող չտուաւ անոր, հապա
ըսաւ անոր, Գնա՛ քու տունդ քու
ընտանեացդ, ու պատմէ՛ անոնց
ինչ որ Տէրը քեզի ըրաւ, և ողոր-
20 մեցաւ քեզի։ Ան ալ գնաց, և
սկսաւ Դեկապոլիսի մէջ քարոզել
ինչ որ Յիսուս իրեն ըրաւ. և ա-
մէնը կը զարմանային։
21 Ու երբոր Յիսուս նաւով նորէն
ծովուն անդիի կողմը անցաւ, շատ
բազմութիւն ժողվուեցաւ անոր քո-
22 վը, և ինքը ծովեզերքն էր։ Ու
ահա ժողովրդապետներուն մէկը կու-
գար, որուն անունը Յայրոս էր,
ու երբոր տեսաւ զանիկայ, անոր
23 ոտքը ինկաւ. Ու շատ կ'աղաչէր
անոր ու կ'ըսէր թէ Իմ աղջիկս
մեռնելու մօտ է, գաս անոր վը-
րայ ձեռք դնես, որպէս զի ազատի,
24 ու պիտի ապրի։ Ու գնաց անոր
հետ, ու շատ բազմութիւն իր
ետևէն կ'երթային ու կը նեղէին
զինքը։
25 Ու կնիկ մը՝ որ տասուերկու տա-
րի արիւնի տեղատուութեան մէջ
26 էր, Ու շատ նեղութիւն կրած էր շատ
բժիշկներէն, և իր բոլոր ունեցա-
ծը վատներ էր, ու օգուտ մը չէր
գտեր, հապա եւս առաւել զայրա-
27 ցեր էր, Երբոր Յիսուսին վրայով
լսեց, ետևէն եկաւ բազմութեանը
մէջ, ու անոր հանդերձին դպաւ.
28 Քանզի կ'ըսէր, Թէ որ միայն անոր
հանդերձներուն դպչիմ, պիտի
29 բժշկուիմ։ Ու շուտ մը իր ա-
րիւնին աղբիւրը ցամքեցաւ, ու իր
մարմինին մէջ իմացաւ թէ տան-
30 ջանքէն բժշկուեցաւ։ Ու Յիսուս
շուտ մը գիտնալով իր անձին մէջ
ան զօրութիւնը՝ որ իրմէն ելաւ,
դարձաւ բազմութեանը մէջ ու ը-
սաւ, Ո՞վ դպաւ իմ հանդերձ-
ներուս։ Ու իր աշակերտները 31
ըսին իրեն, Կը տեսնես որ բազ-
մութիւնը քեզ կը նեղէ, ու կ'ը-
սե՞ս թէ՝ Ո՞վ ինծի դպաւ։ Ու 32
իր բոլորտիքը կը նայէր որ աս բա-
նը ընողը տեսնէ։ Ու կնիկը վախ- 33
ցաւ ու դողաց, ինչու որ գիտէր
թէ իրեն ինչ եղաւ. և եկաւ՝ անոր
առջևը ինկաւ, ու բոլոր ճշմարիտը
չիտակ չիտակ զրուցեց անոր։ Ու 34
Յիսուս ըսաւ անոր, Աղջիկ՝ քու
հաւատքդ քեզ բժշկեց. գնա խա-
ղաղութեամբ, ու բժշկուած եղիր
քու տանջանքէդ։
Երբոր ինքը դեռ կը խօսէր, 35
ժողովրդապետին տունէն մարդիկ ե-
կան ու ըսին թէ Աղջիկդ մեռաւ,
ալ ինչո՞ւ վարդապետը կը յոգնե-
ցընես։ Իսկ Յիսուս ըսուած խօս- 36
քը լսածին պէս՝ ժողովրդապետին
ըսաւ, Մի՛ վախնար, միայն թէ
հաւատա՛։ Ու մէկը թող չտուաւ 37
իր հետը երթալու, բայց միայն
Պետրոսը ու Յակոբոսը և Յակո-
բոսին եղբայրը Յովհաննէսը։ Ու 38
ժողովրդապետին տունը գալով՝ տե-
սաւ աղմուկ և սաստիկ լացողներ ու
աղաղակողներ։ Ու ներս մտնելով՝ 39
ըսաւ անոնց, Ինչո՞ւ խռովեր էք
ու կու լաք. մանուկը մեռած չէ,
հապա կը քնանայ։ Ու ծաղր կ'ը- 40
նէին անիկայ. բայց ինքը ամէնը
դուրս հանելով՝ իր հետը առաւ
մանուկին հայրը ու մայրը՝ և անոնք
որ իր հետն էին, ու մտաւ հոն ուր
որ մանուկը պառկած էր։ Ու 41
մանուկին ձեռքէն բռնելով՝ ըսաւ
անոր, Տալիթա՝ կումի. որ կը
թարգմանուի, Աղջիկ (քեզի կ'ը-
սեմ,) ելիր։ Ու իսկոյն աղջիկը 42
ոտք ելաւ. ու կը քալէր, ինչու որ
տասուերկու տարեկան էր. ու մեծ
ապշութեամբ ապշեցան։ Ու սաս- 43
տիկ պատուէր տուաւ անոնց՝ որ մէ-
կը չգիտնայ աս բանը. ու ըսաւ որ
անոր ուտելիք տան։

## ԳԼ. Զ.

Ու անկէ ելլելով՝ եկաւ իր երկի- 1
րը, ու անոր աշակերտները իր

Սիդոնի սահմանները գնաց . և
տուն մը մտնելով՝ չէր ուզեր որ
մէկուն յայտնուի , բայց չկրցաւ
25 ծածկուիլ . Քանզի կնիկ մը՝ որուն
աղջիկը պիղծ ոգի ունէր իր նեղու-
թէն , լսեց անոր վրայով , ու եկաւ՝
26 անոր ոտքը ինկաւ : Եւ այն կնիկը
հեթանոս էր՝ ազգով Փիւնիկ Ասո-
րի , ու կ'աղաչէր անոր՝ որ դեւը իր
27 աղջիկէն հանէ : Եւ Յիսուս ըսաւ
անոր , Թո՛ղ տուր որ առաջ տը-
ղաքը կշտանան . քանզի աղէկ չէ
տղոցը հացը առնել ու շուներուն
28 նետել : Անիկայ պատասխան տուաւ
ու ըսաւ անոր , Այո՛ Տէր , մինչու
որ շուներն ալ սեղանին տակը տը-
ղոցը փշրանքներէն կը կերակրուին :
29 Եւ ըսաւ անոր , Այս խօսքիդ հա-
մար գնա , քու աղջիկէդ դեւը ե-
30 լաւ : Եւ ինքը իր տունը երթա-
լով՝ գտաւ որ դեւը ելած , ու աղ-
ջիկը անկողինին վրայ պառկած էր :
31 Եւ նորէն Տիւրոսի ու Սիդոնի
սահմաններէն ելլելով՝ եկաւ Գա-
լիլեայի ծովեզերքը Դեկապոլեսի
32 սահմաններուն մէջէն : Եւ մէկը
բերին անոր առջին՝ խուլ ու դը-
ժուարախօս , ու կ'աղաչէին որ ա-
33 նոր վրայ ձեռք դնէ : Եւ ժողո-
վուրդէն մէկդի առնելով զանիկայ ,
իր մատները անոր ականջներուն
մէջը խօթեց ու թուքով , և անոր
34 լեզուին դպաւ , Ու երկինքը նայե-
լով՝ հառաչեց ու ըսաւ անոր ,
Եփփաթա , (որ ըսել է Բա-
35 ցուէ՛ ,) Եւ իսկոյն անոր ականջ-
ները բացուեցան , ու անոր լեզուին
կապը քակուեցաւ , և շիտակ կը
36 խօսէր : Ու պատուիրեց անոնց որ
մէկու մը չըսեն . և որչափ ինքը
կը պատուիրէր անոնց , անոնք՝ ալ
37 աւելի կը քարոզէին . Ու չափէ
դուրս կը զարմանային և կ'ըսէին ,
Ամէն բաները աղէկ ըրաւ ասիկայ ,
որ խուլերուն լսել կու տայ և համ-
րերուն խօսիլ :

## ԳԼ. Ը.

1 Այն օրերը ժողովուրդը խիստ շատ
ըլլալով , և ուտելու բան մը
չունենալով , Յիսուս իրեն աշա-
կերտները կանչեց ու ըսաւ
անոնց , Կը խղճամ այս ժողովուր- 2
դին վրայ , մինչու որ հիմա երեք օր
է որ ինծի քովս են , և բան մը չու-
նին ուտելու . Եւ թէ որ ասոնք 3
անօթի խրկեմ իրենց տուները ,
ճամբուն մէջ պիտի մարին , մինչու
որ ասոնցմէ ոմանք հեռու տեղէ ե-
կած են : Եւ իր աշակերտները 4
պատասխան տուին իրեն , Այս ա-
նապատին մէջ ուսկից կրնայ մէկը
հացով կշտացընել ասոնք : Եւ 5
հարցուց անոնց , Քանի՞ նկանակ
ունիք . ու անոնք ըսին , Եօթը :
Եւ հրամայեց ժողովուրդին՝ որ 6
գետնին վրայ նստին , ու առաւ
եօթը նկանակը , գոհացաւ և
կտրեց ու տուաւ աշակերտներուն ,
որ ժողովուրդին առջևը դնեն , և
դրին : Ու քանի մը մանր ձուկեր 7
ունէին , և օրհնեց ու ըսաւ որ
անոնք ալ դնեն անոնց առ-
ջևը : Եւ կերան ու կշտացան , 8
ու աւելցած կտորուանքները վեր-
ցուցին եօթը զամբիւղ : Եւ ու- 9
տողները չորս հազարի չափ էին ,
ու արձակեց զանոնք : Եւ շուտ 10
մը նաւը մտնելով աշակերտներուն
հետ , եկաւ Դաղմանութայի կող-
մերը :
Եւ փարիսեցիները ելլելով՝ սկը- 11
սան անոր հետ վիճաբանութիւն
ընել , և զանիկայ փորձելով՝ իրմէն
նշան մը կ'ուզէին երկինքէն : Եւ 12
անիկայ իր հոգիին մէջ հառաչելով
ըսաւ , Ի՞նչ է որ այս ազգը նշան
կ'ուզէ . Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի որ
այս ազգին նշան պիտի չտրուի :
Ու զանոնք թող տալով՝ նորէն նա- 13
ւը մտաւ , ու գնաց ծովուն միւս
կողմը :
Եւ հաց առնելու մոռցեր էին , 14
ու նաւուն մէջ իրենց հետը միայն
մէկ նկանակ մը ունէին : Եւ կը 15
պատուիրէր անոնց ու կ'ըսէր ,
Նայեցէք և զգուշացէք փարիսե-
ցւոց խմորէն ու Հերովդէսին
խմորէն : Եւ իրարու հետ կը խոր- 16
հէին ու կ'ըսէին թէ Հաց չու-
նենալնուս համար է : Իսկ Յիսուս 17
անոնց խորհուրդը գիտնալով ըսաւ

անոնց, Ինչո՞ւ կը խորհիք թէ
հաց չունիք. տակաւին չե՞ք հաս-
կընար ու չե՞ք իմանար. դեռ
18 սրտերնիդ թմրած է. Աչքեր ու-
նիք ու չե՞ք տեսներ, և ականջներ
ունիք ու չե՞ք լսեր, և չե՞ք յի-
19 շեր: Երբոր հինգ նկանակը հինգ
հազարին կտրեցի, քանի՞ կողով
լեցուն կտորուանք վերցուցիք. ըսին
20 անոր, Տասներկու: Ու երբոր
եօթը նկանակը չորս հազարին կըտ-
րեցի, քանի՞ զամբիւղ լեցուն կը-
տորուանք վերցուցիք. անոնք ալ
21 ըսին, Եօթը: Ու ըսաւ ա-
նոնց, Հապա ինչո՞ւ չէք հաս-
կընար:

22 Ու Բեթսայիդա եկաւ, ու անոր
առջևը կոյր մը բերին, ու կ'աղա-
23 չէին իրեն որ դպչի անոր. Ու ա-
նիկայ կոյրին ձեռքէն բռնելով՝ գե-
ղէն դուրս հանեց, ու անոր աչ-
քերուն թքնելով՝ ձեռքը անոր վրայ
դրաւ, ու կը հարցընէր անոր թէ
24 բան մը կը տեսնէ՞. Ան ալ նա-
յեցաւ ու կ'ըսէր, Մարդիկներ
կը տեսնեմ ծառերու պէս՝ որ կը
25 պտըտին: Նորէն ձեռքը անոր
աչքերուն վրայ դրաւ, ու անոր
նայիլ տուաւ. և ողջացաւ ու ամէն
26 բան համարձակ կը տեսնէր: Ետքը
զանիկայ իր տունը խրկելով ըսաւ,
Գիւղը մի՛ մտներ, ու գեղէն մէջ
մէկուն մի՛ ըսեր:

27 Ու Յիսուս իր աշակերտներուն
հետ մէկտեղ Փիլիպպոսի Կեսա-
րիային գեղերը ելաւ, ու ճամբուն
մէջ կը հարցընէր իր աշակերտնե-
րուն ու կ'ըսէր անոնց, Ինծի հա-
մար ո՞վ կ'ըսեն մարդիկ թէ եմ:
28 Ու անոնք պատասխան տուին ը-
սին, Ոմանք՝ Յովհաննէս մկրտիչը,
և ուրիշները՝ Եղիան, ուրիշներն
29 ալ՝ մարգարէներէն մէկը: Ու
ինքը ըսաւ անոնց, Հապա դուք
ինծի համար ո՞վ կ'ըսէք թէ եմ.
պատասխան տուաւ Պետրոս ու
ըսաւ անոր, Դուն ես Քրիստո-
30 սը: Ու սաստիկ պատուիրեց ա-
նոնց՝ որ իրեն համար մէկու մը
չզրուցեն:
31 Ու սկսաւ սորվեցընել անոնց,
թէ Պէտք է որ Որդին մարդոյ շատ
չարչարանքներ կրէ, ու երէցներէն
և քահանայապետներէն ու դպիր-
ներէն մերժուի, ու սպաննուի, և
երեք օրէն ետև յարութիւն առնէ:
Ու այս խօսքը յայտնի խօսեցաւ. 32
և Պետրոս մէկդի առաւ զանիկայ,
ու սկսաւ յանդիմանել զանիկայ:
Իսկ ինքը դարձաւ ու իր աշակերտ- 33
ները նայելով, յանդիմանեց
Պետրոսը ու ըսաւ, Ետիս գնա՛
Սատանայ, ինչու որ դուն Աստու-
ծոյ բաները չես մտածեր, հապա
մարդոց բաները:

Իսկ ժողովուրդը իր աշակերտնե- 34
րուն հետ մէկտեղ իրեն կանչելով՝
ըսաւ անոնց, Ո՛վ որ կ'ուզէ իմ
ետևէս գալ, թող իր անձը ու-
րանայ, և իր խաչը վերցընէ, ու
իմ ետևէս գայ: Վասն զի ով 35
որ կ'ուզէ իր անձը ապրեցընել,
պիտի կորսնցընէ զանիկայ. և ով
որ ինծի ու աւետարանին համար
իր անձը կորսնցընէ, պիտի ապ-
րեցընէ զանիկայ: Քանզի ի՞նչ 36
օգուտ է մարդուն՝ որ բոլոր աշ-
խարհը վաստըկի, և իր անձը կոր-
սնցընէ. Կամ իր անձին համար 37
ի՞նչ ազատչէք պիտի տայ մարդ:
Վասն զի ով որ զիս ու իմ խօս- 38
քերս դաւանիլ ամօթ սեպէ այս
շնացող ու մեղաւոր ազգիս մէջ,
Որդին մարդոյ ալ զանիկայ դաւա-
նիլ ամօթ պիտի սեպէ՝ երբոր գայ
իր Հօրը փառքովը սուրբ հրեշ-
տակներուն հետ: Ու ըսաւ ա- 39
նոնց, Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ
հոս ներկայ եղողներէն մէկ քանի-
ները կան՝ որոնք մահուան համը
պիտի չառնեն, մինչև որ տեսնեն
Աստուծոյ թագաւորութիւնը զօ-
րութիւնով եկած:

## ԳԼ. Թ.

Ու վեց օրէն ետև Յիսուս իր հե- 1
տը առաւ Պետրոսը ու Յակո-
բոսը և Յովհաննէսը, ու անոնք
մէկ բարձր լեռ մը հանեց առան-
ձին, և անոնց առջևը այլակերպե-
ցաւ: Ու իր հանդերձները եղան 2
փայլուն խիստ ճերմակ, անանկ

որ երկրի վրայ՝ թափիչ մը չկրնար
3 այնպէս ճերմըկցընել ։ Ու Եղիան
Մովսէսին հետ երեցաւ անոնց, և
4 Յիսուսի հետ կը խօսէին ։ Եւ
Պետրոս պատասխան տուաւ ու
ըսաւ Յիսուսին, Ռաբբի՝ աղէկ
է որ հոս կենանք. ու երեք խրճիթ
շինենք, մէկը քեզի, և մէկը Մով-
5 սէսին, ու մէկը Եղիային. Վասն
զի չէր գիտեր թէ ինչ խօսի, ին-
6 չու որ զարհուրեր էին ։ Եւ մէկ
ամպ մը հովանի եղաւ անոնց վրայ,
ու ձայն մը եկաւ ամպէն՝ ըսելով,
Ասիկայ է իմ սիրելի որդիս, ատոր
7 մտիկ ըրէք ։ Եւ յանկարծ ասդին
անդին որ նայեցան, ալ ուրիշ
մէկը չտեսան, հապա միայն Յի-
8 սուսը իրենց հետ ։ Ու երբոր լեռ-
նէն վար կ'իջնէին, պատուիրեց ա-
նոնց որ տեսածնին մէկու մը չպատ-
մեն, բայց միայն Որդին մարդոյ մե-
ռելներէն յարութիւն առնելէն ետև ։
9 Եւ անոնք այն խօսքը պահեցին, ու
մէջերնին հարցափորձ կ'ընէին թէ
մեռելներէն յարութիւն առնելը
10 ի՞նչ է ։ Եւ իրեն հարցուցին
ու ըսին, Ի՞նչ է որ դպիրնե-
րը կ'ըսեն թէ Պէտք է որ առաջ
11 Եղիան գայ ։ Անիկայ պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Յիրաւի
առաջ Եղիան կու գայ, և ամէն
բան կարգի կը դնէ. և թէ ինչո՞ր
գրուած է Որդւոյ մարդոյ համար,
որ շատ չարչարանքներ պիտի կրէ
12 ու անարգուի. Բայց ձեզի կ'ըսեմ
որ Եղիան եկաւ ալ, և ինչ որ
ուզեցին՝ ըրին անոր, ինչպէս որ
գրուած է անոր համար ։
13 Ու աշակերտներուն քովը գա-
լով՝ տեսաւ շատ ժողովուրդ անոնց
բոլորտիքը՝ և դպիրները, որ վի-
ճաբանութիւն կ'ընէին անոնց հետ ։
14 Եւ շուտ մը բոլոր ժողովուրդը
երբոր տեսան զանիկայ՝ խիստ զար-
մացան, ու առաջ վազելով բարև
15 կու տային անոր ։ Եւ հարցուց
դպիրներուն թէ Ի՞նչ վիճաբա-
16 նութիւն կ'ընէք անոնց հետ ։ Ու
ժողովուրդէն մէկը պատասխան
տալով ըսաւ, Վարդապետ իմ
որդիս քեզի բերի, որ համր ոգի
ունի. Եւ ուր որ անոր հանդիպի, զա- 17
նիկայ գետինը կը զարնէ. ան ալ
կը փրփրի և իր ակռաները կը
կրճտէ ու կը չորնայ. և քու
աշակերտներուդ ըսի որ զանիկայ
հանեն, ու չկրցան ։ Պատասխան 18
տուաւ անոնց ու ըսաւ, Ո՛վ ան-
հաւատ ազգ՝ մինչև ե՞րբ ձեզի հետ
պիտի ըլլամ, մինչև ե՞րբ ձեզի
պիտի համբերեմ. ինծի՛ բերէք
անիկայ ։ Եւ զանիկայ բերին ի- 19
րեն. երբոր ոգին տեսաւ զանի-
կայ, շուտ մը չար ոգին ցնցեց զա-
նիկայ, ու գետինը ինկած կը թա-
ւալէր ու կը փրփրէր ։ Եւ 20
Յիսուս հարցուց անոր հօրը ու
ըսաւ, Ո՞րչափ ատեն է որ այս
բանը ատոր եղաւ. ու անիկայ ը-
սաւ, Տղայութենէն 'ի վեր. Եւ 21
շատ անգամ կրակի ու ջուրի մէջ
կը նետէ ատիկայ՝ որ կորսնցընէ.
բայց թէ որ կարողութիւն մը ու-
նիս, օգնէ մեզի, խղճալով մեր
վրայ ։ Եւ Յիսուս ըսաւ անոր, 22
Թէ որ կարող ես հաւատալու,
ամէն բան կարելի է անոր որ կը
հաւատայ ։ Եւ տղուն հայրը շուտ 23
մը աղաղակեց ու արցունքով ը-
սաւ, Կը հաւատամ Տէ՛ր, օգնէ
իմ անհաւատութեանս ։ Յիսուս 24
երբոր տեսաւ որ ժողովուրդը վրան
կը դիզուի, սաստեց պիղծ ոգիին
ու ըսաւ անոր, Համր ու խուլ
ոգի՝ ես կը հրամայեմ քեզի, ելի՛ր
ատկէ, ու մէյմըն ալ չմտնես ատոր
ներսը ։ Եւ կանչուըռտելով՝ սաս- 25
տիկ ցնցեց զանիկայ ու ելաւ. և
տղան մեռելի պէս եղաւ, անանկ
որ շատերը ըսին թէ Մեռաւ ։
Եւ Յիսուս անոր ձեռքէն բռնելով 26
վերցուց զանիկայ. ան ալ կայնե-
ցաւ ։ Ու երբոր տունը տուն 27
մտաւ, իր աշակերտները առանձին
հարցուցին իրեն՝ ըսելով, Մենք
ինչո՞ւ չկրցանք հանել զանիկայ ։
Եւ ըսաւ անոնց, Այս տեսակը կա- 28
րելի չէ ուրիշ բանով մը ելլել,
բայց միայն աղօթքով ու ծոմապա-
հութեամբ ։
Եւ անկէ ելլելով՝ Գալիլեայի 29
մէջէն կ'անցնէին. ու չէր ուզեր որ

30 մէկը գիտնայ ։ Ինչու որ կը սոր-
վեցընէր իր աշակերտներուն ու
կ՚ըսէր անոնց թէ Որդին մարդոյ
պիտի մատնուի մարդոց ձեռքը , և
զանիկայ պիտի սպաննեն ․ ու երբ-
որ սպաննուի , երրորդ օրը յարու-
31 թիւն պիտի առնէ ։ Իսկ անոնք
չէին հասկընար այն խօսքը , ու կը
վախնային իրեն հարցընելու ։
32 Իսկ եկաւ Կափառնայում , ու
երբոր տունն մտաւ , հարցուց ա-
նոնց ․ Ի՞նչ վիճաբանութիւն կ՚ը-
33 նէիք ճամբան իրարու հետ ։ Իսկ
անոնք լուռ կեցան ․ վասն զի ճամ-
բուն մէջ իրարու հետ վիճաբանու-
34 թիւն կ՚ընէին թէ ով մեծ է ։ Ու
երբոր նստաւ , կանչեց տասներկու-
քը ու ըսաւ անոնց ․ Եթէ որ
մէկը կ՚ուզէ առաջին ըլլալ , ամե-
նուն յետինը պիտի ըլլայ և ա-
35 մենուն սպասաւորը ։ Ու տղայ
մը առաւ կայնեցուց անոնց մէջը ․
և իր գիրկը առնելով զանիկայ՝ ը-
36 սաւ անոնց ․ Ով որ ասանկ տղոց-
մէն մէկը ընդունի իմ անունովս ,
զիս կ՚ընդունի ․ և ով որ զիս ըն-
դունի , չէ՛ թէ զիս կ՚ընդունի ,
37 հապա զիս ղրկողը ։ Պատասխան
տուաւ անոր Յովհաննէս ու ըսաւ ,
Վարդապետ՝ մէկը տեսանք որ քու
անունովդ դեւեր կը հանէր , ու մեր
ետեւէն չպտըտիր , և զանիկայ ար-
գիլեցինք՝ մեր ետեւէն չպտըտելուն
38 համար ։ Իսկ Յիսուս ըսաւ ․ Մի՛
արգիլէք զանիկայ ․ ինչու որ մէկը
չկայ որ իմ անունովս հրաշք գոր-
ծէ , ու կարենայ շուտ մը զիս հայ-
39 հոյել ․ Քանզի ան որ մեզի հա-
40 կառակ չէ , մեր կողմն է ։ Վասն
զի ով որ ձեզի գաւաթ մը ջուր
խմցընէ իմ անունովս՝ թէ դուք
Քրիստոսինն էք , ճշմարիտ կ՚ըսեմ
ձեզի , Անիկայ իր վարձքը պիտի
41 չկորսնցընէ ։ Իսկ ով որ գայ-
թակղեցընէ աս պզտիկներէն մէկը
որ ինծի կը հաւատան , աւելի ա-
ղէկ էր անոր՝ որ աղացքի քար
մը իր վզէն կախուէր , ու ծովը
42 ձգուէր ։ Իսկ թէ որ քու ձեռքդ
քեզ կը գայթակղեցընէ , կտրէ՛ ա-
նիկայ ․ աղէկ է քեզի պակասաւոր
մտնել կեանքը , քան թէ երկու
ձեռք ունենալ ու գեհենը երթալ
չմարելու կրակին մէջը ․ Ուր որ 43
անոնց որդը չմեռնիր ու կրակը
չմարիր ։ Իսկ թէ որ քու ոտքդ 44
քեզ կը գայթակղեցընէ , կտրէ՛
անիկայ ․ աղէկ է քեզի կաղ մտնել
կեանքը , քան թէ երկու ոտք ու-
նենալ՝ ու գեհենը ձգուիլ չմա-
րելու կրակին մէջը ․ Ուր որ անոնց 45
որդը չմեռնիր ու կրակը չմարիր ։
Իսկ թէ որ քու աչքդ քեզ կը գայ- 46
թակղեցընէ , հանէ՛ անիկայ ․ ա-
ղէկ է քեզի մէկ աչքով Աստուծոյ
թագաւորութիւնը մտնել , քան
թէ երկու աչք ունենալ ու կրակին
գեհենը ձգուիլ ․ Ուր որ անոնց 47
որդը չմեռնիր ու կրակը չմարիր ։
Ինչու որ ամէն մարդ կրակով պի- 48
տի աղուի , և ամէն զոհ աղով
պիտի աղուի ։ Աղը աղէկ է , բայց 49
թէ որ աղը անհամնայ , ինչո՞վ պի-
տի համեմեցընէք ․ Ձեր անձին մէջ
աղ ունեցէք , և իրարու հետ խա-
ղաղութիւն ըրէք ։

ԳԼ. Ժ

Իսկ անկէ ելլելով՝ Հրէաստանի 1
սահմանները եկաւ Յորդանա-
նու անդիի կողմն , ու նորէն ժո-
ղովուրդները անոր քովը կը ժողո-
վուէին ․ և ինչպէս որ սովորութիւն
ունէր , դարձեալ կը սորվեցընէր
անոնց ։

Ու փարիսեցիները քովը եկան , 2
և զանիկայ փորձելով կը հարցընէին
անոր թէ Արժա՞ն է որ էրիկը իր
կնիկը արձակէ ։ Իսկ անիկայ պա- 3
տասխան տուաւ ու անոնց ըսաւ ․
Մովսէս ձեզի ի՞նչ պատուիրեց ։
Իսկ անոնք ըսին , Մովսէս հրաման 4
տուաւ արձակման գիր գրել , ու ար-
ձակել ։ Իսկ Յիսուս պատասխան 5
տալով՝ անոնց ըսաւ ․ Ձեր սրտին
կարծրութեանը համար գրեց ձեզի
աս պատուէրը ․ Բայց ստեղծա- 6
գործութեան սկիզբէն Աստուած ա-
նոնք արու և էգ ըրաւ , — ըսաւ — ,
Ասոր համար մարդ իր հայրը ու 7
մայրը պիտի ձգէ , և իր կնկանը
պիտի յարի ․ Ու երկուքը մէկ 8

մարմին պիտի ըլլան . ուստի ալ
երկուք չեն , հապա մէկ մարմին .
9 Ուրեմն ան որ Աստուած միաւո-
10 րեց , մարդ թող չզատէ ։ Եւ
տունը իր աշակերտները նորէն նոյն
11 բանը հարցուցին իրեն ։ Ու ըսաւ
անոնց , Ո՛վ որ իր կնիկը արձա-
կէ և ուրիշ մը առնէ , անոր դէմ
12 շնութիւն կ'ընէ ։ Ու կնիկ մը
թէ որ իր էրիկէն զատուի և ու-
րիշ էրկան մը ըլլայ , շնութիւն
կ'ընէ ։
13 Եւ մանր տղաք բերին իրեն , որ
անոնց դպչի , բայց աշակերտները
14 կը յանդիմանէին բերողները ։ Յի-
սուս երբոր տեսաւ , սրդողելով ա-
նոնց ըսաւ , Թո՛ղ տուէք որ մանր
տղոցը որ ինծի գան , և մի՛ ար-
գիլէք զանոնք , քանզի որ Աստու-
ծոյ թագաւորութիւնը ասանկնե-
15 րունն է ։ Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի ,
Ո՛վ որ Աստուծոյ թագաւորու-
թիւնը պզտիկ տղու մը պէս չըն-
դունի , բնաւ պիտի չմտնէ անոր
16 մէջը ։ Եւ անոնք գիրկը առաւ ,
վրանին ձեռք դրաւ ու օրհնեց զա-
նոնք ։
17 Ու երբոր անիկայ դուրս ելաւ
ճամբուն մէջ , ահա մէկ մարդ մը
վազեց՝ ու անոր առջևը ծունկ գը-
նելով կը հարցընէր անոր ու կ'ը-
սէր ; Բարի՛ վարդապետ՝ ի՞նչ
ընեմ որ յաւիտենական կեանքը
18 ժառանգեմ ։ Եւ Յիսուս ըսաւ
անոր ; Ինչո՞ւ զիս բարի կ'անուա-
նես . մէկէն 'ի զատ բարի չկայ ,
19 որ է Աստուած ։ Պատուիրանք-
ները գիտես . Շնութիւն մի՛ ը-
ներ , Սպանութիւն մի՛ ըներ , Գո-
ղութիւն մի՛ ըներ , Սուտ վկայու-
թիւն մի՛ ըներ , Զրկանք մի՛
ըներ , Քու հայրդ ու մայրդ պա-
20 տուէ՛ ։ Անիկայ պատասխան տուաւ
ու ըսաւ անոր , Վարդապետ՝ ա-
տոնք ամէնը մանկութենէս 'ի վեր
21 պահեր եմ ։ Եւ Յիսուս անոր
նայելով՝ սիրեց զանիկայ , ու ըսաւ
անոր ; Մէկ բան մը պակաս է
քեզի . գնա ունեցածդ ծախէ և
տուր աղքատներուն , ու երկինքը
գանձ պիտի ունենաս , և խաչը
վերցու՛ր ու եկուր իմ ետևէս ։
Եւ անիկայ աս խօսքին համար խո- 22
ժոռելով՝ տրտմած գնաց , քանզի
որ շատ ստացուածք ունէր ։ Եւ 23
Յիսուս իր բոլորտիքը նայելով՝
ըսաւ իր աշակերտներուն , Որչափ
դժուար է անոնց որ հարստութիւն
ունին , Աստուծոյ թագաւորութիւ-
նը մտնել ։ Եւ աշակերտները 24
զարմացեր էին անոր խօսքերուն վը-
րայ . բայց Յիսուս նորէն պատաս-
խան տալով՝ անոնց ըսաւ , Որ-
դեակներ՝ որչափ դժուար է իրենց
հարստութեանը յուսացողներուն
Աստուծոյ թագաւորութիւնը մըտ-
նել ։ Դիւրին է որ ուղտը ասե- 25
ղին ծակէն անցնի , քան թէ հա-
րուստը Աստուծոյ թագաւորութիւ-
նը մտնէ ։ Եւ անոնք խիստ շատ 26
կը զարմանային ու կ'ըսէին իրա-
րու , Նա ո՞վ կրնայ փրկուիլ ։
Եւ Յիսուս անոնց նայելով ըսաւ , 27
Ասիկայ մարդոց կողմանէ անկարելի
է , բայց ոչ Աստուծոյ կողմանէ .
քանզի Աստուծոյ կողմանէ ամէն
բան կարելի է ։ Պետրոս սկսաւ 28
ըսել անոր , Ահա մենք ամէն բան
թողուցինք և քու ետևէդ եկանք ։
Եւ Յիսուս պատասխան տալով 29
ըսաւ ; Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի ,
Մէկը չկայ որ թողուց տուն , կամ
եղբայրներ , կամ քոյրեր , կամ
հայր , կամ մայր , կամ կին , կամ
որդիներ , կամ արտեր՝ ինծի համար
ու աւետարանին համար , Որ պիտի 30
չառնէ հարիւրապատիկ հիմա աս
ատենս՝ տուներ , ու եղբայրներ ,
և քոյրեր , ու մայրեր , և որդիներ ,
ու արտեր՝ հալածանաց հետ ; և
գալու աշխարհին մէջ յաւիտենա-
կան կեանքը ։ Բայց շատ առա- 31
ջիններ պիտի ըլլան յետին , ու յե-
տիններ՝ առաջին ։
Եւ անոնք դէպ 'ի Երուսաղէմ 32
կ'ելլէին ու ճամբուն մէջն էին .
և Յիսուս անոնցմէ առաջ կ'եր-
թար , ու անոնք կը զարմանային ,
ու ետևէն երթալով՝ կը վախնա-
յին ։ Եւ նորէն քովը առնելով
տասուերկուքը , սկսաւ ըսել ա-
նոնց ինչ բաներ որ իրեն պիտի

33 պատահելիքն · Ահա՝ ըսաւ, Մենք
Երուսաղէմ կ'ելլենք, և Որդին
մարդոյ պիտի մատնուի քահանա-
յապետներուն ու դպիրներուն, և
զանիկայ մահուան պիտի դատա-
պարտեն, ու զանիկայ հեթանոս-
34 ներուն պիտի մատնեն · Եւ զա-
նիկայ ծաղր պիտի ընեն ու ծեծեն,
և անոր վրայ պիտի թքնեն, ու զա-
նիկայ մեռցընեն ; ու երրորդ օրը
յարութիւն պիտի առնէ :
35 Եւ անոր քովը գացին Յակոբոս
ու Յովհաննէս՝ Զեբեդեայի որ-
դիքը, ու ըսին, Վարդապետ՝
կ'ուզենք որ ինչ բան որ խնդր-
36 րենք, մեզի ընես : Ան ալ ըսաւ
անոնց, Ի՞նչ կ'ուզէք որ ձեզի
37 ընեմ : Ու անոնք ըսին իրեն,
Շնորհէ՛ մեզի որ նստինք մեկզմէ
մէկը աջ կողմդ, և միւսը ձախ
38 կողմդ քու փառացդ մէջ : Եւ Յի-
սուս ըսաւ անոնց, Չէք գիտեր
ինչ կը խնդրէք · կրնա՞ք խմել ան
գաւաթը որ ես կը խմեմ, և ան
մկրտութիւնովը մկրտուիլ՝ որով
39 ես կը մկրտուիմ · Եւ անոնք ը-
սին իրեն, Կրնանք · ու Յիսուս
ըսաւ անոնց, Ան գաւաթը որ ես
կը խմեմ՝ պիտի խմէք, և ան
մկրտութիւնովը որ ես կը մկր-
40 տուիմ՝ պիտի մկրտուիք · Բայց
իմ աջ կողմս ու ձախ կողմս նստիլը
իմս չէ տալը, հապա որոնց որ
41 պատրաստուած է : Ու երբոր մէ-
տասը աշակերտները լսեցին, ըս-
կըսան Յակոբոսին ու Յովհաննէ-
42 սին նեղանալ : Իսկ Յիսուս իրեն
կանչեց զանոնք ու ըսաւ անոնց,
Գիտէք որ ազգաց իշխան սե-
պուածները կը տիրեն անոնց, և
անոնց մեծամեծները կ'իշխեն ա-
43 նոնց · Բայց ձեր մէջը անանկ պիտի
չըլլայ ; հապա ձեզմէ ով որ մեծ
ըլլալ կ'ուզէ, անիկայ ձեր սպասա-
44 ւորը ըլլայ · Ու ձեզմէ ով որ ա-
ռաջին ըլլալ կ'ուզէ, անիկայ ամե-
45 նուն ծառայ ըլլայ : Վասնզի Որդին
մարդոյ ալ չեկաւ սպասաւորութիւն
ընդունելու, հապա սպասաւորու-
թիւն ընելու, և իր կեանքը շատե-
րուն համար փրկանք մը տալու :

Ու եկան Երիքով · ու երբոր 46
Երիքովէն կ'ելլէր աշակերտներովը
և շատ բազմութիւնով, Տիմէոսի
որդին կոյր Բարտիմէոսը ճամբուն
քովը նստեր էր մուրալու : Ու 47
երբոր լսեց թէ Յիսուս Նազով-
րեցին է, սկսաւ աղաղակել ու
ըսել, Յիսուս՝ որդի Դաւիթի՝
ողորմէ ինծի : Եւ շատերը կը 48
յանդիմանէին զանիկայ, որ լռէ,
բայց անիկայ՝ ալ աւելի կ'աղաղա-
կէր, Որդի Դաւիթի՝ ողորմէ ին-
ծի : Եւ Յիսուս կանգ առնելով՝ 49
ըսաւ որ անիկայ կանչեն · կանչե-
ցին կոյրը ու ըսին անոր, Քաջ
եղիր, ելի՛ր՝ քեզ կը կանչէ : Եւ 50
անիկայ իր հանդերձը ձգելով,
ելաւ ու եկաւ Յիսուսին : Եւ 51
Յիսուս պատասխան տուաւ ու
անոր ըսաւ, Ի՞նչ կ'ուզես որ քե-
զի ընեմ · կոյրը ըսաւ անոր,
Ռաբբունի՝ որ աչքերս բացուին :
Եւ Յիսուս ըսաւ անոր, Գնա · 52
քու հաւատքդ քեզ բժշկեց · և
շուտ մը անոր աչքերը բացուեցան,
ու ճամբան Յիսուսին ետևէն կ'եր-
թար :

## ԳԼ. ԺԱ

Ու երբոր Երուսաղէմին մօտեցան՝ 1
Բեթփագէ ու Բեթանիա դէպ
'ի Ձիթենեաց լեռը, Յիսուս իր
աշակերտներէն երկուքը խրկեց,
Եւ ըսաւ անոնց, Գացէք ատ ձեր 2
դիմացի գեղը · և անոր մէջ մըտ-
նելնուդ պէս՝ պիտի գտնէք կապած
աւանակ մը, որուն վրայ մարդ մը
նստած չէ · արձըկեցէք անիկայ ու
բերէք · Եւ թէ որ մէկը ըսէ ձեզի, 3
թէ Ատ ի՞նչ կ'ընէք, ըսէ՛ք թէ
Տէրոջը պէտք է · և շուտ մը հոս
պիտի խրկէ զանիկայ : Գացին 4
և գտան աւանակը դուրսը փողոցին
մէջ դրանը քով կապած, ու ար-
ձըկեցին զանիկայ : Եւ հոն կայ- 5
նողներէն ոմանք ըսին անոնց, Ի՞նչ
կ'ընէք որ կ'արձըկէք ատ աւանա-
կը : Եւ անոնք ըսին անոնց ինչ- 6
պէս որ Յիսուս պատուիրեր էր,
ու իրենց թող տուին : Եւ աւա- 7
նակը Յիսուսի բերին, ու անոր

վրայ իրենց հանդերձները դրին ,
8 ու նստաւ անոր վրայ ։ Եւ շատե-
րը իրենց հանդերձները ճամբուն
վրայ փռեցին , և ուրիշները ծառե-
րէն ճիւղեր կը կտրէին ու ճամ-
9 բուն վրայ կը տարածէին ։ Եւ
առջեւէն ու ետեւէն գացողները կ'ա-
ղաղակէին ու կ'ըսէին , Ովսաննա .
Օրհնեալ է ան որ Տէրոջը անուա-
10 մը կու գայ . Օրհնեալ է մեր Դա-
ւիթ հօրը թագաւորութիւնը որ
կու գայ . Ովսաննա 'ի բարձունս ։
11 Եւ Յիսուս մտաւ Երուսաղէմ
ու տաճարը , և չորս կողմը ամէն
բաները աչքէ անցուց . և արդէն
ժամանակը իրիկուն ըլլալով՝ Բե-
թանիա ելաւ տասուերկուքին հետ
մէկտեղ ։
12 Ու հետեւեալ օրը երբոր Բե-
թանիայէն կ'ելլէին , անօթեցաւ .
13 Եւ հեռուանց տերեւալից թզենի
մը տեսնելով՝ եկաւ որ գուցէ անոր
վրայ բան մը գտնէ . ու երբոր անոր
քովը գնաց , տերեւներէն 'ի զատ
բան մը չգտաւ , ինչու որ թզե-
14 թուզի ատեն չէր . Եւ պատասխան
տուաւ ու ըսաւ անոր , Ասկէ ետեւ
մէկը քեզմէ պտուղ չուտէ յաւի-
տեան . և իր աշակերտները լսե-
ցին ։
15 Ու եկան Երուսաղէմ . և Յի-
սուս տաճարը մտնելով՝ սկսաւ
դուրս հանել անոնք որ տաճարին
մէջ կը ծախէին ու կը գնէին . և
ստակ փոխողներուն սեղանները ,
ու աղաւնի ծախողներուն աթոռ-
16 ները կործանեց . Եւ թող չէր
տար՝ որ մէկը տաճարին մէջէն ա-
17 ման մը անցընէ ։ Եւ կը սորվե-
ցընէր ու կ'ըսէր անոնց , Գրուած
չէ՞ որ իմ տունս աղօթքի տուն
պիտի կոչուի բոլոր ազգերուն ,
բայց դուք աւազակներու
18 այր ըրիք ։ Եւ դպիրները ու
քահանայապետները ասոր լսելով՝ կը
փնտռէին թէ ինչպէս կորսընցընեն
զանիկայ , քանզի անկէ կը վախնա-
յին . ինչու որ բոլոր ժողովուրդը
զարմացեր էր անոր վարդապետու-
19 թեանը վրայ ։ Ու երբոր իրիկուն
եղաւ , քաղաքէն դուրս ելաւ ։

Եւ առտուանց երբոր անկէ կ'անց- 20
նէին , թզենին տեսան արմատէն
չորցած ։ Ու Պետրոսին միտքը 21
եկաւ ու ըսաւ անոր , Ռաբբի՛
աՀա թզենին որ անիծեցիր , չոր-
ցեր է ։ Եւ Յիսուս պատասխան 22
տալով ըսաւ անոնց , Աստուծոյ
հաւատք ունեցէ՛ք ։ Քանզի ճըշ- 23
մարիտ կ'ըսեմ ձեզի , Ո՛վ որ աս
լեռանը ըսէ՝ Ելի՛ր ու ծովը ինկի՛ր ,
և իր սրտին մէջը չերկմտի , հապա
հաւատայ թէ ինչ որ ըսէ՝ կ'ըլլայ ,
պիտի ըլլայ անոր ինչ որ ըսէ ։
Ասոր համար կ'ըսեմ ձեզի , Ինչ 24
բան որ աղօթքով կը խնդրէք ,
հաւատացէ՛ք թէ պիտի առնէք ,
և պիտի ըլլայ ձեզի ։ Ու երբոր 25
աղօթքի կը կայնիք , ներեցէ՛ք թէ
որ մէկուն դէմ բան մը ունիք .
որպէս զի ձեր Հայրն ալ որ եր-
կինքն է , ներէ ձեզի ձեր յանցանք-
ները ։ Իսկ թէ որ դուք չէք նե- 26
րեր , ձեր Հայրն ալ որ երկինքն
է , պիտի չներէ ձեր յանցանքնե-
րը ։
Եւ նորէն Երուսաղէմ եկան , ու 27
երբոր տաճարին մէջ կը պտըտէր ,
քահանայապետները և դպիրները ու
ծերերը անոր եկան , Ու ըսին ա- 28
նոր , Ի՞նչ իշխանութիւնով կ'ը-
նես ասո բաները , և ո՞վ տուաւ
քեզի աս իշխանութիւնը , որ ասո
բաները ընես ։ Պատասխան տուաւ 29
Յիսուս ու ըսաւ անոնց , Ես ալ
ձեզի բան մը հարցընեմ , ու թէ որ
ինծի պատասխան տաք , ես ալ ձե-
զի պիտի ըսեմ թէ ինչ իշխանու-
թիւնով կ'ընեմ աս բաները .
Յովհաննէսին մկրտութիւնը եր- 30
կինքէ՞ն էր՝ թէ մարդոցմէ , պա-
տասխան տուէք ինծի ։ Եւ անոնք 31
մէջերնին կը խորհէին ու կ'ըսէին ,
Թէ որ ըսենք՝ Երկինքէն , պիտի
ըսէ , Հապա ինչո՞ւ չհաւատացիք
անոր . Իսկ թէ որ ըսենք՝ Մարդոց- 32
մէ , ժողովուրդէն կը վախնային .
ինչու որ ամէնքը գիտէին Յովհան-
նէսը թէ ճշմարտապէս մարգարէ էր ։
Եւ պատասխան տալով ըսին Յի- 33
սուսին , Չենք գիտեր ։ Եւ Յիսուս
պատասխան տուաւ ու ըսաւ ա-

նոնց ։ Եւ ալ ձեզի չեմ ըսեր թէ
ինչ իշխանութիւնով կ՚ընեմ աս
բաները ։

## ԳԼ. ԺԲ

1 Եւ սկսաւ առակներով խօսիլ ա-
նոնց հետ ու ըսաւ, Մէկ մարդ
մը այգի տնկեց, ու անոր բոլորտի-
քը ցանկ քաշեց, և ատրահնձան
փորեց, ու աշտարակ շինեց, և
զանիկայ մշակներուն յանձնեց, ու
2 ինքը օտար երկիր մը գնաց ։ Եւ
ատենին ծառայ մը ղրկեց մշակնե-
րուն, որ մշակներէն այգիին պտու-
3 ղէն առնէ ։ Իսկ անոնք բռնեցին՝
ծեծեցին զանիկայ ու պարապ
4 ճամբեցին ։ Նորէն ուրիշ ծառայ
մըն ալ ղրկեց անոնց. և զանիկայ
քարկոծելով՝ գլուխը վիրաւորեցին
5 ու անարգուած ճամբեցին ։ Եւ
դարձեալ ուրիշ մը ղրկեց. ու զա-
նիկայ սպաննեցին. և շատ ուրիշներ
ալ ղրկեց, որոնց մէկ քանիները
ծեծեցին ու մէկ քանիները սպան-
6 նեցին ։ Ուստի մէկ սիրելի որդի
մըն ալ ունենալով, վերջապէս զա-
նիկայ ալ ղրկեց անոնց՝ ըսելով ։
7 Պատկառին իմ որդիէս ։ Բայց
ան մշակները ըսին իրարու, Ասի-
կայ է ժառանգը. եկէք զանիկայ
սպաննե՛նք, ու ժառանգութիւնը
8 մերը ըլլայ ։ Եւ բռնեցին զանի-
կայ ու սպաննեցին, և այգիէն դուրս
9 հանեցին ։ Ուստի այգիին տէրը
ի՞նչ պիտի ընէ. պիտի գայ ու
կորսնցընէ մշակները, և այգին
10 ուրիշներու պիտի տայ ։ Եւ աս
գիրը չէ՞ք կարդացեր, թէ Այն
քարը որ շինողները անարգեցին,
անիկայ անկիւնին գլուխը եղաւ.
11 Անիկայ Տէրոջմէ եղաւ, և զարմա-
նալի է մեր աչքերուն ։
12 Եւ կը փնտռէին թէ ինչպէս
բռնեն զանիկայ, բայց ժողովուր-
դէն վախցան, քանզի իմացան որ
այս առակը իրենց համար ըսաւ. և
ձգեցին անիկայ ու գացին ։
13 Եւ փարիսեցիներէն ու Հերովդէ-
սեաններէն քանի մը հոգի ղրկե-
ցին անոր, որ խօսքով բռնեն զա-
14 նիկայ ։ Եւ անոնք եկան ու ըսին
անոր ։ Վարդապետ՝ գիտենք որ
ճշմարիտ ես, և մէկու մը համար
հոգ չէ, քանզի մարդոց երես-
պաշտութիւն չես ըներ, հապա
ճշմարտութեամբ Աստուծոյ ճամբան
կը սորվեցնես. Կայսրին տուրք
տալ արժա՞ն է թէ չէ, տա՞նք
թէ չտանք ։ Եւ Յիսուս գիտնա- 15
լով անոնց կեղծաւորութիւնը՝ ըսաւ
անոնց, Ինչու՞ զիս կը փորձէք.
բերէ՛ք ինծի մէկ դահեկան մը որ
տեսնեմ ։ Եւ անոնք բերին. ու 16
ըսաւ անոնց, Որու՞նն է աս պատ-
կերը ու գիրը. և անոնք ըսին ա-
նոր, Կայսրին ։ Եւ Յիսուս պա- 17
տասխան տալով ըսաւ անոնց, Ին
որ կայսրինն է՝ կայսրին տուէք, և
ան որ Աստուծոյն է՝ Աստուծոյ
տուէք. ու զարմացան անոր վրայ ։
Եւ անոր քովը եկան սադուկե- 18
ցիները, որոնք կ՚ըսեն թէ յարու-
թիւն չկայ, և անոր հարցուցին ը-
սելով, Վարդապետ՝ Մովսէս մեզի 19
գրեց որ եթէ մէկուն եղբայրը մեռ-
նի՝ ու կնիկը ձգէ և զաւակ չձգէ,
անոր եղբայրը առնէ անոր կնիկը,
և իր եղբօրը զաւակ հանէ ։ Արդ 20
եօթը եղբայրներ կային. և առջինը
կնիկ առաւ ու մեռաւ և զաւակ
չձգեց ։ Ու երկրորդը առաւ զա- 21
նիկայ ու մեռաւ, և ան ալ զաւակ
չձգեց. նոյնպէս ալ երրորդը ։ Ու 22
եօթն ալ զանիկայ առին և զա-
ւակ չձգեցին. ամենէն ետքը կնիկն
ալ մեռաւ ։ Ուրեմն յարութեան 23
ատենը՝ երբոր յարութիւն առնեն,
անոնցմէ որո՞ւն կնիկը պիտի ըլլայ.
ինչու որ եօթն ալ զանիկայ կնիկ
ունեցան ։ Եւ Յիսուս պատաս- 24
խան տալով անոնց ըսաւ, Ասոր
համար չէ՞ որ մոլորած էք, որ ոչ
Գիրքը գիտէք, և ոչ Աստուծոյ
զօրութիւնը ։ Քանզի երբոր մե- 25
ռելներէն յարութիւն առնեն, ոչ
կնիկ կ՚առնեն, և ոչ էրիկան կը
տրուին, հապա երկինքի հրեշտակ-
ներուն պէս են ։ Բայց մեռելնե- 26
րուն համար՝ թէ յարութիւն կ՚առ-
նեն, Մովսէսին գրքին մէջը չէ՞ք
կարդացեր մորենիին վրայ, ինչպէս
Աստուած անոր խօսեցաւ ըսելով ։

Ես եմ Աբրահամին Աստուածը, և
Իսահակին Աստուածը, ու Յակո-
27 բին Աստուածը: Անիկայ մեռել-
ներուն Աստուածը չէ, հապա կեն-
դանիներուն. ուրեմն դուք խիստ
մոլորած էք:
28 Ու դպիրներէն մէկը եկաւ, ու
մտիկ կ'ընէր անոնց՝ երբոր վիճա-
բանութիւն կ'ընէին, որ երբոր
տեսաւ թէ աղէկ պատասխան տուաւ
անոնց, հարցուց անոր ու ըսաւ,
Մի՞ն է բոլոր պատուիրանքներուն
29 առաջինը: Ու Յիսուս պատաս-
խանեց անոր, Բոլոր պատուի-
րանքներուն առաջինը աս է. Լսէ՛
ով Իսրայէլ, մեր Տէր Աստուածը
30 մէկ Տէր մըն է. Ու քու Տէր Աս-
տուածդ սիրես քու բոլոր սրտէդ,
և քու բոլոր անձէդ, ու քու բոլոր
մտքէդ, և քու բոլոր զօրութենէդ.
ասիկայ է առաջին պատուիրանքը:
31 Ու երկրորդը ասոր նման՝ Քու ըն-
կերդ սիրես քու անձիդ պէս. ա-
սոնցմէ մեծ ուրիշ պատուիրանք
32 չկայ: Ու դպիրը ըսաւ անոր,
Աղէ՛կ վարդապետ, շիտակ խօսեցար
թէ Աստուած մէկ է, և անկէ 'ի
33 զատ ուրիշ մը չկայ. Ու բոլոր
սրտէ, ու բոլոր մտքէ, և բոլոր
անձէ, ու բոլոր զօրութենէ անիկայ
սիրելը, ու ընկերը իր անձին պէս
սիրելը ամէն ողջակէզներէ ու զո-
34 հերէ աւելի է: Ու Յիսուս տես-
նելով որ անիկայ խելացութենով
պատասխան տուաւ, ըսաւ անոր.
Աստուծոյ թագաւորութենէն հե-
ռու չես. և ալ ուրիշ մէկը չէր
համարձակեր անոր բան մը հարցը-
նելու:
35 Ու Յիսուս երբոր տաճարին մէջ
կը սորվեցընէր, պատասխան տուաւ
ու ըսաւ, Դպիրները ինտո՞ր կ'ը-
սեն, թէ Քրիստոս Դաւիթի որ-
36 դին է. Ու ինքը Դաւիթ Սուրբ
Հոգիով կ'ըսէ, Տէրը իմ Տէ-
րոջս ըսաւ, Նստէ՛ իմ աջ կողմս,
մինչև որ քու թշնամիներդ ոտքե-
37 րուդ պատուանդան ընեմ: Ու-
րեմն Դաւիթ ինքը որ զանիկայ
Տէր կը կոչէ, ի՞նչպէս անիկայ
անոր որդին կ'ըլլայ. և ժողովուր-
դէն շատերը յօժարութեամբ մտիկ
կ'ընէին անոր:
Ու իր վարդապետութեանը մէջ 38
կ'ըսէր անոնց. Զգուշացէ՛ք դը-
պիրներէն, որոնք կ'ուզեն փառա-
ւոր հանդերձներով պտըտիլ, և
շուկաներուն մէջ բարևներ կը փնտը-
ռեն, Ու ժողովարաններուն մէջ 39
առաջին աթոռները, և ընթրիք-
ներու մէջ առաջին բազմոցները.
Որոնք որբևարիներուն տուները 40
կ'ուտեն, ու ձևոց երկնալու հա-
մար աղօթքը կ'երկընցընեն. ասոնք
աւելի դատապարտութիւն պիտի
ընդունին:
Ու Յիսուս գանձանակին դի- 41
մացը նստած՝ կը նայէր թէ ինտո՛ր
ժողովուրդը գանձանակին մէջ ըս-
տակ կը ձգէ. և շատ հարուստներ
շատ բան ձգեցին: Մէկ աղքատ 42
որբևարի մըն ալ եկաւ ու երկու
լումայ ձգեց, որ մէկ նաքարակիտ
մը կ'ընէ: Ու իր աշակերտները 43
իրեն կանչելով ըսաւ անոնց. Ճը-
շմարիտ կ'ըսեմ ձեզի, որ աս աղ-
քատ որբևարին գանձանակը ոտող
ձգողներուն ամենէն աւելի ձգեց.
Ինչու որ ամէնքը իրենց աւելցածէն 44
ձգեցին, բայց ասիկայ իր չքաւո-
րութենէն՝ ունեցածին բոլորը ձգեց՝
իր բոլոր ապրուստը:

## ԳԼ. ԺԳ

Ու երբոր տաճարէն դուրս կ'ելլէր, 1
իր աշակերտներէն մէկը ըսաւ
իրեն. Վարդապետ՝ նայէ՛ ինտո՛ր
քարեր են, և ինչ կերպ շէնքեր:
Ու Յիսուս պատասխան տալով ը- 2
սաւ անոր. Կը տեսնե՞ս աս մեծ
շէնքերը. քար մը քարի վրայ պիտի
չմնայ որ չքակուի:
Ու երբոր անիկայ Ձիթենեաց 3
լեռը տաճարին դիմացը նստեր էր,
Պետրոս ու Յակոբոս և Յովհան-
նէս ու Անդրէաս հարցուցին իրեն
առանձին, Ըսէ՛ մեզի ե՞րբ պիտի 4
ըլլան աս բաները, և ի՞նչ նշան
պիտի ըլլայ աս ամէն բաներուն
կատարուելու ատենը: Ու Յի- 5
սուս պատասխան տուաւ անոնց ու
սկսաւ ըսել, Զգո՛յշ կեցէ՛ք չըլ-

6 ըլլայ որ մէկը ձեզ խաբէ․ Ինչու որ
շատերը պիտի գան իմ անունովս
ու ըսեն թէ Ես եմ Քրիստոսը,
ու շատերը պիտի մոլորցնեն։
7 Բայց երբոր լսէք պատերազմներ և
պատերազմներու լուրեր, մի խը-
ռովիք, ինչու որ պէտք է ըլ-
8 լալ, բայց դեռ վերջը չէ։ Վասն
զի ազգ ազգի վրայ պիտի ելլէ,
ու թագաւորութիւն թագաւորու-
թեան վրայ, և տեղ տեղ երկրա-
շարժութիւններ պիտի ըլլան, սո-
վեր ու խռովութիւններ ալ պիտի
ըլլան․ ասոնք ցաւերուն սկիզբներն
9 են։ Զգուշացէ՛ք ձեր անձերուն,
քանզի ձեզ ատեաններու պիտի
մատնեն, ու ժողովարաններուն մէջ
ձեզ պիտի ծեծեն, և իմ անունիս
համար կուսակալներու ու թագա-
ւորներու առջև պիտի կենաք՝ ա-
նոնց վկայութիւն ըլլալու համար․
10 Եւ առաջ պէտք է որ աւետարանը
11 քարոզուի բոլոր ազգերուն։ Բայց
երբոր ձեզ մատնելու տանին, ա-
ռաջուց հոգ մի՛ ընէք և մի՛ մը-
տածէք թէ ինչ պիտի խօսիք,
հապա այն ժամուն ինչ որ ձեզի
տրուի, անիկայ խօսեցէք․ ինչու
որ չէ՛ թէ դուք էք որ կը խօսիք,
12 հապա Հոգին Սուրբը։ Ու եղ-
բայր՝ եղբայրը մահուան պիտի մատ-
նէ, և հայրը՝ որդին․ և որդիք
իրենց ծնողացը վրայ պիտի ելլեն
13 ու մեռցընեն զանոնք։ Եւ իմ ա-
նուանս համար ամենուն ատելի պի-
տի ըլլաք․ բայց ան որ մինչև վեր-
ջը համբերէ, անիկայ պիտի ապրի։
14 Ու երբոր տեսնէք աւերմունքին
պղծութիւնը՝ որ Դանիէլ մարգա-
րէին ձեռքովը ըսուած է, թէ ար-
ժան չեղած տեղը կը կենայ․ (ով
որ կարդայ՝ թող հասկընայ․) ան
ատենը Հրէաստանի մէջ եղողները
15 լեռները թող փախչին․ Եւ ան
որ տանիքին վրայ է՝ թող տուն
չիջնէ՛, ու չմտնէ իր տունէն բան մը
16 առնելու․ Եւ ան որ արտին մէջն
է՝ թող ետ չդառնայ իր հանդերձը
17 առնելու։ Բայց վա՜յ այն օրերը յղի
եղողներուն ու ծիծ տուողներուն։
18 Եւ աղօթք ըրէք որ ձեր փախչիլը

ձմեռը չըլլայ․ Քանզի այն օրերը 19
անանկ նեղութիւն պիտի ըլլայ,
որուն նմանը Աստուծոյ ստեղծած
արարածոց սկիզբէն մինչև հիմա ե-
ղած չէ, ու ոչ ալ պիտի ըլլայ։ Եւ 20
թէ որ Տէրը այն օրերը չկարճեցը-
նէր, բնաւ մէկ մարմին մը պի-
տի չազատէր․ բայց ընտրեալներուն
համար որոնք ընտրեց, այն օրե-
րը կարճեցուց։ Եւ այն ատենը 21
թէ որ մէկը ձեզի ըսէ, Ահա հոս
է Քրիստոսը՝ կամ ահա հոն,
մի՛ հաւատաք․ Ինչու որ սուտ 22
քրիստոսներ և սուտ մարգարէներ
պիտի ելլեն, ու նշաններ և հրաշք-
ներ պիտի ցուցընեն, որ եթէ կա-
րելի էր՝ ընտրեալներն ալ մոլոր-
ցընեն։ Իսկ դուք զգո՛յշ կե- 23
ցէք․ ահա առաջուց ըսի ձեզի
ամէնը։

Բայց այն օրերը այն նեղութենէն 24
ետև արեգակը պիտի խաւարի, ու
լուսինը իր լոյսը պիտի չտայ, Եւ 25
աստղերը երկինքէն պիտի թափ-
թփին, ու երկնից մէջի զօրու-
թիւնները պիտի շարժին։ Եւ այն 26
ատենը պիտի տեսնեն Որդին մար-
դոյ ամպերու մէջ եկած, մեծ զօ-
րութիւնով ու փառքով։ Եւ այն 27
ատենը իր հրեշտակները պիտի
խրկէ, ու իր ընտրեալները պիտի
ժողվէ չորս հովերէն՝ երկրի ծայրէն
մինչև երկնքի ծայրը։ Թզենիէն 28
առակ մը սորվեցէք․ որ երբ անոր
ոստերը կը կակղնան ու տերև-
ները կը բուսնին, գիտէք թէ ա-
մառը մօտ է։ Նոյնպէս ալ դուք 29
երբոր ասոնք եղած տեսնէք,
գիտցէ՛ք որ մօտ է դռներուն քովը։
Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ աս 30
ազգը պիտի չանցնի, մինչև որ աս
ամէն բաները ըլլան։ Երկինք 31
ու երկիր պիտի անցնին՝, բայց
իմ խօսքերս բնաւ պիտի չանցնին։
Իսկ այն օրուան ու ժամուն համար 32
մէկը չգիտեր, ոչ երկինքի մէջ
եղող հրեշտակները և ոչ Որ-
դին, հապա միայն Հայրը։ Զգու- 33
գոյշ կեցէք, արթուն մնացէք և
աղօթք ըրէք, ինչու որ չէք գիտեր
ատենը երբ է․ Ինչպէս օտար եր- 34

գաւաթը առաւ՝ գոհացաւ , ու
տուաւ անոնց . ու ամէնքն ալ խը-
24 մեցին անկէ : Ու ըսաւ անոնց ,
Ասիկայ է իմ արիւնս նոր ուխտի ,
որ շատերուն համար կը թափուի :
25 Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի , Ասկէ
ետեւ որթին բերքէն բնաւ պիտի
չխմեմ մինչեւ այն օրը՝ երբոր անիկայ
նոր խմեմ Աստուծոյ թագաւորու-
թեանը մէջ :
26 Ու օրհնութիւն մը երգելէն ետեւ
27 Ձիթենեաց լեռը ելան : Ու Յի-
սուս ըսաւ անոնց , Ամէնքդ ալ այս
գիշեր իմ վրայովս պիտի գայթակ-
ղիք . քանզի որ գրուած է թէ Հո-
վիւը պիտի զարնեմ , ու ոչխար-
28 ները պիտի ցրուին : Բայց յա-
րութիւն առնելէս ետեւ ձեզմէ ա-
ռաջ Գալիլեա պիտի երթամ :
29 Իսկ Պետրոս ըսաւ անոր , Թէպէտ
ամէնքն ալ գայթակղին , բայց չէ՛
30 թէ ես : Ու Յիսուս ըսաւ անոր ,
Ճշմարիտ կ'ըսեմ քեզի , որ դուն
ալ այս գիշեր դեռ հաւը երկու
անգամ չխօսած , երեք անգամ զիս
31 պիտի ուրանաս : Բայց Պետրոս
աւելի կը պնդէր ու կ'ըսէր , Թէեւ
քեզի հետ մեռնիլ պէտք ըլլայ ին-
ծի , բնաւ քեզ պիտի չուրանամ .
նոյնպէս կ'ըսէին ամէնքն ալ :
32 Եկան այն տեղը՝ որուն անունը
Գեթսեմանի էր , ու ըսաւ իր ա-
շակերտներուն . Հոս նստեցէ՛ք
33 մինչեւ որ ես աղօթք ընեմ : Ու իր
հետը առնելով Պետրոսը ու Յա-
կոբոսը եւ Յովհաննէսը , սկսաւ
34 խռովիլ եւ վշտանալ : Ու անոնց
ըսաւ , Իմ անձս մեռնելու
չափ տրտում է . հոս կեցէք եւ
35 արթուն մնացէք : Ու քիչ մը
առաջ երթալով , իր երեսին վրայ
գետինը ինկաւ եւ աղօթք ըրաւ ,
որ եթէ կարելի է՝ այն ժամը իրմէ
36 անցնի : Ու ըսաւ , Աբբա՛ Հայր ,
ամէն բան քեզի կարելի է , այս
գաւաթը ինծմէ անցո՛ւր . բայց
ոչ թէ ինչպէս որ ես կ'ուզեմ ,
հապա ինչպէս որ դուն կ'ուզես :
37 Ու եկաւ ու զանոնք քնացած գը-
տաւ , եւ ըսաւ Պետրոսին , Սիմո՛ն
կը քնանա՞ս . չկրցա՞ր ժամ մը

արթուն կենալ : Արթուն կե- 38
ցէք եւ աղօթք ըրէք , որ փորձու-
թեան մէջ չմտնէք . հոգին յօժար
է , բայց մարմինը տկար : Ու 39
նորէն գնաց աղօթք ըրաւ , նոյն
խօսքը ըսելով : Ու դարձաւ ու 40
զանոնք նորէն քնացած գտաւ ,
քանզի որ աչքերնին ծանրացած էր ,
եւ չէին գիտեր թէ ինչ պատաս-
խան տան անոր : Ու երրորդ անգամ 41
ալ եկաւ ու ըսաւ անոնց , Ասկէ
ետեւ քնացէ՛ք ու հանգչեցէ՛ք .
բաւական է , ժամը հասաւ . ահա
Որդին մարդոյ մեղաւորներուն ձեռ-
քը կը մատնուի : Ելէ՛ք երթանք , 42
ահա մօտեցաւ անիկայ որ զիս պիտի
մատնէ :
Ու դեռ անիկայ աս որ կը խօ- 43
սէր , իսկոյն Յուդա՝ տասուերկո-
ւքէն մէկը եկաւ , եւ իր հետը
քահանայապետներուն եւ դպիրնե-
րուն ու ծերերուն կողմէն շատ բազ-
մութիւն սուրերով ու բիրերով :
Ու զանիկայ մատնողը անոնց նշան 44
մը տուեր էր՝ ըսելով , Ո՛վ որ ես
համբուրեմ՝ ան է , բռնեցէ՛ք անի-
կայ եւ զգուշութեամբ տարէ՛ք :
Ու անիկայ գալով շուտ մը մօտե- 45
ցաւ անոր եւ ըսաւ , Ռաբբի՛
Ռաբբի , ու համբուրեց զանիկայ :
Ու անոնք ձեռք զարկին անոր 46
ու բռնեցին զանիկայ : Ու քո- 47
վը կայնողներէն մէկը սուրը քա-
շեց ու զարկաւ քահանայապե-
տին ծառային , ու անոր ականջը
կտրեց հանեց : Ու Յիսուս պա- 48
տասխան տալով ըսաւ անոնց ,
Իբր թէ աւազակի՞ վրայ ելաք սու-
րերով ու բիրերով զիս բռնելու .
Ամէն օր ձեր քովը էի ու տաճա- 49
րին մէջ կը սորվեցնէի , եւ զիս
չբռնեցիք . բայց որպէս զի գիր-
քերը կատարուին : Ան ատենը 50
բոլոր աշակերտները թողուցին զա-
նիկայ ու փախան : Ու մէկ երի- 51
տասարդ մը անոր ետեւէն կ'երթար՝
մերկ մարմինին վրայ կտաւ մը առած ,
ու երիտասարդները զանիկայ բռնե-
ցին . Ան ալ կտաւը թողուց ու 52
մերկ փախաւ անոնցմէ :
Ու տարին Յիսուսը քահանայա- 53

յապետին ; ու անոր քովը ժողո-
վուեցան բոլոր քահանայապետնե-
54 րը և ծերերը ու դպիրները ։ Ու
Պետրոս հեռուանց անոր ետևէն
գնաց մինչև ներսը քահանայապե-
տին գաւիթը , և սպասաւորնե-
րուն հետ նստաւ , ու կրակին
55 քովը կը տաքնար ։ Իսկ քահա-
նայապետները ու բոլոր ժողովքը
Յիսուսի դէմ վկայութիւն կը
փնտռէին որ զանիկայ մեռցընեն ,
56 և չէին գտներ ․ Ինչու որ շատերը
սուտ վկայութիւն կը վկայէին անոր
դէմ , ու վկայութիւնները իրարու
57 համաձայն չէին ։ Ու ոմանք ելան
սուտ վկայութիւն կ'ընէին անոր
58 դէմ ու կ'ըսէին , Թէ Մենք լսե-
ցինք անիկէ որ կ'ըսէր ․ Ես այս
ձեռագործ տաճարը պիտի քակեմ ,
և իրեք օրուան մէջ ուրիշ մը պիտի
59 շինեմ առանց ձեռագործի ։ Բայց
անանկ ալ իրենց վկայութիւնը
60 համաձայն չէր ։ Ու քահանայա-
պետը մէջտեղը ոտք ելլելով , հար-
ցուց Յիսուսին ու ըսաւ ․ Պա-
տասխան մը չե՞ս տար ․ ի՞նչ կը
61 վկայեն ասոնք քեզի դէմ ։ Բայց
անիկայ լուռ կը կենար և պա-
տասխան մը չէր տար ․ քահանա-
յապետը նորէն կը հարցընէր անոր
ու կ'ըսէր , Դո՞ւն ես Քրիստոսը՝
62 օրհնեալ Աստուծոյ Որդին ։ Ու
Յիսուս ըսաւ , Ես եմ ․ ու պիտի
տեսնէք Որդին մարդոյ Զօրու-
թեան աջ կողմը նստած , ու երկ-
63 նից ամպերովը եկած ։ Ու քահա-
նայապետը իր հանդերձները պատ-
ռեց ու ըսաւ , Ալ ի՞նչ պէտք է
64 մեզի վկաներ ։ Այդ հայհոյութիւ-
նը լսեցիք ․ ձեզի ի՞նչպէս կ'երե-
նայ ․ և ամէնքը դատապարտեցին
զանիկայ թէ մահապարտ է ։
65 Ու ոմանք սկսան թքնել անոր
ու երեսը ծածկել և բռունցքով
ծեծել ու ըսել , Մարգարէացի՛ր ․
ու սպասաւորները ապտակ կը զար-
նէին անոր ։
66 Ու Պետրոս վարը գաւիթն էր ,
ու քահանայապետին աղախիններէն
67 մէկը եկաւ , Ու տեսնելով Պետ-
րոսը որ կը տաքնար , նայեցաւ ա-
նոր ու ըսաւ , Դուն ալ Յիսուս
Նազովրեցիին հետը էիր ։ Բայց 68
անիկայ ուրացաւ ու ըսաւ , Չեմ
գիտեր և չեմ հասկընար թէ դուն
ի՛նչ կը խօսիս ․ ու երբոր դուրս
ելաւ գաւիթին դրանը առջևը ,
հաւը խօսեցաւ ։ Ու աղախինը 69
նորէն տեսաւ զանիկայ , ու սկսաւ
բոլորտիքը կայնողներուն ըսել թէ
Աս ալ անոնցմէ է ․ Ու անիկայ նո- 70
րէն ուրացաւ ։ Ու քիչ մը ա-
տենէն ետքը՝ նորէն բոլորտիքը կայ-
նողները ըսին Պետրոսին , Յիրա-
ւի դուն անոնցմէ ես , ինչու որ
Գալիլեացի ես , և քու զրու-
ցուածքդ ալ նման է անոնց ։ Բայց 71
անիկայ սկսաւ անիծել ու երդում
ընել՝ ըսելով թէ Ես այն մարդը
չեմ ճանչնար , որուն համար դուք
կ'ըսէք ։ Ու իսկոյն երկրորդ ան- 72
գամ հաւը խօսեցաւ ․ ու Պետրոս
միտքը բերաւ այն խօսքը՝ որ Յիսուս
իրեն ըսեր էր թէ Դեռ հաւը
երկու անգամ չխօսած՝ դուն իրեք
անգամ պիտի ուրանաս զիս ․ ու
սկսաւ լալ ։

## ԳԼ. ԺԵ

Ու առտուանց շուտ մը քահա- 1
նայապետները ծերերուն ու դը-
պիրներուն հետ՝ և բոլոր ժողովքն
ալ խորհուրդ ըրին , Յիսուսը
կապեցին ու տարին մատնեցին Պի-
ղատոսին ։ Ու Պիղատոս հարցուց 2
անոր ու ըսաւ , Դո՞ւն ես Հրէից
թագաւորը ․ անիկայ ալ պատաս-
խան տալով ըսաւ անոր , Դուն
կ'ըսես ։ Ու քահանայապետները 3
շատ ամբաստանութիւն կ'ընէին ա-
նոր վրայով ։ Ու Պիղատոս նո- 4
րէն հարցուց անոր ըսելով , Պա-
տասխան մը չե՞ս տար ․ Նայէ որ-
չափ քեզի դէմ կը վկայեն ։ Ու 5
Յիսուս ասկէ ետքը պատասխան մը
չտուաւ , մինչև որ Պիղատոս զար-
մացաւ ։
Բայց տօնին ատենը կապուած 6
մը կ'արձակէր անոնց , զոր որ ի-
րենք ուզէին ։ Ու մէկը կար Բարաբ- 7
բաս անունով իր ընկեր խռովա-
րարներուն հետը կապուած , որոնք

խռովութեան ատենը մարդասպա-
8 նութիւն ըրեր էին ։ Եւ ժողո-
վուրդը աղաղակելով՝ սկսաւ խնդրե-
լու որ ընէ ինչպէս որ միշտ կ'ընէր
9 իրենց ։ Եւ Պիղատոս անոնց պա-
տասխան տուաւ ու ըսաւ , Կ'ու-
զէ՞ք որ Հրէից Թագաւորը արձա-
10 կեմ ձեզի ։ Քանզի գիտէր որ
քահանայապետները նախանձէ հա-
11 մար մատներ էին զանիկայ ։ Բայց
քահանայապետները ժողովուրդը
գրգռեցին որ խնդրեն յաւէտ Բա-
12 րաբբան իրենց արձակել ։ Նորէն
Պիղատոս պատասխան տուաւ ու
ըսաւ անոնց , Հապա Հրէից Թա-
գաւոր ըսածնիդ ի՞նչ կ'ուզէք որ
13 ընեմ ։ Եւ անոնք նորէն կ'աղա-
ղակէին , Խաչը հանէ զանիկայ ։
14 Պիղատոս ըսաւ անոնց , Բայց ի՞նչ
չար գործ ըրած է անիկայ ․ և ա-
նոնք՝ ալ աւելի կ'աղաղակէին ու
15 կ'ըսէին , Խաչը հանէ զանիկայ ։ Եւ
Պիղատոս ժողովուրդը գոհ ընել
ուզելով՝ Բարաբբան արձակեց ա-
նոնց , ու Յիսուսը ծեծելով՝ ձեռք
տուաւ որ խաչուի ։
16 Եւ զինուորները ներս տարին
զանիկայ գաւիթը՝ այսինքն պրետո-
րը , և բոլոր գունդը մէկտեղ
17 կանչեցին ․ Եւ հագցուցին անոր
ծիրանիներ , և փշեղէն պսակ հիւ-
18 սելով՝ անոր գլուխը դրին ․ Եւ
սկսան բարեւ տալ անոր ու ըսել ,
Ողջո՜յն քեզ՝ Հրէից Թագաւոր ։
19 Եւ անոր գլուխը եղեգով կը ծե-
ծէին ու կը թքնէին անոր , և
ծնկան վրայ գալով երկրպագու-
20 թիւն կ'ընէին անոր ։ Եւ երբոր
ծաղր ըրին զանիկայ , ծիրանիները
վրայէն հանեցին և իր հանդերձ-
ները հագցուցին անոր , ու դուրս
հանեցին զանիկայ որ խաչը հանեն ։
21 Եւ Սիմոն Կիւրենացին՝ Աղեք-
սանդրոսին և Ռուփոսին հայրը ,
որ անկէ կ'անցնէր արտէն եկած ,
պատահեց բռնեցին որ անոր խաչը վերց-
22 նէ ։ Եւ տարին անիկայ Գողգո-
թա ըսուած տեղը , ( որ կը
23 թարգմանուի Գանկի տեղ ․ ) Եւ
անոր զմուռսով խառնուած գինի
տուին որ խմէ , բայց ինքը չառաւ ․

Եւ խաչը հանեցին զանիկայ , և ա- 24
նոր հանդերձները բաժնեցին , ա-
նոնց վրայ վիճակ ձգելով թէ ո՛վ
ինչ պիտի առնէ ։ Ժամը երրորդն 25
էր , ու խաչը հանեցին անիկայ ։
Եւ անոր յանցանքի գիրը գրուած 26
էր Ան Հրէից Թագաւորն է ։ Եւ 27
անոր հետ երկու աւազակ խաչը
հանեցին , մէկը անոր աջ կողմէն
ու մէկը ձախ կողմէն ։ Եւ կատա- 28
րուեցաւ այն գիրը՝ որ կ'ըսէ թէ
Անօրէններուն հետ սեպուեցաւ ։
Եւ անոնք որ կ'անցնէին՝ կը հայ- 29
հոյէին անոր , գլուխնին կը շար-
ժէին ու կ'ըսէին , Վա՜հ որ տա-
ճարը կը քակէիր , և իրեք օրուան
մէջ կը շինէիր ․ Ինքզինքդ ազա- 30
տէ՛ ու իջի՛ր այդ խաչէդ ։ Նոյն- 31
պէս ալ քահանայապետները դպիր-
ներուն հետ իրենց մէջը ծաղր ընե-
լով կ'ըսէին , Ուրիշները ազատեց ,
ինքզինքը չկրնար ազատել ։ Ան 32
Քրիստոսը Իսրայէլի Թագաւորը
թող հիմա խաչէն վար իջնէ , որ
տեսնենք ու հաւատանք ․ և իր հե-
տը խաչը ելլողները կը նախատէին
զանիկայ ։
Եւ վեցերորդ ժամը հասածին 33
պէս , բոլոր երկրին վրայ խաւար
եղաւ մինչև իններորդ ժամը ։ Եւ 34
իններորդ ժամուն Յիսուս մեծ ձայ-
նով աղաղակեց ու ըսաւ , Էլօի
Էլօի՝ լամա սաբաքթանի ․ որ կը
թարգմանուի , Աստուած իմ՝ Աս-
տուած իմ , ինչո՞ւ զիս թողուցիր ։
Եւ քովը կայնողներէն ոմանք երբոր 35
լսեցին՝ կ'ըսէին թէ Եղիան կը
կանչէ ։ Եւ մէկը վազեց սպունգ 36
մը քացախով լեցուց , ու եղէգի մը
անցընելով՝ տուաւ անոր որ խմէ ,
և ըսաւ , Թո՛ղ տուէք տեսնենք թէ
Եղիան կու գայ զանիկայ վար իջե-
ցնելու ։
Եւ Յիսուս մեծ ձայն մը հանեց 37
ու հոգին տուաւ ։ Եւ տաճարին 38
վարագոյրը երկուքի պատռեցաւ վե-
րէն 'ի վար ։ Եւ հարիւրապետը 39
որ անոր դիմացը կեցեր էր , տես-
նելով որ այսպէս աղաղակելով հո-
գին տուաւ , ըսաւ ․ Յիրաւի Որդի
Աստուծոյ էր այս մարդը ։ Կնիկ- 40

նէր ալ կային որ հեռուանց կը նա-
յէին ․ որոնց մէջն էր Մարիամ
Մագդաղենացին , և պզտիկ Յա-
կոբոսին ու Յովսէսին մայրը Մա-
41 րիամ , և Սողոմէ ․ Որոնք՝ երբոր
Յիսուս Գալիլեա էր , իր ետևէն
կ'երթային և իրեն սպասաւորու-
թիւն կ'ընէին ․ և ուրիշ շատ
կիներ ալ՝ որ իր հետը Երուսա-
ղէմ ելեր էին ։
42 Եւ երբոր իրիկուան եղաւ , ան օրը
ուրբաթ՝ այսինքն շաբաթին առջի
43 օրը ըլլալով , Յովսէփ Արիմաթա-
ցի երևելի խորհրդական մը՝ որ ինքն
ալ Աստուծոյ թագաւորութեանը
կը սպասէր , եկաւ ու համարձա-
կութիւն ընելով՝ Պիղատոսին քո-
վը մտաւ , և Յիսուսին մարմինը
44 խնդրեց ։ Եւ Պիղատոս զարմա-
ցաւ որ արդէն մեռած ըլլայ ․ և
հարիւրապետը իրեն կանչելով՝ հար-
ցուց անոր թէ շատ ատեն է որ
45 մեռաւ ։ Եւ երբոր ստոյգը իմա-
ցաւ հարիւրապետէն , մարմինը
46 Յովսէփին շնորհեց ։ Եւ Յովսէփ
կտաւ գնեց , ու զանիկայ վար իջե-
ցընելով՝ կտաւովը փաթթեց , ու
դրաւ գերեզմանի մը մէջ՝ որ քարէ
փորուած էր ․ և քար մը գլորեցուց
47 գերեզմանին դուռը ։ Իսկ Մարիամ
Մագդաղենացին ու Յովսէսին
մայրը Մարիամ տեսան այն տեղը
ուր որ դրուեցաւ ։

ԳԼ. ԺԶ.

1 Եւ երբոր շաբաթը անցաւ , Մա-
րիամ Մագդաղենացին և Յա-
կոբոսին մայրը Մարիամ և Սողոմէ
խունկեր ծախու առին , որ գան
2 օծեն զանիկայ ։ Եւ մէկշաբթի
առտուանց շատ կանուխ՝ արևը որ
3 կը ծագէր՝ եկան գերեզմանը , Եւ
իրարու կ'ըսէին , Մեզի ո՞վ պիտի
գլորցընէ մեզի գերեզմանին դռ-
4 նէն ․ ( Եւ նայեցան տեսան որ քա-
րը գլորուած էր ։ ) Ինչու որ
5 շատ մեծ էր ․ Եւ ներս գերեզմա-
նը մտնելով՝ երիտասարդ մը տե-
սան որ աջ կողմը նստեր էր ճեր-
մակ պատմուճանի հագած , ու զար-
6 հուրեցան ։ Եւ անիկայ ըսաւ ա-
նոնց ․ Մի՛ զարհուրիք ․ Յիսուս
Նազովրեցին կը փնտռէք , որ խա-
չուեցաւ ․ անիկայ յարութիւն ա-
ռաւ , հոս չէ ․ ահա ան տեղը ուր
որ դրին զանիկայ ։ Բայց գացէ՛ք՝ 7
ըսէ՛ք անոր աշակերտներուն և
Պետրոսին , թէ ահա ձեզմէ առաջ
Գալիլեա կ'երթայ , հոն պիտի տես-
նէք զանիկայ՝ ինչպէս որ ձեզի ըսաւ ։
Եւ անոնք դողով ու ապշութեամբ 8
բռնուած՝ ելան ու փախան գերեզ-
մանէն , և մէկու մը բան չըսին ,
քանզի կը վախնային ։
Յիսուս մէկշաբթի առտուանց 9
յարութիւն առած՝ առաջ Մա-
րիամ Մագդաղենացիին երևցաւ ,
որմէ եօթը դև հաներ էր ։ Ան- 10
կայ գնաց անոնց պատմեց՝ որոնք
անոր հետը էին , երբոր սուգ կ'ը-
նէին ու կու լային ։ Իսկ անոնք 11
երբոր լսեցին թէ կենդանի է և թէ
իրեն երևցաւ , չհաւատացին ։
Ետքը ուրիշ կերպարանքով ե- 12
րևցաւ անոնցմէ երկուքին՝ որ քա-
լելով արտը կ'երթային ։ Եւ 13
անոնք գացին ուրիշներուն պատմե-
ցին ու անոնց ալ չհաւատացին ։
Վերջը տասնումէկին երևցաւ , 14
երբոր սեղան նստած էին , ու ե-
րեսնին զարկաւ իրենց անհաւա-
տութիւնը և սրտերնուն կարծրու-
թիւնը , վասն զի որոնց որ զինքը
երևցաւ մեռելներէն յարութիւն
առած , իրենք չհաւատացին ։
Եւ ըսաւ անոնց , Գացէ՛ք բոլոր 15
աշխարհ , ու աւետարանը քարո-
զեցէ՛ք բոլոր ստեղծուածներուն ։
Ան որ հաւատայ ու մկրտուի , պի- 16
տի փրկուի , և ան որ չհաւատայ ,
պիտի դատապարտուի ։ Եւ ա- 17
նոնք որ կը հաւատան , այս նշանները
անոնց հետ պիտի երթան ․ Իմ ա-
նունովս դևեր պիտի հանեն , նոր
լեզուներ պիտի խօսին ․ Ձեռքեր- 18
նին օձեր պիտի բռնեն , և թէ որ
մահաբեր դեղ մը խմեն , իրենց
պիտի չվնասէ ․ հիւանդներուն վրայ
ձեռք պիտի դնեն , ու անոնք պիտի
առողջանան ։
Արդ Տէրը անոնց հետ խօսելէն 19
ետքը երկինքը համբարձաւ , ու

20 Աստուծոյ աջ կողմը նստաւ։ Իսկ
անոնք ելան ու ամէն տեղ կը քա-
րոզէին, և Տէրը անոնց գործակից
էր, ու խօսքը կը հաստատէր
այն նշաններով որ անոնց հետը
կ'երթային։ Ամէն։

---

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՂՈՒԿԱՍՈՒ

## ԳԼՈՒԽ Ա

1 Որովհետեւ շատերը մեր մէջ հաս-
տատ գիտցուած բաներուն վը-
րայով եղած պատմութիւնը կարգի
2 դնելու ձեռք զարկին, Ինչպէս որ
սկիզբէն աչքով տեսնողները և
խօսքին սպասաւոր եղողները աւան-
3 դեցին մեզի. Ինծի ալ որ սկիզբէն
ան ամէն բաներուն ճշդութեամբ
տեղեկացեր էի, յարմար դատեցի
կարգաւ գրել քեզի՝ ով պատուա-
4 կան Թէոփիլոս. Որ սորված բա-
ներուդ ստուգութիւնը իմանաս։
5 Հրէաստանի Հերովդէս թա-
գաւորին օրերը Աբիայի դասա-
կարգութենէն Զաքարիա անու-
նով քահանայ մը կար, որուն
կինը Ահարոնի աղջիկներէն էր,
6 և անոր անունը Եղիսաբեթ։ Ու
երկուքն ալ Աստուծոյ առջեւ ար-
դար էին, և Տէրոջը բոլոր պա-
տուիրաններուն ու իրաւունքնե-
րուն մէջ անարատութեամբ կը
7 քալէին։ Իսկ զաւակ չունէին,
ինչու որ Եղիսաբեթ ամուլ էր.
ու երկուքն ալ օրերնին անցուցած
էին։
8 Ու երբոր անիկայ իր դասակար-
գութեան օրերը հանելուն քա-
հանայական պաշտօնը կը կատարէր
9 Աստուծոյ առջեւ, Քահանայու-
թեան սովորութեանը պէս իրեն
ինկաւ որ Տէրոջը տաճարը մտնէ
10 խնկարկութիւն ընէ։ Իսկ ժողո-
վուրդին բոլոր բազմութիւնը դուր-
սը աղօթքի կայներ էին խունկին
11 ատենը։ Ու երեւցաւ անոր՝ Տէ-
րոջը հրեշտակը, որ կայներ էր
12 խունկի սեղանին աջ կողմը։ Իսկ
Զաքարիա երբոր տեսաւ՝ շփոթե-
ցաւ, ու անոր վրայ վախ մը ին-
կաւ։ Իսկ հրեշտակը ըսաւ անոր, 13
Մի՛ վախնար՝ Զաքարիա, ինչու
որ քու աղօթքդ լսուեցաւ, և քու
կինդ Եղիսաբեթ քեզի որդի մը
պիտի ծնանի, ու անոր անունը
Յովհաննէս դնես։ Իսկ քեզի ու- 14
րախութիւն ու ցնծութիւն պիտի
ըլլայ, և շատերը անոր ծնանելուն
վրայ պիտի ուրախանան. Ինչու 15
որ Տէրոջը առջեւ մեծ պիտի ըլլայ,
և գինի ու օղի պիտի չխմէ. և դեռ
իր մօրը որովայնէն Սուրբ Հոգիով
պիտի լեցուի. Ու Իսրայէլի որ- 16
դիներէն շատերը իրենց Տէր Աստու-
ծոյն պիտի դարձընէ։ Իսկ ինքը անոր 17
առջեւէն պիտի երթայ Եղիային հոգիովը
ու զօրութիւնովը, հայրերուն սիր-
տերը որդւոցը վրայ դարձընելու,
և անհնազանդները՝ արդարներուն ի-
մաստութեանը, որ Տէրոջը բա-
րեկարգ ժողովուրդ մը պատրաստէ։
Իսկ Զաքարիա ըսաւ հրեշտակին, 18
Ինչո՞վ գիտնամ աս բանը, որով-
հետեւ ես ծեր եմ, ու իմ կինս իր
օրերը անցուցած է։ Իսկ հրեշտա- 19
կը պատասխան տալով ըսաւ ա-
նոր, Ես եմ Գաբրիէլը որ Աս-
տուծոյ առջեւը կը կայնիմ, ու
խրկուեցայ քեզի զրուցելու, և աս
բաներուն աւետիքը քեզի տալու։
Իսկ ահա համր պիտի ըլլաս դուն, 20
ու պիտի չկրնաս խօսիլ մինչեւ այն
օրը՝ որ աս բաները ըլլան. քանզի
չհաւատացիր իմ խօսքերուս, որոնք
իրենց ատենին պիտի կատարուէին։
Ու ժողովուրդը Զաքարիային կը 21
սպասէր, և կը զարմանային անոր
տաճարին մէջ ուշանալուն վրայ։
Ու երբոր դուրս ելաւ, չէր կրնար 22
խօսիլ անոնց հետ. և իմացան որ

տաճարին՝ մէջ տեսիլք մը տեսած
է. ու ինք նշանով կը խօսէր ա-
23 նոնց հետ, և համր կը կենար։ Ու
եղաւ որ երբ անոր պաշտօնին օրերը
24 լմնցան, իր տունը գնաց։ Եւ
ան օրերէն ետքը անոր կինը Եղի-
սաբեթ յղացաւ, ու հինգ ամիս
ինքզինքը կը պահէր, և կ'ըսէր,
25 Այսպէս ըրաւ ինծի Տէրը աս օրերս,
որ իմ վրաս նայեցաւ նախատինքս
մարդոց մէջէն վերցընելու։
26 Ու վեցերորդ ամսուն մէջ Գաբ-
րիէլ հրեշտակը Աստուծմէ խըր-
կուեցաւ Գալիլեայի մէկ քաղաքը՝
27 որուն անունը Նազարէթ էր, Մէկ
կոյսի մը՝ մարդու մը նշանուած,
որուն անունը Յովսէփ էր՝ Դաւի-
թի տունէն, և ան կոյսին անունը
28 Մարիամ էր։ Ու հրեշտակը ա-
նոր գալով ըսաւ, Ողջոյն քեզ՝
ով շնորհընկալ կոյս, Տէրը քու
հետդ է. դուն կանանց մէջ օրհնեալ
29 ես։ Եւ անիկայ տեսնելով՝ անոր
խօսքին վրայ շփոթեցաւ, ու ինքն-
իրեն կը մտածէր թէ ինչպէս
30 բան պիտի ըլլայ աս ողջոյնը։ Եւ
հրեշտակը անոր ըսաւ. Մի՛ վախ-
նար՝ Մարիամ, ինչու որ Աստուծմէ
31 շնորհք գտար. Եւ ահա պիտի
յղանաս ու որդի մը պիտի ծնանիս,
և անոր անունը Յիսուս պիտի դը-
32 նես։ Անիկայ մեծ պիտի ըլլայ,
ու Բարձրելոյն Որդին պիտի ը-
սուի, և Տէր Աստուած պիտի տայ
անոր իր հօրը Դաւիթին աթոռը,
ու Յակոբին տանը վրայ յաւիտեան
33 պիտի թագաւորէ, Եւ անոր թա-
գաւորութիւնը վերջ պիտի չունե-
34 նայ։ Ու Մարիամ ըսաւ հրեշ-
տակին. Ո՞նչպէս պիտի ըլլայ աս
բանը, որովհետև ես էրիկ մարդ
35 չեմ գիտեր։ Եւ հրեշտակը պա-
տասխան տալով ըսաւ անոր. Հո-
գին Սուրբ պիտի գայ քեզի, ու
Բարձրելոյն զօրութիւնը քու վրադ
հովանի պիտի ըլլայ. ուստի ան
քեզմէ ծնանելու սուրբը Աստուծոյ
36 Որդի պիտի ըսուի։ Եւ ահա քու
ազգականդ Եղիսաբեթ՝ անիկայ ալ
իր պառաւութեան ատենը որդի զա-
ւակով մը յղի է. ու ասիկայ ան
ամուլ ըսուածին վեցերորդ ամիսն
է. Ինչու որ Աստուծոյ քովը բնաւ 37
մէկ բան մը անճարին չըլլար։ Եւ 38
Մարիամ ըսաւ. Ահա ես Տէրոջը
աղախինն եմ, քու ըսածիդ պէս
թող ըլլայ ինծի. ու հրեշտակը
անոր քովէն գնաց։
Ան օրերը ելաւ Մարիամ ու 39
արտորնօք լեռնակողմը Յուդայի
մէկ քաղաքը գնաց։ Եւ մտաւ 40
Զաքարիային տունը ու Եղիսա-
բեթին բարև տուաւ։ Եւ եղաւ 41
որ երբ լսեց Եղիսաբեթ Մարիամին
բարևը, մանուկը անոր որովայնին
մէջը խաղաց, ու Եղիսաբեթ Սուրբ
Հոգիով լեցուեցաւ. Եւ բարձր 42
ձայնով մը կանչեց ու ըսաւ,
Օրհնեալ ես դուն կանանց մէջ, և
օրհնեալ է քու որովայնիդ պտուղը։
Եւ աս ինծի ուսկից եղաւ, որ իմ 43
Տէրոջս մայրը ինծի գայ. Վասն 44
զի ահա երբոր քու բարևիդ ձայնը
ականջիս եկաւ, մանուկը որովայնիս
մէջը խաղաց ուրախութենէն։ Եւ 45
երանի անոր որ հաւատացեր է,
քանզի պիտի կատարուի ան բաները
որ Տէրոջմէ ըսուեցաւ իրեն։ Եւ 46
Մարիամ ըսաւ, Իմ անձս կը մեծ-
ցընէ Տէրը՝ Եւ իմ հոգիս ուրա- 47
խացաւ իմ Փրկիչ Աստուծովս։
Ինչու որ իր աղախինին խոնարհու- 48
թեանը նայեցաւ, քանզի ահա ասկէ
ետև բոլոր ազգերը ինծի երանու-
թիւն պիտի տան։ Վասն զի 49
Հզօրը ինծի մեծամեծ բաներ ը-
րաւ ու անոր անունը սուրբ է։
Եւ անոր ողորմութիւնը իրմէն 50
վախցողներուն վրայ է ազգէ ազգ։
Իր բազուկովը զօրութիւն ցուցուց՝ 51
ցիրուցան ըրաւ ամբարտաւանները
իրենց սրտին խորհուրդովը։ Զօ- 52
րաւորները իրենց աթոռներէն իջե-
ցուց, ու խոնարհները բարձրա-
ցուց։ Անօթիները բարիքներով 53
լեցուց, և հարուստները պարապ
ճամբեց։ Օգնութիւն ըրաւ իր 54
Իսրայէլ ծառային՝ իր ողորմութիւ-
նը միտք բերելով, Ինչպէս որ 55
ինքը խօսեցաւ մեր հայրերուն՝ Ա-
բրահամին ու անոր սերունդին յա-
ւիտեան։

56 Եւ Մարիամ անոր քովը իրեք
ամիսի չափ կեցաւ, ու իր տունը
դարձաւ ։
57 Ու Եղիսաբեթին ծնանելու ժա-
մանակը լեցուեցաւ, ու որդի մը
58 ծնաւ ։ Եւ լսեցին անոնք որ անոր
բոլորտիքը կը բնակէին՝ ու անոր
ազգականները, որ Տէրը անոր վը-
րայ իր մեծ ողորմութիւնը ցու-
ցուց ; և անոր հետ կ'ուրախա-
նային ։
59 Ու եղաւ որ ութերորդ օրը տղան
թլփատելու եկան ; և զանիկայ իր
հօրը անունովը Զաքարիա կը կո-
60 չէին ։ Իսկ անոր մայրը պատաս-
խան տուաւ ու ըսաւ ; Չէ, հա-
պա Յովհաննէս պիտի կոչուի ։
61 Եւ անոր ըսին թէ Քու ազգա-
կաններուդ մէջ մէկը չկայ որ աս
62 անունով կոչուի ։ Նշան կ'ընէին
անոր հօրը թէ ինչ անունով կ'ու-
63 զէ որ անիկայ կոչուի ։ Ան ալ
տախտակ մը ուզեց ու գրեց՝ ը-
սելով ; Յովհաննէս է անոր ա-
նունը ․ ու ամէնքը զարմացան ։
64 Եւ իսկոյն բացուեցաւ անոր բերա-
նը ու անոր լեզուն, և կը խօսէր
65 ու կ'օրհնէր զԱստուած ։ Եւ վախ
մը ինկաւ ան ամենուն վրայ՝ որոնք
անոնց բոլորտիքը կը բնակէին ․
ու աս ամէն բաները Հրէաստանի
բոլոր լեռնակողմը կը զրուցուէր ։
66 Եւ ամէն լսողները իրենց սրտե-
րուն մէջը դրին, ու կ'ըսէին ;
Արդեօք աս տղան ի՞նչ պիտի ըլ-
լայ ․ ու Տէրոջը ձեռքը անոր հետն
էր ։
67 Եւ անոր հայրը Զաքարիա
Սուրբ Հոգիով լեցուած՝ մարգա-
68 րէացաւ ու ըսաւ ; Օրհնեալ ըլլայ
Իսրայէլի Տէր Աստուածը, որ այ-
ցելութեան ելաւ և իր ժողովուր-
69 դին փրկութիւն ըրաւ ․ Ու մեզի
փրկութեան եղջիւր մը հանեց իր
70 Դաւիթ ծառային տունէն ․ (Ինչ-
պէս որ սուրբերուն բերնովը խօսե-
ցաւ, որոնք աշխարհի սկիզբէն 'ի
վեր անոր մարգարէներն էին ․)
71 Փրկութիւն մեր թշնամիներէն և
բոլոր մեզ ատողներուն ձեռքէն ;
72 Ողորմութիւն ընելու մեր հայրե-
րուն վրայ, և իր սուրբ ուխտը
միտք բերելու, (Ան երդումը որ 73
մեր հօրը Աբրահամին ըրաւ,) մե-
զի տալու, Որ մեր թշնամիներուն 74
ձեռքէն ազատուելով առանց վախի
զանիկայ պաշտենք Սրբութիւ- 75
նով ու արդարութիւնով անոր
առջևը մեր կենացը բոլոր օրերուն
մէջ ։ Եւ դուն ով մանուկ՝ Բարձ- 76
րելոյն մարգարէն պիտի կոչուիս,
ինչու որ Տէրոջը երեսին առջևէն
պիտի երթաս՝ անոր ճամբաները
պատրաստելու, Անոր ժողովուրդին 77
գիտցընելու իրենց փրկութիւնը ի-
րենց մեղքերուն թողութիւնովը,
Մեր Աստուծոյն գթած ողորմու- 78
թեանը համար՝ որով Ծագող ա-
րեգակը վերէն մեզի այցելութեան
եկաւ, Խաւարի և մահուան ըս- 79
տուերի մէջ նստողներուն լոյս տա-
լու, ու մեր ոտքերը խաղաղու-
թեան ճամբուն մէջ շիտկելու ։
Եւ տղան կը մեծնար ու կը զօ- 80
րանար հոգիով, և անապատներուն
մէջն էր մինչև ան օրը՝ որ ինքը
Իսրայէլին երևցաւ ։

## ԳԼ. Բ

Ու եղաւ որ ան օրերը Օգոստոս 1
կայսրէն հրաման ելաւ՝ որ բո-
լոր աշխարհ գրուի ։ (Աս առջի 2
աշխարհագիրը եղաւ Կիւրինոսին
Սիւրիայի վրայ կուսակալութիւն
ըրած ատենը ։) Եւ ամէնքը կ'եր- 3
թային աշխարհագիրը մտնելու՝ ա-
մէն մէկը իր քաղաքին մէջ ։ Յով- 4
սէփ ալ Գալիլեայէն Նազարէթ
քաղաքէն ելաւ դէպ 'ի Հրէաստան
Դաւիթի քաղաքը՝ որ Բեթլեհեմ
կ'ըսուի, (ինքը Դաւիթի տունէն
ու ազգատոհմէն ըլլալուն համար,)
Աշխարհագիրը մտնելու Մարիամին 5
հետ մէկտեղ, որ ան իր նշանածն
էր, և յղի էր ։ Ու եղաւ որ երբ 6
անոնք հոն էին, անոր ծնանելու
օրերը լեցուեցան ․ Եւ իր անդրա- 7
նիկ որդին ծնաւ, ու խանձարուրով
փաթթեց, և զանիկայ մսուրին
մէջը պառկեցուց ; ինչու որ իջևա-
նին մէջ իրենց տեղ չկար ։
Եւ ան տեղը հովիւներ կային 8

դաշտի մէջ կեցած, որոնք իրենց
հօտերուն գիշերուան պահպանու-
9 թիւնը կ'ընէին։ Ու ահա Տէրոջը
հրեշտակը անոնց վրայ իջաւ, ու
Տէրոջը փառքը անոնց բոլորտիքը
ծագեցաւ. ու խիստ շատ վախ-
10 ցան։ Ու հրեշտակը ըսաւ անոնց.
Մի վախնաք, ինչու որ ահա ես
ձեզի մեծ ուրախութեան աւետիս
կու տամ, որ բոլոր ժողովուրդին
11 պիտի ըլլայ. Վասն զի ձեզի այսօր
Փրկիչ մը ծնաւ Դաւիթի քաղա-
քին մէջ, որ Քրիստոս Օծեալ Տէր
12 է։ Ու աս ձեզի նշան մը ըլլայ.
մանուկ մը պիտի գտնէք խանձա-
րուրով փաթթուած ու մսուրի մէջ
13 պառկած։ Ու յանկարծ այն հրեշ-
տակին հետը երկնային զօրքերու
բազմութիւն մը եղաւ, որոնք զԱս-
14 տուած կ'օրհնէին ու կ'ըսէին. Ամե-
նէն բարձրութեանը մէջ Աստուծոյ
փառք, ու երկրիս վրայ խաղաղու-
թիւն, մարդոց մէջ հաճութիւն։
15 Ու եղաւ որ երբ հրեշտակները ա-
նոնցմէ երկինքը վերցան, հովիւնե-
րը իրարու ըսին. Եկէք մինչև
Բեթլէհէմ երթանք, ու տեսնենք՝
թէ ինչ է աս եղած բանը, որն որ
16 Տէրը մեզի ցուցուց։ Ու եկան
արտորնօք, և գտան Մարիամը ու
Յովսէփը և մսուրին մէջ պառկած
17 մանուկը։ Ու երբոր տեսան, ի-
մացուցին այն խօսքին վրայով, որ
աս մանուկին համար իրենց զրու-
18 ցուեցաւ։ Ու ամէնքը որ կը լսէ-
ին, կը զարմանային այն բաներուն
վրայ որ հովիւները իրենց կը զը-
19 րուցէին։ Բայց Մարիամ աս ա-
մէն բաները կը պահէր, ու իր
20 սրտին մէջը կը մտածէր։ Ու հո-
վիւները դարձան, կը փառաւո-
րէին ու կ'օրհնէին զԱստուած այն
ամէն բաներուն համար որ լսեցին
ու տեսան, ինչպէս որ իրենց զրու-
ցուած էր։
21 Ու երբոր ութ օրերը լման եղան
մանուկը թլփատելու, անոր անունը
Յիսուս դրուեցաւ, որ հրեշտակէն
կոչուած էր՝ դեռ ինքը մօրը որո-
վայնին մէջ չյղացած։
22 Ու Մովսէսին օրէնքին համեմատ
երբոր անոնց մաքրութեան օրերը
լմնցան, Երուսաղէմ տարին զա-
նիկայ Տէրոջը առջևը հանելու,
(Ինչպէս որ գրուած է Տէրոջը օ- 23
րէնքին մէջ, Թէ Ամէն արու որ
արգանդ կը բանայ, Տէրոջը սուրբ
ըսուի,) Ու Տէրոջը օրէնքին մէջ 24
ըսուածին պէս ընծայ տալու զոյգ
մը տատրակ կամ աղաւնիի երկու
ձագ։ Ու ահա Երուսաղէմի մէջ 25
մարդ մը կար, որուն անունը Սի-
մէօն էր, ու այն մարդը արդար ու
աստուածավախ էր, և Իսրայէլի
մխիթարութեանը կը սպասէր. ու
Սուրբ Հոգին անոր վրայ էր։ Ու 26
անոր յայտնուած էր Սուրբ Հո-
գիէն թէ մահ պիտի չտեսնէ, մին-
չև որ Տէրոջը Օծեալը տեսնէ։ Ու 27
Հոգիով տաճարը եկաւ. ու երբ-
որ ծնողքը բերին Յիսուս մանուկը՝
որ օրէնքին սովորութեանը պէս ա-
նոր համար ընեն, Ինքն ալ զանիկայ 28
իր գիրկը առաւ, և օրհնեց զԱս-
տուած ու ըսաւ, Ալ հիմա՝ ով 29
Տէր՝ արձակէ՛ս քու ծառադ խաղա-
ղութիւնով քու խօսքիդ համեմատ.
Վասն զի իմ աչքերս տեսան քու 30
փրկութիւնդ, Որ բոլոր ժողո- 31
վուրդներուն առջևը պատրաստե-
ցիր. Լոյս մը հեթանոսները լու- 32
սաւորելու, և փառք քու Իսրայէլ
ժողովուրդիդ։ Ու Յովսէփ ու 33
անոր մայրը զարմացած էին այն բա-
ներուն վրայ, որ անոր համար կը
խօսուէին։ Ու Սիմէօն օրհնեց զա- 34
նոնք, և անոր մօրը Մարիամին
ըսաւ. Ահա աս մանուկը Իսրայէլի
մէջ շատ մարդոց իյնալուն ու ելլե-
լուն համար, ու հակառակութեան
նշանակ մը ըլլալու համար կեցած
է. (Ու քու սրտէդ ալ թուր 35
մը պիտի անցնի,) որ շատոնցով
շատ սրտերէն խորհուրդները յայտ-
նուին։

Ու հոն էր Աննա մարգարէն Փա- 36
նուէլի աղջիկը՝ Ասերի ցեղէն. ա-
սիկայ իր օրերը շատ անցուցած
էր՝ էրկանը հետ եօթը տարի կե-
նալով իր կուսութեանը ժամանա-
կէն, Ու որբևարի էր գրեթէ 37
ութսունչորս տարուան. որ տա-

ճարէն չէր զատուէր , հապա ծոմով
և աղօթքով Աստուծոյ ծառայու-
թիւն կ'ընէր գիշեր ու ցորեկ ։
38 Ու անիկայ նոյն ժամուն եկաւ , ու
Տէրոջը գոհութիւն կու տար , ու
անոր վրայով կը խօսէր ան ամե-
նուն , որոնք Երուսաղէմի մէջ
փրկութեան կը սպասէին ։
39 Ու երբոր ամէն բան կատարեցին
Տէրոջը օրէնքին համեմատ , նորէն
Գալիլեա դարձան իրենց Նազա-
40 րեթ քաղաքը ։ Ու մանուկը կը
մեծնար ու հոգւով կը զօրանար՝
իմաստութեամբ լեցուած , ու Աս-
տուծոյ շնորհքը անոր վրայ էր ։
41 Ու անոր ծնողքը ամէն տարի
զատկի տօնին Երուսաղէմ կ'երթա-
42 յին ։ Ու երբոր անիկայ տասներ-
կու տարեկան եղաւ , տօնին սո-
վորութեանը պէս երբոր անոնք Ե-
43 րուսաղէմ ելան , Ու ան օրերը որ
լմնցուցին ու նորէն ետ դարձան ,
Յիսուս մանուկը Երուսաղէմ մը-
նաց . և Յովսէփ ու անոր մայրը
44 չէին գիտեր . Հապա կարծելով
թէ անիկայ ճամբորդներուն հետն
է , մէկ օրուան ճամբայ գացին , ու
կը փնտռէին զանիկայ իրենց ազ-
գականներուն և ճանչւորներուն մէ-
45 ջը ։ Ու երբոր չգտան , նորէն
Երուսաղէմ դարձան անիկայ փըն-
46 տըռելու ։ Ու եղաւ որ իրեք օրէն
ետքը տաճարին մէջը գտան զանի-
կայ , որ վարդապետներուն հետ
նստեր էր , անոնց մտիկ կ'ընէր
47 ու անոնց բան կը հարցընէր ։ Ու
ամէն անոր ականջ դնողները կը
զարմանային անոր իմաստութեանը
48 ու պատասխաններուն վրայ ։ Ու
երբոր տեսան զանիկայ , ապշած
մնացին . և անոր մայրը ըսաւ ա-
նոր , Որդեակ՝ ինչո՞ւ համար մեզի
այդպէս ըրիր . ահա քու հայրդ ու
ես խիստ վշտացած քեզ կը փնտը-
49 ռէինք ։ Ու ըսաւ անոնց , Զիս
ինչո՞ւ կը փնտռէիք , չէ՞ք գիտեր
թէ ինծի պէտք է որ իմ Հօրս
50 տանը ըլլամ ։ Ու անոնք չհաս-
կըցան ան խօսքը որ իրենց զրուցեց ։
51 Ու իջաւ անոնց հետ ու գնաց Նա-
զարէթ , և անոնց հնազանդ էր .
բայց անոր մայրը աս ամէն խօսքերը
իր սրտին մէջ կը պահէր ։
Ու Յիսուս կը զօրանար ի- 52
մաստութիւնով ու հասակով , և
Աստուծմէ ու մարդոցմէ շնորհք
գտնելով ։

## ԳԼ. Գ

Տիբերիոս կայսրին թագաւորու- 1
թեանը տասնըհինգերորդ տա-
րին՝ Պոնտացի Պիղատոսին Հը-
րէաստանի վրայ կուսակալութիւն
ըրած ատենը , ու Հերովդէսին՝
Գալիլեացւոց վրայ չորրորդապետու-
թեան ատենը , և անոր եղբօրը
Փիլիպպոսին՝ Իտուրացւոց և Տը-
րաքոնացւոց երկրին վրայ չորրոր-
դապետութեան ատենը , և Լիւսա-
նիայի Աբիլինացւոց վրայ չորրոր-
դապետութեան ատենը , Ու Ան- 2
նայի ու Կայիափայի քահանայա-
պետութեան ատենը՝ Աստուծոյ
խօսքը եղաւ Զաքարիայի որդւոյն
Յովհաննէսին վրայ անապատին
մէջ ։ Ու անիկայ եկաւ Յորդա- 3
նանու բոլոր կողմերը , և ապաշ-
խարութեան մկրտութիւն կը քա-
րոզէր մեղաց թողութեան համար .
Ինչպէս որ Եսայի մարգարէին խօս- 4
քերուն գրքին մէջ գրուած է՝ ըսե-
լով ։ Անապատի մէջ կանչողին
ձայնը , Տէրոջը ճամբան պատրաս-
տեցէ՛ք , անոր շաւիղները շտկե-
ցէ՛ք . Ամէն ձոր պիտի լեցուի , և 5
ամէն լեռ ու բլուր պիտի ցածնայ ,
և ծուռը պիտի շտկուի , ու խորտու-
բորտ տեղերը հարթ ճամբաներ
պիտի ըլլան . Ու ամէն մարմին Աս- 6
տուծոյ փրկութիւնը պիտի տեսնէ ։
Ու իրմէն մկրտուելու ելլող ժո- 7
ղովուրդներուն ըսաւ , Իժերու
ծնունդներ՝ ո՞վ իմացուց ձեզի գա-
լու բարկութենէն փախչիլ ։ Ու- 8
րեմն ապաշխարութեան արժանա-
ւոր պտուղներ բերէք , և մի՛ ըս-
կսիք ձեր ներսի դին ըսել թէ
Մենք մեզի հայր՝ Աբրահամը ու-
նինք . քանզի կ'ըսեմ ձեզի որ
Աստուած կարող է աս քարերէս
Աբրահամին որդիներ հանելու ։
Ալ հիմա կացինը ծառերուն ար- 9

արմատին քովը կը դրուի . ուստի
ամէն ծառ որ բարի պտուղ չը-
բերեր , կը կտրուի ու կրակը կը
10 ձգուի ։ Նաև ժողովուրդները կը
հարցընէին իրեն ու կ'ըսէին , Ու-
11 րեմն ի՞նչ ընենք ։ Պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց , Ո՛վ որ
երկու հանդերձ ունի , թող մէկը
չունեցողին տայ . և ով որ կերա-
12 կուր ունի , նոյնպէս ընէ ։ Մաք-
սաւորներ ալ եկան մկրտուելու ,
ու ըսին անոր , Վարդապետ՝ մենք
13 ի՞նչ ընենք ։ Ան ալ ըսաւ ա-
նոնց , Ձեզի հրամայուածէն աւելի
14 բան չպահանջէք ։ Զինուորներն
ալ կը հարցընէին անոր ու կ'ը-
սէին , Նաև մենք ի՞նչ ընենք . ըսաւ
անոնց , Մէկը մի՛ հարստահարէք ,
և մէկու մը վրայ զրպարտութիւն մի՛
ընէք , ու ձեր թոշակովը բաւակա-
նացէ՛ք ։
15 Երբոր ժողովուրդը կը սպասէր ,
և ամէնքը իրենց սրտերուն մէջ կը
մտածէին Յովհաննէսին համար՝ թէ
16 ա՞ս է արդեօք Քրիստոսը , Յով-
հաննէս պատասխան տուաւ ամե-
նուն ու ըսաւ , Ես ձեզ ջրով կը
մկրտեմ , բայց ինծմէ աւելի զօրա-
ւորը կու գայ , որ ես անոր կօշիկ-
ներուն կապերը քակելու արժանի
չեմ . անիկայ ձեզ պիտի մկրտէ
17 Հոգւով Սրբով և կրակով . Ո-
րուն հեծանոցը իր ձեռքն է , և իր
կալը պիտի մաքրէ , ու ցորենը իր
ամբարը պիտի ժողվէ , և յարդը
չմարելու կրակով պիտի այրէ ։
18 Ուրիշ շատ բաներ ալ կը քարո-
զէր՝ ժողովուրդը յորդորելով ։
19 Բայց Հերովդէս չորրորդապետը
անկէ յանդիմանուելով իր եղբօրը
կնկանը Հերովդիադային համար , և
բոլոր չարութիւններուն համար որ
20 Հերովդէս գործեց , Ան ամենուն
վրայ ասս ալ աւելցուց , որ Յով-
հաննէսը բանտի մէջ գոցեց ։
21 Ու երբոր մկրտուեցաւ բոլոր ժո-
ղովուրդը , և Յիսուս ալ մկըր-
տուելով՝ աղօթք կ'ընէր , երկինքը
22 բացուեցաւ . Նաև Սուրբ Հոգին
մարմնաւոր երևոյթով աղաւնիի

պէս անոր վրայ իջաւ , ու երկինքէն
ձայն մը եկաւ՝ որ կ'ըսէր , Դուն
ես իմ սիրելի Որդիս , քեզի հա-
նեցայ ։
Նաև ինքը Յիսուս սկսեր էր գրե- 23
թէ երեսուն տարեկան ըլլալ , որ
( ինչպէս կը կարծուէր ) ինքը
Յովսէփին որդին էր , որ ան Հե-
ղիին , որ ան Մատաթին , Որ ան 24
Ղևիին , որ ան Մելքիին , որ ան
Յաննէին , որ ան Յովսէփին , Որ 25
ան Մատաթիային , որ ան Ամով-
սին , որ ան Նաւումին , որ ան
Եսղիին , որ ան Նանգէին , Որ ան 26
Մաաթին , որ ան Մատաթիային ,
որ ան Սեմէիին , որ ան Յովսէփին ,
որ ան Յուդային , Որ ան Յով- 27
հաննային , որ ան Ռեսային , որ ան
Զօրաբաբելին , որ ան Սաղաթիէ-
լին , որ ան Ներիին , Որ ան Մել- 28
քիին , որ ան Ադդիին , որ ան Կով-
սամին , որ ան Եղմովդադին , որ
ան Էրին , Որ ան Յովսէսին , որ 29
ան Եղիազարին , որ ան Յովրիմին ,
որ ան Մատաթին , որ ան Ղևիին ,
Որ ան Սիմէոնին , որ ան Յուդա- 30
յին , որ ան Յովսէփին , որ ան
Յովնանին , որ ան Եղիակիմին ,
Որ ան Մելէային , որ ան Մայնա- 31
նին , որ ան Մատաթային , որ ան
Նաթանին , որ ան Դաւիթին ,
Որ ան Յեսսէին , որ ան Ովբէդին , 32
որ ան Բոոսին , որ ան Սաղմոնին ,
որ ան Նաասոնին , Որ ան Ամինա- 33
դաբին , որ ան Արամին , որ ան
Եսրոնին , որ ան Փարեսին , որ
ան Յուդային , Որ ան Յակոբին , 34
որ ան Իսահակին , որ ան Աբրա-
համին , որ ան Թարային , որ ան
Նաքովրին , Որ ան Սերուքին , որ 35
ան Ռագաւին , որ ան Փաղէկին ,
որ ան Եբերին , որ ան Սաղային ,
Որ ան Կայնանին , որ ան Արփաք- 36
սադին , որ ան Սեմին , որ ան Նո-
յին , որ ան Ղամէքին , Որ ան 37
Մաթուսաղային , որ ան Ենովքին ,
որ ան Յարեդին , որ ան Մաղա-
ղիէլին , որ ան Կայնանին , Որ ան 38
Ենովսին , որ ան Սէթին , որ ան
Ադամին , որ ան Աստուծոյ ։

## ԳԼ. Դ

1 Եւ Յիսուս Հոգւով Սրբով լե-
ցուած՝ Յորդանանէն դարձաւ,
ու Հոգիէն անապատը տարուե-
2 ցաւ, Եւ քառասուն օր Սատանա-
յէն փորձուեցաւ. ու այն օրերը
բան մը չկերաւ, և այն օրերը լմըն-
նալէն ետև անօթեցաւ։
3 Ու Սատանան ըսաւ անոր, Թէ
որ Աստուծոյ Որդին ես, ըսէ՛ այս
4 քարին որ հաց ըլլայ։ Եւ Յի-
սուս պատասխան տուաւ անոր ու
ըսաւ, Գրուած է թէ Ո՛չ միայն
հացով կ'ապրի մարդ, հապա Աս-
տուծոյ ամէն խօսքովը։
5 Եւ Սատանան մէկ բարձր լեռ մը
հանելով զանիկայ, աշխարհի բոլոր
թագաւորութիւնները ցուցուց ա-
6 նոր մէկ վայրկեանի մը մէջ. Եւ
Սատանան ըսաւ անոր. Այս ամէն
իշխանութիւնը ու անոնց փառքը
քեզի պիտի տամ, ինչու որ ինծի
յանձնուած է. և որուն որ ուզեմ՝
7 կու տամ անիկայ. Ուստի թէ որ
դուն իմ առջևս ինկնաս երկրպագու-
թիւն ընես, ամէնը քեզի ըլլայ։
8 Եւ Յիսուս պատասխան տուաւ ա-
նոր ու ըսաւ, Գրուած է թէ
Քու Տէր Աստուծոյդ երկրպագու-
թիւն ընես, ու միայն զանիկայ
պաշտես։
9 Եւ զանիկայ տարաւ Երուսա-
ղէմ ու տաճարին աշտարակին վը-
րայ կայնեցուց, ու ըսաւ անոր,
Թէ որ դուն Աստուծոյ Որդին ես,
10 քեզ աստի վար ձգէ. Ինչու որ
գրուած է թէ Իր հրեշտակներուն
պիտի ապսպրէ քեզի համար՝ որ
11 քեզ պահեն. Ու ձեռքերնուն վրայ
պիտի վերցընեն քեզ, որ չըլլայ
12 թէ ոտքդ քարի զարնես։ Եւ Յի-
սուս պատասխան տուաւ ու ըսաւ
անոր, Ըսուած է թէ Քու Տէր
13 Աստուածդ չփորձես։ Ու երբ-
որ Սատանան ամէն փորձութիւնը
կատարեց, ատեն մը ետ կեցաւ
անկէ։
14 Եւ Յիսուս Հոգիին զօրու-
թեամբը Գալիլեա դարձաւ, ու
անոր համբաւը այն գաւառին ամէն
կողմերը տարածուեցաւ։ Եւ ինքը 15
անոնց ժողովարաններուն մէջը կը
սորվեցընէր, ու ամենէն կը փա-
ռաւորուէր։
Ու եկաւ Նազարէթ, ուր որ 16
ինքը մեծցած էր. և իր սովորու-
թեանը պէս շաբաթ օրը մտաւ
ժողովարանը, ու ելաւ որ կար-
դայ։ Եւ տուին անոր Եսայի 17
մարգարէին գիրքը. ու երբոր գիր-
քը բացաւ, գտաւ այն տեղը՝ ուր
որ գրուած էր, Տէրոջը Հոգին իմ 18
վրաս է. ինչու որ զիս օծեց աղ-
քատներուն աւետարան քարոզե-
լու, զիս խրկեց կոտրած սիրտ ու-
նեցողները բժշկելու, Գերիներուն 19
ազատութիւն՝ և կոյրերուն տե-
սութիւն քարոզելու, հարստահա-
րութիւն կրողները ազատ թող-
տալու, Տէրոջը ընդունելի տարին
քարոզելու։ Եւ գիրքը գոցելով՝ 20
տուաւ սպասաւորին ու նստաւ. և
ժողովարանը եղողներուն ամէնը
աչքերնին տնկած անոր կը նայէին։
Եւ սկսաւ անոնց ըսել, Այսօր աս 21
գրուածը կատարուեցաւ ու ձեր
ականջները լսեցին։ Եւ ամէնքը 22
անոր վրայ կը վկայէին, ու կը
զարմանային անոր բերնէն ելած շը-
նորհալի խօսքերուն վրայ՝ ու կ'ը-
սէին, Ասիկայ Յովսեփին որդին
չէ՞։ Եւ ըսաւ անոնց, Իրաւ որ 23
դուք ինծի պիտի ըսէք աս առակը,
Բժիշկ՝ քու անձդ բժշկէ. ինչ չափ
բաներ լսեցինք որ Կափառնայումի
մէջ եղաւ, հոս ալ ըրէ քու քա-
ղաքիդ մէջ։ Եւ ըսաւ, Ճշմա- 24
րիտ կ'ըսեմ ձեզի թէ Մարգարէ
մը իր քաղաքին մէջ ընդունելի չէ։
Եւ յիրաւի կ'ըսեմ ձեզի թէ Շատ 25
որբևայրիներ կային Եղիային օրերը
Իսրայէլի մէջ, երբոր իրեք տարի
ու վեց ամիս երկինքը գոցուեցաւ,
անանկ որ մեծ սով եղաւ բոլոր
երկրին մէջ. Բայց Եղիա անոնց- 26
մէ մէկուն չխրկուեցաւ, հապա մի-
նակ Սիդոնացւոց Սարեփթա քա-
ղաքին մէջ որբևայրի կնկան մը։
Եւ շատ բորոտներ կային Իսրայէլի 27
մէջ Եղիսէ մարգարէին ատենը,
ու անոնցմէ մէկը չմաքրուեցաւ,

համար միայն Նէեման Ասորին :
28 Ու ժողովարանին մէջ ամէնքն ալ
բարկութիւնով լեցուեցան՝ երբոր
29 աս խօսքերը լսեցին . Ու ելան ա-
նիկայ քաղաքէն դուրս հանեցին , և
տարին զանիկայ մինչև այն լերանը
ցցուած ծայրը , որուն վրայ իրենց
քաղաքը շինուած էր , որ զանիկայ
30 բարձր տեղէն վար ձգեն : Բայց
ինքը անոնց մէջէն անցաւ գնաց :
31 Ու իջաւ Գալիլեայի Կափառնա-
յում քաղաքը , ու շաբաթ օրերը
32 կը սորվեցընէր անոնց : Ու կը
զարմանային անոր վարդապետու-
թեանը վրայ , ինչու որ իշխանու-
33 թիւնով էր անոր խօսքը : Ու
ժողովարանին մէջ մարդ մը կար ,
որ պիղծ դևի ոգի ունէր , ու մեծ
34 ձայնով մը աղաղակեց՝ Ըսելով ,
Թո՛ղ տուր , դուն մեզի հետ ի՞նչ
բան ունիս՝ Յիսուս Նազովրեցի .
միթէ մեզ կորսնցընելո՞ւ եկար .
գիտեմ քեզ ով ես , Աստուծոյ
35 Սուրբը : Ու Յիսուս սաստեց ա-
նոր՝ ըսելով ՝ Պապանձէ ու ելիր
ատկէ . ու դևը զանիկայ ներկայ
գտնուողներուն մէջտեղը գետինը
զարկաւ , և ելաւ անկէ , ու վնաս
36 մը չտուաւ անոր : Ու զարմանք
եկաւ ամենուն վրայ . և իրարու
հետ կը խօսէին ու կ'ըսէին , Աս
ի՞նչ խօսք է , որ իշխանութիւնով
և զօրութիւնով կը հրամայէ պիղծ
37 ոգիներուն , ու կ'ելլեն : Ու ա-
նոր համբաւը տարածուեցաւ շրջա-
կայ գաւառին ամէն տեղերը :
38 Ու ժողովարանէն ելլելով՝ Սի-
39 մոնին տունը մտաւ : Սիմոնին զո-
քանչն ալ սաստիկ ջերմով կը տան-
ջուէր , ու անոր համար աղաչեցին
40 իրեն : Ու Յիսուս անոր վրայ
կայնելով՝ սաստեց ջերմին , որ թո-
ղուց զանիկայ . և շուտ մը ելաւ
ու անոնց սպասաւորութիւն կ'ընէր :
41 Ու արևը մարը մտած ատենը՝
ամէն անոնք որ ունէին տեսակ տե-
սակ ցաւերով հիւանդներ , իրեն
բերին զանոնք . ինքն ալ անոնցմէ
ամէն մէկուն վրայ ձեռք դնելով՝
42 բժշկեց զանոնք : Դևեր ալ կ'ել-
լէին շատերէն , կ'աղաղակէին ու
կ'ըսէին թէ Դուն ես Քրիստոս՝
Աստուծոյ Որդին . և ինքը կը սաս-
տէր ու թող չէր տար անոնց որ
խօսին , ինչու որ գիտէին թէ ինքը
Քրիստոսն է :
Ու երբոր ցորեկ եղաւ , ելաւ 43
ու գնաց անապատ տեղ մը , և
ժողովուրդները կը փնտռէին զա-
նիկայ . եկան մինչև անոր , ու կը
ստիպէին զանիկայ որ իրենցմէ չեր-
թայ . Բայց անիկայ ըսաւ անոնց ։ 44
Պէտք է ինծի՝ որ ուրիշ քաղաքնե-
րու ալ Աստուծոյ թագաւորու-
թիւնը քարոզեմ , քանզի աս բա-
նիս համար ղրկուած եմ : Ու 45
Գալիլեայի ժողովարաններուն մէջ
կը քարոզէր :

## ԳԼ. Ե

Ու եղաւ որ երբ ժողովուրդը անոր 1
բոլորտիքը դիզուեցաւ Աստու-
ծոյ խօսքը լսելու համար , ինքն ալ
Գեննեսարեթի ծովակին քովը կե-
ցեր էր : Ու տեսաւ երկու նաւեր՝ 2
որ ծովակին քովը կեցեր էին , և
ձկնորսները անոնց մէջէն ելած՝ ուռ-
կանները կը լուային : Ինքը այն 3
նաւերուն մէկուն մէջը մտաւ որ
Սիմոնինն էր , և աղաչեց անոր որ
քիչ մը ցամաքէն ծովուն մէջը տա-
նի . և նստելով՝ նաւուն մէջէն ժո-
ղովուրդներուն կը սորվեցընէր :
Ու երբոր խօսելէն դադարեցաւ , 4
ըսաւ Սիմոնին , Առա՛ջ տար նաւը
դէպ 'ի խորունկը , և ուռկաններ-
նիդ ձգեցէ՛ք յորս որսալու : Ու 5
Սիմոն պատասխան տալով ըսաւ
անոր ։ Վարդապե՛տ՝ բոլոր գիշերս
աշխատեցանք , ու բան մը չբռնե-
ցինք , բայց քու խօսքիդ համար
ուռկանը ձգեմ : Ու երբոր աս ը- 6
րին , խիստ շատ ձուկեր ժողվեցին
մէջը , ու իրենց ուռկանը կը պա-
տռտէր : Ու աչք կ'ընէին միւս 7
նաւուն մէջ եղող իրենց ընկերնե-
րուն՝ որ գան օգնեն իրենց . և ե-
կան , ու երկու նաւերն ալ լեցուե-
ցին , մինչև որ ընկղմելու մօտ էին :
Սիմոն Պետրոս երբոր տեսաւ , Յի- 8
սուսի ծունկերուն ինկաւ ու ըսաւ ,
Տէ՛ր՝ իմ քովէս մեկնէ՛ գնա , ին-

չու որ ես մեղաւոր մարդ մըն եմ ։
9 Վասն զի ապշութիւնը պատեց զա-
նիկայ և անոր հետը եղող ամէնը,
ան իրենց բռնած ձուկերուն որսին
10 համար. Նոյնպէս ալ Զեբեդեո-
սին որդիքը Յակոբոս և Յովհան-
նէս, որոնք Սիմոնին ընկերներն
էին. ու Յիսուս ըսաւ Սիմոնին,
Մի՛ վախնար, ասկէ ետև մարդոց
11 որսորդ պիտի ըլլաս ։ Եւ նաւերը
ցամաքը հանելով՝ ամէն բան թո-
ղուցին ու անոր ետևէն գացին ։
12 Ու եղաւ որ երբ Ինքը քաղաքի
մը մէջ էր, ահա մէկ մարդ մը բո-
րոտութիւնով լեցուած՝ երբոր Յի-
սուսը տեսաւ, երեսի վրայ իյնալով
աղաչեց անոր ու ըսաւ, Տէ՛ր, թէ
որ ուզես, կրնաս զիս մաքրել ։
13 Եւ Յիսուս իր ձեռքը երկնցընե-
լով դպաւ անոր, ու ըսաւ, Կ'ու-
զեմ՝ մաքրուէ՛. և շուտ մը բորո-
14 տութիւնը անկէ գնաց ։ Ու Ինքը
պատուիրեց անոր որ մէկու մը չըսէ,
հապա ըսաւ, Գնա՛ քեզ քահա-
նային ցուցո՛ւր, և Մովսէսին պա-
տուիրածին պէս քու մաքրուելուդ
ընծան տո՛ւր՝ անոնց վկայութիւն
15 ըլլալու համար ։ Եւ անոր վրայով
խօսքը աւելի կը տարածուէր. ու
շատ ժողովուրդներ կը ժողվուէին
մտիկ ընելու, և անով իրենց հի-
16 ւանդութիւններէն բժշկուելու ։ Ու
Ինքը անապատ տեղուանք կը քա-
շուէր և աղօթք կ'ընէր ։
17 Ու եղաւ որ մէկ օր մը Ինքը կը
սորվեցընէր, ու փարիսեցիներ և
օրէնքի վարդապետներ նստած էին,
որոնք Գալիլեայի ու Հրէաստանի
ու Երուսաղէմի բոլոր գիւղաքա-
ղաքներէն ժողվուած էին. ու Տէ-
րոջը զօրութիւնը հոն էր անոնք
18 բժշկելու ։ Եւ ահա քանի մը մար-
դիկ մէկ անդամալոյծ մարդ մը մա-
հիճով մը բերին, և ճամբը կը փնտռ-
ուէին թէ ինչպէս զանիկայ ներս խօ-
19 թեն, ու դնեն անոր առջևը ։ Ու
երբոր բազմութենէն ճամբայ չէին
գտներ՝ որ անկէ ներս խօթեն անի-
կայ, տանիքին վրայ ելան, և զա-
նիկայ կղմինտրներուն մէջէն մահի-
ճովը մէջտեղը Յիսուսին առջևը
իջեցուցին ։ Եւ անիկայ տեսնելով 20
անոնց հաւատքը՝ ըսաւ անոր ։ Ո՛վ
մարդ՝ քու մեղքերդ քեզի ներուած
են ։ Եւ դպիրները ու փարիսե- 21
ցիները սկսան խորհիլ ու ըսել,
Ո՞վ է ասիկայ, որ հայհոյութիւն-
ներ կը խօսի. մէկ կրնայ մեղաց
թողութիւն տալ, բայց միայն Աս-
տուած ։ Եւ Յիսուս իմանալով 22
անոնց խորհուրդները՝ պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Սրտեր-
նուդ մէջ ի՞նչ կը խորհիք ։ Ո՞րը 23
աւելի դիւրին է, ըսել, Քու մեղքերդ
քեզի ներուած են ըսե՞լը, թէ Ել-
լէ ու քալէ ըսելը ։ Բայց որպէս 24
զի գիտնաք թէ Որդին մարդոյ իշ-
խանութիւն ունի երկրի վրայ մեղ-
քերու թողութիւն տալու, (ըսաւ
անդամալոյծին,) Քեզի կ'ըսեմ,
Ելի՛ր մահիճդ առ ու տունդ գնա ։
Ան ալ իսկոյն անոնց առջևը ելաւ, 25
ու վրան առաւ ինչ բանի վրայ որ
պառկած էր, և գնաց իր տունը,
ու Աստուծոյ փառք կու տար ։ Եւ 26
ամէնքը ապշած մնացին, ու Աս-
տուծոյ փառք կու տային. և վախով
լեցուած՝ կ'ըսէին թէ Այսօր նո-
րանշան բաներ տեսանք ։
Եւ աս բաներէն ետև ելաւ անկէ, 27
ու տեսաւ մէկ մաքսաւոր մը՝ որուն
անունը Ղևի էր, որ մաքս ընդունե-
լու տեղը նստեր էր, ու ըսաւ ա-
նոր, Ետևէ՛ս եկուր ։ Ան ալ 28
թողուց ամէնը և ելաւ գնաց անոր
ետևէն ։ Ու Ղևի անոր մեծ կո- 29
չունք մը ըրաւ իր տունը մէջ. և
շատ բազմութիւն կար մաքսաւորնե-
րու և ուրիշներու՝ որ անոնց հետ
սեղան նստեր էին ։ Եւ անոնց 30
դպիրները ու փարիսեցիները տըր-
տունջ կ'ընէին անոր աշակերտնե-
րուն ու կ'ըսէին, Ինչո՞ւ համար
մաքսաւորներուն և մեղաւորներուն
հետ կ'ուտէք ու կը խմէք ։ Եւ 31
Յիսուս պատասխան տալով ըսաւ
անոնց, Առողջներուն բժիշկ պէտք
չէ, հապա հիւանդներուն ։ Ես 32
արդարները կանչելու չեկայ, հապա
մեղաւորները ապաշխարութեան ։
Անոնք ալ ըսին անոր, Ինչո՞ւ 33
Յովհաննէսին աշակերտները շատ

անգամ ծոմ կը պահեն , և ա-
ղօթքներ կ'ընեն , նոյնպէս ալ փա-
րիսեցւոց աշակերտները . և քու-
կիններդ կ'ուտեն ու կը խմեն :
34 Անիկայ ալ ըսաւ անոնց , Միթէ
հարսնիքին տղոցը ծոմ պահել
տալ՝ քանի որ փեսան իրենց հետն
35 է : Բայց օրեր պիտի գան՝ որ երբ
փեսան իրենցմէ վերցուի , հապա
36 ան օրերը ծոմ պիտի պահեն : Ա-
ռակ մըն ալ ըսաւ անոնց , Թէ
Մէկը չձգեր նոր լաթի կտոր հին
հանդերձի վրայ . եթէ ոչ՝ ան նորը
պատռուածք ալ կ'ընէ , ու հին-
ցածին հետ ալ չմիաբանիր ան նոր
37 լաթէն եղած կտորը : Նաև մէկը
նոր գինին հին տիկերու մէջ չդներ .
եթէ ոչ՝ նոր գինին տիկերը
կը պատռէ , ինքը կը թափի ու
38 տիկերը կը կորսուին . Հապա նոր
գինին նոր տիկերու մէջ դնելու է ,
39 ու երկուքն ալ կը պահուին : Նաև
մէկը հին գինին խմելէն ետև ան-
միջապէս նորը չուզեր . քանզի կ'ը-
սէ թէ Հինը աւելի ախորժելի է :

ԳԼ. Զ.

1 Ու եղաւ որ երկրորդ առաջին շա-
բաթ օրը Յիսուս արտերուն մէջէն
կ'անցնէր և իր աշակերտները ցորենի
հասկեր փրցընելով , ձեռքերնուն
2 մէջ կը շփէին ու կ'ուտէին : Ու
փարիսեցիներէն ոմանք ըսին անոնց ,
Ա՛յ ինչ բան կ'ընէք , որ արժան
3 չէ ընել շաբաթ օրը : Նաև Յի-
սուս պատասխան տալով անոնց
ըսաւ . Չէ՞ք կարդացեր դուք Դա-
ւիթին ըրածը , երբոր անօթեցաւ
ինքը և անոնք որ իր հետն էին .
4 Ինչպէս անիկայ Աստուծոյ տունը
մտաւ , և առաջաւորութեան հա-
ցերը առաւ ու կերաւ , և տուաւ
անոնց ալ որ իր հետն էին . որ
ձեւով մը օրինաւոր չէ ուտել , բայց
5 միայն քահանաներուն : Նաև ըսաւ
անոնց . Որդին մարդոյ շաբաթին
ալ Տէրն է :
6 Ու եղաւ որ ուրիշ շաբաթ օր
մըն ալ Յիսուս ժողովարանը մտաւ
ու կը սորվեցընէր . և հոն մարդ մը
կար որուն աջ ձեռքը չորցած

էր : Նաև դպիրները ու փարիսե- 7
ցիները անոր կը սպասէին՝ թէ շա-
բաթ օրը զանի՞նք կը բժշկէ՞ . որպէս
զի ամբաստանութեան տեղի մը
գտնեն անոր դէմ : Իսկ Յիսուս 8
գիտնալով անոնց խորհուրդները ,
ըսաւ այն մարդուն որուն ձեռքը
չորցած էր . Ելի՛ր՝ մէջտեղը կայնէ .
ան ալ ելաւ կայնեցաւ : Նա ա- 9
նոր Յիսուս ըսաւ անոնց . Ձեզի
բան մը հարցընեմ . Շաբաթ օրը
ի՞նչ արժան է , բարի՞ք ընել ,
թէ չարիք ընել . հոգի մը ազատե-
ցընե՞լ , թէ մեռցընել : Նաև 10
շուրջանակի ամենուն վրայ նայելով՝
ըսաւ անոր , Ձեռքդ երկընցո՛ւր .
ան ալ այնպէս ըրաւ , ու անոր
ձեռքը ողջացաւ միւսին պէս :
Նաև անոնք կատաղութեամբ լեցուե- 11
ցան , ու իրարու հետ կը խօսէին
թէ ի՞նչ ընեն Յիսուսին :
Նաև եղաւ որ ան օրերը լեռը ելաւ 12
աղօթք ընելու , ու բոլոր գիշերը
Աստուծոյ աղօթք ընելով անցուց :
Ու երբոր առտու եղաւ , կանչեց 13
իր աշակերտները , ու անոնցմէ
տասներկու հոգի ընտրեց , որոնք
առաքեալ ալ անուանեց . Սիմոնը՝ 14
որն որ Պետրոս ալ անուանեց , և
անոր եղբայրը Անդրէասը , Յակո-
բոսը ու Յովհաննէսը , Փիլիպ-
պոսը և Բարթողիմէոսը , Մատ- 15
թէոսը և Թովմասը , Ալփէոսեան
Յակոբոսը և Նախանձայոյզ ը-
սուած Սիմոնը , Յակոբոսին եղ- 16
բայրը Յուդան և Իսկարիովտացի
Յուդան՝ որ և մատնիչ եղաւ :
Նաև անոնց հետ իջնելով մէկ տա- 17
փարակ տեղ մը կայնեցաւ . նաև
իր աշակերտներուն ժողովը ու մեծ
բազմութիւն մը ժողովուրդներու
բոլոր Հրէաստանէն ու Երուսա-
ղեմէն և Տիւրոսի ու Սիդոնի
ծովեզերքէն . Որոնք եկան անոր 18
խօսքը մտիկ ընելու , ու իրենց
հիւանդութիւններէն բժշկուելու .
և պիղծ ոգիներէն նեղութիւն կրող-
ները ալ եկան ու կը բժշկուէին :
Նաև բոլոր ժողովուրդը կ'ուզէր իրեն 19
դպչիլ , ինչու որ զօրութիւն կ'ել-
լէր իրմէն ու ամէնը կը բժշկէր :

20 Իսկ ինքը իր աչքերը դէպ 'ի իր
աշակերտներուն վերցուց ու ըսաւ,
Երանի՜ ձեզի աղքատներուդ, ին-
չու որ ձերն է Աստուծոյ թագա-
21 ւորութիւնը: Երանի՜ ձեզի որ
հիմա անօթի էք, ինչու որ պիտի
կշտանաք. երանի ձեզի որ հիմա
կու լաք, ինչու որ պիտի խնդաք:
22 Երանի՜ է ձեզի՝ երբոր մարդիկ ձեզ
ատեն, ու երբոր ձեզ իրենց ընկե-
րութիւններէն մերժեն ու նախատեն,
և ձեր վրայով գէշ անուն հանեն
23 Որդւոյ մարդոյ պատճառաւը: Ու-
րախ եղէք դուք այն օրը ու ցնծա-
ցէ՛ք, որ ահա ձեր վարձքը շատ է
երկինքը. վասն զի իրենց հայրերը
այդպէս կ'ընէին մարգարէներուն:
24 Բայց վա՜յ ձեզի հարուստներուդ,
ինչու որ ձեր մխիթարութիւնը ա-
25 ռած էք: Վա՜յ ձեզի որ կուշտ
էք, ինչու որ պիտի անօթենաք.
վա՜յ ձեզի որ հիմա կը ծիծաղիք,
ինչու որ սուգ պիտի ընէք ու լաք:
26 Վա՜յ ձեզի երբոր մարդիկ ձեր վրա-
յով աղէկ խօսին, ինչու որ իրենց
հայրերը այդպէս կ'ընէին սուտ մար-
գարէներուն:
27 Բայց կ'ըսեմ ձեզի որ մտիկ կ'ը-
նէք, Սիրեցէ՛ք ձեր թշնամիները.
ձեզ ատողներուն բարի ըրէք.
28 Ձեզ անիծողները օրհնեցէ՛ք, ձեզի
նեղութիւն տուողներուն համար
29 աղօթք ըրէք: Ան որ քու մէկ
ծնօտիդ կը զարնէ, միւսն ալ մը-
տեցուր անոր. և ան որ քու վե-
րարկուդ քեզմէ կը հանէ, մի՛ ար-
30 գիլեր անկէ շապիկդ ալ: Ան
ամենուն որ քեզմէ կ'ուզէ՝ տուր,
ու քու բաներդ առնողէն ետ մի՛
31 պահանջեր: Իսկ ինչպէս կ'ուզէք
որ մարդիկ ձեզի ընեն, դուք ալ
32 անոնց անանկ ըրէք: Իսկ թէ որ
դուք ձեզ սիրողները սիրէք՝ ի՞նչ
շնորհք կ'ունենաք. ինչու որ մեղա-
ւորներն ալ կը սիրեն զիրենք սի-
33 րողները: Իսկ թէ որ դուք ձեզի
բարի ընողներուն բարիք ընէք,
ի՞նչ շնորհք կ'ունենաք. ինչու որ
մեղաւորներն ալ նոյն բանը կ'ը-
34 նեն: Իսկ թէ որ անանկ մարդիկ-
ներուն փոխ տաք՝ որոնցմէ յոյս ու-
նիք առնելու, ի՞նչ շնորհք կ'ու-
նենաք. ինչու որ մեղաւորներն ալ
մեղաւորներուն փոխ կու տան, որ
նոյն չափովը ետ առնեն: Հապա 35
սիրեցէ՛ք դուք ձեր թշնամիները,
ու բարի ըրէք, և փոխ տուէք
առանց փոխարէնի մը սպասելու,
և ձեր վարձքը շատ պիտի ըլլայ,
ու Բարձրեալին որդիքը պիտի ըլ-
լաք. ինչու որ անիկայ բարերար է
ապերախտներուն ու չարերուն:
Ուրեմն գթած եղէ՛ք՝ ինչպէս որ 36
ձեր Հայրն ալ գթած է: Մի՛ 37
դատէք, ու պիտի չդատուիք. մի՛
դատապարտէք, ու պիտի չդատա-
պարտուիք. ներեցէ՛ք, ու ձեզի
պիտի ներուի. Տուէ՛ք՝ ու ձեզի 38
պիտի տրուի. աղէկ չափով՝ կո-
խուած՝ ցնցուած՝ լեփլեցուն պիտի
տրուի ձեր գոգը. քանզի այն չա-
փովը որով դուք կը չափէք, ձեզի
պիտի չափուի:
Առակ մըն ալ ըսաւ անոնց, 39
Միթէ կոյրը կոյրին կրնա՞յ առաջ-
նորդութիւն ընել. չէ՞ որ եր-
կուքն ալ փոսը պիտի իյնան: Ա- 40
շակերտը իր վարդապետէն մեծ չէ,
բայց ամէն կատարելապէս վար-
ժուածը իր վարդապետին պէս կ'ըլ-
լայ:
Իսկ ինչո՞ւ քու եղբօրդ աչքին 41
մէջի շիւղը կը տեսնես, ու քու աչ-
քիդ մէջի գերանին չես նայիր:
Կամ ի՞նչպէս կրնաս ըսել քու 42
եղբօրդ, Եղբա՛յր՝ թող տուր որ
աչքիդ մէջի շիւղը հանեմ. և դուն
քու աչքիդ մէջի գերանը չես տես-
ներ. կեղծաւո՛ր՝ առաջ քու աչքէդ
գերանը հանէ, ու ետքը պարզ պի-
տի տեսնես քու եղբօրդ աչքին մէջի
շիւղը հանելու: Ինչու որ չկայ բարի 43
ծառ մը որ չար պտուղ բերէ. ոչ
ալ չար ծառ մը որ բարի պտուղ
բերէ: Վասն զի ամէն ծառ իր 44
պտուղէն կը ճանչցուի. ինչու որ
փուշերէն թուզ չեն քաղեր, ու
մորենիէն խաղող չեն ժողվեր:
Բարի մարդը իր սրտին բարի գան- 45
ձէն բարութիւն կը հանէ, և չար
մարդը իր սրտին չար գանձէն չա-
րութիւն կը հանէ. ինչու որ իր

բերանը անոր սրտին առատութենէն կը
խօսի ։
46 Ու ինչո՞ւ զիս Տէ՛ր Տէ՛ր՝ կը կան-
չէք, ու ըսած բաներս չէք կատա-
47 րեր ։ Ամէն մարդ որ ինծի կու գայ
և իմ խօսքերս կը լսէ ու անոնք
կը կատարէ, ձեզի ցուցնեմ թէ
48 որու կը նմանի ։ Անիկայ տուն
շինող մարդու մը կը նմանի, որ
փորեց ու խորունկցուց, ու հիմը
վէմին վրայ դրաւ . և ջուրերուն
յորդած ատենը գետը զարկաւ այն
տանը, ու չկրցաւ զանիկայ շար-
ժել, ինչու որ վէմին վրայ հաստա-
49 տուած էր ։ Բայց ան որ իմ խօսքերս
կը լսէ ու չկատարեր, կը նմանի
այն մարդուն՝ որ հողի վրայ առանց
հիմի տուն կը շինէ . որուն գետը
զարկաւ, և շուտ մը փլաւ, ու այն
տանը կործանումը մեծ էր ։

## ԳԼ. Է

1 Ու երբոր իր բոլոր խօսքերը ժո-
ղովուրդին ականջներուն խօսիլը
լմնցուց, մտաւ Կափառնայում ։
2 Ու հարիւրապետի մը ծառայ ծանր
հիւանդացած՝ մօտ էր մեռնելու, որ
3 սիրելի էր անոր ։ Երբոր Յիսուսի
վրայով լսեց, Հրեաներէն քանի մը
ծերեր խրկելով, աղաչեց անոր որ
4 գայ իր ծառան ազատէ ։ Անոնք
ալ եկան Յիսուսի և թախանձա-
նօք կ'աղաչէին անոր ու կ'ը-
սէին թէ Անիկայ արժանի է ո-
5 րուն այս շնորհքը ընես . ինչու
որ մեր ազգը կը սիրէ, ու ժողո-
6 վարանը անիկայ շինեց մեզի ։ Ու
Յիսուս անոնց հետ գնաց . երբոր
տունէն շատ հեռու չէր, հարիւրապե-
տը խրկեց անոր քանի մը բարե-
կամներ, ու ըսաւ անոր, Տէ՛ր մի
յոգնիր, ինչու որ ես արժանի չեմ
որ դուն իմ յարկիս տակը մտնես .
7 Անոր համար ես ինքզինքս ալ ար-
ժանի չսեպեցի քեզի գալու . հա-
պա խօսքով ըսէ, և իմ ծառաս
8 պիտի բժշկուի . ինչու որ ես ալ
իշխանութեան տակ դրուած մարդ
մ'եմ, ու իմ հրամանիս տակը
զինուորներ ունիմ . և ասոր կ'ը-
սեմ՝ Գնա՛, ու կ'երթայ . և մէկա-
սին թէ Եկուր, ու կու գայ, և
ծառայիս թէ Այս բանը ըրէ, ու
կ'ընէ ։ Յիսուս աս բաները լսե- 9
լով՝ զարմացաւ անոր վրայ . և իր
ետևէն գացող ժողովուրդին դար-
ձաւ ու ըսաւ . Ձեզի կ'ըսեմ, որ
Իսրայէլի մէջ անգամ ես այսչափ
հաւատք չգտայ ։ Ու պատգամաւո- 10
րները տունը դարձան, և
հիւանդ ծառան առողջացած գը-
տան ։

Ու եղաւ որ հետևեալ օրը քա- 11
ղաք մը կ'երթար, որուն անունը
Նային էր . և անոր հետ կ'եր-
թային իր աշակերտներէն շատերը
ու մեծ բազմութիւն ։ Ու երբոր 12
քաղաքին դրանը մօտեցաւ, ահա
մեռել մը դուրս կը հանէին, իր
մօրը միակ հատիկ տղան . և անիկայ
որբևայրի էր, ու քաղաքին շատ
ժողովուրդը անոր հետն էր ։ Ու 13
Տէրը անիկայ տեսնելով՝ խղճաց
անոր վրայ, ու ըսաւ անոր . Մի՛
լար ։ Ու մօտենալով՝ դագաղին 14
դպաւ, ու տանողները կանգ ա-
ռին . և ըսաւ . Ո՛վ պատանի
քեզի կ'ըսեմ՝ Ելի՛ր ։ Ու մեռելը 15
ելաւ նստաւ, և սկսաւ խօսիլ . ու
տուաւ զանիկայ իր մօրը ։ Ու ա- 16
մէնքն ալ վախով բռնուեցան, ու
զԱստուած կը փառաւորէին ըսե-
լով թէ Մեծ մարգարէ մը ելեր
է մեր մէջը . և թէ Աստուած իր
ժողովուրդին այցելութիւն ըրաւ ։
Ու աս համբաւը անոր վրայով բոլոր 17
Հրէաստան ելաւ, ու բոլոր շրջա-
կայ տեղուանքը ։

Ու Յովհաննէսին պատմեցին իր 18
աշակերտները աս ամէն բաներուն
վրայով ։ Յովհաննէս ալ իր ա- 19
շակերտներէն երկուքը իրեն կան-
չեց, և ղրկեց Յիսուսի խրկեց՝
ըսելով, Դուն ա՞ն ես որ գալու
էիր, թէ ուրիշ մը սպասենք ։
Ու ան մարդիկը եկան անոր ու ը- 20
սին . Յովհաննէս մկրտիչը մեզ
խրկեց քեզի, ու կ'ըսէ . Դուն
ա՞ն ես որ գալու էիր, թէ ուրիշ
մը սպասենք ։ Ու նոյն ժամուն 21
շատերը բժշկեց իրենց հիւանդու-
թիւններէն ու հարուածներէն և

խօսքը կը լսեն ու զանիկայ կը կա-
տարեն ։
22 Ու եղաւ որ մէկ օր մը նաւը
մտաւ ինքը և իր աշակերտներն
ալ, ու ըսաւ անոնց, Ծովակին
միւս կողմը անցնինք. և ճամբայ
23 ելան ։ Ու երբոր նաւով կ'եր-
թային, ինքը քնացաւ ու հովի
փոթորիկ մը իջաւ ծովակին վրայ,
և նաւը կը լեցուէր, ու իրենք վը-
24 տանգի մէջ էին ։ Մօտեցան ար-
թընցուցին զանիկայ ու ըսին,
Վարդապետ վարդապետ՝ ահա կը
կորսուինք. ան ալ ելաւ սաստեց
հովին ու ջուրերուն խռովու-
թեանը, և հանդարտեցան, ու
25 խաղաղութիւն եղաւ ։ Եւ ըսաւ
անոնց ՝ Ու՞ր է ձեր հաւատքը.
և անոնք վախի մէջ ինկած զարմա-
ցան, ու իրարու կ'ըսէին ՝ Արդեօք
ո՞վ է ասիկայ, որ հովերուն ու
ջուրերուն ալ հրաման կու տայ, և կը
հնազանդին ասոր ։
26 Ու նաւելով իջան Գադարա-
ցւոց երկիրը, որ Գալիլեային
27 դիմացի կողմն է ։ Եւ ինքը ցա-
մաքը ելլելուն պէս՝ ան քաղաքէն
մարդ մը ելաւ դիմացը՝ որուն ներսը
շատ ատենէ 'ի վեր դևեր կային.
ու անիկայ հանդերձ չէր հագներ,
ոչ ալ տան մէջ կը բնակէր,
28 հապա գերեզմաններու մէջ ։ Եւ
Յիսուսը տեսնելով՝ աղաղակեց,
ու ինկաւ անոր առջևը ու բարձր
ձայնով ըսաւ, Դուն իմ հետս
ի՞նչ բան ունիս Յիսուս՝ Որդի
Աստուծոյ բարձրելոյ. կ'աղաչեմ
29 քեզի՝ զիս մի տանջեր. (Ինչու որ
հրամայեց պիղծ ոգիին որ ան մար-
դէն ելլէ. որովհետև շատ ատեն
էր՝ որ զանիկայ յափշտակեր էր. և
անիկայ շղթաներով, ու ոտնա-
կապերով կապուած կը պահուէր,
բայց կապերը կը կոտրէր, ու
դևէն անապատը կը քշուէր.)
30 Հարցուց անոր Յիսուս ու ըսաւ,
Անունդ ի՞նչ է. ան ալ ըսաւ, Լէ-
գէոն. ինչու որ շատ դևեր մտեր
31 էին անոր ներսը ։ Եւ կ'ա-
ղաչէին անոր՝ որ անդունդը երթա-
32 լու հրաման չտայ իրենց ։ Եւ ան
տեղը շատ խոզերու երամակ մը
կար՝ որ լեռը կ'արածուէին. ու ա-
ղաչեցին անոր՝ որ իրենց հրաման
տայ անոնց մէջը մտնելու. և հրա-
մանը տուաւ անոնց ։ Ու դևերը 33
մարդէն ելլելով՝ խոզերուն մէջը
մտան, և երամակը զառիվայրէն տե-
ղէն ծովակը վազեց ու խեղդուե-
ցաւ ։ Եւ խոզարածները ան ե- 34
ղած բանը տեսնելով փախան, ու
պատմեցին քաղաքը ու ագարակ-
ները ։ Եւ մարդիկ ելան եղած բա- 35
նը տեսնելու, ու եկան Յիսուսին,
և գտան ան մարդը՝ ուսկից որ դևե-
րը ելեր էին, հագուած ու խելքը
գլուխը Յիսուսի ոտքերուն քովը
նստած, ու վախցան ։ Եւ անոնք 36
որ տեսեր էին, պատմեցին անոնց
թէ ինչպէս դիւահարը առողջա-
ցաւ ։ Եւ Գադարացւոց շրջակայ 37
տեղուանքը զամբողջ բոլոր բազ-
մութիւնը կ'աղաչէր անոր, որ
իրենցմէ երթայ, ինչու որ մեծ
վախով բռնուած էին. ան ալ նաւը
մտնելով ետ դարձաւ ։ Եւ ան 38
մարդը՝ ուսկից որ դևերը ելեր էին,
կ'աղաչէր անոր որ հետը ըլլայ.
բայց Յիսուս արձակեց զանիկայ՝ ու
ըսաւ, Դարձիր քու տունդ, ու 39
պատմէ՛ ինչ որ Աստուած քեզի
ըրաւ. ան ալ գնաց, ու բոլոր
քաղաքին մէջը քարոզեց ինչ որ
Յիսուս իրեն ըրաւ ։
Ու երբոր Յիսուս ետ դարձաւ, 40
ժողովուրդը զանիկայ ընդունեց,
ինչու որ ամէնքը անոր կը սպասէ-
ին ։ Եւ ահա Յայրոս անունով 41
մարդ մը եկաւ, ու ինքը ժողովա-
րանին իշխանն էր. և Յիսուսի
ոտքը իյնալով կ'աղաչէր անոր՝
որ իր տունը մտնէ. Ինչու որ մէկ 42
հատիկ աղջիկ մը ունէր՝ գրեթէ
տասներկու տարեկան, որ մեռ-
նելու մօտ էր. ու երբոր անիկայ
կ'երթար, բազմութիւնը կը նեղէր
զանիկայ ։
Եւ կնիկ մը՝ որ տասներկու 43
տարիէ 'ի վեր արիւնի տեռատե-
սութեան մէջ էր, ու իր բոլոր
ունեցածը բժիշկներուն ծախք ըրած
էր, և իրեն մէկէ մը բժշկուելու ճարը

44 մը եղած չէր, Յիսուսին մօտենալով՝
անոր հանդերձին քղանցքին դպաւ,
եւ խկոյն իր արիւնին հոսումը դա-
45 դարեցաւ։ Եւ Յիսուս ըսաւ,
Ո՞վ էր ան որ ինծի դպաւ. երբոր
ամէնքը կ'ուրանային, ըսաւ Պետ-
րոս ու անոր հետ եղողները.
Վարդապետ՝ բազմութիւնը քեզ
կը հրէ ու կը նեղէ, ու կ'ըսե՞ս թէ
46 Ո՞վ ինծի դպաւ։ Եւ Յիսուս
ըսաւ, Մէկը ինծի դպաւ, քանզի
գիտցայ որ ինծմէ զօրութիւն մը
47 ելաւ։ Երբոր տեսաւ կինը որ
ծածուկ մնալ չկրցաւ, դողա-
լով եկաւ ու անոր առջեւը ինկաւ,
եւ բոլոր ժողովուրդին առջեւը անոր
պատմեց թէ ինչ բանի համար
անոր դպեր էր, եւ թէ ինչ-
պէս ինքը խկոյն բժշկուեցաւ։
48 Եւ Յիսուս ըսաւ անոր, Քաջա-
լերուէ՛ աղջիկ, քու հաւատքդ
քեզ բժշկեց, գնա խաղաղու-
թեամբ։
49 Երբոր ինքը դեռ կը խօսէր,
ժողովրդապետին տունէն մէկը ե-
կաւ ու ըսաւ անոր, Աղջիկդ մե-
ռաւ, ալ վարդապետը մի՛ յոգ-
50 նեցըներ։ Իսկ Յիսուս երբոր
լսեց, պատասխան տուաւ անոր
ու ըսաւ. Մի՛ վախնար, միայն
51 հաւատա՛, ու պիտի ապրի։ Եւ
երբ տունը մտաւ՝ ուրիշ մէկը
թող չտուաւ որ մտնէ, բայց միայն
Պետրոսը ու Յակոբոսը եւ Յով-
հաննէսը ու աղջկան հայրը ու
52 մայրը։ Ամէնքն ալ կու լային ու
կ'ողբային անոր վրայ. եւ ինքը ը-
սաւ, Մի՛ լաք. աղջիկը մեռած
53 չէ, հապա կը քնանայ։ Եւ ա-
նոնք ծաղր կ'ընէին զանիկայ, գիտ-
54 նալով թէ մեռաւ։ Ու ինքը
ամէնն ալ դուրս հանելով,
բռնեց անոր ձեռքէն ու կան-
55 չեց ըսելով. Աղջի՛կ ելիր։ Եւ
անոր հոգին դարձաւ, ու խկոյն
ոտք ելաւ. եւ Յիսուս հրաման
ըրաւ որ ուտելիք տան անոր։
56 Ու անոր ծնողքը զարմացած մնա-
ցին. եւ ինքը անոնց պատուիրեց
որ եղած բանը մէկու մը չըսեն-
ցին։

ԳԼ. Թ.

Եւ իր տասներկու աշակերտները 1
միասին իրեն կանչելով, ա-
նոնց զօրութիւն ու իշխանութիւն
տուաւ բոլոր դեւերուն վրայ եւ
ախտերը բժշկելու։ Եւ զանոնք 2
ղրկեց որ Աստուծոյ թագաւորու-
թիւնը քարոզեն ու հիւանդները
բժշկեն։ Եւ ըսաւ անոնց. Ճամ- 3
բու համար բան չառնէք, ո՛չ գա-
ւազան եւ ոչ պարկ, ո՛չ հաց
եւ ոչ ստակ, ո՛չ ալ երկերկու հան-
դերձ ունենաք։ Եւ ո՛ր տունը որ 4
մտնէք՝ հո՛ն մնացէք, ու անկէ
ելէք։ Ու անոնք որ ձեզ չեն ըն- 5
դունիր, երբոր ան քաղաքէն կ'ելլէք, ձեր ոտքերուն փոշին անգամ
թօթուեցէք՝ իրենց դէմ վկայու-
թիւն ըլլալու համար։ Եւ անոնք 6
ելան ու գիւղէ գիւղ կը պտըտէին,
եւ ամէն տեղ աւետարանը կը քա-
րոզէին ու բժշկութիւն կ'ընէ-
ին։

Եւ Հերովդէս չորրորդապետը 7
անոր բոլոր գործերը լսելով՝ տա-
րակուսանաց մէջ էր. որովհետեւ
ոմանք ըսած էին թէ Յովհաննէ- 8
սը յարութիւն առաւ մեռելներէն,
եւ ոմանք՝ թէ Եղիան յայտնուե-
ցաւ, եւ ուրիշներն ալ՝ թէ Առջի
մարգարէներէն մէկը յարութիւն
առաւ։ Եւ Հերովդէս ըսաւ, 9
Յովհաննէսը ես գլխատեցի, հա-
պա ասիկայ ո՞վ պիտի ըլլայ, որուն
վրայով ասանկ բաներ կը լսեմ. ու
կ'ուզէր որ տեսնէ զանիկայ։

Եւ առաքեալները դարձան ու 10
պատմեցին անոր ինչ որ ըրին. եւ
առաւ զանոնք՝ առանձին անապատ
տեղ մը քաշուեցաւ քաղաքի մը
քով, որուն անունը Բեթսայիդա
էր։ Եւ ժողովուրդները երբոր 11
իմացան, անոր ետեւէն գացին, ու
զանոնք ընդունելով՝ կը խօսէր ա-
նոնց Աստուծոյ թագաւորութեանը
վրայով. եւ անոնք որ բժշկութեան
կարօտ էին, կը բժշկէր։

Ու երբոր օրը սկսաւ իրիկուան 12
մօտենալ, տասներկուքը եկան ու
ըսին անոր. Արձակէ՛ ժողովուրդը

ները, որ շրջակայ գիւղերը ու ա-
գարակները երթան՝ իջեւանին ու
կերակուր գտնեն, ինչու որ հոս
13 անապատ տեղ մըն ենք։ Ըսաւ
անոնց. Դուք տուէք ասոնց ու-
տելիք. անոնք ալ ըսին, Մենք
հինգ նկանակէն ու երկու ձուկէն
աւելի բան չունինք, թէ որ չեր-
թանք աս բոլոր ժողովուրդին հա-
14 մար կերակուր չգնենք։ (Վասնզի
հինգ հազարի չափ էրիկ մարդիկ
կային։) Ու ըսաւ իր աշակերտա-
ներուն. Զանոնք դաս դաս՝ յիսուն
15 յիսուն նստեցուցէք։ Ու անանկ
ըրին ու ամէնն ալ նստեցուցին։
16 Ու ան հինգ նկանակը ու երկու
ձուկը առնելով ու դէպ ’ի երկինքը
նայելով, օրհնեց զանոնք ու կտրեց,
և կու տար աշակերտներուն, որ
17 ժողովուրդին առջևը դնեն։ Ու
կերան ու կշտացան ամէնքն ալ,
ու աւելցած կտորուանքները տա-
սաներկու կողով վերցուցին։
18 Ու եղաւ որ երբ ինքը առանձին
աղօթք կ'ընէր, աշակերտներն ալ
իր հետն էին, և հարցուց անոնց
ըսելով, Ժողովուրդները զինծի
19 համար ով կ'ըսեն թէ եմ։ Ա-
նոնք ալ պատասխան տալով ըսին,
Ոմանք՝ Յովհաննէս մկրտիչը, և ու-
րիշները՝ Եղիան, ուրիշներն ալ՝
թէ Առջի մարգարէներէն մէկը յա-
20 րութիւն առեր է։ Ու ինքը ըսաւ
անոնց, Հապա դուք զինծի համար
ով կ'ըսէք թէ եմ. պատասխան
տուաւ Պետրոս ու ըսաւ, Ա-
21 տուծոյ Քրիստոսը։ Ու ինքը
սաստիկ պատուիրեց անոնց որ աս
22 բանը մէկու մը չըսեն. Ու ը-
սաւ, թէ Պէտք է որ Որդին մար-
դոյ շատ չարչարանքներ կրէ, և
ծերերէն ու քահանայապետներէն և
դպիրներէն մերժուի, ու սպան-
նուի, ու երրորդ օրը յարութիւն
23 առնէ։ Ու ամէնուն կ'ըսէր. Թէ
որ մէկը կ'ուզէ իմ ետևէս գալ,
թող իր անձը ուրանայ, և ամէն
օր իր խաչը վերցընէ, ու իմ ետե-
24 ւէս գայ։ Վասն զի ով որ կ'ուզէ
իր անձը ազատել, պիտի կոր-
սնցընէ զանիկայ. և ով որ ինծի
համար իր անձը կորսնցընէ, պի-
տի ազատէ զանիկայ։ Վասնզի 25
ինչ կը շահի մարդ մը՝ թէ որ
բոլոր աշխարհը վաստըկի, և իր
անձը կորսնցընէ կամ վնասէ։
Վասն զի ով որ զիս ու իմ խօս- 26
քերս [illegible] ամօթ սեպէ, Որ-
դին մարդոյ ալ զանիկայ [illegible]
ամօթ պիտի սեպէ՝ երբոր գայ իր
ու Հօրը և սուրբ հրեշտակներուն
փառքովը։ Բայց ճշմարիտ կ'ըսեմ 27
ձեզի, որ հոս կայնողներէն մէկ քա-
նիները կան՝ որոնք մահուան համը
պիտի չառնեն, մինչև որ տեսնեն
Աստուծոյ թագաւորութիւնը։
Ու եղաւ որ աս խօսքերէն դրեթէ 28
ութ օր ետքը՝ Պետրոսը ու Յով-
հաննէսը և Յակոբոսը առնելով՝
լեռը ելաւ աղօթք ընելու։ Ու 29
երբոր ինքը աղօթք կ'ընէր, իր
երեսին տեսքը ուրիշ կերպ մը ե-
ղաւ, ու իր հագուստը ճերմակ ու
փայլուն եղաւ։ Ու ահա երկու 30
մարդիկ իր հետը կը խօսէին, ո-
րոնք Մովսէս ու Եղիա էին, փառ- 31
քով երևցած, և անոր աս կեանքէս
ելլելուն վրայով կը խօսէին, որ
Երուսաղէմի մէջ պիտի կատա-
րուէր։ Բայց Պետրոս և անոր 32
հետ եղողները քունով ծանրացած
էին, ու երբոր արթնցան, տե-
սան անոր փառքը և ան երկու
մարդիկը՝ որ անոր քովը կեցեր էին։
Ու եղաւ որ երբ անոնք կը զատուէին 33
անոր քովէն, Պետրոս ըսաւ Յի-
սուսի, Վարդապետ՝ աղէկ է որ
հոս կենանք, ու երեք խրճիթ շի-
նենք, մէկը քեզի, և մէկը Մով-
սէսին, ու մէկը Եղիային. վասն
զի չէր գիտեր ինչ կը խօսէր։
Ու քանի որ անիկայ աս բաները 34
կը խօսէր, ամպ մը եկաւ ու անոնց
վրայ հովանի եղաւ, և ամպին տա-
կը մտած ատեննին վախցան։ Ու 35
ձայն մը եղաւ ամպէն՝ ըսելով,
Ասիկայ է իմ սիրելի Որդիս, ա-
նոր մտիկ ըրէք։ Ու ան ձայնը 36
որ եղաւ, Յիսուս մինակ գտնուե-
ցաւ։ Ու իրենք լուռ կեցան, և
իրենց տեսածներէն ան օրերը մէ-
կուն բան մը չպատմեցին։

37 Ու եղաւ որ հետեւեալ օրը՝ երբ-
որ անոնք լեռնէն վար իջան, շատ
38 ժողովուրդ անոր դէմը ելաւ։ Եւ
ահա ժողովուրդին մէջէն մէկ մարդ
մը աղաղակեց ու ըսաւ, Վարդա-
պետ՝ կ'աղաչեմ քեզի՝ նայէ իմ
որդիիս, քանզի իմ մէկ հատիկս
39 է. Եւ ահա ոգի մը կը բռնէ զա-
նիկայ. ան ալ յանկարծ կը կան-
չըռտէ, եւ զանիկայ ցնցելով կը
փրփրցընէ, ու հազիւ կը զատուի
անկէ՝ ջարդուբուրդ ընելով զանի-
40 կայ. Եւ քու աշակերտներուդ ա-
ղաչեցի որ հանեն զանիկայ, ու
41 չկրցան։ Պատասխան տուաւ Յի-
սուս ու ըսաւ, Ո՛վ անհաւատ եւ
խոտորեալ ազգ՝ մինչեւ ե՞րբ ձեզի
հետ պիտի ըլլամ ու ձեզի համբե-
42 րեմ. հոս բեր քու որդիդ։ Ու
երբոր դեռ կը մօտենար, դեւը զա-
նիկայ գետինը զարկաւ ու սաստիկ
43 ցնցեց։ Իսկ Յիսուս սաստեց
պիղծ ոգիին, եւ բժշկեց տղան ու
44 զանիկայ իր հօրը տուաւ։ Եւ
ամէնքը կը զարմանային Աստուծոյ
մեծամեծ գործքերուն վրայ։

Ու քանի որ ամէնքը կը զարմա-
նային Յիսուսի ըրած բոլոր գործ-
քերուն վրայ, անիկայ ըսաւ իր ա-
շակերտներուն, Դուք այս խօսքերը
ականջներնիդ դրէք, վասն զի
Որդին մարդոյ պիտի մատնուի մար-
45 դոց ձեռքը։ Բայց անոնք չէին
իմանար այն խօսքը, եւ անոնցմէ
ծածկուած էր որ չհասկընան, ու
կը վախնային այն խօսքին համար ի-
րեն հարցընելու։

46 Խորհուրդ մըն ալ մտաւ անոնց
մէջ թէ արդեօք իրենց մէջը ո՛վ է
47 մեծ։ Իսկ Յիսուս անոնց սրտին
խորհուրդը իմանալով, տղայ մը
առաւ ու զանիկայ իր քովը կայնե-
48 ցուց, Եւ ըսաւ անոնց, Ո՛վ որ
այս տղան իմ անունովս կ'ընդունի՝
զիս կ'ընդունի. եւ ան որ զիս կ'ըն-
դունի՝ անիկայ զիս խրկողը կ'ըն-
դունի. վասն զի ան որ ձեր ամէնուն
մէջը պզտիկ է, անիկայ մեծ պիտի
ըլլայ։

49 Պատասխան տուաւ Յովհաննէս
ու ըսաւ, Վարդապետ՝ մէկը տե-
սանք որ քու անուանովդ դեւեր կը
հանէր, եւ զանիկայ արգիլեցինք,
ինչու որ մեր հետը չպտըտիր։ Եւ 50
Յիսուս ըսաւ անոր, Մ՛ի արգի-
լէք. քանզի ան որ մեզի հակառակ
չէ, մեր կողմէն է։

Ու եղաւ որ երբ իր աշխարհէս 51
վերնալու օրերը կը կատարուէր,
ինքն ալ հաստատ որոշեց Երու-
սաղէմ երթալ։ Եւ իր երեսին 52
առջեւէն պատգամաւորներ խրկեց,
որ երբոր գացին՝ Սամարացւոց մէկ
գիւղը մտան որ իրեն համար պատ-
րաստութիւն մը ընեն։ Եւ չըն- 53
դունեցին զանիկայ, ինչու որ անոր
երեսը դէպ 'ի Երուսաղէմ երթա-
լու փոխուած էր։ Երբոր իր ա- 54
շակերտները Յակոբոս ու Յովհան-
նէս տեսան, ըսին, Տէ՛ր՝ կ'ուզե՞ս
որ ըսենք, ու երկինքէն կրակ իջնէ
եւ սպառեցընէ անոնք, ինչպէս որ
Եղիան ալ ըրաւ։ Եւ դարձաւ 55
յանդիմանեց զանոնք՝ ըսելով, Չէք
գիտեր թէ ինչ հոգիի տէր էք
դուք. Վասն զի Որդին մարդոյ 56
չեկաւ մարդոց հոգիները կորսըն-
ցընելու, հապա փրկելու. եւ ուրիշ
գեղ մը գացին։

Ու երբոր անոնք ճամբան կ'եր- 57
թային, մէկը ըսաւ անոր, Տէ՛ր՝
քու ետեւէդ գամ՝ ուր որ երթաս։
Եւ Յիսուս ըսաւ անոր, Աղուէս- 58
ները որջեր ունին, ու երկնից թռչու-
նները բոյներ, բայց Որդին մար-
դոյ տեղ մը չունի, որ հոն իր գլուխը
դնէ։

Մէկ ուրիշի մըն ալ ըսաւ, Ե- 59
կուր իմ ետեւէս. ան ալ ըսաւ,
Տէ՛ր՝ ինծի հրաման տուր որ առաջ
երթամ իմ հայրս թաղեմ։ Յի- 60
սուս ըսաւ անոր, Թո՛ղ տուր մե-
ռելներուն որ թաղեն իրենց մեռել-
ները. բայց դուն գնա՛ Աստուծոյ
թագաւորութիւնը քարոզէ։

Մէկ ուրիշ մըն ալ ըսաւ, Տէ՛ր՝ 61
ես քու ետեւէդ պիտի գամ. բայց
ինծի հրաման տուր որ առաջ իմ
տանս մէջ եղողներուն հրաժարա-
կան ողջոյն տամ։ Յիսուս ըսաւ 62
անոր, Ո՛չ մէկը որ ձեռքը մաճին
վրայ կը դնէ ու ետին կը նայի,

Աստուծոյ թագաւորութեանը յար-
մար է ։

## ԳԼ. Ժ

1 Ասոր բաներէն ետեւ Տէրը ուրիշ եօ-
թանասուն ալ որոշեց , և զա-
նոնք իր առջեւէն երկու երկու խրկեց
բոլոր քաղաքները ու տեղերը՝ ուր
2 որ ինքը պիտի երթար ։ Եւ կ'ը-
սէր անոնց , Հունձքը շատ է , ու
մշակները քիչ . ուստի հունձքին
Տէրոջը աղաչեցէք որ մշակներ
3 հանէ իր հունձքին ։ Գացէք . ա-
հա ես ձեզ կը խրկեմ իբրեւ գառ-
4 ներ գայլերու մէջ ։ Հետերնիդ
քսակ մի՛ առնէք , ոչ ալ պարկ ,
և ոչ կօշիկներ , ու ճամբան մէկու
5 մը բարեւ մի՛ տաք ։ Եւ ո՛ր տուն
որ մտնէք , առաջ ըսէք , Բարեւ
6 այս տանս ։ Եւ թէ որ հոն բարեւի
արժանաւոր մարդ կայ , ձեր բարեւը
պիտի հանգչի անոր վրայ , հապա
7 թէ չէ՝ ձեզի պիտի դառնայ ։ Եւ
նոյն տանը մէջ մնացէք , ու անոնց-
մէ կերէք ու խմեցէք , ինչու որ
մշակը իր վարձքին արժանի է .
8 տունէ տուն մի՛ փոխուիք ։ Եւ ո՛ր
քաղաք որ մտնէք ու ձեզ ընդու-
նին , ինչ որ առջեւնիդ դրուի ,
9 կերէք . Եւ բժշկեցէք անոր մէջի
հիւանդները , և ըսէք անոնց , Աս-
տուծոյ թագաւորութիւնը ձեզի մօ-
10 տեցեր է ։ Բայց ո՛ր քաղաք որ
մտնէք ու ձեզ չընդունին , անոր
11 հրապարակները ելլելով՝ ըսէք , Ան
փոշին ալ որ ձեր քաղաքէն մեր
ոտքերնուս փակած է , ձեզի կը թօթ-
վենք . միայն թէ աս գիտցէք որ
Աստուծոյ թագաւորութիւնը ձեզի
12 մօտեցեր է ։ Ձեզի կ'ըսեմ որ
ան օրը Սոդոմի դատաստանը աւե-
լի դիւրին պիտի ըլլայ , քան թէ
13 ան քաղաքին ։ Վա՜յ քեզ՝ Քորա-
զին , վա՜յ քեզ՝ Բեթսայիդա , ին-
չու որ եթէ Տիւրոսի ու Սիդոնի
մէջ եղած ըլլային ան հրաշքները՝
որ ձեր մէջը եղան , շատոնցմէ քուր-
ձով՝ ու մոխիրի մէջ նստելով ա-
14 պաշխարած պիտի ըլլային ։ Բայց
դատաստանին օրը Տիւրոսին ու
Սիդոնին աւելի դիւրին պիտի ըլ-
լայ , քան թէ ձեզի ։ Եւ դուն 15
Կափառնայում՝ որ մինչեւ երկինքը
բարձրացած ես , մինչեւ դժոխքը
պիտի իջնես ։ Ան որ ձեզի մտիկ 16
կ'ընէ , ինծի մտիկ կ'ընէ . և ան
որ ձեզ կը մերժէ , զիս կը մերժէ .
և ան որ զիս կը մերժէ , զիս խրը-
կողը կը մերժէ ։

Եւ եօթանասուն աշակերտները 17
դարձան ուրախութեամբ ու ըսին ,
Տէ՛ր՝ քու անունովդ դեւերն ալ մե-
զի կը հնազանդին ։ Եւ ըսաւ ա- 18
նոնց , Սատանան փայլակի պէս
երկինքէն վար ինկած կը տեսնէի ։
Ահա ձեզի իշխանութիւն կու տամ 19
օձերու ու կարիճներու՝ և թշնամիին
բոլոր զօրութեանը վրայ կոխկըռտե-
լու . ու բնաւ մէկ բան մը ձեզի պի-
տի չվնասէ ։ Բայց դուք անոր վրայ 20
մի՛ ուրախանաք որ չար ոգիները
ձեզի կը հնազանդին , հապա ուրա-
խացէք որ ձեր անունները երկինքը
գրուած են ։

Ան նոյն ժամուն Յիսուս հոգիով 21
ուրախացաւ ու ըսաւ , Շնորհա-
կալ եմ քեզմէ ո՛վ Հայր՝ Տէր
երկնի և երկրի , որ աս բաները
ծածուկ պահեցիր իմաստուններէն
և գիտուններէն , ու տղոց յայտնե-
ցիր . այո՛ ո՛վ Հայր , ինչու որ
քու առջեւդ աստանկ հաճելի եղաւ ։
Ամէն բան ինծի տրուեցաւ իմ 22
Հօրմէս , ու մէկը չգիտեր թէ ո՛վ
է Որդին , բայց միայն Հայրը . և
թէ ո՛վ է Հայրը , բայց միայն Որ-
դին , և ան՝ որուն որ Որդին կ'ու-
զէ յայտնել ։

Եւ աշակերտներուն դառնալով՝ 23
առանձին ըսաւ , Երանի՜ ան աչքե-
րուն՝ որ ձեր տեսածները կը տես-
նեն . Քանզի կ'ըսեմ ձեզի , որ 24
շատ մարգարէներ և թագաւորներ
ուզեցին ձեր տեսածները տեսնել ,
ու չտեսան , և ձեր լսածները լսել ,
ու չլսեցին ։

Եւ ահա մէկ օրինական մը ե- 25
լաւ , ու զանիկայ փորձելով ըսաւ ,
Վարդապետ՝ ի՞նչ ընեմ որ յաւի-
տենական կեանքը ժառանգեմ ։
Անիկայ ալ ըսաւ անոր , Օրէնքին 26
մէջ ի՞նչ գրուած է . ինչպէ՞ս կը

27 կարդաս ։ Պատասխան տուաւ ա-
նիկայ ու ըսաւ , Դուն Տէր Աս-
տուածդ սիրես քու բոլոր սրտէդ
ու քու բոլոր անձէդ և քու բոլոր
զօրութենէդ ու քու բոլոր մտքէդ ,
և քու ընկերդ ալ քու անձիդ պէս ։
28 Ու իրեն ըսաւ անոր , Շիտակ
պատասխան տուիր . ատիկայ ըրէ ,
29 ու պիտի ապրիս ։ Իսկ անիկայ
ուզելով ինքզինքը արդարացընել ,
ըսաւ Յիսուսին , Բայց իմ ընկերս
30 ո՞վ է ։ Պատասխան տուաւ Յի-
սուս ու ըսաւ , Մէկ մարդ մը Ե-
րուսաղէմէն Երիքով կ'իջնէր , ու
աւազակներու ձեռք ինկաւ , որոնք
մերկացուցին զանիկայ ու վիրաւո-
րելով կիսամեռ թողուցին ու գա-
31 ցին ։ Ու պատահեցաւ որ քահա-
նայ մը այն ճամբայէն կ'իջնէր , ու
զանիկայ տեսնելով՝ այն դիի կողմէն
32 անցաւ ։ Նոյնպէս ալ Ղևտացի
մը այն տեղը հասնելով՝ գնաց ու
տեսաւ , և անդիի կողմէն անցաւ ։
33 Բայց Սամարացի մը որ ճամբոր-
դութիւն կ'ընէր , եկաւ անոր քովը ,
34 ու զանիկայ տեսնելով՝ խղճաց . Ու
մօտեցաւ անոր վէրքերը փաթթեց՝
վրան ձէթ և գինի թափելով , ու
իր գրաստին վրայ դնելով՝ տարաւ
անիկայ մէկ պանդոկ մը , և անոր
35 հոգ տարաւ ։ Ու հետևեալ օրը
երբոր կ'ելլէր անկէ , երկու դահե-
կան հանեց պանդոկապետին տուաւ
և անոր ըսաւ , Հոգ տար ասոր ,
ու ինչ որ աւելի ծախք ընես , ես
դառնալուս ես քեզի կը վճարեմ ։
36 Հիմա այն իրեքէն ո՞րը քեզի կ'երևա-
նայ ընկեր ըլլալ աւազակներուն
37 ձեռքը իյնողին ։ Ու անիկայ ը-
սաւ , Ա՛ն որ անոր ողորմութիւն
ըրաւ ։ Ու ատենը Յիսուս ըսաւ
անոր , Գնա՛ դուն ալ նմանապէս ը-
րէ ։

38 Ու եղաւ որ երբ անոնք կ'երթա-
յին , ինքը գեղ մը մտաւ . և մէկ
կնիկ մը Մարթա անունով զանի-
39 կայ իր տունը ընդունեց ։ Ու ա-
նիկայ քոյր մը ունէր , որուն անու-
նը Մարիամ էր , որ եկաւ Յիսուսի
ոտքերուն քովը նստաւ , ու անոր
40 խօսքերը մտիկ կ'ընէր ։ Բայց
Մարթա շատ սպասաւորութիւնով
զբաղած էր , եկաւ անոր քովը ու
ըսաւ , Տէ՛ր՝ քու հոգդ չէ՞ , որ իմ
քոյրս զիս մինակ թողուց սպասա-
ւորութեան մէջ . ուստի ասոր
զրուցէ՛ որ ինծի օգնէ ։ Պատասա- 41
խան տուաւ Յիսուս ու ըսաւ ա-
նոր , Մարթա՛ , Մարթա , դուն
շատ բաներու համար հոգ ընելով
կը տագնապիս . Բայց մէկ բան մը 42
պէտք է , և Մարիամ այն աղէկ
բաժինը ընտրեց , որ իրմէ պիտի
չառնուի ։

## ԳԼ. ԺԱ

Ու եղաւ որ մէկ տեղ մը աղօթք 1
կ'ընէր . ու երբոր դադարեցաւ ,
իր աշակերտներէն մէկը ըսաւ ի-
րեն , Տէ՛ր՝ մեզի աղօթք ընել սոր-
վեցուր , ինչպէս որ Յովհաննէս ալ
իր աշակերտներուն սորվեցուց ։ Ու 2
ըսաւ անոնց , Երբոր աղօթք կ'ը-
նէք , ըսէ՛ք , Ո՛վ Հայր մեր՝ որ
երկինքն ես , քու անունդ սուրբ
ըլլայ . քու թագաւորութիւնդ
գայ , քու կամքդ ըլլայ , ինչպէս որ
երկինքը՝ անանկ ալ երկրիս վրայ .
Մե՛ր ամէն աւուր հացը օրէ օր 3
մեզի տուր . Ու մեզի ներէ՛ մեր 4
մեղքերը , ինչու որ մենք ալ կը
ներենք այն ամենուն՝ որ մեզի պար-
տական են . ու մեզ փորձութեան
մի՛ տանիր , հապա չարէն մեզ ա-
զատէ՛ ։

Ու ըսաւ անոնց , Ձեզմէ ո՞վ 5
է ան , որ բարեկամ մը ունե-
նայ , ու կէս գիշերուան մէջ երթայ
անոր և ըսէ անոր , Բարեկամ՝
ինծի իրեք նկանակ փոխ տուր .
Ինչու որ իմ մէկ բարեկամս ճամ- 6
բայէ ինծի եկաւ , ու բան մը չու-
նիմ անոր առջևը դնելու ։ Անի- 7
կայ ալ ներսէն պատասխան տայ
և ըսէ , Զիս մի՛ յոգնեցըներ ,
արդէն դուռը գոցուած է , ու
տղաքս իմ քովս անկողինի մէջ են ,
չեմ կրնար ելլել ու քեզի հաց
տալ ։ Ձեզի կ'ըսեմ , Թէև բա- 8
րեկամութեան համար չելլէ տայ
անոր , սակայն անոր թախանձան-
քին համար պիտի ելլէ ու պէտք

9 եղածը տայ անոր ։ Ես ալ կ՚ըսեմ
ձեզի , Խնդրեցէ՛ք և պիտի տրուի
ձեզի ։ փնտռեցէ՛ք ու պիտի գըտ-
նէք ․ դուռը զարկէ՛ք և պիտի
10 բացուի ձեզի ․ Վասն զի ամէն ով
որ կը խնդրէ՝ կ՚առնէ , և ով որ
կը փնտռէ՝ կը գտնէ , և ով որ
դուռը կը զարնէ՝ պիտի բացուի
11 անոր ։ Ձեզմէ ո՞վ է այն հայրը՝
որմէն իր որդին հաց որ ուզէ , մի-
թէ քա՞ր պիտի տայ անոր ․ կամ
թէ որ ձուկ ուզէ , միթէ ձուկին
12 տեղը օ՞ձ պիտի տայ անոր ․ Ու
կամ թէ որ հաւկիթ ուզէ , միթէ
13 կարի՞ճ պիտի տայ անոր ։ Ուստի
եթէ դուք որ չար էք , ձեր զա-
ւակներուն աղէկ ընծաներ տալ
գիտէք , ո՜րչափ աւելի ձեր Հայրը
երկինքէն Սուրբ Հոգին պիտի տայ
անոնց , որ իրմէ կը խնդրեն ։
14 Ու դև մը կը հանէր , և անիկայ
համր էր ․ ու եղաւ որ երբ դևը
ելաւ , համրը խօսեցաւ ։ և ժողո-
15 վուրդները զարմացան ։ Բայց ա-
նոնցմէ մէկ քանիները ըսին , Ա-
տիկայ դևերուն Բէեղզեբուղ իշ-
խանին միջոցովը դևերը կը հանէ ։
16 Ուրիշներն ալ փորձելով երկինքէն
17 Նշան մը կ՚ուզէին անկէ ։ Բայց
ինքը գիտնալով անոնց խորհուրդ-
ները՝ ըսաւ անոնց , Ամէն թագա-
ւորութիւն իրեն դէմ բաժնուած՝
կ՚աւերի ։ և տուն մը իրեն դէմ
18 բաժնուած՝ կը կործանի ․ Հապա
թէ որ Սատանան ալ իրեն դէմ բաժ-
նուած է , անոր թագաւորութիւնը
ինտո՞ր պիտի կենայ ․ որովհետև
կ՚ըսէք թէ Բէեղզեբուղով դևերը
19 կը հանեմ ։ Եւ թէ որ ես Բէ-
եղզեբուղով դևերը կը հանեմ ,
ձեր որդի՞քը ինչով կը հանեն ․
ուրեմն անոնք պիտի ըլլան ձեր դա-
20 տաւորները ։ Բայց թէ որ ես Աս-
տուծոյ մատովը կը հանեմ դևերը ,
ուրեմն Աստուծոյ թագաւորութիւ-
21 նը ձեր վրայ հասած է ։ Երբոր
զօրաւոր մարդ մը զէնքերը վրան
առած՝ իր տունը բակը կը պահ-
պանէ , անոր բաները խաղաղու-
22 թեան մէջ կը մնան ․ Բայց երբոր
անկէ աւելի զօրաւորը վրան գալով
յաղթէ անիկայ , անոր զէնքերը
կ՚առնէ՝ որոնց ինքը յուսացեր էր ,
և անկէ առած կողոպուտը կը բաժ-
նէ ։ Ան որ իմ հետս չէ , ինծի 23
հակառակ է ․ և ան որ ինծի հետ
չժողվեր , ցիրուցան կ՚ընէ ։
Երբոր պիղծ ոգին մարդէ մը 24
կ՚ելլէ , անջուր տեղուանք կը պըտ-
տըտի , հանգստութիւն կը փնտռէ ․
ու երբոր չգտներ , կ՚ըսէ , Պառ-
նամ նորէն իմ տունս՝ ուսկից որ
ելայ ․ Ու կու գայ՝ զանիկայ մաք- 25
րուած ու յարդարուած կը գըտ-
նէ ։ Ան ատենը կ՚երթայ՝ և իր 26
հետը կ՚առնէ եօթը ուրիշ ոգիներ
իրմէ աւելի չար , ու մտնելով հոն
կը բնակին ․ և այն մարդուն վերջը
առջինէն դէշ կ՚ըլլայ ։
Ու եղաւ որ երբ անիկայ աս 27
բաները կը խօսէր , ժողովուրդին
մէջէն մէկ կին մը ձայնը վերցուց
ու ըսաւ անոր , Երանի՜ այն որո-
վայնին՝ որ քեզ կրեց , և այն ծի-
ծերուն՝ որ քեզի կաթ տուին ։
Ու ինքը ըսաւ , Մանաւանդ թէ 28
երանի՜ անոնց որ Աստուծոյ խօսքը
կը լսեն ու կը պահեն ։
Ու երբոր ժողովուրդները անոր 29
վրայ կը դիզուէին , սկսաւ ըսել ,
Աս ազգը չար է ․ նշան կ՚ուզէ , և
ուրիշ նշան պիտի չտրուի անոր ,
բայց միայն Յովնան մարգարէին
նշանը ։ Վասն զի ինչպէս որ Յով- 30
նան Նինուէացիներուն նշան եղաւ ,
անանկ ալ Որդին մարդոյ աս ազ-
գիս պիտի ըլլայ ։ Հարաւի թա- 31
գուհին դատաստանին օրը աս ազ-
գին մարդոցը դէմ պիտի ելլէ , ու
պիտի դատապարտէ զանոնք , ինչու
որ երկրի ծայրերէն եկաւ Սողոմո-
նին իմաստութիւնը լսելու ․ և ա-
հա Սողոմոնէն մեծ մէկը կայ հոս ։
Նինուէի մարդիկը դատաստանին 32
օրը աս ազգին դէմ պիտի ելլեն ,
ու պիտի դատապարտեն զանիկայ ,
ինչու որ Յովնանին քարոզու-
թեանը զղջի եկան ․ և ահա
Յովնանէն մեծ մէկը կայ հոս ։
Մէկը ճրագը չվառեր՝ ծածուկ 33
տեղ մը դներ , ոչ ալ գրուանի
տակ ։ հապա աշտանակի վրայ , որ

ներս մտնողները լոյսը տեսնեն ։
34 Մարմինին ճրագը աչքն է. ուստի
երբոր աչքդ պարզ է, բոլոր
մարմինդ ալ լուսաւոր կ՚ըլլայ.
բայց երբոր աչքդ չար է, մարմինդ
35 ալ մութ կ՚ըլլայ ։ Ուրեմն զգոյշ
կեցիր, որ քու մէջդ եղած լոյսը
36 խաւար չըլլայ ։ Արդ թէ որ քու
բոլոր մարմինդ լուսաւոր է, և
մութ մաս մը չունի, բոլորն ալ
լուսաւոր կ՚ըլլայ, ինչպէս երբոր
ճրագ մը իր փայլունութեամբը
քեզ կը լուսաւորէ ։
37 Ու երբոր աս բաները կը խօսէր,
փարիսեցի մը կ՚աղաչէր անոր՝ որ
իր քովը ճաշ ուտէ. անիկայ ալ
38 մտաւ՝ սեղան նստաւ ։ Իսկ փա-
րիսեցին երբոր տեսաւ՝ զարմա-
ցաւ, որ նախ չլուացուեցաւ ճաշէն
39 առաջ ։ Ու Տէրը ըսաւ անոր,
Հիմա դուք փարիսեցիներ՝ գաւա-
թին ու պնակին դուրսի դին կը
մաքրէք, ու ձեր ներսի դին յա-
փշտակութեամբ և չարութեամբ
40 լեցուն է ։ Անմիտներ՝ ան որ
դուրսինը ըրաւ, ներսինն ալ ինքը
41 չըրա՞ւ ։ Սակայն անոնց մէջը ե-
ղածներէն ողորմութիւն տուէք,
և ահա ամէն բան մաքուր կ՚ըլլայ
42 ձեզի ։ Բայց վա՜յ ձեզի փարիսե-
ցիներուդ՝ որ անանուխին ու փեգե-
նային և բոլոր խոտեղէններուն տա-
սանորդը կը վճարէք ու զանց կ՚ը-
նէք իրաւունքը և Աստուծոյ սէրը.
ասոնք պէտք էր ընել, և անոնք
43 չձգել ։ Վա՜յ ձեզի փարիսեցինե-
րուդ՝ որ ժողովարաններուն մէջ
առաջին աթոռները կը սիրէք, ու
շուկաներուն մէջ բարեւները ։
44 Վա՜յ ձեզի կեղծաւոր դպիրներ ու
փարիսեցիներ՝ որ անյայտ գերեզ-
մաններու նման էք, որոնց վրա-
յէն մարդիկ կը քալեն ու չեն գի-
տեր ։
45 Ու օրէնսականներէն մէկը պա-
տասխան տալով ըսաւ անոր,
Վարդապետ՝ աս խօսքերը զրուցե-
լով՝ մեզ ալ վար կը զարնես ։
46 Ու անիկայ ըսաւ, Ձեզ ալ վա՜յ
օրէնսականներուդ, որ տանելու դը-
ժուար բեռներ կը բեռցընէք մար-
դոց, ու դուք մէկ մատովնիդ ան
բեռներուն չէք դպչիր ։ Վա՜յ 47
ձեզի՝ որ մարգարէներուն գերեզ-
մանները կը շինէք, ու ձեր հայ-
րերը սպաննեցին զանոնք ։ Ուրեմն 48
կը վկայէք և հաւանութիւն կու
տաք ձեր հարցը ըրածներուն. ին-
չու որ իրենք սպաննեցին զանոնք,
ու դուք անոնց գերեզմանները կը
շինէք ։ Անոր համար ալ Աստու- 49
ծոյ իմաստութիւնը ըսաւ, Պիտի
խրկեմ անոնց մարգարէներ ու ա-
ռաքեալներ, և անոնցմէ ոմը պի-
տի սպաննեն ու ոմը հալածեն.
Որպէս զի աշխարհի սկիզբէն հետէ 50
թափուած բոլոր մարգարէներուն
արիւնը աս ազգէն պահանջուի,
Աբէլին արիւնէն մինչև Զաքա- 51
րիային արիւնը, որ սեղանին ու
տաճարին մէջտեղը կորսուեցաւ.
Ճշմարիտ կ՚ըսեմ ձեզի, Աս ազգէն
պիտի պահանջուի ։ Վա՜յ ձեզի 52
օրէնսականներուդ՝ որ գիտութեան
բանալին վերցուցիք. դուք չմտաք,
և մտնողներն ալ արգիլեցիք ։
Ու երբոր աս բաները անոնց կը 53
զրուցէր, դպիրները ու փարիսեցի-
ները սկսան խիստ դժուարիլ, և
շատ բաներու վրայով անոր բերնէն
խօսք փնտռել. Ու անոր դարան 54
պատրաստելով՝ կը փնտռէին թէ
ինչպէս անոր բերնէն բան մը որ-
սան, որ անոր վրայով ամբաստա-
նութիւն ընեն ։

## ԳԼ. ԺԲ

Ան միջոցին երբոր բիւրաւոր ժո- 1
ղովուրդներ վրան ժողվուեցան,
մինչև որ մէկզմէկ կը կոխէին,
սկսաւ ըսել իր աշակերտներուն,
Ամէն առաջ ինքզինքնիդ զգոյշ
պահեցէք փարիսեցւոց խմորէն, որ
է կեղծաւորութիւն ։ Ինչու որ 2
բան մը չկայ ծածուկ՝ որ պիտի չը-
յայտնուի, և գաղտուկ՝ որ պիտի
չգիտցուի ։ Ուստի ինչ որ մութ 3
տեղը զրուցեցիք, անիկայ լոյս տե-
ղը պիտի լսուի. և ան որ ներքին
սենեակներուն մէջ ականջի խօսե-
ցաք, տանիքներուն վրայ պիտի
քարոզուի ։ Բայց ձեզի իմ բա- 4

բարեկամներուս կը զգուշեմ ։ Մի՛
վախնաք անոնցմէ՝ որ մարմինը կը
սպաննեն , ու անկէ ետև աւելի
բան մը ընելու կարողութիւն չու-
5 նին ։ Հապա ձեզի ցուցնեմ թէ
որմէ պէտք է վախնաք . Անկէ վախ-
ցէք՝ որ սպաննելէն ետև իշխանու-
թիւն ունի գեհեանը ձգելու . այո
6 կ'ըսեմ ձեզի , Անկէ վախցէք ։ Չէ՞
որ հինգ ճնճղուկ երկու դանկի կը
ծախուի , և անոնցմէ մէկը մոռ-
7 ցուած չէ Աստուծոյ առջին ։ Բայց
ձեր գլխուն բոլոր մազերն ալ համ-
րուած է . ուրեմն մի՛ վախնաք ,
ինչու որ դուք շատ ճնճղուկներէն
8 աւելի աղէկ էք ։ Նաև ձեզի կ'ը-
սեմ , Ամէն մէկ որ զիս կը դաւանի
մարդոց առջևը , Որդին մարդոյ ալ
անիկայ պիտի դաւանի Աստուծոյ
9 հրեշտակներուն առջևը ։ Բայց ան
որ զիս մարդոց առջևը կ'ուրանայ ,
ուրացուած պիտի ըլլայ Աստուծոյ
10 հրեշտակներուն առջևը ։ Նաև ա-
մէն մէկ որ Որդւոյ մարդոյ դէմ
բան կ'ըսէ , պիտի ներուի անոր ,
բայց ան որ Սուրբ Հոգիին դէմ
հայհոյութիւն կ'ընէ , պիտի չնե-
11 րուի անոր ։ Եւ երբոր ձեզ ժո-
ղովարաններըը՝ և իշխանութիւննե-
րու ու պետութիւններու առջև տա-
նելու ըլլան , հոգ մի՛ ընէք թէ
ինչպէս կամ ինչ պատասխան պի-
տի տաք , կամ ինչ պիտի ըսէք .
12 Վասն զի Սուրբ Հոգին պիտի
սորվեցընէ ձեզի նոյն ժամուն՝ ինչ
որ պէտք է խօսիլ ։
13 Ժողովուրդին մէջէն մէկը ըսաւ
անոր ։ Վարդապետ՝ զրուցէ եղ-
բօրս , որ հօրս ինչքը ժառանգու-
14 թիւնը իմ հետս բաժնէ ։ Ան ալ
ըսաւ անոր ։ Մարդ՝ ո՞վ զիս ձեր
վրայ դատաւոր կամ բաժին ընող
15 դրաւ ։ Նաև ըսաւ անոնց ։ Նա-
յեցէք և զգուշացէք ագահութե-
նէն . ինչու որ մարդուս ստա-
ցուածքներուն աւելնալէն կախուած
16 չէ իր կեանքը ։ Առակ մըն ալ
խօսեցաւ անոնց՝ ըսելով ։ Մէկ
հարուստ մարդու մը արտերը ա-
17 ռատ բերքեր տուին . Նաև ինքը կը
մտածէր ինքնիրեն ու կ'ըսէր ։ Ի՞նչ
ընեմ , վասն զի տեղ չունիմ , որ
հոն իմ բերքերս ժողվեմ ։ Նաև ը- 18
սաւ ։ Աս ընեմ . իմ ամբարներս
քակեմ ու ալ աւելի մեծ շինեմ ,
և հոն ժողվեմ իմ բոլոր բերքերս
ու բարիքներս . Նաև իմ անձիս ը- 19
սեմ , Ո՛վ անձ՝ շատ բարիքներ
ունիս շատ տարիներու համար ժող-
վուած . հանգչէ՛ , կեր , խմէ՛ և
ուրախ եղիր ։ Բայց Աստուած ը- 20
սաւ անոր ։ Անմիտ աս գիշեր հո-
գիդ քեզմէ պիտի պահանջուի .
ուստի ան քու պատրաստած բա-
ներդ որո՞ւն պիտի ըլլայ ։ Այսպէս 21
է անիկայ որ իր անձին համար
գանձ կը դիզէ , ու Աստուծոյ չը-
հարստանար ։
Նաև ըսաւ իր աշակերտներուն , 22
Ասոր համար կ'ըսեմ ձեզի , Հոգ
մի՛ ընէք ձեր կեանքին համար թէ
ինչ պիտի ուտէք , ոչ ալ մար-
մնին համար՝ թէ ինչ պիտի հագ-
նիք . Ինչու որ կեանքը կերակու- 23
րէն աւելի է , ու մարմինը հագուս-
տէն ։ Նայեցէ՛ք ագռաւներուն , 24
որ ոչ կը սերմանեն և ոչ կը հըն-
ձեն , որոնք ոչ շտեմարաններ ու-
նին՝ ոչ ալ ամբարներ , ու Աս-
տուած անոնք կը կերակրէ . դուք
որչափ աւելի լաւ էք թռչուննե-
րէն ։ Նաև ձեզմէ ո՞վ կրնայ իր 25
հոգ ընելովը իր հասակին վրայ
կանգուն մը աւելցընել ։ Հապա 26
թէ որ ամենափոքր բանին կարող
չէք , ուրիշ բաներուն համար ին-
չո՞ւ հոգ կ'ընէք ։ Նայեցէ՛ք շու- 27
շաններուն՝ ինչպէս կ'աճին . ոչ
կ'աշխատին և ոչ կը մանեն ։ բայց
ձեզի կ'ըսեմ որ Սողոմոն ալ իր
բոլոր փառաւորութեանը մէջ ա-
նոնցմէ մէկուն պէս չհագուեցաւ ։
Ուստի թէ որ խոտը որ այսօր դաշ- 28
տի մէջ է՝ ու վաղը փուռը կը ձը-
գուի , Աստուած անանկ կը հա-
գուեցընէ , որչափ աւելի ձեզ՝
թերահաւատներ ։ Դուք ալ մի՛ 29
փնտռէք թէ ինչ պիտի ուտէք
և ինչ պիտի խմէք , ու մի՛ շը-
փոթիք . Վասն զի ասոնք բոլոր բա- 30
ները աշխարհիս ազգերը կը փնտը-
ռեն . ու ձեր Հայրը գիտէ որ ասո

31 բաները ձեզի պէտք են ։ Բայց
դուք Աստուծոյ թագաւորութիւնը
խնդրեցէք , և ասոնք բոլոր բաներն
32 ալ ձեզի պիտի տրուին ։ Մի՛ վախ-
նար՝ պզտիկ հօտ ․ ինչու որ ձեր
Հայրը հաճեցաւ որ թագաւորու-
33 թիւնը ձեզի տայ ։ Ծախեցէ՛ք
ձեր ստացուածքը և ողորմութիւն
տուէք ․ ու ձեզի չհիննալու քսակ-
ներ պատրաստեցէք , ու երկինքը՝
չպակսելու գանձ մը , ուր ոչ գողը
կը մօտենայ և ոչ ցեցը կ'ապակա-
34 նէ ։ Քանզի ձեր գանձը ուր որ
է , ձեր սրտերնիդ ալ հոն պիտի ըլ-
35 լայ ։ Ձեր մէջքերը գօտեւորած
36 ըլլան , ու ճրագները վառած ․ Եւ
դուք այն մարդոցը նմա՛ն՝ որ իրենց
տէրոջը կը սպասեն՝ թէ ե՞րբ պիտի
դառնայ հարսնիքէն ․ որ երբ գայ
և դուռը զարնէ , իսկոյն բանան
37 անոր ։ Երանի՜ այն ծառաներուն ,
որ տէրը երբոր գայ՝ զանոնք ար-
թուն պիտի գտնէ ․ Ճշմարիտ կ'ը-
սեմ ձեզի , որ ինքը գօտին մէջքը
պիտի կապէ ու սեղան նստեցընէ
անոնք , և առաջ անցնելով սպա-
սաւորութիւն պիտի ընէ անոնց ։
38 Եւ թէ որ Գիշերուան երկրորդ պա-
հուն գայ , կամ երրորդ պահուն
գայ ու անանկ գտնէ , երանելի են
39 այն ծառաները ։ Բայց աս գիտ-
ցէք , որ եթէ տանուտէրը գիտ-
նար թէ ո՛ր ատեն գողը կու գայ ,
արթուն կը կենար ու թող չէր
40 տար որ իր տունը ծակեն ։ Ու-
րեմն դուք ալ պատրաստ կեցէք ,
քանզի Որդին մարդոյ կու գայ ա-
նանկ ժամու մէջ՝ որ դուք չէք կար-
ծեր ։

41 Եւ Պետրոս ըսաւ անոր ․ Տէ՛ր՝
աս առակը մեզի՞ կ'ըսես թէ ամե-
42 նուն ալ ։ Եւ Տէրը ըսաւ ․ Ու-
րեմն ո՞վ է այն հաւատարիմ ու ի-
մաստուն տնտեսը , որն որ տէրը իր
գերդաստանին վրայ պիտի դնէ , որ
43 ատենին անոնց ուտելիքը տայ ։ Ե-
րանի՜ է այն ծառային , որն որ իր
տէրը եկած ատենը անանկ ըրած
44 պիտի գտնէ ։ Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի , որ իր բոլոր ունեցածին վրայ
45 պիտի կեցընէ զանիկայ ։ Հապա
թէ որ այն ծառան իր սրտին մէջը
ըսէ , Իմ տէրս իր գալը կ'ուշացը-
նէ ․ և սկսի ծառաները ու աղա-
խինները ծեծել , և ուտել ու խը-
մել ու գինովնալ , Այն ծառային 46
տէրը պիտի գայ անանկ մէկ օր մը
որ չսպասեր , և անանկ մէկ ժամ մը
որ չգիտեր , և զանիկայ մէջտեղէն
պիտի կտրէ , ու անոր բաժինը ան-
հաւատարիմներուն հետ պիտի դնէ ։
Եւ այն ծառան՝ որ իր տէրոջը կամ- 47
քը գիտէ ու չպատրաստուիր ,
ոչ ալ անոր կամքը 'ի գործ կը
դնէ , շատ ծեծ պիտի ուտէ ։ Բայց 48
այն որ չգիտեր ու ծեծի արժանի
բան մը կ'ընէ , քիչ ծեծ պիտի
ուտէ ․ որո՛ւն որ շատ տրուեցաւ ,
շատ պիտի ուզուի անկէ , և որո՛ւն
որ աւելի յանձնուեցաւ , ալ աւելի
պիտի պահանջուի անկէ ։

Եւ կրակ ձգելու եկայ երկրիս 49
վրայ ․ ու ի՞նչ կ'ուզեմ թէ որ ար-
դէն բորբոքած է ։ Բայց մկրտու- 50
թիւն մը ունիմ մկրտուելու , և
ի՜նչպէս կը տագնապիմ մինչև որ
կատարուի ։ Կը կարծէք թէ ես 51
երկրի վրայ խաղաղութի՞ւն տալու
եկայ ․ ձեզի կ'ըսեմ՝ Ո՛չ , հապա՛
բաժանմունք ․ Ինչու որ ասկէ ետև 52
մէկ տան մէջ հինգը իրարմէ բաժ-
նուած պիտի ըլլան ․ իրեքը երկու-
քէն , ու երկուքը իրեքէն ․ Հայ- 53
րը պիտի բաժնուի որդիէն , և որ-
դին հօրմէն , մայրը աղջիկէն ու
աղջիկը մօրմէն , կեսուրը իր հար-
սէն ու հարսը իր կեսուրէն ։

Եւ ըսաւ ժողովուրդներուն ․ 54
Երբոր արևմուտքին կողմէն ամպ մը
ելած կը տեսնէք , շուտ մը կ'ըսէք
թէ Անձրև պիտի գայ , և անանկ
կ'ըլլայ ։ Ու երբոր հարաւային 55
հովը կը փչէ՝ կ'ըսէք թէ Տաք
պիտի ըլլայ , և անանկ կ'ըլլայ ։
Կեղծաւորներ՝ երկրի ու երկինքի 56
երեսը քննելը գիտէք , հապա աս
ժամանակը ի՞նչպէս չէք քններ ։
Եւ ինչո՞ւ դուք ձեզմէ չէք որոշեր 57
իրաւունքը ։ Երբոր դուն քու 58
ոսոխիդ հետ իշխանին երթալու
ըլլաս , ճամբուն մէջ անկէ ազատե-
լու համար ջանք ըրէ ․ որ չըլլայ թէ

քեզ դատաւորին առջին քաշէ, ու
դատաւորը դահճին ձեռքը տայ
քեզ, ու դահիճն ալ բանտը դնէ։
59 Քեզի կ'ըսեմ, բնաւ պիտի չելլես
անկէ, մինչև որ վերջին լուման չվը-
ճարես։

## ԳԼ. ԺԳ

1 Ու ոմանք ան ատենը ներկայ գըտ-
նուելով՝ պատմեցին անոր Գա-
լիլեացւոց վրայով, որոնց արիւնը
Պիղատոս իրենց զոհերուն հետը
2 խառնեց։ Ու Յիսուս պատաս-
խան տալով ըսաւ անոնց, Կը
կարծէ՞ք որ ան Գալիլեացիները
բոլոր Գալիլեացիներէն աւելի մե-
ղաւոր էին, որ ասանկ բաներ քա-
3 շեցին։ Ձեզի կ'ըսեմ՝ Չէ. հա-
պա թէ որ չապաշխարէք, ամէնքդ
4 ալ ասանկ պիտի կորսուիք։ Կամ
թէ ան տասնութը հոգին որոնց
վրայ Սելովամին մէջի աշտարակը
ինկաւ և անոնք մեռցուց. կը
կարծէ՞ք որ անոնք Երուսաղէմի մէջ
բնակած բոլոր մարդիկներէն աւելի
5 պարտաւոր էին։ Ձեզի կ'ըսեմ՝
Չէ. հապա թէ որ չապաշխարէք,
ամէնքդ ալ նոյնպէս պիտի կոր-
սուիք։
6 Այս առակն ալ ըսաւ. Մարդ մը
իր այգիին մէջ տնկուած թզենի մը
ունէր, ու եկաւ անկէ պտուղ
7 փնտռելու և չգտաւ։ Ուստի ը-
սաւ այգեպանին, Ահա երեք տարի
է որ կու գամ աս թզենիին վրայ
պտուղ փնտռելու, ու չեմ գտներ.
ալ ատիկայ կտրէ՛, ինչո՞ւ համար
8 գետինը խափանէ։ Անիկայ պա-
տասխան տուաւ ու անոր ըսաւ,
Տէ՛ր, աս տարի ալ ատիկայ թո՛ղ
տուր, մինչև որ ասոր բոլորտիքը
9 բրեմ ու թրիք դնեմ, Ու թէ որ
պտուղ տայ, աղէ՛կ. հապա թէ
չէ՝ գալ տարի կտրես ատիկայ։
10 Ու ինքը ժողովարաններուն մէ-
կուն մէջ շաբաթ օրը կը սորվեցը-
11 նէր։ Ու ահա մէկ կնիկ մը կար,
որ հիւանդութեան ոգի մը ունէր
տասնըութը տարիէ 'ի վեր, ու
կծկուած էր և ամենևին չէր կրնար
12 շտկուիլ։ Ու Յիսուս զա-
նիկայ տեսնելով՝ իրեն կանչեց և
ըսաւ անոր, Կնի՛կ, դուն քու հի-
ւանդութենէդ արձակուած ես։
Ու ձեռքը անոր վրայ դրաւ. և 13
իսկոյն շիտկուեցաւ ու փառք կու
տար Աստուծոյ։ Իսկ ժողովարա- 14
նին իշխանը պատասխան տուաւ
բարկանալով՝ որ Յիսուս շաբաթ
օրը բժշկեց, և ըսաւ ժողովուր-
դին, Վեց օր կայ՝ որոնց մէջ ար-
ժան է գործ գործել, ուստի ան
օրերը եկէք բժշկուեցէք, ու չէ՛
թէ շաբաթ օրը։ Ան ատենը Տէ- 15
րը պատասխան տուաւ անոր ու
ըսաւ, Կեղծաւոր, ձեզմէ ամէն
մէկը շաբաթ օրը իր եզը կամ էշը
մսուրէն չարձըկե՞ր՝ որ տանի ջուր
տայ։ Հապա ասիկայ որ Աբրա- 16
համու աղջիկ էր, որ ահա տասն-
ութը տարի Սատանան զանիկայ
կապեց, չէ՞ր վայլեր որ շաբաթ օրը
ան կապէն արձըկուի։ Ու աս բա- 17
ները որ ըսաւ, իրեն հակառակ կե-
ցողները ամէնքն ալ ամօթով
մնացին. ու բոլոր ժողովուրդը
կ'ուրախանար ան ամէն մեծաւոր
գործքերուն համար՝ որ անկէ կ'ըլ-
լային։
Ու ըսաւ, Աստուծոյ թագա- 18
ւորութիւնը ի՞նչ բանի կը նմա-
նի, ու ի՞նչ բանի նմանցընեմ
անիկայ։ Մանանեխի հատի նման 19
է, որն որ մարդ մը առաւ՝ իր
պարտէզը ձգեց. և աճեցաւ ու
մեծ ծառ եղաւ. ու երկնից թըռ-
չունները անոր ճիւղերուն վրայ
բնակեցան։
Դարձեալ ըսաւ, Աստուծոյ թա- 20
գաւորութիւնը ի՞նչ բանի նմանը-
ցընեմ։ Խմորի նման է, որն որ 21
կնիկ մը առաւ՝ երեք գրիւ ալիւրի
մէջ պահեց, մինչև որ ամէնն ալ
խմորեցաւ։
Ու քաղաքները ու գեղերը պտը- 22
տելով՝ կը սորվեցընէր, ու դէպ 'ի
Երուսաղէմ ճամբայ կ'ընէր։ Ու 23
մէկը ըսաւ անոր, Տէ՛ր, քիչե՞ր
են անոնք որ պիտի փրկուին։ Անի-
կայ ալ ըսաւ անոնց, Ջանք ըրէք 24
որ նեղ դռնէն մտնէք. քանզի կ'ը-
սեմ ձեզի՝ որ շատերը մտնել պիտի

25 ուզեն և պիտի չկրնան ։ Անկէ
ետև որ տանուտէրը ելլէ ու դուռը
գոցէ, և դուք սկսիք դուրսը կե-
նալ, ու դուռը զարնել և ըսել,
Տէ՛ր Տէր, բա՛ց մեզի. ան ալ
պատասխան տալով պիտի ըսէ ձե-
զի. Ձեզ չեմ ճանչնար ուսկից էք ։
26 Ան ատենը պիտի սկսիք ըսել, Մենք
քու առջևդ կերանք ու խմեցինք, և
դուն մեր փողոցներուն մէջը սոր-
27 վեցուցիր ։ Ու անիկայ պիտի ըսէ,
Ձեզի կ՚ըսեմ, Ձեզ չեմ ճանչնար
ուսկից էք, մէկ դի կեցէք ինծմէ
բոլոր անիրաւութիւն գործողներդ ։
28 Հոն պիտի ըլլայ լալ ու ակռաներ
կրճտել, երբոր տեսնէք Աբ-
րահամը ու Իսահակը և Յակոբը
ու բոլոր մարգարէները Աստուծոյ
թագաւորութեանը մէջ, ու ձեզ
29 դուրս հանած ։ Ու պիտի գան
արևելքէն ու արևմուտքէն և հիւսի-
սէն ու հարաւէն, ու պիտի բազմին
Աստուծոյ թագաւորութեանը մէջ ։
30 Ու ահա կան յետիններ՝ որ առա-
ջիններ պիտի ըլլան, ու կան առա-
ջիններ՝ որ յետիններ պիտի ըլլան ։
31 Նոյն օրը մէկ քանի փարիսեցի-
ներ եկան ու ըսին անոր, Ելի՛ր
ու գնա՛ ասկէ, ինչու որ Հերովդէս
32 քեզ սպաննել կ՚ուզէ ։ Ու ինքը
ըսաւ անոնց, Գացէ՛ք՝ ան աղուէ-
սին ըսէ՛ք, Ահա ես դևեր կը հա-
նեմ ու բժշկութիւններ կը կատա-
րեմ այսօր և վաղը, ու երրորդ օրը
33 պիտի կատարուիմ ։ Միայն թէ
պէտք է որ այսօր ու վաղը և մէկալ
օրը պտըտիմ. վասն զի կարելի չէ
որ մարգարէ մը Երուսաղէմէն դուրս
34 կորսուի ։ Ո՛վ Երուսաղէմ՝ Ե-
րուսաղէմ, որ մարգարէները կը
սպաննէիր, ու քեզի ղրկուածները
կը քարկոծէիր, քանի՛ անգամ քու
տղաքներդ ժողվել ուզեցի՝ ինչպէս
որ հաւը իր ձագերը թևերուն տա-
կը կը ժողվէ, և դուք չուզեցիք ։
35 Ահա ձե՛ր տունը ձեզի աւերակ պի-
տի մնայ. սակայն ձեզի կ՚ըսեմ,
որ ալ զիս պիտի չտեսնէք, մինչև
գայ ան ժամանակը որ պիտի ըսէք,
Օրհնեա՜լ է ան որ Տէրոջը անու-
նովը կու գայ ։

## ԳԼ. ԺԴ

Ու եղաւ որ երբ ինքը շաբաթ օր 1
մը փարիսեցւոց գլխաւորներուն
մէկուն տունը մտաւ հաց ուտելու,
ու անոնք անոր կը սպասէին ։ Ու 2
ահա հոն ջրգողեալ մարդ մը կար
իր առջևը ։ Ու Յիսուս պատաս- 3
խան տուաւ՝ ու խօսեցաւ օրէնս-
գէտներուն ու փարիսեցիներուն ը-
սելով, Արժա՞ն է շաբաթ օրը
բժշկել ։ Անոնք ալ լուռ կեցան. 4
և ինքը բռնեց զանիկայ՝ բժշկեց ու
ճամբեց. Ու պատասխան տալով 5
ըսաւ անոնց, Ձեզմէ որո՞ւն էշը
կամ եզը հորը իյնալու ըլլայ, ու
շուտ մը չհանէր անիկայ շաբաթ
օրը ։ Ու աս բաներուս չկրցան 6
անոր պատասխան տալ ։
Առակ մը զրուցեց ան հրաւի- 7
րուած մարդոց ալ, երբոր տեսաւ
թէ ինչպէս առաջին բազմոցները
կ՚ընտրէին, ու ըսաւ անոնց,
Երբոր մէկէ մը հարսնիքի հրաւի- 8
րուիս, առաջին բազմոցին վրայ մի՛
նստիր. չըլլայ որ քեզմէ աւելի
պատուաւոր մէկը ալ հրաւիրուած
ըլլայ անկէ. Ու ան որ քեզ ու 9
անիկայ հրաւիրեց, գայ զրուցէ
քեզի, Ասոր տե՛ղ տուր, և անկէ
ետև սկսիս ամօթով յետին տեղը
բռնել ։ Հապա երբոր հրաւի- 10
րուիս, գնա յետին տեղը նստէ.
որ երբ քեզ հրաւիրողը գայ, քե-
զի ըսէ, Բարեկամ՝ վե՛ր հրամմէ.
ան ատենը քու հետդ նստողներուն
առջևը քեզի փառք կ՚ըլլայ ։
Վասն զի ամէն ով որ իր անձը կը 11
բարձրացընէ, պիտի խոնարհի. և
ով որ իր անձը կը խոնարհեցընէ,
պիտի բարձրանայ ։
Ու զինքը հրաւիրողին ալ ըսաւ, 12
Երբոր ճաշ կամ ընթրիք կ՚ընես,
մի՛ կանչեր քու բարեկամներդ, ո՛չ
ալ քու եղբայրներդ, և ո՛չ քու
ազգականներդ, ու ո՛չ ալ հա-
րուստ դրացիներդ, որ չըլլայ թէ
անոնք ալ փոխարէնը քեզ հրա-
ւիրեն, ու քեզի հատուցում ըլլայ ։
Հապա երբոր հացկերոյթ կ՚ընես, 13
աղքատներ, պակասաւորներ, կա-

որ տնտես մը ունէր , և անոր վրա-
յով գանգատ եղաւ իրեն՝ որպէս
թէ իր ունեցածը կը փճացընէ ։
2 Ուստի կանչեց զանիկայ ու ըսաւ
անոր , Ի՞նչ է աս որ քեզի հա-
մար կը լսեմ . քու տնտեսութեանդ
հաշիւը տո՛ւր , ինչու որ ալ չես
3 կրնար տնտես ըլլալ ։ Ու տնտեսը
իր մտքին մէջ ըսաւ , Ի՞նչ ը-
նեմ , որովհետև իմ տէրս տնտե-
սութիւնը ինծմէ կ'առնէ . հողա-
գործութիւն չեմ կրնար ընել ,
4 մուրալու կ'ամչնամ ։ Գիտեմ ինչ
պիտի ընեմ , որպէս զի երբոր ես
տնտեսութենէս մերժուիմ , զիս ի-
5 րենց տունը ընդունին ։ Ու իր
տիրոջը պարտականները մէկիկ մէ-
կիկ իրեն կանչելով՝ ըսաւ առջի-
նին , Դուն իմ տիրոջս ո՞րչափ
6 պարտք ունիս ։ Ան ալ ըսաւ ,
Հարիւր մար ձէթ . և ըսաւ ա-
նոր , Գիրդ ա՛ռ ու շուտով նստէ
7 յիսո՛ւն գրէ ։ Ետքը միւսին ը-
սաւ , Դուն ալ ո՞րչափ պարտք
ունիս . և անիկայ ըսաւ , Հարիւր
քոռ ցորեն . ու ըսաւ անոր , Գիրդ
8 ա՛ռ և ութսո՛ւն գրէ ։ Ու տէրը
անիրաւ տնտեսը գովեց , որ խելա-
ցութիւնով ըրաւ . վասն զի աս
աշխարհիս որդիքը իրենց ցեղին
մէջ՝ լուսոյ որդիներէն աւելի խե-
9 լացի են ։ Ու ես ալ ձեզի կ'ըսեմ ,
Անիրաւ մամոնայէն ձեզի բարեկամ-
ներ ըրէք , որ երբ անիկայ պակսի ,
ձեզ յաւիտենական բնակարաննե-
10 րու մէջ ընդունին ։ Ան որ քիչ
բանի մէջ հաւատարիմ է , շատի
մէջ ալ հաւատարիմ է . և ան
որ քիչին մէջ անիրաւ է , շատի մէջ
11 ալ անիրաւ է ։ Ուստի թէ որ
անիրաւ մամոնային մէջ հաւատա-
րիմ չեղաք , ճշմարիտ հարստու-
թիւնը ո՞վ պիտի հաւատայ ձեզի ։
12 Ու թէ որ օտարին բանին մէջ հա-
ւատարիմ չեղաք , ձերը ո՞վ պիտի
տայ ձեզի ։
13 Մէկ ծառայ մը չկրնար երկու
տէրերու ծառայութիւն ընել ,
ինչու որ կամ մէկը՝ պիտի ատէ
և միւսը սիրէ , կամ մէկուն պի-
տի յարի և միւսը արհամար-
հէ . չէք կրնար ծառայել Աս-
տուծոյ ու մամոնայի ։
Ու փարիսեցիներն ալ որ ար- 14
ծաթասէր էին , աս ամէն բաները
լսելով կը քամահրէին զանիկայ ։
Ու ըսաւ անոնց , Դուք էք որ 15
մարդոց առջևը ինքզինքնիդ կ'ար-
դարացընէք . բայց Աստուած գի-
տէ ձեր սիրտերը . ինչու որ մարդոց
մէջ բարձր եղածը Աստուծոյ առ-
ջևը պիղծ է ։ Օրէնքը ու մար- 16
գարէները մինչև Յովհաննէս էին .
անկէ ետև Աստուծոյ թագաւորու-
թիւնը կը քարոզուի , և ամէն
մէկը անոր մէջը մտնելու կ'արտո-
րայ ։ Դիւրին է որ երկինք ու 17
երկիր անցնին , քան թէ օրէնքէն
մէկ նշանագիր մը իյնայ ։ Ո՛վ 18
որ իր կնիկը արձակէ և ուրիշ մը
առնէ , շնութիւն կ'ընէ . և ո՛վ որ
էրիկէ արձակուած կնիկ մը առնէ՝
շնութիւն կ'ընէ ։
Մէկ հարուստ մարդ մը կար , 19
որ ծիրանի ու բեհեզ կը հագնէր ,
և ամէն օր փառաւորապէս ուրա-
խութիւն կ'ընէր ։ Ու Ղազարոս 20
անունով աղքատ մը կար վէրքե-
րով լեցուն , որ անոր դրանը առ-
ջին դրուած էր . Ու կը փափաքէր 21
որ ան հարուստին սեղանէն ինկած
փշրանքներէն իր փորը լեցընէ .
նաև շուներն ալ կու գային և անոր
վէրքերը կը լզէին ։ Ու եղաւ որ 22
ան աղքատը մեռաւ , ու հրեշտակ-
ները Աբրահամին գոգը տարին զա-
նիկայ . հարուստն ալ մեռաւ ու
թաղուեցաւ ։ Ու դժոխքին մէջը 23
երբոր տանջանքի մէջ էր , իր աչ-
քերը վերցընելով հեռուէն տեսաւ
Աբրահամը , ու Ղազարոսը անոր
գոգը հանգիստ նստած ։ Ու ինքը 24
աղաղակեց ու ըսաւ , Հայր Աբրա-
համ՝ ողորմէ՛ ինծի ու խրկէ՛ Ղա-
զարոսը , որ իր մատին ծայրը ջուրը
թաթխէ , ու զովացընէ իմ լե-
զուս , ինչու որ աս բոցիս մէջ կը
տանջուիմ ։ Ու Աբրահամ ը- 25
սաւ , Ո՛րդեակ՝ մի՛տքդ բեր , որ
դուն քու կեանքիդ ատենը քու
բարիքներդ առիր , նոյնպէս ալ
Ղազարոս՝ չարիքներ . հիմա անի-

կայ [հոս] կը մխիթարուի, ու դուն
26 կը տանջուիս։ Եւ աս ամէն բա-
ներէն 'ի զատ՝ մեր ու ձեր մէջտեղը
մեծ անդունդ մը կայ հաստատուած.
անանկ որ ասկէ ձեզի անցնիլ ու-
զողները չկրնան, ոչ ալ անկէ
27 մեզի գալ ուզողները անցնին։ Ան
ալ ըսաւ. Ուրեմն կ'աղաչեմ քեզի՝
հայր, որ անիկայ իմ հօրս տու-
28 նը խրկես. Վասնզի հինգ եղբայր
ունիմ, որ երթայ անոնց վկայու-
թիւն տայ, որ չըլլայ թէ անոնք
ալ աս չարչարանքին տեղը գան։
29 Եւ Աբրահամ ըսաւ անոր. Անոնք
Մովսէսը ու մարգարէները ունին,
30 թող անոնց մտիկ ընեն։ Ան ալ
ըսաւ, Չէ՛ հայր Աբրահամ, հա-
պա թէ որ մեռելներէն մէկը անոնց
31 երթայ, պիտի ապաշխարեն։ Եւ
անիկայ ըսաւ անոր, Թէ որ Մով-
սէսին ու մարգարէներուն մտիկ չեն
ըներ, ոչ ալ թէ որ մեռելներէն
մէկը յարութիւն առնելու ըլլայ,
պիտի համոզուին։

## ԳԼ. ԺԷ

1 Եւ՛ ըսաւ իր աշակերտներուն, Ան-
կարելի է որ գայթակղութիւն-
ներ չգան. բայց վայ անոր, որուն
2 ձեռքովը կու գան։ Անոր աւելի
աղէկ է, որ անոր պարանոցէն իշու
աղացքի քար մը կախուի, ու ա-
նիկայ ծովը ձգուի, քան թէ աս
պզտիկներէն մէկը գայթակղեցընէ։
3 Զգուշացէ՛ք ձեր անձերուն։
Թէ որ քու եղբայրդ քեզի դէմ
մեղանչէ, յանդիմանէ՛ զանիկայ.
ու թէ որ ապաշխարէ, ներէ՛ ա-
4 նոր։ Եւ թէ որ օրը եօթը ան-
գամ քեզի դէմ մեղանչէ՝ ու օրը
եօթը անգամ դառնայ քեզի ու
ըսէ, Կ'ապաշխարեմ, ներես անոր։
5 Եւ առաքեալները ըսին Տէրոջը,
6 Մեր հաւատքը աւելցո՛ւր։ Եւ
Տէրը ըսաւ, Թէ որ մանանեխի
հատի չափ հաւատք ունենայիք,
աս թթենիին կրնայիք ըսել, Ար-
մատքի խլուէ՛ ու ծովուն մէջը
տնկուէ՛, ան ալ պիտի հնազանդէր
ձեզի։

Բայց ձեզմէ ո՞վ է ան մարդը՝ որ 7
ունենայ մէկ երկրագործ կամ հովիւ
ծառայ մը, որ անիկայ երբոր ագա-
րակէն տուն մտնէ, շուտով զըրու-
ցէ անոր, Թէ Անցի՛ր սեղան նստէ.
Հապա չը՞սեր անոր թէ Պատրաս- 8
տէ՛ իմ ընթրիքս, ու գօտիդ կա-
պած ինծի սպասաւորութիւն ըրէ,
մինչև որ ես ուտեմ ու խմեմ. ու
ետքը դուն ալ կեր ու խմէ։ Մի- 9
թէ շնորհակա՞լ կ'ըլլայ ան ծառա-
յին, իրեն հրամայուած բաները
կատարելուն համար. չեմ կարծեր։
Նոյնպէս ալ դուք երբոր բոլոր ձե- 10
զի հրամայուած բաները ընէք, ը-
սէք թէ Մենք անպիտան ծառաներ
ենք, քանզի ան որ պարտական
էինք ընելու, ըրինք։
Ու եղաւ որ երբ ինքը Երուսա- 11
ղէմ կ'երթար, Սամարիայի և Գա-
լիլեայի մէջտեղէն կ'անցնէր։ Ու 12
երբոր մէկ գեղ մը պիտի մտնէր,
տասը բորոտ մարդիկ հանդիպեցան
անոր, որոնք հեռուն կայնեցան,
Եւ ձայներնին վերցուցին ու ըսին, 13
Յիսո՛ւս վարդապետ, ողորմէ՛ մե-
զի։ Եւ տեսնելով՝ անոնց ըսաւ, 14
Գացէ՛ք դուք ձեզ քահանաներուն
ցուցուցէ՛ք. ու եղաւ որ երբ կ'եր-
թային, մաքրուեցան։ Եւ անոնց- 15
մէ մէկը երբոր տեսաւ թէ բժշկուե-
ցաւ, ետ դարձաւ ու մեծ ձայնով
փառք կու տար Աստուծոյ. Ու ե- 16
րեսի վրայ անոր ոտքը իյնալով՝ շը-
նորհակալ կ'ըլլար անոր. և ին-
քը Սամարացի էր։ Պատասխան 17
տուաւ Յիսուս ու ըսաւ, Չէ՞ որ
տասն ալ մաքրուեցան, իսկ ան
ինը ո՞ւր են. Աս օտարազգիէն 'ի 18
զատ ուրիշներ չգտնուեցան՝ որ դառ-
նալով Աստուծոյ փառք տան։ Եւ 19
ըսաւ անոր, Ելի՛ր գնա՛, քու հա-
ւատքդ քեզ բժշկեց։
Ու երբոր փարիսեցիները իրեն 20
հարցուցին թէ Աստուծոյ թագա-
ւորութիւնը ե՞րբ պիտի գայ, պա-
տասխան տուաւ անոնց ու ըսաւ,
Աստուծոյ թագաւորութիւնը դը-
տուտանց երևցած բաներով չգար.
Ու պիտի չըսեն թէ Ահա հոս է 21
կամ Ահա հոն, քանզի ահա Աս-

տուծոյ թագաւորութիւնը ձեր ներ-
սիդին է ։
22 Աշակերտներուն ալ ըսաւ. Օ-
րեր պիտի գան որ դուք Որդւոյ
մարդոյ օրերուն մէկը տեսնելու պի-
տի փափաքիք, ու պիտի չտեսնէք ։
23 Եւ թէ որ ըսեն ձեզի թէ Ահա հոս
է կամ Ահա հոն, մի՛ երթաք ու
24 անոնց մի՛ հետեւիք ։ Վասն զի ինչ-
պէս որ փայլակը երկինքին տակը
մէկ դիէն փայլատակելով՝ մինչեւ եր-
կինքին տակը միւս դին լոյս կու
տայ, նոյնպէս ալ պիտի ըլլայ Որ-
25 դին մարդոյ իր գալուն օրը ։ Միայն
թէ պէտք է որ ինքը առաջ շատ
չարչարանքներ կրէ ու մերժուի աս
26 ազգէն ։ Եւ ինչպէս որ Նոյի օրե-
րը եղաւ, անանկ պիտի ըլլայ Որ-
27 դւոյ մարդոյ օրերն ալ ։ Կ'ուտէին՝
կը խմէին՝ կնիկ կ'առնէին, էրկան
կը տրուէին, մինչեւ այն օրը որ
Նոյ տապանը մտաւ, և ջրհեղեղը
28 եկաւ ու ամէնը կորսնցուց ։ Նոյն-
մանապէս՝ ինչպէս որ Ղովտին օրերը
եղաւ, կ'ուտէին՝ կը խմէին՝ ծախու
կ'առնէին՝ կը ծախէին՝ կը տնկէին՝
29 կը շինէին. Բայց այն օրը որ Ղովտ
Սոդոմէն ելաւ, երկինքէն կրակ ու
ծծումբ տեղաց և բոլորն ալ կոր-
30 սնցուց. Նոյնպէս պիտի ըլլայ այն
օրը՝ որուն մէջ Որդին մարդոյ պի-
31 տի յայտնուի ։ Այն օրը՝ ան որ
տանիքին վրայ է և իր կարասիները
տանը մէջ, թող վար չիջնէ զա-
նոնք առնելու. և ան որ արտին
մէջն է՝ նոյնպէս թող ետ չդառնայ ։
32 Միտքերնիդ բերէք Ղովտին կնի-
33 կը ։ Ո՛վ որ իր կեանքը կ'ուզէ
ապրեցնել, պիտի կորսնցնէ զա-
նիկայ. և ո՛վ որ կը կորսնցնէ,
34 պիտի ապրեցնէ զանիկայ ։ Ձեզի
կ'ըսեմ, Այն գիշերը թէ որ երկու
հոգի մէկ անկողինի մէջ ըլլան, մէ-
կը պիտի առնուի ու միւսը ձգուի.
35 Եւ թէ որ երկու կնիկ մէկտեղ ա-
ղալու ըլլան, մէկը պիտի առնուի
ու միւսը ձգուի. Եւ թէ որ երկու
հոգի արտի մը մէջ ըլլան, մէկը
պիտի առնուի ու միւսը ձգուի ։
36 Եւ պատասխան տալով ըսին անոր,
Տէ՛ր, ո՞ւր տեղ պիտի ըլլայ աս բա-
նը ։ Ան ալ ըսաւ անոնց, Ո՛ւր 37
որ մարմին կայ, հոն պիտի ժողո-
վուին արծիւները ։

## ԳԼ. ԺԸ.

Անոնց առակ մըն ալ ըսաւ աս 1
բանիս վրայով՝ թէ պէտք է ա-
մէն ատեն աղօթք ընել ու չձանձ-
րանալ, Ըսաւ, Մէկ դատաւոր 2
մը կար քաղաքի մը մէջ, որ Աս-
տուծմէ չէր վախնար ու մարդէ չէր
ամչնար ։ Եւ նոյն քաղաքին մէջ 3
որբեւայրի մը կար, որ անոր կու
գար ու կ'ըսէր, Իրաւունք ըրէ
ինծի ու ազատէ զիս իմ ոսոխէս ։
Եւ անիկայ ժամանակ մը չէր ուզեր 4
անոր հոգ ընել. բայց ետքը ըսաւ
իր մտքին մէջ, Թէեւ Աստուծմէ
չեմ վախնար, ու մարդէ չեմ ամչը-
նար, Գոնէ աս որբեւայրին զիս 5
ձանձրացընելուն համար իրեն իրա-
ւունք ընեմ, որ չըլլայ ամէն ատեն
զիս թախանձէ ։ Եւ Տէրը ըսաւ, 6
Լսեցէ՛ք՝ անիրաւ դատաւորը ինչ
կ'ըսէ ։ Հապա Աստուած իր ընտ- 7
րեալներուն իրաւունք պիտի չընէ՞,
որոնք ցորեկ ու գիշեր իրեն կ'աղա-
ղակեն, թէեւ երկայնամիտ ալ ըլ-
լայ անոնց վրայ ։ Ձեզի կ'ըսեմ 8
որ շուտով անոնց իրաւունք պիտի
ընէ. բայց Որդին մարդոյ երբոր
գայ, արդեօք հաւատք պիտի գտնէ՞
երկրի վրայ ։
Եւ մէկ քանիներուն՝ որոնք իրենց 9
անձերուն վրայ կը վստահանային
թէ արդար են, և ուրիշները կ'ա-
նարգէին, աս առակը ըսաւ. Եր- 10
կու մարդ ելան՝ տաճարը աղօթք
ընելու, մէկը փարիսեցի ու միւսը
մաքսաւոր ։ Փարիսեցին կայներ 11
էր, ու առանձին այսպէս աղօթք
կ'ընէր. Ով Աստուած՝ շնորհակալ
եմ քեզմէ, որ ուրիշ մարդոց պէս
չեմ, յափշտակող՝ անիրաւ՝ շնա-
ցող, և կամ աս մաքսաւորին
պէս. Հապա շաբաթը երկու ան- 12
գամ ծոմ կը պահեմ, ու բոլոր
ստացուածքիս տասանորդը կու
տամ ։ Եւ մաքսաւորը հեռուն 13
կայներ էր, ու չէր ուզեր աչքն ալ
երկինքը վերցընել, հապա իր

կուրծքը ծեծելով կ'ըսէր , Աս-
տուած՝ ողորմէ՛ ինծի մեղաւորիս ։
14 Ձեզի կ'ըսեմ թէ ատիկայ ան միւ-
սէն աւելի արդարացած իր տու-
նը իջաւ . վասն զի ով որ իր անձը
կը բարձրացընէ , պիտի խոնարհի .
և ով որ իր անձը կը խոնարհեցընէ ,
պիտի բարձրանայ ։
15 Անոր տղաք ալ բերին իրեն ,
որ անոնց դպչի . ու աշակերտնե-
րը տեսնելով կը յանդիմանէին
16 զանոնք ։ Բայց Յիսուս անոնք
իրեն կանչելով ըսաւ , Թո՛ղ
տուէք որ մանր տղոցը որ ինծի
գան , և մի՛ արգիլէք զանոնք . ին-
չու որ Աստուծոյ թագաւորութիւ-
17 նը ասանկներունն է ։ Ճշմարիտ
կ'ըսեմ ձեզի , Ո՛վ որ Աստուծոյ
թագաւորութիւնը պզտիկ տղու մը
պէս չընդունի , բնաւ պիտի չմտնէ
անոր մէջը ։
18 Եւ մէկ իշխան մը հարցուց անոր
ու ըսաւ , Բարի վարդապետ՝ ի՞նչ
գործ գործեմ որ յաւիտենական
19 կեանքը ժառանգեմ ։ Եւ Յիսուս
ըսաւ անոր , Ինչո՞ւ զիս բարի
կ'անուանես , մէկէն 'ի զատ բարի
20 չկայ , որ է Աստուած ։ Պատուի-
րանքները գիտես . Շնութիւն մի՛
ըներ , Սպանութիւն մի՛ ըներ ,
Գողութիւն մի՛ ըներ , Սուտ վկա-
յութիւն մի՛ ըներ , Քու հայրդ ու
21 մայրդ պատուէ ։ Ան ալ ըսաւ ,
Ասոնք ամէնը մանկութենէս 'ի վեր
22 պահեր եմ ։ Աս լսելով Յիսուս
ըսաւ անոր , Մէկ բան մըն ալ
պակաս է քեզի . քու բոլոր ունե-
ցածդ ծախէ , և աղքատներուն
բաշխէ , ու երկինքը գանձ պիտի
ունենաս , և եկուր իմ ետևէս ։
23 Անիկայ երբոր աս բանը լսեց՝
տրտմեցաւ , ինչու որ շատ հարուստ
24 էր ։ Եւ Յիսուս երբոր անիկայ
տրտմած տեսաւ , ըսաւ , Որչափ
դժուար է անոնց՝ որ հարստութիւն
ունին , Աստուծոյ թագաւորու-
25 թիւնը մտնել ։ Վասն զի դիւրին
է որ ուղտը ասեղին ծակէն անցնի ,
քան թէ հարուստը Աստուծոյ թա-
26 գաւորութիւնը մտնէ ։ Եւ անոնք
որ լսեցին կ'ըսէին , Եւ ո՞վ կըր-
նայ փրկուիլ ։ Եւ ինքը ըսաւ , 27
Մարդոց կողմանէ անկարելի եղած
բաները Աստուծոյ կողմանէ կարելի
են ։ Ու Պետրոս ըսաւ , Ահա մենք 28
ամէն բան թողուցինք և քու ե-
տևէդ եկանք ։ Ու անիկայ ըսաւ 29
անոնց , Ճշմարիտ կ'ըսեմ ձեզի
թէ Մարդ մը չկայ՝ որ թողուց
տուն , կամ ծնողք , կամ եղբայր-
ներ , կամ կին , կամ որդիներ՝
Աստուծոյ թագաւորութեանը հա-
մար , Որ պիտի չառնէ բազմա- 30
պատիկ աս ատենիս մէջ , և գալու
աշխարհին մէջ յաւիտենական
կեանքը ։
Եւ տասներկուքը իր քովը առ- 31
նելով՝ ըսաւ անոնց , Ահա մենք
Երուսաղէմ կ'ելլենք , և մարգարէ-
ներուն ձեռքովը Որդւոյ մարդոյ
համար բոլոր գրուածները պիտի
կատարուին ։ Ինչու որ հեթա- 32
նոսներուն պիտի մատնուի , ու
ծաղր պիտի ըլլայ և պիտի նախա-
տուի , ու պիտի թքնեն անոր ,
Եւ պիտի ծեծեն ու սպաննեն անի- 33
կայ , ու երրորդ օրը յարութիւն
պիտի առնէ ։ Բայց անոնք աս 34
բաներէն մէկն ալ չհասկըցան . ու
աս խօսքը անոնցմէ ծածկուած էր ,
և ըսած բաները չէին իմանար ։
Ու եղաւ որ երբ ինքը Երիքովին 35
կը մօտենար , կոյր մը ճամբուն
քովը նստեր էր մուրալու ։ Երբոր 36
լսեց բազմութեանը անցնիլը , հար-
ցուց թէ Ի՞նչ է ան ։ Եւ իրեն 37
ըսին թէ Յիսուս Նազովրեցին
կ'անցնի ։ Ուստի աղաղակեց ու 38
ըսաւ , Յիսուս՝ որդի Դաւթի,
ողորմէ՛ ինծի ։ Եւ անոնք որ 39
առջևէն կ'երթային , կը յանդի-
մանէին զանիկայ , որ լռէ . բայց
անիկայ՝ ալ աւելի կ'աղաղակէր ,
Որդի՛ Դաւթի՝ ողորմէ՛ ինծի ։
Եւ Յիսուս կանգ առնելով՝ հրամայեց 40
ըսաւ որ զանիկայ իրեն բերեն , ու
երբոր անիկայ մօտեցաւ , հարցուց
անոր ու ըսաւ , Ի՞նչ կ'ուզես որ 41
քեզի ընեմ . անիկայ ալ ըսաւ ,
Տէ՛ր՝ որ աչքերս բացուին ։ Եւ 42
Յիսուս ըսաւ անոր , Թող բա-
ցուին . քու հաւատքդ քեզ բը-

43 փրկեց ։ Եւ իսկոյն անոր աչքերը
բացուեցան, ու անոր ետևէն կ'եր-
թար՝ և փառք կու տար Աստուծոյ.
բոլոր ժողովուրդն ալ տեսնելով՝
զԱստուած կը գովաբանէին ։

## ԳԼ. ԺԹ

1 Եւ մտնելով Երիքովի մէջէն կ'անց-
2 նէր ։ Եւ ահա մարդ մը կար,
անունը Զակքէոս ըսուած, որ մաք-
սապետ էր ու հարուստ մէկ մըն
3 էր ։ Եւ կ'ուզէր տեսնել թէ ով
է Յիսուս, ու բազմութենէն չէր
կրնար, ինչու որ հասակով կարճ
4 էր ։ Եւ առաջ վազեց ու ժան-
տաթզենիի մը վրայ ելաւ, որ զա-
նիկայ տեսնէ. ինչու որ անկէ պիտի
5 անցնէր ։ Ու երբոր Յիսուս ան
տեղը եկաւ, վեր նայելով զանիկայ
տեսաւ, ու ըսաւ անոր, Զակքէո՛ս՝
շուտ ըրէ, ատկէ վար իջիր, ինչու
որ պէտք է ինծի այսօր քու տունդ
6 կենալ ։ Եւ արտորալով վար ի-
ջաւ, և ուրախութեամբ ընդունեց
7 զանիկայ ։ Երբոր ամէնն ալ տե-
սան, կը տրտնջէին ու կ'ըսէին թէ
Մեղաւոր մարդու քով մտաւ իջեւան
8 ընելու ։ Եւ Զակքէոս կայնեցաւ
ու ըսաւ Տէրոջը, Տէ՛ր՝ ահա իմ
ունեցածիս կէսը աղքատներուն կու
տամ, ու թէ որ զրպարտութեամբ
մէկու մը զրկանք ըրած եմ, չորեք-
պատիկ կը հատուցանեմ անոր ։
9 Եւ Յիսուս ըսաւ անոր, Այսօր
աս տանը փրկութիւն եղաւ. ինչու
որ ասիկայ ալ Աբրահամի որդի է ։
10 Վասն զի Որդին մարդոյ եկաւ որ
կորսուածը փնտռէ ու փրկէ ։
11 Ու երբոր անոնք աս բաները կը
լսէին, առակ մըն ալ ըսաւ իր Ե-
րուսաղէմ մօտենալուն համար, և
անոնց անանկ կարծելուն համար
թէ շուտ մը Աստուծոյ թագաւո-
12 րութիւնը պիտի յայտնուի ։ Ուս-
տի ըսաւ, Մէկ ազնուական մարդ
մը հեռու երկիր գնաց՝ իրեն թա-
գաւորութիւն առնելու և դառնա-
13 լու ։ Եւ իր տասը ծառաները
կանչելով՝ տասը մնաս տուաւ ա-
նոնց, ու ըսաւ անոնց, Բանեցու-
ցէ՛ք ատոնք՝ մինչև որ ես գամ ։

Եւ անոր քաղաքացիները զանիկայ 14
կ'ատէին, ու դեսպաններ խրկեցին
անոր ետևէն, ըսելով թէ Չենք
ուզեր որ ասիկայ մեր վրայ թագա-
ւորութիւն ընէ ։ Ու եղաւ որ երբ 15
անիկայ թագաւորութիւնը առնե-
լով ետ դարձաւ, իրեն կանչել
տուաւ ան ծառաները՝ որոնց որ
ստակը տուեր էր, որ գիտնայ թէ
ով ինչ շահ ըրած է ։ Եւ առ- 16
ջինը եկաւ ու ըսաւ, Տէ՛ր՝ քու
մնասդ տասը մնաս շահ ըրաւ ։ Եւ 17
ըսաւ անոր, Ապրի՛ս՝ բարի ծա-
ռայ. որովհետև քիչ բանին մէջ
հաւատարիմ եղար, տասը քաղաքի
վրայ իշխանութիւն ունեցիր ։ Ու 18
երկրորդը եկաւ ու ըսաւ, Տէ՛ր՝
քու մնասդ հինգ մնաս շահ ըրաւ ։
Եւ ըսաւ անոր, Դուն ալ հինգ 19
քաղաքի վրայ եղիր ։ Եւ ուրիշ 20
մը եկաւ ու ըսաւ, Տէ՛ր՝ ահա
քու մնասդ՝ որ թաշկինակի մէջ
ծրարած կը պահէի. Վասն զի կը 21
վախնայի քեզմէ, ինչու որ դուն
խիստ մարդ մըն ես. չդրած բանդ
կը վերցընես ու չսերմանածդ կը
հնձես ։ Եւ անիկայ ըսաւ անոր, 22
Քու բերնէդ քեզ պիտի դատեմ՝
ո՛վ չար ծառայ. գիտէիր որ ես
խիստ մարդ մըն եմ, չդրած բանս
կը վերցընեմ, ու չսերմանածս կը
հնձեմ. Եւ ինչո՞ւ համար իմ ստա- 23
կըս սեղանաւորներուն չտուիր, որ
ես եկած ատենս շահովը առնէի ա-
նիկայ ։ Եւ հոն կայնողներուն ը- 24
սաւ, Առէ՛ք ատկէ մնասը ու
տուէ՛ք անոր՝ որ տասը մնաս ունի.
(Եւ ըսին իրեն, Տէ՛ր՝ անիկայ 25
տասը մնաս ունի.) Վասն զի կ'ը- 26
սեմ ձեզի, թէ ամէն ունեցողին
պիտի տրուի, և չունեցողին ունե-
ցածն ալ անկէ պիտի առնուի ։
Բայց ան իմ թշնամիներս՝ որոնք 27
չէին ուզեր որ իրենց վրայ թագա-
ւոր ըլլամ, հոս բերէք ու իմ
առջևս սպաննեցէք ։ Եւ աս բա- 28
ները խօսելէն ետև, առաջ գնաց
Երուսաղէմ ելլելու ։
Ու եղաւ որ երբ Բեթփագէին 29
ու Բեթանիային մօտեցաւ, դէպ 'ի
ան լեռը որ Ձիթենեաց [illegible] կ'ը-

սուրի, իր աշակերտներէն երկուքը
30 խրկեց, Ու ըսաւ, Գացէ՛ք դէպ ի դի-
մացը եղած գիւղը, և անոր մէջ մըտ-
նելնուդ պէս պիտի գտնէք կապուած
աւանակ մը, որուն վրայ բնաւ մարդ
մը նստած չէ. արձըկեցէ՛ք անիկայ
31 ու բերէ՛ք. Ու թէ որ մէկը ձեզի
հարցընէ թէ Ինչո՞ւ կ'արձըկէք,
ասանկ ըսէք անոր թէ Տէրոջը
32 պէտք է: Երբոր գացին անոնք որ
խրկուեցան, ինչպէս որ իրենց ըս-
33 ուեր էր՝ գտան: Ու երբոր ա-
ւանակը կ'արձըկէին, անոր տէրերը
ըսին անոնց, Ինչո՞ւ կ'արձըկէք
34 աս աւանակը: Անոնք ալ ըսին,
35 Տէրոջը պէտք է. Ու զանիկայ Յի-
սուսի բերին. ու իրենց հանդերձ-
ները աւանակին վրայ ձգելով՝ Յի-
36 սուսը հեծուցին: Ու երբոր
կ'երթար, իրենց հանդերձները
37 ճամբուն վրայ կը փռէին: Ու
երբոր ալ մօտեցաւ, և Ձիթե-
նեաց լերանը զառ 'ի վայրէն կ'իջ-
նէր, աշակերտներուն բոլոր բազ-
մութիւնը սկսաւ ուրախութեամբ
զԱստուած օրհնել բարձր ձայնով
ան բոլոր հրաշքներուն համար՝ որ
38 տեսեր էին. Ու կ'ըսէին, Օրհնեա՜լ
է այն թագաւորը որ Տէրոջը ա-
նունովը կու գայ. երկինքի մէջ
խաղաղութիւն, ու փառք՝ բարձ-
39 րութեան մէջ: Ու բազմութեա-
նը մէջէն փարիսեցիներուն մէկ քա-
նիները ըսին անոր, Վարդապետ՝
սաստէ քու աշակերտներդ յանդիմա-
40 նէ՛: Ու անիկայ պատասխան
տուաւ ու ըսաւ անոնց, Ձեզի կ'ը-
սեմ, թէ որ ասոնք լուռ կենան,
քարերը պիտի աղաղակեն:
41 Ու երբոր մօտեցաւ, քաղաքը
տեսնելով՝ լացաւ անոր վրայ և ը-
42 սաւ, Գոնէ աս քու օրուանդ մէջ
գիտնայիր քու խաղաղութիւնդ,
բայց հիմա ծածկուեցաւ քու աչ-
43 քերէդ: Ինչու որ օրեր պիտի
գան քու վրադ, որ թշնամիներդ
քու բոլորտիքդ պատնէշ պիտի շի-
նեն, ու քեզ պիտի պաշարեն,
և ամէն կողմէ քեզ նեղը պիտի
44 ձգեն. Ու հիմնայատակ պիտի ը-
նեն քեզ ու քու մէջդ եղած զա-
ւակներդ, և քար մը քարի վրայ
ամենևին պիտի չթողուն քու մէջդ,
անոր համար որ չճանչցար քու այ-
ցելութեան ժամանակդ:
Ու տաճարը մտնելով՝ սկսաւ 45
դուրս հանել անոր մէջ ծախող-
ները և գնողները. Ու ըսաւ ա- 46
նոնց, Գրուած է թէ Իմ տունս
աղօթքի տուն է, բայց դուք ա-
նիկայ աւազակներու այր ըրիք:
Ու ամէն օր տաճարին մէջ կը 47
սորվեցընէր. բայց քահանայապետ-
ները ու դպիրները և ժողովուր-
դին գլխաւորները կը փնտռէին
թէ ինչպէս կորսընցընեն զանիկայ,
Ու բան մը չէին կրնար գտնել թէ 48
ինչ ընեն. ինչու որ բոլոր ժողո-
վուրդը անոր կապուեր էին մտիկ
ընելու:

## ԳԼ. Ի

Ու եղաւ որ ան օրերուն մէկը՝ 1
երբոր տաճարին մէջ ժողովուր-
դին կը սորվեցընէր և աւետա-
րանը կը քարոզէր, քահանայա-
պետները ու դպիրները ծերերուն
հետ մէկտեղ վրայ հասան, Ու 2
անոր խօսեցան՝ ըսելով, Զրուցէ՛
մեզի՝ ի՞նչ իշխանութիւնով կ'ը-
նես աս բաները, կամ ո՞վ է աս
իշխանութիւնը քեզի տուողը:
Պատասխան տուաւ ու ըսաւ ա- 3
նոնց, Ես ալ ձեզի բան մը հար-
ցընեմ, և ըսէ՛ք ինծի, Յովհան- 4
նէսին մկրտութիւնը երկինքէ՞ն էր
թէ մարդոցմէ: Ու անոնք մէ- 5
ջերնին խորհեցան ու ըսին, Թէ 6
որ ըսենք՝ Երկինքէն, պիտի ըսէ,
Հապա ինչո՞ւ չհաւատացիք անոր.
Իսկ թէ որ ըսենք՝ Մարդոցմէ,
բոլոր ժողովուրդը մեզ պիտի քար-
կոծեն. ինչու որ հաստատ համո-
զուած են թէ Յովհաննէս մարգա-
րէ էր: Ու պատասխան տուին 7
թէ չեն գիտեր ուսկից էր: Ու 8
Յիսուս ըսաւ անոնց, Ես ալ ձե-
զի չեմ ըսեր թէ ինչ իշխանու-
թիւնով կ'ընեմ աս բաները:
Սկսաւ աս առակը զրուցել ժո- 9
ղովուրդին. Մէկ մարդ մը այգի
տնկեց և զանիկայ մշակներու

յանձնեց, ու ինքը օտար երկիր
երթալով՝ շատ ժամանակ մնաց։
10 Եւ ատենին ծառայ մը խրկեց մշ-
շակներուն, որ այգիին պտուղէն
անոր տան. բայց մշակները ծեծեցին
զանիկայ ու պարապ ճամբեցին։
11 Եւ ուրիշ ծառայ մըն ալ խրը-
կեց. բայց անոնք զանիկայ ալ ծե-
ծեցին, անարգեցին ու պարապ
12 ճամբեցին։ Ու երրորդ մըն ալ
խրկեց. բայց անոնք զանիկայ ալ
վիրաւորեցին ու դուրս հանեցին։
13 Ու այգիին տէրը ըսաւ,
Ի՞նչ ընեմ. իմ սիրելի որդիս
խրկեմ, դուցէ զանիկայ տեսնելով
14 ամչնան։ Բայց մշակները երբոր
տեսան զանիկայ, իրարու հետ
խորհուրդ ըրին՝ ըսելով, Ասիկայ
է ժառանգը, եկէք զանիկայ ըս-
պաննենք՝ որ ժառանգութիւնը մե-
15 րը ըլլայ։ Եւ զանիկայ այգիէն
դուրս հանեցին ու սպաննեցին.
ուստի այգիին տէրը ի՞նչ պիտի
16 ընէ անոնց. Պիտի գայ ու կոր-
սնցընէ այն մշակները, և այգին
ուրիշներու պիտի տայ։ Երբոր
ասոնք լսեցին, ըսին, Քաւ լիցի։
17 Եւ ինքը անոնց նայելով ըսաւ,
Հապա ի՞նչ է աս գրուածը թէ
Այն քարը որ շինողները մերժե-
ցին, անիկայ անկիւնին գլուխը ե-
18 ղաւ։ Ամէն ով որ այն քարին վրայ
իյնայ՝ պիտի կոտրտի, և որուն վրայ
որ իյնայ՝ պիտի փշրէ զանիկայ։
19 Եւ քահանայապետները ու դպիր-
ները կը փնտռէին թէ ի՛նչպէս նոյն
ժամուն ձեռք զարնեն անոր, բայց
ժողովուրդէն վախցան. քանզի ի-
մացան որ այն առակը իրենց համար
ըսաւ։
20 Ու ետքը յարմար ատենի սպասե-
լով՝ խրկեցին քանի մը խաբեբայ
մարդիկ՝ որոնք կեղծաւորութեամբ
ինքզինքնին արդար կը ձեւացընէին,
որ զանիկայ խօսքով բռնեն՝ տէրու-
թեան և կուսակալին իշխանութեա-
21 նը զանիկայ մատնելու։ Ու անոր
հարցուցին ըսելով, Վարդապե՛տ՝
գիտենք որ շիտակ կը խօսիս ու կը
սորվեցընես, և աչառութիւն չես
ըներ, հապա ճշմարտութեամբ Աս-
տուծոյ ճամբան կը սորվեցընես։
Մե՞զի արժա՞ն է Կայսրին տուրք 22
տալ թէ չէ։ Եւ անոնց խո- 23
րամանկութիւնը հասկընալով՝ ը-
սաւ անոնց, Ինչո՞ւ զիս կը փոր-
ձէք. Ցուցուցէ՛ք ինծի դահեկան 24
մը։ Որո՞ւն պատկերը ու գիրը
ունի վրան։ Պատասխան տուին
ու ըսին, Կայսրինը։ Եւ ինքը 25
ըսաւ անոնց, Ուրեմն ան որ կայսե-
րինն է՝ կայսրի՛ն տուէք, և ան որ
Աստուծոյն է՝ Աստուծո՛յ տուէք։
Եւ չկրցան զանիկայ խօսքով մը 26
բռնել ժողովուրդին առջեւը, ու
զարմանալով անոր պատասխանին
վրայ՝ լուռ կեցան։
Եւ Սադուկեցիներէն ոմանք ե- 27
կան, (որոնք հակառակութիւն կ'ը-
նեն՝ թէ յարութիւն չկայ,) և
անոր հարցուցին՝ ըսելով, Վա՛ր- 28
դապետ՝ Մովսէս մեզի գրեց, Թէ
որ մէկուն եղբայրը կնիկ ունենալով
մեռնելու ըլլայ, ու մեռած ատենը
զաւակ չունենայ, անոր եղբայրը
առնէ այն կնիկը և իր եղբօրը
զաւակ հանէ։ Արդ եօթը եղ- 29
բայրներ կային. ու առջինը կնիկ
մը առնելով՝ զաւակ չունեցած մե-
ռաւ։ Երկրորդն ալ առաւ ան 30
կնիկը, և ինքն ալ մեռաւ առանց
զաւակի։ Երրորդն ալ առաւ 31
զանիկայ, նմանապէս եօթն ալ,
ու զաւակ չձգեցին ու մեռան։
Ամէնէն ետքը կնիկն ալ մեռաւ։ 32
Ուրեմն յարութեան ատենը ա- 33
նոնցմէ որո՞ւն կնիկը պիտի ըլլայ,
ինչու որ եօթն ալ զանիկայ կնիկ
ունեցան։ Եւ Յիսուս պատաս- 34
խան տալով անոնց ըսաւ, Այս աշ-
խարհիս որդիքը կնիկ կ'առնեն ու
էրկան կը տրուին։ Բայց անոնք 35
որ արժանի պիտի ըլլան այն աշ-
խարհին հասնելու ու մեռելներէն
յարութիւն առնելուն, ո՛չ կնիկ
կ'առնեն և ո՛չ էրկան կը տրուին.
Որովհետեւ ալ չեն կրնար մեռնիլ. 36
քանզի հրեշտակներուն հաւասար
են, ու Աստուծոյ որդիք են, ինչու
որ յարութեան որդիք են։ Բայց 37
մեռելներուն յարութիւն առնելը
Մովսէս ալ իմացուց մորենիին

պատմութեանը մէջ, երբոր կը կոչէ
Տէրը՝ Աբրահամին Աստուածը, ու
Իսահակին Աստուածը, և Յակո-
38 բին Աստուածը ։ Ու Աստուած
մեռելներուն Աստուածը չէ, հապա
կենդանիներուն, ինչու որ ամէնը
39 անոր կենդանի են ։ Նաև դպիրնե-
րէն մէկ քանին պատասխան տուին
ու ըսին, Վարդապետ՝ աղէկ ը-
40 սիր ։ Ու ալ մէկը համարձակու-
թիւն չէր ըներ անոր բան մը հար-
ցընելու ։
41 Նաև ըսաւ անոնց, Ի՞նչպէս կ'ը-
սեն թէ Քրիստոս Դաւիթի որ-
42 դին է. Նաև ինքը Դաւիթ Սաղ-
մոսներուն գրքին մէջ կ'ըսէ,
Տէրը իմ Տէրոջս ըսաւ, Նստէ՛
43 իմ՝ աջ կողմս, Մինչև որ քու
թշնամիներդ ոտքերուդ պատուան-
44 դան ընեմ ։ Ուրեմն Դաւիթ որ
զանիկայ Տէր կը կոչէ, ի՞նչպէս
անիկայ անոր որդին կ'ըլլայ ։
45 Նաև բոլոր ժողովուրդին առջևը
46 ըսաւ իր աշակերտներուն, Զգու-
շացէ՛ք դպիրներէն, որոնք կ'ու-
զեն փառաւոր հանդերձներով պը-
տըտիլ, և շուկաներուն մէջ բա-
րևներ կը սիրեն, ու ժողովարան-
ներուն մէջ առաջին աթոռները,
և ընթրիքներու մէջ առաջին բազ-
47 մոցները. Որոնք որբևայրիներուն
տուները կ'ուտեն ու ձևոյ երկ-
նալու համար աղօթքը կ'երկընցը-
նեն. ասոնք աւելի դատապարտու-
թիւն պիտի ընդունին ։

## ԳԼ. ԻԱ

1 Ու նայելով՝ տեսաւ հարուստները
որ իրենց ընծաները գանձանակը
2 կը ձգէին ։ Մէկ տնանկ որբևայրի
մըն ալ տեսաւ, որ հոն երկու
3 լումայ ձգեց ։ Ու ըսաւ, Ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի որ աս աղքատ
որբևայրին ամէնէն աւելի ձգեց.
4 Ինչու որ ամէն անոնք իրենց աւե-
լցածէն Աստուծոյ ընծաներուն մէջը
ձգեցին, բայց ասիկայ իր չքաւո-
րութենէն բոլոր իր ունեցած ապ-
րուստը ձգեց ։
5 Ու երբոր մէկ քանիները տա-
ճարին համար կ'ըսէին թէ գեղե-
ցիկ քարերով ու նուէրներով զար-
դարուած է, ըսաւ, Այս բաները 6
որ կը տեսնէք, օրեր պիտի գան
որ ան ատենը քար մը քարի վրայ
պիտի չմնայ որ չքակուի ։ Հար- 7
ցուցին իրեն ու ըսին. Վարդապետ՝
ե՞րբ պիտի ըլլան աս բաները, և
ի՞նչ է նշանը՝ երբոր աս բաները
պիտի ըլլան ։ Ան ալ ըսաւ, 8
Զգո՛յշ կեցէք՝ չխաբուիք, ինչու
որ շատերը պիտի գան իմ անու-
նովս ու ըսեն թէ Ես եմ Քրի-
ստոսը. ու ժամանակը մօտե-
ցած է. ուրեմն անոնց ետևէն չեր-
թաք ։ Բայց երբոր լսէք պատե- 9
րազմներ և խռովութիւններ՝ մի՛
վախնաք, ինչու որ պէտք է առաջ
աս բաները ըլլան, բայց վախճանը
իսկոյն չէ ։ Ան ատենը ըսաւ ա- 10
նոնց, Ազգ ազգի վրայ պիտի ելլէ,
ու թագաւորութիւն թագաւորու-
թեան վրայ. Նաև տեղ տեղ մեծ 11
երկրաշարժութիւններ պիտի ըլլան,
ու սովեր և մահտարաժամներ,
նաև երկինքէն ահռելի բաներ և
մեծ նշաններ պիտի ըլլան ։ Բայց 12
աս ամէն բաներէն առաջ իրենց
ձեռքերը ձեզի պիտի զարնեն ու
հալածեն, և ժողովարաններու ու
բանտերու պիտի մատնեն. և իմ
անուանս համար թագաւորներու ու
կուսակալներու առջև պիտի տա-
րուիք ։ Նաև աս բաները վերջը 13
ձեզի վկայութիւն մը պիտի ըլլայ ։
Ուստի ձեր սրտին մէջը դրէք՝ որ 14
առաջուց չմտածէք պատասխան
տալու վրայով ։ Վասն զի ես 15
ձեզի բերան ու իմաստութիւն պի-
տի տամ, որուն պիտի չկրնան դէմ
խօսիլ, կամ դէմ կենալ ձեր
ամէն հակառակորդները ։ Նաև 16
պիտի մատնուիք ծնողքներէ ու
եղբայրներէ և ազգականներէ ու
բարեկամներէ, ու ձեզմէ պիտի
սպաննեն. Նաև իմ անուանս համար 17
ամենուն ատելի պիտի ըլլաք.
Բայց մէկ մազ մը ձեր գլխէն պիտի 18
չկորսուի ։ Ձեր համբերութիւ- 19
նովը հոգիներդ պիտի ստանաք ։
Ու երբոր տեսնէք Երուսաղէմը 20
չորս կողմէն զօրքերով պատած,

ան ատենը գիտցէք որ անոր աւե-
21 րումը մօտ է։ Այն ատենը Հրէ-
աստանի մէջ եղողները լեռները
թող փախչին, ու անոր մէջ ե-
ղողները թող հեռանան, և անոնք
որ ագարակներն են, թող չմտնեն
22 անոր մէջը։ Վասն զի ան օրերը
վրէժխնդրութեան օրեր են, որ
բոլոր գրուածները կատարուին։
23 Բայց վա՜յ ան օրերը յղի եղողներուն
ու ծիծ տուողներուն, ինչու որ մեծ
նեղութիւն պիտի ըլլայ երկրին վը-
րայ, ու բարկութիւն պիտի գայ աս
24 ժողովուրդին վրայ. Եւ սուրի բեր-
նով պիտի իյնան, ու բոլոր ազգե-
րուն մէջ գերի պիտի տարուին. ու
Երուսաղէմ ազգերուն ոտից կոխան
պիտի ըլլայ, մինչև որ ազգերուն
25 ժամանակները լմըննան։ Ու արե-
գակին և լուսնին ու աստղերուն
վրայ նշաններ պիտի ըլլան, ու
երկրի վրայ ազգերը ապշութեամբ
պիտի տագնապին, և ծովը ու ա-
26 լիքները պիտի գոռան. Մարդոց
սիրտերը պիտի նուաղին իրենց վա-
խէն՝ և աշխարհի վրայ գալու բա-
ներուն սպասելէն, ինչու որ երկ-
նից զօրութիւնները պիտի շարժին։
27 Եւ ան ատենը պիտի տեսնեն Որ-
դին մարդոյ ամպի մէջ եկած զօ-
28 րութիւնով ու մեծ փառքով։ Ու
երբոր աս բաները սկսին ըլլալ,
ելէք ու գլուխնիդ բարձրացու-
ցէք, ինչու որ ձեր փրկութիւնը
մօտ է։

29 Եւ առակ մը ըսաւ անոնց, Տե-
սէք թզենին ու ամէն ծառերը.
30 Երբոր կը բողբոջին, տեսնելով՝
դուք ձեզմէ կ'իմանաք թէ ալ ա-
31 մառը մօտ է։ Նոյնպէս ալ դուք
երբոր աս բաները եղած տեսնէք,
գիտցէք որ Աստուծոյ թագաւորու-
32 թիւնը մօտ է։ Ճշմարիտ կ'ըսեմ
ձեզի, որ աս ազգը պիտի չանցնի,
մինչև որ աս ամէն բաները ըլլան։
33 Երկինք ու երկիր պիտի անցնին,
բայց իմ խօսքերս բնաւ պիտի
34 չանցնին։ Իսկ դուք զգուշացէք
ձեր անձերուն, չըլլայ որ սիրտեր-
նիդ կերուխումով ու գինովութիւ-
նով և աշխարհային զբաղմունքնե-
րով ծանրանայ, ու յանկարծակի
ան օրը ձեր վրայ հասնի. Վասն 35
զի բոլոր երկրին երեսը բնակողնե-
րուն ամենուն վրայ որոգայթի մը
պէս պիտի հասնի։ Ուստի ար- 36
թուն կեցէք, ու ամէն ատեն ա-
ղօթք ըրէք, որ արժանի ըլլաք ան
բոլոր ըլլալու բաներէն ազատուե-
լու և Որդւոյ մարդոյ առջևը կայ-
նելու։

Ու ցորեկները տաճարին մէջ կը 37
սորվեցընէր, և գիշերները կ'ելլէր
Ձիթենեաց ըսուած լեռը կը կե-
նար։ Եւ բոլոր ժողովուրդը ա- 38
ռտուանց կանուխ իրեն կ'երթային
տաճարը՝ իր խօսքերը լսելու։

## ԳԼ. ԻԲ

Բաղարջակերաց տօնը մօտեցաւ որ 1
Զատիկ կ'ըսուէր. Եւ քա- 2
հանայապետները ու դպիրները կը
փնտռէին թէ ինչպէս սպաննեն
զանիկայ, քանզի ժողովուրդէն կը
վախնային։

Եւ Սատանան Իսկարիովտացի 3
մականուանեալ Յուդային ներսը
մտաւ, որ անիկայ տասնըերկուքին
համրանքէն էր։ Եւ գնաց քահա- 4
նայապետներուն ու իշխաններուն
հետ խօսք ըրաւ թէ ինչպէս զանի-
կայ մատնէ անոնց։ Անոնք ալ ու- 5
րախացան և խոստացան անոր ըս-
տակ տալ։ Ու ինքը վրան ա- 6
ռաւ, և պատեհութիւն մը կը
փնտռէր որ զանիկայ մատնէ անոնց
առանց բազմութեանը ժողվուե-
լուն։

Եւ բաղարջակերաց օրը եկաւ, 7
որուն մէջ պէտք էր զատիկը մոր-
թել։ Ու խրկեց Պետրոսը և 8
Յովհաննէսը ու ըսաւ, Գացէք
պատրաստեցէք մեզի զատիկը որ
ուտենք։ Անոնք ալ ըսին անոր, 9
Ո՞ւր կ'ուզես որ պատրաստենք։
Եւ ըսաւ անոնց, Ահա երբոր քա- 10
ղաքը մտնէք, ձեզի մարդ մը պիտի
պատահի որ ուսին վրայ ջուրի սա-
փոր մը կը տանի. անոր ետևէն
գացէք ան տունը՝ ուր որ ինքը կը
մտնէ. Եւ ան տանը տիրոջը ը- 11
սէք, Վարդապետը կ'ըսէ քեզի,

Ո՞ւր է օթեւանը՝ որ հոն աշակերտ-
ներուս հետ մէկտեղ զատիկը ու-
12 տեմ ։ Ան ալ ձեզի յարդարուած
մեծ վերնատուն մը պիտի ցուցնէ ,
13 հոն պատրաստեցէք ։ Եւ գացին
գտան ինչպէս որ իրենց ըսաւ , ու
զատիկը պատրաստեցին ։
14 Ու երբոր ժամը հասաւ՝ սեղան
նստաւ , և տասնըերկու առաքեալ-
15 ները իր հետը ։ Ու ըսաւ անոնց ,
Փափաքելով փափաքեցայ որ այս
զատիկը ձեզի հետ ուտեմ իմ չար-
16 չարուելէս առաջ ։ Վասնզի կ'ըսեմ
ձեզի որ ալ ընաւ ասկէ պիտի
չուտեմ՝ մինչև որ Աստուծոյ թա-
գաւորութեանը մէջ կատարուի ։
17 Եւ գաւաթը առաւ՝ գոհացաւ ու
ըսաւ , Առէ՛ք ասիկայ ու բաժնե-
18 ցէ՛ք ձեր մէջը ․ Ինչու որ ձեզի
կ'ըսեմ որ ընաւ որթին բերքէն
պիտի չխմեմ՝ մինչև որ Աստուծոյ
թագաւորութիւնը գայ ։
19 Եւ հաց առաւ՝ գոհացաւ , կտրեց
և տուաւ անոնց ու ըսաւ , Աս է
իմ մարմինս , որ ձեզի համար տը-
րուած է ․ ասիկա՛յ ըրէք զիս յի-
20 շելու համար ։ Նոյնպէս ալ գա-
ւաթը առաւ ընթրիքէն ետև ու
ըսաւ , Աս գաւաթը նոր ուխտ է
իմ արիւնովս , որ ձեզի համար կը
թափուի ։
21 Բայց ահա՛ զիս մատնողին ձեռքը
22 ինծի հետ աս սեղանս է ։ Եւ յի-
րաւի Որդին մարդոյ կ'երթայ՝ ին-
չպէս որ սահմանուած է , բայց վա՛յ
այն մարդուն՝ որուն ձեռքովը անիկայ
23 կը մատնուի ։ Եւ անոնք սկսան
մէջերնին հարցուփորձ ընել , թէ
իրենցմէ ո՛վ է որ այն բանը պիտի
ընէ ։
24 Վէճ մըն ալ եղաւ անոնց մէջը
թէ իրենցմէ ո՛վ մեծ պիտի սե-
25 պուի ։ Եւ անիկայ ըսաւ անոնց ,
Ազգաց թագաւորները անոնց կը
տիրեն , և անոնք որ կ'իշխեն անոնց՝
26 բարերար կը կոչուին ․ Բայց դուք
անանկ պիտի չըլլաք ։ հապա այն որ
ձեր մէջը մեծ է՝ պզտիկին պէս թող
ըլլայ , և առաջնորդը սպասաւորին
27 պէս ։ Վասնզի ո՞վ է մեծը , սե-
ղան նստողը թէ սպասաւորը ․ չէ՞

որ սեղան նստողը ․ սակայն ես ձեր
մէջը սպասաւորի մը պէս եմ ։ Եւ 28
դուք անոնք էք՝ որ միշտ ինծի հետ
կը կենայիք իմ փորձութիւններուս
մէջ ․ Ես ալ ձեզի թագաւորութիւն 29
մը ուխտ կ'ընեմ , ինչպէս որ իմ
Հայրս ինծի թագաւորութիւն մը
ուխտ ըրաւ ․ Որ դուք իմ սեղա- 30
նէս ուտէք ու խմէք իմ թագաւո-
րութեանս մէջ , և աթոռներու վը-
րայ նստիք՝ Իսրայէլի տասնըերկու
ցեղերը դատելու ։
Եւ Տէրը ըսաւ , Սիմո՛ն Սիմո՛ն՝ 31
ահա Սատանան ձեզ փնտռեց , որ
ցորենի պէս խարբալէ ․ Բայց ես 32
քեզի համար աղօթք ըրի որ քու
հաւատքդ չպակսի ․ և դուն երբոր
դարձի գաս , քու եղբայրներդ ալ
հաստատէ՛ ։ Իսկ ինքը ըսաւ ա- 33
նոր , Տէ՛ր՝ ես պատրաստ եմ քե-
զի հետ բանտը երթալու ալ , մեռ-
նելու ալ ։ Եւ անիկայ ըսաւ ։ 34
Պետրո՛ս՝ քեզի կ'ըսեմ որ այսօր
հաւը պիտի չխօսի՝ մինչև որ դուն
երեք անգամ ուրանաս , ըսելով թէ
զիս չես ճանչնար ։
Եւ ըսաւ անոնց , Երբոր ձեզ 35
խրկեցի առանց քսակի ու պարկի և
կօշիկներու , բանի մը կարօտ եղա՞ք ։
Անոնք ալ ըսին , Բանի՛ մըն ալ 36
չէ ․ Ետքը ըսաւ , Բայց հիմա ան
որ քսակ ունի՝ թող ա՛ն ալ առնէ ,
նոյնպէս ալ պարկը ․ և ան որ սուր
չունի , թող իր հանդերձը ծախէ՛
ու իրեն թո՛ւր մը ծախու առնէ ․
Վասնզի կ'ըսեմ ձեզի որ աս գը- 37
րուած բանն ալ պէտք է որ իմ
վրաս կատարուի , Եւ անօրէններու
հետ սեպուեցաւ ․ քանզի ինչ որ
ինծի համար որոշուած է , կատա-
րուելու վրայ է ։ Անոնք ալ ը- 38
սին , Տէ՛ր՝ ահա հոս երկու թուր
կայ ․ ան ալ ըսաւ անոնց , Հերիք
են ։
Ու ելաւ իր սովորութեանը պէս 39
Ձիթենեաց լեռը գնաց ․ աշա-
կերտներն ալ իր ետևէն գացին ։
Երբոր այն տեղը հասաւ , ըսաւ ա- 40
նոնց , Աղօթք ըրէք որ փորձու-
թեան մէջ չմտնէք ։ Եւ ինքը ա- 41
նոնցմէ զատուեցաւ քարընկեցի մը

չափ, ու ծնկան վրայ գալով աղօթք
42 կ'ընէր, Ու կ'ըսէր, Հա՛յր՝ թէ որ
կ'ուզես, աս գաւաթը ինծմէ անցո՛ւր. բայց չէ՛ թէ իմ կամքս՝
43 հապա քու կամքդ թող ըլլայ։ Ու
երկինքէն հրեշտակ մը երեւցաւ անոր և կը զօրացընէր զանիկայ.
ու սաստիկ նեղութեան մէջ ըլլալով՝ աւելի ջերմեռանդութեամբ ա-
44 ղօթք կ'ընէր։ Ու իր քրտինքը
արիւնի մեծ կաթիլներու պէս էր,
որ գետինը կը թափուէր։
45 Ու աղօթքէն ելլելով աշակերտներուն քովը եկաւ, ու գտաւ ա-
46 նոնք տրտմութենէն քնացած. Ու
ըսաւ անոնց, Ինչո՞ւ կը քնանաք.
ելէ՛ք աղօ՛թք ըրէ՛ք՝ որ փորձութեան
մէջ չմտնէք։
47 Ու երբոր դեռ կը խօսէր, ահա՛
մէկ բազմութիւն մը, և Յուդա
ըսուածն ալ՝ տասներկուքէն մէկը
անոնց առջեւէն կ'երթար, ու Յի-
սուսին մօտեցաւ որ զանիկայ համ-
48 բուրէ։ Բայց Յիսուս ըսաւ անոր,
Յո՛ւդա՝ համբուրելո՞վ կը մատնես
49 Որդին մարդոյ։ Երբոր անոր բո-
լորտիքը եղողները տեսան ինչ որ
պիտի ըլլար, ըսին անոր, Տէ՛ր՝
50 թուրո՞վ զարնենք։ Ու անոնցմէ
մէկը քահանայապետին ծառային
զարկաւ ու մէկդի հանեց անոր
51 աջ ականջը։ Պատասխան տուաւ
Յիսուս ու ըսաւ, Թո՛ղ տուէք
մինչեւ աս տեղը. և դպաւ անոր
52 ականջին ու բժշկեց զանիկայ։ Ու
Յիսուս իր վրայ եկող քահանայա-
պետներուն ու տաճարին իշխաննե-
րուն ու ծերերուն ըսաւ, Իբր թէ
աւազակի՞ վրայ ելաք սուրերով ու
53 բիրերով։ Ամէն օր ձեզի հետ էի
տաճարին մէջ, և ինծի ձեռք չզար-
կիք. բայց աս է ձեր ժամանակը
ու խաւարին իշխանութիւնը։
54 Ու զանիկայ բռնելով տարին ու
քահանայապետին տունը մտցու-
ցին. Պետրոս ալ հեռուանց անոր
55 ետեւէն կ'երթար։ Երբոր կրակ
վառեցին գաւիթին մէջ ու մէկտեղ
նստան, Պետրոս ալ նստաւ ա-
56 նոնց մէջը։ Մէկ աղախին մը
տեսնելով զանիկայ որ կրակին

քովը նստեր էր, նայեցաւ անոր ու
ըսաւ, Ասիկայ ալ անոր հետն էր։
Բայց Պետրոս ուրացաւ զանիկայ 57
ու ըսաւ, Կնի՛կ՝ ես անիկայ չեմ
ճանչնար։ Ու քիչ մը ետքը 58
մէկ ուրիշ մը տեսաւ զանիկայ ու
ըսաւ, Դուն ալ անոնցմէ ես. և
Պետրոս ըսաւ, Մա՛րդ՝ ես անոնցմէ
չեմ։ Ու ժամու մը չափ անցնե- 59
լէն ետև, ուրիշ մըն ալ կը պնդէր
ու կ'ըսէր, Յիրաւի ասիկայ ալ
անոր հետն էր, ինչու որ Գալի-
լեացի է։ Բայց Պետրոս ըսաւ, 60
Մա՛րդ՝ չեմ գիտեր ինչ կը զրու-
ցես դուն. և քանի որ իր խօսքը
բերանն էր, իսկոյն հաւը խօսեցաւ։
Ու Տէրը դարձաւ ու Պետրոսին 61
նայեցաւ. Պետրոս ալ միտքը բե-
րաւ Տէրոջը խօսքը՝ որ իրեն ըսեր
էր թէ Դեռ հաւը չխօսած՝ իրեք
անգամ պիտի ուրանաս զիս։ Ու 62
Պետրոս դուրս ելլելով դառնապէս
լացաւ։
Ու այն մարդիկը որ Յիսուսը 63
կը պահէին, ծաղր կ'ընէին զանի-
կայ, ու կը ծեծէին. Ու անոր 64
աչքերը ծածկելով՝ անոր երեսին
կը զարնէին, ու կը հարցընէին
իրեն ըսելով, Մարգարէացի՛ր՝ ո՞վ
է ան որ քեզի զարկաւ։ Ու ուրիշ 65
շատ բաներ կը զրուցէին իրեն հայ-
հոյելով։
Ու երբոր առտու եղաւ՝ ժողո- 66
վուրդին ծերակոյտը, քահանայա-
պետները և դպիրները ժողվուե-
ցան, ու տարին զանիկայ իրենց
ատեանը՝ և ըսին, Թէ որ Քրիս-
տոսը դուն ես, ըսէ՛ մեզի։ Ըսաւ 67
անոնց, Թէ որ ձեզի ըսեմ ալ,
պիտի չհաւատաք. Ու թէ որ ձե- 68
զի բան մը հարցընեմ, ինծի պա-
տասխան պիտի չտաք, ո՛չ ալ զիս
պիտի արձակէք։ Ասկէ ետև Որ- 69
դին մարդոյ Աստուծոյ զօրութեանը
աջ կողմը պիտի նստի։ Ու ա- 70
մէնքը ըսին, Ուրեմն դուն Աստու-
ծոյ որդի՞ն ես. ինքն ալ ըսաւ ա-
նոնց, Դուք կ'ըսէք թէ ես եմ։
Ու անոնք ըսին, Ալ ի՞նչ պէտք է 71
մեզի վկայութիւն, ինչու որ մենք
մեզմէ անոր բերնէն լսեցինք։

## ԳԼ. ԻԳ

1 Ու անոնց բոլոր բազմութիւնը
ոտք ելլելով՝ տարին զանիկայ
2 Պիղատոսին . Ու սկսան անոր վը-
րայով ամբաստանութիւն ընել և
ըսել , Ասիկայ գտանք՝ որ մեր ազ-
գը կը մոլորցընէր , ու կայսրին
հարկ տալէն կ'արգիլէր , և իրեն
համար կ'ըսէր թէ ինքը Քրիստոս
3 ու թագաւոր է ։ Իսկ Պիղատոս
հարցուց անոր ու ըսաւ , Հրէից
թագաւորը դո՞ւն ես . անիկայ ալ
պատասխան տուաւ անոր ու ըսաւ ,
4 Դուն կ'ըսես ։ Ու ատենը Պի-
ղատոս քահանայապետներուն ու
ժողովուրդներուն ըսաւ , Ես աս
մարդուն վրայ մէկ յանցանք մը չեմ
5 գտներ ։ Բայց անոնք ոտք կը կո-
խէին ու կ'ըսէին թէ Ժողովուր-
դը իրար կ'անցընէ , ու բոլոր
Հրէաստանի մէջ կը սորվեցընէ՝
Գալիլեայէն սկսած մինչև աս տեղս ։
6 Ու Պիղատոս երբոր լսեց Գալի-
լեայի համար՝ հարցուց թէ աս
7 մարդը Գալիլեացի՞ է ։ Ու երբոր
իմացաւ թէ Հերովդէսի իշխանու-
թեան տակէն էր , զանիկայ Հե-
րովդէսին խրկեց , քանզի ան ալ
ան օրերը Երուսաղէմ էր ։
8 Ու Հերովդէս երբոր Յիսուսը
տեսաւ , շատ ուրախացաւ , վասն
զի ինքը շատոնցմէ կը փափաքէր
անիկայ տեսնելու . ինչու որ անոր
վրայով շատ բաներ լսած էր ,
և կը յուսար որ անկէ եղած նը-
9 շան մը տեսնէ ։ Ու շատ խօսքե-
րով հարցուփորձ կ'ընէր անոր ,
բայց անիկայ բնաւ իրեն պատաս-
10 խան մը չտուաւ ։ Քահանայա-
պետները ու դպիրներն ալ կեցեր
էին , և սաստիկ ամբաստանութիւն
11 կ'ընէին անոր վրայ ։ Իսկ Հե-
րովդէս անարգեց զանիկայ իր զօրա-
կաններուն հետ , ու ծաղր ընելէն
ետև փառաւոր հանդերձներ հագ-
ցուց անոր , և նորէն Պիղատոսին
12 խրկեց ։ Ու ան օրը Պիղատոս և
Հերովդէս իրարու հետ բարեկամ
եղան . որովհետև առաջ իրենց
մէջը թշնամութիւն կար ։

Ու Պիղատոս քահանայապետ- 13
ները ու իշխանները և ժողովուրդը
մէկտեղ կանչեց , Ու ըսաւ անոնց ։ 14
Աս մարդը առջևս բերիք ժողո-
վուրդը մոլորցընողի մը պէս , և
ահա ես ձեր առջևը քննութիւն ը-
նելով՝ ատոր համար ձեր ըրած ամ-
բաստանութիւններէն յանցանք մը
չգտայ աս մարդուն վրայ . Ո՛չ ալ 15
Հերովդէս , ինչու որ ձեզ անոր
խրկեցի , և ահա ատիկայ մահու
արժանի գործ մը ըրած չէ՛ . Ու- 16
րեմն պատիժ մը տամ ատոր ու
արձակեմ . ( Իսկ տօնին ատենը 17
պէտք էր որ մէկը արձակէ անոնց .)
Ու բոլոր բազմութիւնը մէկտեղ 18
աղաղակեցին ըսելով , Վերցուր
ատիկայ ու Բարաբբան արձակէ
մեզի . ( Որ անիկայ քաղաքին մէջ 19
եղած խռովութեան մը և մարդաս-
պանութեան համար բանտը դը-
րուած էր ։) Ու Պիղատոս Յի- 20
սուսը արձակել ուզելով , նորէն
խօսեցաւ անոնց ։ Բայց անոնք 21
կ'աղաղակէին ու կ'ըսէին , Խա-
չը հանէ ատիկայ՝ խաչը հանէ ։
Ու ինքը երրորդ անգամ ըսաւ ա- 22
նոնց , Բայց ի՞նչ չար գործ ըրած
է ատիկայ . ես ատոր վրայ մահու
արժանի յանցանք մը չգտայ . ու-
րեմն պատիժ մը տամ ատոր ու
արձակեմ ։ Իսկ անոնք մեծաձայն 23
աղաղակներով ոտք կը կոխէին , ու
կ'ուզէին որ անիկայ խաչուի . և ա-
նոնց ու քահանայապետներուն ձայ-
ները զօրաւոր եղան ։ Ու Պիղա- 24
տոս վճռեց որ անոնց խնդիրքը 'ի
գործ դրուի ։ Ու անոնց ուզած 25
մարդը՝ որ խռովութեան և մարդաս-
պանութեան համար բանտը դրուած
էր , արձակեց անոնց , և Յիսուսը
իրենց կամացը յանձնեց ։
Ու երբոր զանիկայ կը տանէին , 26
Սիմոն Կիւրենացի ըսուած մէկը
բռնեցին՝ որ արտէն կու գար , և
խաչը անոր վրայ դրին որ Յիսուսի
ետևէն բերէ ։ Ու անոր ետևէն 27
կ'երթար մեծ բազմութիւն ժողո-
վրդոց , նաև կանանց , որոնք կ'ող-
բային ու կու լային անոր համար ։
Ու Յիսուս դարձաւ անոնց ու ը- 28

տուր ։ Ո՛վ Երուսաղէմի աղջիկներ՝
իմ վրաս մի՛ լաք, հապա ձեր ան-
ձերուն վրայ ու ձեր զաւակներուն
29 վրայ լացէք ։ Ինչու որ ահա օրեր
կու գան՝ որոնց մէջ պիտի ըսեն,
Երանի՜ ամուլներուն, և ան որո-
վայններուն որ չծնան, և ծիծե-
30 րուն որ կաթ չտուին ։ Ան ատենը
պիտի սկսին ըսել լեռներուն, Մեր
վրայ ինկէք, ու բլուրներուն, Մեզ
31 ծածկեցէ՛ք ։ Վասն զի թէ որ դա-
լար փայտին ասանկ կ'ընեն, հապա
չորին ի՞նչ պիտի ըլլայ ։
32 Ուրիշ երկուք ալ չարագործներ
բերուեցան անոր հետը սպաննուե-
33 լու ։ Երբոր Գագաթ ըսուած տե-
ղը գացին, հոն խաչը հանեցին զա-
նիկայ, և ան չարագործներն ալ
մէկը աջ կողմէն ու միւսը ձախ
34 կողմէն խաչեցին ։ Եւ ըսաւ Յի-
սուս, Հա՛յր՝ թողութիւն տուր
ասոնց, ինչու որ չեն գիտեր ինչ
կ'ընեն ։ Ու անոր հանդերձները
բաժնելու ատեննին վիճակ ձգեցին ։
35 Եւ ժողովուրդը կայներ կը նայէր ·
իշխաններն ալ անոնց հետ կը նա-
խատէին զանիկայ ու կ'ըսէին, Ու-
րիշները ազատեց, թող ինքզինքն
ալ ազատէ՝ թէ որ ատիկայ է Քրի-
ստոս՝ Աստուծոյ ընտրեալը ։
36 Ծաղր կ'ընէին անիկայ զինուոր-
ներն ալ, առջևը կու գային՝ քա-
37 ցախ կը մատուցանէին անոր, Ու
կ'ըսէին, Թէ որ դուն ես Հրէից
թագաւորը, քու անձդ ազատէ ։
38 Եւ գիր մը գրուած էր անոր վրայ
Յունարէն ու Լատիներէն և Եբ-
րայեցերէն գիրերով, Թէ Ասիկայ
է Հրէից թագաւորը ։
39 Եւ ան կախուած չարագործնե-
րուն մէկը հայհոյութիւն կ'ընէր ա-
նոր ու կ'ըսէր, Թէ որ դուն Քրի-
ստոսն ես, ազատէ քու անձդ ու
40 մեզ ալ ։ Իսկ միւսը պատասխան
տուաւ և զանիկայ յանդիմանե-
լով ըսաւ, Դուն Աստուծմէ չե՞ս
վախնար, որովհետև նոյն դատա-
41 պարտութեան մէջն ես ։ Ու մենք
իրաւունքով, քանզի ահա մեր ը-
րածներուն արժանաւոր հատուցու-
մը կ'առնենք · բայց ասիկայ մէկ
դէշ բան մը չըրաւ ։ Եւ ըսաւ 42
Յիսուսի, Տէ՛ր՝ յիշէ զիս, երբ-
որ քու թագաւորութիւնովդ գաս ։
Յիսուս ալ ըսաւ անոր, Ճշմա- 43
րիտ կ'ըսեմ քեզի, Դուն այսօր
իմ հետս դրախտին մէջը պիտի ըլ-
լաս ։
Եւ ժամը վեցին ատեններն էր, 44
ու բոլոր երկրին վրայ խաւար եղաւ
մինչև իններորդ ժամը · և արևը
խաւարեցաւ, Ու տաճարին վա- 45
րագոյրը մէջտեղէն պատռեցաւ · Եւ 46
Յիսուս մեծ ձայնով աղաղակեց ու
ըսաւ, Հա՛յր՝ քու ձեռքդ կ'աւան-
դեմ իմ հոգիս · ու երբոր աս ը-
սաւ, հոգի տուաւ ։
Եւ հարիւրապետը եղած բանը 47
տեսնելով՝ Աստուծոյ փառք տուաւ
ու ըսաւ, Իրաւցընէ աս մարդը
արդար էր ։ Եւ աս տեսարանը 48
դիտելու համար ժողվուած բոլոր
բազմութիւնները եղած բաները
տեսնելով՝ կուրծքերնուն կը զար-
նէին ու ետ կը դառնային ։ Ամէն 49
իր ճանչուորներն ալ հեռուն կայներ
էին, նոյնպէս ալ ան կնիկները՝ որ
իր ետևէն եկեր էին Գալիլեայէն,
ու կը տեսնէին աս բաները ։
Եւ ահա մէկ մարդ մը Յովսէփ 50
անունով, որ խորհրդական էր՝ բա-
րի ու արդար մարդ մը, (Ասիկայ 51
անոնց խորհուրդին ու գործքին հա-
ւանութիւն տուած չէր,) Հրէա-
ներուն Արիմաթիա քաղաքէն, որ
ինքն ալ Աստուծոյ թագաւորու-
թեանը կը սպասէր · Ասիկայ Պի- 52
ղատոսին գնաց, ու Յիսուսի մար-
մինը խնդրեց ։ Եւ զանիկայ խաչէն 53
իջեցընելով՝ կտաւով փաթթեց,
ու քարէ փորուած գերեզմանի մը
մէջ դրաւ, որ հոն բնաւ մէկը դը-
րուած չէր ։ Եւ ան օրը ուրբաթ Է.
էր, ու շաբաթը պիտի սկսէր ։
Եւ անոր ետևէն գացին ան կնիկ- 55
ները՝ որ իրեն հետ Գալիլեայէն
եկած էին, ու տեսան գերեզմանը՝
և թէ ինչպէս անոր մարմինը հոն
դրուեցաւ ։ Եւ դառնալով՝ խուն- 56
կեր ու եղեր պատրաստեցին, և
շաբաթ օրը հանգստացան պատուի-
րանքին համեմատ ։

## ԳԼ. ԻԴ

1 Ու միաշաբթի օրը առտուանց շատ
կանուխ գերեզմանը եկան, ու
բերին այն խունկերը որ պատրաս-
տեր էին, և ուրիշ կնիկներ ալ ա-
2 նոնց հետ: Ու քարը գերեզմանէն
3 մէկդի գլտորցուած գտան: Ու
ներս մտնելով՝ Տէր Յիսուսի մար-
4 մինը հոն չգտան: Ու եղաւ որ
երբ անոնք աս բանիս համար տա-
րակուսանաց մէջ էին, ահա երկու
մարդիկ լուսափայլ հանդերձներով
5 հասան անոնց: Ու երբոր վախով
լեցուած՝ երեսնին դէպ 'ի գետինը
ծռեցին, ան մարդիկը ըսին անոնց,
Ինչո՞ւ համար ողջը մեռելներուն
6 հետ կը փնտռէք. Հոս չէ՛ ան,
հապա յարութիւն առաւ. միտ-
քերնիդ բերէք ինտոր խօսեցաւ
ձեզի՝ երբոր դեռ Գալիլեայի մէջ
7 էր, Ըսելով թէ Որդին մարդոյ
պէտք է որ մեղաւոր մարդոց ձեռքը
մատնուի ու խաչը ելլէ, ու եր-
8 րորդ օրը յարութիւն առնէ. Ու
միտքերնին բերին անոր խօսքերը:
9 Ու գերեզմանէն դառնալով աս ա-
մէն բաները պատմեցին տասնու-
10 մէկին, ու բոլոր ուրիշներուն: Ու
էին Մարիամ Մագդաղենացին ու
Յովհաննա և Յակոբոսին մայրը
Մարիամ, ու անոնց հետ ուրիշներ
ալ, որ աս բաները առաքեալնե-
11 րուն պատմեցին: Ու անոնց առ-
ջևը ցնորական խօսքեր երևցաւ
անոնց ըրուցածը, ու չէին հաւա-
12 տար անոնց: Բայց Պետրոս ելաւ
վազեց դէպ 'ի գերեզմանը, ու
ծռելով նայեցաւ և տեսաւ որ
միայն կտաւները կը կենային. ու
գնաց՝ իր միտքին մէջ զարմանալով
ան եղածին վրայ:

13 Ու ահա անոնցմէ երկուքը նոյն
օրը մէկ գեղ մը կ'երթային, որ
Երուսաղեմէն վաթսուն ասպարէզ
հեռու էր, և անոր անունը Էմ-
14 մաուս էր: Ու անոնք կը խօսէին
իրարու հետ աս բոլոր եղած անց-
15 քերուն վրայով: Ու եղաւ որ երբ
անոնք կը խօսակցէին ու խորհըր-
դածութիւն կ'ընէին, Յիսուս ինքն
ալ մօտենալով՝ հետերնին կ'եր-
թար: Բայց անոնց աչքերը բըռ- 16
նուած էին, որ զինքը չճանչնան:
Ու ըսաւ անոնց, Ի՞նչ է աս 17
խօսքերը, որ քալելով իրարու հետ
կը խօսակցիք, ու տրտմած ալ էք:
Պատասխան տուաւ անոնցմէ մէկը՝ 18
որուն անունը Կղէովպաս էր, ու
ըսաւ անոր, Դո՞ւն միայն Երու-
սաղեմի մէջ կը կենաս, ու չես գի-
տեր թէ ինչեր եղաւ հոն աս օրերս:
Ու ինքը ըսաւ անոնց, Ի՞նչ. ա- 19
նոնք ալ ըսին իրեն, Նազովրեցի
Յիսուսին համար, ան որ Աստու-
ծոյ և բոլոր ժողովուրդին առջևը
գործքով ու խօսքով զօրաւոր մար-
գարէ մը եղաւ. Ինչպէս քահա- 20
նայապետները ու մեր իշխանները
մահուան դատաստանի մատնեցին
անիկայ և խաչը հանեցին: Իսկ 21
մենք կը յուսայինք թէ անիկայ էր
որ Իսրայէլը պիտի ազատէր. և
աս ամենուն վրայ աս երրորդ օրն է
որ աս բաները եղաւ: Նաև մեր 22
մէջէն մէկ քանի կնիկներ ալ մեզ
զարմացուցին, որոնք առտուանց
կանուխ գերեզմանը գացին, Ու ա- 23
նոր մարմինը չգտնելով՝ եկան ու
ըսին թէ հրեշտակներու տեսիլք
ալ տեսան, որոնք ըսեր են թէ
անիկայ ողջ է: Ու մերիններէն 24
մէկքանիներն ալ գերեզմանը գա-
ցին ու անանկ գտան, ինչպէս
որ ան կնիկները ըրուցեցին, միայն
թէ զինքը չտեսան: Ան ալ ըսաւ 25
անոնց, Ո՛վ անմիտներ ու թու-
լասիրտներ հաւատալու ան բոլոր
բաներուն՝ որ մարգարէները խօսե-
ցան. Չէ՞ որ Քրիստոսի պէտք 26
էր աս չարչարանքները կրել, և իր
փառքը մտնել: Ու սկսելով Մով- 27
սէսէն և բոլոր մարգարէներէն՝ կը
մեկնէր անոնց, ինչ որ իրեն հա-
մար բոլոր գիրքերուն մէջ գրուած
էր: Երբոր մօտեցան ան գեղին՝ 28
ուր որ կ'երթային, ինքն ալ կը
ցուցընէր որպէս թէ աւելի հեռու
տեղ մը պիտի երթար: Բայց 29
ստիպեցին զինքը ու ըսին, Մեր
քովը կեցիր, ինչու որ իրիկունը
մօտ է և օրը իջած է. և մտաւ

30 անոնց հետ կենալու ։ Ու եղաւ
որ երբ ինքը անոնց հետ սեղան
նստաւ , հացը առաւ՝ օրհնեց , ու
31 կտրելով տուաւ անոնց ։ Ան ա-
տենը անոնց աչքերը բացուեցան
ու զինքը ճանչցան , և ինքը ա-
32 նոնցմէ աներևոյթ եղաւ ։ Ու իրա-
րու կ'ըսէին , Չէ՞ որ սիրտերնիս
մեր ներսի դին կը բորբոքէր , երբոր
ինքը մեր հետը կը խօսէր ճամբուն
մէջ , և գիրքերը կը մեկնէր մեզի ։
33 Ու ելան նոյն ժամուն Երուսա-
ղէմ դարձան , ու մէկտեղ ժող-
վուած գտան տասնըմէկը ու ա-
34 նոնց հետ եղողները , Որոնք կ'ըսէ-
ին թէ Իրաւցընէ Տէրը յարու-
թիւն առաւ , ու Սիմոնին երև-
35 ցաւ ։ Իսկ իրենք պատմեցին ինչ
որ ճամբուն վրայ եղաւ , և թէ ին-
տո՛ր ինքզինքը իրենց ճանչցուց հա-
ցը կտրած ատենը ։
36 Իսկ քանի որ աս բաները կը խօ-
սէին , Յիսուս ինքը կայնեցաւ ա-
նոնց մէջտեղը ու ըսաւ անոնց ,
37 Խաղաղութիւն ձեզի ։ Բայց ա-
նոնք զարհուրելով կը վախնային ,
ու կը կարծէին թէ ոգի մը կը տես-
38 նեն ։ Իսկ ըսաւ անոնց , Ինչո՞ւ
խռոված էք , և ինչո՞ւ սիրտեր-
նուդ մէջը խորհուրդներ կ'ելլեն ։
39 Տեսէ՛ք ձեռքերս ու ոտքերս , որ ես
ինքս եմ ․ շօշափեցէ՛ք զիս ու տե-
սէ՛ք ; վասն զի ոգին մարմին և ոս-
կորներ չունենար , ինչպէս որ զիս
40 կը տեսնէք որ ունիմ ։ Իսկ աս
ըսելով ձեռքերը ու ոտքերը ցու-
41 ցուց անոնց ։ Ու երբոր տակաւին
իրենց ուրախութենէն չէին հաւա-
տար՝ և զարմանքի մէջ էին , ըսաւ
անոնց ․ Ուտելիք մը ունի՞ք հոս ։
Անոնք ալ կտոր մը խորոված ձուկ 42
ու մեղրախորիսխ տուին իրեն ։
Իսկ առաւ կերաւ անոնց առջևը ։ 43
Իսկ ըսաւ անոնց , Ասոնք են ան 44
խօսքերը որ ձեզի խօսեցայ՝ երբոր
դեռ ձեր հետն էի , թէ Պէտք է որ
կատարուի ան ամէնը՝ որ Մովսէսի
օրէնքին մէջ ու մարգարէներուն
մէջ և սաղմոսներուն մէջ ինծի
համար գրուած են ։ Ան ատե- 45
նը անոնց միտքը բացաւ որ գիր-
քերը հասկընան ․ Իսկ ըսաւ ա- 46
նոնց թէ Ասանկ գրուած է , և ա-
սանկ պէտք էր Քրիստոսի չարչա-
րուիլ , ու երրորդ օրը մեռելներէն
յարութիւն առնել ․ Իսկ անոր ա- 47
նունովը ապաշխարութիւն ու մեղաց
թողութիւն քարոզուիլ բոլոր ազ-
գերու մէջ՝ Երուսաղեմէն սկսած ։
Ու դուք էք աս բաներուս վկանե- 48
րը ։ Իսկ ահա ես իմ Հօրս խոստ- 49
մունքը ձեր վրայ կը խրկեմ ․ բայց
դուք Երուսաղէմ քաղաքին մէջը
նստեցէ՛ք , մինչև որ վերէն զօրու-
թիւն առնէք վրանիդ ։
Իսկ զանոնք մինչև Բեթանիա 50
հանեց , ու իր ձեռքերը վեր վեր-
ցընելով օրհնեց անոնք ։ Իսկ ե- 51
ղաւ որ երբ անոնք կ'օրհնէր , զա-
տուեցաւ անոնցմէ ու վեր կ'ելլէր
երկինքը ։ Անոնք ալ երկրպա- 52
գութիւն ընելով անոր , մեծ ու-
րախութեամբ Երուսաղէմ դար-
ձան ․ Իսկ ամէն ատեն տաճարին 53
մէջն էին , ու կը գովաբանէին և
կ'օրհնէին զԱստուած ։ Ամէն ։

---

# ԱՒԵՏԱՐԱՆ ԸՍՏ ՅՈՎՀԱՆՆՈՒ

## ԳԼՈՒԽ Ա

1 Սկիզբէն էր Բանը , ու Բանը Աս-
տուծոյ քովն էր , և Բանը Աս-
2 տուած էր ։ Անիկայ սկիզբէն Աս-
3 տուծոյ քովն էր ։ Ամէն բան ա-
նով եղաւ , և առանց անոր բան մը
չեղաւ՝ ինչ որ եղաւ ։ Կեանքը 4
անով էր , ու կեանքը մարդոց լոյսն
էր ․ Իսկ լոյսը խաւարի մէջ կը 5
լուսաւորէր ; ու խաւարը զանիկայ
չհասկըցաւ ։
Աստուծմէ խրկուած մարդ մը 6
կար , որուն անունը Յովհաննէս

7 եր ։ Ասիկայ վկայութեան եկաւ
որ Լուսոյն համար վկայէ , որ ա-
մէնքը անոր միջոցովը հաւատան ։
8 Ինքը չէր այն Լոյսը , հապա եկաւ
որ Լուսոյն համար վկայութիւն տայ ։
9 Ճշմարիտ Լոյսը այն էր , որ աշ-
խարհ եկող բոլոր մարդիկը կը լու-
10 սաւորէ ։ Ինքը աշխարհի մէջ
էր , և աշխարհս անով եղաւ , ու
11 աշխարհս զանիկայ չճանչցաւ ։ Ի-
րեններուն եկաւ , և իրենները զին-
12 քը չընդունեցին ։ Բայց որոնք որ
զինքը ընդունեցին , անոնց իշխա-
նութիւն տուաւ Աստուծոյ որդիներ
ըլլալու , որոնք կը հաւատան իր
13 անունը ․ Որ անոնք ոչ արիւնէ
և ոչ մարմինի կամքէ՝ ոչ ալ մար-
դու կամքէ , հապա Աստուծմէ ծը-
14 նան ։ Ու Բանը մարմին եղաւ
ու մեր մէջը բնակեցաւ , (և անոր
փառքը տեսանք , Հօրմէն միածինի
փառքին պէս ,) շնորհքով ու ճըշ-
մարտութիւնով լեցուն ։
15 Յովհաննէս վկայեց անոր հա-
մար և աղաղակեց ըսելով , Ասի-
կայ է՝ որուն համար կը զրուցէի ,
Ան որ իմ ետևէս կու գայ , ինծմէ
առաջ եղաւ , ինչու որ ինծմէ ա-
16 ռաջ էր ։ Ու անոր լեցունութե-
նէն մենք ամէնքս շնորհք առինք
17 շնորհքի տեղ ։ Ինչու որ օրէնքը
Մովսէսի ձեռքով տրուեցաւ , բայց
շնորհքը ու ճշմարտութիւնը Յի-
սուս Քրիստոսի ձեռքովը եղան ։
18 Մէկը երբէք զԱստուած տեսած
չէ , բայց միածին Որդին որ Հօրը
ծոցն է , անիկայ պատմեց ։
19 Ու Յովհաննէսին վկայութիւնը
աս է , երբոր Հրէաները Երուսա-
ղեմէն քահանաներ ու Ղևտացիներ
խրկեցին որ հարցընեն անոր թէ
20 Դուն ո՞վ ես ։ Ու անիկայ խոս-
տովանեցաւ ու չուրացաւ ․ խոս-
տովանեցաւ թէ Ես Քրիստոսը
21 չեմ ։ Ու հարցուցին անոր , Հա-
պա ի՞նչ , Եղիա՞ն ես ․ և ըսաւ ,
Չեմ ․ Այն մարգարէ՞ն ես ․ պա-
22 տասխան տուաւ թէ Չէ ։ Ան
ատենը ըսին անոր , Դուն ո՞վ ես ․
ըսէ՛ մեզ , որ պատասխան տանինք
մեզ խրկողներուն ․ դուն ի՞նչ կ՚ը-
սես քեզի համար ։ Ըսաւ , Ես 23
անոր ձայնն եմ՝ որ անապատին մէջ
կը կանչէ , Շիտկեցէք Տէրոջը
ճամբան , ինչպէս որ Եսայի մար-
գարէն ըսաւ ։ Ու ան խրկուած- 24
ները փարիսեցիներէն էին ․ Ու 25
հարցուցին իրեն ըսելով , Հապա
ինչո՞ւ մկրտութիւն կ՚ընես , թէ
որ դուն Քրիստոսը չես , ու ոչ
Եղիան , և ոչ մարգարէն ։ Պա- 26
տասխան տուաւ անոնց Յովհաննէս
ու ըսաւ , Ես ջրով կը մկրտեմ ,
բայց ձեր մէջը մէկը կայ որ դուք
ան չէք ճանչնար ․ Անիկայ է իմ 27
ետևէս եկողը՝ որ ինծմէ առաջ ե-
ղաւ , որ ես արժանի չեմ անոր
կօշիկին կապը քակելու ։ Աս բա- 28
ները Բեթաբարայի մէջ եղաւ Յոր-
դանանու անդիի կողմը , ուր որ
Յովհաննէսը կը կենար ու կը մը-
կըրտէր ։
Հետևեալ օրը Յովհաննէս տե- 29
սաւ Յիսուսը որ իրեն կու գար , և
ըսաւ , Ահա Աստուծոյ Գառը՝ որ
աշխարհի մեղքը կը վերցընէ ։ Ա- 30
սիկայ է՝ որուն համար ես կը զրու-
ցէի , Իմ ետևէս մարդ մը կու գայ՝
որ ինծմէ առաջ եղաւ , ինչու որ
ինծմէ առաջ էր ։ Ու ես զանիկայ 31
չէի ճանչնար , բայց անոր համար
ես եկայ ջրով մկրտելու , որ անի-
կայ Իսրայէլին յայտնուի ։ Ու 32
Յովհաննէս վկայութիւն տուաւ ը-
սելով թէ Ալ տեսնէի Հոգին՝
որ աղաւնիի պէս երկինքէն կ՚իջ-
նէր , ու անոր վրայ կը հանգչէր ։
Ու ես զանիկայ չէի ճանչնար , բայց 33
ան որ զիս խրկեց ջրով մկրտելու ,
ինքը ըսաւ ինծի , Որու վրայ տես-
նես Հոգին , որ կ՚իջնէ ու կը
հանգչի անոր վրայ , անիկայ է որ
Սուրբ Հոգիով կը մկրտէ ։ Ես 34
ալ տեսայ , ու վկայեցի թէ ասիկայ
է Աստուծոյ Որդին ։
Հետևեալ օրը դարձեալ Յով- 35
հաննէս կայներ էր , և իր աշա-
կերտներէն երկուքը ։ Ու նայելով 36
Յիսուսի վրայ որ կը պտըտէր ,
ըսաւ , Ահա Աստուծոյ Գառը ։
Ու լսեցին անկէ երկու աշակերտ- 37
ները՝ երբոր կը խօսէր , ու գացին

38 Յիսուսի ետեւէն ։ Յիսուս երբոր
դարձաւ ու տեսաւ անոնք որ իր
ետեւէն կու գային, ըսաւ անոնց,
Ի՞նչ կ'ուզէք. անոնք ալ ըսին
իրեն, Ռաբբի, (որ թարգմա-
նուելով վարդապետ ըսել է,)
39 ո՞ւր է քու օթեւանդ ։ Ըսաւ ա-
նոնց, Եկէք ու տեսէք. եկան ու
տեսան ուր տեղ որ էր իր օթեւա-
նը. և այն օրը անոր քովը կեցան,
ինչու որ ժամը տասնի առենները
40 էր ։ Սիմոն Պետրոսին եղբայրը
Անդրէաս այն երկուքէն մէկն էր,
որ լսեցին Յովհաննէսէն և անոր
41 ետեւէն գացին ։ Ասիկայ նախ իր
Սիմոն եղբայրը կը գտնէ և կ'ըսէ
անոր, Գտանք Մեսիան, (որ
42 Քրիստոս կը թարգմանուի.) Ու
տարաւ զանիկայ Յիսուսի քովը.
Յիսուս անոր նայելով ըսաւ, Դուն
ես Յովնանի որդին Սիմոնը. դուն
Կեփաս պիտի ըսուիս, որ Պետրոս
կը թարգմանուի ։
43 Հետեւեալ օրը Յիսուս Գալի-
լեա ելլել ուզեց, և Փիլիպպոսը
գտնելով՝ ըսաւ անոր, Եկուր իմ
44 ետեւէս ։ Եւ Փիլիպպոս Բեթսա-
յիդայէն էր՝ Անդրէասին ու Պետ-
45 րոսին քաղաքէն ։ Փիլիպպոս կը
գտնէ Նաթանայէլը և կ'ըսէ անոր,
Ան՝ որուն համար Մովսէս օրինաց
մէջ գրեց, և մարգարէներն ալ,
զանիկայ գտանք, այսինքն Յիսուս
Նազովրեցին՝ Յովսեփի որդին ։
46 Եւ Նաթանայէլ ըսաւ անոր,
Նազարեթէն կարելի՞ է որ աղէկ
բան մը ըլլայ. ըսաւ անոր Փիլիպ-
47 պոս, Եկո՛ւր ու տես ։ Յիսուս
երբոր տեսաւ Նաթանայէլը որ
դէպ 'ի իրեն կու գար, ըսաւ անոր
համար, Ահա իրաւցընէ Իսրայելացի
մը, որուն ներսը նենգութիւն չը-
48 կայ ։ Նաթանայէլ ըսաւ անոր,
Ուսկի՞ց կը ճանչնաս զիս. պատաս-
խան տուաւ Յիսուս ու ըսաւ ա-
նոր, Դեռ Փիլիպպոս քեզ չկան-
չած, դուն որ թզենիին տակն էիր,
49 ես քեզ տեսայ ։ Պատասխան
տուաւ Նաթանայէլ ու ըսաւ ա-
նոր, Ռաբբի՛ դուն ես Աստուծոյ
Որդին, Դուն ես Իսրայէլի թա-
գաւորը ։ Յիսուս պատասխան 50
տուաւ և ըսաւ անոր, Անոր համար՝
որ քեզի ըսի թէ քեզ թզենիին
տակը տեսայ, կը հաւատա՞ս. ա-
նկէ աւելի մեծ բաներ պիտի տեսնես ։
Ու ըսաւ անոր, Ճշմարիտ ճշմա- 51
րիտ կ'ըսեմ ձեզի, ասկէ ետեւ պիտի
տեսնէք երկինքը բացուած, և Աս-
տուծոյ հրեշտակները՝ որ կ'ելլեն ու
կ'իջնեն Որդւոյ մարդոյ վրայ ։

## ԳԼ. Բ

Ու երրորդ օրը հարսնիք մը կար 1
Գալիլեայի Կանայ քաղաքը, և
Յիսուսի մայրը հոն էր ։ Յիսուս 2
ալ կանչուեցաւ այն հարսնիքը՝ ու
իր աշակերտներն ալ ։ Ու երբոր 3
գինին պակսեցաւ, Յիսուսի մայ-
րը ըսաւ անոր, Գինի չունին ։
Յիսուս ըսաւ անոր, Ինծի՛ դուն 4
իմ հետս ի՞նչ բան ունիս. իմ
ժամանակս դեռ հասած չէ ։ Իր 5
մայրը սպասաւորներուն ըսաւ,
Ի՛նչ որ ձեզի ըսէ, ըրէ՛ք ։ Հոն 6
վեց հատ քարէ կարասներ դրուած
էին հրէից մաքրութեան սովորու-
թեանը համեմատ, որ անոնց ամէն
մէկը երկու կամ իրեք մար բան
կ'առնէր ։ Յիսուս ըսաւ անոնց, 7
Լեցուցէ՛ք այս կարասները ջրով.
ու լեցուցին անոնք մինչև բերանը ։
Եւ ըսաւ անոնց, Հիմա հանեցէ՛ք 8
ու սեղանապետի՛ն տարէք. անոնք
ալ տարին ։ Ու սեղանապետը 9
երբոր գինի եղած ջուրին համը ա-
ռաւ, և չէր գիտեր ուսկից ըլլալը.
(բայց սպասաւորները որ ջուրը
քաշեր էին, գիտէին.) սեղանա-
պետը կը խօսի փեսային, Ու անոր 10
կ'ըսէ, Ամէն մարդ աղէկ գինին ա-
ռաջ կը մատուցանէ, ու երբոր
խմած կ'ըլլան, այն ատենը տառա-
նագոյնը. բայց դուն աղէկ գինին
մինչև հիմա պահեցիր ։ Յիսուս 11
հրաշքներուն սկիզբը ասոր ըրաւ Գա-
լիլեայի Կանայ քաղաքին մէջ, և իր
փառքը յայտնեց. ու իր աշակերտա-
ները հաւատացին իրեն ։
Ասկէ ետեւ Յիսուս Կափառնաու- 12
մ իջաւ, ինքը և իր մայրը ու

իր եղբայրները և իր աշակերտներ-
ը, ու շատ օրեր հոն չկեցան։
13 Ու Հրէից զատիկը մօտ էր, ու
14 Յիսուս Երուսաղէմ ելաւ. Ու
տաճարին մէջ գտաւ արջառ ու ոչ-
խար և աղաւնի ծախողները, ու
ստակ փոխողներն ալ՝ որ նստեր
15 էին. Ու չուանէ խարազան մը շի-
նելով՝ ամէնը տաճարէն դուրս հա-
նեց, ոչխարներն ալ ու արջառ-
ներն ալ, և ստակ փոխողներուն
պղինձները ցիրուցան ըրաւ, ու սե-
16 ղանները կործանեց. Ու աղաւնի
ծախողներուն ըսաւ. Ասիկէ վերցու-
ցէք ասկից, իմ Հօրս տունը վա-
17 ճառատունի տուն մի ընէք։ Ու իր
աշակերտները միտքերնին բերին որ
գրուած է. Քու տանդ նախանձը
զիս կերաւ։
18 Ան ատենը պատասխան տուին
Հրեաները ու ըսին անոր. Ի՞նչ
նշան կը ցուցընես մեզի՝ որ ատ բա-
19 ները կ'ընես։ Պատասխան տուաւ
Յիսուս ու ըսաւ անոնց. Քակե-
ցէք աս տաճարը, ու երեք օրուան
20 մէջ անիկայ պիտի կանգնեմ։ Ու
Հրեաները ըսին, Քառասունվե-
ցից տարուան մէջ շինուեցաւ աս
տաճարը, և դուն երեք օրուան մէջ
21 պիտի կանգնե՞ս անիկայ։ Բայց
ինքը իր մարմնոյն տաճարին համար
22 կ'ըսէր։ Ուստի երբոր ինքը մե-
ռելներէն յարութիւն առաւ, իր
աշակերտները միտքերնին բերին թէ
աս բանը ըսած էր, ու հաւատա-
ցին գիրքին և Յիսուսի ըսած խօս-
քին։
23 Ու երբոր զատկի տօնին ատենը
Երուսաղէմ էր, շատ մարդիկ անոր
ըրած հրաշքները տեսնելով՝ հա-
24 ւատացին անոր անուանը։ Բայց
ինքը Յիսուս իր անձը անոնց չէր
հաւատար, ինչու որ ինքը գիտէր
25 ամէն մարդ. Ու պէտք չէր որ մէկը
մարդու համար վկայութիւն տայ
իրեն, քանզի ինքը գիտէր թէ ինչ
կայ մարդուն ներսի դին։

ԳԼ. Գ.

1 Ու փարիսեցիներէն մարդ մը կար
Նիկոդեմոս անունով, որ Հրէ-
րէից իշխան էր։ Ասիկայ գիշերով 2
Յիսուսի քովը եկաւ, և ըսաւ անոր,
Ռաբբի, գիտենք որ դուն Աստուծ-
մէ վարդապետ եկած ես, ինչու որ
մէկը չկրնար ընել ատ հրաշքները
որ դուն կ'ընես, թէ որ Աստուած
իր հետը չըլլայ։ Պատասխան 3
տուաւ Յիսուս և ըսաւ անոր,
Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ քեզի,
թէ որ մէկ մարդ մը նորէն չծնա-
նի, չկրնար Աստուծոյ թագաւո-
րութիւնը տեսնել։ Նիկոդեմոս 4
ըսաւ անոր. Ինչպէ՞ս կրնայ մարդ
մը ծնանիլ, որ ծերացած է. կա-
րելի՞ բան է որ նորէն իր մօրը
որովայնը մտնէ ու ծնանի։ Յի- 5
սուս պատասխան տուաւ, Ճշմա-
րիտ ճշմարիտ կ'ըսեմ քեզի, թէ
որ մէկ մարդ մը ջուրէն ու Հոգիէն
չծնանի, չկրնար Աստուծոյ թա-
գաւորութիւնը մտնել։ Մարմի- 6
նէն ծնածը մարմին է, ու Հոգիէն
ծնածը հոգի է։ Դուն մի զար- 7
մանար որ քեզի ըսի, Պէտք է ձեզի
նորէն ծնանիլ։ Հովը ուր որ 8
ուզէ՝ կը փչէ, և անոր ձայնը կը
լսես, բայց չես գիտեր ուսկից կու-
գայ՝ կամ ուր կ'երթայ. ատանկ
ալ է ան ամէնը՝ որ Հոգիէն կը
ծնանի։ Պատասխան տուաւ Նի- 9
կոդեմոս ու ըսաւ անոր. Ատ ի՞նչ-
պէս կրնայ ըլլալ։ Պատասխան 10
տուաւ Յիսուս ու ըսաւ անոր.
Դուն Իսրայէլի մէջ վարդապետ մըն
ես, և աս բաները չե՞ս գիտեր։
Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ քեզի, 11
թէ ինչ որ գիտենք՝ կը խօսինք,
և ինչ որ տեսանք՝ կը վկայենք,
ու մեր վկայութիւնը չէք ընդու-
նիր։ Թէ որ երկրաւոր բաները 12
ձեզի ըսի՝ ու չէք հաւատար,
ի՞նչպէս պիտի հաւատաք՝ թէ որ
երկնաւոր բաները ձեզի ըսեմ։
Ու մէկը երկինքը չելաւ, բայց ա- 13
նիկայ միայն որ երկինքէն իջաւ,
Որդին մարդոյ, որ երկինքն է։
Ու ինչպէս որ Մովսէս անապատին 14
մէջ օձը բարձրացուց, անանկ ալ
պէտք է որ Որդին մարդոյ բարձ-
րանայ, Որ ամէն ով որ անոր հա- 15
ւատայ՝ չկորսուի, հապա յաւի-

9 Ան ատենը Սամարացի կնիկը ըսաւ
անոր, Դուն որ Հրեայ ես, ի՞նչ-
պէս կ'ուզես ջուր խմել ինծմէ՝
Սամարացի կնիկէ մը. վասն զի
Հրեայք Սամարացւոց հետ հաղոր-
10 դակցութիւն չեն ըներ։ Յիսուս
պատասխան տուաւ ու ըսաւ անոր,
Թէ որ դուն գիտնայիր Աստուծոյ
պարգեւը, եւ թէ ով է ան որ քեզի
կ'ըսէ, Ինծի ջո՛ւր տուր խմելու,
դուն անկէ պիտի ուզէիր, եւ ինքը
քեզի կենդանի ջուր պիտի տար։
11 Կնիկը ըսաւ անոր, Տէ՛ր, դուն
ջրհան ալ չունիս ու այս հորը
խորունկ է. ուրեմն ո՞ւստից պիտի
ունենաս ան կենդանի ջուրը։
12 Միթէ դուն մեր Յակոբ հօրմէն
աւելի մե՞ծ մըն ես, որ այս հորը
մեզի տուաւ, եւ անկէ խմեց ինքը
ու իր որդիները եւ իր անասուննե-
13 րը։ Պատասխան տուաւ Յիսուս
ու ըսաւ անոր, Ամէն ով որ այս
ջուրէն խմէ, նորէն պիտի ծարա-
ւի, բայց ով որ խմէ ան ջուրէն՝
որ ես անոր պիտի տամ, յաւի-
14 տեան պիտի չծարաւի. Հապա ան
ջուրը որ ես անոր պիտի տամ, պիտի
ըլլայ անոր ներսիդին ջուրի աղբիւր
մը՝ որ յաւիտենական կենաց համար
15 կը բղխէ։ Կնիկը ըսաւ անոր,
Տէ՛ր տո՛ւր ինծի ան ջուրը որ չը-
ծարաւիմ, եւ հոս չգամ ջուր հա-
16 նելու։ Յիսուս ըսաւ անոր,
Գնա՛ քու էրիկդ կանչէ՛, ու հոս
17 եկուր։ Կնիկը պատասխան տա-
լով ըսաւ, Ես էրիկ չունիմ.
Յիսուս ըսաւ անոր. Աղէկ ըսիր,
18 թէ Էրիկ չունիմ. Ինչու որ դուն
հինգ էրիկ ունեցեր ես, եւ ան որ
հիմա ունիս, քու էրիկդ չէ. ա-
19 սիկայ չիտակ պատմեցիր։ Կնիկը
ըսաւ անոր, Տէ՛ր, կը տեսնեմ որ
20 դուն մարգարէ մըն ես։ Մեր
հայրերը այս լերանս վրայ երկրպա-
գութիւն ըրին, եւ դուք կ'ըսէք
թէ Երուսաղէմ է տեղը,
ուր պէտք է երկրպագութիւն ը-
21 նել։ Յիսուս ըսաւ անոր, Կնի՛կ
հաւատա ինծի որ ժամանակ կու
գայ, որ ան ատենը ո՛չ այս լերանը
վրայ՝ եւ ո՛չ Երուսաղէմի մէջ եր-
կրպագութիւն պիտի ընէք Հօրը։
Դուք անոր երկրպագութիւն կ'ը- 22
նէք, որ չէք ճանչնար. մենք անոր
երկրպագութիւն կ'ընենք՝ որ կը
ճանչնանք. ինչու որ փրկութիւնը
Հրեաներէն է։ Բայց ժամանակ 23
կու գայ ու հիմա ալ է, որ ճըշ-
մարիտ երկրպագողները երկրպա-
գութիւն պիտի ընեն Հօրը՝ հո-
գիով ու ճշմարտութիւնով. ինչու
որ Հայրն ալ իրեն անանկ երկըր-
պագողներ կ'ուզէ։ Աստուած 24
Հոգի է, եւ իրեն երկրպագողներուն
ալ պէտք է որ հոգիով ու ճշմար-
տութիւնով երկրպագութիւն ը-
նեն։ Կնիկը ըսաւ անոր, Գի- 25
տեմ որ Մեսիան կու գայ, (Քրի-
ստոս ըսուածը,) երբոր ինքը
գայ, ամէն բան մեզի պիտի պատ-
մէ։ Յիսուս ըսաւ անոր, Ես ան 26
եմ՝ որ քեզի հետ կը խօսիմ։
Ու այս խօսքին վրայ իր աշակերտնե- 27
րը եկան, ու զարմացան որ ան
կնկանը հետ կը խօսէր. բայց ա-
նոնցմէ մէկը չըսաւ թէ Ի՞նչ կ'ու-
զես, կամ ի՞նչ կը խօսիս ասոր
հետ։ Ան ատենը կնիկը ձգեց իր 28
սափորը, ու քաղաքը գնաց, եւ
ըսաւ մարդիկներուն. Եկէ՛ք տե- 29
սէ՛ք մէկ մարդ մը՝ որ ըսաւ ինծի
ամէն ինչ որ գործեր եմ. արդեօք
ասիկա՞յ է Քրիստոսը։ Ու ա- 30
նոնք քաղաքէն ելան ու անոր կու-
գային։
Ու այս միջոցիս աշակերտները 31
իրեն կ'աղաչէին ու կ'ըսէին, Ռաբ-
բի՛ կեր։ Անիկայ ըսաւ ա- 32
նոնց, Ես կերակուր ունիմ ուտե-
լու՝ որ դուք չէք գիտեր։ Ուստի 33
աշակերտները կ'ըսէին իրարու,
Արդեօք մէկը ասոր ուտելու բան
մը բերա՞ւ։ Յիսուս ըսաւ անոնց, 34
Իմ կերակուրս ան է որ ես զիս
ղրկողին կամքը ընեմ, եւ անոր
գործը կատարեմ։ Չէ՞ որ դուք 35
կ'ըսէք թէ Տակաւին չորս ամիս
կայ որ հունձքի ատենը գայ. ահա
ես ձեզի կ'ըսեմ, Աչքերնիդ վեր-
ցուցէք ու արտերուն նայեցէք,
որ արդէն ճերմկած ու հնձելու
պատրաստ են։ Ու ան որ կը հնձէ՝ 36

վարձք կ'առնէ, ու յաւիտենական
կենաց համար պտուղ կը ժողվէ,
որ սերմանողը ու հնձողը մէկտեղ
37 ուրախանան։ Վասն զի աս բա-
նին մէջ ճշմարիտ է այն խօսքը թէ
Ուրիշը կը սերմանէ և ուրիշը կը
38 հնձէ։ Ես ձեզ խրկեցի հնձելու այն
որ դուք չաշխատեցաք. ուրիշները
աշխատեցան, ու դուք անոնց աշ-
խատանքին մէջ մտաք։
39 Եւ այն քաղաքէն շատ Սամարա-
ցիք իրեն հաւատացին այն կնկանը
խօսքին համար որ վկայեց, ըսելով
թէ Ինչ՝ որ ես գործեր էի, բոլո-
40 րը ինծի ըսաւ։ Ու երբոր Սամա-
րացիք անոր եկան՝ կ'աղաչէին անոր
որ իրենց քովը կենայ. ու երկու օր
41 հոն կեցաւ։ Եւ ալ շատերը իրեն
հաւատացին իր խօսքին համար։
42 Ու կ'ըսէին կնկանը, Ասկէ ետեւ չէ
թէ քու խօսքիդ համար կը հաւա-
տանք, ինչու որ մենք մեզի լսե-
ցինք, և գիտենք որ աստիկայ է
ճշմարտապէս աշխարհի Փրկիչը՝
Քրիստոսը։
43 Ու երկու օրէն ետեւ ելաւ անկէ
44 և Գալիլիա գնաց։ Ինչու որ Յի-
սուս ինքը վկայեց թէ Մարգարէ
մը իր գաւառին մէջ պատիւ չուներ-
45 նար։ Ու երբոր Գալիլիա եկաւ,
Գալիլիացիները զինքը ընդունե-
ցին. ինչու որ տեսած էին այն բո-
լոր հրաշքները՝ որ ինքը ըրաւ Երու-
սաղէմի մէջ տօնին ատենը. վասն
զի իրենք ալ այն տօնին գացեր էին։
46 Եւ Յիսուս նորէն եկաւ Գալի-
լիացւոց Կանայ քաղաքը, ուր որ
ջուրը գինի ըրած էր. և հոն ազ-
նուական մէկը կար, որուն որդին
հիւանդ էր Կափառնայումի մէջ։
47 Ասիկայ լսելով որ Յիսուս Հրէաս-
տանէն Գալիլիա եկեր է, եկաւ ա-
նոր ու կ'աղաչէր որ իջնէ և իր որ-
դին բժշկէ. ինչու որ մեռնելու վը-
48 րայ էր։ Ան ատենը Յիսուս ըսաւ
անոր, Մինչև որ նշաններ ու հրաշք-
ներ չտեսնէք, բնաւ պիտի չհաւա-
49 տաք։ Ազնուականը ըսաւ անոր,
Տէ՛ր իջի՛ր քանի որ իմ տղաս մե-
50 ռած չէ։ Յիսուս ըսաւ անոր,
Գնա՛, քու որդիդ ողջ է. մարդն
ալ հաւատաց այն խօսքին որ Յի-
սուս իրեն ըսաւ, ու գնաց։ Ու 51
երբոր կ'իջնէր, իր ծառաները
դիմաւորեցին զինքը, և աւետիս
տուին ըսելով թէ Քու տղադ
ողջ է։ Ուստի հարցուց անոնց թէ 52
ո՞ր ժամէն սկսաւ աղէկի գալու.
և ըսին իրեն, Երէկ ժամը եօթնին
տենդը թողուց զանիկայ։ Ան ա- 53
տենը գիտցաւ անոր հայրը թէ ան
ժամն էր որ Յիսուս իրեն ըսաւ
թէ Քու որդիդ ողջ է. ու հաւա-
տաց ինքը և իր բոլոր տունը։ Աս 54
նորէն երկրորդ հրաշքն է որ Յի-
սուս ըրաւ, երբոր Հրէաստանէն
Գալիլիա եկաւ։

## ԳԼ. Ե

Ասկէ ետեւ Հրէից տօն էր, և Յի- 1
սուս Երուսաղէմ ելաւ։ Ու 2
Երուսաղէմի մէջ Ոչխարաց դրանը
քով աւազան մը կայ, որ Եբրա-
յեցերէն Բեթհեզդա կ'ըսուի, որ
հինգ սրահ ունի։ Անոնց մէջ 3
խիստ շատ հիւանդներ պառկած էին,
կոյրեր՝ կաղեր՝ չորցածներ, որոնք կը
սպասէին ջուրին խառնուելուն։
Վասն զի հրեշտակ մը ժամանակ 4
ժամանակ աւազանը կ'իջնէր ու
ջուրերը կը խառնէր, և ով որ
ջուրին խառնուելէն ետեւ ամէնէն ա-
ռաջ անոր մէջը կը մտնէր, կը
բժշկուէր՝ ինչ հիւանդութիւն որ
ունենար։ Եւ հոն մէկ մարդ մը 5
կար, որ երսուն ու ութը տարիէ 'ի
վեր հիւանդութիւն մը ունէր։
Յիսուս երբոր տեսաւ զանիկայ որ 6
ինկած պառկած էր, ու գիտցաւ
որ շատ ժամանակէ 'ի վեր է, ըսաւ
անոր. Կ'ուզե՞ս առողջանալ։
Հիւանդը պատասխան տուաւ ա- 7
նոր, Տէ՛ր, մարդ մը չունիմ որ
երբ ջուրերը խառնուին՝ զիս աւա-
զանը ձգէ. հապա քանի որ ես
ձանր կը շարժիմ, ինծմէ առաջ
ուրիշ մը կ'իջնէ։ Յիսուս ըսաւ 8
անոր, Ելի՛ր մահիճդ առ ու քա-
լէ՛։ Եւ իսկոյն մարդը առողջա- 9
ցաւ, ու իր մահիճը վերցնելով
կը քալէր. ու ան օրը շաբաթ էր։
Ան ատենը Հրէաները ըսին բժշկ- 10

որ անոնք կատարեմ, այն նոյն գործ-
քերը որ ես կը գործեմ՝ ինծի համար
կը վկայեն թէ Հայրը զիս խրկեց։
37 Ու Հայրը որ զիս խրկեց, ինքը
վկայեց ինծի համար. դուք բնաւ
անոր ձայնը չլսեցիք, ոչ ալ անոր
38 կերպարանքը տեսաք. Ու ոչ անոր
խօսքը ձեր մէջը բնակած ունիք,
քանզի ան որ ինքը խրկեց, դուք
39 անոր չէք հաւատար։ Գիրքերը
քննեցէք, ինչու որ դուք անոնցմով
կը սեպէք յաւիտենական կեանքը
ունենալ, և բուն անոնք են որ ին-
40 ծի համար կը վկայեն. Ու դուք
չէք ուզեր ինծի գալ, որ կեանք
41 ունենաք։ Ես մարդոցմէ փառք
42 չեմ առներ։ Բայց գիտեմ ձեզ
որ Աստուծոյ սէրը մէջերնիդ չու-
43 նիք։ Ես իմ Հօրս անուանովը ե-
կայ, ու զիս չէք ընդունիր. թէ որ
ուրիշ մէկը իր անուանովը գայ, ա-
44 նիկայ պիտի ընդունիք։ Դուք
ինչպէ՞ս կրնաք հաւատալ, որ իրար-
մէ փառք կ'առնէք, և այն փառքը
որ մէկ Աստուծմէն է, չէք փնտռ-
45 ներ։ Մի՛ կարծէք թէ ես ձեզի
համար ամբաստանութիւն պիտի ը-
նեմ Հօրը. կայ մէկը որ ձեզի
համար ամբաստանութիւն կ'ընէ,
Մովսէսը՝ որուն դուք յուսացած էք։
46 Վասն զի թէ որ դուք Մովսէսին
հաւատայիք, ինծի ալ պիտի հա-
ւատայիք, ինչու որ անիկայ ինծի
47 համար գրեց։ Բայց թէ որ անոր
գրուածներուն չէք հաւատար, իմ
խօսքերուս ինչպէ՞ս պիտի հաւատաք։

## ԳԼ. Զ.

1 Աս բաներէն ետքը Յիսուս Գալի-
լեայի այսինքն Տիբերիայի ծովուն
2 անդիի կողմը գնաց. Ու անոր ե-
տևէն շատ ժողովուրդ կ'երթար,
ինչու որ կը տեսնէին այն հրաշք-
ները որ հիւանդներուն վրայ կ'ը-
3 նէր։ Ու Յիսուս լեռը ելաւ, ու
հոն նստաւ իր աշակերտներուն հետ
4 մէկտեղ։ Եւ Հրէից զատկի տօ-
նը մօտ էր։
5 Յիսուս երբոր իր աչքերը վեր
վերցուց ու տեսաւ որ շատ ժողո-
վուրդ կու գայ իրեն, ըսաւ Փի-
լիպպոսին. Ուսկի՞ց հաց ծախու
առնենք որ ասոնք ուտեն։ (Ու 6
աս կ'ըսէր զանիկայ փորձելու հա-
մար. քանզի ինքը գիտէր ինչ
պիտի ընէր։) Փիլիպպոս պա- 7
տասխան տուաւ անոր. Երկու
հարիւր դահեկանի հաց ասոնց
հերիք չէ, որ անոնց մէկը քիչ մը
առնէ։ Իր աշակերտներէն մէկը՝ 8
Սիմոն Պետրոսին եղբայրը Անդ-
րէաս ըսաւ իրեն. Հոս մէկ պա- 9
տանեկ մը կայ, որ հինգ գարեղէն
հաց ու երկու ձուկ ունի. բայց
անոնք ի՞նչ պիտի ըլլան այսչափ
մարդոց։ Իսկ Յիսուս ըսաւ. 10
Նստեցուցէք աս մարդիկը. և այն
տեղը շատ խոտ կար, ու մարդիկը
նստան թուով հինգ հազարի չափ։
Ու Յիսուս հացերը առաւ ու գո- 11
հացաւ, և աշակերտներուն բաժ-
նեց. աշակերտներն ալ նստողնե-
րուն, նոյնպէս ալ ձուկերէն՝ որչափ
որ ուզեցին։ Ու երբոր կշտացան, 12
ըսաւ իր աշակերտներուն. Ժողվե-
ցէք աւելցած կոտորուանքները՝ որ
բան մը չկորսուի։ Ուստի ժողվե- 13
ցին, և տասներկու կողով լե-
ցուցին այն հինգ գարեղէն հացերէն
մնացած կոտորուանքներով, որ ու-
տողներէն աւելցան։ Իսկ մար- 14
դիկը երբոր Յիսուսի ըրած հըր-
աշքը տեսան, կ'ըսէին. Թէ Ա-
սիկայ է ճշմարտապէս այն մարգա-
րէն՝ որ աշխարհ պիտի գար։ Ու 15
Յիսուս գիտնալով որ պիտի գան
զինքը յափշտակեն՝ որ զինքը թա-
գաւոր ընեն, նորէն մինակ լեռը
գնաց։ Ու երբոր իրիկուն եղաւ, 16
իր աշակերտները ծովեզերքը իջան.
Ու նաւը մտնելով ծովուն անդիի 17
կողմը Կափառնայում կ'երթային.
և արդէն մութը կոխեր էր, ու
Յիսուս դեռ իրենց եկած չէր.
Ծովն ալ հովին սաստիկ փչելէն 18
ալեկոծութիւն կ'ըլլար։ Ու երբոր 19
թի քաշելով քսանհինգ կամ
երեսուն ասպարէզի չափ գացին,
տեսան Յիսուսը որ ծովուն վրայէն
քալելով՝ նաւուն կը մօտենար, ու
վախցան։ Բայց ինքը ըսաւ ա- 20
նոնց. Ես եմ՝ մի՛ վախնաք։ Ու 21

մէջ մանանան կերան, ու մեռան ։
50 Աս է այն հացը որ երկինքէն կ՚իջ-
նէ, որ եթէ մէկը անկէ ուտէ,
51 պիտի չմեռնի ։ Ես եմ կենդանի
52 հացը որ երկինքէն իջայ ։ Եթէ որ
մէկը աս հացէն ուտէ, յաւիտեան
պիտի ապրի ․ և այն հացը որ ես
պիտի տամ՝ իմ մարմինս է, որ
ես պիտի տամ աշխարհիս կենացը
համար ։
53 Անոր վրայ Հրեաները իրարու
հետ կը վիճէին ու կ՚ըսէին ․ Ինչ-
պէ՞ս կրնայ ասիկայ իր մարմինը մե-
54 զի տալ ուտելու ։ Իսկ Յիսուս
ըսաւ անոնց ․ Ճշմարիտ ճշմարիտ
կ՚ըսեմ ձեզի, Եթէ որ Որդւոյ մար-
դոյ մարմինը չուտէք և անոր ա-
րիւնը չխմէք, ձեր անձերուն մէջը
55 կեանք չէք ունենար ։ Ա՛վ որ իմ
մարմինս ուտէ և իմ արիւնս խմէ,
յաւիտենական կեանք կ՚ունենայ,
ու ես անոր յարութիւն տալու
56 պիտի տամ վերջին օրը ։ Ինչու
որ իմ մարմինս ճշմարիտ կերակուր
է, և իմ արիւնս ճշմարիտ ըմպելիք
57 է ։ Ան որ իմ մարմինս կ՚ուտէ,
և իմ արիւնս կը խմէ, անիկայ իմ
ներսս դիս կը բնակի՝ ու ես անոր
58 ներսը գինի ։ Ինչպէս որ կենդանի
Հայրը զիս խրկեց, ու ես կենդանի
եմ Հօրը ձեռքովը, այնպէս ալ
ան որ զիս կ՚ուտէ, ինքն ալ իմ
59 ձեռքովս կենդանի կը մնայ ։ Աս է
այն հացը որ երկինքէն իջած է ․
չէ՛ թէ ինչպէս որ հայրերնիդ մա-
նանան կերան ու մեռան ․ ան որ
աս հացը ուտէ, յաւիտեան պիտի
ապրի ։
60 Աս բաները գրուելուն ժողովարա-
նին մէջը՝ երբոր Կափառնայումի
մէջ կը սորվեցընէր ։
61 Ու աշակերտներէն շատերը երբ-
որ լսեցին, ըսին ․ Խիստ է աս
խօսքը, ո՞վ կրնայ ատոր մտիկ ը-
62 նել ։ Յիսուս երբոր ինքնիրենը
հասկցաւ որ իր աշակերտները
այն բանին համար տրտունջ կ՚ընեն,
ըսաւ անոնց ․ Ասիկայ ձեզ կը գայ-
63 թակղեցընէ՞ ։ Հապա ի՞նչ պիտի
խորհիք, եթէ որ տեսնէք Որդին
մարդոյ որ ելլէ ուր տեղ որ առաջ
էր ։ Հոգին է կենդանի ընողը, 64
մարմինը շահ մը չըներ ․ այն խօս-
քերը որ ես ձեզի կը խօսիմ, հոգի
ու կեանք են ։ Բայց ձեր մէջէն 65
կան անանք որ չեն հաւատար ․ ին-
չու որ Յիսուս սկիզբէն գիտէր՝ թէ
ով են անոնք որ չեն հաւատար, և
ով է ան որ զինքը պիտի մատնէ ․
Ու կ՚ըսէր, Անոր համար ձեզի ը- 66
սի որ մէկը չկրնար ինծի գալ,
եթէ որ իմ Հօրմէս տրուած չըլլայ
անոր ։
Աս պատճառով իր աշակերտնե- 67
րուն շատերը ետ գացին, և ալ իր
հետը չէին պտըտեր ։ Ան ատե- 68
նը Յիսուս տասուերկուքին ըսաւ ․
Միթէ դուք ալ կ՚ուզէ՞ք երթալ ։
Սիմոն Պետրոս պատասխան տուաւ 69
անոր ․ Տէ՛ր՝ որո՞ւ պիտի երթանք,
դուն յաւիտենական կենաց խօսքեր
ունիս ․ Ու մենք հաւատացինք ու 70
գիտցանք թէ դուն ես Քրիստոսը
Աստուծոյ Որդին ։ Յիսուս պա- 71
տասխան տուաւ անոնց, Ես ձեզ
տասուերկուքդ չընտրեցի՞, ու ձեզմէ
ալ մէկը սատանայ է ։ Աս կ՚ըսէր 72
Իսկարիովտացի Սիմոնեան Յուդա-
յին համար, ինչու որ անիկայ էր
որ զինքը պիտի մատնէր, ու տաս-
ուերկուքէն մէկն էր ։

## ԳԼ․ Է

Ու աս բաներէն ետև Յիսուս Գա- 1
լիլեայի մէջ կը պտըտէր ․ ին-
չու որ չէր ուզեր Հրէաստանի մէջ
պտըտիլ, վասն զի Հրեաները զին-
քը սպաննել կ՚ուզէին ։
Ու Հրեաներուն տաղաւարահա- 2
րաց տօնը մօտ էր ։ Ուստի իր 3
եղբայրները ըսին իրեն ․ Ելի՛ր աս-
կէ ու Հրէաստան գնա, որ քու
աշակերտներդ ալ տեսնեն քու
գործքերդ որ կ՚ընես ․ Ինչու որ 4
մէկը՝ չկայ որ ծածկաբար բան մը
ընէ, և ինքը յայտնի ըլլալ ուզէ ․
եթէ որ դուն աս բաները կ՚ընես,
ինքզինքդ աշխարհին յայտնէ՛ ։
Քանզի իր եղբայրներն ալ չէին 5
հաւատար իրեն ։ Իսկ Յիսուս ը- 6
սաւ անոնց, Իմ ժամանակս դեռ
հասած չէ, բայց ձեր ժամանակը

փարիսեցիները ըսին անոր , Դուն
քու անձիդ համար կը վկայես ,
քու վկայութիւնդ ճշմարիտ չէ ։
14 Պատասխան տուաւ Յիսուս ու ը-
սաւ անոնց , Թէեւ ես իմ անձիս
համար վկայեմ , բայց իմ վկայու-
թիւնս ճշմարիտ է , ինչու որ գի-
տեմ ուսկից եկայ եւ ուր կ'եր-
թամ . բայց դուք չէք գիտեր ուս-
կից կու գամ կամ ուր կ'եր-
15 թամ ։ Դուք մարմինին նայելով
դատաստան կ'ընէք , ես բնաւ մէկը
16 չեմ դատեր . Ու թէեւ դատելու
ալ ըլլամ , իմ դատաստանս ճըշ-
մարիտ է . ինչու որ ես մինակ չեմ ,
հապա ես , եւ Հայրը որ զիս խրը-
17 կեց ։ Ու ձեր օրէնքին մէջն ալ
գրուած է թէ Երկու մարդու վը-
18 կայութիւնը ճշմարիտ է ։ Ես եմ
որ իմ անձիս համար կը վկայեմ ,
ու կը վկայէ ինծի համար Հայրն
19 ալ որ զիս խրկեց ։ Ան ատենը
ըսին անոր , Ո՞ւր է քու Հայրդ .
Յիսուս պատասխան տուաւ , Ո՛չ
զիս գիտէք՝ եւ ոչ իմ Հայրս . Թէ
որ զիս գիտնայիք , իմ Հայրս ալ
պիտի գիտնայիք ։
20 Յիսուս աս խօսքերը խօսեցաւ
գանձատունը , երբոր տաճարին մէջ
կը սորվեցընէր . ու մէկը չբռնեց
զանիկայ , ինչու որ դեռ անոր ժա-
մանակը հասած չէր ։
21 Ետքը Յիսուս նորէն ըսաւ ա-
նոնց , Ես կ'երթամ՝ ու զիս պիտի
փնտռէք , եւ ձեր մեղացը մէջ պիտի
մեռնիք . ուր որ ես կ'երթամ ,
22 դուք չէք կրնար գալ ։ Ասոր վրայ
Հրեաները կ'ըսէին , Միթէ ինք-
զինքը պիտի մեռցընէ՞ , որ կ'ըսէ
թէ Ո՛ւր որ ես կ'երթամ , դուք
23 չէք կրնար գալ ։ Ու ըսաւ անոնց ,
Դուք վարէն էք , ես վերէն եմ .
դուք աս աշխարհէս էք , ես աս
24 աշխարհէս չեմ . Անոր համար ձեզի
ըսի թէ Ձեր մեղացը մէջ պիտի
մեռնիք , ինչու որ եթէ չհաւատաք
թէ ես եմ , ձեր մեղացը մէջ պիտի
25 մեռնիք ։ Ան ատենը ըսին անոր ,
Դուն ո՞վ ես . եւ Յիսուս ըսաւ
անոնց , Ի՛նչ որ սկիզբէն ձեզի կը
26 խօսիմ ։ Շատ բաներ ունիմ
ձեզի համար խօսելու եւ դատելու .
բայց ան որ զիս խրկեց , ճշմարիտ
է , եւ ես ինչ որ իրմէ լսեցի , ա-
նիկայ կը խօսիմ աշխարհիս մէջ ։
Անոնք չիմացան թէ Հօրը համար 27
կը զրուցէր իրենց ։
Իսկ Յիսուս ըսաւ անոնց , Երբ- 28
որ Որդին մարդոյ բարձրացընէք ,
ան ատենը պիտի գիտնաք թէ ես
եմ , ու ինքիրմէս բան մը չեմ ը-
ներ , հապա Հայրս ինչպէս որ ին-
ծի սորվեցուց , անանկ կը խօսիմ ։
Ան զիս խրկողը իմ հետս է . Հայ- 29
րը զիս մինակ չթողուց . ինչու որ
ես միշտ անոր հաճելի եղած բաներ-
ը կ'ընեմ ։
Երբոր ասոնք խօսեցաւ , շատ 30
մարդիկ իրեն հաւատացին ։ Ան 31
ատենը Յիսուս իրեն հաւատացող
Հրեաներուն ըսաւ , Թէ որ դուք
իմ խօսքիս մէջ կենաք , ճշմարտա-
պէս իմ աշակերտներս կ'ըլլաք .
Ու ճշմարտութիւնը պիտի գիտ- 32
նաք , ու ան ճշմարտութիւնը ձեզ
պիտի ազատէ ։ Պատասխան տուին 33
իրեն , Մենք Աբրահամի սերունդ
ենք , ու երբէք մէկու մը չծառա-
յեցինք . դուն ինչո՞ւ կ'ըսես թէ
ազատ պիտի ըլլաք ։ Յիսուս 34
պատասխան տուաւ անոնց , Ճըշ-
մարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի թէ
Ամէն ով որ մեղք կը գործէ , անի-
կայ մեղքի ծառայ է ։ Ու ծառան 35
տանը մէջ յաւիտեան չմնար , բայց
որդին յաւիտեան կը մնայ ։ Աս- 36
որ թէ որ Որդին ձեզ ազատ ը-
նէ , ճշմարտապէս ազատ պիտի ըլ-
լաք ։ Գիտեմ որ Աբրահամի սե- 37
րունդ էք , բայց կը փնտռէք զիս
մեռցընել , ինչու որ իմ խօսքս ձեր
ներսի դին տեղ չունի ։ Ես ինչ 38
որ տեսայ իմ Հօրս քովը՝ ան կը
խօսիմ . եւ դուք ալ ինչ որ տե-
սաք ձեր հօրը քովը ան կ'ընէք ։
Պատասխան տուին ու ըսին անոր , 39
Մեր հայրը Աբրահամն է . ըսաւ
անոնց Յիսուս , Թէ որ Աբրահա-
մի որդիք ըլլայիք , Աբրահամին
գործքերը պիտի գործէիք ։ Բայց 40
հիմա կը փնտռէք սպաննել զիս ,
անանկ մարդ մը՝ որ ձեզի ճշմարտու-

թիւն խօսեցայ, զոր որ Աստուծմէ
լսեցի. Աբրահամ ասոր պէս բան մը չը-
41 րաւ: Դուք ձեր հօրը գործքերը
կ'ընէք. անոնք ալ ըսին անոր,
Մենք պոռնկութենէ չենք ծնած.
մենք մէկ Հայր մը ունինք՝ որ է
42 Աստուած: Յիսուս ըսաւ անոնց,
Թէ որ Աստուած ձեր Հայրը ըլ-
լար, զիս պիտի սիրէիք. ինչու որ
ես Աստուծմէ ելայ ու եկայ. և չէ
թէ ես ինքիրմէս եկայ, հապա ա-
43 նիկայ զիս ղրկեց: Ինչո՞ւ դուք
իմ զրուցուածքս չէք հասկընար.
անոր համար որ չէք կրնար իմ
44 խօսքս մտիկ ընել: Դուք ձեր
հօրմէն Սատանայէն էք, ու ձեր
հօրը բաղձանքը կ'ուզէք ընել.
անիկայ սկիզբէն հետէ մարդասպան
էր, և ճշմարտութեան մէջ չկե-
ցաւ, ինչու որ անոր ներսի դին
ճշմարտութիւն չկայ. երբոր անի-
կայ սուտ խօսի, բուն իրեն-
ներէն կը խօսի. քանզի անիկայ
45 ստախօս է և անոր հայրը: Բայց
որովհետեւ ես ճշմարտութիւն կը
խօսիմ, ինծի չէք հաւատար:
46 Ձեզմէ ո՞վ կրնայ զիս յանդիմանել
մեղքի համար. իսկ թէ որ ես ճըշ-
մարտութիւն կը խօսիմ, ինչո՞ւ
47 ինծի չէք հաւատար: Ան որ Աս-
տուծմէ է, Աստուծոյ խօսքերը մը-
տիկ կ'ընէ. դուք անոր համար մը-
տիկ չէք ըներ, որ Աստուծմէ չէք:
48 Պատասխան տուին Հրեաները ու
ըսին անոր, Աղէկ չե՞նք ըսեր մենք,
թէ դուն Սամարացի ես՝ ու դեւ կայ
49 քու ներսդ: Յիսուս պատասխան
տուաւ և ըսաւ, Իմ ներսս դեւ
չկայ, հապա ես իմ Հայրս կը պա-
տուեմ, և դուք զիս կ'անարգէք:
50 Իսկ ես իմ փառքս չեմ փնտռեր.
կայ մէկը որ կը փնտռէ ու կը
51 դատէ: Ճշմարիտ ճշմարիտ կ'ը-
սեմ ձեզի, Թէ որ մէկը իմ խօսքս
պահէ, յաւիտեան մահ պիտի չը-
52 տեսնէ: Ան ատենը Հրեաները
ըսին անոր, Հիմա գիտցանք որ
քու ներսդ դեւ կայ. Աբրահամ
մեռաւ՝ ու մարգարէները, և դուն
կ'ըսես, Թէ որ մէկը իմ խօսքս
պահէ, յաւիտեան մահուան համը
պիտի չառնէ: Միթէ դուն աւե- 53
լի՞ մեծ ես մեր հայր Աբրահամէն
որ մեռաւ, ու մարգարէներն ալ
մեռան. դուն քեզ ո՞վ կ'ընես:
Յիսուս պատասխան տուաւ, Թէ 54
որ ես ինքզինքս փառաւորեմ, իմ
փառքս բան մը չէ. իմ Հայրս է
որ զիս կը փառաւորէ, որուն հա-
մար դուք կ'ըսէք թէ Մեր Աս-
տուածն է. Ու անիկայ չէք ճանչ- 55
ցած, բայց ես գիտեմ անիկայ. ու
թէ որ ըսեմ թէ անիկայ չեմ գի-
տեր, ձեզի պէս ստախօս պիտի ըլ-
լամ. հապա ես գիտեմ անիկայ,
և անոր խօսքը կը պահեմ: Ձեր 56
հայրը Աբրահամ ցանկացաւ իմ
օրս տեսնելու, ու տեսաւ և ուրա-
խացաւ: Իսկ Հրեաները ըսին 57
անոր, Դեռ տակաւին յիսուն
տարեկան չես, Աբրահա՞մն ալ
տեսար: Յիսուս ըսաւ անոնց, 58
Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի,
Աբրահամին ըլլալէն առաջ եմ ես:
Ան ատենը քարեր վերցուցին որ 59
անոր վրայ նետեն. բայց Յիսուս
ծածկուեցաւ անոնց աչքերէն, և ա-
նոնց մէջէն անցնելով՝ տաճարէն
դուրս ելաւ, ու այսպէս գնաց:

## ԳԼ. Թ

Ու երբոր կ'անցնէր, մէկ մարդ մը 1
տեսաւ կոյր ծնած. Ու իր ա- 2
շակերտները հարցուցին իրեն ու
ըսին, Ռաբբի՝ որո՞ւնն է մեղքը,
ասո՞ր թէ իր ծնողացը, որ անիկայ
կոյր ծնաւ: Պատասխան տուաւ 3
Յիսուս, Ո՛չ ասոր է մեղքը,
ոչ ալ իր ծնողացը. հապա որ
Աստուծոյ գործքերը ասոր վրայ
յայտնի ըլլան: Քանի որ ցորեկ 4
է, պէտք է որ զիս ղրկողին գործ-
քերը գործեմ. գիշերը կու գայ
որ ան ատենը մէկը չկրնար գոր-
ծել: Քանի որ ես աշխարհքի մէջ 5
եմ, աշխարհքի լոյսն եմ: Երբոր 6
աս ըսաւ, թքաւ գետինը, և
թուքովը կաւ շինեց, ու ան կաւը
կոյրին աչքերուն վրայ ծեփեց. Ու 7
ըսաւ անոր, Գնա լուացուէ Սե-
ղովամի աւազանին մէջ, (որ Ղըր-
կուած կը թարգմանուի.) ուստի

չէք հաւատար ․ այն գործքերը որ
ես իմ Հօրս անունովը կը գործեմ ,
անոնք կը վկայեն ինծի համար ։
26 Բայց դուք չէք հաւատար , քանզի
որ իմ ոչխարներէս չէք , ինչպէս որ
27 ձեզի ըսի ։ Իմ ոչխարներս իմ
ձայնիս կը լսեն , ես ալ անոնք կը
ճանչնամ , ու իմ ետեւէս կու գան ․
28 Ու ես անոնց յաւիտենական կեանք
կու տամ , ու յաւիտեան պիտի
չկորսուին ; և մէկը իմ ձեռքէս
29 պիտի չյափշտակէ զանոնք ։ Իմ
Հայրս որ անոնք ինծի տուաւ , ա-
մենէն մեծ է ; և մէկը չկրնար իմ
30 Հօրս ձեռքէն յափշտակել ։ Ես
ու Հայրը մէկ ենք ։
31 Ան ատենը Հրէաները նորէն
քարեր վերցուցին , որ անիկայ
32 քարկոծեն ։ Յիսուս պատասխան
տուաւ անոնց , Շատ բարի գործ-
քեր ցուցուցի ձեզի իմ Հօրմէս ,
անոնցմէ ո՞ր գործին համար զիս կը
33 քարկոծէք ։ Հրէաները պատաս-
խան տուին անոր՝ ըսելով , Բարի
գործի համար քեզ չենք քարկոծեր ,
հապա հայհոյութեան համար , և
քանզի դուն որ մարդ ես , քեզ-
34 զինքդ Աստուած կ'ընես ։ Յիսուս
պատասխան տուաւ անոնց , Չէ՞
որ ձեր օրէնքին մէջը գրուած է ,
Ես ըսի թէ դուք աստուածներ էք ։
35 Թէ որ աստուածներ կ'անուանէ
զանոնք , որոնց որ Աստուծոյ խօսքը
եղաւ , (ու կարելի չէ որ այն գը-
36 րուածը աւրուի ,) հապա ան որ
Հայրը օրհնեց և աշխարհք ղրկեց ,
դուք անոր կ'ըսէ՞ք թէ հայհոյու-
թիւն կ'ընես , Աստուծոյ Որդի եմ
37 ըսելուս համար ։ Թէ որ իմ Հօրս
գործքերը չեմ գործեր , ինծի մի՛
38 հաւատաք ․ հապա թէ որ կը
գործեմ , թէեւ ինծի չէք հաւա-
տար , գոնէ գործքերուն հաւատա-
ցէք ․ որ գիտնաք ու հաւատաք թէ
Հայրը իմ մէջս է , և ես անոր
մէջ ։
39 Դարձեալ կը փնտռէին զանիկայ
բռնել , և անոնց ձեռքէն ելաւ ․
40 Ու նորէն գնաց Յորդանանու ան-
դին կողմը՝ այն տեղը , ուր որ Յով-
հաննէս առաջուց կը մկրտէր , ու
հոն կեցաւ ։ Ու շատերը եկան 41
անոր ու կ'ըսէին , Իրաւ Յով-
հաննէս մէկ հրաշք մը չըրաւ ․
Բայց ինչ որ Յովհաննէս ըսաւ ա- 42
նոր համար , ամէնը ճշմարիտ էր ․
և շատ մարդիկ հոն անոր հաւա-
տացին ։

## ԳԼ․ ԺԱ

Ու Մարիամին և անոր քրոջը Մար- 1
թային գեղէն՝ Բեթանիայէն
Ղազարոս անունով մէկը հիւանդ
էր ։ Ասիկա այն Մարիամն էր , որ 2
Տէրը եղով օծեց , ու անոր ոտքերը
իր մազերովը սրբեց , որուն եղբայ-
րը Ղազարոս հիւանդ էր ։ Ուստի 3
իր քոյրերը մարդ ղրկեցին անոր ու
ըսին , Տէ՛ր , ահա անիկայ որ դուն
կը սիրես , հիւանդ է ։ Յիսուս 4
երբոր լսեց , ըսաւ , Աս հիւան-
դութիւնը մահուան համար չէ ,
հապա Աստուծոյ փառացը համար ,
որ Աստուծոյ Որդին անով փառա-
ւորուի ։ Եւ Յիսուս կը սիրէր 5
Մարթան և անոր քոյրը ու Ղա-
զարոսը ։ Իսկ երբոր լսեց թէ 6
հիւանդ է , եղած տեղը երկու օր
ալ կեցաւ ։ Ու անկէ ետքը ըսաւ 7
աշակերտներուն , Եկէ՛ք նորէն Հը-
րէաստան երթանք ։ Աշակերտները 8
իրեն ըսին , Ռաբբի՛ Հրէաները
հիմա քեզ կը փնտռէին քարկոծե-
լու , ու նորէն հո՞ն կ'երթաս ։
Պատասխան տուաւ Յիսուս , Չէ՞ 9
որ օրը տասնըերկու ժամ է ․ թէ
որ մէկը ցորեկը քալէ , չսահիր ,
քանզի որ աս աշխարհքիս լոյսը կը
տեսնէ ․ Բայց թէ որ մէկը գիշերը 10
քալէ , կը սահի , քանզի որ իր
հետը լոյս չկայ ։ Աս բաները ըսա- 11
ւէն ետև ըսաւ անոնց , Ղազարոս
մեր բարեկամը քնացած է , բայց
կ'երթամ որ անիկայ արթնցը-
նեմ ։ Իր աշակերտները ըսին , 12
Տէ՛ր թէ որ քնացած է , պիտի ա-
ռողջանայ ։ Իսկ Յիսուս անոր 13
մեռնելուն համար կ'ըսէր , բայց ա-
նոնք կը կարծէին թէ քնոյ քնանա-
լուն համար կ'ըսէ ։ Ան ատենը 14
Յիսուս յայտնապէս ըսաւ անոնց ,
Ղազարոս մեռաւ ․ Ու ես ուրախ 15

եմ ձեզի համար որ հոն չէի , որ
դուք հաւատաք . բայց եկէ՛ք եր-
16 թանք անոր : Թովմաս որ Եր-
կուորեակ կ'ըսուէր , ըսաւ իր աշա-
կերտակիցներուն , Մե՛նք ալ եր-
թանք՝ որ անոր հետ մեռնինք :
17 Յիսուս երբոր եկաւ , գտաւ որ
անիկայ արդէն չորս օրուան գե-
18 րեզմանը դրուած էր : Ու Բե-
թանիա Երուսաղէմին մօտ էր՝
տասնուհինգ ասպարէզի չափ :
19 Ու Հրեաներէն շատերը Մար-
թային ու Մարիամին եկած էին
որ մխիթարեն զանոնք իրենց եղ-
20 բօրը համար : Արդ երբոր լսեց
Մարթա թէ Յիսուս կու գայ , զա-
նիկայ դիմաւորելու գնաց ; բայց
Մարիամ տանը մէջ նստեր էր :
21 Ու Մարթա ըսաւ Յիսուսին , Տէ՛ր
թէ որ հոս ըլլայիր , իմ եղբայրս
22 չէր մեռներ . Բայց գիտեմ որ հի-
մա ալ դուն ինչ որ խնդրես Աս-
տուծմէ , Աստուած պիտի տայ քեզի :
23 Յիսուս ըսաւ անոր , Քու եղբայրդ
24 յարութիւն պիտի առնէ : Մար-
թա ըսաւ անոր , Գիտեմ որ յարու-
թեան ժամանակը՝ վերջին օրը յա-
25 րութիւն պիտի առնէ : Յիսուս
ըսաւ անոր , Ես եմ յարութիւնը
և կեանքը . ան որ ինծի կը հաւա-
տայ , թէև մեռնի՝ պիտի ապրի .
26 Ու ան ամէնը որ կենդանի է ու
ինծի կը հաւատայ , յաւիտեան
պիտի չմեռնի . դուն կը հաւատա՞ս
27 ասոր : Ըսաւ անոր , Այո՛ Տէ՛ր
ես հաւատացեր եմ որ դուն ես
Քրիստոսը Աստուծոյ Որդին ,
28 որ աշխարհք գալու էիր : Ու երբ-
որ աս ըսաւ , գնաց իր քոյրը Մա-
րիամը գաղտուկ մը կանչեց՝ ըսե-
լով , Վարդապետը եկեր է՝ ու
29 քեզ կը կանչէ : Անիկայ լսածին
պէս՝ շուտ մը ելաւ ու եկաւ անոր :
30 Իսկ Յիսուս դեռ գեղը եկած չէր ,
հապա ան տեղն էր , ուր որ Մար-
31 թա զանիկայ դիմաւորեց : Բայց
Հրեաները որ անոր հետ տանը
մէջն էին ու կը մխիթարէին զա-
նիկայ , երբոր տեսան որ Մարիամ
շուտ մը ելաւ ու գնաց , իրենք ալ
անոր ետևէն գացին , ըսելով թէ
Գերեզմանը կ'երթայ որ հոն տեղը
լայ : Իսկ Մարիամ երբոր Յի- 32
սուսին եղած տեղը եկաւ ու զանի-
կայ տեսաւ , անոր ոտքը իյնալով
ըսաւ անոր , Տէ՛ր թէ որ հոս ըլ-
լայիր , իմ եղբայրս չէր մեռներ :
Յիսուս երբոր տեսաւ անիկայ որ 33
կու լար , և անոր հետ եկող Հրեա-
ները որ կու լային , իր հոգւոյն մէջ
հառաչեց ու խռովեցաւ , Ու ը- 34
սաւ , Ո՞ւր դրած էք անիկայ .
ըսին իրեն , Տէ՛ր եկո՛ւր ու տե՛ս :
(35) Յիսուս լացաւ : Ուստի 36
Հրեաները կ'ըսէին , Նայեցէ՛ք
ո՛րչափ կը սիրէր զանիկայ : Ա- 37
նոնցմէ ոմանք ալ կ'ըսէին , Անի-
կայ որ կոյրին աչքերը բացաւ , չէ՞ր
կրնար ընել որ աս ալ չմեռնէր :
Յիսուս նորէն իր սրտին մէջ հա- 38
ռաչելով՝ գերեզմանը կու գայ . և
անիկայ քարայր մըն էր , ու անոր վը-
րայ քար մը դրուած էր : Յիսուս 39
ըսաւ , Մէկդի՛ ըրէք աս քարը .
մեռելին քոյրը Մարթան ըսաւ ա-
նոր , Տէ՛ր արդէն հոտած պիտի
ըլլայ , ինչու որ չորս օրուան է :
Ըսաւ անոր Յիսուս , Քեզի չըսի՞ 40
որ եթէ հաւատաս , Աստուծոյ
փառքը պիտի տեսնես : Ու ա- 41
ռին մէկ դի ըրին քարը . և Յի-
սուս իր աչքերը վեր վերցուց ու
ըսաւ , Հա՛յր՝ շնորհակալ եմ քե-
զմէ , որ ինծի լսեցիր : Ու ես գի- 42
տէի որ ամէն ատեն ինծի կը լսես .
բայց աս բոլորտիքս կայնող ժողո-
վուրդին համար ըսի , որ հաւատան
թէ դուն խրկեցիր զիս : Ու աս 43
ըսելէն ետքը , մեծ ձայնով մը
կանչեց , Ղազարո՛ս դո՛ւրս եկուր :
Մեռելն ալ ելաւ ոտքերը ու ձեռ- 44
քերը պատանքով կապած , և ե-
րեսը վարշամակով պատած . Յի-
սուս ըսաւ անոնց , Արձըկեցէ՛ք ա-
նիկայ ու թողէք որ երթայ :
Ու Հրեաներէն շատերը որ 45
Մարիամին եկեր էին , երբոր Յի-
սուսին ըրածը տեսան , հաւատա-
ցին իրեն : Բայց անոնցմէ ոմանք 46
գացին փարիսեցիներուն , ու Յի-
սուսին ըրածը անոնց պատմեցին :
Ուստի քահանայապետները և 47

փարիսեցիները ժողով գումարեցին՝
ու ըսին , Ի՞նչ ընենք , քանզի աս
48 մարդը շատ հրաշքներ կ'ընէ : Թէ
որ անիկայ ասանկ թող տանք , ա-
մէնքն ալ անոր պիտի հաւատան ,
և Հռովմայեցիք պիտի գան՝ ու մեր
տեղը ու ազգը պիտի վերցընեն :
49 Ու անոնցմէ մէկը Կայիափա ան-
նով՝ որ նոյն տարւոյն քահանայա-
պետն էր , ըսաւ անոնց , Դուք
50 բան մը չէք գիտեր , Ու չէք ալ
խորհիր , թէ աղէկ է մեզի՝ որ մէկ
մարդ մը ժողովուրդին համար մեռ-
51 նի , ու բոլոր ազգը չկորսուի : Բայց
աս բանը չէ թէ ինքիրմէն զրու-
ցեց , հապա նոյն տարւան քահա-
նայապետը ըլլալով , մարգարէա-
ցաւ թէ Յիսուս ազգին համար
52 պիտի մեռնէր . Ու չէ թէ միայն
ազգին համար , հապա որ Աստու-
ծոյ ցիրուցան եղած որդիներն ալ
մէկտեղ ժողվէ :
53 Ու նոյն օրէն ետև խորհուրդ ըրին
54 որ սպաննեն զանիկայ : Ասոր
Յիսուս անկէ ետքը համարձակ չէր
պտըտեր Հրէից մէջ , հապա ան-
կէ անապատին մօտ տեղ մը գնաց ,
մէկ քաղաք մը՝ որուն անունը Եփ-
րայիմ էր ; ու իր աշակերտներուն
հետ մէկտեղ հոն կը կենար :
55 Ու Հրէից զատիկը մօտ էր , ու
նոյն տեղէն շատ մարդիկ զատիկէն ա-
ռաջ Երուսաղէմ ելան որ ինք-
56 զինքնին մաքրեն . Ու կը փնտռէին
Յիսուսը , ու տաճարին մէջ կեցած
ատեննին իրարու կ'ըսէին , Ձեզի
ի՞նչպէս կ'երևնայ , թէ աս տօնին
բնաւ պիտի չգա՞յ : Իսկ քահանա-
յապետները ու փարիսեցիները պա-
տուէր տուեր էին , որ եթէ մէկը
գիտնայ անոր ուր ըլլալը՝ իմացընէ,
որ անիկայ բռնեն :

ԳԼ . ԺԲ

1 Իսկ Յիսուս զատիկէն վեց օր առաջ
Բեթանիա եկաւ , ուր էր Ղա-
զարոս մեռեալը , որն որ Յիսուս
2 մեռելներէն յարոյց : Ու հոն ա-
նոր ընթրիք մը ըրին . ու Մարթա
սպասաւորութիւն կ'ընէր , և Ղա-
զարոս անոր հետ սեղան նստողնե-
րուն մէկն էր : Իսկ Մարիամ մէկ 3
լիտր նարդոսի պատուական մեծա-
գին եղ առնելով , Յիսուսի ոտ-
քերը օծեց ու իր մազերովը անոր
ոտքերը սրբեց . և տունը եղին
անուշահոտութենովը լեցուեցաւ .
Ու անոր աշակերտներուն մէկը 4
Իսկարիովտացի Սիմոնեան Յու-
դա՝ որ զանիկայ պիտի մատնէր ,
ըսաւ , Ինչո՞ւ համար աս եղը չը- 5
ծախուեցաւ երեք հարիւր դահեկա-
նի , որ աղքատներուն տրուէր : Աս 6
ըսաւ , չէ թէ աղքատներուն հա-
մար իր հոգն էր , հապա որ գող
էր , ու գանձանակը ինքը կը պա-
հէր , և ինչ որ ձգուէր՝ ինքը կը
կրէր : Իսկ Յիսուս ըսաւ , Թո՛ղ 7
տուր ատոր . աս բանը իմ պա-
տանքուելուս օրուանը համար պա-
հեց : Վասն զի աղքատները ամէն 8
ատեն ձեր հետ ունիք , բայց զիս
ամէն ատեն չունիք :
Ասոր Հրէաներէն շատ ժողո- 9
վուրդ անոր հոն ըլլալը իմացան ,
ու եկան , չէ թէ միայն Յիսուսի
համար , հապա որ Ղազարոսն ալ
տեսնեն , որն որ մեռելներէն յա-
րուց : Իսկ քահանայապետները 10
խորհուրդ ըրին որ Ղազարոսն ալ
մեռցընեն . Ինչու որ Հրէաներէն 11
շատերը անոր պատճառովը կ'եր-
թային ու կը հաւատային Յիսու-
սի :
Հետևեալ օրը շատ ժողովուրդ 12
որ տօնին եկած էին , երբոր լսեցին
թէ Յիսուս Երուսաղէմ կու գայ ,
Արմաւենիի ոստեր առին ու ե- 13
լան զանիկայ դիմաւորելու , և կ'ա-
ղաղակէին , Ովսաննա՝ օրհնեալ է
Իսրայէլի թագաւորը՝ որ Տէրոջը
անունովը կու գայ : Ու Յիսուս 14
աւանակ մը գտնելով անոր վրայ
նստաւ , ինչպէս որ գրուած է ,
Մի՛ վախնար՝ ով Սիոնի աղջիկ , 15
ահա քու թագաւորդ կու գայ իշու
աւանակի վրայ նստած : Ու անոր 16
աշակերտները առաջ չիմացան աս
բաները . բայց երբոր Յիսուս փա-
ռաւորուեցաւ , այն ատենը միտքեր-
նին բերին թէ աս բաները անոր
համար գրուած էր , և թէ ինծի աս

45 ղրկողին ։ Ու ան որ զիս կը տեսնէ,
46 զիս ղրկողը կը տեսնէ ։ Ես լոյս
եկայ աշխարհ, որ ամէն ով որ
ինծի հաւատայ, խաւարի մէջ
47 չմնայ ։ Ու թէ որ մէկը իմ խօս-
քերս լսէ ու չհաւատայ, ես անիկայ
չեմ դատեր. քանզի ես չեկայ որ
աշխարհը դատեմ, հապա որ աշ-
48 խարհը փրկեմ ։ Ան որ զիս կ'ա-
նարգէ և իմ խօսքերս չընդունիր,
կայ մէկը որ զանիկայ կը դատէ.
ան խօսքը որ ես խօսեցայ, ան պի-
տի դատէ զանիկայ վերջին օրը ։
49 Ինչու որ ես ինքնիրմէս չխօսեցայ.
հապա Հայրը որ զիս ղրկեց, ին-
քը ինծի պատուիրեց ինչ որ պիտի
ըսեմ՝ և ինչ որ պիտի խօսիմ ։
50 Ու գիտեմ որ անոր պատուիրանքը
յաւիտենական կեանք է. ուստի
ինչ որ ես կը խօսիմ, ինչպէս որ
Հայրը ինծի ըսաւ, անանկ կը
խօսիմ ։

ԳԼ. ԺԳ

1 Զատկի տօնէն առաջ՝ Յիսուս
գիտնալով թէ իր ժամանակը
հասեր է որ աս աշխարհէս ելլէ
Հօրը քովը, սիրելով իրենները
որ աշխարհի մէջ էին, մինչև վերջն
ալ սիրեց զանոնք ։
2 Ու ընթրիքը որ կ'ըլլար, (Սա-
տանան արդէն Իսկարիովտացի Սի-
մոնեան Յուդային սրտին մէջը դրեր
3 էր, որ զանիկայ մատնէ.) Յիսուս
գիտնալով թէ Հայրը ամէն բան
իր ձեռքը տուաւ, և թէ ինքը Աս-
տուծմէ ելաւ ու Աստուծոյ քովը
4 կ'երթայ, Ընթրիքէն ելաւ, և
հանդերձները մէկդի դրաւ ու
զենջակ մը առնելով մէջքը փաթ-
5 թեց ։ Յետքը կոնքին մէջ ջուր
լեցուց, ու սկսաւ աշակերտներուն
ոտքերը լուալ, և ան իր փաթ-
6 թուած զենջակովը սրբել ։ Ուս-
տի եկաւ Սիմոն Պետրոսին. ան
ալ ըսաւ անոր. Տէ՛ր՝ դո՞ւն իմ
7 ոտքերս պիտի լուաս ։ Յիսուս
պատասխան տուաւ ու ըսաւ անոր.
Ես ինչ որ կ'ընեմ՝ դուն հիմա չես
գիտեր, հապա ետքը պիտի գիտ-
8 նաս ։ Պետրոս ըսաւ անոր. Իմ-
նաւ դուն իմ ոտքերս պիտի չլ-
լուաս, պատասխան տուաւ անոր
Յիսուս, Թէ որ քեզ չլուամ,
դուն ինծի հետ բաժին չունիս ։
Սիմոն Պետրոս ըսաւ անոր. Տէ՛ր՝ 9
չէ՛ թէ միայն ոտքերս, հապա նաև
ձեռքերս ու գլուխս ։ Յիսուս ը- 10
սաւ անոր. Լուացուածին՝ ոտքերը
լուալէն 'ի զատ ուրիշ բանի պէտք
չէ, այլ բոլորովին մաքուր է. և
դուք մաքուր էք, բայց չէ՛ թէ
ամէնքդ ։ Վասն զի գիտէր զա- 11
նիկայ որ զինքը պիտի մատնէր.
անոր համար ըսաւ՝ Չէ՛ թէ ամէնքդ
ալ մաքուր էք ։ Ու երբոր անոնց 12
ոտքերը լուաց, և իր հանդերձները
առնելով նորէն սեղան նստաւ, ը-
սաւ անոնց. Գիտէ՞ք ինչ ըրի ձե-
զի ։ Դուք զիս Վարդապետ ու 13
Տէր կը կոչէք, և աղէկ կ'ըսէք.
ինչու որ այնպէս եմ ։ Հապա թէ 14
որ ես Տէրս ու Վարդապետս ձեր
ոտքերը լուացի, պէտք է որ դուք
ալ իրարու ոտքերը լուաք ։ Վասն 15
զի ձեզի մէկ օրինակ մը տուի, որ
ինչպէս ես ձեզի ըրի՝ դուք ալ ընէք ։
Ճշմարիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի. 16
Ծառան իր տիրոջմէն մեծ չէ, ո՛չ
ալ ղրկուածը զինքը ղրկողէն մեծ
է ։ Եթէ դուք աս բաները գի- 17
տէք, երանելի էք՝ թէ որ զանոնք
կատարէք ։ Չէ՛ թէ ձեր ամէնուդ 18
համար կ'ըսեմ. վասն զի ես կը
ճանչնամ անոնք որ ես ընտրեցի,
հապա որ ան գրուածը կատարուի
թէ Ան որ իմ հետս հաց կ'ուտէր,
ինծի դէմ կրունկ վերցուց ։ Հի- 19
մակուընէ կ'ըսեմ ձեզի՝ քանի որ չէ
եղեր, որ երբոր ըլլայ՝ հաւատաք
թէ ես ան եմ ։ Ճշմարիտ ճշմա- 20
րիտ կ'ըսեմ ձեզի. Ո՛վ որ կ'ըն-
դունի անիկայ որ ես կը ղրկեմ,
զիս կ'ընդունի. և ո՛վ որ զիս կ'ըն-
դունի, զիս ղրկողը կ'ընդունի ։
Յիսուս երբոր աս ըսաւ, իր հո- 21
գւոյն մէջ խռովեցաւ, և վկայեց ը-
սելով. Ճշմարիտ ճշմարիտ կ'ը-
սեմ ձեզի, որ ձեզմէ մէկը զիս պի-
տի մատնէ ։ Ուստի աշակերտները 22
տարակուսած իրարու 'կը նայէին
թէ որու համար կը խօսէ ։ Ու- 23

աշակերտներէն մէկը կար Յիսուսի
քովը նստած, որն որ Յիսուս կը
24 սիրէր։ Նոյն Սիմոն Պետրոս անոր
աչք կ'ընէր հարցընելու թէ ո՛վ
պիտի ըլլայ անիկայ՝ որուն համար
25 կը զրուցէ։ Ան ալ Յիսուսին
կուրծքին վրայ իյնալով՝ ըսաւ ա-
26 նոր, Տէ՛ր՝ ո՛վ է ան։ Յիսուս
պատասխան տուաւ, Անիկայ է՛
որուն որ պատառը թրջելով կու-
տամ. և թրջելով պատառը Իս-
կարիովտացի Սիմոնեան Յուդա-
27 յին տուաւ։ Ու պատառէն ետքը
Սատանան անոր ներսը մտաւ։
Նոյն Յիսուս ըսաւ անոր. Ինչ որ
28 պիտի ընես, շուտո՛վ ըրէ։ Բայց
աս բանը սեղան նստողներէն մէկը
չհասկըցաւ, թէ ինչու համար ը-
29 սաւ անոր։ Վասն զի ոմանք կը
խորհէին թէ՝ որովհետև դանձա-
նակը Յուդան կը պահէր, Յի-
սուս անոր կ'ըսէր, Առնէ՛ ա՛ն
ինչ որ մեզի աս տօնիս պէտք է,
կամ որ աղքատներուն բան մը
30 տայ։ Անիկայ ալ պատառը ա-
ռածին պէս՝ շուտ մը դուրս ելաւ,
ու գիշեր էր։
31 Ու երբոր անիկայ դուրս ելաւ,
Յիսուս ըսաւ, Հիմա փառաւո-
րուեցաւ Որդին մարդոյ, ու Աս-
տուած փառաւորուեցաւ անով.
32 Թէ որ Աստուած անով փառա-
ւորուեցաւ, Աստուած ալ անիկայ
իր անձովը պիտի փառաւորէ, և
շուտով պիտի փառաւորէ զանիկայ։
33 Որդեակք՝ քիչ մը ատեն ալ
ձեզի հետ եմ. զիս պիտի փնտռէք.
և ինչպէս որ Հրեաներուն ըսի
թէ Ու՛ր որ ես կ'երթամ, դուք
չէք կրնար գալ, հիմա ձեզի ալ
34 կ'ըսեմ։ Նոր պատուիրան մը
կու տամ ձեզի որ մէկզմէկ սիրէք,
ինչպէս որ ես ձեզ սիրեցի, որ դուք
35 ալ մէկզմէկ սիրէք։ Ասով ա-
մէնը պիտի գիտնան թէ իմ աշա-
կերտներս էք, թէ որ իրարու վրայ
36 սէր ունենաք։ Սիմոն Պետրոս
ըսաւ անոր, Տէ՛ր՝ ո՞ւր կ'երթաս.
Յիսուս պատասխան տուաւ անոր,
Ու՛ր որ ես կ'երթամ, դուն հիմա
չես կրնար իմ ետևէս գալ, բայց
ետքը պիտի գաս իմ ետևէս։
Պետրոս ըսաւ անոր, Տէ՛ր՝ ինչո՞ւ 37
հիմա չեմ կրնար քու ետևէդ գալ.
ես իմ կեանքս ալ քեզի համար պի-
տի դնեմ։ Յիսուս պատասխան 38
տուաւ անոր, Դո՞ւ կեանքդ պիտի
դնես ինծի համար. Ճշմարիտ ճըշ-
մարիտ կ'ըսեմ քեզի, Հաւը պիտի
չխօսի՝ մինչև որ դուն իրեք անգամ
զիս ուրանաս։

## ԳԼ. ԺԴ

Սիրտերնիդ չխռովի. Աստուծոյ 1
հաւատացէք, ինծի ալ հա-
ւատացէք։ Իմ Հօրս տունը շատ 2
բնակարաններ կան. ապա թէ ոչ
ես ձեզի պիտի ըսէի։ Հիմա կ'եր-
թամ ու ձեզի տեղ կը պատրաս-
տեմ։ Նոյն թէ որ երթամ ու 3
ձեզի տեղ պատրաստեմ, նորէն
կու գամ և ձեզ քովս կ'առնեմ,
որպէս զի ուր որ ես եմ՝ դուք ալ
հոն ըլլաք։ Նոյն ուր որ ես կ'եր- 4
թամ՝ գիտէք, ու ճամբան ալ
գիտէք։
Թովմաս ըսաւ անոր, Տէ՛ր՝ չենք 5
գիտեր ուր կ'երթաս, և ի՞նչպէս
կրնանք ճամբան գիտնալ։ Յի- 6
սուս ըսաւ անոր, Ես եմ ճամբան
ու ճշմարտութիւնը ու կեանքը.
մէկը Հօրը քով չգար, եթէ ոչ
ինծմով։ Թէ որ զիս ճանչնայիք՝ 7
իմ Հայրս ալ կը ճանչնայիք, և
ասկէ ետև կը ճանչնաք անիկայ ու
տեսաք անիկայ։
Փիլիպպոս ըսաւ անոր, Տէ՛ր՝ 8
Հայրը մեզի ցուցո՛ւր, ու հերիք է
մեզի։ Ըսաւ անոր Յիսուս, Այս- 9
քան ժամանակ ձեզի հետ եմ, և
զիս չճանչցի՞ր Փիլիպպոս. ան որ
զիս տեսաւ՝ Հայրը տեսաւ, և դուն
ինա՞ր կ'ըսես թէ Հայրը մեզի
ցուցո՛ւր։ Չե՞ս հաւատար թէ 10
ես Հօրը մէջն եմ ու Հայրը իմ
մէջս է. ան խօսքերը որ ես ձեզի
կը խօսիմ, չէ՛ թէ ինքիրմէս կը
խօսիմ, հապա Հայրը որ իմ մէջս
բնակած է, անիկայ կը գործէ ան
գործքերը։ Հաւատացէք ինծի, 11
թէ ես Հօրը մէջն եմ ու Հայրը
իմ մէջս է. Ապա թէ ոչ գործե- 12

10 ինծի չէին հաւատար․ Արդարու-
թեան համար՝ որ ես իմ Հօրս քով
կ'երթամ, և ալ զիս չէք տեսներ․
11 Իսկ դատաստանի համար՝ որ աս աշ-
խարհիս իշխանը դատապարտուած
12 է։ Ձեզի տակաւին շատ բաներ
ունիմ ըսելու, բայց հիմա չէք կըր-
13 նար տանիլ։ Իսկ երբոր ինքը՝
Ճշմարտութեան Հոգին գայ, ամէն
ճշմարտութեան պիտի առաջնորդէ
ձեզի․ ինչու որ չէ՛ թէ ինքնիրմէն
պիտի խօսի, հապա ինչ որ լսէ՝
ան պիտի խօսի ու գալիքները ձե-
14 զի պիտի պատմէ։ Անիկայ զիս
պիտի փառաւորէ, ինչու որ իմինէս
15 պիտի առնէ ու ձեզի պատմէ։ Ինչ
ամէն բաները որ Հայրը ունի,
իմս է․ անոր համար ձեզի ըսի թէ
իմինէս պիտի առնէ ու ձեզի պատ-
16 մէ։ Քիչ մը ատենէն՝ ալ զիս
պիտի չտեսնէք, և դարձեալ քիչ
մը ատենէն զիս պիտի տեսնէք,
քանզի ես Հօրս կ'երթամ։
17 Ասոր համար աշակերտներէն ոմանք
իրարու կ'ըսէին, Ի՞նչ է աս որ
մեզի կ'ըսէ թէ Քիչ մը ատենէն՝
ալ զիս պիտի չտեսնէք․ և դար-
ձեալ քիչ մը ատենէն զիս պիտի
տեսնէք․ և Վասն զի ես Հօրս
18 կ'երթամ։ Ու կ'ըսէին, Ի՞նչ
պիտի ըլլայ ան Քիչ մըն ալ՝ որ
կ'ըսէ․ չենք գիտեր ինչ կը զը-
19 րուցէ։ Իսկ Յիսուս գիտնալով
որ կ'ուզէին իրեն հարցընել, ըսաւ
անոնց, Ասո՞ր համար իրարու կը
հարցընէք, որ ըսի թէ Քիչ մը
ատենէն՝ ալ զիս պիտի չտեսնէք,
և դարձեալ քիչ մը ատենէն զիս
20 պիտի տեսնէք։ Ճշմարիտ ճշմա-
րիտ կ'ըսեմ ձեզի, դուք պիտի լաք
ու ողբաք, բայց աշխարհս պիտի
ուրախանայ․ դուք պիտի տրտմիք,
սակայն ձեր տրտմութիւնը ուրա-
21 խութեան պիտի փոխուի։ Կնիկ
մը երբոր ծնանելու վրայ է՝ տրտմու-
թիւն կ'ունենայ, ինչու որ իր ժա-
մը հասած է․ բայց երբոր տղան
ծնանի, ալ նեղութիւնը միտք չը-
բերեր ուրախութենէն՝ որ աշխարհ
22 մարդ մը ծնաւ։ Իսկ յիրաւի դուք
հիմա տրտմութիւն ունիք․ բայց ես
ձեզ նորէն պիտի տեսնեմ, և ձեր
սիրտերը ուրախ պիտի ըլլան, ու
ձեր ուրախութիւնը մէկը ձեզմէ
պիտի չհանէ։ Իսկ ան օրը ինծի 23
բան մը պիտի չհարցընէք։ Ճշմա-
րիտ ճշմարիտ կ'ըսեմ ձեզի, որ
իմ անունովս ինչ որ խնդրէք Հօր-
մէս, պիտի տայ ձեզի։ Մինչև 24
հիմա իմ անունովս բան մը չը-
խնդրեցիք․ խնդրեցէ՛ք ու պիտի
առնէք, որ ձեր ուրախութիւնը
լեցուն ըլլայ։ Աս բաները առակ- 25
ներով խօսեցայ ձեզի․ Բայց ժա-
մանակ պիտի գայ, որ ալ ձեզի
առակներով պիտի չխօսիմ, հա-
պա յայտնապէս Հօրը վրայով պի-
տի պատմեմ ձեզի։ Ան օրը իմ 26
անունովս պիտի խնդրէք․ և չեմ
ըսեր ձեզի թէ ես ձեզի համար պի-
տի աղաչեմ Հօրը․ Ինչու որ ին- 27
քը Հայրը ձեզ կը սիրէ, վասն զի
դուք զիս սիրեցիք և հաւատացիք
թէ ես Աստուծմէ ելայ։ Հօրմէն 28
ելայ ու աշխարհ եկայ․ նորէն կը
թողում աշխարհը և Հօրը կ'եր-
թամ։
Ըսին անոր իր աշակերտները, 29
Ահա հիմա յայտնապէս կը խօսիս,
և առակ մըն ալ չես ըսեր։ Հի- 30
մա գիտցանք որ ամէն բանը գիտես
և քեզ ձեն ալ պէտք չէ որ մէկը քե-
զի հարցընէ․ ասով կը հաւատանք
որ Աստուծմէ ելար։ Յիսուս պա- 31
տասխան տուաւ անոնց ու ըսաւ,
Հիմա կը հաւատա՞ք․ Ահա ժամա- 32
նակ պիտի գայ, ու եկած ալ է,
որ ցիրուցան պիտի ըլլաք ամէն մէ-
կը իր տեղը, ու զիս մինակ պիտի
թողուք․ բայց ես մինակ չեմ, ին-
չու որ Հայրը իմ հետս է։ Աս 33
բաները ձեզի խօսեցայ, որ ինծմով
խաղաղութիւն ունենաք․ աշխարհի
մէջ նեղութիւն պիտի ունենաք,
բայց քաջալերուեցէք․ ես աշխար-
հին յաղթեցի։

## ԳԼ. ԺԷ.

Յիսուս երբոր ասոնք խօսեցաւ, 1
իր աչքերը դէպ 'ի երկինքը վեր-
ցուց ու ըսաւ, Հա՛յր՝ ժամանակը
հասեր է, փառաւորէ՛ քու Որդիդ,

որ քու Որդիդ ալ քեզ փառա-
2 ւորէ ․ Ինչպէս որ իրեն իշխանու-
թիւն տուիր ամէն մարմնոյ վրայ ,
որ յաւիտենական կեանք տայ ան
3 ամենուն որ իրեն տուիր ։ Եւ
աս է յաւիտենական կեանքը , որ
ճանչնան քեզ մի միայն ճշմարիտ
Աստուածդ , ու Յիսուս Քրիստո-
4 սը՝ որն որ դուն խրկեցիր ։ Ես
քեզ երկրիս վրայ փառաւորեցի ․
ան գործը որ ինծի տուիր ընելու՝
5 լմնցուցի ։ Եւ հիմա դուն Հայր՝
փառաւորէ զիս քու քովդ ան
փառքովը՝ որ աշխարհի ըլլալէն ա-
6 ռաջ քովդ ունէի ։ Քու անունդ
յայտնի ըրի ան մարդոցը՝ որոնք որ
աշխարհէն ինծի տուիր ․ քուկդ
էին , ու ինծի տուիր զանոնք , և
7 քու խօսքդ պահեցին ։ Հիմա
գիտցան թէ ան ամէն բաները որ
8 ինծի տուիր , քեզմէ են ․ Ինչու որ
ան խօսքերը որ ինծի տուիր , ես
անոնց տուի , անոնք ալ ընդունե-
ցին , և ճշմարտութեամբ իմացան
որ ես քեզմէ ելայ , ու հաւատացին
9 թէ դուն խրկեցիր զիս ։ Ես ա-
նոնց համար կ'աղաչեմ ․ չէ թէ
աշխարհի համար կ'աղաչեմ , հա-
պա անոնց համար որոնք դուն ինծի
տուիր , ինչու որ քուկդ են անոնք ։
10 Եւ ինչ որ իմս է , ան բոլորը
քուկդ է , և ինչ որ քուկդ է , ան
իմս է , ու ես անոնցմով փառա-
11 ւորուած եմ ։ Եւ ես ալ աշխար-
հի մէջ չեմ , բայց անոնք աշխարհէ
մէջ են , ու ես քեզի կու գամ ․
ով Սուրբ Հայր՝ քու անունովդ
պահէ՛ անոնք որ դուն ինծի տուիր ,
որպէս զի մէկ ըլլան , ինչպէս որ
12 մենք մէկ ենք ։ Քանի որ աշխար-
հի մէջ անոնց հետ էի , ես կը պա-
հէի անոնք քու անունովդ ․ որոնք
որ դուն ինծի տուիր , ես պահեցի ,
և անոնցմէ մէկը չկորսուեցաւ ,
միայն թէ ան կորստեան որդին , որ
13 գրուածը կատարուի ։ Եւ հիմա
քեզի կու գամ , ու աշխարհի մէջ
աս բաները կը խօսիմ , որ իմ ու-
րախութիւնս իրենց անձերուն մէջ
14 կատարեալ ունենան ։ Ես քու
խօսքդ անոնց տուի , ու աշխարհս
անոնք ատեց ․ ինչու որ աշխարհէ
չեն , ինչպէս որ ես աշխարհէ չեմ ։
Չեմ աղաչեր որ անոնք աշխարհէն 15
վերցընես ․ հապա որ անոնք չարէն
պահես ։ Անոնք աշխարհէ չեն , 16
ինչպէս որ ես աշխարհէ չեմ ։ Սըր- 17
բէ՛ անոնք քու ճշմարտութիւնովդ ․
քու խօսքդ ճշմարտութիւն է ։
Ինչպէս որ դուն զիս աշխարհք խըր- 18
կեցիր , ես ալ անոնք աշխարհք
խրկեցի ։ Եւ անոնց համար ես 19
իմ անձս կը սրբեմ , որ իրենք ալ
ճշմարտութիւնով սրբացած ըլլան ։
Բայց չէ՛ թէ միմիայն անոնց համար 20
կ'աղաչեմ , հապա անոնց խօսքովը
բոլոր ինծի հաւատացողներուն հա-
մար ալ ․ Որ ամէնն ալ մէկ ըլ- 21
լան , ինչպէս որ դուն ով Հայր՝
իմ մէջս , ու ես քու մէջդ , որ ա-
նոնք ալ մեր մէջը մէկ ըլլան , որ-
պէս զի աշխարհս հաւատայ թէ
դուն խրկեցիր զիս ։ Եւ ան փառ- 22
քը որ դուն ինծի տուիր՝ ես անոնց
տուի , որ մէկ ըլլան՝ ինչպէս որ
մենք մէկ ենք ․ (Ես անոնց մէջ՝ և 23
դուն իմ մէջս ,) որ իրենք կատա-
րեալ ըլլան միութեան մէջ ․ ու
աշխարհս գիտնայ թէ դուն խրկեցիր
զիս , ու սիրեցիր անոնք՝ ինչպէս որ
զիս սիրեցիր ․ Ո՛վ Հայր՝ անոնք 24
որ դուն ինծի տուիր , կ'ուզեմ որ
ձուր որ ես եմ , անոնք ալ իմ հետս
ըլլան , որպէս զի տեսնեն իմ փառ-
քըս որն որ ինծի տուիր ․ ինչու որ
դուն զիս սիրեցիր աշխարհիս սիհմ-
բէն առաջ ։ Ո՛վ արդար Հայր՝ 25
աշխարհս քեզ չճանչցաւ , բայց ես
քեզ ճանչցայ , և ասոնք ճանչցան
թէ դուն զիս խրկեցիր ։ Եւ քու 26
անունդ անոնց ճանչցուցի , ու պի-
տի ճանչցընեմ , որ ան սէրը որով
դուն զիս սիրեցիր , անոնց մէջը ըլ-
լայ , ու ես ալ անոնց մէջը ։

## ԳԼ. ԺԸ.

Յիսուս աս բաները ըսելէն ետև՝ 1
իր աշակերտներուն հետ մեկ-
նեցաւ Կեդրոն հեղեղատին անդիի
կողմը ելաւ , ուր որ պարտէզ մը
կար , որուն մէջը մտաւ ինքը ու իր
աշակերտները ։ Եւ Յուդա ալ 2

որ զանիկայ պիտի մատնէր, գիտէր
այն տեղը. ինչու որ Յիսուս շատ
անգամ իր աշակերտներուն հետ
3 մէկտեղ հոն ժողվուած էր։ Ուս-
տի Յուդա զինուորներուն գունդը
ու քահանայապետներէն և փարի-
սեցիներէն սպասաւորներ հետը առ-
նելով, այն տեղը եկաւ ջահերով
ու լապտերներով և զէնքերով։
4 Իսկ Յիսուս իր վրայ գալու բոլոր
բաները գիտնալով՝ ելաւ ու ըսաւ
5 անոնց. Ո՞վ կը փնտռէք։ Պա-
տասխան տուին անոր. Նազովրե-
ցի Յիսուսը. ըսաւ անոնց Յի-
սուս, Ես եմ. Յուդա ալ որ
զանիկայ կը մատնէր՝ անոնց հետ
6 կայներ էր։ Ու երբոր ըսաւ թէ
Ես եմ, ետ ետ գացին ու գետինը
7 ինկան։ Դարձեալ հարցուց ա-
նոնց. Ո՞վ կը փնտռէք. անոնք
ալ ըսին, Նազովրեցի Յիսուսը։
8 Յիսուս պատասխան տուաւ. Ձե-
զի ըսի թէ Ես եմ. ուստի թէ որ
զիս կը փնտռէք, թո՛ղ տուէք ա-
9 սոնք որ երթան։ Որ կատարուի
այն խօսքը որ ինք ըսեր էր՝ Թէ
Անոնք որ ինծի տուիր, անոնցմէ
10 մէկն ալ չկորսնցուցի։ Ան ատե-
նը Սիմոն Պետրոս որ սուր մը
ունէր, քաշեց անիկայ ու քահա-
նայապետին ծառային զարնելով՝ ա-
նոր աջ ականջը կտրեց հանեց. և
այն ծառային անունը Մաղքոս էր։
11 Իսկ Յիսուս ըսաւ Պետրոսին,
Սուրդ իր պատեանը դիր. այն գա-
ւաթը որ Հայրը ինծի տուաւ,
պիտի չխմե՞մ անիկայ։
12 Ուստի զինուորներուն գունդը ու
հազարապետը և Հրէից սպասա-
ւորները բռնեցին Յիսուսը ու
13 կապեցին. Ու առաջ զանիկայ Ան-
նային տարին, քանզի ինքը այն
տարուան քահանայապետին Կա-
14 յիափային աներն էր։ Ու ան
Կայիափան էր, որ Հրէից խրատ
տուաւ թէ Աղէկ է որ մէկ մարդ
մը կորսուի ժողովուրդին համար։
15 Ու Յիսուսի ետևէն կ'երթային
Սիմոն Պետրոս և ուրիշ աշակերտ
մը. և այն աշակերտը քահանայա-
պետին ծանօթ ըլլալով՝ Յիսու-
սի հետ քահանայապետին գաւիթը
մտաւ։ Բայց Պետրոս դուրսը դը- 16
րանը քովը կը կենար. ուստի ե-
լաւ միւս աշակերտը որ քահանա-
յապետին ծանօթն էր, և ըսաւ
դռնապանին, ու ներս մտուց
Պետրոսը։ Ան ատենը դռնապան 17
աղջիկը ըսաւ Պետրոսին. Միթէ
դո՞ւն ալ այն մարդուն աշակերտնե-
րէն ես. ան ալ ըսաւ, Չեմ։
Իսկ ծառաները ու սպասաւորները 18
հոն կայներ էին, և կրակ վառած
կը տաքնային, քանզի ցուրտ էր։
Պետրոս ալ անոնց հետ կայներ էր
ու կը տաքնար։ Իսկ քահանայա- 19
պետը Յիսուսին հարցուց անոր
աշակերտներուն ու վարդապետու-
թեանը վրայով։ Յիսուս պա- 20
տասխան տուաւ անոր. Ես աշ-
խարհին յայտնի խօսեցայ. ես ա-
մէն ատեն ժողովարաններուն մէջ
ու տաճարին մէջ սորվեցուցի, ուր
որ բոլոր Հրէաները կը ժողվուին,
ու ծածկաբար բան մը չխօսեցայ։
Ինչո՞ւ ինծի կը հարցընես, լսող- 21
ներուն հարցուր թէ ինչ խօսեցայ
իրենց. ահա ինչ որ խօսեցայ,
գիտեն իրենք։ Երբոր ասս ըսաւ, 22
սպասաւորներէն մէկը որ հոն կայ-
ներ էր, Յիսուսին ապտակ մը
զարկաւ՝ ըսելով. Ասո՞նկ պա-
տասխան կու տաս քահանայապե-
տին։ Յիսուս անոր պատասխա- 23
նեց. Թէ որ չար խօսեցայ, վկայէ
չարին համար. հապա թէ որ բարի
խօսեցայ, ինչո՞ւ կը զարնես ինծի։
Ու Աննա զանիկայ կապած՝ Կայիա- 24
փա քահանայապետին խրկեց։ Սի- 25
մոն Պետրոսն ալ հոն կայներ էր ու
կը տաքնար. և ըսին իրեն, Մի-
թէ դո՞ւն ալ անոր աշակերտներէն
ես. անիկայ ուրացաւ ու ըսաւ թէ
Չեմ։ Քահանայապետին ծառա- 26
ներէն մէկն ալ՝ այն մարդուն ազգա-
կանը՝ որուն ականջը Պետրոս կը-
րեր էր, ըսաւ, Չէ՞ որ ես քեզ
տեսայ պարտէզին մէջը անոր հետ։
Ան ատենը Պետրոս նորէն ուրա- 27
ցաւ, և շուտ մը հաւը խօսեցաւ։
Ու Յիսուսը Կայիափայի տունէն 28
կառավարչին պալատը տարին. և առ-

տատոր էր . ու իրենք պալատը չմը-
տան որ չպղծուին , հապա որ զա-
29 տիկը ուտեն : Ուստի Պիղատոս
դուրս ելաւ անոնց ու ըսաւ , Ի՞նչ
ամբաստանութիւն կը ներկայացը-
30 նէք աս մարդուն դէմ : Պատաս-
խան տուին ու ըսին իրեն , Թէ որ
ասիկայ չարագործ մը չըլլար , քե-
31 զի չէինք մատներ զանիկայ : Ան
ատենը Պիղատոս ըսաւ անոնց ,
Դուք առէ՛ք անիկայ , ու ձեր օրէն-
քին համեմատ անոր դատաստանը
տեսէ՛ք : Հրէաները իրեն ըսին ,
Մեզի օրինաւոր չէ մարդ մը մեռ-
32 ցընել . Որ կատարուի Յիսուսին
խօսքը , որ ըսաւ , իմացընելով թէ
ինչ մահուամբ պիտի մեռնէր :
33 Իսկ Պիղատոս նորէն պալատը մը-
տաւ , կանչեց Յիսուսը ու ըսաւ
անոր , Դո՞ւն ես Հրէից թագա-
34 ւորը : Յիսուս պատասխան տուաւ
անոր , Ասիկայ դուն քեզմէ՞ կ'ը-
սես , թէ ինծի համար ուրիշները
35 քեզի ըսին : Պատասխան տուաւ
Պիղատոս , Միթէ ես Հրէա՞յ
եմ . քու ազգդ և քահանայապետ-
ները քեզ ինծի մատնեցին . ի՞նչ
36 ըրած ես դուն : Յիսուս պատաս-
խան տուաւ ; Իմ թագաւորու-
թիւնս աս աշխարհէս չէ . թէ որ
աս աշխարհէս ըլլար իմ թագաւո-
րութիւնս , իմ սպասաւորներս կը
կռուէին՝ որ ես Հրէից ձեռքը չը-
մատնուիմ . բայց հիմա իմ թա-
37 գաւորութիւնս աստի չէ : Ան ա-
տենը Պիղատոս ըսաւ անոր , Ու-
րեմն դուն թագաւո՞ր մըն ես . պա-
տասխան տուաւ Յիսուս , Դուն
կ'ըսես . քանզի թագաւոր եմ . ես աս
բանիս համար ծնած եմ , և ասոր
համար աշխարհք եկած , որ ճշմար-
տութեան համար վկայեմ . ան ա-
մէնը որ ճշմարտութենէն է , իմ
38 ձայնիս ականջ կը դնէ : Պիղատոս
ըսաւ անոր , Ի՞նչ է ճշմարտու-
թիւնը . և աս ըսելով՝ նորէն դուրս
ելաւ Հրէաներուն , և ըսաւ ա-
նոնց , Ես մէկ յանցանք մը չեմ
39 գտներ անոր վրայ : Բայց սովո-
րութիւն ունիք որ մէկ հոգի մը
արձակեմ ձեզի զատիկին . հիմա
կ'ուզէ՞ք որ Հրէից թագաւորը ար-
ձակեմ ձեզի : Ան ատենը ամէնքն 40
ալ նորէն աղաղակեցին՝ ըսելով ,
Մի՛ արձակեր ասիկայ , հապա Բա-
րաբբան . ու Բարաբբա աւազակ
մըն էր :

## ԳԼ . ԺԹ

Ան ատենը Պիղատոս առաւ Յի- 1
սուսը ու ծեծեց : Զինուոր- 2
ները ալ փուշերէ պսակ հիւսելով՝
անոր գլուխը դրին , և անոր ծիրանի
հանդերձ մը հագցուցին . Ու կ'ը- 3
սէին , Ողջո՜յն քեզ՝ Հրէից թա-
գաւոր . և ապտակներ կը զարնէին
անոր : Պիղատոս նորէն դուրս 4
ելաւ ու ըսաւ անոնց , Ահա անի-
կայ դուրս կը բերեմ ձեզի , որ
գիտնաք թէ ես անոր վրայ յան-
ցանք մը չեմ գտներ : Ան ատենը 5
Յիսուս դուրս ելաւ , փշեղէն պը-
սակ ու ծիրանի հանդերձ հագած .
և Պիղատոս ըսաւ անոնց , Ահա աս
մարդը : Քահանայապետները ու 6
սպասաւորները երբոր տեսան անի-
կայ , աղաղակեցին ու ըսին , Խաչը
հանէ՛ խաչը հանէ [ասիկայ] : Պի-
ղատոս ըսաւ անոնց , Դո՛ւք առէք
ասիկայ ու խաչը հանեցէք , ինչու
որ ես ասոր վրայ յանցանք մը չեմ
գտներ : Հրէաները պատասխան 7
տուին իրեն . Մենք օրէնք ունինք ,
և մեր օրէնքին համեմատ պէտք է
որ մեռնի , ինչու որ ինքզինքը Աս-
տուծոյ Որդի ըրաւ : Երբոր Պի- 8
ղատոս աս խօսքը լսեց , ալ աւելի
վախցաւ : Ու նորէն պալատը 9
մտնելով՝ ըսաւ Յիսուսին , Ո՞ւս-
կից ես դուն . բայց Յիսուս պա-
տասխան չտուաւ անոր : Ուստի 10
Պիղատոս ըսաւ անոր , Ինծի հետ
չե՞ս խօսիր . չե՞ս գիտեր որ ես իշ-
խանութիւն ունիմ քեզ խաչը հա-
նելու , ու իշխանութիւն ունիմ քեզ
արձակելու : Յիսուս պատասխան 11
տուաւ , Դուն իմ վրաս մէկ իշ-
խանութիւն մըն ալ չէիր ունենար ,
թէ որ քեզի վերէն տրուած չըլ-
լար . անոր համար՝ ան որ զիս քեզի
մատնեց , անոր մեղքը աւելի մեծ
է . Ասկէ ետև Պիղատոս կը 12

փնտռէր թէ ինչպէս զանիկայ ար-
ձակէ . բայց Հրէաները կ'աղա-
ղակէին ու կ'ըսէին , Թէ որ ատի-
կայ արձակես , կայսրին բարեկամը
չես . ամէն մէկը որ ինքզինքը թա-
գաւոր կ'անուանէ , անիկայ կայս-
13 րին հակառակ կը խօսի ։ Իսկ
Պիղատոս երբոր աս խօսքը լսեց ,
դուրս հանեց Յիսուսը , ու նստաւ
բեմին վրայ այն տեղը՝ որ Քարայա-
տակ կ'ըսուէր , և Եբրայեցերէն
14 Կապպաթա . (Զատկին ուրբաթ
օրն էր ու ժամը վեցին ատեններն
էր ,) և Հրէաներուն ըսաւ , Ահա
15 ձեր թագաւորը ։ Բայց անոնք
աղաղակեցին , Վերցո՛ւր՝ վերցո՛ւր ,
խաչը հանէ ատիկայ . Պիղատոս
ըսաւ անոնց , Ձեր թագաւորը
խա՞չը հանեմ . քահանայապետնե-
րը պատասխան տուին , Մենք
Կայսրէն 'ի զատ թագաւոր չու-
16 նինք ։ Այն ատենը անոնց ձեռքը
տուաւ զանիկայ որ խաչուի ։
17 Անոնք ալ առին Յիսուսը ու կը
տանէին . և ինքը իր խաչը վեր-
ցընելով , ելաւ Գագաթ ը-
սուած տեղը , որ Եբրայեցերէն
18 Գողգոթա կ'ըսուի . Հոն զանիկայ
խաչը հանեցին , և անոր հետ ու-
րիշ երկուք ալ մէկ դիէն ու միւս
դիէն , և մէջտեղը Յիսուսը ։
19 Տախտակ մըն ալ գրեց Պիղատոս ,
ու դրաւ խաչին վրայ , և այսպէս
գրուած էր . ՅԻՍՈՒՍ ՆԱ-
ԶՈՎՐԵՑԻ ԹԱԳԱՒՈՐ ՀՐԷ-
20 ԻՑ ։ Այս տախտակը Հրէ-
աներէն շատերը կարդացին ,
վասն զի քաղաքին մօտ էր այն տեղը՝
ուր որ Յիսուս խաչուեցաւ . ու
գրուած էր Եբրայեցերէն՝ Յունա-
21 րէն և Լատիներէն ։ Այն ատենը
Հրէից քահանայապետները Պի-
ղատոսին ըսին , Մի՛ գրեր Թա-
գաւոր Հրէից , հապա թէ Ինքը
ըսաւ , Թագաւոր եմ Հրէից ։
22 Պիղատոս պատասխան տուաւ ,
Ինչ որ գրեցի՝ գրեցի ։
23 Եւ զինուորները երբոր Յիսուսը
խաչը հանեցին , անոր հանդերձ-
ները առին , ու չորս բաժին ըրին՝
ամէն մէկ զինուորին բաժին մը .
նաև պատմուճանը . իսկ պատմուճա-
նը առանց կարի էր վերէն 'ի վար
բոլորը հիւսուած . Ուստի ըսին ի- 24
րարու , Ատիկայ չպատռենք , հա-
պա վիճակ ձգենք ասոր վրայ թէ
որո՛ւ պիտի ըլլայ . որ կատարուի
այն գրուածը որ կ'ըսէ , Իմ հան-
դերձներս իրենց մէջը բաժնեցին ,
և իմ պատմուճանիս վրայ վիճակ
ձգեցին . ահա զինուորները աս բա-
ները ըրին ։
Եւ Յիսուսին խաչին քովը կայներ 25
էին իր մայրը և իր մօրը քոյրը
Մարիամ՝ Կղէովպասին կինը ու
Մարիամ Մագդաղենացին ։ Ուս- 26
տի Յիսուս երբոր տեսաւ իր մայրը ,
և այն աշակերտը որ կը սիրէր , որ
մօտը կայներ էր , ըսաւ իր մօրը ,
Ո՛վ կին՝ ահա քու որդիդ ։ Ետ- 27
քը ըսաւ աշակերտին , Ահա քու
մայրդ . և այն ժամանակէն աշակեր-
տը զանիկայ իր քովը առաւ ։
Անկէ ետև Յիսուս գիտնալով 28
թէ արդէն ամէն բան լմնցած է ,
(որպէս զի գրուածը կատարուի ,)
ըսաւ , Ծարաւ եմ ։ Եւ հոն 29
քացախով լեցուն աման մը կար .
անոնք ալ քացախով սպունգ մը
լեցընելով՝ զոպայի մշտիկի վրայ
փաթթած , անոր բերնին մօտե-
ցուցին ։ Ուստի Յիսուս երբոր 30
քացախը առաւ , ըսաւ , Ամէն բան
կատարուեցաւ . ու գլուխը ծռելով
հոգին աւանդեց ։
Իսկ Հրէաները՝ որովհետև ուր- 31
բաթ օր էր , որ չըլլայ թէ այն մար-
մինները խաչին վրայ մնան մինչև
շաբաթ օրը , (ինչու որ այն շաբա-
թը մեծ օր էր ,) Պիղատոսին ա-
ղաչեցին որ անոնց սրունքները կո-
տրուին , ու վերցուին ։ Ուստի զի- 32
նուորները եկան՝ և առջինին սրունք-
ները կոտրեցին , նաև միւսինը ,
որ անոր հետ խաչը ելած էր ։ Բայց 33
երբոր Յիսուսին եկան ու տեսան
որ արդէն մեռած էր , անոր սրունք-
ները չկոտրեցին . Հապա զի- 34
նուորներէն մէկը գեղարդով անոր
կողը խոցեց , և շուտ մը արիւն
ու ջուր ելաւ ։ Եւ ան որ տեսաւ 35
աս բաները՝ վկայեց , ու անոր վկա-

յուԹիւնը ճշմարիտ է, և ինքը գի-
տէ որ ճշմարիտ կ'ըսէ, որ դուք [ալ]
36 հաւատաք ։ Ինչու որ աս բաները
եղաւ որ կատարուի այն գրուածը
Թէ Անոր մէկ ոսկորը պիտի չկոտ-
37 րուի ։ Եւ մէյմըն ալ ուրիշ գը-
րուած մը կ'ըսէ Թէ Պիտի նային
անոր՝ որ խոցեցին ։
38 Անկէ ետև Յովսէփ որ Արիմա-
Թիացին էր, (Յիսուսի աշակերտ
եղած՝ բայց գաղտուկ Հրեաներուն
վախէն,) աղաչեց Պիղատոսին,
որ Յիսուսի մարմինը վերցընէ ․
Պիղատոս ալ հրաման տուաւ ․
ուստի եկաւ ու վերցուց Յիսուսի
39 մարմինը ․ Նիկոդեմոս ալ եկաւ,
(որ ինքը առաջուց գիշերով Յի-
սուսի եկեր էր,) ու բերաւ հա-
րիւր լիտրի չափ զմուռսի ու հա-
40 լուէի խառնուրդ մը ։ Եւ Յիսու-
սի մարմինը առին՝ ու խունկերով
փաթթեցին զանիկայ կտաւներու
մէջ, ինչպէս որ Հրէայք սովորու-
41 Թիւն ունին Թաղելու ։ Եւ այն
տեղը ուր որ խաչուեցաւ, պարտէզ
մը կար, ու այն պարտէզին մէջ նոր
գերեզման մը, որուն մէջը ամենեւին
42 մարդ դրուած չէր ։ Հրեաներուն
ուրբաթին համար հոն դրին Յի-
սուսը, ինչու որ գերեզմանը մօտ
էր ։

## ԳԼ. Ի

1 Եւ մէկշաբթի օրը Մարիամ Մագ-
դաղենացին առտուանց դեռ չլուսա-
ցած գերեզմանը կու գայ, ու
կը տեսնէ որ քարը գերեզմանին
2 դռնէն վերցուած է ։ Ինքը կը
վազէ կու գայ Սիմոն Պետրոսին
և միւս աշակերտին՝ որն որ Յիսուս
կը սիրէր, և կ'ըսէ անոնց, Տէրը
գերեզմանէն վերցուցին, ու չենք
3 գիտեր ո՛ւր դրին անիկայ ։ Ուստի
ելաւ Պետրոս և միւս աշակերտը,
ու դէպ 'ի գերեզմանը կու գային ։
4 Ու երկուքն ալ մէկտեղ կը վա-
զէին ․ և միւս աշակերտը Պետրո-
սէն աւելի շուտ վազելով՝ անկէ ա-
5 ռաջ գերեզմանը եկաւ ։ Եւ ծռե-
լով նայեցաւ, ու տեսաւ որ կտաւ-
ները հոն կը կենային, բայց ինքը
ներս չմտաւ ։ Սիմոն Պետրոս ալ 6
հասաւ, որ անոր ետևէն կու գար,
ու գերեզմանը մտաւ, և տեսաւ
կտաւները որ հոն կը կենային ․
Ու վարշամակը որ անոր գլուխն էր, 7
ուրիշ կտաւներուն հետը չէր, հա-
պա ծալլած պատ մէկ կողմը դրուած
էր ։ Ան ատենը ներս մտաւ միւս 8
աշակերտն ալ՝ որ առաջ գերեզմանը
եկեր էր, տեսաւ ու հաւատաց ։
Ինչու որ դեռ գրուածը չէին գի- 9
տեր Թէ Պէտք է որ անիկայ մե-
ռելներէն յարութիւն առնէ ։ Ետ- 10
քը աշակերտները նորէն իրենց տու-
նը գացին ։
Բայց Մարիամ գերեզմանին 11
դուրսը կայներ էր և կու լար ․ ու
երբոր կու լար՝ դէպ 'ի գերեզմանը
ծռեցաւ նայելու ․ Եւ տեսաւ երկու 12
հրեշտակներ ճերմակ հանդերձնե-
րով, որ նստեր էին ուր որ Յի-
սուսի մարմինը դրուած էր, մէկը
գլխուն կողմէն՝ ու միւսը ոտքին
կողմէն ։ Եւ անոնք իրեն ըսին, 13
Կնի՛կ՝ ինչո՞ւ կու լաս ․ ըսաւ ա-
նոնց, Անոր համար որ իմ Տէրս
գերեզմանէն վերցուցին, ու չեմ
գիտեր ո՛ւր դրին անիկայ ․ Աս որ 14
ըսաւ, ետին դարձաւ և տեսաւ
Յիսուսը որ կայներ էր, ու չէր գի-
տեր Թէ Յիսուս է ։ Յիսուս ա- 15
նոր ըսաւ, Կնի՛կ՝ ինչո՞ւ կու լաս,
ո՞վ կը փնտռես ։ Ինքը կարծելով
Թէ անիկայ պարտիզպանն է, ըսաւ
անոր, Տէ՛ր՝ Թէ որ դուն վերցու-
ցիր անիկայ, ըսէ ինծի՝ ո՞ւր դրիր
ան, որ ես անիկայ առնեմ ։ Յի- 16
սուս ըսաւ անոր, Մարիամ ․ ան
ալ դարձաւ ու [Եբրայեցերէն] ա-
նոր ըսաւ, Ռաբբունի, որ Վար-
դապետ ըսել է ։ Յիսուս ըսաւ ա- 17
նոր, Ինծի մի՛ դպչիր, ինչու որ
դեռ Հօրս քովը ելած չեմ ․ հապա
գնա եղբայրներուս և ըսէ անոնց,
Ես կ'ելլեմ իմ Հօրս քովը ու ձեր
Հօրը քովը, և իմ Աստուծոյս քո-
վը ու ձեր Աստուծոյն քովը ։ Մա- 18
րիամ Մագդաղենացին եկաւ ու
աշակերտներուն պատմեց Թէ ինքը
Տէրը տեսաւ, և Թէ անիկայ աս
բաները իրեն զրուցեց ։

19 Իսկ նոյն օրը միաշաբթի իրիկուա-
նը՝ աշակերտներուն ժողվուած տե-
ղին դուները գոց ըլլալով՝ Հրեա-
ներէն վախնալնուն համար, Յի-
սուս եկաւ և անոնց մէջտեղը կայնե-
ցաւ, ու ըսաւ անոնց, Խաղա-
20 ղութիւն ձեզի։ Իսկ աս ըսելով՝
իր ձեռքերը ու կողը ցուցուց ա-
նոնց. աշակերտներն ալ ուրախա-
21 ցան՝ երբոր Տէրը տեսան։ Իսկ
Յիսուս նորէն ըսաւ անոնց, Խա-
ղաղութիւն ձեզի. ինչպէս որ
Հայրը զիս խրկեց, ես ալ ձեզ
22 կը խրկեմ։ Իսկ աս ըսելով՝ անոնց
վրայ փչեց, ու ըսաւ անոնց, Ա-
23 ռէք Հոգին Սուրբ. Որոնց որ
մեղքերը թողուք, թողուած ըլլայ
անոնց. և որոնց որ մեղքերը եա
բռնէք, բռնուած ըլլայ։
24 Բայց տասներկուքէն մէկը՝ Եր-
կուորեակ ըսուած Թովմաս անոնց
հետը չէր՝ երբոր Յիսուս եկաւ։
25 Ուստի միւս աշակերտները կ'ըսէին
անոր թէ Տէրը տեսանք. ան ալ
ըսաւ անոնց, Թէ որ իր ձեռքե-
րուն վրայ բեւեռներուն նշանը չտես-
նեմ, ու մատս բեւեռներուն տեղը
չխոթեմ, և իմ ձեռքս անոր կողը
չխոթեմ, չեմ հաւատար։
26 Իսկ ութը օրէն ետև դարձեալ
աշակերտները ներսն էին, Թով-
մաս ալ անոնց հետ. եկաւ Յի-
սուս՝ դուները գոց ըլլալով, ու
կայնեցաւ անոնց մէջտեղը և ըսաւ,
27 Խաղաղութիւն ձեզի։ Ետքը ը-
սաւ Թովմասին, Մատդ հոս բեր
և նայէ իմ ձեռքերս, ու բեր քու
ձեռքդ և իմ կողս խոթէ, ու մի
ըլլար անհաւատ, հապա հաւատա-
28 ցեալ։ Իսկ Թովմաս պատասխան
տուաւ ու ըսաւ անոր, Իմ Տէրս
29 և իմ Աստուածս։ Յիսուս ըսաւ
անոր, Որովհետև դուն զիս տե-
սար, հաւատացիր. երանի անոնց
որ տեսած չեն ու կը հաւատան։
30 Իսկ Յիսուս շատ ուրիշ նշաններ
ալ ըրաւ իր աշակերտներուն առ-
ջին, որ աս գրքիս մէջ գրուած
31 չեն. Բայց ասոնք գրուեցան, որ
հաւատաք թէ Յիսուսը Քրիստոսն
է՝ Աստուծոյ Որդին. և որ հա-
ւատալով կեանք ունենաք անոր ա-
նունովը։

## ԳԼ. ԻԱ

Ասկէ ետև Յիսուս նորէն ինքզինքը 1
իր աշակերտներուն յայտնեց Տի-
բերիայի ծովուն եզերքը, և ասանկ
յայտնեց։ Մէկտեղ էին Սիմոն 2
Պետրոս ու Թովմաս Երկուորեակ
ըսուածը, և Նաթանայէլ որ Գա-
լիլեայի Կանայ քաղաքէն էր, ու
Զեբեդեոսի որդիքը և աշակերտ-
ներէն ուրիշ երկուք ալ։ Սիմոն 3
Պետրոս ըսաւ անոնց, Ես ձուկ որ-
սալու կ'երթամ. ըսին անոր, Մենք
ալ կու գանք քեզի հետ. ելան և
շուտ մը նաւը մտան, ու ան գիշերը
բան մը չբռնեցին։ Ու երբոր ալ 4
առտու եղաւ, Յիսուս ծովուն ե-
զերքը կայներ էր, բայց աշակերտ-
ները չճանչցան թէ Յիսուսն է։
Իսկ Յիսուս ըսաւ անոնց, Տղա՛ք 5
ուտելու բան մը ունի՞ք. պատաս-
խան տուին իրեն, Ո՛չ։ Իսկ ը- 6
սաւ անոնց, Ուռկանը նաւուն աջ
կողմը ձգեցէք ու պիտի գտնէք.
ուստի ձգեցին, և ձուկերուն շա-
տութենէն՝ ալ չէին կրնար զանի-
կայ քաշել։ Ան ատենը ան աշա- 7
կերտը որն որ Յիսուս կը սիրէր,
ըսաւ Պետրոսին, Նիկայ Տէրն է.
իսկ Սիմոն Պետրոս երբոր լսեց
թէ Տէրն է, վերարկուն վրան ա-
ռաւ, ինչու որ մերկ էր, ու ծովը
նետուեցաւ։ Իսկ միւս աշակերտ- 8
ները նաւակովը եկան, (ինչու որ
ցամաքէն հեռու չէին, միայն թէ
երկու հարիւր կանգունի չափ,)
և ուռկանը ձուկերովը կը քաշէ-
ին։ Ու երբոր ցամաքը ելան, հոն 9
վառուած կրակ տեսան, ու վրան
ձուկ դրուած, և հաց։ Յիսուս 10
ըսաւ անոնց, Բերէք աս ձուկե-
րէն որ դուք հիմա բռնեցիք։ Սի- 11
մոն Պետրոս նաւը մտաւ, և ուռ-
կանը ցամաքը քաշեց հարիւր յի-
սունուերեք խոշոր ձուկերով լե-
ցուն. և այնչափ բան կար ու
չպատռեցաւ ուռկանը։ Յիսուս 12
ըսաւ անոնց, Եկէք ճաշ ըրէք.
ու աշակերտներէն մէկն ալ չէր հա-

6 Անոնք ալ միաբան գալով կը հար-
ցընէին իրեն ու կ'ըսէին . Տէ՛ր
Իսրայէլի թագաւորութիւնը աս
ժամանակի՞ս մէջ նորէն պիտի հաս-
7 տատես : Ինք ըսաւ անոնց , Ձեզի
չվերաբերիր ժամերը և ժամանակ-
ները գիտնալը , որոնք որ Հայրը իր
8 իշխանութեանը մէջ դրաւ . Բայց
Հոգւոյն Սրբոյ ձեր վրայ եկած ա-
տենը զօրութիւն պիտի առնէք , ու
ինծի համար վկաներ պիտի ըլլաք
Երուսաղէմի մէջ և բոլոր Հրէաս-
տանի ու Սամարիայի մէջ ու մինչև
9 երկրի ծայրերը : Ինք աս բաները
որ ըսաւ , երբոր անոնք կը նայէին ,
համբարձաւ , և ամպ մը զանիկայ
10 անոնց աչքէն առաւ : Ու քանի
որ աչքերնին անկած դէպ 'ի երկին-
քը կը նայէին անոր երթալուն վը-
րայ , ահա երկու մարդ իրենց քովը
կայնեցան ճերմակ հանդերձներով ,
11 Որոնք նաև ըսին . Ո՛վ Գալիլեացի
մարդիկ՝ ինչո՞ւ կայներ դէպ 'ի եր-
կինքը կը նայիք . աս Յիսուսը որ
ձեզմէ երկինքը համբարձաւ , ասանկ
պիտի գայ՝ ինչպէս որ տեսաք անոր
12 երկինք երթալը : Ան ատենը Ե-
րուսաղէմ դարձան Ձիթենեաց ը-
սուած լեռնէն , որ շաբաթ օրուան
ճամբու չափ մօտ է Երուսաղէմին :
13 Ու երբոր ներս մտան , ելան
վերնատունը , ուր որ կը բնակէին
Պետրոս և Յակոբոս , Յովհաննէս
և Անդրէաս , Փիլիպպոս և Թովմ-
մաս , Բարթուղիմէոս և Մատ-
թէոս , Յակոբոս Աղփէոսեան ու
Սիմոն Նախանձայոյզ և Յուդա
14 Յակոբեան : Ասոնք ամէնը միա-
բանութեամբ միշտ աղօթք ու ա-
ղաչանք կ'ընէին կնիկներուն հետ ,
և Յիսուսի մօրը Մարիամին ու ա-
նոր եղբայրներուն հետ մէկտեղ :
15 Ու ան օրերը ելաւ Պետրոս ա-
շակերտներուն մէջը , (ասոր որ հա-
մար քսան հոգիի չափ ժողվուած
բազմութիւն կար , ) ու ըսաւ ,
16 Մարդի՛կ եղբայրներ՝ պէտք էր որ
կատարուէր աս գրուածը , որն որ
առաջուց Հոգին Սուրբ Դաւիթին
բերնովը ըսաւ Յուդայի համար՝
որ Յիսուսը բռնողներուն առաջ-
նորդ եղաւ . Ինչու որ անիկայ մե- 17
զի հետ էր մեր համրանքին մէջ , և
աս պաշտօնէս ան ալ բաժին ունէր :
Արդ անիկայ անիրաւութեան վարձքովը 18
ագարակ մը ստացաւ , ու գլխիվայր
իյնալով մէջտեղէն ճեղքուեցաւ ,
և իր ամէն փորոտիքը դուրս թա-
փեցաւ : Ու աս բանը Երուսա- 19
ղէմ բնակողներուն ամենուն յայտնի
եղաւ , մինչև որ իրենց լեզուովը
ան ագարակին անունը Ակեղդամա
դրուեցաւ , այսինքն Արեան ագա-
րակ : Ինչու որ Սաղմոսաց գրքին 20
մէջ գրուած է թէ Անոր բնակա-
րանը աւերակ ըլլայ , ու անոր մէջը
բնակող մը չըլլայ , և անոր պաշ-
տօնը ուրիշը առնէ : Ուրեմն 21
պէտք է որ աս մարդիկներէն՝ որ
մեր հետ եղան ան բոլոր ատենը ,
որ Տէր Յիսուս մեջերնիս մտաւ ու
ելաւ , Յովհաննէսին մկրտութե- 22
նէն սկսած՝ մինչև ան օրը որ մեզմէ
համբարձաւ , ասոնցմէ մէկը մեզի
հետ վկայ ըլլայ անոր յարութեա-
նը : Ինք երկու հոգի կայնեցու- 23
ցին , Յովսէփը՝ որ Բարսաբայ կը
կոչուէր , որ Յուստոս ալ մականու-
նուանեցաւ , ու Մատաթիան . Ու 24
աղօթք ընելով ըսին , Դուն՝ ով
Տէր , որ ամենուն սիրտը գիտես ,
աս երկուքէս մէկը որն որ ընտրե-
ցիր , ցոյց տուր . Որ աս պաշ- 25
տօնիս և առաքելութեանս վիճակը
առնէ , որ անկէ Յուդա ինկաւ
իր տեղը երթալու : Ու անոնց հա- 26
մար վիճակ ձգեցին , ու վիճակը
Մատաթիային ելաւ , և անիկայ
տասնըմէկ առաքելոց հետ սեպուե-
ցաւ :

## ԳԼ. Բ

Ու Պենտեկոստէին օրը հասնե- 1
լուն՝ ամէնքն ալ միաբան մէկ-
տեղ էին : Ու յանկարծակի եր- 2
կինքէն ձայն մը եղաւ սաստկա-
շունչ հովի մը ձայնին պէս , և բո-
լոր տունը լեցուց՝ ուր որ նստեր
էին : Ու բաժնուած լեզուներ 3
երևցան իրենց որպէս թէ կրակէ ,
ու ամէն մէկուն վրայ նստաւ : Ու 4
ամէնքն ալ Հոգւով Սրբով լե-

ցուեցան , ու սկսան ուրիշ լեզու-
ներով խօսիլ , ինչպէս որ Հոգին
5 իրենց խօսիլ կու տար ։ Եւ Երու-
սաղէմի մէջ բնակած Հրեաներ
կային՝ աստուածավախ մարդիկ եր-
կինքին տակը եղած բոլոր ազգերէն
6 ժողվուած ։ Եւ երբոր այս ձայնը
եղաւ , բազմութիւնը միաբան ե-
կաւ ու խռովեցաւ , քանզի որ կը
լսէին որ անոնք իրենց ամէն մէկուն
7 լեզուովը կը խօսէին ։ Ամէնքն ալ
կը սքանչանային ու կը զարմանային
և իրարու կ'ըսէին , Չէ՞ որ ահա
ասոնք ամէնն ալ որ կը խօսին ,
8 Գալիլեացի են ․ Եւ ի՞նչպէս կը
լսենք մենք մեր ամէն մէկ լեզուովը՝
9 որ անոր մէջը ծնած ենք ․ Պարթևք
և Մարք ու Եղամացիք , և անոնք որ
կը բնակին Միջագետի մէջ , և
Հրէաստանի ու Կապադովկիայի
մէջ , Պոնտոսի ու Ասիայի մէջ ,
10 Փռիւգիայի և Պամփիւլիայի մէջ ,
Եգիպտոսի մէջ , և Կիւրենէի մօտ
Լիբէացւոց կողմերուն մէջ , նաև
11 Հռովմայեցի պանդուխտներ , թէ՛
Հրեաներ և թէ նորահաւատներ ,
Կրետացիներ և Արաբացիներ , կը
լսենք անոնցմէ որ մեր լեզուներով
կը խօսին Աստուծոյ մեծամեծ բա-
12 ները ։ Կը սքանչանային ամէնքն ալ
ու տարակուսած իրարու կ'ըսէին ,
13 Ի՞նչ պիտի ըլլայ աս ։ Ոմանք ալ
ծաղր ընելով կ'ըսէին թէ Ասոնք
նոր գինիով լեցուեր են ։
14 Բայց Պետրոս ելաւ տասնումէ-
կին հետ մէկտեղ , ձայնը վերցուց
ու խօսեցաւ անոնց , Ո՛վ Հրեայ
մարդիկ և դուք ամէ՛նդ որ Երու-
սաղէմ կը բնակիք , աս ձեզի յայտ-
նի՛ ըլլայ , ու ականջ դրէք իմ
15 խօսքերուս ։ Քանզի չէ՛ թէ ա-
սոնք գինովցած են , ինչպէս որ
դուք կը կարծէք ․ ինչու որ դեռ
16 օրուան երրորդ ժամն է ․ Հապա
ասիկայ ան է որ Յովէլ մարգա-
17 րէին ձեռքովը ըսուեցաւ ․ Եւ պի-
տի ըլլայ որ վերջին օրերը՝ կ'ըսէ
Աստուած , իմ Հոգիէս ամէն
մարմնոյ վրայ պիտի թափեմ , ու
ձեր տղաքը և ձեր աղջիկները պի-
տի մարգարէանան , ու ձեր երիտա-
սարդները տեսիլքներ պիտի տես-
նեն , և ձեր ծերերը երազներ պիտի
տեսնեն ․ Եւ իմ ծառաներուս վրայ 18
ու իմ աղախիններուս վրայ ալ ան
օրերը իմ Հոգիէս պիտի թափեմ ,
և պիտի մարգարէանան ։ Եւ վերը 19
երկինքը հրաշքներ պիտի ցուցը-
նեմ , ու վարը երկիրը նշաններ ,
արիւն ու կրակ և ծուխի մառա-
խուղ ․ Արեգը խաւարի պիտի 20
դառնայ , և լուսինը արիւնի , դեռ
Տէրոջը մեծ ու երևելի օրը չեկած ։
Եւ պիտի ըլլայ որ ամէն ո՛վ որ 21
Տէրոջը անունը կանչէ , պիտի փրը-
կուի ։ Ո՛վ Իսրայէլացի մարդիկ՝ 22
լսեցէ՛ք աս խօսքերը ․ Յիսուս Նա-
զովրեցին՝ Աստուծմէ ձեզի ցու-
ցուած մարդ մը զօրութիւններով
ու հրաշքներով և նշաններով , որ
Աստուած անոր ձեռքովը ըրաւ ձեր
մէջը , ինչպէս որ դուք ալ գիտէք ․
Անիկայ Աստուծոյ որոշած խորհըր- 23
դովը և կանխագիտութեամբը մատ-
նուած ըլլալով՝ առիք և անօ-
րէններու ձեռքով փայտի վրայ
գամելով սպաննեցիք ․ Զոր որ 24
Աստուած յարուց՝ մահուան ցաւե-
րը քակելով , քանզի կարելի չէր որ
ինքը անկէ բռնուէր ։ Ինչու որ 25
Դաւիթ անոր համար կ'ըսէ , Ա-
ռաջուց ամէն ատեն Տէրը կը տես-
նէի իմ առջևս , քանզի իմ աջ կողմս
է , որ չսասանիմ ․ Անոր համար 26
ուրախ եղաւ իմ սիրտս , ու իմ
լեզուս ցնծաց ․ նաև իմ մարմինս
ալ յուսով պիտի հանգստանայ ,
Ասանկ զի իմ անձս գերեզմանին մէջը 27
պիտի չթողուս , ու քու Սուրբդ
ալ ապականութիւն տեսնել պիտի
չտաս ։ Կենաց ճամբաները ինծի 28
ճանչցուցիր ․ քու երեսիդ ուրա-
խութիւնովը զիս պիտի լեցընես ։
Մարդի՛կ եղբայրներ՝ արժան է համ- 29
արձակ զրուցել ձեզի Դաւիթ
նահապետին համար , թէ մեռաւ
ու թաղուեցաւ , և անոր գերեզմա-
նը մինչև աս օրս մեր մէջն է ։
Արդ որովհետև անիկայ մարգարէ 30
էր , և գիտէր թէ Աստուած հա-
տատ երդում ըրաւ իրեն , թէ իր
երիկամունքը պտուղէն մարմնոյ կող-

մեռնէ Քրիստոսը պիտի յարուցանէ
31 որ իր աթոռը նստի, Ինքը կան-
խատեսութեամբ խօսեցաւ Քրիս-
տոսի յարութեանը համար, թէ ա-
նոր անձը գերեզմանը չթողուեցաւ,
և անոր մարմինը ապականութիւն
32 չտեսաւ։ Այս Յիսուսը Աստուած
յարուց, որուն մենք ամէնքս ալ
33 վկայ ենք։ Ուստի Աստուծոյ աջ
ձեռքովը բարձրանալով, ու Հո-
գւոյն Սրբոյ խոստմունքը Հօրմէն
առնելով՝ ասպանեց ասիկայ, որ
դուք հիմա կը տեսնէք և կը լսէք։
34 Քանզի որ Դաւիթ երկինքը չելաւ,
բայց ինքը կ'ըսէ․ Տէրը իմ Տէ-
րոջս ըսաւ․ Նստէ իմ աջ կողմս,
35 Մինչև որ քու թշնամիներդ ոտ-
քերուդ պատուանդան ընեմ։
36 Ուստի բոլոր Իսրայէլի տունը ճըշ-
մարտապէս թող գիտնայ, որ Աս-
տուած անիկայ Տէր ալ ըրաւ՝ Օ-
ծեալ ալ, այն Յիսուսը որ դուք
խաչեցիք։
37 Ու ասոնք որ լսեցին՝ իրենց սրտե-
րնուն մէջ զղջացին, և ըսին Պետրո-
սին ու միւս առաքեալներուն, Ո՛վ ար-
38 ծիք եղբայրներ՝ ի՞նչ ընենք։ Ու
Պետրոս ըսաւ անոնց․ Ապաշխա-
րեցէք, ու ձեզմէ ամէն մէկը թող
մկրտուի Յիսուս Քրիստոսի անուա-
նովը մեղաց թողութեան համար,
և Հոգւոյն Սրբոյ պարգևը պիտի
39 ընդունիք։ Քանզի որ խոստմունքը
ձեզի է ու ձեր որդւոցը, և ամէն
հեռու եղողներուն՝ որչափ որ մեր
40 Տէր Աստուածը պիտի կանչէ։ Ու
ուրիշ շատ խօսքերով վկայութիւն
կու տար, ու կը յորդորէր ըսելով
և կ'ըսէր, Այս խոտորած ազգէն ինք-
41 զինքնիդ ազատեցէք։ Ու անոնք
որ սրտանց ընդունեցին անոր խօս-
քերը, մկրտուեցան․ ու այն օրը
իբրև երեք հազար հոգիի չափ աւելցան։
42 Ու միշտ առաքելոց վարդապետու-
թեանը ետևէ էին, ու միաբանու-
թեանը և հաց կտրելուն ու ա-
ղօթքներուն։
43 Ու ամէն մարդու վրայ վախ ին-
կաւ․ և առաքելոց ձեռքովը շատ
հրաշքներ ու նշաններ կը գոր-
44 ծուէին։ Ու բոլոր հաւատացեալ-
ները միասին էին, և ամէն բա-
ներնին հասարակաց էր։ Ու ստա- 45
ցուածքնին և ունեցած բաներնին
կը ծախէին, ու անոնց գինը կը
բաժնէին ամէնուն, որուն որ բան
մը պէտք ըլլար։ Ու ամէն օր 46
միաբանութեամբ տաճարը երթա-
լու ետևէ էին, և տուներնին հաց
կը կտրէին, ու կերակուրնին կ'ու-
տէին ուրախութեամբ և միամտու-
թեամբ սրտի․ զԱստուած կ'օրհ- 47
նէին, ու բոլոր ժողովուրդին առ-
ջևը շնորհք կը գտնէին․ և Տէրը
օրէ օր փրկուածները կ'աւելցնէր
եկեղեցիին։

## ԳԼ. Գ

Արդ Պետրոս ու Յովհաննէս ին- 1
ներորդ ժամու աղօթքին ատենը
միասին տաճարը կ'ելլէին։ Ու 2
իր մօրը որովայնէն կաղ ծնած մարդ
մը կը բերուէր, որ զանիկայ ամէն
օր տաճարին Գեղեցիկ կոչուած դը-
րանը քով կը դնէին, որ տաճարը
մտնողներէն ողորմութիւն խնդրէ։
Անիկայ տեսնելով Պետրոսը և 3
Յովհաննէսը որ տաճարը մտնելու
վրայ էին, կ'աղաչէր որ ողորմու-
թիւն առնէ։ Իսկ Պետրոս Յով- 4
հաննէսին հետ մէկտեղ անոր նա-
յեցաւ ու ըսաւ․ Մեզի նայէ․ Ան 5
ալ դէպ 'ի անոնց դարձաւ ու կը
յուսար անոնցմէ բան մը առնել։
Ու Պետրոս ըսաւ․ Արծաթ ու 6
ոսկի չունիմ, հապա ինչ որ ու-
նիմ՝ այն քեզի կու տամ․ Նազով-
րեցի Յիսուս Քրիստոսին անուա-
նովը ելիր ու քալէ։ Ու անոր 7
աջ ձեռքէն բռնեց՝ վերցուց զան-
կայ, ու իսկոյն անոր ոտքին թա-
թերը ու կոճերը զօրացան։ Ու 8
վեր ցատկելով կայնեցաւ ու կը
քալէր․ և անոնց հետ տաճարը
մտաւ, քալելով ու ցատկելով և
զԱստուած օրհնելով։ Ու բոլոր 9
ժողովուրդը տեսաւ անիկայ որ
կը քալէր ու կ'օրհնէր զԱստուած։
Ու կը ճանչնային թէ անիկայ էր, 10
որ ողորմութեան համար տաճարին
Գեղեցիկ կոչուած դրանը քով կը
նստէր․ և զարմանքով ու ապշու-

10 բժշկուեցաւ , Յայտնի ըլլայ ձեզի
ամենուդ ու բոլոր Իսրայէլի
ժողովուրդին , որ Նազովրեցի Յի-
սուս Քրիստոսի անունովը՝ որն որ
դուք խաչեցիք , և որն որ Աստուած
մեռելներէն յարոյց , անոր անուով
ասիկայ ձեր առջևը բժշկուած կեցեր
11 է ։ Ասիկայ է այն քարը ձեզմէ
շինողներէդ անարգուած , որ ան-
12 կիւնի գլուխ եղաւ ․ Ու ուրիշ
մէկով մը փրկութիւն չկայ ․ Ինչու
որ անկէ 'ի զատ ուրիշ անուն մը
չկայ երկնքին տակը մարդոց մէջ
տրուած , որ անով կարող ըլլանք
13 փրկուելու ։ Իսկ անոնք Պետրոսին
ու Յովհաննէսին համարձակութիւ-
նը տեսնելով , և հասկընալով որ
տգէտ ու տուանց ուսման մարդիկ
են , կը զարմանային ․ և ճանչցան
որ անոնք Յիսուսի հետ էին ․
14 Ու այն բժշկուած մարդը տեսնելով
որ անոնց հետ կայներ էր , չէին
կրնար անոր դէմ բան մը խօսիլ ։
15 Ու հրամայելով անոնց որ ատեա-
նէն դուրս ելլեն , իրարու հետ խոր-
16 հուրդ ըրին , Ու ըսին , Ի՞նչ ը-
նենք աս մարդոցը ․ Ինչու որ Երու-
սաղէմի բոլոր բնակիչներուն յայտ-
նի է թէ ասոնց ձեռքովը երևելի
հրաշք մը եղաւ , ու մենք չենք
17 կրնար ուրանալ ։ Մ՛իայն թէ ժո-
ղովուրդին մէջը աւելի չտարա-
ծուելու համար՝ սաստիկ սպառնա-
լիք ընենք անոնց , որ այն անունով
մէկու մը ալ չըլլայ որ մարդու բան
18 խօսին ։ Ու զանոնք կանչելով պա-
տուիրեցին անոնց որ ամենևին չը-
խօսին և չսորվեցընեն Յիսուսի ա-
19 նունովը ։ Բայց Պետրոս ու Յով-
հաննէս պատասխան տուին անոնց
ու ըսին , Թէ որ Աստուծոյ առջևը
ուղիղ է որ Աստուծմէ աւելի ձեզի
մտիկ ընենք , դուք դատեցէք ։
20 Վասն զի մենք այն որ տեսանք ու
21 լսեցինք , չենք կրնար չխօսիլ ․ Իսկ
անոնք նորէն սպառնալիք ընելէն
ետև արձակեցին զանոնք , բան մը
չգտնելով թէ ինչպէս պատժեն զա-
նոնք ժողովուրդին համար , Ինչու
որ ամենքն ալ զԱստուած կը փա-
ռաւորէին եղած բանին համար ։

Վասն զի այն մարդը քառսուն տա- 22
րեկանէն աւելի էր , որուն վրայ աս
բժշկութեան հրաշքը եղաւ ։
Ու անոնք արձակուելով՝ իրենց- 23
ներուն քովը եկան , ու պատմեցին
ինչ որ քահանայապետները և ծե-
րերը իրենց ըսին ։ Անոնք ալ երբ- 24
որ լսեցին , միաբանութեամբ ձայ-
ներնին Աստուծոյ վերցուցին՝ ըսե-
լով ․ Ո՛վ Տէր , դուն ես այն Աս-
տուածը՝ որ երկինքը ու երկիրը և
ծովը ու բոլոր անոնց մէջ եղածները
ստեղծեցիր , Որ քու ծառայիդ Դա- 25
ւիթին բերանովը խօսեցար ; Ինչո՞ւ
հեթանոսները խռովութիւն ըրին ,
ու ժողովուրդները պարապ բաներ
մտածեցին ․ Երկրի թագաւորները 26
պատրաստ կայնեցան , և իշխանները
մէկտեղ ժողվուեցան Տէրոջը դէմ
և անոր Օծեալին դէմ ։ Վասն զի 27
արդարև [աս քաղաքիս մէջ] ժող-
վուեցան քու սուրբ Որդւոյդ Յի-
սուսին վրայ՝ որն որ դուն օծեցիր ,
Հերովդէս և Պոնտացի Պիղա-
տոս ազգերուն հետ ու Իսրայէլի
ժողովուրդներուն հետ , Ընել՝ ինչ 28
որ քու ձեռքդ և խորհուրդդ առջ-
ևանէն սահմանեց որ ըլլայ ։ Ու 29
հիմա ով Տէր՝ նայէ անոնց սպառ-
նալիքներուն , ու շնորհէ՛ քու ծա-
ռաներուդ որ բոլոր համարձակու-
թիւնով քու խօսքդ խօսին , Քու 30
ձեռքդ երկընցընելով բժշկելու , և
քու սուրբ Որդւոյդ Յիսուսի ա-
նունովը նշաններ ու հրաշքներ ըլ-
լալու ։ Ու երբոր անոնք աղօթք 31
ըրին , շարժեցաւ այն տեղը՝ ուր որ
ժողվուած էին , և ամէնքը Հո-
գւով Սրբով լեցուեցան , ու Աս-
տուծոյ խօսքը համարձակ կը խօ-
սէին ։
Ու հաւատացեալներուն բազ- 32
մութիւնը մէկ սիրտ ու մէկ հոգի
ունէին ․ և անոնցմէ մէկը չէր ըսեր
իր ստացուածներէն մէկուն համար՝
թէ իմն է , հապա իրենց ամէն
բաները հասարակաց կը սեպէին ։
Ու մեծ զօրութիւնով առաքեալնե- 33
րը վկայութիւն կու տային Տէր
Յիսուսի յարութեանը , և անոնց
ամէնուն վրայ մեծ շնորհք կար ։

34 Ու անոնց մէջ կարօտութիւն քա-
շող մը չկար, վասն զի անոնք որ
ագարակներու կամ տուներու տէր
էին, կը ծախէին և ծախուածնե-
35 րուն գիները կը բերէին, Ու ա-
ռաքելոց ոտքը կը դնէին. և ամէն
մէկուն իր կարօտութեանը նայելով
36 կը բաժնուէր: Եւ Յովսէս որ
առաքեալներէն Բառնաբաս մակ-
անուանեցաւ, (որ կը թարգմա-
նուի Մխիթարութեան որդի,)
Ղեւտացի, ծննդեամբ Կիպրացի,
37 Ագարակ մը ունենալով՝ ծախեց
ու ստակը բերաւ առաքելոց ոտքը
դրաւ:

## ԳԼ. Ե

1 Բայց մէկ մարդ մը Անանիա ա-
նունով, իր կնկանը Սափիրայի
հետ մէկտեղ ստացուածք մը ծա-
2 խեց. Եւ անոր գինէն խորեց, որ
կնիկն ալ գիտէր, ու մէկ բաժինը
բերաւ առաքելոց ոտքը դրաւ:
3 Եւ Պետրոս ըսաւ, Անանիա՛ ին-
չո՞ւ Սատանան քու սիրտդ լեցուց,
որ դուն Հոգւոյն Սրբոյ սուտ խօ-
սիս, ու ագարակին գինէն խորես.
4 Չէ՞ որ քուկդ էր անի՝ քանի որ
կեցեր էր, ու ծախուած ալ՝ քու
իշխանութեանդ տակն էր. ատ
ի՞նչ է որ քու սրտիդ մէջ ատ
բանը դրիր. չէ՛ թէ մարդոց սուտ
5 խօսեցար, հապա Աստուծոյ: Եւ
Անանիա աս խօսքերը լսելով՝ ին-
կաւ ու հոգին տուաւ. և մեծ վախ
ինկաւ ամենուն վրայ որ աս լսեցին:
6 Ու երիտասարդները ելան ու
պատեցին անիկայ, և դուրս հա-
7 նելով թաղեցին: Ու երբոր իրեք
ժամու չափ վրան անցաւ, անոր
կնիկը չգիտնալով ինչ որ եղեր էր,
8 ներս մտաւ. Եւ Պետրոս ըսաւ ա-
նոր, Ըսէ՛ ինծի, ագարակը ա՞յս-
չափ գնով ծախեցիք. ան ալ ը-
9 սաւ, Այո՛, այնչափ: Ու Պետ-
րոս ըսաւ անոր, Աս ի՞նչ է որ
դուք միաբանեցաք Տէրոջը Հոգին
փորձելու. ահա՛ քու էրիկդ թա-
ղողներուն ոտքերը դրանը քովն
են, քեզ ալ դուրս պիտի հանեն:
10 Եւ իսկոյն անոր ոտքերուն քովը
ինկաւ ու հոգին տուաւ. և երի-
տասարդները ներս մտնելով անի-
կայ մեռած գտան, ու հանեցին
իր էրկանը քովը թաղեցին: Եւ 11
մեծ վախ մը ինկաւ բոլոր եկեղե-
ցիին վրայ ու ամենուն վրայ որ աս
բաները լսեցին.
Եւ առաքեալներուն ձեռքովը 12
շատ նշաններ ու հրաշքներ կ'ըլլա-
յին ժողովուրդին մէջ. և ամէնքը
միաբանութեամբ Սողոմոնի սրահին
մէջն էին. Եւ ուրիշներէն մէկը 13
չէր համարձակեր անոնց յարելու,
հապա ժողովուրդը կը մեծարէր ա-
նոնք: Եւ Տէրոջը հաւատացող- 14
ները ալ աւելի կը շատնային,
բազմութիւն էրիկմարդոց ու կնիկ-
ներու. Այնպէս որ հիւանդները 15
հրապարակները կը հանէին, և
պատգարակներով ու մահիճներով
կը դնէին, որ Պետրոսին անցնելու
ատենը՝ գոնէ անոր շուքը անոնց
մէկուն վրայ հասնի: Ու շրջակայ 16
քաղաքներուն բազմութիւնը Երու-
սաղէմ կը ժողվուէր, հիւանդ-
ներ և պիղծ ոգիներէ նեղութիւն
կրողներ բերելով, որոնք ամէնն ալ
կը բժշկուէին:
Ասոր վրայ քահանայապետը և 17
բոլոր իր հետը եղողները, որոնք
Սադուկեցւոց աղանդէն էին՝ նա-
խանձով լեցուած, Ու առաքեալ- 18
ներուն ձեռք զարկին և հասարա-
կաց բանտը դրին զանոնք: Բայց 19
Տէրոջը հրեշտակը գիշերով բան-
տին դռները բացաւ, ու դուրս
հանելով զանոնք՝ ըսաւ, Գացէ՛ք 20
և տաճարին մէջը կայնելով ժողո-
վուրդին խօսեցէ՛ք աս կենաց բոլոր
խօսքերը: Ու երբոր աս լսեցին, 21
տաճարը մտան առտուանց և կը
սորվեցընէին. իսկ քահանայապե-
տը եկաւ ու իր հետը եղողները՝
ու մէկտեղ կանչեցին ժողովքը ու
Իսրայէլի որդւոցը բոլոր ծերակոյ-
տը, և մարդ խրկեցին բանտը՝ որ
զանոնք բերեն: Ու երբոր սպա- 22
սաւորները գացին, զանոնք բան-
տին մէջ չգտնելով՝ ետ դարձան
պատմեցին, Եւ ըսին թէ Բան- 23
տը ամէն զգուշութիւնով գո-

ցուած գտանք, ու պահապանները
դռներուն առջեւը կայնած, բայց
բանալով՝ ներսը մարդ չգտանք։
24 Ու երբոր Դծ քահանան եւ տա-
ճարին իշխանը ու քահանայապետ-
ները լսեցին աս խօսքերը, կը զար-
մանային անոնց համար թէ ինչ
25 պիտի ըլլայ աս։ Նաեւ մէկը եկա-
պատմեց անոնց թէ Ահա ան մար-
դիկը որ բանտը դրիք, տա-
ճարը կայներ են եւ ժողովուրդին
26 կը սորվեցընեն։ Ան ատենը իշ-
խանը սպասաւորներովը մէկտեղ
գնաց զանոնք բերաւ առանց բռ-
նութեան, քանզի ժողովուրդէն
կը վախնային որ չքարկոծուին։
27 Ու բերին զանոնք ատեանը կայնե-
ցուցին. եւ քահանայապետը ա-
28 նոնց հարցուց, Ըսելով, Չէ՞ որ
սաստիկ պատուիրեցինք ձեզի որ
աս անունով չսորվեցընէք. եւ ահա
Երուսաղէմը ձեր ուսմունքովը լե-
ցուցիք, եւ ան մարդուն արիւնը
կ'ուզէք մեր վրայ բերել։
29 Պատասխան տուաւ Պետրոս եւ
մէկալ առաքեալները ու ըսին, Ա-
ւելի Աստուծոյ հնազանդիլ պէտք
30 է քան թէ մարդոց։ Մեր հայրե-
րուն Աստուածը Յիսուսը յարուց,
որն որ դուք փայտէն կախելով սպա-
31 նեցիք։ Զանիկայ Աստուած իր
աջ ձեռքովը Առաջնորդ ու Փրկիչ
բարձրացուց, որ Իսրայէլին ա-
պաշխարութիւն եւ մեղաց թողու-
32 թիւն տայ։ Նաեւ մենք աս բա-
ներուս համար անոր վկաներ ենք,
ու Սուրբ Հոգին ալ՝ որն որ Աս-
տուած իրեն հնազանդ եղողներուն
33 տուաւ։ Նաեւ անոնք աս լսելով
խիստ կատղեցան, ու կը խորհէին
որ զանոնք մեռցընեն։
34 Նաեւ ատեանին մէջ փարիսեցի մը
ոտքի վրայ ելաւ՝ որուն անունը Գա-
մաղիէլ էր, օրինաց վարդապետ մը՝
բոլոր ժողովուրդին առջեւը պա-
տուաւոր մէկը, ու հրաման ըրաւ
որ առաքեալները քիչ մը դուրս հա-
35 նեն. Նաեւ ըսաւ անոնց, Ո՛վ Իս-
րայէլացի մարդիկ՝ դուք ձեզի զգու-
շացէք աս մարդոցը համար թէ ինչ
36 պիտի ընէք. Վասնզի աս օրերէս
առաջ Թեւդաս ելաւ, իրեն հա-
մար ըսելով թէ ինքն ալ մէկ մըն է,
ու թուով չորս հարիւրի չափ մար-
դիկ իրեն յարեցան. որ ինքը սպան-
նուեցաւ, եւ ան ամէնը որ իրեն
հնազանդեր էին՝ ցրուեցան ու ո-
չինչ եղան։ Անոր ետեւէն Յուդա 37
Գալիլեացին ելաւ աշխարհագիրի ե-
ղած օրերը, եւ շատ ժողովուրդ իր
կողմը ձգեց. ինքն ալ կորսուե-
ցաւ, եւ ան ամէնը որ իրեն հնա-
զանդեր էին՝ ցիրուցան եղան։ Նաեւ 38
հիմա ձեզի կ'ըսեմ, Աս մարդոցմէ
մէկդի կեցէք ու թող տուէք
զանոնք, ինչու որ եթէ աս խոր-
հուրդը կամ գործը մարդոցմէ է,
պիտի քակուի. Հապա թէ որ 39
Աստուծմէ է, չէք կրնար աւրել
զանիկա, չըլլայ թէ Աստուծոյ դէմ
մարտնչող ալ գտնուիք։ Նաեւ անոնք 40
հաւանութիւն տուին անոր. ու
առաքեալները կանչելով՝ ծեծեցին,
եւ պատուիրելով որ ասկէ ալ Յի-
սուսի անունովը չխօսին, արձակե-
ցին զանոնք։ Անոնք ալ ժողով- 41
քին առջեւէն գացին, ուրախանա-
լով որ Տէրոջը անուանը համար
արժանի եղան անարգուելու։ Նաեւ 42
ամէն օր տաճարը ու տուներուն մէջ
չէին դադարեր սորվեցընելէն ու
Յիսուս Քրիստոսը քարոզելէն։

## ԳԼ. Զ

Նաեւ ան օրերը աշակերտները որ 1
շատցան, Հելլենացիներուն կող-
մէն տրտունջ մը եղաւ Եբրայեցւոց
դէմ, ինչու որ իրենց որբեւարի-
ները ամէն օրուան ողորմութեան մա-
տակարարութեանը մէջ անտես կ'ըլ-
լային։ Նաեւ տասներկուքը կան- 2
չեցին աշակերտներուն բազմութի-
նը ու ըսին. Մեզի չվայլեր Աս-
տուծոյ խօսքը ձգել ու սեղաննե-
րու ծառայութիւն ընել։ Ուստի 3
եղբայրներ՝ ձեզմէ եօթը հոգի ընտ-
րեցէք՝ բարի վկայուած՝ Հոգւով
Սրբով եւ իմաստութիւնով լեցուն,
որ զանոնք աս գործիս վրայ դնենք.
Նաեւ մենք աղօթքի ու Աստուծոյ 4
խօսքին պաշտօնին պարապինք։ Նաեւ 5
աս խօսքը բոլոր բազմութեանն ա-

ջէք հաճոյ երեւցաւ . ու ընտրեցին
Ստեփաննոսը՝ հաւատքով և Հո-
գւով Սուրբ լեցուն մարդ մը, ու
Փիլիպպոսը, և Պրոքորոնը, ու
Նիկանովրը, և Տիմոնը, ու
Պարմենասը և Նիկողայոս նորա-
6 հաւատ Անտիոքացին . Ասոնք ա-
ռաքեալներուն առջևը կայնեցուցին .
անոնք ալ աղօթք ընելով՝ ձեռքերնին
7 անոնց վրայ դրին : Եւ Աստուծոյ
խօսքը կ'աճէր, ու աշակերտներուն
թիւը խիստ կը շատնար Երուսա-
ղէմի մէջ . և քահանաներէն մեծ
բազմութիւն հաւատքին կը հնա-
զանդէին :
8 Եւ Ստեփաննոս՝ որ հաւատքով
ու զօրութիւնով լեցուն մարդ մըն
էր, մեծ հրաշքներ և նշաններ կ'ը-
9 նէր ժողովուրդին մէջ : Բայց ո-
մանք այն ժողովարանէն՝ որ Ազատա-
ցւոց, և Կիւրենացւոց ու Աղեք-
սանդրացւոց ժողովարան կ'ըսուէր,
և անոնք որ Կիլիկիայէն ու Ասիայէն
էին, ելան ու Ստեփաննոսին հետ
10 վիճաբանութիւն կ'ընէին . Եւ չէին
կրնար դէմ դնել այն իմաստու-
թեանը ու Հոգիին, որով կը խօ-
11 սէր : Այն ատենը հրապուրեցին
քանի մը մարդիկ, որ ըսեն թէ
Մենք լսեցինք որ ատիկայ հայհոյա-
կան խօսքեր կը խօսի Մովսէսին ու
12 Աստուծոյ դէմ : Եւ գրգռեցին
ժողովուրդը ու ծերերը և դպիր-
ները, ու վրան հասնելով զինքը
13 բռնեցին ու ատեանը տարին : Եւ
սուտ վկաներ կայնեցուցին, որոնք
կ'ըսէին . Այս մարդը չդադրիր
հայհոյական բաներ խօսելէն սուրբ
14 տեղիս և օրէնքին դէմ . Քանզի
լսեցինք ասկէ որ կ'ըսէր թէ Այս
Նազովրեցի Յիսուսը պիտի քակէ
աս տեղը, ու պիտի փոխէ Մով-
սէսին մեզի աւանդած սովորու-
15 թիւնները : Եւ ատեանը նստող-
ներուն ամէնքը երբոր անոր նայե-
ցան, անոր երեսը հրեշտակի երեսի
պէս տեսան :

## ԳԼ. Է

1 Այն ատենը քահանայապետը ըսաւ,
Իրաւցնէ՞ աս բաները ասանկ
են : Եւ անիկայ ըսաւ . Մարդիկ 2
եղբայրներ ու հայրեր՝ մտիկ ըրէք .
Փառաց Աստուածը մեր հօրը Աբ-
րահամին երեւցաւ, քանի որ Մի-
ջագետքի մէջ էր, դեռ Խառանի
մէջ չբնակած . և ըսաւ անոր .
Ելիր քու երկրէդ և քու ազգա- 3
կաններէդ, ու եկո՛ւր այն երկիրը
որ ես քեզի պիտի ցուցնեմ : Այն 4
ատենը Քաղդէացւոց երկրէն ելլե-
լով՝ Խառանի մէջ բնակեցաւ . և
անոր հօրը մեռնելէն ետև՝ անկէ
փոխադրեց զանիկայ աս երկիրը .
ուր որ դուք հիմա կը բնակիք :
Եւ ասոր մէջ անոր ժառանգու- 5
թիւն չտուաւ, ոչ ալ ոտքի քայլ
մը տեղ, բայց խոստացաւ որ ասի-
կայ իրեն տայ իբրև կալուածք, և
իրմէ ետև իր սերունդին, երբոր
դեռ ինքը որդի չունէր : Եւ Աս- 6
տուած այսպէս խօսեցաւ՝ թէ Անոր
սերունդը օտար երկրի մէջ պան-
դուխտ պիտի ըլլայ . ու պիտի ծա-
ռայեցընեն անիկայ և չարչարեն
չորս հարիւր տարի : Եւ այն ազ- 7
գը՝ որուն պիտի ծառայեն, ես պի-
տի դատեմ, ըսաւ Աստուած, և
անկէ ետև պիտի ելլեն ու աս տեղս
զիս պաշտեն : Եւ անոր թլփա- 8
տութեան ուխտը տուաւ, ու ասոր
Աբրահամ Իսահակը ծնաւ, և թըլ-
փատեց զանիկայ ութերորդ օրը .
Իսահակ ալ Յակոբը ծնաւ,
Յակոբ ալ տասներկու նահա-
պետները : Եւ նահապետները 9
Յովսէփին վրայ նախանձելով՝ Եգ-
իպտոս ծախեցին . բայց
Աստուած անոր հետ էր .
Ու փրկեց զանիկայ իր ամէն նեղու- 10
թիւններէն, և անոր շնորհք ու
իմաստութիւն տուաւ Եգիպտոսի
Փարաւոն թագաւորին առջևը . ան
ալ զանիկայ իշխան դրաւ Եգիպ-
տոսի ու իր բոլոր տանը վրայ :
Ու Եգիպտոսի և Քանանու բոլոր 11
երկրին վրայ սով մը եկաւ, ու մեծ
նեղութիւն, և մեր հայրերը ուտե-
լիք չէին գտներ : Եւ Յակոբ 12
երբոր լսեց թէ Եգիպտոսի մէջ
ցորեն կը գտնուի, առջի անգամին
մեր հայրերը ղրկեց : Եւ երկրորդ 13

անգամին Յովսէփ իր եղբայրներուն
ճանչցուց ինքզինքը . ու Յովսէփին
ազգը Փարաւոնին յայտնի եղաւ :
14 Եւ Յովսէփ խրկեց՝ ու կանչեց իր
հայրը Յակոբը ու բոլոր ազգա-
տոհմը, եօթանասունհինգ հո-
15 գի : Եւ Յակոբ Եգիպտոս իջաւ,
ու մեռաւ ինքը ու մեր հայրերը :
16 Եւ Սիւքէմ տարուելով՝ այն գե-
րեզմանին մէջը դրուեցան, որն որ
Աբրահամ արծաթի գնով ծախու
առեր էր Սիւքէմի հօրը Եմմովրի
17 որդիներէն : Ու երբոր մօտեցաւ
խոստմունքին ատենը, որ Աստուած
երդումով խոստացեր էր Աբրահա-
մին, ժողովուրդը աճեցաւ ու շատ-
18 ցաւ Եգիպտոսի մէջ, Մինչեւ որ
ուրիշ թագաւոր մը ելաւ՝ որ Յով-
19 սէփը չէր ճանչնար : Անիկայ հը-
նարք բանեցուց մեր ազգին դէմ
ու չարչարեց մեր հայրերը, մինչեւ
անգամ անոնց տղաքը դուրս ձգել
20 տալով որ չապրին : Այն ժամանա-
կը Մովսէս ալ ծնաւ, և Աստուծոյ
առջեւը գեղեցիկ էր, որ իր հօրը
21 տանը մեծցաւ երեք ամիս : Ու
երբոր անիկայ դուրս ձգուեցաւ,
Փարաւոնին աղջիկը զանիկայ վեր-
ցուց, և իրեն իբրև որդի մեծ-
22 ցուց : Ու Մովսէս Եգիպտացւոց
բոլոր իմաստութիւնովը վարժուե-
ցաւ, և զօրաւոր էր իր խօսքերովը
23 ու գործքերովը : Ու երբոր քառա-
սուն տարեկան եղաւ, իր սիրտը
ինկաւ իր եղբայրներուն՝ Իսրայէլի
24 որդւոցը այցելութիւն ընել : Ու
Իսրայէլացիներէն մէկը հարստահա-
րուած տեսնելով՝ պաշտպանեց, և
զրկուածին վրէժը առաւ՝ այն Ե-
25 գիպտացին սպաննելով : Ու կար-
ծէր թէ իր եղբայրները պիտի իմա-
նային որ Աստուած իր ձեռքովը ա-
նոնց ազատութիւն պիտի տար,
26 բայց անոնք չիմացան : Ու հետե-
ւեալ օրը անոնց դիմացը ելաւ՝
երբոր կը կռուէին, և խաղաղու-
թիւն ընելու ստիպեց զանոնք, ը-
սելով, Մարդիկ՝ դուք եղբայրներ
էք, ինչո՞ւ մէկզմէկ կը զրկէք :
27 Նա այն որ ընկերը կը զրկէր,
մերժեց զանիկայ ու ըսաւ, Ո՞վ
քեզ մեր վրայ իշխան ու դատաւոր
դրաւ . Զի՞ս ալ սպաննել կ'ու- 28
զես, ինչպէս որ երէկ Եգիպտացին
սպաննեցիր : Եւ Մովսէս աս խօս- 29
քին վրայ փախաւ, ու Մադիանու
երկրին մէջ պանդուխտ եղաւ, ուր
որ երկու որդի ծնաւ : Եւ քառա- 30
սուն տարի անցնելէն ետեւ՝ Սինայ
լեռանը անապատին մէջ Տէրոջը
հրեշտակը երեւցաւ անոր մորենիի
կրակի բոցով : Մովսէս ալ երբոր 31
տեսաւ՝ զարմացաւ այն տեսիլքին
վրայ . ու երբոր մօտեցաւ դիտելու,
Տէրոջը ձայնը եկաւ անոր որ կ'ը-
սէր . Ես եմ քու հայրերուդ Աս- 32
տուածը, Աբրահամին Աստուածը,
ու Իսահակին Աստուածը, և Յա-
կոբին Աստուածը . Մովսէս ալ
վախէն դողալով չէր համարձակեր
դիտելու : Եւ Տէրը ըսաւ անոր . 33
Ոտքերուդ կօշիկները հանէ, ինչու
որ աս տեղը որ դուն կայներ ես,
սուրբ երկիր է : Յիրաւի Եգիպ- 34
տոսի մէջ եղող ժողովուրդիս չար-
չարանքը տեսայ, ու լսեցի անոնց
հառաչանքը, և իջայ զանոնք ազա-
տելու . և հիմա եկուր քեզ Ե-
գիպտոս խրկեմ : Այն Մովսէսը որ 35
ուրացան ու կ'ըսէին, Ո՞վ քեզ
իշխան ու դատաւոր դրաւ, Աս-
տուած զանիկայ իշխան և փրկիչ
խրկեց այն հրեշտակին ձեռքովը՝ որ
մորենիին մէջ անոր երեւցաւ : Ա- 36
նիկայ հանեց զանոնք՝ հրաշքներ ու
նշաններ ընելով Եգիպտոսի երկրին
ու Կարմիր ծովուն մէջ, և անա-
պատին մէջ քառասուն տարի : Այս 37
Մովսէսն է որ ըսաւ Իսրայէլի որ-
դւոցը, Ձեր Տէր Աստուածը ձեր
եղբայրներէն ինծի պէս մարգարէ մը
պիտի հանէ ձեզի, անոր մտիկ ը-
րէք : Անիկայ այն է որ անապատը 38
ժողովքին մէջն էր, Սինայ լեռան
վրայ իրեն խօսող հրեշտակին հետ
ու մեր հայրերուն հետ, որ կեն-
դանի պատգամներ առաւ մեզի տա-
լու . Որուն մեր հայրերը չուզեցին 39
հնազանդ ըլլալ, հապա մերժեցին,
և իրենց սրտերովը Եգիպտոս դար-
ձան : Եւ ըսին Ահարոնին, Մեզի 40
աստուածներ շինէ որ մեր առջեւէն

երթան · քանզի այն Մովսէսը որ
մեզ Եգիպտոսի երկրէն հանեց ,
չենք գիտեր թէ ինչ եղաւ անոր :
41 Ու այն օրերը որթ մը շինեցին , ու
կուռքին զոհ մատուցին , և իրենց
ձեռացը գործքերովը կը ուրախանա-
42 նային : Աստուած ալ երես դար-
ձուց , ու թողուց զանոնք որ երկնից
զօրքը պաշտեն · ինչպէս որ գրուած
է մարգարէից գրքին մէջ , Միթէ
անապատին մէջ քառասուն տարի
զոհեր ու պատարագնե՞ր մատուցիք
43 ինծի՝ ով Իսրայէլի տունը · Ու
Մողոքին վրանը առիք ու ձեր
Հռեմփա աստուծոյն աստղը , այն
պատկերները որ շինեցիք՝ անոնց
երկրպագութիւն ընելու · ես ալ
ձեզ Բաբելոնէն անդին պիտի փո-
44 խադրեմ : Վկայութեան խորանը
անապատին մէջ մեր հայրերուն
հետ էր , ինչպէս որ Մովսէսին
հետ խօսողը հրամայած ըրաւ՝ որ տե-
սած օրինակին պէս շինէ զանիկայ ·
45 Որ մեր հայրերն ալ յաջորդաբար
առնելով՝ Յեսուին հետ բերին զա-
նիկայ այն ազգերուն կալուածքը ,
որոնք Աստուած վռնտեց մեր հայ-
րերուն առջեւէն մինչև Դաւիթին
46 օրերը , Որ Աստուծոյ առջեւը շը-
նորհք գտաւ , և ուզեց որ Յակո-
բին Աստուծոյն բնակարան մը գըտ-
47 նէ : Ու Սողոմոն անոր տուն մը
48 շինեց : Սակայն Բարձրեալը ձեռ-
քով շինուած տաճարներու մէջ չը-
բնակիր , ինչպէս որ մարգարէն կ'ը-
49 սէ ; Երկինքը իմ աթոռս է , ու
երկիրը իմ ոտքերուս պատուան-
դանն է · որպիսի՞ տուն պիտի շինէք
ինծի , կ'ըսէ Տէրը , կամ ի՞նչ
տեղի ըլլայ իմ հանգստութեանս
50 տեղը · Չէ՞ որ աս ամենը իմ
51 ձեռքս շիներ է : Ո՛վ խստապա-
րանոցներ ու սրտով և ականջով
չթլփատուածներ , դուք ամեն ա-
տեն Հոգւոյն Սրբոյ հակառակ կը
կենաք , ինչպէս ձեր հայրերը՝ ա-
52 նանկ ալ դուք : Մարգարէներէն
ո՞րը չհալածեցին ձեր հայրերը , ու
սպաննեցին զանոնք որ առաջուց
պատմեցին այն Արդարին գալուն
համար , որ դուք հիմա անոր մատ-
նիչները և սպաննողները եղաք ·
Դուք որ օրէնքը առիք հրեշտակ- 53
ներուն միջնորդութեամբը՝ ու
չպահեցիք :
Երբ անոնք աս բաները լսելով՝ 54
սրտերնուն մէջ կը կտրտէին ու
ակռաներնին անոր վրայ կը կըր-
ճտէին · Բայց անիկայ Հոգւով 55
Սրբով լեցուած՝ երկինքը նայեցաւ
և տեսաւ Աստուծոյ փառքը , ու
Յիսուսն ալ որ Աստուծոյ աջ կող-
մը կայներ էր , և ըսաւ , Ահա կը
տեսնեմ երկինքը բացուած , ու
Որդին մարդոյ՝ Աստուծոյ աջ կողմը
կայնած : Իսկ անոնք մեծաձայն 56
աղաղակելով՝ ականջներնին գոցե-
ցին , և ամենը մէկէն վազեցին ա-
նոր վրայ · Ու քաղաքէն դուրս 57
հանելով՝ կը քարկոծէին զանիկայ ·
և վկաները իրենց հանդերձները
հանած կը դնէին երիտասարդի մը
ոտքերուն քովը , որ Սօղոս կ'ը-
սուէր : Ու կը քարկոծէին Ստե- 58
փաննոսը , որ աղօթք կ'ընէր ու
կ'ըսէր , Տէ՛ր Յիսուս՝ ընդունէ
իմ հոգիս : Ու ծունկի վրայ գա- 59
լով բարձրաձայն աղաղակեց , Տէ՛ր՝
աս մեղքը մի՛ սեպեր ասոնց · և
աս ըսելով՝ ննջեց · Սօղոս ալ հա-
մակից էր անոր սպաննուելուն :

ԳԼ. Ը

Ու այն օրը մեծ հալածում եղաւ 1
Երուսաղէմի մէջ եղող եկեղե-
ցիին վրայ , և առաքեալներէն 'ի
զատ ամենն ալ ցիրուցան եղան
Հրէաստանի ու Սամարիայի եր-
կիրներուն մէջ : Իսկ աստուածա- 2
վախ մարդիկ Ստեփաննոսը վերցու-
ցին , ու անոր վրայ մեծ սուգ ըրին :
Բայց Սօղոս եկեղեցիին շատ վնաս 3
կու տար , տուները կը մտնէր ,
էրիկ ու կնիկ մարդիկները կը քա-
շէր՝ բանտը դնել կու տար :
Իսկ այն ցիրուցան եղածները կը 4
պտըտէին ու խօսքը կը քարոզէին :
Փիլիպպոս ալ Սամարիայի մէկ քա- 5
ղաքը իջնելով՝ Քրիստոսը կը քա-
րոզէր անոնց : Ու ժողովուրդները 6
միաբան հաւանութեամբ Փիլիպ-
պոսին բաներուն ուշադրութիւն

կու տային՝ լսելով ու տեսնելով այն
7 նշանները որ կ՚ընէր ։ Վասն զի
շատ դիւահարներէն պիղծ ոգիները
մեծաձայն աղաղակելով կ՚ելլէին ։
8 Եւ շատ անդամալոյծներ ու կաղեր
9 կը բժշկուէին ։ Ու մեծ ուրախու-
թիւն եղաւ այն քաղաքին մէջ ։
Բայց Սիմոն անունով մարդ մը կար՝
որ առաջուց այն քաղաքին մէջ մո-
գութիւն կ՚ընէր , ու Սամարացւոց
ազգը կ՚ապշեցընէր , իրեն համար
10 ըսելով թէ մեծ մէկ մըն է ։ Որ
անոր ուշադրութիւն կու տային
ամէնն ալ պզտիկէն մինչև մեծը ,
և կ՚ըսէին , Ասիկայ Աստուծոյ մեծ
11 [ըսուած] զօրութիւնն է ։ Շատ
ժամանակէ 'ի վեր կախարդութիւն-
ներով զանոնք ապշեցընելուն հա-
մար՝ իրեն ուշադրութիւն կու տա-
12 յին ։ Բայց երբոր Փիլիպպոսին
հաւատացին՝ որ Աստուծոյ թագա-
ւորութեանը ու Յիսուս Քրիստոսի
անուանը վրայով կը քարոզէր , կը
մկրտուէին թէ՛ էրիկ մարդիկ և թէ
13 կնիկ մարդիկ ։ Եւ Սիմոն ինքն ալ
հաւատաց , ու մկրտուելով միշտ
Փիլիպպոսին հետ էր ։ Եւ տեսնե-
լով այն նշանները ու մեծ զօրու-
թիւնները որ կ՚ըլլային , կը զար-
14 մանար ։ Իսկ Երուսաղէմի մէջ
եղող առաքեալները երբոր լսեցին
թէ Սամարացիք Աստուծոյ խօսքը
ընդուներ են , Պետրոսը ու Յով-
15 հաննէսը անոնց ղրկեցին ։ Անոնք
իջնելով՝ աղօթք ըրին անոնց հա-
մար որ Սուրբ Հոգին առնեն ։
16 ( Ինչու որ դեռ անոնց մէկուն վրայ
իջած չէր , հապա միայն Տէր Յի-
սուսի անուանը մկրտուած էին ։ )
17 Ան ատենը ձեռքերնին դրին անոնց
վրայ , ու Սուրբ Հոգին կ՚առնէին ։
18 Երբոր տեսաւ Սիմոն թէ առա-
քեալները անոնց վրայ ձեռք դնելով՝
Սուրբ Հոգին կը տրուի , անոնց
19 ստակ մատուց ու ըսաւ , Ինծի ալ
աս իշխանութիւնը տուէք՝ որպէս
զի որու վրայ ձեռք դնեմ , անիկայ
20 Սուրբ Հոգին առնէ ։ Բայց Պետ-
րոս ըսաւ անոր ։ Քու ստակդ
քեզի հետ թող կորսուի ։ ինչու
որ Աստուծոյ պարգևը կարծեցիր

թէ ստակով կ՚առնուի ։ Դուն 21
աս բանին մէջ մասն ու բաժին
չունիս ։ ինչու որ քու սիրտդ Աս-
տուծոյ առջևը շիտակ չէ՛ ։ Աս- 22
որ աս քու չարութենէդ զղջա՛
եկո՛ւր ու Աստուծոյ աղօթէ՛ , գու-
ցէ ներուի քեզի քու սրտիդ այդ
խորհուրդը ։ Ինչու որ ես քեզ 23
մաղձի դառնութեան մէջ և անի-
րաւութեան կապին մէջ կը տես-
նեմ ։ Սիմոն պատասխան տուաւ 24
ու ըսաւ , Դուք ինծի համար ա-
ղօթք ըրէք Տէրոջը , որ ատ ձեր
ըսածներէն բան մը իմ վրաս չգայ ։
Անոնք ալ վկայութիւն տալով Աս- 25
տուծոյ խօսքը խօսելէն ետև , դար-
ձան Երուսաղէմ ։ և Սամարացւոց
շատ գեղերուն մէջ աւետարանը
քարոզեցին ։

Եւ Տէրոջը հրեշտակը Փիլիպ- 26
պոսին խօսեցաւ՝ ըսելով , Ելի՛ր ու
գնա՛ դէպ 'ի հարաւային կողմը այն
ճամբան , որ Երուսաղէմէն վար 'ի
Գազա կ՚իջնէ , որ անապատ տեղ
մըն է ։ Ան ալ ելաւ գնաց ։ և 27
ահա՛ Եթովպացի ներքինի մարդ
մը՝ Եթովպացւոց Կանդակէ թա-
գուհիին մէկ զօրաւորը , որ ինքը
անոր բոլոր գանձերուն վրայ էր , որ
Երուսաղէմ եկեր էր երկրպագու-
թիւն ընելու ։ Եւ անկէ ետ կը 28
դառնար , ու իր կառքը նստած՝
Եսայի մարգարէին գիրքը կը կար-
դար ։ Եւ Հոգին ըսաւ Փիլիպ- 29
պոսին ։ Մօտեցի՛ր և աս կառքին
քովը գնա ։ Փիլիպպոս ալ վա- 30
զելով մօտ գնաց՝ ու մտիկ կ՚ընէր
որ Եսայի մարգարէին գիրքը կը
կարդար , և ըսաւ ։ Կարդացածդ
կը հասկնա՞ս արդեօք ։ Ան ալ 31
ըսաւ ։ Ինչպէ՞ս կրնամ հասկընալ ,
թէ որ մէկը ինծի չառաջնորդէ ։
ու աղաչեց Փիլիպպոսին որ ելլէ
իր քովը նստի ։ Եւ գրքին մէջ 32
կարդացած տեղը աս էր ։ Ոչխարի
պէս մորթուելու տարուեցաւ , ու
իր խուզողին առջևը մունջ գառ
գառնուկի պէս՝ անանկ իր բերանը
չբանար ։ Իր խոնարհութեանը 33
մէջ իր դատաստանը վերցուեցաւ ,
և անոր ազգատոհմը ո՞վ պիտի

մը անոր աչքերէն թեփերու պէս
ծածկեր ինկան. և իսկոյն տեսաւ
19 ու ելաւ մկրտուեցաւ. Եւ կերա-
կուր առնելով ոյժը վրան եկաւ ։
ու քանի մը օր Դամասկոսի մէջ
եղող աշակերտներուն հետը կեցաւ ։
20 Եւ անմիջապէս ժողովարաննե-
րուն մէջ կը քարոզէր Յիսուսը,
թէ անիկայ է Աստուծոյ Որդին ։
21 Եւ ամէն լսողները մեծապէս զար-
մացեր էին, ու կ'ըսէին, Նոյնիկայ
ան չէ՞, որ Երուսաղեմի մէջ կը
կործանէր անոնք որ աս անունը կը
կանչէին. և հոս ալ ան բանին հա-
մար եկած էր, որ զանոնք կապած՝
22 քահանայապետներուն տանի ։ Բայց
Սօղոս՝ ալ աւելի կը զօրանար, և
Դամասկոսի մէջ բնակող Հրէա-
ները կը պապանձեցընէր, ապա-
ցուցանելով թէ Քրիստոսը ասի-
23 կայ է ։ Ու շատ օրեր անցնելէն
ետքը՝ Հրէաները խորհուրդ ըրին
24 որ անիկայ սպաննեն ։ Բայց Սօ-
ղոսին յայտնուեցաւ անոնց նենգու-
թիւնը. և ցորեկ ու գիշեր դռ-
ները կը պահէին որ անիկայ ըս-
25 պաննեն ։ Իսկ աշակերտները գի-
շերով առին զանիկայ, ու զամբիւ-
ղով մը կախելով պարսպէն վար իջե-
ցուցին ։
26 Երբոր Սօղոս Երուսաղէմ եկաւ,
կը ջանար աշակերտներուն յարե-
լու ։ բայց ամէնն ալ կը վախնա-
յին անկէ, չհաւատալով թէ անի-
27 կայ աշակերտ էր ։ Բայց Բառնա-
բաս անիկայ առնելով առաքեալ-
ներուն տարաւ, ու պատմեց անոնց
թէ ինչպէս ճամբուն վրայ Տէրը
տեսաւ, և թէ անոր հետ խօսեցաւ,
և թէ ինչպէս Դամասկոսի մէջ հա-
մարձակ քարոզեց Յիսուսի անու-
28 նովը ։ Ու Երուսաղեմի մէջ անոնց
հետ կը մտնէր ու կ'ելլէր, Տէր
Յիսուսի անունովը համարձակ քա-
29 րոզելով ։ Նաև Հելլենացւոց
դէմ կը խօսէր և վիճաբանութիւն
կ'ընէր. անոնք ալ կը փնտռէին
30 անիկայ սպաննել ։ Իսկ եղբայր-
ները իմանալով՝ զանիկայ Կեսարիա
իջեցուցին, և անկէ Տարսոն խրկե-
ցին զանիկայ ։

Այն ատենը եկեղեցիները բոլոր 31
Հրէաստանի և Գալիլեայի ու Սա-
մարիայի մէջ խաղաղութիւն ունե-
ցան, և շինութիւն կ'ընդունէին,
ու Տէրոջը երկիւղովը և Հոգւոյն
Սրբոյ մխիթարութեամբը քալելով
կ'աճէին ։
Ու երբոր Պետրոս ամէն տեղ կը 32
պտըտէր, Լիւդիա բնակող սուր-
բերուն քովն ալ իջաւ ։ Եւ հոն 33
մէկ մարդ մը գտաւ, որուն անունը
Ենեա էր, ութը տարիէ 'ի վեր
մահիճը պառկած անդամալոյծ. Եւ 34
ըսաւ անոր Պետրոս ։ Ենեա՛ Յի-
սուս Քրիստոս քեզ կը բժշկէ.
ելի՛ր ու քու անկողինդ շինէ՛. ան
ալ շուտ մը ելաւ ։ Եւ Լիւդ- 35
դեայի ու Սարօնի մէջ բնակողնե-
րուն ամէնը անիկայ տեսան, ու
Տէրոջը դարձան ։ Եւ Յոպպէի 36
մէջ աշակերտ եղած կնիկ մը կար՝
անունը Տաբիթա, (որ թարգ-
մանուելով Այծեմնիկ կ'ըսուի.)
ասիկայ լեցուած էր բարի գործքե-
րով ու ողորմութիւններով, որ ին-
քը կ'ընէր ։ Ու եղաւ որ ան օրերը 37
ինքը հիւանդացաւ ու մեռաւ. լուա-
ցին անիկայ և վերի սենեակ մը
դրին ։ Ու Լիւդդեա Յոպպէին 38
մօտ էր. ուստի աշակերտները լսե-
լով թէ Պետրոս հոն է, անոր
երկու մարդ խրկեցին, աղաչելով
որ չուշանայ իրենց գալու ։ Պետ- 39
րոս ալ ելաւ անոնց հետը եկաւ.
ու երբոր եկաւ, վերի սենեակը հա-
նեցին զանիկայ. և բոլոր որբեւա-
րիները անոր բոլորտիքը կայնեցան,
կու լային ու կը ցուցընէին ան
բաճկոնները և հանդերձները որ
կ'ընէր Այծեմնիկ, քանի որ իրենց
հետն էր ։ Պետրոս ալ ամէնը 40
դուրս հանելով՝ ծունկի վրայ եկաւ
ու աղօթք ըրաւ, և դէպ 'ի մար-
մինը դառնալով՝ ըսաւ ։ Տաբիթա՛
ելի՛ր կայնէ՛. ան ալ իր աչքերը
բացաւ, ու Պետրոսը տեսնելով՝
ելաւ շիտակ նստաւ ։ Ինքն ալ 41
ձեռքը անոր տուաւ, ու վերցուց
զանիկայ. և սուրբերը ու որբեւա-
րիները կանչելով՝ անոնց առջևը ողջ
կայնեցուց զանիկայ ։ Եւ աս բանը 42

բոլոր Յոպպէին մէջ իմացուեցաւ ,
ու շատերը Տէրոջը հաւատացին ։
43 Եւ եղաւ որ ինքը շատ օրեր Յոպպէ
կեցաւ Սիմոն անուանով կաշի բա-
նողի մը քով ։

## ԳԼ. Ժ

1 Կեսարիայի մէջ մարդ մը կար
Կոռնելիոս անունով , հարիւ-
րապետ՝ Իտալացի ըսուած գուն-
2 դէն . Բարեպաշտ ու աստուածա-
վախ իր բոլոր տունովը , որ ժողո-
վուրդին շատ ողորմութիւններ կու-
տար , և ամէն ատեն Աստուծոյ ա-
3 ղօթք կ'ընէր ։ Անիկայ օրուան
ժամը իններորդ ատենները տեսիլքի
մէջ Աստուծոյ հրեշտակը յայտնի
տեսաւ , որ իր քովը մտաւ և իրեն
4 ըսաւ , Կոռնելիոս . Ան ալ անոր
նայելով ու խիստ վախնալով , ը-
սաւ , Ի՞նչ է Տէր . ան ալ ըսաւ
անոր , Քու աղօթքներդ ու ողոր-
մութիւններդ Աստուծոյ առջևը ե-
5 լան յիշատակի համար ։ Եւ հիմա
Յոպպէ մարդիկ ղրկէ , ու կանչէ՛
Սիմոն անուանով մէկը որ Պետրոս
6 մականուանեալ է . Անիկայ իբրև
հիւր կը կենայ Սիմոն անուանով կաշի
բանողի մը քով , որուն տունը ծո-
7 վուն մօտ է ։ Ու երբոր գնաց ան
հրեշտակը՝ որ իր հետը կը խօսէր ,
իր ծառաներէն երկուքը կանչեց , ու
իր քովը սպասողներէն ալ բարե-
8 պաշտ զինուոր մը , Եւ բոլորը ա-
նոնց պատմելով՝ Յոպպէ ղրկեց
զանոնք ։
9 Ու հետևեալ օրը երբոր անոնք
ճամբայ երթալով՝ քաղաքին մօտե-
ցան , Պետրոս ժամը վեցին ատեն-
ները տանիքը ելաւ աղօթք ընելու .
10 Եւ խիստ անօթեցած ըլլալով՝ կ'ու-
զէր ճաշ ընել . ու մինչ որ կերա-
կուրի պատրաստութիւն կը տես-
նէին , իր վրայ մտքի յափշտակու-
11 թիւն մը եկաւ . Եւ տեսաւ երկին-
քը բացուած , ու չորս ծայրէն կա-
պուած ամանի մը մեծ կտաւի մը
12 պէս , որ իջաւ երկրի վրայ . Որուն
մէջը կար երկրի բոլոր չորքոտանի-
ները ու գազանները և սողունները
13 ու երկինքի թռչունները ։ Եւ ձայն
մը եկաւ իրեն , Ելի՛ր Պետրոս՝
մորթէ՛ ու կե՛ր ։ Բայց Պետրոս 14
ըսաւ , Քա՛ւ լիցի Տէ՛ր , մինչև որ
ես ամենևին պիղծ կամ անմաքուր
բան կերած չեմ ։ Նորէն մէյմըն 15
ալ ձայն եկաւ իրեն , Ան որ Աս-
տուած մաքրեց , դուն պիղծ մի՛ սե-
պեր ։ Անիկայ երեք անգամ եղաւ , 16
և ամանը երկինքը վերցուեցաւ ։ Ու 17
Պետրոս երբոր իր մտքին մէջ կը
զարմանար թէ ինչ պիտի ըլլայ ան
իր տեսած տեսիլքը , ահա Կոռնե-
լիոսէն ղրկուած մարդիկը Սիմոնին
տունը հարցուցին , ու դրանը առ-
ջևը կայնեցան . Եւ կանչելով կը 18
հարցընէին թէ Սիմոնը որ Պետ-
րոս կ'ըսուի , հո՞ս կը կենայ ։ Ու 19
երբոր Պետրոս ան տեսիլքին վրա-
յով կը մտածէր , Հոգին Սուրբ
ըսաւ անոր , Ահա երեք մարդիկ
քեզ կը փնտռեն . Ուստի ելի՛ր 20
իջի՛ր , և անոնց հետը գնա՛ առանց
խղճահարութեան , մինչև որ ես
ղրկեցի անոնք ։ Պետրոս ալ ան 21
մարդիկներուն քովը իջնելով՝ ը-
սաւ , Ահա ես եմ անիկայ որ դուք
կը փնտռէք . Ինչ բանի համար
եկած էք ։ Անոնք ալ ըսին , Կոռ- 22
նելիոս հարիւրապետը՝ արդար և
աստուածավախ մարդ՝ բոլոր Հրէից
ազգէն վկայուած՝ սուրբ հրեշտակէ
մը հրաման առաւ , որ քեզ իր
տունը կանչէ և քեզմէ խօսքեր
լսէ ։ Ան ատենը ներս կանչեց ա- 23
նոնք և իր քովը վար դրաւ ։
Ու հետևեալ օրը Պետրոս ելաւ՝
անոնց հետը գնաց , և քանի մըն
ալ Յոպպէէն եղող եղբայրներէն իր
հետը գացին ։ Ու հետևեալ օրը 24
Կեսարիա մտան . Կոռնելիոս ալ
իր ազգականները և մտերիմ բարե-
կամները կանչած՝ անոնց կը սպա-
սէր ։ Ու երբոր Պետրոս ներս կը 25
մտնէր , Կոռնելիոս անոր դիմացը
ելաւ , ու անոր ոտքը իյնալով
երկրպագութիւն կ'ընէր ։ Բայց 26
Պետրոս անիկայ կանգնեցուց ու ը-
սաւ , Ելի՛ր՝ կայնէ՛ . ես ինքս ալ
մարդ եմ ։ Եւ անոր հետը խօսակ- 27
ցելով ներս մտաւ , ու հոն շատ
մարդիկ ժողվուած գտաւ . Եւ ը- 28

տաւ անոնց ՚ Դուք գիտէք թէ ինչ-
պէս ապօրինաւոր բան է Հրէայ
մարդու մը օտարազգիի հետ հաղոր-
դակցութիւն ընելը կամ անոր մօ-
տենալը • բայց Աստուած ինծի ցու-
ցուց որ մարդիկներէն մէկուն պիղծ
29 կամ անմաքուր չըսեմ ։ Անոր հա-
մար ես ալ որ կանչուեցայ՝ առանց
դէմ խօսելու եկայ • բայց հիմա կը
հարցընեմ, ի՞նչ բանի համար զիս
30 կանչեցիք ։ Կոռնելիոս ալ ըսաւ •
Չորս օր առաջ մինչև աս ժամս ծոմ
կը պահէի, ու ժամը իննին տանս
մէջ աղօթք կ'ընէի • և ահա փայ-
լուն հանդերձներով մարդ մը կայ-
31 նեցաւ առջևս ու ըսաւ ՚ Կոռնե-
լիոս՝ քու աղօթքդ լսուեցաւ, և
քու ողորմութիւններդ Աստուծոյ
32 առջևը յիշուեցան • Ասոր համար
խրկէ Յոպպէ, ու կանչէ՛ Սիմոնը՝
որ Պետրոս ալ կ'ըսուի • անիկայ
ծովուն մօտ Սիմոն անուանով կաշի
բանողի մը տանը մէջ իբրև հիւր
կը կենայ • որ երբոր գայ, քեզի
33 պիտի խօսի ։ Ասոր անմիջապէս
մարդիկ խրկեցի քեզի, դուն ալ ա-
ղէկ ըրիր որ եկար • և հիմա մենք
ամէնքս Աստուծոյ առջևը կեցեր ենք
լսելու ան ամէն բաները, որ Աս-
տուծմէ հրամայուած է քեզի ։
34 Պետրոս իր բերանը բացաւ ու
ըսաւ ՚ Ճշմարտութեամբ կը հաս-
կընամ որ Աստուծոյ քովը աչառու-
35 թիւն չկայ • Հապա ամէն ազգի
մէջ ան որ անկէ կը վախնայ ու
արդարութիւն կը գործէ, անոր
36 ընդունելի է ։ Ան խօսքը որ Իս-
րայէլի որդւոցը խրկեց Աստուած
խաղաղութիւն քարոզելու Յիսուս
Քրիստոսի ձեռքովը, (անիկայ է
37 ամենուն Տէրը •) Դուք աղէկ գի-
տէք ան բանը, որ բոլոր Հրէաս-
տանի մէջ եղաւ Գալիլիայէն սկը-
սած՝ ան մկրտութենէն ետև որ
38 Յովհաննէս քարոզեց • Յիսուսը
որ Նազարեթէն էր, որ Աստուած
զանիկայ օծեց Սուրբ Հոգիով և
զօրութիւնով, որ պտըտեցաւ բա-
րիք ընելով, ու Սատանայէն բո-
լոր տանջուածները բժշկելով,
քանզի Աստուած իր հետն էր ։

Ու մենք վկայ ենք ան ամէն բանե- 39
րուն որ ըրաւ Հրէաստանի երկրին
մէջ ու Երուսաղէմի մէջ, որն որ
փայտէն կախած սպաննեցին ալ ։
Աստուած զանիկայ երրորդ օրը յա- 40
րուց, և յայտնի ըրաւ զանիկայ,
Ոչ թէ բոլոր ժողովուրդին, հա- 41
պա մեզի առաջուց Աստուծմէ վը-
կայ ըլլալու ընտրուածներուս • որ
մենք իրեն հետ կերանք ու խմեցինք
ու՝ անոր մեռելներէն յարութիւն
առնելէն ետքը ։ Ու ինքը պա- 42
տուիրեց մեզի որ ժողովուրդին
քարոզենք ու վկայութիւն տանք,
թէ անիկայ է Աստուծմէ սահմա-
նուած՝ կենդանիներուն ու մեռե-
լներուն դատաւորը ։ Անոր կը 43
վկայեն բոլոր մարգարէները թէ
ամէն իրեն հաւատացողները իր ա-
նունովը մեղաց թողութիւն կ'առ-
նեն ։

Ու երբոր Պետրոս աս խօսքերը 44
կը խօսէր, Հոգին Սուրբ իջաւ
ամենուն վրայ, որոնք խօսքը կը
լսէին ։ Ու թլփատուածներէն 45
եղող հաւատացեալները՝ որոնք
Պետրոսին հետը եկած էին, զար-
մացան որ հեթանոսներուն վրայ
ալ Հոգւոյն Սրբոյ պարգևը կը
լեցուէր ։ Քանզի կը լսէին ա- 46
նոնցմէ որ ուրիշ լեզուներով կը
խօսէին, և զԱստուած կը փառա-
ւորէին ։ Ան ատենը Պետրոս 47
պատասխան տուաւ ՚ Կրնա՞յ մէկը
ջուրը արգիլել որ ասոնք չմկըր-
տուին, որոնք Հոգին Սուրբն ալ
ընդունեցին մեզի պէս ։ Ու հրա- 48
ման ըրաւ որ Տէրոջը անուանովը
մկրտուին • ան ատենը իրեն աղա-
չեցին որ քանի մը օր հոն մնայ ։

## ԳԼ. ԺԱ

Ու առաքեալները ու եղբայրները 1
որ Հրէաստանի կողմերն էին,
լսեցին որ հեթանոսներն ալ Աս-
տուծոյ խօսքը ընդուներ են ։ Ու 2
երբոր Պետրոս Երուսաղէմ ելաւ,
թլփատուածներէն եղողները անոր
հետ կը վիճէին • Ու կ'ըսէին թէ 3
Դուն անթլփատ մարդոց քովը մը-
տար, և անոնց հետ հաց կերար ։

2 մէկ քանիները չարչարելու ։ Եւ
Յովհաննէսին եղբայրը Յակոբոսը
3 սրով սպաննեց ։ Եւ տեսնելով որ
Հրէաներուն հաճելի է, անոր վրայ
Պետրոսն ալ բռնեց. ու բաղարջա-
4 կերաց օրերն էին ։ Զանիկայ երբ-
որ բռնեց՝ բանտը դրաւ, և չորս
կարգ չորսական զինուորներու յանձ-
նեց որ պահեն, և կ'ուզէր զատկէն
ետև ժողովուրդին հանել զանիկայ ։
5 Ուստի Պետրոս բանտին մէջը պա-
հուած էր, բայց եկեղեցին անդա-
դար աղօթք կ'ընէր Աստուծոյ անոր
6 համար ։ Եւ երբոր Հերովդէս ու-
զեց զանիկայ դուրս բերել, նոյն գի-
շերը Պետրոս երկու զինուորներու
մէջտեղը կը քնանար՝ կրկին շղթա-
ներով կապուած. ու պահապանները
դրանը առջևը բանտը կը պահպա-
7 նէին ։ Եւ ահա Տէրոջը հրեշտա-
կը եկաւ վրան կայնեցաւ, ու տանը
մէջ լոյս մը ծագեց, և Պետրոսին
կողը խթելով արթնցուց զանի-
կայ, ու ըսաւ. Շուտով ելիր.
ու շղթաները անոր ձեռքերէն վար
8 ինկան ։ Եւ հրեշտակը ըսաւ ա-
նոր. Գօտիդ կապէ ու հողա-
թափներդ ոտքդ հագիր. անիկայ
ալ այնպէս ըրաւ. և ըսաւ անոր.
Հանդերձդ վրադ առ ու եկուր իմ
9 ետևէս ։ Ան ալ ելլելով անոր
ետևէն կ'երթար, և չէր գիտեր թէ
ան հրեշտակէն եղած բանը իրաւ է,
հապա կը կարծէր թէ տեսիլք կը
10 տեսնէ ։ Եւ երբոր անոնք առաջին
ու երկրորդ պահապաններէն անց-
ցան, եկան մինչև երկաթէ դուռը,
որ քաղաքին մէջը կը հանէր, որ
ան ինքիրմէ բացուեցաւ անոնց. և
անկէ ելլելով՝ մէկ փողոց մը անցան.
հրեշտակն ալ իսկոյն անկէ զատուե-
11 ցաւ ։ Եւ Պետրոս ինքնիրեն գա-
լով ըսաւ. Հիմա ճշմարտապէս
գիտեմ որ Տէրը իր հրեշտակը խրկ-
եց, և ազատեց զիս Հերովդէսին
ձեռքէն ու Հրէից ժողովուրդին
12 բոլոր ակնկալութենէն ։ Եւ մտա-
ծելով՝ եկաւ Մարկոս ըսուած Յով-
հաննէսին մօրը Մարիամին տունը,
ուր որ շատերը ժողվուած աղօթք
13 կ'ընէին ։ Եւ դրանը դուռը զար-
նելը որ զարկաւ, Հռովդէ անունով
աղախին մը գնաց ականջ դնելու ։
Եւ երբոր Պետրոսին ձայնը ճանչ- 14
ցաւ, ուրախութենէն դուռը չբա-
ցաւ, հապա ներս վազելով պատ-
մեց թէ Պետրոս դրանը առջևը
կայներ է ։ Իսկ անոնք ըսին անոր, 15
Խենթեցեր ես. բայց ինքը կը պնդ-
դէր թէ այնպէս է. անոնք ալ կ'ը-
սէին, Անոր հրեշտակը պիտի ըլ-
լայ ։ Սակայն Պետրոս անդադար 16
կը զարնէր. ու երբոր բացին,
զինքը տեսնելով զարմացան ։ Բայց 17
անիկայ ձեռքով նշան կ'ընէր անոնց
որ լուռ կենան, ու պատմեց անոնց
թէ ինչպէս Տէրը զինքը բանտէն
հանեց, և ըսաւ. Ասիկայ Յակո-
բոսին ու եղբայրներուն պատմեցէք.
և ելաւ ուրիշ տեղ գնաց ։ Եւ 18
երբոր առտու եղաւ, մեծ խռովու-
թիւն կար զինուորներուն մէջը թէ
արդեօք ի՞նչ եղաւ Պետրոս ։
Հերովդէս ալ երբոր ուզեց անիկայ՝ 19
ու չգտաւ, պահապաններուն հար-
ցափորձ ընելով՝ հրամանն ըրաւ որ
սպաննուին. և ինքը Հրէաստանէն
Կեսարիա իջաւ, ու հոն կը կենար ։
Եւ Հերովդէս խիստ թշնամացած 20
էր Տիւրացիներուն ու Սիդոնացի-
ներուն հետ. անոնք ալ միաբան
հաւանութեամբ իրեն եկան, ու
թագաւորին Բղաստոս սենեկապե-
տը համոզելով՝ հաշտութիւն կը
խնդրէին. ինչու որ իրենց երկիրը
թագաւորին երկրէն ապրուստ կ'առ-
նէր ։ Եւ մէկ որոշուած օր մը 21
Հերովդէս թագաւորական հան-
դերձը հագած ու ատեանը նստած՝
անոնց ատենաբանութիւն կ'ընէր ։
Ժողովուրդն ալ կ'աղաղակէր, Թէ 22
Աստուծոյ ձայն է, ու չէ
թէ մարդու ։ Եւ իսկոյն Տէրոջը 23
հրեշտակը զանիկայ զարկաւ, Աս-
տուծոյ փառք չտալուն համար. և
որդնալից ըլլալով մեռաւ ։
Եւ Աստուծոյ խօսքը կ'աճէր ու 24
կը շատնար ։ Եւ Բառնաբաս ու 25
Սօղոս երբոր իրենց յանձնուած պաշ-
տօնը լմնցուցին՝ Երուսաղէմէն
դարձան, Մարկոս ըսուած Յով-
հաննէսն ալ հետերնին առնելով ։

## ԳԼ. ԺԳ

1 Իսկ Անտիոքի մէջ եղած եկեղեցիին
քանի մը մարգարէներ ու վար-
դապետներ կային, Բառնաբաս
ու Շմաւոն որ Նիգեր կ'ըսուէր,
և Ղուկիոս Կիւրենացի ու Մա-
նայէն՝ Հերովդէս չորրորդապետին
2 սննդակիցը, և Սօղոս: Իրենք
անոնք Տէրոջը պաշտօնին մէջն էին՝
և ծոմ կը պահէին, Հոգին Սուրբ
ըսաւ, Զատեցէք ինծի Բառնա-
բասը և Սօղոսը այն գործին համար,
3 որուն ես կանչեր եմ զանոնք: Ան
ատենը ծոմ պահելով և աղօթք ը-
նելով, ձեռք դրին անոնց վրայ ու
ղրկեցին:
4 Անոնք ալ Սուրբ Հոգիէն ղըր-
կուած՝ Սելևկիա իջան, ու անկէ
5 նաւով Կիպրոս գացին: Իսկ Սա-
ղամինա հասնելով՝ Հրէից ժողո-
վարաններուն մէջ Աստուծոյ խօսքը
կը քարոզէին, ու Յովհաննէսն ալ
6 իրենց սպասաւոր ունէին: Իսկ պը-
տըտելով այն [բոլոր] կղզին մինչև
Պափոս, հոն գտան սուտ մարգարէ՝
Հրեայ մոգ մը, որուն անունը
7 Բարյեսու էր. Որ ինքը փոխանորդ
բդեշխին հետն էր, որ կ'ըսուէր
Սերգիոս Պօղոս, խելացի մարդ
մը. ասիկայ Բառնաբասը և Սօ-
ղոսը հրաւիրելով՝ ուզեց Աստուծոյ
8 խօսքը լսել: Սակայն անոնց դէմ
կեցաւ Եղիմաս մոգը, (քանզի այս-
պէս կը թարգմանուի անոր անու-
նը,) որ կ'ուզէր փոխանորդ բդեշ-
9 խը հաւատքէն դարձընել: Բայց
Սօղոս (որ Պօղոս ալ կ'ըսուի,)
Հոգւով Սրբով լեցուած՝ աչքերը
10 անոր վրայ տնկեց, Ու ըսաւ. Ո՛վ
ամէն խաբեբայութիւնով և ամէն
խորամանկութիւնով լեցուած Սա-
տանայի որդի՝ թշնամի բոլոր ար-
դարութեան, պիտի չդադարի՞ս
Տէրոջը շիտակ ճամբաները ծռելէն:
11 Իսկ հիմա Տէրոջը ձեռքը աճա քու
վրադ է. ու կոյր պիտի ըլլաս՝ ա-
տեն մը արևը չտեսնելով: Իսկ
իսկոյն անոր վրայ մէգ ու խաւար մը
( իջաւ. ու պտըտելով առաջնորդ
12 կը փնտռէր: Ան ատենը փոխա-
նորդ բդեշխը աս բաները որ տե-
սաւ՝ հաւատաց, մեծապէս զար-
մանալով Տէրոջը վարդապետու-
թեանը վրայ:
Իսկ Պօղոս ու իր ընկերները Պա- 13
փոսէն ելան, ու եկան Պամփիւ-
լիայի Պերգէն. բայց Յովհաննէս
անոնցմէ զատուելով՝ Երուսաղէմ
դարձաւ: Անոնք ալ Պերգէէն 14
գացին ու եկան Պիսիդիայի Ան-
տիոքը, և շաբաթ օրը ժողովա-
րանը մտնելով՝ նստան: Ու օրէն- 15
քը և մարգարէները կարդացուելէն
ետև՝ ժողովրդապետները մարդ ղըր-
կեցին իրենց ու ըսին, Մարդիկ
եղբայրներ՝ թէ որ դուք ժողովուր-
դին խօսելու յորդորական խօսք մը
ունիք, խօսեցէ՛ք: Ան ատենը 16
Պօղոս ոտքի վրայ կայնելով, ձեռքը
շարժեց ու ըսաւ, Ո՛վ Իսրայէ-
լացի մարդիկ՝ և դուք որ Աստուծմէ
կը վախնաք, մտիկ ըրէք: Աս Իս- 17
րայէլ ժողովուրդին Աստուածը մեր
հայրերը ընտրեց, ու ժողովուրդը
բարձրացուց Եգիպտոսի երկրին մէջ
պանդխտութեան ատենը, և բարձր
բազուկով զանոնք անկէ հանեց:
Ու քառասուն տարուան ժամանակի 18
չափ անապատին մէջ կերակրեց զա-
նոնք: Իսկ Քանանու երկրին մէջ 19
եօթը ազգ կործանելով, անոնց
երկիրը իրենց տուաւ որ ժառան-
գեն: Իսկ անկէ ետև չորս հարիւր 20
յիսուն տարիի չափ դատաւորներ
տուաւ անոնց մինչև Սամուէլ մար-
գարէն: Ու ետքը թագաւոր ու- 21
զեցին. և Աստուած Կիսի որդին
Սաւուղը տուաւ անոնց՝ Բենիա-
մինի ցեղէն մարդ մը, քառասուն
տարի: Ու երբոր զանիկայ փո- 22
խեց, Դաւիթը հանեց իրենց թա-
գաւոր, որուն համար վկայութիւն
տալով ըսաւ. Յեսսէի որդին Դա-
ւիթը գտայ իմ սրտիս հաճեմատ
մարդ, որ իմ բոլոր կամքս պիտի
կատարէ: Ասոր սերունդէն Աս- 23
տուած իր խոստմունքին պէս Իս-
րայէլին՝ Փրկիչ Յիսուսը հանեց.
Իսկ դեռ անիկայ իր գալուստը չեկ- 24
ած՝ Յովհաննէս առաջուց Իսրա-
յէլի բոլոր ժողովուրդին ապաշխա-

րութեան մկրտութիւնը քարոզեց ․
25 Ու երբոր Յովհաննէս իր ընթացքը
կը կատարէր , ըսաւ , Ո՞վ կը
կարծէք թէ եմ ․ ես Քրիստոսը
չեմ ; հապա անիկայ ահա իմ ե-
տեւէս կու գայ , որ ես արժանի չեմ
անոր ոտքերուն կօշիկները քակե-
26 լու ։ Մարդիկ եղբայրներ՝ Աբրա-
համի տոհմին որդիքը , ու անոնք
որ ձեր մէջը աստուածավախ են ,
ալ փրկութեան խօսքը ձեզի խրը-
27 կուեցաւ ։ Քանզի Երուսաղէմ
բնակողները և անոնց իշխանները
ոչ անիկայ ճանչցան , ոչ ալ մար-
գարէներուն ձայները , որ ամէն
շաբաթ օրերը կը կարդացուին ․
հապա զանոնք կատարեցին՝ զինքը
28 դատապարտելով ․ Եւ մահուան
պատճառ մըն ալ չգտած՝ Պիղա-
տոսէն խնդրեցին որ անիկայ սպան-
29 նուի ։ Ու երբոր անոր համար
բոլոր գրուած բաները կատարե-
ցին , փայտէն վար իջեցընելով՝
30 գերեզմանի մէջ դրին ․ Բայց Աս-
տուած անիկայ յարուց մեռելնե-
րէն ․ որ ինքը շատ օրեր երեւցաւ
31 անոնց , Որ իր հետը Գալիլեայէն
Երուսաղէմ ելեր էին , որոնք հիմա
անոր վկաներն են ժողովուրդին առ-
32 ջեւ ։ Մենք ալ ձեզի կը քարո-
զենք այն խոստումը որ հայրերուն
33 եղած էր , Որ զանիկայ Աստուած
կատարեց մեզի որ անոնց զաւակ-
ներն ենք՝ Յիսուսը յարուցանելով ,
ինչպէս որ երկրորդ սաղմոսին մէջն
ալ գրուած է , Դուն իմ Որդիս
34 ես , ես այսօր քեզ ծնայ ։ Իսկ
որ զանիկայ մեռելներէն յարուց ,
ու մէյմըն ալ ապականութիւն պի-
տի չտեսնէ , ասանկ կ'ըսէ թէ
Ձեզի պիտի տամ Դաւիթին հա-
ւատարիմ սուրբ խոստումները ։
35 Ուստի ուրիշ սաղմոսի մը մէջ ալ
կ'ըսէ , Քու Սուրբդ ապակա-
նութիւն տեսնել պիտի չտաս ։
36 Ինչու որ Դաւիթ իր դարուն մէջ
Աստուծոյ կամքը ծառայելով՝ մե-
ռաւ , ու իր հայրերուն քովը դը-
րուեցաւ և ապականութիւն տե-
37 սաւ ։ Բայց ան որ Աստուած յա-
րուց , ապականութիւն չտեսաւ ։

Ուրեմն յայտնի ըլլայ ձեզի՝ մարդիկ 38
եղբայրներ , որ ասոր միջոցովը ձեզի
մեղաց թողութիւն կը քարոզուի ․
Եւ ան ամէն բաներէն՝ որ Մովսէսին 39
օրէնքովը չկրցաք արդարանալ ․ ա-
սով՝ ամէն ով որ հաւատայ , կ'ար-
դարանայ ։ Արդ զգուշացէք որ 40
չըլլայ թէ ձեր վրայ գայ ան որ մար-
գարէներուն մէջ ըսուած է , Նա- 41
յեցէք արհամարհողներ՝ և զարմա-
ցէք ու ոչնչացէք ․ Ինչու որ
գործ մը պիտի ընեմ ձեր օրերուն
մէջ , անանկ գործ մը՝ որ եթէ
մէկը ձեզի պատմէ , պիտի չհաւա-
տաք ։

Ու երբոր անկէ դուրս ելան , 42
կ'աղաչէին որ հետեւեալ շաբաթ
ալ նոյն խօսքերը իրենց խօսուի ։
Եւ ժողովուրդը երբոր արձակուեցաւ , 43
Հրեաներէն ու նորահաւատ բարե-
պաշտներէն շատերը Պօղոսին ու
Բառնաբասին ետեւէն կ'երթային ․
որոնք կը խօսէին անոնց հետ , ու
կը յորդորէին զանոնք , որ միշտ
Աստուծոյ շնորհքին մէջը հաստատ
կենան ։ Եւ հետեւեալ շաբաթ 44
օրը գրեթէ բոլոր քաղաքը ժողո-
վուեցաւ Աստուծոյ խօսքը լսելու ։
Իսկ Հրեաները երբոր տեսան այն 45
բազմութիւնը , նախանձով լե-
ցուեցան , ու Պօղոսի ըսուածնե-
րուն դէմ կը խօսէին հակառակե-
լով ու հայհոյութիւն ընելով ։
Ան ատենը Պօղոս և Բառնաբաս 46
համարձակեցան ու ըսին , Պէտք
էր որ առաջ ձեզի խօսուի Աստու-
ծոյ խօսքը , բայց որովհետև դուք
անիկայ կը մերժէք , ու ինքզինքնիդ
յաւիտենական կենաց արժանի չէք
սեպեր , ահա մենք հեթանոսնե-
րուն կը դառնանք ։ Ինչու որ 47
Տէրը ասանկ պատուիրած է մեզի ․
Քեզ հեթանոսներուն լոյս դրի ,
որ դուն փրկութեան պատճառ ըլ-
լաս մինչև երկրի ծայրերը ։ Ու 48
լսելով հեթանոսները կ'ուրախա-
նային , ու Աստուծոյ խօսքը կը
փառաւորէին ․ և որոնք որ յաւի-
տենական կենաց սահմանուած էին ,
հաւատացին ։ Ու Տէրոջը խօսքը 49
բոլոր գաւառը կը տարածուէր ․

50 Բայց Հրէաները գրգռեցին բարե-
պաշտ և պատուաւոր կիները ու
քաղաքին մեծերը, և Պօղոսին ու
Բառնաբասին վրայ հալածանք հա-
նելով՝ զանոնք իրենց սահման-
51 ներէն դուրս ըրին: Անոնք ալ
իրենց ոտքերուն փոշին անոնց դէմ
52 թօթվելով՝ Իկոնիոն եկան: Ու
աշակերտները ուրախութեամբ և
Հոգւով Սրբով կը լեցուէին:

## ԳԼ. ԺԴ

1 Ու եղաւ որ Իկոնիոնի մէջ անոնք
մէկտեղ Հրէաներուն ժողովա-
րանը մտան, և այնպէս խօսեցան
որ խիստ շատ Հրէաներ և Յոյներ
2 հաւատացին: Բայց չհաւատացող
Հրէաները գրգռեցին ու չարութեան
գրգռեցին հեթանոսներուն սիրտը
3 եղբայրներուն դէմ: Իսկ անոնք
շատ ժամանակ հոն կենալով՝ հա-
մարձակ կը քարոզէին Տէրոջմով,
որ իր շնորհաց խօսքին կը վկայէր,
և նշաններ ու հրաշքներ ընել կու
4 տար անոնց ձեռքովը: Իսկ քա-
ղաքին բազմութեանը մէջ երկպա-
ռակութիւն մը եղաւ. ոմանք Հր-
րէաներուն կողմէն եղան, ոմանք
5 ալ առաքեալներուն: Ու երբոր
հեթանոսները և Հրէաները իրենց
իշխաններովը միաբան յարձակեցան՝
զանոնք նախատելու ու քարկոծե-
6 լու, Իրենք իմանալով Լիկայոնա-
ցւոց քաղաքները փախան՝ Լիւստ-
րա ու Դերբէ և շրջակայ տե-
ղուանքը, ու հոն աւետարանը կը
քարոզէին:
7 Ու Լիւստրայի մէջ մարդ մը նըս-
տեր էր ոտքերովը տկար, իր մօրը
որովայնէն կաղ ծնած, որ բնաւ
8 քալած չէր: Անիկայ Պօղոսին
խօսքերը մտիկ կ'ընէր. ան ալ աչքը
անոր տնկելով և տեսնելով թէ
9 բժշկուելու հաւատք ունի, Բարձր
ձայնով մը ըսաւ, Ելիր ոտքերուդ
վրայ շիտակ կայնէ՛. ան ալ ցատ-
10 կելով կը քալէր: Ու ժողո-
վուրդները երբոր Պօղոսին ըրածը
տեսան՝ ձայներնին վերցընելով Լի-
կայոներէն ըսին, Աստուածները
մարդոց նմանութիւնով մեզի իջեր
են: Ու Բառնաբասին Դիոս կը 11
կանչէին, և Պօղոսին Հերմէս,
քանզի որ անիկայ էր գլխաւոր խօ-
սողը: Իսկ քաղաքին առջևը ե- 12
ղած Դիոսին քուրմը ցուլեր և
պսակներ բերելով դռներուն առ-
ջևը, բազմութեանը հետ մէկտեղ
կ'ուզէր որ զոհ ընէ: Բայց Բառ- 13
նաբաս ու Պօղոս առաքեալները
երբոր լսեցին, իրենց հանդերձները
պատռելով՝ դուրս ցատկեցին բազ-
մութեանը մէջ, կ'աղաղակէին
Ու կ'ըսէին, Մարդիկ՝ ինչո՞ւ հա- 14
մար ասոր բաները կ'ընէք. մենք ալ
ձեզի պէս կիրքեր ունեցող մարդիկ
ենք, ու կը քարոզենք ձեզի որ ասո
փուճ բաներէն կենդանի Աստուծոյն
դառնաք, որ ինքը ստեղծեց եր-
կինքը ու երկիրը և ծովը ու բոլոր
անոնց մէջի եղածները: Որ անց- 15
ցած դարերուն մէջ թող տուաւ
ամէն ազգերուն իրենց ճամբաները
երթալու: Թէպէտ ամենայնիւ ինք- 16
զինքը առանց վկայութեան չթո-
ղուց, բարերարութիւնով երկին-
քէն մեզի անձրևներ ու պտղաբեր
եղանակներ տալով, կերակուրնե-
րով և ուրախութիւնով մեր սիր-
տերը լեցնելով: Ու ասս բաները 17
ըսելով՝ հազիւ կրցան ժողովուրդ-
ները դադրեցնել, որ իրենց զոհ
չընեն:
Անկէ Անտիոքէն ու Իկոնիոնէն 18
Հրէաներ հասան, ու ժողովուրդ-
ները համոզեցին, և Պօղոսը քար-
կոծեցին ու քաղաքէն դուրս քա-
շեցին՝ կարծելով թէ մեռած է:
Բայց աշակերտները երբոր անոր 19
բոլորտիքը պատեցին, ելաւ քա-
ղաքը մտաւ. ու հետևեալ օրը
Բառնաբասին հետ մէկտեղ Դերբէ
ելաւ: Ու անոնք այն քաղաքին 20
մէջ աւետարանը քարոզելով, ու
շատերը աշակերտ ընելով՝ Լիւստ-
րա և Իկոնիոն և Անտիոք դար-
ձան, Աշակերտներուն սիրտերը հաս- 21
տատելով, և յորդորելով որ հաս-
տատ մնան հաւատքի մէջ. և կ'ը-
սէին թէ շատ նեղութիւններով
պէտք է մեզի Աստուծոյ թագաւո-
րութիւնը մտնել: Ու երբոր ա- 22

նոնց ամէն մէկ եկեղեցիին երէցներ
ձեռնադրեցին , ծոմապահութեամբ
աղօթք ընելով՝ զանոնք յանձնեցին
Տէրոջը՝ որուն հաւատացեր էին ։
23 Եւ Պիսիդիայի մէջէն պտըտելով
24 եկան Պամփիւլիա ։ Պերգէի մէջ
ալ Տէրոջը խօսքը խօսելէն ետև
25 Ատալիա իջան ։ Անկէ ալ նաւով
Անտիոք գացին , ուսկից որ Աստու-
ծոյ շնորհքին յանձնուած էին այն
գործին համար որ կատարեցին ։
26 Ու երբոր եկան , եկեղեցին մէկ-
տեղ ժողվելով՝ պատմեցին ինչ որ
Աստուած ըրեր էր իրենց հետ , և
որ հեթանոսներուն հաւատքի դուռ
27 բացեր էր ։ Ու հոն շատ ժամանակ
աշակերտներուն հետ կեցան ։

## ԳԼ. ԺԵ

1 Եւ մէկ քանիները Հրէաստանէն
իջած՝ եղբայրներուն կը սորվե-
ցընէին որ Եթէ Մովսէսին աւան-
դած սովորութեանը համեմատ չը-
թլփատուիք , չէք կրնար փրկուիլ ։
2 Ուստի Պօղոս և Բառնաբաս անոնց
դէմ շատ մը հակառակութիւն ու
վէճ ընելէն ետքը , վճռեցին որ
Պօղոս ու Բառնաբաս և մէկ քանի-
ներն ալ անոնցմէ՝ Երուսաղէմ ելլեն
առաքեալներուն ու երէցներուն աս
3 խնդրոյս համար ։ Անոնք ալ եկե-
ղեցիէն ճամբայ դրուած՝ Փիւնիկէէն
ու Սամարիայէն անցնելով , հեթա-
նոսաց դարձի գալը կը պատմէին ,
և մեծ ուրախութիւն կու տային
4 բոլոր եղբայրներուն ։ Ու երբոր
Երուսաղէմ հասան , եկեղեցիէն ու
առաքեալներէն և երէցներէն ընդու-
նուեցան , և պատմեցին ինչ որ
Աստուած ըրեր էր իրենց հետ ։
5 Փարիսեցւոց աղանդէն՝ հաւատա-
ցեալներէն ոմանք ելան՝ ու կ'ըսէին
Թէ Պէտք է թլփատել անոնք ու
պատուիրել որ Մովսէսի օրէնքը
պահեն ։
6 Եւ առաքեալները ու երէցները
ժողվուեցան աս բանիս վրայով խոր-
7 հելու ։ Եւ շատ վիճաբանութիւն
ըլլալէն ետև՝ Պետրոս ոտքի վրայ
ելաւ ու ըսաւ անոնց , Մարդիկ
եղբայրներ՝ դուք գիտէք որ առջի

օրերէն Աստուած զիս ընտրեց մեր
մէջէն , որ իմ բերնովս հեթանոս-
ները աւետարանի խօսքը լսեն ու
հաւատան ։ Եւ սրտագէտն Աս- 8
տուած վկայեց անոնց , Հոգին
Սուրբը տալով անոնց՝ ինչպէս որ
մեզի ալ ։ Եւ մէկ խտրութիւն 9
մը չըրաւ մեր ու անոնց մէջը , հա-
ւատքով անոնց սիրտերը մաքրե-
լով ։ Ուստի հիմա ինչո՞ւ Աս- 10
տուած կը փորձէք , աշակերտներուն
պարանոցին վրայ անանկ լուծ մը
դնելով , որ անիկայ ո՛չ մեր հայ-
րերը՝ ո՛չ ալ մենք կրցանք վերցը-
նել ։ Բայց կը հաւատանք որ Տէր 11
Յիսուսի շնորհքովը կը փրկուինք
մենք , ինչպէս որ անոնք ալ ։
Եւ բոլոր ժողովուրդը լուռ կե- 12
ցաւ , ու մտիկ կ'ընէր Բառնաբա-
սին ու Պօղոսին , որոնք կը պատ-
մէին թէ Աստուած ի՛նչ նշաններ
ու հրաշքներ ըրեր էր հեթանոսնե-
րուն մէջ իրենց ձեռքովը ։ Եւ ա- 13
նոնք խօսելնին կտրելէն ետև՝ Յա-
կոբոս պատասխան տուաւ ու ը-
սաւ , Մարդիկ եղբայրներ՝ ինծի
մտիկ ըրէք ։ Շմաւոն պատմեց 14
թէ Աստուած ինչպէս առաջ այ-
ցելութիւն ըրաւ , որ հեթանոս-
ներէն ժողովուրդ առնէ իր անուանը
համար ։ Եւ աս բանիս մարգա- 15
րէից խօսքերն ալ կը միաբանին ,
ինչպէս որ գրուած է , Անկէ ետև 16
պիտի դառնամ ու Դաւիթին
ինկած խորանը նորէն պիտի շինեմ ,
և անոր կործանուած տեղուանքը
նորէն պիտի շինեմ , և կանգնեմ
անիկայ . Որ մնացած մարդիկը Տէրը 17
փնտռեն , և բոլոր հեթանոսները՝
որոնց վրայ իմ անունս կոչուած է ,
կ'ըսէ Տէրը՝ որ աս ամէն բաները կ'ը-
նէ ։ Յայտնի է Աստուծոյ իր բոլոր 18
գործքերը աշխարհիս սկիզբէն հե-
տէ ։ Ասոր համար ես յարմար կը 19
դատեմ նեղութիւն չտալ անոնց
որ հեթանոսներէն Աստուծոյ կը
դառնան . Հապա թուղթ մը գը- 20
րել անոնց՝ որ ետ կենան կռոց պղը-
ծութիւններէն և պոռնկութենէ
ու խեղդուածէ և արիւնէ ։ Ին- 21
չու որ Մովսէս հին դարերէն 'ի վեր

ամէն քաղաքի մէջ զինքը քարոզող-
ներ ունի , և ժողովարաններու մէջ
ամէն շաբաթ օր կը կարդացուի ։
22 Այն ատենը առաքեալներուն ու
երէցներուն՝ բոլոր եկեղեցիին հետ
մէկտեղ աղէկ երևցաւ որ իրենցմէ
մարդիկ ընտրելով Անտիոք ղրկեն
Պօղոսին ու Բառնաբասին հետ ,
Բարսաբա մականուանեալ Յուդան
և Շիղան՝ որոնք գլխաւոր մարդիկ
23 էին եղբայրներուն մէջ ․ Ու անոնց
ձեռքովը թուղթ մը ղրկեցին այսպէս
գրուած ․

Առաքեալներ ու երէցներ և եղ-
բայրներ՝ Անտիոքի ու Ասորիքի և
Կիլիկիայի մէջ հեթանոսներէն եղած
24 եղբայրներուդ ողջո՜յն ։ Որովհետև
լսեցինք թէ ոմանք մեր մէջէն ելլե-
լով՝ ձեզ խօսքերով խռովեցուցեր
և ձեր անձերը խախտեր են ,
ըսելով թէ պէտք է թլփատուիլ
ու օրէնքը պահել , որ անոնց մենք
25 այսպէս չպատուիրեցինք ։ Մեզի
միաբանութեամբ ժողվուածներուս
աղէկ երևցաւ , որ մարդիկ ընտ-
րելով ձեզի ղրկենք մեր սիրելինե-
րուն Բառնաբասին ու Պօղոսին
26 հետ , Որոնք մեր Տէր Յիսուս Քրի-
ստոսի անուանը համար անձերնին
27 մատնած մարդիկ են ։ Ուստի ղրր-
կեցինք Յուդան և Շիղան , որ
իրենք ալ բերնով նոյն բաները
28 ձեզի զրուցեն ։ Ինչու որ աղէկ
երևցաւ Սուրբ Հոգիին ու մեզի
ալ ձեր վրայ աւելի բեռ չդնել ,
այս հարկաւոր բաներէս 'ի զատ ,
29 Որ ետ կենաք կուռքերու զոհուա-
ծէ և արիւնէ ու խեղդուածէ
և պոռնկութենէ ․ որ այս բաներէն
ինքզինքնիդ պահելով աղէկ պիտի
ընէք ։ Ո՛ղջ եղէք ։
30 Անոնք ալ ճամբայ դրուելով՝ Ան-
տիոք գացին , և ժողովուրդը մէկ-
տեղ ժողվելով թուղթը տուին ։
31 Ու երբոր կարդացին , ուրախացան
32 ան մխիթարութեանը վրայ ։ Իսկ
Յուդա ու Շիղա՝ որ իրենք ալ
մարգարէ էին , շատ խօսքերով
յորդորեցին եղբայրները՝ ու հաս-
33 տատեցին ։ Ու ատեն մը հոն կե-
նալէն ետև՝ եղբայրներէն խաղաղու-
թեամբ ճամբայ դրուեցան առա-
քեալներուն քով ։ Բայց 34
Շիղային աղէկ երևցաւ հոն մը-
նալ ։ Պօղոս ու Բառնաբաս ալ 35
Անտիոքի մէջ կը կենային , և ու-
րիշ շատերու հետ Տէրոջը խօսքը
կը սորվեցընէին ու կը քարոզէին ։
Ու քանի մը օրերէ ետև Պօղոս 36
ըսաւ Բառնաբասին , Դառնանք ու
այցելութիւն ընենք եղբայրներուն՝
ամէն մէկ քաղաքները , ուր որ Տէ-
րոջը խօսքը քարոզեցինք , ու տես-
նենք թէ ինչպէս են ։ Իսկ Բառ- 37
նաբաս կ'ուզէր որ Յովհաննէսն ալ
առնեն , որ Մարկոս կ'ըսուէր ․
Բայց Պօղոս արժան չսեպեց որ 38
Պամփիւլիայի մէջ իրենցմէ զա-
տուողը ու իրենց հետը գործի չե-
կողը հետերնին առնեն ։ Այսպէս 39
վէճերնին գժտութիւն մը եղաւ ,
մինչև որ իրարմէ զատուեցան ․
և Բառնաբաս առաւ Մարկո-
սը ու նաւով Կիպրոս գնաց ։ Պօ- 40
ղոս ալ Շիղան ընտրեց՝ ու ելաւ ,
եղբայրներէն Աստուծոյ շնորհացը
յանձնուելով , Ու Ասորիքի ու 41
Կիլիկիայի մէջ կը պտըտէր , ու
եկեղեցիները կը հաստատէր ։

## ԳԼ. ԺԶ.

Ու հասաւ Դերբէ ու Լիւստրա ․ 1
և ահա հոն աշակերտ մը կար
Տիմոթէոս անունով , որ հաւա-
տացեալ Հրեայ կնկան մը զաւակ
էր , և հայրը Յոյն էր ․ Որ Լիւստ- 2
րացի ու Իկոնացի եղբայրներէն
ալ բարի վկայուած էր ։ Պօղոս 3
ուզեց որ ասիկայ իր հետը ելլէ ,
և առաւ թլփատեց զանիկայ ան
տեղուանքը եղած Հրեաներուն հա-
մար , ինչու որ ամէնն ալ գիտէին
թէ անոր հայրը Յոյն էր ։ Ու 4
քաղաքներէն անցնելով , Երուսա-
ղէմ եղած առաքեալներէն ու երէց-
ներէն ապսպրուած հրամանները
կ'աւանդէին անոնց որ պահեն ։
Եկեղեցիներն ալ հաւատքի մէջ կը 5
հաստատուէին , և օրէ օր անոնց
թիւը կ'աւելնար ։
Ու Փռիւգիա ու Գաղատացւոց 6
կողմերը պտըտեցան ․ և Սուրբ

Հոգիէն արգիլուելով որ Ասիոյ
7 խօսքը Ասիայի մէջ չխօսին, Միւ-
սիայի կողմերը որ եկան, կը ջա-
նային դէպ 'ի Բիւթանիա երթալ.
և Յիսուսի Հոգին թող չտուաւ
8 անոնց: Եւ Միւսիայի քովէն անց-
9 նելով Տրովադա իջան: Եւ հա
գիշերը Պօղոսին տեսիլք մը երե-
ցաւ. Մակեդոնացի մարդ մը կայ-
ներ կ'աղաչէր անոր ու կ'ըսէր,
Մակեդոնիա անցիր, և օգնէ՛ մե-
10 զի: Ու երբոր այն տեսիլքը տե-
սաւ, շուտ մը ուզեցինք Մակեդո-
նիա ելլել, հասկընալով որ Տէրը
մեզ կը հրաւիրէ անոնց աւետարան
քարոզելու:
11 Ուստի նաւով Տրովադայէն ե-
լանք ու շիտակ Սամոթրակէ գա-
ցինք, ու հետևեալ օրը Նէապօ-
12 լիս. Եւ անկէ ալ Փիլիպպէ, որ
է Մակեդոնիայի այն մասին գլխաւոր
քաղաքը՝ կողոնիա. և այն քաղա-
13 քին մէջ քանի մը օր կեցանք. Ու
շաբաթ օրը քաղաքէն դուրս ելանք
գետեզերքին քովը՝ ուր որ սովորու-
թիւն ունէին աղօթք ընելու, ու
նստելով ժողվուած կիներուն կը
14 խօսէինք: Եւ Թիւատիր քաղա-
քէն ծիրանավաճառ կին մը՝ Լիդիա
անուն, որ աստուածավախ մէկ մըն
էր, մտիկ կ'ընէր. որուն սիրտը
Տէրը բացաւ Պօղոսին բաներուն
15 ուշադրութիւն ընելու: Ու երբոր
մկրտուեցաւ ինքը և իր տունը, ա-
ղաչեց ու ըսաւ. Թէ որ զիս Տէ-
րոջը հաւատացեալը կը սեպէք, իմ
տունս մտէք՝ բնակեցէք. և ստիպե-
լով տարաւ մեզ:
16 Ու եղաւ որ երբ մենք աղօթքի
կ'երթայինք, աղախին մը պատա-
հեցաւ մեզի որ հարցուկ ոգի ու-
նէր, որ գուշակութիւն ընելով՝ իր
տէրերուն շատ վաստակ կը բերէր:
17 Ասիկայ Պօղոսին և մեր ետևէն իյ-
նալով կը պոռար ու կ'ըսէր. Աս
մարդիկը Բարձրեալ Աստուծոյ ծա-
ռաներն են, որ մեզի փրկութեան
18 ճամբան կը քարոզեն: Եւ աս
բանը շատ օրեր կ'ընէր. իսկ Պօ-
ղոս վշտանալով՝ դարձաւ ու ըսաւ
այն ոգիին. Յիսուս Քրիստոսի ա-
նունովը հրաման կ'ընեմ՛ քեզի, ե-
լի՛ր ասկէ. և նոյն ժամուն ելաւ:
Երբոր տեսան անոր տէրերը որ ի- 19
րենց վաստակին յոյսը կորեցաւ,
Պօղոսը ու Շիղան բռնեցին ու հրը-
պարակը քաշեցին իշխաններուն
առջին: Եւ տարին զանոնք զօ- 20
րագլուխներուն քով ու ըսին. Աս
մարդիկները մեր քաղաքը խռով
կ'ընեն. իրենք հրեայ են, Եւ 21
անանկ սովորութիւններ կը քարո-
զեն, որ արժան չէ մեզի ընդունիլ,
ո՛չ ալ ընել, ինչու որ հռովմա-
յեցի ենք: Եւ բազմութիւնը ա- 22
նոնց վրայ դիզուեցաւ. զօրագլուխ-
ները ալ բռնութեամբ անոնց հան-
դերձները հանեցին, և հրաման ը-
րին որ զանոնք ծեծեն. Եւ անոնց 23
շատ վէրքեր տալէն ետև բանտը
դրին, պատուիրելով բանտապետին
որ զգուշութեամբ պահէ զանոնք:
Ան ալ անանկ հրաման առնելով՝ 24
զանոնք ներսի բանտը դրաւ ու
ոտքերնին կոճղի մէջ ամրցուց:
Եւ կէս գիշերին Պօղոս ու Շի- 25
ղա աղօթք կ'ընէին և զԱստուած
կ'օրհնէին, ու բանտարկեալներն ալ
անոնց մտիկ կ'ընէին: Եւ յան- 26
կարծակի մեծ շարժ մը եղաւ, ա-
նանկ որ բանտին հիմերը սասանե-
ցան, և անմիջապէս բոլոր դռները
բացուեցան, ու ամենուն կապերը
արձակուեցան: Եւ բանտապետը 27
երբոր արթնցաւ ու բանտին դըռ-
ները բացուած տեսաւ, թուրը
քաշեց և ինքզինքը պիտի սպան-
նէր, կարծելով թէ կապուածները
փախեր են: Բայց Պօղոս բարձր 28
ձայնով կանչեց ու ըսաւ. Դուն
քու անձիդ վնաս մը մի՛ ըներ,
ինչու որ ամէնքս ալ հոս ենք: Եւ 29
անիկայ ճրագ մը ուզեց ու ներս
վազեց, և դողալով Պօղոսին ու
Շիղային առջևը ինկաւ. Եւ ա- 30
նոնք դուրս բերելով ըսաւ. Տէ-
րե՛ր, ինծի ի՞նչ պէտք է ընել, որ
փրկուիմ: Անոնք ալ ըսին. Հա- 31
ւատա՛ Տէր Յիսուս Քրիստոսին,
ու պիտի փրկուիս դուն՝ և քու
տունդ: Եւ Տէրոջը խօսքը խօսե- 32
ցան անոր, ու այն ամենուն որ իր

33 տանը մէջն էին ։ Նոյն ատեն զա-
նոնք գիշերուան նոյն ժամուն ու
անոնց վէրքերը լուաց, և շուտ մը
մկրտուեցաւ ինքը ու բոլոր իրեն-
34 ները ։ Նաև զանոնք իր տունը տա-
նելով, անոնց առջևը սեղան դրաւ,
և բոլոր տունովը ուրախ եղաւ՝ Աս-
35 տուծոյ հաւատալով ։ Եւ երբոր
առտու եղաւ, զօրագլուխները խըր-
կեցին սպասաւորները ու ըսին,
36 Արձակէ այն մարդիկը ։ Բանտա-
պետն ալ այն խօսքերը Պօղոսին
պատմեց թէ Զօրագլուխները
խրկեցին որ արձակուիք. ուստի
հիմա ելէք և խաղաղութեամբ գա-
37 ցէք ։ Բայց Պօղոս ըսաւ անոնց,
Մեզ յայտնապէս ծեծելով՝ որ չդա-
տապարտուած Հռովմայեցի մար-
դիկ ենք, բանտը դրին, ու հիմա
գաղտուկ կը հանեն մեզ. ատանկ
չէ, հապա թող իրենք գան ու
38 մեզ հանեն ։ Նաև սպասաւորները
զօրագլուխներուն պատմեցին այն
խօսքերը. անոնք ալ երբոր լսե-
ցին թէ Հռովմայեցի են, վախ-
ցան, ու եկան քաղցրութեամբ
39 խօսեցան անոնց հետ. Նաև դուրս
հանելով՝ կ՚աղաչէին որ այն քաղա-
40 քէն ելլեն. Անոնք ալ բանտէն
ելլելով Լիդիային տունը մտան,
ու եղբայրները տեսնելով մխիթա-
րեցին զանոնք և գացին։

ԳԼ. ԺԷ.

1 Եւ Ամփիպօլիսէն ու Ապողոնիա-
յէն պտըտելով Թեսաղոնիկէ
եկան, ուր էր Հրէաներուն ժո-
2 ղովարանը ։ Պօղոս ալ իր սովո-
րութեանը պէս անոնց մէջը մը-
տաւ, և երեք շաբաթ օր խօսեցաւ
3 անոնց հետ գիրքերէն ։ Մեկնե-
լով և առջևնին դնելով թէ պէտք
էր Քրիստոսի չարչարուիլ, ու մե-
ռելներէն յարութիւն առնել, և
թէ Այն Յիսուսը որ ես ձեզի կը
քարոզեմ, ըսաւ, Քրիստոսն է ։
4 Նաև անոնցմէ ոմանք հաւատացին
ու Պօղոսի և Շիղայի հետ մի-
ացան. աստուածավախ Յոյներէն
ալ մեծ բազմութիւն, ու երևելի
կիններէն ալ [illegible]
քիչուոր չէին ։ Բայց չհաւատա- 5
ցող Հրէաները նախանձեցան, և
քանի մը դատարկապորտ անօրէն
մարդիկ առնելով՝ ամբոխ հանեցին
ու քաղաքը տակնուվրայ ըրին, և
Յասոնին տանը վրայ յարձակելով՝
կ՚ուզէին զանոնք ժողովքին առջևը
տանիլ ։ Եւ երբոր զանոնք չգը- 6
տան, Յասոնը ու մէկ քանի եղ-
բայրներ քաշելով տարին քաղա-
քապետներուն առջևը, կանչըռտա-
լով թէ Անոնք որ աշխարհը
տակնուվրայ ըրին, հոս ալ հասեր
են. Որոնք Յասոն ընդունեցեր է 7
և ասոնք ամէնը կայսրին հրաման-
ներուն դէմ կը գործեն, ըսելով թէ
ուրիշ թագաւոր մը կայ Յիսուս ։
Նաև խռովեցուցին ժողովուրդը ու 8
քաղաքապետները, որ աս բաները
կը լսէին ։ Բայց երբոր Յասոնէն 9
և ուրիշներէն երաշխաւորութիւն
առին, արձակեցին զանոնք ։ Իսկ 10
եղբայրները շուտ մը գիշերով Պօ-
ղոսը և Շիղան Բերիա խրկեցին.
որոնք հոն հասնելով՝ Հրէից ժողո-
վարանը գացին ։ Ասոնք Թեսա- 11
ղոնիկէի մէջ եղողներէն աւելի ազ-
նիւ մարդիկ էին, որ Աստուծոյ
խօսքը կատարեալ յօժարութեամբ
ընդունեցին, և ամէն օր Գիրքերը
կը քննէին թէ աս բաները ատանկ
է ։ Ուստի անոնցմէ շատերը հա- 12
ւատացին. և պատուաւոր Յոյն
կիններէն ու մարդոցմէն հաւա-
տացողներն ալ քիչուոր չէին ։ Բայց 13
երբոր իմացան Թեսաղոնիկեցի Հը-
րէաները թէ Բերիայի մէջ ալ Աս-
տուծոյ խօսքը քարոզուեցաւ Պօ-
ղոսէն, հոն ալ եկան ու ժողո-
վուրդը գրգռեցին ։ Ան ատենը 14
եղբայրները շուտ մը Պօղոսը խըր-
կեցին որ մինչև ծովեզերքը եր-
թայ. բայց Շիղա ու Տիմոթէոս
հոն մնացին ։ Նաև անոնք որ Պօ- 15
ղոսը կը տանէին, մինչև Աթէնք
բերին զանիկայ. և իրմէն հրաման
առնելով Շիղային ու Տիմոթէո-
սին համար որ շուտով իրեն գան՝
գացին ։

Նաև Պօղոս Աթէնքի մէջ անոնց 16
սպասելով՝ իր հոգին անհանգիստ

էր նորսի՝ դէն , վասն զի քաղաքը
բոլորովին կռապաշտութեան մէջ
17 ընկղմած կը տեսնէր ։ Ուստի ժո-
ղովարանին մէջ կը խօսէր Հրեա-
ներուն ու բարեպաշտ մարդոց , և
ամէն օր հրապարակներուն մէջ ա-
18 րոնց որ պատահէր ։ Եւ Էպիկու-
րեան և Ստոյիկեան փիլիսոփանե-
րէն մէկ քանիները իրեն հետ հա-
կաճառութիւն կ'ընէին . և ոմանք
կ'ըսէին , Աս սերմնաքաղը ի՞նչ
ըսել կ'ուզէ . ուրիշներն ալ կ'ըսէ-
ին , Կ'երևի թէ քանի մը օտար աս-
տուածներու քարոզիչ է . ինչու
որ Յիսուսը ու յարութիւնը կ'ա-
19 ւետարանէր անոնց ։ Եւ առին
զանիկայ Արիսպագոս տարին , ու
կ'ըսէին , Կրնա՞նք իմանալ թէ
ինչ է աս նոր վարդապետութիւ-
20 նը որ դուն կը զրուցես . Վասնզի
մեր ականջներուն օտար բաներ կը
բերես . ուրեմն կ'ուզենք իմանալ
21 թէ ինչ պիտի ըլլան անոնք . (Ին-
չու որ Աթենացիները ամէնն ալ ,
ու հոն կեցող օտարականները ու-
րիշ բանի չէին պարապեր , բայց
միայն նոր բան զրուցելու կամ լսե-
լու ։ )
22 Ան ատենը Պօղոս Արիսպագոսին
մէջը կայնեցաւ ու ըսաւ , Ո՛վ Ա-
թենացի մարդիկ՝ ամէն կողմանէ
խիստ կրօնասէր կը տեսնեմ ձեզ ։
23 Վասնզի ես պտըտելով ու ձեր պաշ-
տամունքը զննելով՝ մէկ սեղան մը
գտայ , որուն վրայ գրուած էր
ԱՆԾԱՆՕԹ ԱՍՏՈՒԾՈՅՆ .
ուստի անիկայ որ դուք չճանչնալով
կը պաշտէք , ես նոյնը ձեզի կը
24 քարոզեմ ։ Աստուած որ աշխարհը
ստեղծեց , և անոր մէջի բոլոր բա-
ները , անիկայ երկնից ու երկրի
Տէրն ըլլալով , ձեռագործ տա-
25 ճարներու մէջ կը բնակի , Ո՛չ ալ
մարդոց ձեռքովը կը պաշտուի՝ բա-
նի մը կարօտի պէս . քանզի ին-
քը կու տայ ամենուն կեանք ու
26 շունչ և ամէն բան . Եւ բոլոր
մարդոց ազգերը մէկ արիւնէ մը
ըրաւ՝ որ բոլոր երկրի երեսին
վրայ բնակին . և որոշուած ժա-
մանակներ հաստատեց , ու ա-
նոնց բնակութեան սահմանները ,
րը , զԱստուած փնտռելու , Որ 27
ըլլայ թէ խարխափելով զինքը
գտնեն . թէպէտև մեր ամէն մէկէն
ալ հեռու չէ . Ինչու որ անով 28
կ'ապրինք և կը շարժինք ու կանք ,
ինչպէս որ ձեր բանաստեղծներէն
մէկ քանիներն ալ ըսին , Վասնզի
մենք անոր ցեղէն ալ ենք ։ Ուստի 29
որովհետև Աստուծոյ ցեղէն ենք ,
պէտք չէ որ անանկ սեպենք թէ
Աստուածութիւնը նման ըլլայ ոս-
կիի կամ արծաթի կամ քարի ,
որ մարդուս վարպետութիւնովը ու
խելքովը քանդակուած է ։ Արդ 30
Աստուած տգիտութեան ատենները
անտես ընելով , հիմա ամէն տեղ
կը պատուիրէ բոլոր մարդոց որ
ապաշխարեն ։ Ինչու որ ինքը մէկ 31
օր մը սահմանեց , որուն մէջ աշ-
խարհս արդարութեամբ պիտի դա-
տէ ան մարդուն ձեռքովը , որն որ
որոշեց , ու ամենուն հաւատա-
ցուց՝ զանիկայ մեռելներէն յարու-
ցանելով ։
Երբոր մեռելոց յարութիւնը 32
լսեցին , ոմանք ծաղր կ'ընէին , ո-
մանք ալ կ'ըսէին ։ Ատ բանիդ
համար ուրիշ անգամ մտիկ պիտի
ընենք քեզի ։ Եւ այսպէս Պօղոս 33
անոնց մէջէն ելաւ ։ Սակայն քանի 34
մը մարդիկ իրեն յարելով հաւա-
տացին , որոնց մէջ էր Դիոնեսիոս
Արիսպագացին , և Դամարիս անու-
նով կնիկ մը , ու անոնց հետ ու-
րիշներ ալ ։

## ԳԼ . ԺԸ

Ասկէ ետև Պօղոս Աթենքէն զա- 1
տուելով Կորնթոս եկաւ , Եւ 2
մէկ Հրեայ մը գտաւ Ակիւղաս ա-
նունով ծննդեամբ Պոնտացի , որ
իր Պրիսկիղա կնկանը հետ նոր ե-
կեր էր Իտալիայէն , (Կղօդիոսին
հանած հրամանին համար որ բոլոր
Հրեաները Հռովմէն հեռանան ,)
ու անոնց քովը գնաց ։ Եւ որով- 3
հետև ինքը արհեստակից էր՝ անոնց
քովը կեցաւ և կը բանէր , ինչու
որ արհեստով վրանագործ էին ։
Եւ ամէն շաբաթ օրերը ժողովարա- 4

նին մէջ կը խօսէր, և Հրեաները
5 ու Յոյները կը համոզէր։ Ու երբ-
որ Շիղա և Տիմոթէոս Մակեդո-
նիայէն իջան, Պօղոսի հոգին ե-
ռանդով վառուած ըլլալով, Հը-
րեաներուն վկայութիւնով կը հաս-
տատէր թէ Յիսուս Քրիստոս
6 է։ Անոնք ալ երբոր դէմ կեցան
ու կը հայհոյէին, ինքը հանդերձ-
ները թօթուելով ըսաւ անոնց,
Ձեր արիւնը ձեր գլուխը, ես ան-
պարտ եմ. ասկէ ետև հեթանոսա-
7 ներուն պիտի երթամ։ Ու անկէ
երթալով մտաւ մէկու մը տունը,
որուն անունը Յուստոս էր՝ աս-
տուածավախ մարդ մը, որուն տունը
8 ժողովարանին կից էր։ Ու ժո-
ղովրդապետը Կրիսպոս իր բոլոր
տունովը հաւատաց Տէրոջը. և
Կորնթացիներէն շատերը լսելով
9 հաւատացին ու մկրտուեցան։ Ու
գիշերը տեսիլքի մէջ Տէրը ըսաւ
Պօղոսին, Մի՛ վախնար՝ հապա
10 խօսէ՛ և լուռ մի՛ կենար, Ինչու
որ ես քեզի հետ եմ, և մէկը քեզի
դէմ պիտի չելլէ՝ քեզի վնաս մը
հասցընելու. քանզի աս քաղաքիս
մէջ ես շատ ժողովուրդ ունիմ։
11 Ու հոն տարի մը ու վեց ամիս կե-
ցաւ, ու Աստուծոյ խօսքը անոնց
մէջ կը սորվեցընէր։
12 Ու Աքայիայի փոխանորդ բը-
դեշխին Գաղլիոնին օրերը Հրեայք
միաբանելով՝ Պօղոսին դէմ ելան,
13 և զանիկայ ատեանը տարին, ըսե-
լով թէ Ասիկայ կը հրապուրէ
մարդիկ օրէնքէն դուրս Աստուած
14 պաշտելու։ Ու երբոր Պօղոս իր
բերանը բանալու պատրաստ էր,
Գաղլիոն ըսաւ Հրեաներուն, Թէ
որ անիրաւութեան մը կամ չար
գործքի մը համար ըլլար՝ ո՛վ Հը-
րեաներ, արժան էր ինծի որ ձեզի
15 մտիկ ընէի։ Բայց թէ որ վէճը
խօսքի ու անուններու և ձեր օրէն-
քին վրայով է, դուք ձեզմէն տե-
սէ՛ք. ինչու որ ես ասանկ բաներու
16 դատաւոր ըլլալ չեմ ուզեր։ Ու
17 զանոնք ատեանէն վռնտեց։ Ան
ատենը բոլոր Յոյները Սոսթենէս
ժողովրդապետը բռնեցին ու ա-
տեանին առջևը կը ծեծէին. և աս
բաներուս վրայով Գաղլիոն բնաւ
հոգ չէր ըներ։
Պօղոս ալ տակաւին շատ մը օ- 18
րեր հոն մնալէն ետքը՝ եղբայրներէն
հրաժարելով, նաւով դէպ 'ի Ասո-
րիս գնաց. ու իր հետն ալ Պրիս-
կիղա և Ակիւղաս, տարով Կենք-
րայի մէջ իր գլուխը խուզած, ին-
չու որ ուխտաւոր էր։ Ու Եփեսոս 19
որ հասաւ, անոնք հոն ձգեց, և
ինքը ժողովարանը մտնելով՝ Հը-
րեաներուն հետ կը խօսէր։ Ու 20
իրեն կ'աղաչէին որ ալ աւելի ժա-
մանակ իրենց քովը մնայ. բայց
յանձնառու չեղաւ. Հապա հրա- 21
ժարեցաւ անոնցմէ ըսելով, Պէտք
է որ անպատճառ աս առաջիկայ տօ-
նը Երուսաղէմի մէջ ընեմ. բայց
Աստուծոյ կամքովը նորէն ձեզի կը
դառնամ. ու Եփեսոսէն նաւով
ճամբայ ելաւ. Ու Կեսարիա հա- 22
նելով՝ Երուսաղէմ ելաւ, ու եկե-
ղեցիին բարև տուաւ, ու ետքը
իջաւ Անտիոք. Ու ատեն մը հոն 23
կենալէն ետև ելաւ, ու կարգով
Գաղատացւոց երկիրը և Փռիւգիա
կը պտըտէր, ու բոլոր աշակերտ-
ները կը հաստատէր։
Ու Ապողոս անունով Հրեայ մը, 24
ծննդեամբ Աղեքսանդրացի՝ ճարտա-
սան մարդ մը եկաւ հասաւ Եփե-
սոս. որ ինքը զօրաւոր էր սուրբ
գիրքերով։ Ասիկայ Տէրոջը ճամ- 25
բուն մէջ վարժուած էր, և ջերմ-
եռանդ հոգի ունենալով, կը խօ-
սէր ու կը սորվեցընէր ճշդութեամբ
Տէրոջը վրայով. բայց միայն
Յովհաննէսին մկրտութիւնը գի-
տէր։ Ասիկայ սկսաւ ժողովարա- 26
նին մէջ համարձակ խօսիլ. ու
երբոր Ակիւղաս ու Պրիսկիղա լսե-
ցին անկէ, ալ զանիկայ իրենց քո-
վը առին, և աւելի ճշդիւ Աստուծոյ
ճամբան անոր հասկցուցին։ Ու 27
երբոր անիկայ ուզեց Աքայիա եր-
թալ, եղբայրները քաջալերեցին
զանիկայ, ու գիր գրեցին ան տեղի
աշակերտներուն որ զանիկայ ըն-
դունին. որ հոն հասնելով՝ շատ
օգտակար եղաւ շնորհքով հաւա-

28 ատեաններուն. Որովհետեւ հրապա-
րակաւ սաստիկ կը յանդիմանէր
Հրեաները, սուրբ գիրքերէն ցու-
ցընելով թէ Յիսուսը Քրիստոս
է։

## ԳԼ. ԺԹ

1 Եւ եղաւ որ Ապողոս Կորնթոսի
մէջ էր, Պօղոս վերի կողմերը
պտըտելով Եփեսոս եկաւ. և քա-
2 նի մը աշակերտներ գտնելով, Ը-
սաւ անոնց, Երբոր հաւատացիք՝
Սուրբ Հոգին առի՞ք արդեօք.
անոնք ալ ըսին իրեն, Բայց մենք
լսած ալ չենք թէ Սուրբ Հոգի
3 կայ։ Եւ ըսաւ անոնց, Հապա
ինչո՞վ մկրտուեցաք. անոնք ալ
ըսին, Յովհաննէսին մկրտութիւ-
4 նովը. Պօղոս ալ ըսաւ, Յով-
հաննէս ապաշխարութեան մկրտու-
թիւնով մկրտեց, ժողովուրդին ը-
սելով թէ ան որ իրմէ ետքը պի-
տի գայ՝ անոր հաւատան, այսինքն
5 Քրիստոս Յիսուսի. Ու երբոր
աս լսեցին, Տէր Յիսուսի անու-
6 նովը մկրտուեցան։ Եւ Պօղոս
երբոր անոնց վրայ ձեռք դրաւ,
Սուրբ Հոգին անոնց վրայ եկաւ,
և լեզուներ կը խօսէին ու կը մար-
7 գարէանային. Եւ ան բոլոր մար-
դիկը տասուերկուքի չափ էին։
8 Ու ժողովարանը մտնելով՝ երեք
ամիս համարձակութեամբ Աստուա-
ծոյ թագաւորութեանը վրայով կը
9 խօսէր ու կը համոզէր։ Իսկ
երբոր մէկ քանիները կը յամառէին
ու դէմ կը դնէին բազմութեան
առջեւը ան Ճամբան բամբասելով,
ինքը անոնցմէ հեռացաւ և աշա-
կերտները զատեց, ու ամէն օր
Տիւրան անուն մէկու մը դպրատու-
10 նը մէջ կը խօսէր. Եւ աս երկու
տարի քշեց՝ մինչև որ բոլոր Ասիայի
մէջ բնակող Հրեաները ու Յոյ-
11 ները Տէրոջը խօսքը լսեցին. Եւ
Աստուած նշանաւոր հրաշքներ կ'ը-
12 նէր Պօղոսին ձեռքովը. Այնպէս որ
անոր մարմինէն թաշկինակներ ու
գոգնոցներ կը տանէին հիւանդնե-
րուն, և իրենց ցաւերէն կը բժշ-
կուէին, ու չար ոգիները կ'ելլէին։

Բայց աստանդական Հրեաներէն 13
մէկ քանիները որ երդմնեցուցիչ
էին, յանդգնեցան Տէր Յիսուսի
անունը կանչել անոնց վրայ որոնք
չար ոգիներ ունէին, և կ'ըսէին,
Ձեզ կ'երդմնցընենք Յիսուսով,
ան որ Պօղոս կը քարոզէ։ Եւ 14
աս բանը ընողները Սկեւա անուն
Հրեայ քահանայապետի մը եօթը
որդիքն էին։ Իսկ չար ոգին պա- 15
տասխան տուաւ ու ըսաւ, Յի-
սուսը կը ճանչնամ ու Պօղոսը գի-
տեմ, բայց դուք ո՞վ էք։ Եւ 16
ան մարդը որուն ներսի դին էր չար
ոգին, անոնց վրայ ցատկելով՝
բռնեց զանոնք ու յաղթեց, մինչև
որ ան տունէն մերկ ու վիրաւո-
րուած դուրս փախան։ Եւ աս 17
բանը Եփեսոսի մէջ բնակող բոլոր
Հրեաներուն ու Յոյներուն յայտնի
եղաւ. և անոնց ամենուն վրայ վախ
մը ինկաւ, ու Տէր Յիսուսի ա-
նունը կը մեծարուէր։ Եւ հա- 18
ւատացեալներէն շատերը կու գա-
յին, ու կը խոստովանէին ու կը
պատմէին իրենց ըրածները։ Եւ 19
կախարդութեան հետեւողներուն շա-
տերը գիրքերնին մէկտեղ բերելով՝
ամենուն առջեւը կ'այրէին. և ա-
նոնց գինը հաշուեցին ու յիսուն
հազար արծաթ դահեկան գտան։
Այսպէս Տէրոջը խօսքը մեծապէս 20
կ'աճէր և կը զօրանար։

Ու երբոր աս բաները լմնցան, 21
Պօղոս միտքը դրաւ որ Մակեդո-
նիայէն ու Աքայիայէն պտըտելով՝
Երուսաղէմ երթայ. ու կ'ըսէր
Թէ հոն երթալէս ետքը պէտք է
ինծի որ Հռոմն ալ տեսնեմ։ Եւ 22
իրեն սպասաւորութիւն ընողներէն
երկուքը՝ Տիմոթէոսը ու Երաստոսը
խրկեց Մակեդոնիա, ու ինքը ա-
տեն մըն ալ Ասիայի մէջ կեցաւ։

Եւ ան ատենները շատ խռովու- 23
թիւն եղաւ Տէրոջ Ճամբուն հա-
մար։ Որովհետեւ Դեմետրիոս անու- 24
նով արծաթագործ մը Արտեմիսին
փոքրիկ տաճարներ կը շինէր ար-
ծաթէ, ու քիչ շահ չէր բերեր
վարպետներուն. Որոնք ասիկայ 25
մէկտեղ ժողվեց նոյն արհեստին

բանուորներուն հետ, ու ըսաւ.
Մարդի՛կ, դուք գիտէք որ աս գոր-
26 ծէս է մեր շահը. Ու կը տեսնէք
ու կը լսէք որ աս Պօղոսը չէ՛ թէ
միայն Եփեսացւոց, հապա գրեթէ
բոլոր Ասիացւոց շատ ժողովուրդ-
ները համոզելով՝ մտքերնին դար-
ձուց, ըսելով թէ Ձեռքով շի-
27 նուածները աստուածներ չեն։ Աս-
տի վտանգ կայ որ չէ՛ թէ միայն աս
մեր կողմը պիտի նախատուի, հա-
պա մեծ աստուածուհւոյն Արտեմի-
սին տաճարն ալ ոչինչ պիտի սե-
պուի, և անոր մեծափառութիւնը
պիտի խափանուի, որն որ բոլոր
Ասիա ու աշխարհք կը պաշտեն։
28 Ու երբոր ասոր լսեցին, բարկու-
թեամբ լեցուած կը կանչուըռտէին
ու կ՚ըսէին, Մեծ է Եփեսացւոց
29 Արտեմիսը։ Ու բոլոր քաղաքը
խռովութեամբ լեցուեցաւ. և յա-
փըշտակելով Գայիոս ու Արիստար-
քոս Մակեդոնացիները՝ Պօղոսին
ճանապարհորդակիցները, ամէնը
30 մէկէն թէատրոնը վազեցին։ Իսկ
Պօղոս երբոր ուզեց ժողովուրդին
մէջը մտնել, աշակերտները թող
31 չտուին զինքը։ Ասիապետներէն
ալ ոմանք որ իր բարեկամներն է-
ին, մարդ ղրկելով իրեն կ՚աղա-
չէին որ չհամարձակի թէատրոնը
32 երթալու։ Աստի մէկը մէկ կերպ
ու միւսը ուրիշ կերպ բան կը
կանչուըռտէին. ինչու որ ժողովքը
շփոթութեան մէջ էր, և շատերը
չէին գիտեր թէ ինչ բանի համար
33 ժողվուած են։ Ու բազմութեանը
մէջէն առաջ բերին Աղեքսանդրոսը,
որն որ Հրեայք առաջ քշեցին.
Աղեքսանդրոս ալ ձեռքը շարժելով՝
կ՚ուզէր որ ժողովուրդին պատաս-
34 խան տայ։ Իսկ երբոր գիտցան
թէ անիկայ Հրեայ է, ամէնքը
մէկ բերան եղած՝ երկու ժամու չափ
կը կանչըռտէին. Թէ Մեծ է Ե-
35 փեսացւոց Արտեմիսը։ Սակայն
ատենադպիրը բազմութիւնը հան-
դարտեցընելով՝ ըսաւ, Ո՛վ Եփե-
սացի մարդիկ, ո՞ր մարդն է որ չը-
գիտնայ թէ Եփեսացւոց քաղաքը
մեծ Արտեմիսին և Դիոսէն ինկած
կուռքին տաճարին պաշտօնեան է։
Ուրեմն աս որ անվիճելի բան մըն 36
է, պէտք է ձեզի հանդարտ կենալ,
և յանդգնութեամբ բան մը չընել։
Վասնզի դուք աս մարդիկը հոս բե- 37
րիք, որոնք ո՛չ տաճար կողոպտողներ
են, ո՛չ ալ ձեր աստուածուհւոյն
հայհոյանք ըրեր են։ Աստի թէ 38
որ Դեմետրիոս և իր հետը եղած
վարպետները մէկու մը հետ բան մը
ունին, դատի օրեր կան ու փո-
խանորդ դատաւորներ կան, թող իրարու
դէմ ամբաստանութիւն ընեն.
Հապա թէ որ ուրիշ բաներու 39
համար է ձեր պահանջմունքը, օրի-
նաւոր ժողովքի մէջ թող որոշուի։
Ինչու որ մենք ալ աս օրուան եղա- 40
ծին համար իբրև խռովայոյզ մար-
դիկ ամբաստանուելու վտանգի մէջ
ենք, քանզի պատճառ մը չկայ ո-
րով կարող ըլլանք աս խառնամ-
բոխ բազմութեանը համար պա-
տասխան տալ։ Ու ասանկ ըսե-
լով՝ ժողովքը արձակեց։

ԳԼ. Ի

Ու աղմուկը դադարելէն ետև Պօ- 1
ղոս աշակերտները իրեն կան-
չեց, ու հրաժարական ողջոյն տա-
լով ելաւ որ Մակեդոնիա երթայ։
Ու ան կողմերը պտըտելէն ու 2
շատ խօսքերով զանոնք յորդորելէն
ետև՝ Յունաստան եկաւ։ Ու հոն ի- 3
րեք ամիս կենալէն ետքը, Հրեա-
ները իրեն դէմ նենգութեան խոր-
հուրդ ըրին՝ երբոր կ՚ուզէր Սուրիա
ելլել. անոր համար որոշեց Մա-
կեդոնիայի վրայէն դառնալ։ Ու 4
մինչև Ասիա իր հետը կ՚երթար
Բերիացի Պիւռոսի որդին Սոպատ-
րոս, և Թեսաղոնիկեցիներէն Ա-
րիստարքոս ու Սեկունդոս, և
Գայիոս Դերբեացին ու Տիմոթէո-
սը, և Ասիացիք Տիւքիկոս ու
Տրոփիմոս։ Ասոնք առաջ գացին 5
ու Տրովադայի մէջ մեզի կը սպա-
սէին։ Մենք ալ բաղարջակերաց 6
օրերէն ետև Փիլիպպէէն նաւեցինք,
և հինգ օրուան մէջ Տրովադա ե-
կանք անոնց քովը, ու հոն եօթը
օր կեցանք։

7 Եւ միաշաբթի օրը երբոր ժող-
վուեր էինք հաց կոտրելու , Պօղոս
անոնց կը քարոզէր , ինչու որ հե-
տեւեալ օրը ճամբայ պիտի ելլէր .
և խօսքը երկընցուց մինչև կէս գի-
8 շեր : Եւ շատ լապտերներ կային
այն վերի սենեակը՝ ուր որ մենք
9 ժողվուած էինք : Եւ մէկ երի-
տասարդ մը Եւտիքոս անուն պա-
տուհանին վրայ նստած՝ խորունկ
քնոյ մէջ մտեր էր . երբոր Պօղոս
խօսքը երկընցուց , անիկայ խորունկ
քնով բռնուած՝ երրորդ դստիկոնէն
վար ինկաւ , ու զանիկայ մեռած
10 վերցուցին : Եւ Պօղոս վար իջ-
նելով՝ անոր վրայ ինկաւ ու գրկեց
զանիկայ ու կ'ըսէր , Մի խռովիք ,
ինչու որ անոր հոգին իր մէջն է :
11 Եւ վեր ելլելով՝ հացը կոտրեց ու
կերաւ . ու երկար խօսելով մինչև
12 առտու , ետքը ելաւ գնաց : Եւ
այն պատանին ողջ բերին ու մե-
13 ծապէս մխիթարուեցան : Իսկ մենք
նաւը մտնելով ճամբայ ելանք դէպ
'ի Ասոն , որ անկէ Պօղոսը պիտի
առնէինք , ինչու որ անանկ ապըս-
պըրեր էր , որովհետև ինքը ցա-
14 մաքով պիտի երթար : Եւ երբոր
Ասոնի մէջ մեզի հանդիպեցաւ , ա-
ռինք անիկայ և Միտիլինէ եկանք :
15 Անկէ ալ նաւելով հետեւեալ օրը
Քիոսի դիմացը հասանք . և միւս
օրը Սամոս հասանք , ու գիշե-
րը Տրոգիլիոն կենալով՝ միւս օրը
16 Միլիտոս եկանք . Ինչու որ Պօղոս
միտքը դրեր էր որ նաւով անցնի
Եփեսոսի քովէն , որ չըլլայ թէ
Ասիայի մէջ ժամանակ անցընէ ,
որովհետև կ'աճապարէր որ եթէ կա-
րելի է իրեն , Պենտեկոստէին օրը
Երուսաղէմ ըլլայ :
17 Եւ Միլիտոսէն մարդ խրկեց Ե-
փեսոս ու եկեղեցիին երէցները կան-
18 չեց : Եւ երբոր իրեն եկան , ըսաւ
անոնց , Դուք գիտէք որ այն ա-
ռաջի օրէն հետէ որ ես Ասիա եկայ ,
ինտոր ձեր հետը վարուեցայ բոլոր
19 ժամանակը . Ամենայն խոնարհու-
թեամբ Տէրոջը ծառայելով , և շատ
արցունքով ու փորձութիւններով ,
որ Հրէից նենգութիւններէն ինծի
պատահեցան . Ինտոր վախնալով 20
ետ չկեցայ օգտակար բաներուն ըը-
նաւ մէկը ձեզի ցըուցելէն , ու ձեզի
հրապարակաւ և տուն մէջ սորվե-
ցընելէն . Վկայութիւն տալով 21
Հրէից և Յունաց ալ՝ դէպ 'ի
Աստուած ապաշխարութեան հա-
մար , ու մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսի վրայ եղած հաւատքին հա-
մար : Եւ հիմա ահա ես հոգւով 22
կապուած՝ Երուսաղէմ կ'երթամ ,
և հոն ինչ որ ինծի պիտի պատա-
հի՝ չեմ գիտեր . Միայն թէ Հո- 23
գին Սուրբ ամէն քաղաքի մէջ ինծի
կը վկայէ ու կ'ըսէ թէ կապեր ու
նեղութիւններ ինծի կը սպասեն :
Բայց ես բանի մը համար հոգ չեմ 24
ըներ , և իմ անձս պատուական չեմ
սեպեր , միայն թէ իմ ընթացքս
ուրախութեամբ կատարեմ , և այն
պաշտօնը՝ որ Տէր Յիսուսէն առի
Աստուծոյ շնորհացը աւետարանին
վկայ ըլլալու : Եւ հիմա ահա ես 25
գիտեմ որ ալ իմ երեսս պիտի չը-
տեսնէք դուք ամէնքդ , որ մէջեր-
նիդ պտըտեցայ Աստուծոյ թագա-
ւորութիւնը քարոզելով : Ասոր 26
համար այս օրս կը վկայեմ ձեզի , որ ես
անպարտ եմ ամենուն արիւնէն .
Ինչու որ ես չկեցայ Աստուծոյ բո- 27
լոր կամքը ձեզի յայտնելէն : Ու- 28
րեմն զգուշացէ՛ք ձեր անձերուն և
բոլոր հօտին , որուն վրայ Հոգին
Սուրբ ձեզ տեսուչ դրաւ՝ Աստու-
ծոյ եկեղեցին հովուելու , որն որ
իր արիւնովը ստացաւ : Քանզի 29
գիտեմ որ իմ զատուելէս ետքը ձեր
մէջը յափշտակող գայլեր պիտի
մտնեն , որ պիտի չխնայեն հօտին :
Եւ ձեզմէ ալ անանկ մարդիկ պիտի 30
ելլեն՝ որ ծուռ բաներ պիտի խօ-
սին , աշակերտները իրենց ետեւէն
քաշելու համար : Ասոր արթուն 31
կեցէք , և միտքերնիդ բերէք՝ որ
իրեք տարի գիշեր ու ցորեկ չդա-
դարեցայ ամէն մէկը արցունքով
խրատելէն : Եւ հիմա եղբայրներ՝ 32
կը յանձնեմ ձեզ Աստուծոյ ու
անոր շնորհացը խօսքին , որ կարող
է շինելու և բոլոր սրբուածներուն
հետ ձեզի ժառանգութիւն տալու :

33 Մէկու մը արծաթին կամ ոսկիին
34 կամ հանդերձին չցանկացայ. Դուք
ձեզմէ գիտէք որ ինծի և իմ հետս
եղողներուն պէտք եղածը աս ձեռ-
35 քերս հոգացին։ Ամէն բան ձեզի
ցուցուցի, թէ ասանկ պէտք է աշ-
խատիլ ու տկարներուն օգնու-
թիւն ընել, և միտք բերել Տէր
Յիսուսի խօսքը, որ ինքը ըսաւ,
Աւելի երանելի է տալը քան թէ
36 առնելը։ Եւ աս որ ըսաւ, անոնց
ամենուն հետ ծնկան վրայ գալով
37 աղօթք ըրաւ։ Ամէնքն ալ սաս-
տիկ կու լային, ու Պօղոսի պա-
րանոցին վրայ իյնալով զանիկայ կը
38 համբուրէին։ Ամենէն մանա-
ւանդ կը ցաւէր անոր խօսքին համար,
որ կ'ըսէր թէ ալ պիտի չտեսնեն
իր երեսը. և զանիկայ ճամբայ
դրին մինչև նաւը երթալով։

ԳԼ. ԻԱ

1 Եւ երբոր ելանք ու անոնցմէ զա-
տուեցանք՝ շիտակ նաւելով Կով
եկանք, և միւս օրը Հռոդոս, ու
2 անկէ Պատարա։ Եւ նաւ մը
գտանք որ Փիւնիկէ կ'երթար, ու
անոր մէջը մտնելով՝ ճամբայ ելանք։
3 Եւ Կիպրոս որ երևցաւ, զանիկայ
ձախ կողմերնիս թող տալով՝ դէպ
'ի Սիւրիա նաւեցինք և Տիւրոս
ելանք. ինչու որ նաւը հոն պիտի
4 թափէր իր բեռը։ Եւ աշակերտա-
ները գտնելով՝ եօթը օր հոն կե-
ցանք, որոնք Հոգիով կ'ը-
սէին Պօղոսին որ Երուսաղէմ չել-
5 լէ։ Եւ երբոր այն օրերը անցու-
ցինք, ելանք ու կ'երթայինք. ա-
մէնն ալ կնիկներով ու տղաքներով
մինչև քաղաքէն դուրս մեզ ճամբայ
դրին. և ծովուն եզերքը ծնկան
6 վրայ գալով՝ աղօթք ըրինք։ Եւ
իրարու հրաժարական ողջոյն տա-
լով՝ մենք նաւը ելանք, անոնք ալ
7 տեղերնին դարձան։ Իսկ մենք
Տիւրոսէն զատուելով և ծովու
ճամբորդութիւնը լմընցընելով Պը-
տղեմայիս հասանք, ու եղբայրնե-
րը բարևելով օր մը քովերնին կե-
8 ցանք։ Եւ հետևեալ օրը անկէ
ելանք ու Կեսարիա եկանք, և Փի-
լիպպոս աւետարանչին տունը մըտ-
նելով, որ ինքը եօթնէն մէկն
էր, անոր քովը կեցանք։ Անիկայ 9
չորս կոյս աղջիկ ունէր, որ մար-
գարէութիւն կ'ընէին։ Եւ հոն 10
շատ օրեր որ կեցանք, Հրէաս-
տանէն մարգարէ մը իջաւ Ագաբոս
անունով. Ու երբոր մեզի եկաւ, 11
Պօղոսին գօտին առնելով իր ձեռ-
քերը ու ոտքերը կապեց, և ը-
սաւ, Ասանկ կ'ըսէ Հոգին Սուրբ.
Էն մարդը՝ որունն է աս գօտին,
ասանկ պիտի կապեն Հրէաները
Երուսաղեմի մէջ, ու հեթանոս-
ներուն ձեռքը պիտի մատնեն։ Ու 12
երբոր աս լսեցինք, աղաչեցինք մենք
ալ և տեղացիք ալ որ Երուսա-
ղէմ չելլէ։ Իսկ Պօղոս պատաս- 13
խան տուաւ, Ի՞նչ կ'ընէք, ին-
չո՞ւ կու լաք ու իմ սիրտս կը
ճմլէք. քանզի ես չէ՛ թէ միայն
Երուսաղեմի մէջ կապուելու, հա-
պա նաև մեռնելու ալ պատրաստ
եմ Տէր Յիսուսի անուանը համար։
Եւ ինքը որ մտիկ չըրաւ, լուռ 14
կեցանք, ու ըսինք՝ Տէրոջը կամքը
թող ըլլայ։
Եւ այն օրերէն ետև պատրաստ- 15
ուելով Երուսաղէմ ելանք։ Կե- 16
սարացի աշակերտներէն ալ մէկ քա-
նիները մեր հետը եկան, և մեզ տա-
րին նախնի աշակերտի մը՝ Կիպրա-
ցի Մնասոնին, որուն քովը պիտի
կենայինք։ Ու երբոր Երուսաղէմ 17
մտանք, եղբայրները ուրախու-
թեամբ մեզ ընդունեցին։ Եւ 18
հետևեալ օրը Պօղոս մեզի հետ
Յակոբոսին քովը գնաց, ու բոլոր
երէցներն ալ եկան։ Եւ զանոնք 19
բարևելով մի ըստ միոջէ կը պատ-
մէր ինչ որ Աստուած հեթանոսնե-
րուն մէջը ըրաւ իր ծառայութիւ-
նովը։ Անոնք ալ լսելով փառք 20
կու տային Տէրոջը. և ըսին իրեն,
Կը տեսնե՞ս եղբայր՝ քանի՛ բիւրա-
ւոր հաւատացեալ Հրէաներ կան,
ու ամէնն ալ օրէնքին նախանձաւոր
են։ Բայց քու վրայովդ իմացան 21
թէ դուն բոլոր հեթանոսներուն
մէջ եղած Հրէաներուն Մովսէսէն
ապստամբիլ կը սորվեցընես, ը-

սելով որ տղաքնին չթլփատեն , և
սովորութիւններուն համեմատ չվա-
22 րուին : Արդ ի՞նչ պիտի ըլլայ .
անշուշտ բազմութիւն պիտի ժող-
վուի ; ինչու որ պիտի լսեն թէ ե-
23 կեր ես : Աւստի աս բանը ըրէ որ
քեզի կ'ըսենք . Մեր քովը չորս
մարդ կայ , որոնք իրենց վրայ ուխտ
24 դրած են . Անոնք առ՝ իրենց հետը
մաքրուէ , և անոնց համար ծախք
ըրէ , որ իրենց գլուխը ածիլեն .
որպէս զի ամէնն ալ գիտնան թէ
քու վրայովդ իմացած բաներնին
ոչինչ է , հապա դուն ալ ձեր հետը
կը քալես օրէնքը պահելու մէջ :
25 Բայց հաւատքի եկող հեթանոսնե-
րուն համար մենք թուղթ խրկե-
ցինք՝ ինչպէս որ որոշեցինք , որ ա-
նոնք բնաւ սանկ բաներ չպահեն .
միայն թէ զգուշանան կուռքերու զո-
հուածէ ու արիւնէ . և խեղդուա-
26 ծէ ու պոռնկութենէ : Ան ատե-
նը Պօղոս ան մարդիկը առաւ , ու
հետեւեալ օրը անոնց հետ մաք-
րուած՝ տաճարը մտաւ , մաքրու-
թեան օրերը լմննալը ցուցընելու
համար , մինչև որ անոնց ամէն մէ-
կուն համար պատարագ մատուցուե-
ցաւ :
27 Ու երբոր եօթը օրերը լմննալու
վրայ էին , Ասիացի Հրեաները զա-
նիկայ տաճարին մէջը տեսնելով՝ բո-
լոր բազմութիւնը խռովեցուցին ,
և անոր ձեռք զարկած՝ կը կան-
28 չուըռտէին . Իսրայէլացի՛ մարդիկ՝
օգնութեան հասէք . աս ան մարդն
է՝ որ ամէն տեղ ժողովուրդին և
օրէնքին ու աս տեղին դէմ բան
կը սորվեցընէ ամենուն . մինչև որ
տաճարին մէջը Յոյներ ալ մտցուց ,
29 և աս սուրբ տեղը պղծեց . ( Ինչու
որ առաջուց Եփեսացի Տրոփիմոսը
իրեն հետ քաղաքին մէջը տեսեր
էին , և կը կարծէին թէ Պօղոս
30 զանիկայ տաճարը մտցուց . ) Ու
բոլոր քաղաքը շարժեցաւ , և ժո-
ղովուրդը դիմուեցաւ , ու բռնեցին
Պօղոսը տաճարէն դուրս քաշեցին .
և շուտ մը դռները գոցուեցան :
31 Ու երբոր անոնք կ'ուզէին անիկայ
մեռցնել , լուր հասաւ գունդին
հազարապետին թէ բոլոր Երուսա-
ղէմ իրար անցեր է : Ան ալ ան- 32
միջապէս զինուորներ և հարիւրա-
պետներ առած՝ անոնց վրայ վազեց .
անոնք ալ հազարապետը ու զի-
նուորները տեսնելով՝ Պօղոսը ծե-
ծելէն դադարեցան : Ան ատենը 33
հազարապետը մօտենալով՝ բռնեց
զանիկայ , և հրաման ըրաւ որ կըր-
կին շղթայով կապեն . ու կը հար-
ցընէր թէ անիկայ ո՞վ է ու ի՞նչ
ըրեր է : Ու բազմութեանը մէ- 34
ջէն մէկը՝ մէկ կերպ՝ ու միւսը ու-
րիշ կերպ բան կը կանչուըռտէին .
իսկ երբոր չկրցաւ ան շփոթութե-
նէն ստոյգը գիտնալ , հրաման ը-
րաւ որ զանիկայ բերդը տանին :
Ու երբոր սանդուխը հասաւ , ա- 35
նանկ պատահեցաւ որ զինուորները
վեր վերցընեն զանիկայ՝ ժողովուրդին
բռնութեանը համար . Ինչու որ 36
ժողովուրդին բազմութիւնը ետևէն
կ'երթար , ու կ'ըսէին , Վերցո՛ւր
զանիկայ : Ու երբոր Պօղոս բերդը 37
մտնելու վրայ էր , հազարապետին
ըսաւ , Արդեօք կարելի՞ է որ քեզի
բան մը խօսիմ : Ան ալ ըսաւ ,
Յունարէն գիտե՞ս . Չէ՞ որ դուն 38
ան Եգիպտացին ես , որ աս օրերէս
առաջ չորս հազար սրիկայ մարդիկ
ապստամբեցուցիր , ու անապատը
հանեցիր : Պօղոս ալ ըսաւ , Ես 39
Հրեայ մարդ մըն եմ Կիլիկիոյ
Տարսոնէն , չէ՛ թէ անանուն քաղա-
քի մը քաղաքացի , ու կ'աղաչեմ
քեզի՝ ինծի հրաման տուր որ ժողո-
վուրդին խօսիմ :
Ու երբոր անիկայ հրաման տուաւ , 40
Պօղոս սանդուխին վրայ կայնելով՝
ձեռքը շարժեց ժողովուրդին , ու
երբոր աղէկ մը լռութիւն եղաւ ,
Եբրայական լեզուով խօսեցաւ ա-
նոնց , ու ըսաւ ,

## ԳԼ . ԻԲ

Մարդիկ եղբայրներ և հայրեր՝ ին- 1
ծի՛ մտիկ ըրէք որ հիմա ձեզի
պատասխան կու տամ . (Երբոր 2
լսեցին որ Եբրայական լեզուով կը
խօսէր իրենց , ալ աւելի լուռ կե-
ցան . Ու անիկայ ըսաւ ,) Ես 3

Հրեայ մարդ մըն եմ՝ Կիլիկիոյ Տար-
սոնին մէջ ծնած՝ և աս քաղաքիս
մէջ Գամաղիէլին ոտքը մեծցած,
ու մեր հայրենի օրէնքին ճշգրտութեանը
պէս կրթուած, նախանձաւոր էի
Աստուծոյ՝ ինչպէս որ այսօր դուք
4 ամէնքդ էք ։ Որ ես էրիկ մարդիկ
ու կնիկ մարդիկ կապելով, ու
բանտերու մատնելով աս ճամբան
5 հալածեցի մինչև 'ի մահ ։ Ինչպէս
որ քահանայապետն ալ կը վկայէ
ինծի համար՝ և բոլոր ծերակոյտը ։
որ իրենցմէ թուղթեր ալ առնելով
եղբայրներուն՝ Դամասկոս կ'երթա-
յի, որ հոն եղածներն ալ կա-
պուած Երուսաղէմ բերեմ որ
6 պատժուին ։ Ու եղաւ որ երբ
կ'երթայի ու Դամասկոսին մօտե-
ցայ, կէս օրուան դէմ յանկարծա-
կի երկինքէն մեծ լոյս մը փայլա-
7 տակեց իմ բոլորտիքս ։ Ու գետինը
ինկայ, ու ձայն մը լսեցի որ ինծի
կ'ըսէր ։ Սաւուղ՝ Սաւուղ, ին-
8 չո՞ւ զիս կը հալածես ։ Ես ալ
պատասխան տուի թէ Դուն ո՞վ
ես՝ Տէր ։ Ան ալ ինծի ըսաւ ։ Ես
Յիսուս Նազովրեցին եմ, որ դուն
9 կը հալածես ։ Բայց անոնք որ իմ
հետս էին՝ լոյսը տեսան, ու վախով
լեցուեցան, սակայն ինծի խօսողին
10 ձայնը չլսեցին ։ Ու ըսի, Ի՞նչ
ընեմ՝ Տէր ։ և Տէրը ինծի ըսաւ ։
Ելի՛ր գնա Դամասկոս, ու հոն
քեզի պիտի զրուցուի ան ամէն բա-
ներուն համար, որ սահմանուած է
11 որ ընես ։ Ու երբոր չէի տեսներ
ան լոյսին փառքէն, հետս եղող-
ները ձեռքէս բռնած՝ Դամասկոս
12 մտայ ։ Ու Անանիա անուն մարդ
մը՝ օրէնքին համեմատ աստուածա-
վախ, ու Դամասկոս բնակող բոլոր
13 Հրեաներէն բարի վկայուած, Ինծի
եկաւ, ու քովս կայնելով ինծի ը-
սաւ ։ Սաւուղ եղբայր, վեր նա-
14 յէ ։ Ես ալ նոյն ժամուն վեր
նայեցայ իրեն ։ և անիկայ ըսաւ ։
Մեր հայրերուն Աստուածը առա-
ջուց քեզ ընտրեց, որ իր կամքը
ճանչնաս ու ան Արդարը տեսնես,
15 և անոր բերնէն ձայն լսես ։ Վասն զի
բոլոր մարդոց առջև անոր վկայ
պիտի ըլլաս ան բաներուն համար,
որ տեսար ու լսեցիր ։ Ու հիմա՝ 16
ալ ի՞նչ կ'ուշանաս ։ Ելի՛ր մկրը-
տուէ ու մեղքերդ լուա՛ անոր ա-
նունը կանչելով ։ Ու եղաւ որ 17
երբոր Երուսաղէմ դարձայ՝ ու տա-
ճարին մէջ աղօթք կ'ընէի, մտքի
յափշտակութիւն մը եկաւ վրաս,
Ու զինքը տեսայ, որ ինծի կ'ըսէր ։ 18
Աճապարէ՛ շուտով Երուսաղէմէն
ելի՛ր ։ Ինչու որ քու ինծի համար
ըրած վկայութիւնդ պիտի չընդու-
նին ։ Ես ալ ըսի ։ Տէ՛ր՝ իրենք 19
աղէկ գիտեն թէ ես էի որ քեզի
հաւատացողները բանտը կը դնէի ։
և ժողովարաններուն մէջ կը ծե-
ծէի ։ Ու երբոր քու Ստեփաննոս 20
վկայիդ արիւնը կը թափուէր, ես
ինքս ալ ներկայ էի և կամակից
էի անոր սպաննուելուն ։ ու զանի-
կայ սպաննողներուն հանդերձները
ես կը պահէի ։ Ու ինծի ըսաւ ։ 21
Գնա՛, ինչու որ ես քեզ հեռաւոր
հեթանոսներուն պիտի ղրկեմ ։
Ու անոնք մինչև աս խօսքս ա- 22
կանջ դրին իրեն, ետքը ձայներնին
վերցուցին ու ըսին, Վերցո՛ւր աշ-
խարհէն աստանկ մարդը, քանզի
չվայլեր անոր ապրիլ ։ Ու երբ 23
որ կը կանչըռտէին ու հան-
դերձնին կը նետէին, և փոշին գետ
'ի օդը կը ցանէին, Հազարապետ- 24
ը հրամանն ըրաւ որ զանիկայ բեր-
դը մտցնեն, ու ըսաւ որ ծեծով
հարցուփորձ ընեն անոր ; որ գիտնայ
թէ ինչ յանցանքի համար անոր
դէմ անանկ կը կանչըռտէին ։
Ու երբոր կաշիէ կապերով զինքը 25
կապեցին, Պօղոս մերձակայ հա-
րիւրապետին ըսաւ ։ Արժա՞ն է
ձեզի Հռովմայեցի ու չդատապար-
տուած մարդ մը ծեծել ։ Հա- 26
րիւրապետը երբոր աս լսեց, գնաց
հազարապետին պատմեց ու ըսաւ ։
Ի՞նչ պիտի ընես, ինչու որ աս
մարդը Հռովմայեցի է ։ Հազա- 27
րապետն ալ քովը գնաց ու ըսաւ
անոր ։ Ըսէ՛ ինծի, դուն Հռով-
մայեցի՞ ես ։ Ան ալ ըսաւ, Այո ։
Հազարապետը պատասխան տուաւ ։ 28
Ես շատ ստակով ձեռք բերի աս

քաղաքացիութեան իրաւունքը . և
Պօղոս ըսաւ ։ Ես բուն ազատ ծնէլ
29 ծնած եմ ։ Ու անոնք որ իրեն
հարցափորձ պիտի ընէին , շուտ
մը ետ կեցան իրմէն . և հազարա-
պետն ալ վախցաւ , երբոր իմացաւ
թէ Հռովմայեցի է , և որովհետև
զանիկայ կապեր էր ։
30 Ու հետևեալ օրը ուզելով որ
ճշմարիտը գիտնայ թէ ինչ է Հրէա-
ներուն ըրած ամբաստանութիւնը
անոր դէմ , արձըկեց անիկայ , և
հրաման ըրաւ որ քահանայապետ-
ները ու բոլոր ժողովքը մէկտեղ
գան . և Պօղոսը իջեցընելով ա-
նոնց առջևը կայնեցուց ։

## ԳԼ. ԻԳ

1 Եւ Պօղոս իր աչքերը ժողովքին
վրայ դարձընելով՝ ըսաւ . Մար-
դիկ եղբայրներ , ես բոլորովին բա-
րի խղճմտանքով կեանք վարեր եմ
Աստուծոյ առջևը մինչև աս օրս ։
2 Անանիա քահանայապետն ալ հրա-
ման ըրաւ իր քովը կայնողներուն՝
3 որ անոր բերնին զարնեն ։ Են ա-
տենը Պօղոս ըսաւ անոր , Աստուած
քեզի պիտի զարնէ՝ ծեփած պատ ,
որ դուն նստեր ես օրէնքին համե-
մատ զիս դատելու , և օրէնքէն
դուրս հրաման կ'ընես որ ինծի զար-
4 նեն ։ Եւ բոլորտիքը կայնողները
ըսին , Աստուծոյ քահանայապե՞տը
5 կը նախատես ։ Պօղոս ալ ըսաւ ,
Ե՛ղբայրներ՝ չէի գիտեր որ քահա-
նայապետ է . ինչու որ գրուած է ,
Քու ժողովուրդիդ իշխանին դէմ
6 չարախօսութիւն մ՚ ըներ ։ Եւ
Պօղոս գիտնալով որ մէկ կողմը
սադուկեցիներ են ու միւսը փա-
րիսեցիներ , կ'աղաղակէր ժողովքին
մէջ . Մարդիկ եղբայրներ , ես
փարիսեցի եմ՝ փարիսեցիի որդի .
մեռելոց յարութեանը յոյսին հա-
7 մար կը դատուիմ ։ Ու երբոր աս
ըսաւ , փարիսեցւոց և սադուկե-
ցւոց մէջը երկպառակութիւն ին-
կաւ , և բազմութիւնը բաժնուե-
8 ցաւ ։ Քանզի սադուկեցիք կ'ըսեն
թէ յարութիւն չկայ , և ոչ հրեշ-
տակ . ոչ ալ հոգի . բայց փարի-
սեցիք երկուքն ալ կը դաւանին ։
Եւ մեծ աղաղակ մը եղաւ . ու փա- 9
րիսեցւոց կողմէն եղող դպիրները
ոտքի վրայ ելլելով՝ դէմ կը կենային
ու կ'ըսէին . Մենք աս մարդուն
վրայ չարութիւն մը չենք գտներ .
հապա թէ որ հոգի մը կամ հրեշ-
տակ մը անոր խօսած է , ի՞նչ ։
Ու երբոր աղմուկը շատցաւ , հա- 10
զարապետը վախնալով որ չըլլայ
թէ Պօղոս անոնցմէ պատառուի ,
զինուորներուն հրաման ըրաւ որ իջ-
նեն զանիկայ անոնց մէջէն յափշտա-
կեն ու բերդը բերեն ։ Եւ հե- 11
տևեալ գիշերը Տէրը անոր քովը
կայնեցաւ ու ըսաւ , Քաջասիրտ
եղիր՝ Պօղոս , վասն զի ինչպէս որ
Երուսաղէմի մէջ ինծի համար վկա-
յեցիր , անանկ պէտք է քեզի որ
Հռովմայ մէջ ալ վկայես ։
Ու երբոր առտու եղաւ , Հրէա- 12
ներէն ոմանք միաբանեցան , ու իրեն-
զիրենք անէծքի տակ դրին , ըսե-
լով որ չուտեն ու չխմեն մինչև որ
Պօղոսը սպաննեն ։ Եւ քառասու- 13
նէն աւելի էին որ աս երդումը իրա-
րու հետ ըրին . Որ ասոնք քահա- 14
նայապետներուն և ծերերուն գացին
ու ըսին , Անէծքով անիծեցինք ան-
ձերնիս՝ որ բան մը չուտենք մինչև
որ Պօղոսը սպաննենք ։ Ուստի 15
դուք ժողովքին հետ մէկտեղ հա-
զարապետին իմացուցէ՛ք որ վաղը
զանիկայ ձեզի իջեցընէ , որպէս թէ
դուք աւելի ճիշդ քննութիւն ը-
նել կ'ուզէք անոր վրայով . և մենք
անոր մօտ գալէն առաջ պատրաստ
ենք զանիկայ սպաննելու ։ Եւ Պօ- 16
ղոսին քրոջը որդին երբոր աս դա-
ւաճանութիւնը լսեց , եկաւ բերդը
մտաւ ու Պօղոսին պատմեց ։ Պօ- 17
ղոս ալ հարիւրապետներուն մէկը
իրեն կանչելով՝ ըսաւ , Աս պատա-
նին հազարապետի՛ն տար , ինչու որ
բան մը ունի անոր իմացընելու ։
Ան ալ առաւ զանիկայ և տարաւ 18
հազարապետին ու ըսաւ , Բան-
տարկեալ Պօղոսը զիս կանչեց , և
աղաչեց որ աս պատանին քեզի բե-
րեմ , որ քեզի խօսելիք ունի ։ Եւ 19
հազարապետը անոր ձեռքէն բռնե-

րէաներն ալ ամէնը մէկ եղած՝ ըսին
թէ Այդպէս է։
10 Պատասխան տուաւ Պօղոս՝
(երբոր կուսակալը անոր աչք ըրաւ
որ խօսի․) Գիտնալով որ շատ
տարիներէ հետէ դուն աս ազգին
դատաւորն ես, աւելի յօժարու-
թեամբ ինծի վերաբերեալ բանե-
րուն համար պատասխան կու տամ․
11 Որովհետեւ կրնաս գիտնալ որ ես
տասնուերկու օրէն աւելի չէ՝ քանի
որ Երուսաղէմ ելայ երկրպագու-
12 թիւն ընելու։ Եւ զիս տաճարին
մէջ մէկու մը հետ վիճաբանութիւն
ընելու վրայ՝ կամ բազմութիւնը
մէկտեղ ժողված չգտան, ոչ ալ
13 ժողովարաններուն մէջ, Եւ ոչ
քաղաքին մէջ․ ոչ ալ կրնան ա-
պացուցանել ան բաները, որոնց
համար հիմա ամբաստանութիւն
14 կ'ընեն ինծի դէմ։ Բայց աս կը
խոստովանիմ քեզի թէ ան ճամ-
բուն համեմատ որ անոնք հերձուած
կ'ըսեն, ես անանկ կը պաշտեմ իմ
հայրերնիս Աստուածս, հաւատալով
ան ամէն բաներուն որ օրինաց եւ
15 մարգարէից մէջ գրուած են։ Եւ
յոյս ունիմ առ Աստուած՝ ինչոր
որ ասոնք ալ ակնկալութիւն ու-
նին, որ մեռելոց յարութիւն պի-
տի ըլլայ, թէ արդարներուն եւ թէ
16 մեղաւորներուն։ Եւ ես աս բա-
նիս համար կը ջանամ, որ ամէն
ատեն մաքուր խղճմտանք ունենամ
Աստուծոյ առջեւը ու մարդոց առ-
17 ջեւը։ Արդ ես շատ տարիներէ
ետեւ եկայ իմ ազգիս ողորմութիւ-
ներ բերելու ու ընծաներ տալու․
18 Ասանկով քանի մը Ասիացի Հրե-
աներ զիս տաճարին մէջը մաք-
րուած գտան՝ ոչ բազմութիւնով
19 եւ ոչ ամբոխով, Որ անոնց պէտք
էր առջեւդ գալ ու ամբաստանու-
թիւն ընել, թէ որ իմ վրայովս
20 ըսելու բան մը ունէին․ Կամ թէ
ասոնք իրենք թող ըսեն՝ ինչ ա-
նիրաւութիւն գտան իմ վրաս,
21 երբոր ատեանը կայներ էի․ Միայն
թէ աս մէկ խօսքիս համար՝ որ երբ
մէջերնին կայներ էի, կանչեցի
թէ Մեռելոց յարութեանը համար
ես այսօր ձեզմէ կը դատուիմ։
Եւ Փելիքս ուրիշ անգամի թողուց 22
անոնք, ինչու որ աղէկ տեղեկու-
թիւն ունէր ան ճամբուն վրայով․
ու ըսաւ. Երբոր Լիւսիաս հազա-
րապետը հոս իջնէ, պիտի քննեմ
ձեր գործը։ Եւ հարիւրապետին 23
հրաման ըրաւ որ զանիկայ պահէ,
եւ ընդարձակութիւն տայ, ու իրեն-
ներէն մէկը չարգիլէ անոր սպասա-
ւորութիւն ընելէն կամ անոր քովը
երթալէն։

Եւ քանի մը օրէն ետեւ Փելիքս 24
եկաւ իր Դրուսիլա կնկանը հետ
որ Հրեայ էր, ու Պօղոսը կանչել
տուաւ, եւ լսեց անկէ ան հաւատ-
քին համար որ Քրիստոս Յիսուսի
վրայ է։ Ու երբոր անիկայ ար- 25
դարութեան ու ժուժկալութեան
եւ գալու դատաստանին վրայով կը
խօսէր, Փելիքս զարհուրելով պա-
տասխան տուաւ, Դուն հիմա գնա,
ու երբոր ժամանակ ունենամ՝ ես
քեզ նորէն կը կանչեմ։ Նաեւ 26
յոյս ունէր որ Պօղոսին կողմէն իրեն
ստակ տրուի, անոր համար շատ
անգամ կանչել կու տար զանիկայ
ու հետը կը խօսակցէր։ Բայց 27
երկու տարի որ եղաւ, Փելիքսին
տեղը Պորկիոս Փեստոսը եկաւ․
Փելիքս ալ Հրեաներուն շնորհք
ընել ուզելով, Պօղոսը կապուած
թողուց։

## ԳԼ. ԻԵ

Արդ երբոր Փեստոս իր իշխանու- 1
թեանը գաւառը հասաւ, իրեք
օրէն ետեւ Կեսարիայէն Երուսա-
ղէմ ելաւ։ Եւ քահանայապետը 2
ու Հրեից գլխաւորները անոր ի-
մացուցին իրենց ամբաստանութիւնը
Պօղոսին դէմ, Եւ կ'աղաչէին ի- 3
րեն ու շնորհք կը խնդրէին անոր
դէմ, որ զանիկայ Երուսաղէմ բե-
րել տայ․ ու իրենք դարան կը
պատրաստէին ճամբուն մէջ զանի-
կայ սպաննելու։ Բայց Փեստոս 4
պատասխան տուաւ, որ Պօղոս
Կեսարիայի մէջ պահուի, եւ որ ին-
քը շատ չանցած հոն պիտի եր-
թայ։ Ուստի ձեզմէ որոնք որ 5

կարող են՝ ըսաւ ; իմ հետս թող
իջնեն , եւ եթէ այն մարդուն վը-
րայ յանցանք մը կայ , թող անոր
6 դէմ ամբաստանութիւն ընեն : Եւ
հոն ութը կամ տասը օրէն աւելի
չկենալով , Կեսարիա իջաւ . ու
հետեւեալ օրը ատեանը նստելով՝
հրաման ըրաւ որ Պօղոսը բերեն :
7 Եւ երբոր անիկայ եկաւ , Երուսա-
ղեմէն իջնող Հրէաները անոր բո-
լորտիքը կայնելով , շատ ու ծանր
ամբաստանութիւններ կը բերէին
Պօղոսի դէմ , որոնք չէին կրնար
8 ապացուցանել . Ինչու որ Պօղոս
պատասխան կու տար թէ Ես ոչ
Հրէաներուն օրէնքին՝ եւ ոչ տա-
ճարին՝ ոչ ալ կայսրին դէմ յան-
9 ցանք մը ըրած եմ : Բայց Փես-
տոս ուզելով որ Հրէաներուն շը-
նորհք ընէ , պատասխան տուաւ
Պօղոսին ու ըսաւ , Կ'ուզե՞ս Եր-
րուսաղէմ ելլել , եւ հոն աս բա-
ներուն վրայով իմ առջեւս դա-
10 տուիլ : Պօղոս ալ ըսաւ , Կայս-
րին ատեանը կայներ եմ , ուր որ
պէտք է ինծի դատուիլ . ես Հրէ-
աներուն անիրաւութիւն մը ըրած
չեմ , ինչպէս որ դուն ալ աղէկ
11 գիտես : Վասնզի թէ որ անիրա-
ւութիւն մը եւ մահուան արժանի
բան մը ըրած եմ , ես մեռնելէն
չեմ քաշուիր . բայց թէ որ չկայ
իմ վրաս այն բաներէն մէկն ալ՝ ո-
րոնց համար ասոնք ինծի դէմ ամ-
բաստանութիւն կ'ընեն , մէկը չը-
կրնար զիս անոնց շնորհել : Կայս-
12 րին կը բողոքեմ : Այն ատենը Փես-
տոս խորհրդականաց հետը խօսելով՝
պատասխան տուաւ . Թէ Կայսրին
բողոքեցիր , կայսրին պիտի երթաս :
13 Եւ քանի մը օր անցնելէն ետեւ՝
Ագրիպպաս թագաւորը եւ Բերի-
նիկէ Կեսարիա եկան Փեստոսը
14 ողջունելու : Եւ շատ օրեր որ հոն
անցուցին , Փեստոս Պօղոսին հա-
մար թագաւորին իմացուց ու ը-
սաւ , Հոս մարդ մը կայ՝ որն որ
Փելիքս բանտարկուած թողուցեր
15 է , Որուն վրայով՝ երբոր Երուսա-
ղէմ գացի , քահանայապետները ու
Հրէից ծերերը իմացուցին ինծի ,
եւ կը խնդրէին որ անոր դէմ դա-
տապարտութեան վճիռ տրուի . Ա- 16
նոնց պատասխան տուի թէ Հռ-
ոմայեցւոց սովորութիւնը չէ
մարդ մը կորսնցնելու շնորհել , մին-
չեւ որ ամբաստանուածը ամբաստա-
նողները դիմացը չունենայ , ու ան
ամբաստանութեանը պատասխան
տալու պատեհութիւն չառնու ի-
րեն : Ուստի երբոր անոնք ինծ 17
հետ հոս եկան , ամենեւին չուշա-
ցուցի , հապա հետեւեալ օրը ա-
տեանը նստելով՝ հրաման ըրի որ
մարդը բերեն . Անոր դատախազ- 18
ները ալ ներկայանալով , իմ կար-
ծած ըրած յանցանքներէս մէկն ալ
յառաջ չէին բերեր . Հապա մէկ 19
քանի խնդիրներ ունէին անոր հետ
իրենց կրօնքին վրայ , եւ Յիսուս
անունով մեռածի մը վրայ , որուն
համար Պօղոս կ'ըսէր թէ կենդանի
է : Եւ երբոր տարակուսանքի մէջ 20
էի աս բաներու քննութեանը վրայով ,
ըսի թէ Կ'ուզե՞ս Երուսաղէմ եր-
թալ , եւ հոն աս բաներուն համար
դատուիլ : Բայց Պօղոս երբոր 21
բողոքեց որ պահուի Աւգոստափառ
կայսրին դիմացը ելլելու , հրաման
ըրի որ զինքը պահեն՝ մինչեւ որ
Կայսրին խրկեմ : Եւ Ագրիպպաս 22
ըսաւ Փեստոսին , Ես ալ կ'ուզէի
աս մարդը մտիկ ընել . ան ալ ը-
սաւ , Վաղը մտիկ կ'ընես :

Եւ հետեւեալ օրը երբոր Ագրիպ- 23
պաս ու Բերենիկէ մեծ հանդէսով
եկան՝ ու ատեանը մտան հազարա-
պետներով եւ քաղաքին պատուա-
ւոր մարդիկներովը մէկտեղ , Փես-
տոս ալ հրաման ընելով՝ բերին
Պօղոսը : Եւ ըսաւ Փեստոս , Ագ- 24
րիպպա՛ս արքայ՝ եւ դուք ալ բոլո՛ր
մարդիկ որ մեր հետն էք , անիկայ
կը տեսնէք . ասոր վրայով Հրէից
բոլոր բազմութիւնը ինծի ներկա-
յացան Երուսաղէմի մէջ եւ հոս
ալ , ու կ'աղաղակէին թէ Պէտք
չէ որ ալ անիկայ ողջ մնայ . Բայց 25
ես որ հասկըցայ թէ անիկայ մեռ-
նելու արժանի բան մը ըրած չէ , եւ
ինքը որ Աւգոստափառ Կայսրին բողո-
քեց , որոշեցի որ խրկեմ զանիկայ .

օգնութիւն հասնելով՝ մինչեւ աս
օրս ողջ մնացի , պզտիկին ու մեծին
վկայութիւն տալով , բան մը չաւ-
ելցնելով ան բաներէն դուրս՝ որ
մարգարէները և Մովսէս խօսեցան
23 թէ պիտի ըլլային . Թէ Քրիս-
տոս պիտի չարչարուէր , և թէ ա-
նիկայ պիտի առաջ մեռելներէն յա-
րութիւն առած՝ լոյս պիտի քարոզէր
ժողովուրդին ու հեթանոսներուն :
24 Եւ քանի որ անիկայ ասանկ պա-
տասխան կու տար իրեն համար ,
Փեստոս բարձր ձայնով մը ըսաւ ,
Ով խելագարիս Պօղոս . շատ կար-
դացողութիւնդ քեզ կը յիմարե-
25 ցընէ : Պօղոս ալ ըսաւ , Ես չեմ
խելագարիր՝ ով պատուական Փեստ-
ոս , հապա ճշմարտութեան և ըղ-
ջամտութեան խօսքեր կը զրուցեմ :
26 Վասնզի աս բաները թագաւորը
գիտէ , որուն առջեւը ես ալ հա-
մարձակ կը խօսիմ . ինչու որ չեմ
կարծեր թէ ասոնցմէ մէկ բան մը
անկէ ծածկուած ըլլայ , վասն զի
աս բանը մէկ անկիւնի մը մէջ եղած
27 չէ : Մարգարէներուն կը հաւա-
տա՞ս Ագրիպպաս արքայ . գիտեմ
28 որ կը հաւատաս : Եւ Ագրիպպաս
ըսաւ Պօղոսին , Քիչ մնաց որ
զիս համոզես քրիստոնեայ ըլլալու :
29 Պօղոս ալ ըսաւ , Աստուծմէ կը
խնդրէի որ թէ՛ քիչով և թէ շա-
տով՝ չէ թէ միայն դուն , հապա
ամէնքն ալ որ այսօր ինծի կը լսեն ,
անանկ ըլլան ինչպէս որ ես եմ , աս
կապերէս 'ի զատ :
30 Ասոր վրայ ելաւ թագաւորը և
կուսակալը ու Բերենիկէ , և ա-
նոնք որ իրենց հետը նստեր էին :
31 Ու դուրս ելլելէն ետեւ , իրարու
հետ խօսեցան ու ըսին թէ Աս
մարդը մեռնելու կամ կապուելու
32 արժանի բան մը չըներ : Ագրիպ-
պաս ալ Փեստոսին ըսաւ , Կարելի
էր աս մարդը արձակել , թէ որ
Կայսրին բողոքած չըլլար :

## ԳԼ. ԻԷ:

1 Երբոր որոշուեցաւ որ նաւով Ի-
տալիա երթանք , Պօղոս և ու-
րիշ քանի մը կապուածներ յանձ-
նեցին հարիւրապետի մը՝ որուն ա-
նունը Յուլիոս էր , Օգոստեան
գունդէն : Եւ մէկ Ադրամիտտացի 2
նաւ մը մտնելով ճամբայ ելանք ,
ու Ասիայի կողմերէն պիտի նաւէ-
ինք . Թեսաղոնիկեցի Արիս-
տարքոս Մակեդոնացին ալ մեր
հետն էր : Եւ հետեւեալ օրը Սի- 3
դոն իջանք . և Յուլիոս մարդա-
սիրութիւն ցուցընելով Պօղոսին՝
հրաման տուաւ որ բարեկամներուն
երթայ ու դարման գտնէ : Եւ 4
անկէ ելլելով՝ Կիպրոսին վարի կող-
մէն նաւեցինք հովը դէմ ըլլալուն
համար : Եւ Կիլիկիայի ու 5
Պամփիւլիայի ծովուն մէջտեղէն
նաւելով Լիկիայի Միւռա քաղաքը
իջանք : Եւ հարիւրապետը հոն 6
Աղեքսանդրացի նաւ մը գտնելով՝
որ Իտալիա կ'երթար , մեզ անոր
մէջ մտցուց : Եւ շատ օրեր կամաց 7
կամաց նաւելով՝ հազիւ թէ Կնիդո-
սին քովերը հասանք . և հովը մեզի
դէմ ըլլալով՝ Կրետէին վարի կող-
մէն Սաղմոնայի քովէն նաւեցինք :
Եւ դժուարաւ անկէ անցնելով՝ մէկ 8
տեղ մը եկանք , որ Գեղեցիկ նա-
ւահանգիստ կ'ըսուէր , որուն մօտ
էր Լասեա քաղաքը :
Ու երբոր շատ ժամանակ անցաւ , 9
և նաւուն ճամբայ ելլելն ալ վտան-
գաւոր էր , ծոմին ատենն ալ ար-
դէն անցած ըլլալով , Պօղոս խըր-
րատ կու տար , Եւ կ'ըսէր անոնց , 10
Մարդիկ՝ ես կը տեսնեմ որ աս նա-
ւիս ճամբայ ընելը տառապանքով
ու շատ վնասով պիտի ըլլայ , չէ՛
թէ միայն բեռին ու նաւին՝ հապա
մեր անձերուն ալ : Բայց հարիւ- 11
րապետը աւելի նաւապետին և նա-
ւավարին միտք կ'ընէր , քան թէ
Պօղոսին խօսքերուն : Եւ որով- 12
հետեւ ան նաւահանգիստը յարմար
չէր ձմեռը հոն անցընելու , շատերը
խորհեցան անկէ երթալ , որ գուցէ
կարող ըլլան Փիւնիկէ հասնելու ու
ձմեռը հոն կենալու , որ Կրետէի
նաւահանգիստ մըն է , ու դէպ 'ի
հարաւ և արեւմտեան հիւսիս կը
նայի : Ու երբոր հարաւային մեղմ 13
հով մը փչեց , կարծելով թէ իրենց

դիտաւորութեանը հասեր են, ճամ-
բայ ելան ու Կրետէին քովերէն
14 կ'անցնէին ։ Եւ շատ ատեն չանց-
ցած՝ մրրկալից հով մը ելաւ անոր
դէմ, որ Եւրակիւլոն կ'ըսուի ։
15 Երբոր նաւը յափշտակուեցաւ և
հովին դէմ չկրցաւ դիմանալ, թող
տուած կ'երթայինք ու կու գայինք ․
16 Եւ դէպ 'ի մէկ փոքր կղզիի մը ե-
տեւի կողմը դիմելով՝ որ Կղօդա
կ'ըսուէր, հազիւ կրցանք մակոյկը
17 բռնել ․ Որն որ առին՝ ու օգնու-
թիւններ գործածելով նաւը տակէն
կապեցին ․ և վախնալով որ չըլ-
լայ թէ յորձանուտը իյնան, առա-
գաստը իջեցուցած՝ անանկ կ'եր-
18 թային ու կու գային ։ Եւ սաստիկ
ալէկոծութեան մէջ որ էինք, հե-
տեւեալ օրը բեռերը դուրս նետե-
19 ցին ։ Ու երրորդ օրը նաւին գոր-
ծիքները ձեռքովնիս դուրս նետե-
20 ցինք ։ Ու երբոր շատ օրեր ոչ
արեւ՝ ոչ ալ աստղեր կ'երեւնային,
և փոթորիկը քիչ չէր վրանիս, ալ
բոլորովին մեր ազատուելու յոյսը
21 վերցաւ ։ Եւ որովհետեւ շատ օրե-
րէ 'ի վեր անօթի էին, ան ատենը
Պօղոս անոնց մէջը կայնելով ըսաւ,
Ո՛վ մարդիկ՝ պէտք էր ձեզի որ
ինծի մտիկ ընէիք ու Կրետէէն
չելլէիք, և աս տառապանքը ու
22 վնասը չքաշէիք ։ Ու հիմա ձեզ
կը յորդորեմ որ սիրտ առնէք,
քանզի ձեզմէ մէկուն անձին վնաս
մը պիտի չըլլայ՝ բայց միայն նաւին ․
23 Ինչու որ աս գիշեր երեւցաւ ինծի
ան Աստուծոյն հրեշտակը, որ ես
Անորն եմ ու զԱնիկայ կը պաշ-
24 տեմ, Եւ ըսաւ, Մի՛ վախնար,
Պօղոս՝ Կայսրին դիմացը պէտք է որ
ելլես դուն ․ և ահա Աստուած քե-
զի շնորհեց ան ամէնը՝ որ քու հետդ
25 նաւին մէջն են ։ Ուստի՝ մարդիկ՝
սիրտ առէք, ինչու որ ես կը հա-
ւատամ Աստուծոյ՝ որ անանկ պիտի
ըլլայ, ինչպէս որ ինծի զրուցուե-
26 ցաւ ․ Միայն թէ պէտք է որ մէկ
կղզի մը իյնանք ։
27 Ու երբոր տասնուչորսերորդ գի-
շերն էր որ Ադրիական ծովուն մէջ
կը տարուբերէինք, կէս գիշերին

նաւավարները կը կարծէին թէ մէկ
երկրի մը մօտեցեր են ․ Եւ գնտա- 28
կը ձգելով՝ քսան գրկաչափ գտան ․
ու քիչ մըն ալ յառաջ երթալով՝
նորէն ձգեցին, և տասնուհինգ գըր-
կաչափ գտան ․ Ու վախնալով որ 29
չըլլայ թէ քարոտ տեղուանք իյ-
նան, ետեւի կողմէն չորս խարիսխ
ձգեցին, և առտու ըլլալուն կը փա-
փաքէին ։ Իսկ նաւավարները նա- 30
ւէն փախչիլ ուզելով՝ մակոյկը ծովը
իջեցուցին, պատճառելով որպէս
թէ առջեւի կողմէն ալ խարիսխներ
պիտի ձգեն ։ Բայց Պօղոս ըսաւ 31
հարիւրապետին ու զինուորներուն,
Թէ որ ատոնք նաւին մէջը չկե-
նան՝ դուք չէք կրնար ազատիլ ։
Ան ատենը զինուորները մակոյկին 32
չուանները կտրեցին, և թողուցին
որ դուրս իյնայ ։ Ու երբոր առ- 33
տու ըլլալու վրայ էր, Պօղոս կ'ա-
ղաչէր ամենուն որ կերակուր ու-
տեն, ըսելով ․ Այսօր տասնուչորս
օր է որ դուք սպասելով անօթի
մնացեր էք, ու բան մը կերած
չէք ․ Ուստի կ'աղաչեմ ձեզի որ 34
կերակուր ուտէք, ինչու որ աս ալ
ձեր ազատութեանը համար է ․
քանզի ձեզմէ մէկուն գլխէն մազ մը
պիտի չկորսուի ։ Եւ այսպէս ըսե- 35
լով, հաց առաւ, ու ամենուն առ-
ջեւը Աստուծմէ գոհացաւ, և կըտ-
րելով սկսաւ ուտել ։ Եւ ամէնն 36
ալ սիրտ առին, ու իրենք ալ կե-
րակուր կերան ։ Եւ նաւին մէջը 37
ամէնքս երկու հարիւր եօթանասուն-
ուվեց հոգի էինք ։ Երբոր կշտա- 38
ցան կերակուրով՝ նաւը թեթեւցու-
ցին՝ ցորենը ծովը թափելով ։
Ու երբոր առտու եղաւ, ցամաքը 39
չէին ճանչնար, միայն թէ մէկ ծոց
մը կը նշմարէին որ ծովեզերք ու-
նէր, ու կը խորհէին որ եթէ կա-
րելի է նաւը անոր մէջը մտնեն ։ Եւ 40
խարիսխները կտրելով՝ ծովը ձգե-
ցին, ու ղեկերուն կապերը թու-
լցուցին, և առագաստը հովին բա-
նալով՝ դէպ 'ի ան ծովեզերքը կ'եր-
թային ։ Եւ անանկ տեղ մը իյ- 41
նալով որ երկու կողմը ծով էր,
նաւը նստեցուցին ․ և նաւին առջեւի

կողմը խրելով՝ անշարժ մնաց , ու ե-
տեւի կողմը ալիքներուն սաստկու-
42 թենէն կը քակուէր ։ Զինուոր-
ներուն ալ խորհուրդ ըրին որ կա-
պուածները սպաննեն , որ չըլլայ թէ
43 մէկը լողայ ու փախչի ։ Բայց հա-
րիւրապետը որ Պօղոսը ազատել
կ'ուզէր , արգիլեց զանոնք ան խոր-
հուրդէն , և հրաման ըրաւ թէ ո-
րոնք որ կրնան լողալ , թող անոնք
առաջ նետուին ու ցամաքը ելլեն .
44 Եւ մնացածները՝ ոմանք տախտակ-
ներով և ոմանք նաւուն ուրիշ բա-
ներովը . և այսպէս ամէնը ազատե-
ցան՝ ցամաքը ելան ։

## ԳԼ. ԻԸ

1 Ու երբոր ազատեցան՝ գիտցան որ
ան կղզիին անունը Մելիտէ էր .
և բարբարոսները քիչ մարդասի-
2 րութիւն չցուցուցին մեզի . Ինչու
որ կրակ վառեցին , և մեզ ամէնքս
ալ ընդունեցին՝ վրանիս հասած
անձրեւին համար ու ցուրտին հա-
3 մար ։ Ու երբոր Պօղոս շատ մը
խուիւ ժողվեց և կրակին վրայ դը-
րաւ , տաքութենէն իժ մը ելաւ՝
4 անոր ձեռքը բռնեց ։ Բարբարոս-
ներն ալ երբոր ան գազանը տեսան
անոր ձեռքէն կախուած՝ իրարու
կ'ըսէին , Անշուշտ ասիկայ մար-
դասպան մըն է , որ թէպէտ ծովէն
ազատեցաւ , բայց իրաւունքը թող
5 չտուաւ որ ապրի ։ Իսկ անիկայ
գազանը կրակին մէջը թօթվելով՝
6 իրեն մէկ վնաս մը չեղաւ ։ Ու ա-
նոնք կը սպասէին որ անիկայ ուռե-
նայ՝ կամ յանկարծակի մեռած իյ-
նայ . բայց երբոր շատ մը սպասե-
ցին , ու տեսան որ իրեն վնաս մը
չեղաւ , կարծիքնին փոխելով , կ'ը-
7 սէին թէ աստուած մըն է ։ Եւ
ան տեղին բոլորտիքը՝ կղզիին գըլ-
խաւոր մարդուն ագարակները կա-
յին , որուն անունը Պոպղիոս էր ,
որ ինքը մեզ ընդունեց և իրեք օր
հիւրասիրութեամբ իր քովը պահեց ։
8 Ու եղաւ որ Պոպղիոսին հայրը ջեր-
մով և թանչքով հիւանդցած պառ-
կած էր . ու Պօղոս անոր քովը
մտաւ , և աղօթք ընելով ձեռքերը
վրան դրաւ ու բժշկեց զանիկայ ։
Ու երբոր ասիկայ եղաւ , ուրիշ 9
հիւանդներ որ ան կղզիին մէջն էին ,
կու գային և կը բժշկուէին . Որոնք 10
շատ պատիւներով ալ մեզ պա-
տուեցին , ու երթալու ատեննիս
պէտք եղած բաները տուին ։
Եւ իրեք ամիսէն ետև Աղեք- 11
սանդրացի նաւով մը Ճամբայ ե-
լանք , որ ձմեռը ան կղզին անցուցեր
էր , ու Դիոսկուրացւոց նշանը ու-
նէր ։ Եւ Սիրակուսա իջնելով՝ 12
իրեք օր հոն կեցանք ։ Անկէ ալ 13
պտոյտ մը ընելով՝ Հռեգիոն հա-
սանք . և մէկ օրէն ետև որ հարաւ
փչեց , երկրորդ օրը Պուտիօղոս ե-
կանք ։ Ու հոն եղբայրներ գտանք , 14
որոնք աղաչեցին որ եօթը օր իրենց
քովը մնանք . ու ետքը Հռոմ
ելանք ։ Եւ անկէ եղբայրները 15
երբոր մեր վրայով լսեցին , մեզ
դիմաւորելու ելան մինչև Ապփիոսի
վաճառանոցը ու Իրեք պանդոկնե-
րը . և Պօղոս անոնք տեսնելով ,
գոհութիւն տուաւ Աստուծոյ և
սիրտ առաւ ։

Ու երբոր Հռոմ մտանք , հա- 16
րիւրապետը կապուածները զօրա-
պետին յանձնեց . իսկ Պօղոսին հը-
րաման եղաւ որ իր պահապան զի-
նուորին հետ զատ կենայ ։ Ու 17
եղաւ որ իրեք օրէն ետև անիկայ
Հրէից գլխաւորները կանչեց . ու
երբոր մէկտեղ եկան՝ ըսաւ անոնց ,
Մարդիկ եղբայրներ՝ ես ժողովուր-
դին կամ հայրենական սովորու-
թեանց դէմ բան մը չըրած , Ե-
րուսաղեմէն կապուած՝ Հռոմայե-
ցւոց ձեռքը մատնուեցայ . Որոնք 18
երբոր զիս քննեցին , ուզեցին որ
արձակեն , ինչու որ իմ վրաս մեռ-
նելու յանցանք մը չկար ։ Բայց 19
երբոր Հրէաները հակառակ կեցան ,
պէտք եղաւ որ Կայսրին բողոքեմ ,
չէ թէ իմ ազգիս դէմ ամբաստա-
նութիւն մը ունեցողի պէս ։ Աս- 20
տի աս պատճառով աղաչեցի որ
ձեզ տեսնեմ ու ձեզի խօսիմ . ին-
չու որ Իսրայէլի յուսոյն համար ես
աս շղթան վրաս ունիմ ։ Անոնք 21

ձեզ կը յիշեմ , ամէն ատեն իմ
աղօթքներուս մէջ խնդրելով՝ որ
գուցէ անգամ մը Աստուծոյ կամ-
քովը ինծի յաջողութիւն մը ըլլայ
11 ձեզի գալու ։ Վասնզի կը փափա-
քիմ ձեզ տեսնելու , որ ձեզի հո-
գեւոր շնորհք մը հաղորդեմ՝ որպէս
12 զի հաստատուիք ․ Այսինքն ձեր
հետը ես ալ մխիթարակից ըլլամ
իմ ու ձեր փոխադարձ հաւատքին
13 միջոցովը ։ Անկայն չեմ ուզեր որ
չգիտցող ըլլաք եղբայրներ՝ որ շատ
անգամ ուզեցի գալ ձեզի , ( և
մինչև հիմա արգիլուեցայ ,) որ ձեր
մէջն ալ պտուղ մը ունենամ ,
ինչպէս որ ուրիշ հեթանոսաց մէջ
14 ալ ։ Յոյներուն ու Բարբարոս-
ներուն , իմաստուններուն ու ան-
միտներուն ալ պարտական եմ ։
15 Ուստի որչափ որ ձեռքէս կու գայ՝
յօժարութիւն ունիմ ձեզի ալ որ
Հռոմայ մէջ էք՝ աւետարանը քա-
րոզելու ։
16 Ինչու որ ես ամօթ չեմ սեպեր
աւետարանը , վասն զի Աստուծոյ
զօրութիւնն է ան բոլոր հաւատա-
ցեալներուն փրկութեան համար ,
առաջ Հրէային ու ետքը Յոյնին ։
17 Ինչու որ անով Աստուծոյ արդա-
րութիւնը՝ որ է հաւատքէն , հա-
ւատքի համար կը յայտնուի ․ ին-
չպէս որ գրուած է թէ Արդարը
հաւատքէն պիտի ապրի ։
18 Վասնզի Աստուծոյ բարկութիւնը
երկինքէն կը յայտնուի մարդոց բո-
լոր ամբարշտութեանը և անիրա-
ւութեանը վրայ , որոնք ճշմարտու-
թիւնը անիրաւութեամբ բռներ են ։
19 Ասան զի Աստուծոյ վրայով գիտ-
նալու բանը իրենց մէջը յայտնի է ,
որովհետև Աստուած անոնց յայտ-
20 նեց ։ Ինչու որ իր աներևոյթ բա-
ները աշխարհքի սկիզբէն ստեղ-
ծուածներովը կ'իմացուին կը տես-
նուին , այսինքն է իր մշտնջենաւոր
զօրութիւնը ու աստուածութիւ-
նը , որպէս զի անպատասխանի մը-
21 նան ։ Ինչու որ իրենք Աստուած
ճանչնալով՝ Աստուծոյ պէս չփառա-
ւորեցին , կամ շնորհակալ չեղան ․
հապա իրենց խորհուրդներուն մէջ
ունայնացան , և սիրտերնին անմի-
տութիւնով խաւարեցաւ ։ Իրենք 22
իմաստուն ենք՝ ըսելով , յիմարե-
ցան ․ Եւ անեղծ Աստուծոյ փառքը 23
փոխեցին՝ նմանցնելով եղծանելի
մարդու , և թռչուններու , ու
չորքոտանիներու և սողուններու
պատկերին ։ Անոր համար Աս- 24
տուած ալ պղծութեան մատնեց
զանոնք իրենց սիրտերուն ցանկու-
թիւներովը՝ իրենց մարմինները
իրենց մէջը խայտառակելու ․
Որոնք Աստուծոյ ճշմարտութիւ- 25
նը սուտի հետ փոխեցին , ու
երկրպագութիւն և պաշտօն մատու-
ցին ստեղծուածներուն քան թէ
Ստեղծողին , ան որ յաւիտեան
օրհնեալ է ։ Ամէն ։ Անոր համար 26
Աստուած զանոնք անարգ կիրքերու
մատնեց , որ իրենց էգերը անգամ
բնական պէտքը բնութեան դէմ ե-
ղող պէտքի փոխեցին ։ Նոյնպէս 27
ալ արուները կինկան բնական պէտ-
քը թողուցած՝ իրենց ցանկութիւ-
նովը իրարու հետ վառուեցան ․ ա-
րուները արուներու հետ խայտա-
ռակութիւն կը գործէին , և իրենց
մոլորութեանը վայլած հատուցումը
իրենց վրայ կ'ընդունէին ։ Եւ ո- 28
րովհետև չուզեցին զԱստուած իրենց
գիտութեանը մէջ պահել , Աս-
տուած ալ զանոնք անարգ խոր-
հուրդներու մատնեց անվայել բա-
ներ ընելու ․ Որոնք լեցուած էին 29
ամէն անիրաւութիւնով , պոռնը-
կութիւնով , անզգամութիւնով ,
ագահութիւնով , չարութիւնով ,
նախանձով լեցուն , մարդասպա-
նութիւնով , հակառակութիւնով ,
նենգութիւնով , չարասրտութիւ-
նով , և էին քսուներ , Չարախօս- 30
ներ , Աստուած ատողներ , նախա-
տողներ , հպարտներ , ամբարտա-
ւաններ , չար բաներ հնարողներ ,
ծնողաց անհնազանդներ , Անմիտ- 31
ներ , ուխտ չպահողներ , անգութ-
ներ , անհաշտներ , անողորմներ ․
Որոնք գիտնալով Աստուծոյ դա- 32
տաստանը թէ անոնք որ ասանկ
բաներ կ'ընեն՝ մահուան արժանի
են , չէ թէ միայն ան բաները կ'ը-

ներն , հապա ընողներուն հաւանու-
թիւն ալ կու տան ։

ԳԼ. Բ

1 Ասոր համար՝ ով մարդ՝ ով որ ըլլաս
դուն որ կը դատես , պատաս-
խան չունիս տալու . քանզի ինչ
բանով որ ուրիշը կը դատես , անով
քու անձդ կը դատապարտես ,
վասն զի դուն ալ որ կը դատես ,
2 նոյն բաները կ'ընես ։ Բայց գի-
տենք որ Աստուծոյ դատաստանը
ճշմարտութիւնով կ'ըլլայ անոնց
վրայ , որ անանկ բաներ կը գործեն ։
3 Արդ՝ ով մարդ , դուն որ անանկ
բաներ ընողները կը դատես , և
դուն նոյն բաները կ'ընես , ատ
միտքէդ կ'անցընե՞ս թէ դուն
Աստուծոյ դատաստանէն ազատ պի-
4 տի մնաս . Կամ թէ անոր այնչափ
քաղցրութիւնը և համբերութիւնը
ու երկայնմտութիւնը կ'արհամար-
հե՞ս , չգիտնալով որ Աստուծոյ
քաղցրութիւնը քեզ դէպ 'ի ա-
պաշխարութիւն կ'առաջնորդէ ։
5 Բայց դուն քու խստութիւնովդ
և անզղջ սրտովդ քու անձիդ
բարկութիւն կը դիզես՝ բարկու-
թեան և Աստուծոյ արդար դա-
տաստանին յայտնուելու օրուանը
6 համար . Ան որ ամէն մէկուն իր
գործքերուն փոխարէնը պիտի հա-
7 տուցանէ . Յաւիտենական կեանք
անոնց՝ որ բարի գործքերու մէջ
համբերութեամբ յարատևելով ,
փառք ու պատիւ և անմահութիւն կը
8 խնդրեն . Բայց անոնց որ հակառակ
են , և ճշմարտութեան անհնազանդ
ու անիրաւութեան հնազանդած ,
9 բարկութիւն և սրտմտութիւն՝ Նե-
ղութիւն և տառապանք պիտի ըլլայ
ամէն մարդու վրայ որ չար կը գոր-
ծէ , առաջ Հրէային ու ետքը
10 Յոյնին . Իսկ փառք ու պատիւ և
խաղաղութիւն ան ամենուն որ
բարի կը գործէ , առաջ Հրէային
11 ու ետքը Յոյնին ։ Ինչու որ Աս-
տուծոյ քովը աչառութիւն չկայ ։
12 Քանզի անոնք որ առանց օրէնքի
մեղք գործեցին , առանց օրէնքի
պիտի կորսուին . և անոնք որ օրէն-
քի տակ մեղք գործեցին , օրէնքով
պիտի դատուին , (Ինչու որ չէ՛ թէ 13
օրէնքը լսողները Աստուծոյ առջևը
արդար են , հապա օրէնքը կատա-
րողները պիտի արդարանան ։ Քան- 14
զի հեթանոսները որ օրէնք չունին՝
երբոր բնականաբար օրէնքին գործ-
քերը կը գործեն , օրէնք չունենա-
լով՝ իրենց անձերուն օրէնքը բուն
իրենք կ'ըլլան . Որ օրէնքին գործ- 15
քը իրենց սրտին մէջը գրուած կը
ցուցընեն իրենց խղճմտանքին վը-
կայութեամբը , և իրենց խոր-
հուրդներուն իրար յանդիմանելովը՝
կամ իրաւունք տալովը , ) Ան օրը 16
որ Աստուած մարդոց ծածուկ բա-
ները պիտի դատէ Յիսուս Քրիս-
տոսի ձեռքովը՝ իմ քարոզած աւե-
տարանիս համեմատ ։
Ահա դուն Հրէայ ըսուեր ես , 17
և օրէնքին կռթըներ ես , ու Աստու-
ծով կը պարծենաս , Ու անոր 18
կամքը գիտես , ու տարբեր բաները
կը զանազանես՝ օրէնքէն խրատուած
ըլլալով . Ու քու անձիդ վրայ 19
վստահութիւն ունիս թէ կոյրերուն
առաջնորդ ես , խաւարածներուն
լոյս , Անմիտներուն խրատ տուող , 20
տղայոց վարժապետ , և թէ գիտու-
թեան ու ճշմարտութեան կերպա-
րանքը օրէնքէն ունիս ։ Իսկ արդ 21
դուն որ ընկերիդ կը սորվեցընես ,
քու անձիդ չե՞ս սորվեցըներ . որ
կը քարոզես գողութիւն չընել ,
կը գողնա՞ս . Որ կ'ըսես շնութիւն 22
չընել , շնութի՞ւն կ'ընես . որ կը
զզուիս կուռքերէն , սրբապղծու-
թի՞ւն կ'ընես . Որ օրէնքով կը 23
պարծենաս , օրինազանց ըլլալով՝
զԱստուած կ'անարգե՞ս ։ Ինչու 24
որ Աստուծոյ անունը ձեր պատճա-
ռովը հեթանոսաց մէջ կը հայհո-
յուի , ինչպէս որ գրուած է ։
Արդ թլփատութիւնը շահ կ'ու- 25
նենայ , թէ որ օրէնքը պահես . իսկ
թէ որ օրէնքին դէմ յանցաւոր ես ,
քու թլփատութիւնդ անթլփատու-
թիւն եղաւ ։ Ասոր թէ որ ան- 26
թլփատութիւնը օրէնքին իրա-
ւունքները պահէ , չէ՞ որ անոր
անթլփատութիւնը թլփատութիւն

27 պիտի դատէ . Ու 'ի բնէ եղած
անթլփատութիւնը օրէնքը կատա-
րելով՝ պիտի դատապարտէ քեզ ,
որ գիրով ու թլփատութիւնով
28 օրէնքին յանցաւոր ես ։ Ինչու որ
Հրեայ չէ ան որ դրսուանց է , և
թլփատութիւն չէ ան որ դրսուանց
29 մարմինով է . Հապա Հրեայ ան է
որ ներսուանց է , և թլփատութիւն
սրտինը՝ հոգիով , ու չէ՛ թէ գի-
րով . որուն գովութիւնը չէ՛ թէ
մարդիկներէն է , հապա Աստուծմէ ։

## ԳԼ. Գ

1 Ուրեմն Հրէան ի՞նչ աւելի բան
ունի , կամ թլփատութենէն
2 ի՞նչ շահ կայ ։ Շատ՝ ամէն
կերպով . պինտ առաջ ան՝ որ Աս-
տուծոյ պատգամները անոնց հա-
3 ւատացուեցաւ ։ Քանզի թէ որ ա-
նոնցմէ ոմանք չհաւատացին , ի՞նչ .
միթէ անոնց անհաւատութիւնը
Աստուծոյ հաւատարմութիւնը կը
4 խափանէ՞ր . քաւ լիցի ։ Սակայն
Աստուած ճշմարիտ թող ըլլայ ,
և բոլոր մարդիկ՝ սուտ . ինչպէս որ
գրուած է . Որ քու խօսքերուդ մէջ
արդար ըլլաս , և դատուելու ատենդ
5 դուն յաղթես ։ Ուրեմն թէ որ
մեր անիրաւութիւնը Աստուծոյ
արդարութիւնը յայտնի կը ցու-
ցընէ , ի՞նչ ըսենք . արդեօք ա-
նիրա՞ւ է Աստուած որ իր բարկու-
6 թիւնը վրանիս կը բերէ . (Մարդ-
կօրէն կ'ըսեմ .) քաւ լիցի . հա-
պա թէ չէ՝ ի՞նչպէս Աստուած պիտի
7 դատէ աշխարհը ։ Ինչու որ եթէ
Աստուծոյ ճշմարտութիւնը իմ սը-
տութիւնովս կ'աւելնայ իր փառքին
համար , ալ ես ի՞նչու մեղաւորի
8 մը պէս կը դատուիմ ։ Ու ինչո՞-
համար պէտք չէ ըսել , ինչպէս որ
ոմանք մեր վրայ չարախօսութիւն
ընելով կ'ըսեն թէ մենք կ'ըսենք ,
Չարը գործենք՝ որ բարին գայ .
որոնց դատապարտութիւնը իրա-
ւունքով է ։
9 Ուստի ալ ի՞նչ ըսենք . բանով
մը աւելի՞ ենք հեթանոսներէն . ի-
րաւ որ բանով մըն ալ չէ՛ . ինչու որ
առաջ մեղադրեցինք Հրեաները
և հեթանոսները թէ ամէնքը մե-
ղաց տակ են . Ինչպէս որ գրուած 10
է թէ Արդար մը չկայ՝ ոչ մէկ
հատ մը . Մէկը չկայ որ հասկը- 11
նայ , մէկը չկայ որ Աստուած փըն-
տըռէ ։ Ամէնքը խոտորեցան , 12
մէկտեղ անպիտան եղան . աղէկու-
թիւն ընող մը չկայ , մէկ մըն ալ
չկայ ։ Անոնց կոկորդը բաց գե- 13
րեզման է , իրենց լեզուովը նենգա-
ւոր եղան , իժերու թոյն կայ անոնց
շրթունքներուն տակը . Անոնց բե- 14
րանը անէծքով ու դառնութեամբ
լեցուն է . Անոնց ոտքերը շուտ են 15
արիւն թափելու . Կործանում և 16
թշուառութիւն կայ իրենց ճամբա-
ներուն մէջը . Ու խաղաղութեան 17
ճամբան չճանչցան ։ Աստուծոյ 18
վախը չկայ անոնց աչքերուն առջին ։
Սակայն գիտենք որ օրէնքը ինչ որ 19
կ'ըսէ , անոնց կ'ըսէ՝ որ օրէնքին
տակն են . որպէս զի ամէն բերան
գոցուի , և բոլոր աշխարհ դատա-
պարտուած ըլլայ Աստուծոյ առջևը ։
Ինչու որ անոր առջևը մէկ մարմին 20
մը պիտի չարդարանայ օրէնքին
գործքերովը . քանզի օրէնքով է
մեղքը ճանչնալը ։
Բայց հիմա առանց օրէնքի Աս- 21
տուծոյ արդարութիւնը յայտնուած
է , օրէնքէն և մարգարէներէն վկա-
յուած ըլլալով . Այսինքն Աստուծոյ 22
արդարութիւնը որ Յիսուս Քրիս-
տոսի հաւատքէն է՝ ամէն հաւատա-
ցողներուն ու անոնց ամէնուն վրայ
կ'ըլլայ . քանզի խտրութիւն չկայ .
Ինչու որ ամէնքը մեղք գործեցին , 23
և Աստուծոյ փառքէն պակաս են ։
Ու անոր շնորհքովը ձրի կ'արդա- 24
րանան Քրիստոս Յիսուսով եղած
փրկութեամբը . Որ զանիկայ ա- 25
ռաջուց սահմանեց Աստուած՝ քա-
ւութիւն ըլլալու անոր արեանը
հաւատքով , Աստուծոյ երկայնմտու-
թեան ատենները առաջուց գոր-
ծուած մեղքերուն թողութիւն տա-
լովը՝ իր արդարութիւնը ցուցընելու
համար . Այսինքն իր արդարու- 26
թիւնը աս ժամանակիս մէջ ցու-
ցընելու համար , որ ինքը արդար
ըլլայ , և արդարացընէ Յիսուսի

27 հաւատքէն եղաւ ։ Ուրեմն մեր
մեծ պարծենալը . խափանեցաւ .
ո՞ր օրէնքէն , գործքերո՞ւն օրէնքէն .
չէ՛ , հապա հաւատքի օրէնքէն ։
28 Վասն զի կը սեպենք թէ մարդը
հաւատքով կ'արդարանայ առանց
29 օրէնքին գործքերուն ։ Միթէ Աս-
տուած միայն Հրէաներո՞ւնն է ու
հեթանոսներունը չէ՞ . այո , հե-
30 թանոսներունն ալ ։ Որովհետեւ
Աստուած մէկ է՝ որ թլփատութիւ-
նը հաւատքէն կ'արդարացընէ , և
անթլփատութիւնը նոյն հաւատ-
31 քով ։ Ուրեմն մենք հաւատքով
օրէնքը կը խափանե՞նք . քաւ լի-
ցի . հապա օրէնքը կը հաստա-
տենք ։

## ԳԼ. Դ

1 Ուրեմն ի՞նչ պիտի ըսենք թէ
գտաւ Աբրահամ մեր նախա-
2 պետը մարմնոյ կողմանէ ։ Վասն զի
որ եթէ Աբրահամ գործքով ար-
դարացած ըլլար , իրաւցընէ պար-
ծանք կ'ունենար , բայց ոչ թէ
3 Աստուծոյ առջեւը ։ Քանզի գիր-
քը ի՞նչ կ'ըսէ . Աբրահամ Աս-
տուծոյ հաւատաց , և ան իրեն ար-
4 դարութիւն սեպուեցաւ ։ Բայց
ան որ գործ մը կ'ընէ , վարձքը
շնորհքէ եղած չսեպուիր անոր ,
5 հապա պարտքէ ։ Իսկ ան որ չգոր-
ծեր , բայց կը հաւատայ անոր
որ ամբարիշտը կ'արդարացընէ ,
անոր հաւատքը իրեն արդարու-
6 թիւն կը սեպուի ։ Ինչպէս որ
Դաւիթ ալ կը գրուցէ ան մար-
դուն երանութիւնը , որուն Աս-
տուած արդարութիւն կը սեպէ
7 առանց գործքերու ։ Երանի՜ ա-
նոնց՝ կ'ըսէ , որոնց անօրէնութիւն-
ները ներուեցան , և որոնց մեղքերը
8 ծածկուեցան ։ Երանի՜ ան մար-
դուն որ Տէրը մեղք չսեպեր անոր ։
9 Ուստի այս երանութիւնը թլփա-
տութեա՞ն վրայ է , թէ անթլփա-
տութեան վրայ ալ . քանզի կ'ըսենք
թէ Հաւատքը Աբրահամին արդա-
10 րութիւն սեպուեցաւ ։ Ուրեմն
ինչպէ՞ս սեպուեցաւ . թլփատու-
թեա՞ն մէջ եղած ատենը , թէ
անթլփատութեան մէջ . չէ՛ թէ
թլփատութեան մէջ , հապա ան-
թլփատութեան ։ Ու ետքը թլ- 11
փատութեան նշանը առաւ՝ իբրեւ
անթլփատութեան ատենէն ունե-
ցած հաւատքին արդարութեանը
մէկ կնիք մը , որ ինքը հայր ըլլայ
ան բոլոր հաւատացեալներուն՝ որոնք
անթլփատութեան են , ( անոնց ալ
արդարութիւն սեպուելու համար ,)
Ու հայր թլփատութեան՝ չէ՛ թէ 12
միայն թլփատութենէ եղողներուն ,
հապա անոնց ալ՝ որ մեր հօրը Աբ-
րահամին անթլփատութեան ատենի
հաւատքին շաւիղներուն մէջը կը
քալեն ։ Վասն զի որ Աբրահամին և 13
անոր սերունդին՝ աշխարհը ժառան-
գելու համար եղած խոստմունքը
չէ՛ թէ օրէնքով եղաւ , հապա հա-
ւատքին արդարութիւնովը ։ Քանզի 14
եթէ օրէնքէն եղողները ժառանգ
ըլլային , հաւատքը փուճ պիտի ըլ-
լար , և խոստմունքը պիտի խափա-
նուէր ։ Վասն զի օրէնքը բարկու- 15
թիւն կը գործէ . քանզի ուր որ
օրէնք չկայ , օրինազանցութիւն ալ
չկայ ։ Անոր համար ժառանգ ըլլալը 16
հաւատքէն է , որ շնորհքով եղած
ըլլայ , խոստմունքը հաստատուն ըլ-
լալու համար բոլոր սերունդին , չէ՛
թէ միայն անոր որ օրէնքէն է ,
հապա անոր ալ՝ որ Աբրահամին
հաւատքէն է , որ մեր ամենուն
հայրն է , ( Ինչպէս որ գրուած է 17
թէ Քեզ շատ ազգերու հայր ըրի ,)
Աստուծոյ առջեւը , որուն ինքը հա-
ւատաց , ան որ մեռելները կ'ողջ-
ցընէ , և չեղած բաները եղած-
ներու պէս կը կանչէ ։ Որ չյու- 18
սացուելու բանին յուսով հաւա-
տաց՝ թէ ինքը շատ ազգերու հայր
պիտի ըլլայ , ( Ինչպէս որ խօսուեցաւ
ալ թէ Քու սերունդդ ասանկ
պիտի ըլլայ . ) Ու ինքը հաւատ- 19
քին մէջ չտկարացած , չնայեցաւ իր
մարմինին արդէն մեռածի պէս ըլ-
լալուն , ( որովհետեւ ինքը հարիւր
տարեկանի չափ էր , ) ոչ ալ Սա-
րային արգանդին մեռած ըլլալուն ։
Ու անհաւատութիւնով չտարա- 20
կուսեցաւ Աստուծոյ խոստմունքէն ,

հապա. հաւատքով զօրացած՝ Աս-
21 տուծոյ փառք տուաւ, Եւ իր միտքին
մէջ հաստատ գիտցաւ թէ ան որ
խոստք տուաւ, ինքը կարող է ընելու
22 ալ: Անոր համար իրեն արդա-
րութիւն սեպուեցաւ:
23 Բայց չէ թէ միայն անոր համար
գրուեցաւ որ իրեն սեպուեցաւ.
24 Հապա մեզի համար ալ՝ որոնց պի-
տի սեպուի, որ կը հաւատանք ա-
նոր որ մեռելներէն յարոյց մեր Տէր
25 Յիսուսը, Ան որ մեր յանցանացը
համար մատնուեցաւ, և մեզ ար-
դարացընելու համար յարութիւն
առաւ:

## ԳԼ. Ե

1 Ուստի մենք հաւատքով արդարա-
ցած ըլլալով՝ խաղաղութիւն
ունինք Աստուծոյ հետ մեր Տէրոջը
2 Յիսուս Քրիստոսի ձեռքովը. Անոր
միջոցովը ընդունեցինք հաւատքով
այս շնորհքիս մտնելն ալ, որուն
մէջը կեցեր ենք, և Աստուծոյ փառ-
3 քաց յուսովը կը պարծինք: Եւ
ոչ միայն այսչափ, հապա նաև նե-
ղութիւններու մէջ կը պարծինք.
ինչու որ գիտենք թէ նեղութիւնը
4 համբերութիւն կը գործէ, Եւ
համբերութիւնը՝ փորձառութիւն,
5 ու փորձառութիւնը՝ յոյս. Եւ
յոյսը ամօթով չձգեր. ինչու որ
Աստուծոյ սէրը մեր սրտերուն մէ-
ջը տարածուած է Հոգւոյն Սրբ-
ոյ ձեռքովը, որ մեզի տրուե-
6 ցաւ: Վասն զի երբոր մենք դեռ
տկար էինք, յարմար ժամանակին
Քրիստոս ամբարիշտներուն համար
7 մեռաւ: Ինչու որ արդարի մը հա-
մար հազիւ կ'ըլլայ որ մէկը մեռ-
նի. (բայց մէկ բարի մարդու մը
համար կարելի է որ մէկը համար-
8 ձակի մեռնելու.) Սակայն Աս-
տուած իր սէրը որ մեր վրայ ունի՝
յայտնեց, որ երբ դեռ մեղաւոր
9 էինք, Քրիստոս մեզի համար մե-
ռաւ. ուրեմն հիմա որ իր արիւնո-
վը արդարացանք, որչափ աւելի իր-
մով պիտի ազատինք բարկութե-
10 նէն: Վասն զի թէ որ թշնամի
եղած ատեննիս Աստուծոյ հետ հաշ-
տուեցանք իր Որդւոյն մահովը, որ-
չափ աւելի մեր հաշտուած ատենը
պիտի ազատինք անոր կեանքովը: Եւ 11
ոչ միայն այս, հապա Աստուծով
ալ կը պարծենանք մեր Տէրոջը Յի-
սուս Քրիստոսի ձեռքովը, որով
հիմա հաշտութիւնը ընդունեցինք:
Վասն զի ինչպէս որ մէկ մարդէ 12
մը մեղքը աշխարհք մտաւ, և ան
մեղքէն մահը, և այնպէս ամէն
մարդոց վրայ տարածուեցաւ մա-
հը, քանզի ամէնքը մեղանչեցին:
(Վասն զի մինչև օրէնքին ատենը 13
աշխարհի մէջ մեղք կար. բայց
մեղք չսեպուիր՝ ուր որ օրէնք չը-
կայ: Սակայն մահը Ադամէն մին- 14
չև Մովսէս թագաւորեց, նաև Ա-
դամին յանցանքին նման չմեղանչող-
ներուն վրայ ալ, որ ան օրինակ էր
անոր որ ետքէն պիտի գար: Բայց 15
չէ թէ ինչպէս յանցանքը՝ անանկ
ալ շնորհքն է. ինչու որ եթէ մէ-
կուն յանցանքովը շատերը մեռան,
ալ որչափ աւելի Աստուծոյ շնորհ-
քը և ան պարգևը որ Յիսուս
Քրիստոս մէկ մարդուն շնորհքովն
է, շատերուն վրայ աւելցաւ: Եւ 16
չէ թէ այս պարգևը անանկ է՝ ինչ-
պէս մէկէ մը որ մեղանչեց. ինչու
որ դատաստանը մէկ մեղքէն դատա-
պարտութեան մէջ ինկաւ. բայց շը-
նորհքը շատ մեղքերէն արդարու-
թեան տարաւ: Վասն զի թէ որ 17
մէկ մարդուն մեղքովը մահը թա-
գաւորեց ան մէկովը, որչափ աւելի
անոնք որ շնորհքի ու արդարութեան
պարգևին առատութիւնը կ'առնեն,
կենաց մէջ պիտի թագաւորեն՝ մէկ
Յիսուս Քրիստոսին ձեռքովը:)
Ուրեմն ինչպէս որ մէկուն յանցան- 18
քովը բոլոր մարդոց դատապարտու-
թեան վճիռ եղաւ, անանկ ալ մէ-
կուն արդարութիւնովը բոլոր մար-
դոց կենաց արդարութեան շնորհ-
եղաւ. Վասն զի ինչպէս որ մէկ 19
մարդուն անհնազանդութիւնովը շա-
տերը մեղաւոր եղան, անանկ ալ
մէկուն հնազանդութիւնովը շատերը
արդար պիտի ըլլան: Սակայն օ- 20
րէնքը մէջտեղ ինկաւ որ յանցան-
քը շատնայ. բայց ուր որ աւելցաւ

եղաւ մեղքը , ալ աւելի եղաւ շը-
21 նորհքը . Որ ինչպէս մեղքը թա-
գաւորեց մահուամբ , անանկ ալ շը-
նորհքը թագաւորէ արդարութեամբ
մինչեւ յաւիտենական կեանքը մեր
Տէրոջը Յիսուս Քրիստոսի ձեռքովը :

## ԳԼ. Զ.

1 Ալ հիմա ի՞նչ պիտի ըսենք . մեղ-
քերու մէջ մնա՞նք արդեօք , որ
2 շնորհքը շատնայ : Քաւ լիցի .
մենք որ մեղքին մեռանք , ի՞նչպէս
3 դեռ անոր մէջը կենանք : Չէ՞ք
գիտեր թէ մենք որ Յիսուս Քը-
րիստոսով մկրտուեցանք , անոր
4 մահուանը մկրտուեցանք : Անոր
հետ թաղուեցանք մկրտութիւնով
մահուան համար , որ ինչպէս Քը-
րիստոս Հօրը փառքովը յարութիւն
առաւ մեռելներէն , անանկ ալ մենք
կենաց նորոգութեան մէջ պտըտ-
5 տինք : Ինչու որ եթէ մենք տըն-
կակից եղանք անոր մահուանը նմա-
նութիւնովը , նաեւ անոր յարու-
թեանը նմանութիւնովն ալ կցորդ
6 պիտի ըլլանք : Ասիկա գիտնանք որ
մեր հին մարդը անոր հետը խա-
չուեցաւ , որ մեղաց մարմինը փը-
ճանայ , որ ասկէ ետեւ մեղքի չը-
7 ծառայենք : Վասն զի ան որ [illegible]
մեռած է՝ մեղքէն արդարացած է :
8 Արդ թէ որ մենք Քրիստոսի հետ
մեռանք , կը հաւատանք որ անոր
9 հետը պիտի ապրինք ալ : Քանզի
գիտենք որ Քրիստոս մեռելներէն
յարութիւն առած ըլլալով՝ նորէն
չմեռնիր , ալ մահը անոր վրայ իշ-
10 խանութիւն չունի : Վասն զի քա-
նի որ մեռաւ՝ մեղքին մեռաւ մէկ
անգամ , եւ որ կենդանի է՝ Աստու-
11 ծոյ կենդանի է : Անանկ ալ դուք
ձեր անձերը մեղքին մեռած սեպե-
ցէք , բայց Աստուծոյ կենդանի՝ մեր
Տէրոջը Քրիստոս Յիսուսի ձեռ-
12 քովը : Ուստի ալ մեղքը չթա-
գաւորէ՛ ձեր մահկանացու մարմիններին
վրայ , որ անոր ցանկութիւններուն
13 հնազանդիք : Ու ձեր անդամները
անիրաւութեան գործիք ըլլալու մի՛
ընծայէք մեղքին , հապա ձեր ան-
ձերը Աստուծոյ ընծայեցէք՝ որպէս
թէ մեռելներէն ողջնցած . եւ ձեր
անդամները արդարութեան գոր-
ծիքներ՝ Աստուծոյ : Քանզի մեղ- 14
քը վրանիդ պիտի չիշխէ . ինչու
որ օրէնքի տակ չէք , հապա շնոր-
հաց տակ :

Ուրեմն ի՞նչ . մե՞ղք գործենք 15
որ օրէնքի տակ չենք , հապա շը-
նորհքի տակ . քաւ լիցի : Չէ՞ք 16
գիտեր թէ որուն որ անձերնիդ
ծառայ կ՚ընծայէք հնազանդելու ,
ծառայ էք անոր՝ որուն որ կը հնա-
զանդիք , թէ՛ մեղքի՝ որ մահուան
կը տանի , եւ թէ հնազանդելու՝ որ
արդարութեան : Բայց գոհութիւն 17
Աստուծոյ , որ թէեւ դուք մեղաց
ծառայ էիք , սակայն սրտանց հնա-
զանդեցաք այն վարդապետութեան
գաղափարին որ ձեզի յանձնուե-
ցաւ : Ուստի դուք մեղքէն ազատ 18
ըլլալով՝ արդարութեան ծառայ ե-
ղաք . (Մարդու սովորութեան պէս 19
կ՚ըսեմ՝ ձեր մարմնին տկարու-
թեանը համար .) քանզի ինչպէս որ
ձեր անդամները անօրէնութեան
համար ընծայեցիք՝ պղծութեան եւ
անօրէնութեան ծառաներ ըլլալու ,
անանկ ալ հիմա ձեր անդամները
սրբութեան համար ընծայեցէք՝ ար-
դարութեան ծառաներ ըլլալու :
Վասն զի երբոր դուք մեղաց ծա- 20
ռաներ էիք , արդարութենէն ա-
զատ էիք : Ուրեմն այն ժամանակը 21
ի՞նչ պտուղ ունէիք այն բաներէն՝
որոնցմով հիմա կ՚ամչնաք . ինչու
որ անոնց վերջը մահ է : Բայց 22
հիմա մեղքէն ազատուած եւ Աս-
տուծոյ ծառաներ եղած՝ ձեր պտուղը
ունիք սրբութիւնով , ու վերջը
յաւիտենական կեանք : Քանզի 23
մեղաց վարձքը մահ է , բայց Աս-
տուծոյ ձրի պարգեւը յաւիտենական
կեանք՝ մեր Տէրոջը Յիսուս Քրիս-
տոսի ձեռքովը :

## ԳԼ. Է.

Մի՞թէ չէ՞ք գիտեր եղբայրներ , 1
(քանզի ես օրէնքը գիտցողնե-
րուն կը խօսիմ ,) որ օրէնքը մար-
դուս վրայ կ՚իշխէ՝ որչափ ժամանակ
որ ողջ է : Ինչու որ էրիկ ունե- 2

ցող կնիկը իր այր էրկանը կա-
պուած է օրէնքով . բայց թէ որ է-
րիկը մեռնի , արձակուած է էրկանը
3 օրէնքէն : Ուրեմն քանի որ էրիկը
ողջ է , շուն պիտի ըսուի՝ թէ որ
ուրիշ էրկան մը ըլլայ . բայց թէ
որ էրիկը մեռնի , ան օրէնքէն ա-
զատ կ'ըլլայ , անանկ որ շնացող
չըլլար , թէ որ ուրիշ էրկան մը
4 ըլլայ : Ուստի դուք ալ իմ եղ-
բայրներս՝ Քրիստոսի մարմինովը
օրէնքին մեռաք , որ ուրիշի մը ըլ-
լաք , անոր՝ որ մեռելներէն յարու-
թիւն առեր է , որ Աստուծոյ պը-
5 տուղ բերող ըլլանք . Վասնզի
քանի որ մենք մարմնով էինք՝ մե-
ղաց կիրքերը որ օրէնքով կ'ըլլա-
յին , մեր անդամներուն մէջը կը
ներգործէին , որ մենք մահուան
6 պտուղ բերենք : Բայց հիմա ան
օրէնքէն արձակուեցանք . քանզի որ
մեռանք անոր՝ որով բռնուած էինք ,
որ մենք ծառայենք հոգւոյն նորո-
գութեամբը , և չէ՝ թէ գրոյն հնու-
թեամբը :
7 Ուրեմն ի՞նչ ըսենք . օրէնքը
մե՞ղք է , քաւ լիցի . բայց ես մեղ-
քը չէի ճանչնար , եթէ ոչ օրէն-
քով . ինչպէս ցանկութիւնն ալ
չէի գիտեր , թէ որ օրէնքը ըսած
8 չըլլար , Մի՛ ցանկար : Բայց մեղ-
քը պատուիրանքէն առիթ առնե-
լով՝ իմ մէջս բոլոր ցանկութիւն-
ները գործեց . քանզի որ առանց
9 օրէնքի մեղքը մեռած է : Ես ալ
առանց օրէնքի ատեն մը կենդանի
էի . բայց երբոր պատուիրանքը
վրայ հասաւ , մեղքը ողջնցաւ ,
10 Եւ ես մեռայ . ու ան պատուիրանքը
որ կենաց համար էր , նոյնը ինծի
11 մահուան համար եղաւ : Քանզի
որ մեղքը պատուիրանքէն առիթ
առնելով՝ զիս խաբեց , ու անով
12 մեռցուց : Ուստի օրէնքը սուրբ
է , ու պատուիրանքը սուրբ և ար-
դար ու բարի :
13 Ուրեմն բարին ինծի մա՞հ եղաւ ,
քաւ լիցի . հապա մեղքը , որպէս
զի երևնայ մեղքը որ ան բարի բա-
նով ինծի մահ գործեց , որ մեղքը
պատուիրանքով աւելի մեղաւոր
ըլլայ : Վասն զի գիտենք որ օ- 14
րէնքը հոգևոր է , բայց ես մարմ-
նաւոր եմ՝ մեղքի տակ ծախուած :
Վասնզի ինչ որ կ'ընեմ չեմ ճանչ- 15
նար . չէ՝ թէ ինչ որ կ'ուզեմ՝
ան կ'ընեմ , հապա ինչ որ կ'ա-
տեմ՝ ան կ'ընեմ : Բայց թէ որ 16
չուզածս կ'ընեմ , հաւանութիւն
կու տամ օրէնքին թէ բարի է :
Իսկ արդ չէ՝ թէ ես կ'ընեմ անի- 17
կայ , հապա մեղքը՝ որ իմ ներսի
դիս կը բնակի : Վասնզի գիտեմ 18
որ իմ ներսիդիս՝ այսինքն իմ մար-
մինիս մէջ մէկ բարի բան մը չբը-
նակիր . քանզի որ կամեցողութիւն
կայ քովս , բայց բարին 'ի գործ
դնելը չեմ գտներ : Վասնզի չէ՝ թէ 19
բարին որ կ'ուզեմ՝ կ'ընեմ , հապա
չարը որ չեմ ուզեր՝ ան կ'ընեմ :
Իսկ թէ որ չուզած բանս կ'ընեմ , 20
ալ չէ՝ թէ ես կ'ընեմ անիկայ ,
հապա մեղքը՝ որ իմ ներսի դիս
բնակած է : Ուստի ես կը գտնեմ 21
օրէնք մը՝ որ երբ բարին ընելը կը
կամենամ , չարը իմ քովս է :
Վասն զի ներսի մարդուն նայելով՝ 22
Աստուծոյ օրէնքին կը հաճիմ .
Բայց ուրիշ օրէնք մը կը տեսնեմ 23
իմ անդամներուս մէջ՝ որ իմ միտ-
քիս օրէնքին դէմ կը պատերազմի ,
և զիս գերի կ'ընէ մեղաց օրէնքին
որ իմ անդամներուս մէջն է :
Ի՜նչ խղճալի մարդ եմ ես . ո՞վ 24
զիս պիտի ազատէ աս մահացու
մարմինէն : Գոհութիւն Աստու- 25
ծոյ՝ մեր Տէրոջը Յիսուս Քրիստո-
սի ձեռքովը . ուրեմն ես ինքնս միտ-
քով Աստուծոյ օրէնքին կը ծառա-
յեմ , ու մարմինով՝ մեղաց օրէնքին :

## ԳԼ. Ը.

Իսկ արդ դատապարտութիւն չը- 1
կայ Քրիստոս Յիսուսով եղող-
ներուն՝ որոնք մարմնաւոր կերպով
չեն վարուիր : Քանզի որ Քրիստոս 2
Յիսուսով կենաց հոգիին օրէնքը
զիս ազատեց մեղաց և մահուան
օրէնքէն : Վասն զի ան որ անկա- 3
րելի էր օրէնքին՝ որովհետև տկար
էր մարմինով , Աստուած իր Որդին
խրկեց մեղանչական մարմինի նմա-

նութեանը ու մեղքի համար , և
դատապարտեց մեղքը այն մարմնին
4 մէջ ․ Որ օրէնքին արդարութիւնը
կատարուի մեր մէջ , որ մարմնա-
ւորապէս չենք քալեր՝ հապա հո-
5 գևորապէս ։ Ինչու որ մարմնաւոր
եղողները մարմինին բաները կը
մտածեն , ու հոգևոր եղողները՝
6 հոգիին բաները ։ Վասն զի մարմ-
նաւոր խորհուրդը մահ է , և հո-
գևոր խորհուրդը կեանք ու խաղա-
7 ղութիւն ։ Քանզի մարմնաւոր
խորհուրդը Աստուծոյ դէմ թշնա-
մութիւն է ․ ինչու որ Աստուծոյ
օրէնքին չհնազանդիր , մանաւանդ
8 չկրնար ալ ։ Վասն զի մարմինով
եղողները չեն կրնար Աստուծոյ հա-
9 ճոյ ըլլալ ։ Բայց դուք մարմինով
չէք , հապա հոգիով , թէ որ Աս-
տուծոյ Հոգին ձեր մէջը բնակած
է ․ իսկ թէ որ մէկը Քրիստոսի
Հոգին չունի , անիկայ անորը չէ ։
10 Եւ թէ որ Քրիստոս ձեր մէջն է ,
ալ մարմինը մեռած է մեղքի հա-
մար , ու հոգին կենդանի է արդա-
11 րութեան համար ։ Իսկ թէ որ
Յիսուսը մեռելներէն յարուցանո-
ղին Հոգին ձեր մէջը բնակած է ,
ալ անիկայ որ Քրիստոսը մեռել-
ներէն յարուց , պիտի կենդանա-
ցընէ ձեր մահկանացու մարմիննե-
րը իր Հոգիովը որ ձեր մէջը կը
բնակի ։
12 Ապա ուրեմն եղբայրներ՝ պար-
տական ենք , չէ թէ մարմինին՝
13 մարմնաւորապէս ապրելու ․ Ինչու
որ եթէ մարմնաւորապէս ապրելու
ըլլաք , պիտի մեռնիք ․ բայց թէ
որ Հոգիով մարմինին գործքերը
14 սպաննէք , պիտի ապրիք ։ Վասն
զի որոնք որ Աստուծոյ Հոգիովը
կ'առաջնորդուին , անոնք Աստուծոյ
15 որդիքն են ։ Ինչու որ դուք ծա-
ռայութեան հոգին չառիք կրկին
վախնալու , հապա որդեգրութեան
հոգին առիք , որ անով կը կան-
16 չենք Աբբայ Հայր ։ Նոյն ինքն
Հոգին վկայութիւն կու տայ մեր
հոգիին հետ , թէ մենք Աստուծոյ
17 որդիքն ենք ․ Եւ թէ որ որդիք ,
ուրեմն ժառանգներ ․ Աստուծոյ ժա-
ռանգներ , ու Քրիստոսի ժառան-
գակիցներ ․ որ եթէ իր չարչարա-
նացը կցորդ ըլլանք , իր փառացն
ալ հաղորդ ըլլանք ։
Վասն զի ես այսպէս կը գատեմ 18
որ այս ժամանակիս չարչարանքները
բան մը չեն գալու փառքին քովը ,
որ մեզի պիտի յայտնուի ։ Ինչու 19
որ ստեղծուածոց եռանդուն ակնկա-
լութիւնը Աստուծոյ որդւոցը յայտ-
նուելուն կը սպասէ ։ Ինչու որ 20
ունայնութեան հնազանդեցան ստեղ-
ծուածները՝ (չէ թէ իրենց կամ-
քովը , հապա անոր համար որ հնա-
զանդեցուց , ) Այն յուսով՝ որ 21
ստեղծուածները իրենք ալ ապա-
կանութեան ծառայութենէն ազա-
տելով՝ Աստուծոյ որդւոցը փառա-
ւոր ազատութեանը հասնին ։ Քան- 22
զի գիտենք որ ամէն ստեղծուածները
մինչև հիմա մէկտեղ կը հառաչեն
ու ծննդականի ցաւ կը քաշեն ։ Եւ 23
ոչ միայն ասոնք , հապա մենք ալ
որ Հոգիին առաջի պտուղը ունինք ,
մենք մեզմէ մեր անձերուն մէջ կը
հառաչենք , որդեգրութեան՝ այսինքն
մեր մարմինին ազատութեանը սպա-
սելով ։ Ինչու որ յուսով փրկ- 24
ուեցանք ․ բայց յոյսը որ կը տես-
նուի՝ յոյս չէ ․ վասն զի ան բանը
որ կը տեսնէ մէկը՝ ալ ինչո՞ւ պիտի
յուսայ ։ Հապա թէ որ չտեսած 25
բաներնուս կը յուսանք , ալ համ-
բերութիւնով կը սպասենք անոր ։
Նմանակ ալ Հոգին օգնութեան կը 26
հասնի մեր տկարութիւններուն ․
քանզի ինչ բանի համար աղօթելու
ենք ըստ արժանւոյն , չենք գիտեր ․
բայց ինքը Հոգին բարեխօս կ'ըլլայ
մեզի համար անբարբառ հառա-
չանքներով ։ Եւ սիրտերը քննո- 27
ղը գիտէ Հոգիին ինչ խորհիլը ․
քանզի Աստուծոյ կամացը համեմատ
բարեխօսութիւն կ'ընէ սուրբերուն
համար ։
Սակայն գիտենք որ ամէն բաները 28
բարիի գործակից կ'ըլլան անոնց որ
Աստուած կը սիրեն , որոնք անոր
նախասահմանութեամբը կանչուած
են ։ Վասն զի անոնք որ առաջ կը 29
ճանչնար , առաջուց ալ սահմանեց

11 ըսէ :) Քանզի գիրքը կ'ըսէ, Ա-
մէն մէկ որ անոր հաւատայ՝ պիտի
12 չամչնայ : Ինչու որ խտրութիւն
չկայ Հրէային ու Յոյնին մէջտեղը .
վասն զի ամենուն Տէրը նոյնն է,
առատ ամենուն որ իրեն կը կան-
13 չեն : Քանզի ամէն որ Տէրոջը ա-
նունը կանչէ՝ պիտի փրկուի :
14 Ուրեմն ի՞նչպէս պիտի կանչեն
անոր՝ որուն որ չհաւատացին . կամ
ի՞նչպէս պիտի հաւատան անոր՝ ո-
րուն վրայով չլսեցին . կամ ինչպէ՞ս
պիտի լսեն առանց մէկու մը քա-
15 րոզելուն . Կամ ի՞նչպէս պիտի
քարոզեն՝ թէ որ չղրկուին . ինչ-
պէս որ գրուած է . Ինչպէ՜ս գեղե-
ցիկ են խաղաղութիւն աւետարա-
նողներուն ու բարի բաներու աւե-
16 տիս տուողներուն ոտքերը : Բայց
ամէնը հնազանդ չեղան աւետարա-
նին . քանզի Եսայի կ'ըսէ, Տէ՛ր
ո՞վ հաւատաց մեր տուած լուրին :
17 Ուրեմն հաւատքը լսելէն է, ու
18 լսելը Աստուծոյ խօսքէն : Բայց
կ'ըսեմ, Միթէ չլսեցի՞ն . Ան-
տարակոյս Բոլոր երկիրը ելաւ անոնց
ձայնը, ու անոնց խօսքը մինչև
19 աշխարհի ծայրերը : Բայց կ'ը-
սեմ, Միթէ Իսրայէլ չգիտցա՞ւ .
առաջ Մովսէս կ'ըսէ, Ես ձեզ
նախանձի պիտի գրգռեմ անազգական
ժողովուրդով մը, ու անմիտ ազ-
գով մը ձեզ պիտի բարկացնեմ :
20 Բայց Եսայի կը համարձակի ու
կ'ըսէ, Ես անոնց գտնուեցայ՝ որ
զիս չէին փնտռեր, յայտնի եղայ
անոնց՝ որ զիս չէին հարցըներ :
21 Սակայն Իսրայէլին վրայով կ'ըսէ,
Բոլոր օրը իմ ձեռքերս երկնցուցի
անհնազանդ ու հակառակող ժողո-
վուրդի մը :

## ԳԼ. ԺԱ

1 Ուրեմն կ'ըսեմ ; Միթէ Աստուած
իր ժողովուրդը մերժե՞ց . քաւ
լիցի . Ինչու որ ես ալ Իսրայէլացի
եմ, Աբրահամի սերունդէն՝ Բենիա-
2 մինի ցեղէն : Չմերժեց Աստուած
իր ժողովուրդը՝ որն որ յառա-
ջուց ճանչցաւ . միթէ չէ՞ք գիտեր
Եղիային պատմութեանը մէջ՝ գիրքը
ի՞նչ կ'ըսէ . Ինչպէս անիկայ Իս-
րայէլին հակառակ աղաչանք կ'ընէ Աս-
3 տուծոյ, ըսելով . Տէ՛ր՝ քու մարգա-
րէներդ մեռցուցին ու քու սե-
ղաններդ փլուցին, ու միայն ես
մնացեր եմ, և իմ անձս կը փնտը-
4 ռեն : Բայց ի՞նչ կ'ըսէ անոր՝
աստուածային պատասխանը . Ինծի
թողուցի՝ կ'ըսէ, եօթը հազար
մարդիկ, որոնք Բահաղին ծնրադ-
5 րութիւն չըրին : Անանկ ալ աս
առենս շնորհքին ընտրութեանը
6 համեմատ մնացորդ մը կայ . Իսկ
թէ որ շնորհքով, ուրեմն ալ գործ-
քերէն չէ . ապա թէ ոչ՝ շնորհքը
ալ շնորհք չըլլար . իսկ թէ որ
գործքերէն է, ալ շնորհք չէ . ապա
թէ ոչ՝ գործը ալ գործ չըլլար :
7 Ուրեմն ի՞նչ . Իսրայէլ չհասաւ
ան բանին որ կը փնտռէր . բայց
ընտրուածները հասան, ու մնա-
8 ցածները կուրցան, (Ինչպէս որ
գրուած է, Աստուած անոնց թըմ-
րութեան ոգի տուաւ, աչքեր՝ ո-
րոնցմով պիտի չտեսնեն, ու ականջ-
ներ՝ որոնցմով պիտի չլսեն,) մինչև
9 աս օրուան օրս : Եւ Դաւիթ
կ'ըսէ, Անոնց սեղանը իրենց որո-
գայթ ու որս և գայթակղութիւն
10 ու հատուցումն ըլլայ . Անոնց աչ-
քերը մթննան՝ որ չտեսնեն, ու
անոնց կռնակը միշտ վար ծռէ :
11 Ուրեմն կ'ըսեմ, Միթէ անո՞ր
համար անոնք յանցանք ըրին, որ
կործանին . քաւ լիցի . հապա իրենց
յանցանքովը հեթանոսաց փրկու-
թիւն եղաւ, որ զիրենք նախանձի
12 գրգռէ : Ուստի թէ որ անոնց
յանցանքը աշխարհի մեծութիւն ե-
ղաւ, ու անոնց նուաստութիւնը՝
հեթանոսներուն մեծութիւն, ալ
որչափ աւելի անոնց լըրութիւնը :
13 Բայց ձեզի կ'ըսեմ հեթանոսնե-
րուդ . Որովհետև հեթանոսներուն
առաքեալ եմ՝ իմ պաշտօնս կը մե-
14 ծարեմ . Որ գուցէ իմ մարմինս
եղողները նախանձի գրգռեմ, ու
անոնցմէ մէկ քանիները ազատը-
15 նեմ : Վասն զի թէ որ անոնց
մերժուիլը աշխարհիս հաշտութիւն
է, հապա անոնց ընդունուիլը ի՞նչ

պիտի ըլլայ, բայց եթէ մեռելներէն
16 կենդանի ըլլալ։ Արդ թէ որ
երախայրին սուրբ է, նաև զան-
գուածը. և թէ որ արմատը սուրբ
17 է, ոստերն ալ։ Իսկ թէ որ
այն ճիւղերէն մէկ քանիները կոտ-
րեցան, ու դուն որ վայրենի ձիթենի
էիր՝ անոնց մէջ պատուաստեցար,
ու ձիթենիին արմատին և պարար-
18 տութեանը հաղորդ եղար, Ճիւ-
ղերուն դէմ մի պարծենար. հապա
թէ որ պարծենաս, չէ թէ դուն
արմատը վեր բռներ ես, հապա ար-
19 մատը քեզ։ Ուրեմն պիտի ըսես,
Ճիւղերը կոտրեցան որ ես պատ-
20 ուաստուիմ։ Աղէկ, անոնք ան-
հաւատութիւնով կոտրեցան, ու
դուն հաւատքով հաստատուեցար.
մի հպարտանար, հապա վախցիր.
21 Ինչու որ եթէ Աստուած բնական
ճիւղերուն չխնայեց, դուցէ քեզի
22 ալ չխնայէ։ Ուստի տե՛ս Աստուծոյ
քաղցրութիւնը ու խստութիւնը,
կործանուածներուն վրայ խստու-
թիւնը՝ և քու վրադ քաղցրութիւ-
նը, թէ որ այն քաղցրութեանը
մէջ կենաս. ապա թէ ոչ՝ դուն ալ
23 պիտի կտրուիս։ Նաև անոնք ալ՝
թէ որ իրենց անհաւատութեանը
մէջ չկենան, պիտի պատուաստուին.
ինչու որ կարող է Աստուած անոնք
24 նորէն պատուաստել։ Քանզի
եթէ դուն ինքդ բնական եղող վայ-
րենի ձիթենիէն կտրուեցար, ու այն
բարի ձիթենիին վրայ որ ինքդ բը-
նական չէիր, պատուաստուեցար, ալ
որչափ աւելի անոնք որ բնական
ճիւղեր են, պիտի պատուաստուին ի-
25 րենց ձիթենիին վրայ։ Վասն զի
չեմ ուզեր եղբայրներ՝ որ չգիտնաք
այս խորհուրդս, (որպէս զի ինք-
զինքնիդ իմաստուն չսեպէք.) որ
ըստ մասին կուրութիւն եղաւ Իս-
րայէլին, մինչև որ հեթանոսներուն
26 լրութիւնը մտնէ. Նաև այսպէս բո-
լոր Իսրայէլ պիտի փրկուի. ինչ-
պէս որ գրուած է, Սիօնէն պիտի
գայ Փրկիչը, ու Յակոբէն ամ-
բարշտութիւնները մէկդի պիտի
27 դարձընէ. Նաև այս է իմ ուխտս ա-
նոնց, երբոր անոնց մեղքերը վեր-
ցընեմ։ Աւետարանին նայելով՝ 28
անոնք թշնամի են ձեր սիրոյն հա-
մար. բայց ընտրութեանը նայելով՝
սիրելի են իրենց հայրերուն սիրոյն հա-
մար։ Ինչու որ Աստուծոյ շնոր- 29
հքները ու կոչումը առանց զղջա-
նալու են։ Վասն զի ինչպէս որ 30
դուք ալ ատեն մը Աստուծոյ չէիք
հաւատար, ու հիմա ողորմութիւն
գտաք անոնց անհաւատութիւ-
նովը, Այնպէս ալ անոնք հիմա ան- 31
հաւատ եղան, որ ձեր ողորմութիւն
գտնելուդ՝ անոնք ալ ողոր-
մութիւն գտնեն։ Ինչու որ Աս- 32
տուած ամէնն ալ անհաւատութեան
մէջ արգիլեց, որ ամենուն ողորմի։
Ո՜վ Աստուծոյ մեծութեան ու 33
իմաստութեան և գիտութեան հա-
րուստութիւնը. ինչպէս անքննելի
են իր դատաստանները, ու ան-
զննելի են իր ճանապարհները։ Վասն 34
զի ո՞վ գիտցաւ Տէրոջը միտքը.
կամ ո՞վ անոր խորհրդակից եղաւ.
Կամ ո՞վ առաջուց անոր բան մը 35
տուաւ, որ փոխարէնը իրեն տըր-
ուի։ Ինչու որ ամէն բաները 36
անկէ ու անով և անոր համար են.
իրեն փառք յաւիտեան։ Ամէն։

ԳԼ. ԺԲ

Արդ կ'աղաչեմ ձեզի՝ եղբայրներ՝ 1
Աստուծոյ ողորմութեամբը, որ
ձեր մարմինները ընծայէք կենդանի
զոհ մը՝ սուրբ, Աստուծոյ հաճելի,
որ է ձեր բանաւոր պաշտօնը. Նաև 2
մի կերպարանիք այս աշխարհիս
կերպարանքովը, հապա ձեր միտքին
նորոգութեամբը նորոգուեցէք, որ
քննէք թէ ինչ է Աստուծոյ կամ-
քը, այն որ բարի ու հաճելի և
կատարեալ է։ Քանզի ինծի տըր- 3
ուած շնորհքովը ես կ'ըսեմ
ձեր մէջը եղող ամէն մէկուն,
որ արժան եղածը մտածելէն աւելի
բան չմտածէ. հապա պարկեշ-
տաբար մտածէ. ինչպէս որ Աստուած
ամէն մէկուն բաժնեց հաւատքին
չափը։ Վասն զի ինչպէս որ մէկ 4
մարմինի մէջ շատ անդամներ ու-
նինք, ու այն բոլոր անդամները մի
և նոյն գործը չունին. Այնպէս ալ 5

գէշութիւն չըներ . ուրեմն օրէնքին
լրումը սէրն է ։
11 Նաեւ այսպէս ըրէ՛ք՝ գիտնալով այս
ատենս, որ հիմա ժամանակ է մեզի
քունէ արթըննալու . Քանզի որ հի-
մա մօտ է մեզի փրկութիւնը՝ քան
թէ այն ատենը որ հաւատացինք ։
12 Գիշերը շատ անցած է ու ցորեկը
մօտեցած . ուստի մէկդի ընենք խա-
ւարին գործերը, ու վրանիս հագ-
13 նինք լուսոյ զէնքերը ։ Այնպէս թէ
ցորեկ ատեն պարկեշտութեամբ
պտըտինք, չէ՛ թէ անառակու-
թիւններով ու գինովութիւննե-
րով, ու չէ՛ թէ խառնակ անկողին-
ներով ու պղծութիւններով, ու
չէ՛ թէ հակառակութիւնով ու նա-
14 խանձով . Հապա դուք՝ հագէք
Տէր Յիսուս Քրիստոսը, ու մարմ-
նոյ խնամքը մի՛ տանիք ցանկութիւն-
ներու համար ։

ԳԼ. ԺԴ

1 Հաւատքի մէջ տկար եղողը ըն-
դունեցէ՛ք՝ չէ՛ թէ տարակուսա-
2 կան խորհուրդներով ։ Մէկը կը
հաւատայ որ ամէն բան կրնայ ու-
տել . և ան որ տկար է՝ կանանչե-
3 ղէն կ'ուտէ ։ Ան որ կ'ուտէ՝ չու-
տողը թող չանարգէ՛, ու ան որ
չուտեր՝ ուտողը թող չդատէ՛ . Քա-
նզի որ Աստուած զանիկայ ընդունեց
4 է ։ Դուն ո՞վ ես որ ուրիշին ծա-
ռան կը դատես . իր Տէրոջը կը
կանգնի կամ կ'իյնայ . բայց պիտի
կանգնի, Քանզի որ Աստուած կարող
5 է զանիկայ կանգնեցընել ։ Մէկը մէկ
օրը ուրիշ օրէն աւելի կը սեպէ,
ու մէկն ալ ամէն օրը մէկ կը սեպէ .
թող ամէն մարդ իր մի՛տքը հա-
6 ճեցընէ ։ Ան որ կը հոգայ օրը,
Տէրոջը կը հոգայ, և ան որ չհոգար
օրը, Տէրոջը չհոգար . ու ան որ
կ'ուտէ, Տէրոջը կ'ուտէ, Քանզի
Աստուծմէ կը գոհանայ . և ան որ
չուտեր, Տէրոջը չուտեր, ու Աս-
7 տուծմէ կը գոհանայ ։ Քանզի որ
մեզմէ մէկը իր անձին համար չապ-
րիր, ու մէկը ինքզինքին համար
8 չմեռնիր ։ Վասնզի թէ որ ապ-
րինք, Տէրոջը համար կ'ապրինք,
և թէ որ մեռնինք, Տէրոջը համար
կը մեռնինք . ուրեմն թէ՛ ապրինք
և թէ մեռնինք, մենք Տէրոջն ենք ։
Ասոր զի Քրիստոս ալ անոր հա- 9
մար մեռաւ ու յարեցաւ, որ ա-
հաւասարապէս մեռելներուն ու կենդա-
նիներուն իշխէ ։ Իսկ դուն ինչո՞ւ 10
քու եղբայրդ կը դատես, կամ
դուն ինչո՞ւ քու եղբայրդ կ'անար-
գես . վասն զի ամէնքս ալ Քրիս-
տոսի ատեանին առջեւը պիտի կայ-
նինք ։ Ինչու որ գրուած է, Ես 11
կենդանի եմ՝ կ'ըսէ Տէրը, որ
ամէն ծունկ ինծի պիտի ծռի, և
ամէն լեզու Աստուծոյ պիտի խոս-
տովանի ։ Ուրեմն մեզմէ ամէն 12
մէկը Աստուծոյ հաշիւ պիտի տայ
իր անձին համար ։ Ասոր ալ 13
իրար չդատենք . հապա աւելի աս
որոշումը ըրէք եղբօրնուդ մէջ՝
խոչ կամ գայթակղութիւն չդնել
եղբօրը ։ Կը գիտեմ ու հաստա- 14
տուած եմ Տէր Յիսուսով, որ մէկ
բան մը ինքիրմէ պիղծ չէ, բայց
միայն որ պիղծ կը սեպէ մէկ բան մը,
անոր պիղծ է ան ։ Իսկ թէ որ 15
կերակուրի համար քու եղբայրդ
տրտմի, ալ դուն սիրով չքալե-
ցար . քու կերակուրովդ մի՛ կոր-
սնցըներ անիկայ՝ որուն համար որ
Քրիստոս մեռաւ ։ Արդ չըլլայ որ 16
ձեր բարիքին համար չար խօսին ։
Ինչու որ Աստուծոյ արքայութիւնը 17
կերակուր ու խմելիք չէ՛, հապա
արդարութիւն և խաղաղութիւն ու
խնդութիւն Հոգւով Սրբով ։
Վասնզի թէ որ մէկը աս բաներով 18
Քրիստոսի կը ծառայէ, անիկայ
Աստուծոյ հաճելի է՝ ու մարդոց գո-
վելի ։ Ասոր ուրեմն խաղաղու- 19
թեան և իրարու շինութեան ետեւէ
ըլլանք ։ Չըլլայ որ կերակուրի 20
պատճառով Աստուծոյ գործը քան-
դես . ամէն բան մաքուր է . միայն
թէ ան մարդուն է գէշ՝ որ ուրիշին
գայթակղութիւն տալով կ'ուտէ ։
Աղէկ է միս չուտել և գինի չխըմ- 21
մել, ոչ ալ բան մը ընել, որով
քու եղբայրդ կը զարնի կամ կը
գայթակղի կամ կը տկարանայ ։
Դուն հաւատք ունի՞ս . անիկայ քե- 22

զի պահէ Աստուծոյ առջեւը. երանի
անոր՝ որ իր անձը չդատապարտեր
23 անով՝ որ զինքը կ'ընտրէ: Բայց
ան որ խիղճ կ'ընէ, թէ որ ուտէ կը
դատապարտուի, վասն զի չէ թէ
հաւատքով կ'ուտէ. քանզի ինչ
բան որ հաւատքով չէ, մեղք է:

## ԳԼ. ԺԵ

1 Պարտք է մեզի որ կարող ենք,
տկարներուն տկարութիւնը վերցնել, և չէ թէ միայն մեր անձին
2 հաճոյ ըլլալ. Ապա մեզմէ ամէն
մէկը շինութեան համար իր ընկերին հաճոյ ըլլայ բարի բաներու
3 մէջ: Քանզի Քրիստոս ալ չէ
թէ իր անձին հաճոյ եղաւ, հապա
ինչպէս որ գրուած է, Քեզ նախատողներուն նախատինքները իմ
4 վրաս ինկան: Վասն զի ինչ որ
առաջուց գրուեցաւ, մեր վարժելուն
համար գրուեցաւ, որ համբերութիւնով ու Գիրքերուն մխիթարութիւնովը յոյս ունենանք:
5 Համբերութեան ու մխիթարութեան Աստուածը տայ ձեզի իրարու
հետ մէկ և նոյն խորհուրդը ունենալ
Քրիստոս Յիսուսի պէս.
6 Որ մէկ սրտով ու մէկ բերնով
փառաւորէք զԱստուած ու մեր Տէրոջը Յիսուս Քրիստոսի Հայրը:
7 Ասոր համար մէկզմէկ ընդունեցէք,
ինչպէս որ Քրիստոս ալ մեզ ընդունեցաւ Աստուծոյ փառքին համար:
8 Բայց կ'ըսեմ թէ Յիսուս Քրիստոսի թլփատութեան պաշտօնեայ
եղաւ Աստուծոյ ճշմարտութեանը
համար էր, որ նախահայրերուն տրուած խոստումները հաստատէ.
9 Ասկայն հեթանոսները ողորմութեան համար զԱստուած փառաւորեն. ինչպէս որ գրուած է,
Ասոր համար ազգերուն մէջը քեզ
պիտի գովեմ, և քու անուանդ
10 սաղմոս պիտի երգեմ: Նաեւ դարձեալ կ'ըսէ թէ Ո՛վ ազգեր՝ անոր
ժողովուրդին ուրախակից եղէք:
11 Նաեւ դարձեալ թէ Օրհնեցէք Տէրը՝
ամէն ազգեր, ու գովեցէք զանիկայ ամէն ժողովուրդներ:
12 Նաեւ դարձեալ Եսայի կ'ըսէ. Եսսէի
արմատ մէկ պիտի ըլլայ,
ու ան որ պիտի ելլէ ազգերուն իշխան պիտի
ըլլայ, ազգերը անոր պիտի յուսան:
Արդ յուսոյ Աստուածը ձեզ 13
լեցընէ բոլոր ուրախութիւնով ու
խաղաղութիւնով հաւատալու մէջ,
որ առատանաք յուսով՝ Սուրբ Հոգւոյն
զօրութեամբը:
Ես ինքս ալ համոզուած եմ 14
ձեզի համար՝ իմ եղբայրներս, որ
դուք լեցուն էք բարութիւնով,
լեցուած էք ամէն գիտութիւնով,
և կրնաք մէկզմէկ խրատել: Ասկայն 15
մէկ կողմանէ համարձակաբար
գրեցի ձեզի՝ իմ եղբայրներս, որպէս թէ միտքերնիդ ձգելով ասոնք,
ան շնորհքին պատճառովը՝ որ
Աստուծմէ ինծի տրուած է, Որ ես 16
Յիսուս Քրիստոսի պաշտօնեայը ըլլամ
հեթանոսներուն մէջ, և Աստուծոյ աւետարանը սպասաւորեմ, որպէս զի հեթանոսաց ընծայութիւնը ընդունելի ըլլայ՝ Սուրբ
Հոգիով սրբուելով: Ասոր Աստուծոյ 17
քով պարծանք ունիմ Քրիստոս Յիսուսով: Ինչու որ չեմ 18
համարձակիր խօսիլ ան բաներէն
մէկը, որ Քրիստոս իմ ձեռքովս
գործած չէ հեթանոսները հնազանդեցընելու համար՝ խօսքով ու գործքով, Նշաններու ու հրաշքներու 19
զօրութիւնով, Աստուծոյ Հոգւոյն
զօրութիւնովը. անանկ որ ես Երուսաղէմէն սկսած՝ և շրջան ընելով
մինչև Իլլիւրիկոն, Քրիստոսի աւետարանը լեցուցի: Անանկ 20
ջանացի աւետարանը քարոզելու, չէ թէ ուր որ Քրիստոսի
անունը յիշուած էր, որ չըլլայ թէ
մէկ ուրիշի մը դրած հիմին վրայ
շինեմ. Հապա ինչպէս որ գրուած
է, Անոնք որոնց որ չպատմուեցաւ 21
անոր վրայով՝ պիտի տեսնեն, ու
որոնք որ չլսեցին՝ պիտի իմանան:
Ասոր համար ալ շատ արգիլուեցայ 22
ձեզի գալէն: Բայց հիմա որ աս 23
կողմերս ալ տեղ չկայ, ու
շատ տարիներէ 'ի վեր փափաք կը
փափաքիմ ձեզի գալու, Երբոր 24
դէպ 'ի Սպանիա երթամ, կը յուսամ որ անցնելու ատենս ձեզ տեսնել

Քեփայինն՝ թէ Ես՝ Քրիստոսինն :
13 Մի՞թէ Քրիստոս բաժնուա՞ծ է .
միթէ Պօղո՞ս խաչը ելաւ ձեզի հա-
մար , կամ թէ Պօղոսի՞ անունովը
14 մկրտուեցաք : Կը գոհանամ Աս-
տուծմէ որ ձեզմէ մէկը չմկրտեցի ,
միայն թէ Կրիսպոսը ու Գայիոսը .
15 որ մէկը չըսէ թէ իմ անունովս
16 մկրտեցի : Իսկ Ստեփանոսին
ընտանիքն ալ մկրտեցի . ալ ուրիշ
մէկը չեմ գիտեր ամենեւին թէ մը-
կըրտեցի :
17 Քանզի որ Քրիստոս զիս մկրտելու
չղրկեց , հապա աւետարանը քա-
րոզելու , ոչ թէ խօսքերու ճարտա-
րութիւնով , որ Քրիստոսի խաչը
18 ոչինչ չըլլայ : Քանզի խաչին
քարոզութիւնը կորսուածներուն
յիմարութիւն է . բայց մեզի փըր-
կուածներուս Աստուծոյ զօրութիւնն
19 է : Վասն զի գրուած է , Իմաս-
տուններուն իմաստութիւնը պիտի
կորսընցընեմ , ու հանճարեղներուն
20 հանճարը պիտի խափանեմ : Ո՞ւր
է իմաստունը , ո՞ւր է դպիրը ,
ո՞ւր է աս աշխարհիս քննողը . չէ՞
որ Աստուած յիմարեցուց աս աշ-
21 խարհիս իմաստութիւնը : Քան-
զի որովհետեւ Աստուծոյ իմաստու-
թեանը աշխարհ չճանչցաւ զԱս-
տուած իր իմաստութիւնովը , Աս-
տուած հաճեցաւ քարոզութեան
յիմարութիւնովը հաւատացեալնե-
22 րը ապրեցընելու : Քանզի որ Հը-
րեաները նշան կ'ուզեն , և Յոյները
23 իմաստութիւն կը փնտռեն . Իսկ
մենք կը քարոզենք խաչեալ Քրիս-
տոսը՝ Հրեաներուն գայթակղու-
թիւն . , ու Յոյներուն յիմարու-
24 թիւն . Բայց անոնց որ կանչուած
են , թէ՛ Հրեաներուն և թէ Յոյնե-
րուն , Քրիստոսը՝ Աստուծոյ զօ-
րութիւնը և Աստուծոյ իմաստու-
25 թիւնը : Քանզի որ Աստուծոյ յի-
մարը մարդիկներէն աւելի իմաս-
տուն է , և Աստուծոյ տկարը մար-
26 դիկներէն աւելի զօրաւոր է : Եղ-
բարք դուք ձեր կոչումը կը տեսնէք՝
Եղբայրներ , որ չէ՛ թէ մարմնոյ կող-
մանէ շատ իմաստուններ , և չէ՛ թէ
շատ զօրաւորներ , և չէ՛ թէ շատ
ազնուականներ՝ կանչուեցան . Բայց 27
Աստուած աշխարհիս յիմարները
ընտրեց , որ ամօթով ընէ իմաս-
տուններ . ու աշխարհիս տկար-
ները ընտրեց Աստուած , որ ամօ-
թով ընէ զօրաւորները . Եւ աշ- 28
խարհիս ցածագիները ու անարգա-
ները ընտրեց Աստուած՝ և ոչինչնե-
րը , որ բան մը եղողները խափա-
նէ . Որպէս զի մէկ մարմին մը չը- 29
պարծի Աստուծոյ առջին : Իսկ 30
դուք անկէ էք Քրիստոս Յիսու-
սով , որ ան մեզի Աստուծմէ իմաս-
տութիւն՝ արդարութիւն՝ սրբու-
թիւն և փրկութիւն եղաւ . Որ 31
ինչպէս գրուած է , Ան որ կը պար-
ծենայ՝ Տէրոջմով թող պարծենայ :

## ԳԼ . Բ

Եւ ես Եղբայրներ՝ որ ձեզի եկայ , 1
չէ՛ թէ խօսքի կամ իմաստու-
թեան գերազանցութիւնով մը Աս-
տուծոյ վկայութիւնը ձեզի յայտ-
նելու եկայ : Վասն զի ես միտքս 2
չդրի ձեր մէջը ուրիշ բան մը գիտ-
նալ , բայց միայն Յիսուս Քրիս-
տոսը , ու ան՝ խաչը ելած : Եւ 3
ես տկարութիւնով ու վախով և
շատ դողով՝ ձեր քովը կեցայ . Ու 4
իմ խօսքս և քարոզութիւնս չէ՛
թէ մարդկային իմաստութեան հա-
մոզիչ խօսքերով էր , հապա Հո-
գւոյն և զօրութեան ապացուցու-
թեամբը . Որպէս զի ձեր հաւատ- 5
քը մարդոց իմաստութիւնովը չըլ-
լայ , հապա Աստուծոյ զօրութիւ-
նովը : Սակայն կատարեալներուն 6
հետ իմաստութիւն կը խօսինք ,
բայց չէ՛ թէ աս աշխարհիս իմաս-
տութիւնը , և ոչ աս աշխարհիս
ոչնչանալու իշխաններունը . Հա- 7
պա Աստուծոյ ծածուկ իմաստու-
թիւնը կը խօսինք խորհրդով , որ
աշխարհէն առաջ սահմանեց Աս-
տուած մեր փառքին համար . Որ 8
զանիկայ աս աշխարհիս իշխաններէն
մէկը չճանչցաւ . քանզի թէ որ
ճանչցած ըլլային , ալ փառաց
Տէրը խաչը չէին հաներ . Հապա 9
ինչպէս որ գրուած է , Ան բաները
որ աչք չէ տեսեր և ականջ չէ

լսեր ու մարդու սրտին միտք չէ
իյներ, Աստուած զանոնք սիրողներուն
10 պատրաստեց։ Բայց Աստուած
մեզի յայտնեց իր Հոգիովը. քանզի
որ Հոգին ամէն բան կը քննէ,
Աստուծոյ խորունկ բաներն ալ։
11 Վասն զի մարդիկներէն ո՞վ գիտէ
մարդուն բաները, բայց միայն
մարդուն հոգին որ իր մէջն է.
անանկ ալ Աստուծոյ բաները
մէկը չգիտեր, բայց միայն Աս-
12 տուծոյ Հոգին։ Իսկ մենք չէ
թէ աս աշխարհիս հոգին ա-
ռինք, հապա այն Հոգին որ Աս-
տուծմէ է. որ մենք ճանչնանք այն
բաները որ Աստուծմէ տրուեցաւ
13 մեզի. Որոնք նաև կը խօսինք,
չէ թէ մարդկային իմաստութեան
սորվեցուցած խօսքերովը, հապա
Հոգիին սորվեցուցածներովը, և
հոգևոր բաները հոգևորի հետ կը
14 յարմարցընենք։ Իսկ շնչաւոր
մարդը Աստուծոյ Հոգիին բաները
չընդունիր. քանզի անոնք իրեն
յիմարութիւն են, ու չկրնար ալ
գիտնալ, քանզի որ հոգևոր կեր-
15 պով կը քննուին։ Բայց ան որ
հոգևոր է՝ ամէն բան կը քննէ, ու
16 ինքը մէկէ մը չքննուիր։ Քանզի
ո՞վ գիտցաւ Տէրոջը միտքը, որ
անոր խրատ տուող ալ ըլլայ. բայց
մենք Քրիստոսի միտքը ունինք։

## ԳԼ. Գ

1 Ես ալ, եղբայրներ՝ չկրցայ խօսիլ
ձեզի՝ որպէս թէ հոգևորներու,
հապա որպէս թէ մարմնաւորնե-
2 րու, Որպէս թէ Քրիստոսով տը-
ղայոց. Ձեզի կաթ կերցուցի, և
չէ թէ կերակուր. քանզի որ դեռ
կարող չէիք, ու հիմա ալ տա-
կաւին կարող չէք. վասն զի դեռ
3 մարմնաւոր էք։ Որովհետև տա-
կաւին ձեր մէջը նախանձ ու հակա-
ռակութիւն և բաժանումներ կան,
չէ՞ որ մարմնաւոր էք, ու մարդկօ-
4 րէն կը քալէք։ Քանզի երբոր
ձեզմէ մէկը կ'ըսէ թէ Ես Պօղո-
սեան եմ, և միւսը թէ Ես Ապո-
ղոսեան, չէ՞ որ մարմնաւոր էք։
Ուրեմն ո՞վ է Պօղոս կամ ո՞վ է
Ապողոս. Պաշտօնեաներ են, ո- 5
րոնցմով հաւատացիք. և ինչպէս
որ Տէրը տուաւ անոնց ամէն մէ-
կուն։ Ես տնկեցի, Ապողոս ջուր 6
տուաւ, բայց Աստուած աճեցուց։
Ուստի ոչ տնկողը բան մըն է, և 7
ոչ ջուր տուողը, հապա Աստուած՝
որ աճեցուց. Տնկողը ու ջուր 8
տուողը մէկ են, և ամէն մէկը իր
վարձքը պիտի առնէ իր աշխատու-
թեանը չափովը։ Ինչու որ մենք 9
Աստուծոյ գործակից ենք. դուք Աս-
տուծոյ մշակութիւնն էք, Աստու-
ծոյ շինութիւնն էք։ Աստուծոյ 10
շնորհացը չափովը որ ինծի տրուե-
ցաւ, իմաստուն ճարտարապետի
մը պէս հիմ դրի, բայց անոր վրայ
շինողը ուրիշ է. միայն թէ ամէն
մէկը թող զգուշանայ թէ ինչպէս
կը շինէ։ Ինչու որ մէկը՝ ալ ու- 11
րիշ հիմ չկրնար դնել դրուածէն
'ի զատ, որ է Յիսուս Քրիստոս։
Թէ որ մէկը աս հիմին վրայ կը շինէ 12
ոսկի՝ արծաթ՝ պատուական քարեր՝
փայտ՝ խոտ՝ եղէգ, Ամէն մէկուն 13
գործը յայտնի պիտի ըլլայ. քան-
զի օրը երևան պիտի հանէ, ինչու
որ կրակով պիտի յայտնուի. և
ամէն մէկուն գործին ինչ տեսակ
ըլլալը կրակը պիտի փորձէ։ Թէ 14
որ մէկուն շինած գործը մնալու ըլ-
լայ, ինքը վարձք պիտի առնէ.
Ու թէ որ մէկուն շինածը այրելու 15
ըլլայ, անիկայ վնաս պիտի քաշէ.
բայց ինքը պիտի ազատի, սակայն
անանկ՝ իբր թէ կրակի մէջէն։
Չէ՞ք գիտեր որ Աստուծոյ տաճար 16
էք դուք՝ և Աստուծոյ Հոգին ձեր
մէջը բնակած է։ Թէ որ մէկը 17
Աստուծոյ տաճարը կ'ապականէ,
Աստուած անիկայ պիտի ապականէ.
ինչու որ Աստուծոյ տաճարը սուրբ
է, որ դուք էք։

Չըլլայ որ մէկը ինքզինքը խաբէ. 18
թէ որ ձեզմէ մէկը զինքը իմաստուն
կը սեպէ աս աշխարհիս մէջ, թող
յիմար ըլլայ՝ որ իմաստուն ըլլայ.
Ինչու որ աս աշխարհիս իմաստու- 19
թիւնը Աստուծոյ առջևը յիմարու-
թիւն է. վասն զի գրուած է թէ
Անիկայ իմաստունները իրենց խո-

խորամանկութեանը մէջ կը բռնէ :
20 Նաեւ դարձեալ թէ Տէրը գիտէ ի-
մաստուններուն խորհուրդները , որ
21 ունայն են : Ուրեմն մէկը թող
22 չպարծենայ մարդոցմով . Ինչու որ
ամէն բան ձերն է , թէ՛ Պօղոս ,
թէ Ապողոս , թէ Կեփաս , թէ
աշխարհ , թէ կեանքը , թէ մա-
հը , թէ ներկայ բաները և թէ
գալիքները՝ ամէն բան ձերն է .
23 Դուք ալ Քրիստոսինն էք , և Քրի-
ստոս՝ Աստուծոյ :

## Գլ. Դ

1 Թող մարդիկ մեզ այնպէս սեպեն՝
որպէս թէ Քրիստոսի սպասա-
ւորները ու Աստուծոյ խորհուրդ-
2 ներուն տնտեսները : Ուստի տըն-
տեսներուն մէջ կը փնտռուի որ
3 մէկը հաւատարիմ գտնուի : Բայց
ինծի ասիկայ ոչինչ բան մըն է ,
որ ձեզմէ դատուիմ՝ կամ մարդոց
դատողութենէն , մանաւանդ որ ես
4 ալ իմ անձս չեմ դատեր . (Վասն
զի ես իմ անձիս վրայով բան
մը չեմ գիտեր . բայց չէ՛ թէ ասով
կ՚արդարանամ .) Հապա զիս դա-
5 տողը Տէրն է : Ուրեմն ժամանա-
կէն առաջ դատողութիւն մի՛ ընէք ,
մինչև որ գայ Տէրը՝ որ խաւարին
գաղտնիքը ՚ի լոյս պիտի հանէ , ու
սրտերուն խորհուրդները յայտնի
պիտի ընէ . և ան ատենը ամէն
մէկուն գովութիւնը Աստուծմէ պի-
տի ըլլայ :
6 Ասոնք օրինակ բերի եղբայրներ՝
իմ վրաս ու Ապողոսին վրայ ձեզի
համար , որ դուք մեզմէ սորվիք
մարդոց վրայով գրուածէն աւելի բան
մը չխորհիլ , որ չըլլայ թէ ձեզմէ
մէկը հպարտանայ մէկու մը համար
7 ուրիշի մը դէմ : Քանզի ո՞վ է
ան որ քեզ տարբեր կ՚ընէ ուրիշ-
ներէն . և ի՞նչ ունիս որ չես առեր
դուն . և թէ որ առիր՝ ինչո՞ւ չա-
ռածի պէս կը պարծենաս :
8 Արդէն կշտացած էք , արդէն
հարուստցաք , առանց մեզի թա-
գաւորեցիք . և երանի թէ թա-
գաւորէիք , որ մենք ալ ձեր հետը
9 թագաւորէինք : Քանզի կարծեմ
թէ Աստուած յետիններ ըրաւ մեզ
առաքեալներս մահապարտներու նը-
ման . ինչու որ տեսարան եղանք
աշխարհի , և հրեշտակներուն ու
մարդիկներուն : Մենք յիմարներ 10
ենք Քրիստոսի համար , և դուք
իմաստուններ Քրիստոսով . մենք
տկար՝ և դուք զօրաւոր . դուք փա-
ռաւորեալ՝ ու մենք անարգեալ :
Մինչև աս օրուան ատենը կ՚անօ- 11
թենանք ալ , կը ծարաւինք ալ ,
մերկ ալ կը մնանք , կը ծեծուինք
ալ , աստանդական ալ կը պտը-
տինք , Նաև մեր ձեռքերովը գործելով 12
կ՚աշխատինք . երբոր մեզ կը նախա-
տեն՝ կ՚օրհնենք . երբոր կը հալածեն՝
կը համբերենք . Երբոր գէշ կը 13
խօսին՝ կ՚աղաչենք . իբրև աշխարհի
աղտեղութիւնը՝ ամենուն անարգը
ըլլալով մինչև հիմա : Աս բաները 14
կը գրեմ՝ չէ՛ թէ ձեզ ամչցընելու
համար , հապա կը խրատեմ զձեզ
սիրելի որդիներուս պէս : Վասն 15
զի թէև դուք տասը հազար վար-
ժապետներ ունենաք Քրիստոսով ,
բայց չէ՛ թէ շատ հայրեր ունիք .
ինչու որ Քրիստոս Յիսուսով՝ ես
ձեզ ծնայ աւետարանովը : Ուրեմն 16
կ՚աղաչեմ ձեզի՝ ինծի նմանող ե-
ղէք : Ասոր համար ձեզի խրկեցի 17
Տիմոթէոսը , որ իմ սիրելի որդիս
է ու Տէրոջմով հաւատարիմ . որ
անիկայ ձեր միտքը պիտի ձգէ Քրիս-
տոսով իմ բռնած ճամբաներս ,
ինչպէս որ ամէն տեղ ամէն եկե-
ղեցիներուն մէջ կը սորվեցընեմ :
Մէկ քանիները հպարտացան , որ- 18
պէս թէ ես պիտի չգամ ձեզի :
Բայց շուտով պիտի գամ ձեզի՝ թէ 19
որ Տէրը կամենայ , և պիտի հաս-
կընամ չէ՛ թէ հպարտացողներուն
խօսքերը , հապա զօրութիւնը :
Վասն զի Աստուծոյ թագաւորու- 20
թիւնը չէ՛ թէ խօսքով է , հապա
զօրութիւնով : Ինչպէս կ՚ու- 21
զէք , գաւազանո՞վ գամ ձեզի ,
թէ սիրով և հեզութեան հոգիով :

## Գլ. Ե.

Աս համարեալ կը լսուի ձեր մէջը 1
պոռնկութիւն ըլլալ , և անանկ

պոռնկութիւն՝ որ հեթանոսներուն
մէջ ալ չկայ , որպէս թէ մէկը իր
2 հօրը կնիկը ունենայ ։ Եւ դուք
հպարտացեր էք , և ոչ մանաւանդ
սուգ ըրիք , որ ձեր մէջէն վերցուի
3 աս բանը ընողը ։ Ինչու որ թէ-
պէտ ես մարմնով հեռու եմ , բայց
հոգիով ներկայ եմ . ուստի հիմա
որպէս թէ ներկայ ըլլալով որոշեցի ,
4 որ աս բանը ընողը՝ Երբոր մեր Տէր
Յիսուս Քրիստոսի անունովը մէկ-
տեղ ժողվուիք դուք՝ ու իմ հոգիս
մեր Տէր Յիսուս Քրիստոսի զօրու-
5 թիւնովը , Շնանկը Սատանային
մատնէք՝ մարմինը կորսնցնելու հա-
մար , որ հոգին փրկուի Տէր Յի-
6 սուսի օրը ։ Ձեր պարծանքը
աղէկ չէ . չէ՞ք գիտեր որ քիչ մը
խմորը բոլոր զանգուածը կը խմորէ ։
7 Մաքրեցէ՛ք հին խմորը մէկդի , որ
ըլլաք նոր զանգուած , ինչպէս որ
անխմոր էք . ինչու որ Քրիստոս
մեր զատիկը մեզի համար զոհուե-
8 ցաւ ։ Ասոր համար կատարենք՝ չէ
թէ հին խմորով և չէ թէ չարու-
թեան ու անզգամութեան խմորովը ,
հապա անկեղծութեան ու ճշմար-
9 տութեան անխմոր հացովը ։ Գրե-
ցի ձեզի թուղթին մէջ , որ պոռ-
10 նիկներուն հետ չխառնուիք ։ Նաեւ
գրածս՝ չէ թէ աս աշխարհիս պոռ-
նիկներուն հետ , կամ ագահներուն
հետ , կամ յափշտակողներուն հետ ,
կամ կռապաշտներուն հետ . հապա
թէ չէ՝ պէտք էր որ դուք աշխարհէս
11 դուրս ելլէիք ։ Բայց հիմա ձեզի
գրեցի չխառնուիլ , այնպիսին թէ որ
մէկը եղբայր ըսուած՝ կամ պոռնիկ
ըլլայ , կամ ագահ , կամ կռա-
պաշտ , կամ նախատող , կամ
գինով , կամ յափշտակող , ա-
նանկէն հետ հաց ալ չուտել ։
12 Վասն զի ի՞նչ պէտք է ինծի դուր-
սիններն ալ դատել . չէ՞ որ դուք
13 ներսինները կը դատէք . Իսկ դուր-
սինները Աստուած պիտի դատէ .
ուստի չարը ձեր մէջէն վերցուցէք ։

ԳԼ. Զ.

1 Ձեզմէ մէկը՝ թէ որ մէկու բան մը
ունենայ իր ընկերին հետ , կը
համարձակի՞ անիրաւներուն առջեւը
դատուիլ , ու չէ թէ սուրբերուն
առջեւը ։ Չէ՞ք գիտեր որ սուրբե- 2
րը պիտի դատեն աշխարհը . ու թէ
որ աշխարհս ձեզմէ կը դատուի ,
ուրեմն արժանի չէ՞ք դուք չնչին
դատեր որոշելու ։ Չէ՞ք գիտեր որ 3
մենք հրեշտակներ պիտի դատենք .
ո՞ւր կը մնայ հապա աշխարհային
բաները ։ Ուրեմն թէ որ ձեր մէջը 4
աշխարհային դատեր ունիք , եկե-
ղեցւոյն անարգները ձեզի դատաւոր
դրէք ։ Ձեզ ամչցընելու համար 5
կը զրուցեմ . այնչափ եղաւ որ ձեր
մէջը մէկ իմաստուն մը չկա՞յ որ
կարող ըլլայ իրաւունքը որոշել իր
եղբայրներուն մէջ . Հապա եղբայր 6
եղբօր հետ դատի կը մտնէ , ան
ալ անհաւատներուն առջեւը ։ Արդ 7
դարձ բոլորովին յանցանք մըն է աս
ձեր մէջը , որ իրարու հետ դատեր
ունիք . ինչո՞ւ մանաւանդ դուք ա-
նիրաւութիւն չէք կրեր . ինչո՞ւ
մանաւանդ դուք զրկանք չէք քաշեր ։
Հապա դուք անիրաւութիւն ու 8
զրկանք կ՚ընէք , և ան ալ եղբայր-
ներուն ։ Չէ՞ք գիտեր որ անիրաւ- 9
ները Աստուծոյ արքայութիւնը պի-
տի չժառանգեն . մի՛ խաբուիք ,
ոչ պոռնիկները՝ ոչ կռապաշտնե-
րը՝ ոչ շնացողները՝ Ո՛չ իգացեալ- 10
ները՝ ոչ արուագէտները՝ ոչ գո-
ղերը՝ ոչ ագահները՝ ոչ գինովնե-
րը՝ ոչ նախատողները — ոչ յափշ-
տակողները Աստուծոյ թագաւորու-
թիւնը պիտի չժառանգեն ։ Նա- 11
դուք մէկ քանիներդ անանկներ
էիք . բայց լուացուեցաք , բայց
սրբուեցաք , բայց արդարացաք Տէր
Յիսուսի անունովը ու մեր Աս-
տուծոյ Հոգիովը ։
Ամէն բան ինծի օրինաւոր է , 12
բայց չէ թէ ամէն բան օգտակար .
ամէն բան ինծի օրինաւոր է , բայց
ես մէկ բանի մը իշխանութեան
տակ պիտի չըլլամ ։ Կերակուր- 13
ները փորին համար է , փորն ալ
կերակուրներուն . բայց Աստուած
աս ալ՝ անոնք ալ պիտի խափանէ ։
Իսկ մարմինը պոռնկութեան համար
չէ , հապա Տէրոջը , ու Տէրը՝ մար-

14 մարմնին համար ։ Եւ Աստուած որ
Տէրը յարոյց , մեզ ալ պիտի յա-
15 րուցանէ իր զօրութիւնովը ։ Չէ՞ք
գիտեր որ ձեր մարմինները Քրիս-
տոսի անդամներն են . ուստի Քրիս-
տոսի անդամները առնելով՝ պոռ-
նիկի անդամնե՞ր ընեմ . քաւ լիցի ։
16 Չէ՞ք գիտեր թէ ան որ պոռնիկի
կը մօտենայ , անոր հետ մէկ մարմին
կ'ըլլայ . քանզի Գիրքը կ'ըսէ , Եր-
կուքը մէկ մարմին պիտի ըլլան ։
17 Իսկ ան որ Տէրոջը կը մօտենայ ,
18 անոր հետ մէկ հոգի կ'ըլլայ ։ Պոռ-
նըկութենէն փախէք . ամէն մեղք որ
մարդ կը գործէ՝ իր մարմինէն դուրս
է . բայց ան որ կը պոռնկի՝ իր մար-
19 մինին դէմ կը մեղանչէ ։ Չէ՞ք
գիտեր որ ձեր մարմինները տաճար
են Սուրբ Հոգիին որ ձեր մէջն է ,
որ անիկայ Աստուծմէ ունիք , ու
20 դուք ձեր անձին տէրը չէք . Քան-
զի գնով ծախու առնուեցաք . ուս-
տի փառաւորեցէք զԱստուած ձեր
մարմիններուն ու հոգիներուն մէջը ,
որ Աստուծոյ են ։

## ԳԼ. Է

1 Արդ այն բաներուն համար որ դուք
ինծի գրեցիք , աղէկ է մար-
2 դուս որ կնկան չմօտենայ ։ Բայց
պոռնկութիւնը արգիլելու համար
ամէն մարդ թող իր կնիկը ունե-
նայ , ու ամէն կնիկ իր էրիկը թող
3 ունենայ ։ Էրիկը իր կնկանը թող
պարտքը վճարէ , նոյնպէս կնիկն
4 ալ իր էրկանը ։ Կնիկը իր մար-
մինին չիշխեր , հապա էրիկը . նա-
նանկ ալ էրիկը իր մարմինին չիշ-
5 խեր , հապա կնիկը ։ Մէկզմէկ
մի՛ զրկէք , եթէ ոչ միաբանու-
թեամբ ատեն մը՝ աղօթքի պարա-
պելու համար , ու նորէն իրարու
դարձէք , որ Սատանան ձեզ չփորձէ
ձեր անժուժկալութեանը համար ։
6 Աս կը զրուցեմ թոյլ տալով , և
7 չէ թէ հրամայելով ։ Քանզի կ'ու-
զէի որ ամէն մարդիկ ինծի պէս ըլ-
լային . բայց ամէն մէկը իր պար-
գևը ունի Աստուծմէ , մէկը անանկ
8 ու միւսը նանանկ ։ Բայց չամուս-
նացածներուն ու որբևարիներուն
կ'ըսեմ , Աղէկ է անոնց՝ թէ որ
ինծի պէս կենան ։ Հապա թէ որ 9
ժուժկալութիւն չունին , թող ա-
մուսնանան , ինչու որ աղէկ է ա-
մուսնանալը քան թէ բորբոքիլը ։
Բայց ամուսնացածներուն կը պա- 10
տուիրեմ չէ թէ ես , հապա Տէ-
րը , որ կնիկը էրիկէն չզատուի ,
(Իսկ թէ որ զատուի ալ՝ առանց 11
ամուսնանալու մնայ , կամ իր էր-
կանը հետ հաշտուի ,) ու էրիկը
իր կնիկը թող չձգէ ։ Բայց ու- 12
րիշներուն ես կ'ըսեմ՝ չէ թէ Տէ-
րը . Թէ որ մէկ եղբայր մը ան-
հաւատ կնիկ ունենայ , ու անոր
հաճելի ըլլայ իրեն հետ բնակիլը ,
թող չձգէ զանիկայ ։ Եւ կնիկ 13
մը որ անհաւատ էրիկ ունենայ , ու
անոր հաճելի ըլլայ իրեն հետ բնա-
կիլը թող չձգէ զանիկայ ։ Ինչու 14
որ անհաւատ էրիկը սրբուած է
կնիկովը , և անհաւատ կնիկը սըր-
բուած է էրիկովը . ապա թէ ոչ՝
ձեր որդիքը պիղծ պիտի ըլլային .
բայց հիմա սուրբ են ։ Իսկ թէ 15
որ անհաւատը զատուի , թող զա-
տուի . եղբայր մը կամ քոյր մը
անանկ պարագաներու մէջ գերի
չէ . սակայն Աստուած խաղաղու-
թեան կանչեց մեզ ։ Քանզի ի՞նչ 16
գիտես դուն կնի՛կ՝ գուցէ քու էրիկդ
պիտի ազատես . կամ դուն ի՞նչ
գիտես էրի՛կ՝ գուցէ քու կնիկդ պի-
տի ազատես ։ Միայն թէ ամէն 17
մէկուն ինչպէս որ Տէրը բաժնեց ,
ամէն մէկը ինչպէս որ Աստուած
կանչեց , անանկ թող երթայ , ու
ամէն եկեղեցիներուն մէջ ես ասանկ
պատուէր կու տամ ։
Թէ որ թլփատուած մէկը հա- 18
ւատքի կանչուեցաւ , թող նորէն
անթլփատ չըլլայ . չթլփատուած-
ներէն մէկը կանչուեցաւ , թող
չթլփատուի ։ Ինչու որ թլփա- 19
տութիւնը բան մը չէ , ու անթլը-
փատութիւնը բան մը չէ . հապա
Աստուծոյ պատուիրանքներուն պահ-
պանութիւնը պէտք է ։ Բայց ամէն 20
մէկը ի՛նչ կոչումի մէջ որ կան-
չուեցաւ , թող անոր մէջը կենայ ։

նորը ուտողները սեղանին հաղորդ-
19 նե՞ն ։ Արդեմն ի՞նչ կ՚ըսեմ, թէ
կուռքը բա՞ն մըն է, կամ թէ կռոց
20 զոհուածը բա՞ն մըն է ։ Բայց ա-
յ՚ըսեմ թէ ան բաները որ հեթա-
նոսները զոհ կ՚ընեն, դևերուն կը
զոհեն ու չէ՛ թէ Աստուծոյ. ու
չեմ ուզեր որ դուք դևերուն հա-
ղորդ ըլլաք. չէք կրնար խմել Տէ-
րոջը գաւաթը ու դևերուն գաւա-
21 թը. Չէք կրնար վայելել Տէրոջը
սեղանէն ու դևերուն սեղանէն ։
22 Նախանձի՞ գրգռենք Տէրը. միթէ
մենք անկէ զօրաւո՞ր ենք ։
23 Ամէն բան ինծի օրինաւոր է,
բայց չէ՛ թէ ամէն բան օգտակար.
ամէն բան ինծի օրինաւոր է, բայց
չէ՛ թէ ամէն բան շինութիւն կ՚ը-
24 նէ ։ Չըլլայ որ մէկը միայն իր ան-
ձին օգուտը փնտռէ, հապա իր
25 ընկերինին ալ ։ Ամէն ինչ որ ըս-
պանդանոցին մէջը կը ծախուի՝ կե-
րէք, ու քննութիւն մի՛ ընէք
26 խղճմտանքի համար. Ինչու որ եր-
կիրը իր լրութեամբը Տէրոջն է ։
27 Եւ թէ որ անհաւատներէն մէկը
ձեզ կերակուրի հրաւիրէ, և ուզէք
երթալ, ամէն ինչ որ առջևնիդ
դրուի՝ կերէք, ու քննութիւն մի՛
28 ընէք խղճմտանքի համար ։ Հապա
թէ որ մէկը ձեզի ըսէ թէ Ասիկայ
կուռքի զոհուած է, ան ազդողին իրեն
համար որ յայտնեց, ու խղճ-
29 մտանքի համար մի՛ ուտէք. Սա-
կայն խղճմտանք կ՚ըսեմ՝ չէ՛ թէ
ձերը, հապա ընկերինը ։ Բայց
ինչո՞ւ իմ ազատութիւնս ուրիշ
30 դատուի ուրիշին խղճմտանքէն. Թէ
որ ես շնորհակալութեամբ կը վայե-
լեմ, ինչո՞ւ հայհոյուիմ, որուն համար
31 որ կը գոհանամ ։ Արդ թէ՛ ուտէք՝
թէ խմէք և թէ ինչ գործ որ ընէք,
ամէն բան Աստուծոյ փառքին համար
32 ըրէք ։ Գայթակղութեան պատ-
ճառ մի՛ ըլլաք, ոչ Հրեաներուն,
ոչ հեթանոսներուն և ոչ Աստու-
33 ծոյ եկեղեցիին. Ինչպէս որ ես ալ
ամէն կերպով ամենուն հաճոյ կ՚ըլ-
լամ, ու չեմ փնտռեր իմ անձիս
օգուտը, հապա շատերունը՝ որ
փրկուին ։

## ԳԼ. ԺԱ

Ինծի նմանող եղէք, ինչպէս որ 1
ես ալ Քրիստոսի ։ Արդ ձեզ 2
կը գովեմ՝ եղբայրներ, որ ամէն
բանի մէջ զիս կը յիշէք, ու ա-
ւանդածներս կը բռնէք՝ ինչպէս որ
ես ձեզի աւանդեցի ։ Բայց կ՚ու- 3
զեմ որ գիտնաք թէ ամէն էրիկ
մարդուն գլուխը Քրիստոս է, ու
կնկանը գլուխը՝ էրիկ մարդը, և
Քրիստոսի գլուխը՝ Աստուած ։ Ա- 4
մէն էրիկ մարդ որ գլուխը գոց ա-
ղօթքի կը կայնի կամ մարգա-
րէութիւն կ՚ընէ, անպատիւ կ՚ընէ
իր գլուխը ։ Եւ ամէն կնիկ որ 5
գլուխը բաց աղօթքի կը կայնի,
կամ մարգարէութիւն կ՚ընէ, ան-
պատիւ կ՚ընէ իր գլուխը. ինչու
որ մի և նոյն բան կը սեպուի որպէս
թէ ածիլուած էր ։ Վասն զի թէ 6
որ կնիկը չծածկուիր, թող իր
մազերն ալ կտրէ. հապա թէ որ
ամօթ է կնկան մը իր մազերը կտր-
ել կամ ածիլուիլ, թող ծած-
կուի ։ Էրիկ մարդու պէտք չէ իր 7
գլուխը ծածկել, ինչու որ Աստու-
ծոյ պատկերը ու փառքն է. բայց
կնիկը իր էրկանը փառքն է ։ Վասն- 8
զի չէ՛ թէ էրիկ մարդը կնիկէն է,
հապա կնիկը՝ էրիկ մարդէն ։ Ին- 9
չու որ էրիկ մարդը չստեղծուեցաւ
կնկանը համար, հապա կնիկը՝ էր-
կանը համար ։ Աս պատճառով պէտք 10
է որ կնիկը իր գլխուն շուք դնէ
հրեշտակներուն համար ։ Բայց ոչ 11
կնիկը առանց էրիկ մարդու կ՚ըլլայ,
ու ոչ էրիկ մարդը առանց կնկան՝
Տէրոջմով ։ Վասն զի ինչպէս որ 12
կնիկը էրիկ մարդէն է, անանկ ալ
էրիկ մարդը կնկան միջոցով, բայց
ամէնը Աստուծմէ ։ Դուք ձեզմէ 13
դատեցէք. կը վայլէ՞ կնիկ մարդու
գլուխը բաց աղօթք կայնիլ Աս-
տուծոյ առջևը. Չէ՞ որ բնու- 14
թիւնն ալ կը սորվեցընէ ձեզի որ
էրիկ մարդ մը թէ որ երկար մա-
զերով է, իրեն անարգանք է.
Բայց կնիկը թէ որ երկար մազերով 15
է, իրեն փառք է. ինչու որ մա-
զերը ծածկոցի տեղ տրուած են

16 իրեն ։ Սակայն թէ որ մէկը հա-
կառակող ըլլալ կ'ուզէ, մենք ա-
նանկ սովորութիւն չունինք, ոչ
ալ Աստուծոյ եկեղեցիները ։
17 Բայց աս պատուիրելով չեմ
գովեր, ինչու որ ձեր ժողվուիլը
չէ՛ թէ աղէկ՝ հապա գէշ արդիւնք
18 կ'ունենայ ։ Քանզի նախ՝ երբոր
մէկտեղ կը ժողվուիք եկեղեցւոյն
մէջ, կը լսեմ որ բաժանմունքներ
կան ձեր մէջը, և քիչ մասին կը
19 հաւատամ ։ Վասն զի հարկաւ
ձեր մէջը հերձուածողութիւններ ալ
պիտի ըլլան, որ ձեր մէջը եղող
20 ընտիրները երեւնան ։ Ուստի դուք
որ մէկտեղ կը ժողվուիք, ատիկայ
Տէրունական ընթրիքը ուտել չէ.
21 Ինչու որ ուտելու ատենը ամէն մէ-
կը առաջ իր ընթրիքը կ'առնէ.
ու մէկը անօթի կը մնայ, ու միւ-
22 սը կը գինովնայ ։ Միթէ ուտե-
լու ու խմելու համար տուն չու-
նի՞ք, կամ թէ Աստուծոյ եկեղե-
ցի՞ն կ'անարգէք, և ամօթով կ'ը-
նէք չքաւորները. ձեզի ի՞նչ ը-
սեմ, ձեզ գովե՞մ. աս բանին
23 մէջ չեմ գովեր ։ Ինչու որ ես
Տէրոջմէն ընդունեցի ան որ ձեզի
ալ աւանդեցի՝ թէ Տէր Յիսուս
իր մատնուած գիշերը հաց առաւ.
24 Ու գոհանալով՝ կոտրեց ու ըսաւ.
Առէ՛ք ու կերէ՛ք, աս է իմ մար-
մինս՝ որ ձեզի համար կը կոտրուի.
ատիկայ ըրէ՛ք զիս յիշելու համար ։
25 Նոյնպէս ալ գաւաթը ընթրիքէն
ետե առաւ ու ըսաւ, Աս գաւա-
թը նոր ուխտ է իմ արիւնովս.
ատիկայ ըրէ՛ք քանի անգամ որ խը-
մելու ըլլաք՝ զիս յիշելու համար ։
26 Վասն զի քանի անգամ որ աս հա-
ցը ուտէք ու աս գաւաթը խմէք,
Տէրոջը մահը կը պատմէք, մինչև
27 որ ինքը գայ ։ Ուստի ով որ աս
հացը ուտէ կամ Տէրոջը գաւաթը
խմէ անարժանաբար, պարտական
պիտի ըլլայ Տէրոջը մարմնոյն և ա-
28 րեանը ։ Ուրեմն թող մարդ իր
անձը փորձէ, ու այնպէս ան հացէն
ուտէ և ան գաւաթէն խմէ ։
29 Վասն զի ան որ անարժանաբար
կ'ուտէ ու կը խմէ, իր անձին դա-
տապարտութիւնը կ'ուտէ ու կը
խմէ. ինչու որ Տէրոջը մարմինը
30 չորոշեր ։ Ասոր համար ձեր մէջը
շատ հիւանդներ ու ցաւագարներ
կան, և շատեր ալ կը ննջեն ։
31 Ինչու որ եթէ ինքզինքնիս դատելու
32 ըլլայինք, պիտի չդատուէինք ։ Իսկ
երբոր կը դատուինք, Տէրոջմէ կը
խրատուինք, որ աշխարհի հետ չը-
33 դատապարտուինք ։ Ուստի իմ
եղբայրներս՝ երբոր մէկտեղ կը ժող-
վուիք ուտելու, իրարու սպասե-
34 ցէք ։ Իսկ թէ որ մէկը անօթի
է, թող իր տունը մէջ ուտէ, որ
չըլլայ թէ դատապարտութեան հա-
35 մար ժողվուիք ։ Ու ուրիշ բա-
ները՝ յետոյ եկած ատենս պիտի պա-
տուիրեմ ։

## ԳԼ. ԺԲ

1 Բայց հոգեւոր պարգեւներուն վրա-
յով չեմ ուզեր՝ եղբայրներ,
2 որ չգիտցող ըլլաք ։ Դուք գի-
տէք որ երբ հեթանոս էիք, մունջ
կուռքերուն կը տարուէիք՝ ինչպէս
3 որ կ'առաջնորդուէիք ։ Ուստի
ես ձեզի կ'իմացընեմ, թէ մէկը
չըլլար որ Աստուծոյ Հոգիովը խօ-
սի՝ ու Յիսուսը նզովեալ կա-
նչէ. և մէկն ալ չկրնար Յիսուսը
Տէր կոչել, եթէ ոչ Հոգւովն
4 Սրբով ։ Իսկ պարգեւները զա-
նազան են, բայց նոյն Հոգին
5 է ։ Նաև պաշտօնները զանազան
6 են, բայց նոյն Տէրն է ։ Նոյնպէս
ներգործութիւնները զանազան են,
բայց նոյն Աստուածն է՝ որ կը ներ-
գործէ ամէնը ամէն բանի մէջ ։
7 Բայց ամէն մէկուն Հոգւոյն յայտ-
նութիւնը տրուած է օգուտի հա-
8 մար ։ Մէկուն մը՝ Հոգիով իմաս-
տութեան խօսք տրուած է, ուրի-
շին գիտութեան խօսք՝ նոյն Հոգիին
9 տուածովը. Միւսին հաւատք՝
նոյն Հոգիովը. ուրիշին բժշկու-
թեան պարգեւներ՝ նոյն Հոգիովը.
10 Ուրիշին՝ հրաշագործութիւններ.
ուրիշին՝ մարգարէութիւն, ուրի-
շին՝ հոգւոց զննութիւն, ուրիշին
զանազան լեզուներ, ուրիշին լե-
11 զուներու թարգմանութիւն ։ Բայց

Այս ամէնը մէկ և նոյն Հոգին կը
ներգործէ, և ամէն մէկուն զատ
զատ կը բաժնէ՝ ինչպէս որ կ'ուզէ:
12 Վասնզի ինչպէս որ մարմինը մէկ
է ու շատ անդամներ ունի, և այն
մարմնին բոլոր անդամները որ շատ
են՝ մէկ մարմին են, անանկ ալ
13 Քրիստոս: Ինչու որ մենք ա-
մէնքս մէկ Հոգիով մէկ մարմին
ըլլալու մկրտուեցանք, թէ Հրե-
աներ, թէ հեթանոսներ, թէ
ծառաներ, թէ ազատներ, և ա-
մէնքս ալ մէկ Հոգիէ խմեցինք:
14 Ինչու որ մարմինը մէկ անդամ մը
15 չէ, հապա շատ: Թէ որ ոտքը
ըսէ. Որովհետև ես ձեռք չեմ՝
մարմինէն չեմ, չէ՞ թէ անով այն
16 մարմինէն չէ: Ու թէ որ ականջը
ըսէ, Որովհետև ես աչք չեմ՝ մար-
մինէն չեմ, չէ՞ թէ անով այն մար-
17 մինէն չէ: Թէ որ բոլոր մարմի-
նը աչք ըլլար, լսելիքը ո՞ւր պիտի
ըլլար. ու թէ որ բոլորը լսելիք
ըլլար, ո՞ւր պիտի ըլլար հոտոտե-
18 լիքը: Բայց հիմա Աստուած ան-
դամները դրաւ՝ անոնց ամէն մէկը
մարմինին մէջ, ինչպէս որ ինքը
19 ուզեց: Հապա թէ որ ամէնը
մէկ անդամ ըլլար, մարմինը ո՞ւր
20 պիտի ըլլար: Բայց հիմա ան-
դամները շատ են, ու մարմինը՝
21 մէկ: Չկրնար աչքը ըսել ձեռ-
քին թէ Դուն ինծի պէտք չես.
և ոչ դարձեալ գլուխը ոտքերուն
22 թէ Դուք ինծի պէտք չէք: Մանաւանդ
մարմնոյն այն անդամները որ շատ
տկար կ'երևնան, աւելի հարկա-
23 ւոր են. Ու մարմնոյն այն անդամնե-
րը որ յաւէտ անպատիւ ըլլալ կը
սեպենք, անոնց վրայ աւելի պա-
տիւ կը դնենք. ու անանկով մեր
անվայելուչ անդամները աւելի վա-
24 յելչութիւն ունին: Ու մեր վայե-
լուչ անդամներուն բան մը պէտք
չէ. բայց Աստուած մարմինը
բարեխառնեց, ու պակասաւորութիւն
ունեցողին աւելի պատիւ տուաւ,
25 Որպէս զի մարմնոյն մէջ երկպա-
ռակութիւն չըլլայ, հապա անդամ-
ները մի և նոյն հոգը ունենան
26 իրարու վրայ: Ու թէ որ մէկ
անդամը նեղութիւն քաշէ, բոլոր
անդամները կը նեղին անոր հետը.
և թէ որ փառաւորի մէկ անդամը,
բոլոր անդամները կ'ուրախանան
անոր հետը: Արդ դուք Քրիս- 27
տոսի մարմին էք, ու մասնաւո-
րապէս անոր անդամները: Ու 28
Աստուած եկեղեցիին մէջը դրաւ մէկ
քանիները, նախ՝ առաքեալներ,
երկրորդ՝ մարգարէներ, երրորդ՝
վարդապետներ, ետքը հրաշքներ,
ետքը բժշկութիւններու պարգե-
ներ, օգնութիւններ, կառավա-
րութիւններ, լեզուներու տեսակ-
ներ: Միթէ ամէնը առաքեալ- 29
նե՞ր են. միթէ ամէնը մարգարէ-
նե՞ր են. միթէ ամէնը վարդա-
պետնե՞ր են. միթէ ամէնը հրաշք-
նե՞ր կը գործեն. Միթէ ամէնը 30
բժշկութեան պարգևնե՞ր ունին.
միթէ ամէնը լեզունե՞ր կը խօսին.
միթէ ամէնը թարգմանութի՞ւն
կ'ընեն:
Բայց դուք նախանձաւոր եղէք 31
այն շնորհքներուն որ լաւագոյն են.
և ես ալ աւելի աղէկ ճամբայ մը
կը ցուցընեմ ձեզի:

## ԳԼ. ԺԳ

Թէ որ մարդոց ու հրեշտակներուն 1
լեզուները խօսիմ՝ և սէր չու-
նենամ, ես ձայն տուող պղինձի
պէս եղայ, կամ ճչեցող ծնծղա-
ներու պէս: Ու թէ որ մարգա- 2
րէութիւն ունենամ, ու հասկընամ
ամէն խորհուրդները ու ամէն գի-
տութիւնը, և թէ որ ունենամ
ամէն հաւատքը մինչև լեռները տե-
ղափոխելու, ու սէր չունենամ,
ոչինչ եմ: Ու թէ որ իմ բոլոր 3
ստացուածքս աղքատներուն կե-
րցնեմ, ու իմ մարմինս այրուելու
տամ, և սէր չունենամ, օգուտ մը
չեմ ունենար: Սէրը երկայնամիտ 4
է, քաղցր է. սէրը չնախանձիր,
սէրը չգոռոզանար, չհպարտանար,
Անվայել վարմունք չունենար, իրե- 5
նը չփնտռեր, բարկութեան չը-
գրգռուիր, չարութիւն չխորհիր,
Անիրաւութեան վրայ չուրախանար, 6
հապա ճշմարտութեան խնդակից

խօսիլ, որ ուրիշներուն ալ սոր-
վեցընեմ, քան թէ բիւրաւոր խօս-
քեր օտար լեզուով ։
20 Եղբայրներ՝ միտքով տղաք մի՛
ըլլաք, հապա չարութիւն գիտնալու-
նո՛ւն տղաք եղէք, ու միտքով չա-
21 փահաս եղէք ։ Օրէնքին մէջ գը-
րուած է թէ Օտար լեզուներով
ու օտար շրթունքներով այս ժողո-
վուրդին հետ պիտի խօսիմ, սա-
կայն և այնպէս ինծի մտիկ պիտի
22 չընեն, կ՚ըսէ Տէրը ։ Ուրեմն լե-
զուները նշանի համար են՝ ոչ թէ
հաւատացեալներուն, հապա ան-
հաւատներուն, բայց մարգարէու-
թիւնը ոչ թէ անհաւատներուն,
23 հապա հաւատացեալներուն ։ Արդ
թէ որ բոլոր եկեղեցին մէկտեղ
գայ, ու ամէնն ալ օտար լեզունե-
րով խօսելու ըլլան, և հոն մտնեն
տգէտներ կամ անհաւատներ, պի-
տի չըսե՞ն թէ դուք խենթեցեր էք ։
24 Իսկ թէ որ ամէնն ալ մարգարէա-
նան, ու հոն մէկ անհաւատ մը կամ
տգէտ մը մտնէ, ամէնէն ալ կը
յանդիմանուի, ամէնէն ալ կը
25 քննուի, Ու անոր սրտին ծածուկ
բաները յայտնի կ՚ըլլան. և այնպէս
երեսի վրայ ինկած՝ Աստուծոյ եր-
կրպագութիւն պիտի ընէ, ու
խոստովանի թէ իրաւցընէ Աստուած
ձեր մէջն է ։
26 Ուստի ի՞նչ է՝ եղբայրներ. երբ-
որ մէկտեղ կը ժողվուիք, ձեզմէ
ամէն մէկը սաղմոս ունի, վարդա-
պետութիւն ունի, լեզու ունի,
յայտնութիւն ունի, թարգմանու-
թիւն ունի. ամէնը շինութեան
27 համար թող ըլլայ ։ Թէ որ մէկը
օտար լեզու կը խօսի, երկու հոգի,
և թէ շատը՝ երեք հոգի ըլլան, և ան
ալ մէկիկ մէկիկ, ու մէկը թող
28 թարգմանէ ։ Բայց թէ որ թարգ-
մանող չըլլայ, եկեղեցւոյն մէջ լուռ
թող կենայ, և ինքնիրեն ու Աս-
29 տուծոյ թող խօսի ։ Իսկ մարգա-
րէները երկու կամ երեք հոգի թող
խօսին, ու միւսները թող քննու-
30 թիւն ընեն ։ Հապա թէ որ
նստողներէն ուրիշ մէկուն ալ բան
մը յայտնուելու ըլլայ, առաջինը
թող լռէ ։ Ինչու որ ամէնքդ ալ 31
կրնաք մէկիկ մէկիկ մարգարէա-
նալ, որ ամէնն ալ սորվին ու
ամէնն ալ մխիթարուին ։ Ու մար- 32
գարէներուն հոգիները մարգարէ-
ներուն հնազանդ են ։ Ինչու որ 33
Աստուած խռովութեան Աստուած
չէ, հապա խաղաղութեան, ինչ-
պէս որ սուրբերուն բոլոր եկեղեցի-
ներուն մէջը ։
Ձեր կնիկները եկեղեցիներուն 34
մէջ լուռ կենան, ինչու որ անոնց
հրաման չկայ խօսելու, հապա հնա-
զանդ ըլլալու, ինչպէս որ օրէնքն
ալ կ՚ըսէ ։ Բայց թէ որ բան սոր- 35
վիլ կ՚ուզեն, տունը իրենց էրիկ-
ներուն թող հարցընեն. քանզի
կնիկներուն անվայել է եկեղեցւոյ
մէջ խօսիլը ։ Միթէ Աստուծոյ 36
խօսքը ձեզմէ՞ ելաւ, կամ թէ միայն
ձեզի՞ հասաւ ։ Թէ որ մէկը կը 37
կարծէ թէ ինքը մարգարէ է, կամ
հոգևոր, թող հաստատ գիտնայ
թէ ինչ որ ձեզի գրեցի՝ Տէրոջը
պատուէրներն են. Բայց թէ որ 38
մէկը տգէտ է, թող տգէտ ըլլայ ։
Ուստի եղբայրներ՝ մարգարէութիւն 39
ընելու նախանձաւոր եղէք, ու լե-
զուներ խօսիլն ալ մի՛ արգիլէք ։
Ու ամէն բան վայելչութեամբ և 40
կարգաւ թող ըլլայ ։

## ԳԼ. ԺԵ

Եղբայրներ՝ ձեզի կ՚իմացընեմ այն 1
աւետարանը որ ես ձեզի քարո-
զեցի, որ նաև ընդունեցիք ու ա-
նոր վրայ հաստատուած էք. Անով 2
կը փրկուիք ալ, թէ որ ամուր
բռնէք այն խօսքը որ ես ձեզի քարո-
զեցի, միայն եթէ պարապ տեղը
հաւատացած չէք ։ Ինչու որ ամենէն 3
առաջ ես ձեզի աւանդեցի անիկայ՝
որն որ ես ալ ընդունեցի, թէ
Քրիստոս մեր մեղքերուն համար
մեռաւ գիրքերուն ըսածին համե-
մատ, Ու թէ թաղուեցաւ ու 4
յարութիւն առաւ երրորդ օրը՝ գիր-
քերուն ըսածին համեմատ. Ու թէ 5
երևցաւ Կեփասին, ու ետքը տա-
սներկուքին. Ետքը հինգ հարիւ- 6
րէն աւելի եղբայրներուն մէկտեղ

ամէն նեղութիւններուս մէջ են, այն
մխիթարութիւնովը՝ որով մենք Աս-
5 տուծմէ կը մխիթարուինք : Վասն-
զի ինչպէս որ Քրիստոսի չարչա-
րանքները մեր վրայ շատ եղան,
նմանապէս Քրիստոսի ձեռքովը մեր
մխիթարութիւնն ալ շատ կ'ըլլայ :
6 Իսկ թէ նեղութիւն քաշենք, ձեր
մխիթարութեանը ու փրկութեանը
համար է, և թէ մխիթարուինք,
ձեր մխիթարութեանը ու փրկու-
թեանը համար է, որ կը յաջողի
համբերելով այն չարչարանքներուն՝
որոնցմով մենք ալ կը չարչարուինք.
7 Իսկ մեր յոյսը հաստատուն է ձեզի
համար, ինչու որ գիտենք թէ ին-
չպէս որ չարչարանքներուն հաղորդ
էք, անանկ ալ մխիթարութեանը
8 պիտի ըլլաք : Վասն զի Ասիայի
մէջ մեզի պատահած նեղութիւն-
ներուն վրայով՝ չեմ ուզեր որ չը-
գիտցող ըլլաք՝ եղբայրներ, թէ
մեր կարողութենէն շատ աւելի ծան-
րաբեռնեցանք, մինչև որ կեանքեր-
9 նուս ալ անյոյս եղանք : Նաև մա-
հուան վճիռը մենք վրանիս պահե-
ցինք, որ ինքզինքնուս չապաւինինք,
հապա Աստուծոյ՝ որ մեռելները կը
10 յարուցանէ. Որ ինքը անանկ մեծ
մահուանէ մեզ փրկեց ու կը փրկէ.
11 Որուն կը յուսանք թէ տակաւին
պիտի փրկէ, մեզի համար ձեր ըրած
աղօթքին օգնականութիւնովը. որ
շատերուն աղօթքին պատճառաւը մե-
զի եղած շնորհքին համար՝ շատե-
րէն գոհութիւն տրուի մեզի հա-
մար :

12 Ինչու որ մեր պարծանքը աս է,
մեր խղճմտանքին վկայութիւնը՝ թէ
մենք Աստուծոյ առջևը պարզմտու-
թեամբ ու անկեղծութեամբ, և
ոչ թէ մարմնաւոր իմաստութիւ-
նով մը, հապա Աստուծոյ շնորհ-
քովը աշխարհի մէջ վարուեցանք,
13 բայց աւելի գէթ 'ի ձեզ : Վասն-
զի ուրիշ բան չենք գրեր ձեզի,
հապա այն որ դուք կը կարդաք ու
կը ճանչնաք. և կը յուսամ թէ
14 մինչև վերջը պիտի ճանչնաք. Ինչ-
պէս որ քիչ շատ ճանչցաք մեզ,
որ ձեր պարծանքն ենք, ինչպէս որ
դուք ալ մերն էք, Տէր Յիսուսի օ-
րը :

Եւ աս վստահութիւնով կ'ու- 15
զէի առաջ ձեզի գալ, որ դուք
երկրորդ անգամ շնորհք ընդունիք.
Ու ձեզմէ անցնիլ դէպ 'ի Մակե- 16
դոնիա, և դարձեալ Մակեդոնիա-
յէն ձեզի գալ, ու ձեզմէ ճամբայ
դրուիլ դէպ 'ի Հրէաստան : Ուս- 17
տի աս որ ես մտածեցի, միթէ թե-
թևութիւնո՞վ շարժեցայ. կամ թէ
ան որ ես կը խորհիմ, մարմնաւորա-
պէ՞ս կը խորհիմ, որ իմ կողմա-
նէս այո այո և ոչ ոչ ըլլայ : Սա- 18
կայն հաւատարիմ է Աստուած,
որ մեր խօսքը ձեզի որ հասաւ,
այո և ոչ չէր : Ինչու որ Աստու- 19
ծոյ Որդին Յիսուս Քրիստոս՝ որ
մեզմով ձեզի քարոզուեցաւ,
(ինծմով և Սիղուանոսով ու Տի-
մոթէոսով,) այո և ոչ չեղաւ,
հապա իր մէջը եղաւ այոն. Վասն- 20
զի որչափ որ Աստուծոյ խոստումնե-
րը կան, իր մէջը Այո են, ու իր
մէջը Ամէն են՝ Աստուծոյ փառքին
համար մեր ձեռքովը : Բայց ան 21
որ մեզ ձեզի հետ մէկտեղ Քրիս-
տոսով հաստատեց, ու մեզ օծեց,
Աստուած է. Որ մեզ կնքեց ալ, 22
և մեզի տուաւ Հոգւոյն գրաւը մեր
սրտերուն մէջը : Բայց ես զԱս- 23
տուած վկայ կը կանչեմ իմ անձիս,
որ ձեզ խնայելուս համար տակաւին
Կորնթոս չեկայ. ոչ այն թէ
ձեր հաւատքին վրայ կը տիրապե-
տենք, հապա գործակից ենք ձեր
ուրախութեանը. ինչու որ դուք
հաւատքով կը կենաք :

## ԳԼ. Բ

Սակայն ես ինծմէ աս որոշեցի, որ 1
նորէն տրտմութիւնով չգամ ձե-
զի : Ինչու որ եթէ ես ձեզ տրտ- 2
մեցընեմ, ալ ով է որ զիս պիտի
ուրախացընէ, թէ չէ ան՝ որ ինծմէ
կը տրտմի : Ու աս գրեցի, որ 3
չըլլայ թէ երբոր գամ՝ տրտմու-
թիւն մը կրեմ անոնցմէ, ուսկից
որ պէտք է ինծի ուրախ ըլլալ.
քանզի ձեր ամենուն վրայ վստահ
եմ, որ իմ ուրախութիւնս ձեր

4 ամէնուդն է։ Ինչու որ շատ նե-
ղութենէ և սրտի տագնապէ, ես
ձեզի գրեցի շատ արցունքով. չէ՛
թէ՝ որ դուք տրտմիք, հապա որ
գիտնաք այն սէրը՝ որ ես ունիմ
աւելի ձեր վրայ։
5 Բայց թէ որ մէկը տրտմեցուց,
չէ՛ թէ զիս տրտմեցուց, հապա
ըստ մասին (որ խօսք ծանր չընեմ)
6 ձեզ ամէնքդ։ Հերիք է անանկ
մարդուն այն պատիժը, որ շատե-
7 րէն եղաւ։ Ասոր ընդհակառակն
պէտք է աւելի ներել անոր ու
մխիթարել, որ չըլլայ թէ անանկը
8 աւելի տրտմութենէն ընկղմի։ Աւա-
տի կ'աղաչեմ ձեզ, որ անոր վրայ
9 ձեր սէրը հաստատէք. (Քանզի ասոր
համար ալ գրեցի, որ ձեզ փորձե-
լով գիտնամ թէ ամէն բանի մէջ
10 հնազանդ էք։ Նա որուն որ դուք
բան մը կը ներէք, ես ալ կը ներեմ.
ինչու որ եթէ ես ալ ներեմ, որու
որ ներեմ՝ ձեզի համար և Քրիս-
11 տոսի կողմանէ.) Որ չըլլայ թէ
զրկանք մը կրենք Սատանայէն.
քանզի անոր խորհուրդները չգիտ-
ցող չենք։
12 Եւ երբոր ես Տրովադա հասայ
Քրիստոսի աւետարանը քարոզելու,
և ինծի դուռ մը բաց էր Տէրոջմով,
13 Իմ հոգւոյս մէջ հանգստութիւն
չունէի, ինչու որ իմ Տիտոս եղ-
բայրս հոն չգտայ. հապա անոնցմէ
հրաժարելով Մակեդոնիա գացի։
14 Բայց գոհութիւն Աստուծոյ՝ որ
միշտ յաղթող կ'ընէ մեզ Քրիստո-
սով, ու զինքը ճանչնալուն հոտը
մեզմով յայտնի կ'ընէ ամէն տեղ.
15 Ինչու որ մենք Աստուծոյ առջևը
Քրիստոսի անոյշ հոտն ենք՝ փըր-
կուածներուն մէջ և կորսուածնե-
16 րուն մէջ. Ոմանց մահուան հոտ
դէպ 'ի մահ, և ոմանց կենդանու-
թեան հոտ դէպ 'ի կեանք. և աս
17 բաներուն ո՞վ բաւական է։ Քան-
զի մենք շատերուն պէս չենք, որ
Աստուծոյ խօսքին խարդախութիւն
կ'ընեն. հապա որպէս թէ անկեղ-
ծութեամբ, հապա որպէս թէ Աս-
տուծմէ՝ Աստուծոյ առջևը Քրիս-
տոսով կը խօսինք։

## ԳԼ. Գ

Կը սկսի՞նք նորէն անձերնիս յանձն 1
ընել. կամ թէ ոմանց պէս
պէ՞տք է մեզի յանձնարարութեան
թուղթեր ձեզի, կամ ձեզմէ։
Հապա մեր թուղթը դուք էք 2
մեր սրտերուն մէջը գրուած, ճանչ-
ցուած ու կարդացուած ամէն մար-
դիկներէն. Յայտնի ըլլալով որ 3
դուք Քրիստոսի թուղթն էք մեր
սպասաւորութիւնովը, չէ՛ թէ մե-
լանով գրուած, հապա կենդանի
Աստուծոյ Հոգիովը. չէ՛ թէ քա-
րեղէն տախտակներու վրայ, հապա
սրտին մարմնեղէն տախտակներուն
վրայ։ Նա անանկ վստահութիւն 4
ունինք մենք Աստուծոյ վրայ Քրիս-
տոսի ձեռքովը. Չէ՛ թէ մենք ինքն- 5
իրեննիս բաւական ենք բան մը
խորհելու՝ որպէս թէ մեզմէ, հա-
պա մեր բաւականութիւնը Աս-
տուծմէ է. Որ մեզ բաւական ալ 6
ըրաւ նոր կտակարանին պաշտօնեա-
ներ ըլլալու՝ չէ՛ թէ գիրին, հապա
հոգիին. ինչու որ գիրը կը սպան-
նէ, բայց հոգին կ'ապրեցընէ։ Իսկ 7
թէ որ քարերու վրայ գրով փո-
րուած մահուան պաշտօնը փառքով
եղաւ, որ Իսրայէլի որդիքը կարող
չեղան Մովսէսին երեսը նայելու՝ ա-
նոր երեսին փառացը համար, որ
պիտի խափանուէր. Ուրեմն հոգի- 8
ին պաշտօնը ի՞նչպէս աւելի փառ-
քով պիտի չըլլայ։ Ինչու որ ե- 9
թէ դատապարտութեան պաշտօնը
փառքով էր, ո՛րչափ աւելի արդա-
րութեան պաշտօնը փառքով պիտի
ըլլայ։ Վասն զի ան որ փառաւոր 10
էր, աս մասին փառաւոր չէ՛ գե-
րազանց փառքին պատճառովը։
Քանզի եթէ ան որ պիտի խափա- 11
նուէր՝ փառքով էր, ո՛րչափ աւելի
ան որ կը կենայ՝ փառքով պիտի
ըլլայ։ Աւասիկ անանկ յոյս որ ու- 12
նինք, շատ համարձակութեամբ կը
վարուինք մեր խօսքին մէջ. Նա չէ՛ 13
թէ ինչպէս որ Մովսէս իր երեսին
վրայ ծածկոց կը դնէր, որ Իսրա-
յէլի որդիքը չնային ան խափա-
նուելու բաներուն վախճանին։ Աս- 14

կայն անոնց միտքերը կուրցան. Ին-
չու որ մինչև աօրուան օրս նոյն
ծածկոցը ձգուած է հին կտակարա-
նին ընթերցմունքին վրայ, ու չվեր-
նար, (ինչու որ Քրիստոսով կը
15 խափանուի,) Հապա մինչև ցայսօր
երբոր Մովսէսին գիրքը կը կարդան,
անոնց սրտին վրայ ծածկոց մը կը
16 կենայ: Բայց երբոր Տէրոջը դառ-
նան, այն ատենը պիտի վերնայ այն
17 ծածկոցը. Արդ Տէրը Հոգին
է. և ուր որ Տէրոջը Հոգին կայ,
18 հոն ազատութիւն կայ: Բայց մենք
ամէնքս բաց երեսով Տէրոջը փառքը
որպէս թէ հայելիի մէջ տեսնելով,
նոյն պատկերին կը նորոգուինք փա-
ռաց 'ի փառս, որպէս թէ Տէրոջը
Հոգիէն:

## ԳԼ. Դ

1 Ուստի աս պաշտօնը ունենալով,
ինչպէս որ ողորմութիւն գտանք,
2 չենք ձանձրանար. Հապա հրա-
ժարեցանք ամօթալի ծածուկ բա-
ներէն, ու խորամանկութիւնով
չենք վարուիր, և խարդախութիւն
չենք ըներ Աստուծոյ խօսքին մէջ.
հապա ճշմարտութիւնը յայտնելով՝
անձերնիս մարդոց ամէն խղճմտան-
քին կ'ընծայենք Աստուծոյ առջևը:
3 Իսկ թէ որ մեր աւետարանը ծած-
կուած ալ է, կորսուածներուն մէջ
4 ծածկուած է. Որոնց մէջ աս աշ-
խարհիս աստուածը անհաւատնե-
րուն միտքերը կուրցուց, որ Քրի-
ստոսի փառաց աւետարանին լոյսը
անոնց վրայ չծագէ, որ ինքն է Աս-
5 տուծոյ պատկերը: Ինչու որ չէ՛
թէ անձերնիս կը քարոզենք, հապա
Քրիստոս Յիսուս Տէրը, ու մեզ՝
ձեր ծառաները Յիսուսի համար:
6 Վասն զի Աստուած որ հրամեց ը-
րաւ խաւարէն լոյս ծագել, ինքը
մեր սրտերուն մէջ ծագեց՝ Աստու-
ծոյ փառաց գիտութեան լոյսը տա-
լու համար Յիսուս Քրիստոսի ան-
7 ձովը: Արդ մենք աս գանձը հողէ
ամաններու մէջ ունինք, որ զօրու-
թեան առաւելութիւնը Աստուծմէ
8 ըլլայ, ու չէ՛ թէ մեզմէ: Ամէն
կողմանէ վշտացած ենք, բայց նեղը
ինկած չենք. կարօտեալ ենք, բայց
յուսահատած չենք. Հալածուած 9
ենք, բայց երեսէ ձգուած չենք.
վար ձգուած ենք, բայց կորսուած
չենք. Ամէն ատեն Յիսուսի մահը 10
մեր մարմիններուն մէջը կը կրենք,
որ Յիսուսի կեանքն ալ մեր մար-
միններուն մէջը յայտնուի: Վասն 11
զի մենք որ կենդանի ենք՝ Յիսուսի
համար միշտ մահուան կը մատ-
նուինք, որ Յիսուսի կեանքն ալ
մեր մահկանացու մարմիններուն մէ-
ջը յայտնի ըլլայ: Ուստի մահը 12
մեր մէջը կը ներգործէ, և կեանքը
ձեր մէջը: Բայց հաւատքին նոյն 13
հոգին ունինք, ինչպէս որ գրուած
է, Հաւատացի, անոր համար
խօսեցայ. մենք ալ կը հաւատանք,
ու անոր համար կը խօսինք. Որ 14
գիտնալով թէ ան որ Տէր Յիսու-
սը յարուց, մեզ ալ Յիսուսով
պիտի յարուցանէ, ու անոր առջևը
պիտի կայնեցընէ ձեզմով մէկտեղ.
Ինչու որ ամէն բան ձեզի համար է, 15
որ այն շնորհքը առատացած՝ շա-
տերուն գոհութիւն ընելովը աւել-
նայ Աստուծոյ փառքին համար:
Վասն որոյ չենք ձանձրանար. 16
բայց թէպէտև աս մեր դուրսի մար-
դը կ'ապականուի, անկայն մեր ներսի
մարդը օրէ օր կը նորոգուի: Ին- 17
չու որ մեր վայրկենական թեթև
նեղութիւնը առաւել քան զառա-
ւել փառաց յաւիտենական գերա-
զանցութիւն կը գործէ մեզի: Վասն 18
զի մենք երևցած բաներուն չենք նա-
յիր, հապա չերևցածներուն. Ին-
չու որ երևցած բաները ժամանակա-
ւոր են, բայց չերևցածները՝ յաւի-
տենական:

## ԳԼ. Ե

Վասն զի գիտենք որ եթէ մեր վե- 1
րանի ձևով երկրաւոր տունը
քակուի, մէկ շինուած մը ունինք
Աստուծմէ, անձեռագործ յաւիտե-
նական տուն մը երկինքի մէջ: Ու- 2
յիրաւի տանը մէջ կը հառա-
չենք, մեր երկնաւոր բնակութիւնը
հագնելու փափաքելով. Միայն 3
թէ երբոր ան հագնինք ըլլանք,

9 Ներքու պէս՝ ու ճշմարիտներ. Անծա-
նօթներու պէս՝ և ծանօթներ. մեռ-
նողներու պէս՝ և ահա կենդանի
ենք. պատժուածներու պէս, ու
10 չսպաննուածներ. Տրտմածներու
պէս՝ ու միշտ ուրախ ենք. աղ-
քատներու պէս՝ ու շատերը կը
հարստացընենք. բան մը չունե-
ցողներու պէս՝ և ամէն բան ստա-
11 ցած ենք: Մեր բերանը ձեզի
բացուած է՛ ով Կորնթացիք, և
12 մեր սիրտը լայնցած: Դուք մեր
կողմէն չէք նեղուիր, հապա ձեր
անձկացած գթոյն կողմէ կը նեղուիք:
13 Ասոր անոր հատուցումը ընելու
համար (իբրև որդիներուս կը խօ-
սիմ ձեզի,) դուք ալ դէպ 'ի ինծի
լայնցէք:
14 Անհաւատներուն հետ օտարա-
խառն լծակից մի՛ ըլլաք. քանզի
ի՞նչ մասնակցութիւն ունի ար-
դարութիւնը անօրէնութեան հետ.
և ի՞նչ հաղորդութիւն ունի լոյսը
15 խաւարին հետ. Ու ի՞նչ միա-
բանութիւն ունի Քրիստոս Բե-
լիարին հետ, կամ ի՞նչ բաժին
ունի հաւատացեալը անհաւատին
16 հետ. Ու ի՞նչ յարմարութիւն
ունի Աստուծոյ տաճարը կռոց հետ.
վասն զի դուք կենդանի Աստուծոյ
տաճարն էք, ինչպէս որ Աստուած
ըսաւ թէ Անոնց մէջը պիտի բնա-
կիմ, ու անոնց մէջը պիտի քալեմ,
և անոնց Աստուած պիտի ըլլամ,
ու անոնք ինծի ժողովուրդ պիտի
17 ըլլան: Ասոր համար ելէ՛ք անոնց
մէջէն, ու զատուեցէ՛ք, կ'ըսէ Տէ-
18 րը, և պիղծ բանի մի՛ դպչիք. Ու
ես ձեզ պիտի ընդունիմ, և ես
ձեզի Հայր պիտի ըլլամ, ու դուք
ինծի տղաքներ ու աղջիկներ պիտի
ըլլաք՝ կ'ըսէ Ամենակալ Տէրը:

## ԳԼ. Է:

1 Ասոր սիրելիք՝ որովհետև մենք
այս խոստմունքները ունինք, մեր
անձերը մարմնի ու հոգիի ամէն
կերպ պղծութիւնէն մաքրենք, և սըր-
բութիւնը կատարելագործենք Աս-
տուծոյ վախովը:
2 Ընդունեցէ՛ք մեզ. մէկու մը
վնաս չտուինք, ոչ մէկը եղծեցինք,
և ոչ մէկը զրկեցինք: Չէ՛ թէ 3
ձեզ դատապարտելու համար ասի կը
զրուցեմ. որովհետև ես առաջուց
ըսեր եմ որ դուք մեր սրտերուն
մէջն էք՝ մեռնելու ու ապրելու ձեզի
հետ: Շատ է իմ համարձակու- 4
թիւնս ձեր վրայ. շատ է իմ պար-
ծանքս ձեզի համար. լեցուն եմ
մխիթարութիւնով, աւելցած եմ
ուրախութիւնով մեր ամէն նեղու-
թիւններուն մէջ: Վասն զի երբ- 5
որ մենք Մակեդոնիա հասանք, բնաւ
մեր մարմինը հանգստութիւն չու-
նեցաւ, հապա ամէն կողմանէ նե-
ղութիւն կը քաշէինք. դուրսէն
պատերազմներ կային, ու ներսէն՝
վախեր: Բայց Աստուած որ խո- 6
նարհները կը մխիթարէ, մեզ մը-
խիթարեց Տիտոսի գալովը: Ու 7
չէ՛ թէ միայն անոր գալովը, հապա
այն մխիթարութիւնովն ալ՝ որով
ինքը մխիթարուեր էր ձեզմով,
երբոր մեզի պատմեց ձեր բաղձան-
քը, ձեր ողբը, ձեր ինծի համար
ունեցած նախանձաւորութիւնը,
անանկ որ ալ աւելի ուրախ եղայ:
Ինչու որ եթէ ձեզ տրտմեցուցի այն 8
թուղթովը, չեմ զղջար, (թէև
զղջացեր էի.) քանզի կը տեսնեմ
որ այն թուղթը ձեզ տրտմեցուց,
թէև քիչ մը ատեն: Հիմա ու- 9
րախ եմ, չէ՛ թէ՝ որ տրտմեցաք,
հապա որ ապաշխարութեան համար
տրտմեցաք. որովհետև դուք Աս-
տուծոյ ուզածին պէս տրտմեցաք, ա-
նանկ որ բանով մըն ալ մեզմէ վնաս
չքաշէք: Ինչու որ Աստուծոյ ու- 10
զածին պէս եղած տրտմութիւնը
փրկութեան համար անապաշխարու-
թիւն կը գործէ, որ զղջանալու
բան չէ. բայց աշխարհի տրտմու-
թիւնը մահ կը գործէ: Քանզի 11
ահա աս բանը՝ որ դուք Աստուծոյ
ուզածին պէս տրտմեցաք, ձեր մէջը
ո՛րչափ ջանք գործեց, ո՛րչափ չքմե-
ղութիւն, ո՛րչափ սրտմտութիւն,
ո՛րչափ վախ, ո՛րչափ բաղձանք, ո՛ր-
չափ նախանձաւորութիւն, ո՛րչափ
վրէժխնդրութիւն. ամէն կերպով
ինքզինքնիդ ցուցուցիք թէ աս բա-

12 նէին մէջ մաքուր էք ։ Ուրեմն ան
որ ես ձեզի գրեցի, չէ՛ թէ զրկան-
քը ընողին համար էր, և չէ՛ թէ
զրկանքը կրողին համար, հապա որ
ձեր վրայ մեր ունեցած հոգը յայտնի
13 ըլլայ ձեզի Աստուծոյ առջևը ։ Աս-
տի ան ձեր մխիթարութեանը հա-
մար մենք մխիթարուեցանք ։ շատ
աւելի ալ ուրախացանք Տիտոսի ու-
րախութեանը համար ։ ինչու որ
անոր հոգին ձեր ամէնէն հանգստու-
14 թիւն գտեր էր ։ Վասն զի ինչ որ
ես անոր առջևը ձեզի համար պար-
ծենցայ՝ ամօթով չեղայ ։ հապա
ինչպէս որ ամէն բան ճշմարտու-
թիւնով խօսեցանք ձեզի, անանկ
ալ Տիտոսին առջևը պարծենալնիս
15 ճշմարիտ եղաւ ։ Անոր սիրտը
աւելի է ձեր վրայ, երբոր կը յիշէ
ձեր ամենուն հնազանդութիւնը,
թէ ինչպէս վախով ու դողով անի-
16 կայ ընդունեցիք ։ Ուստի ուրախ
եմ որ ամէն բանի մէջ ձեր վրայ
վստահութիւն ունիմ ։

## ԳԼ. Ը

1 Արդ՝ եղբայրներ՝ ձեզի կը ծանու-
ցանենք Աստուծոյ շնորհքը, որ
Մակեդոնիայի եկեղեցիներուն տը-
2 րուած է ։ Որ նեղութեան մեծ փոր-
ձին մէջ իրենց ուրախութեանը ա-
ռատութիւնը երևցաւ, և իրենց
ծայր աղքատութիւնը աւելի մեծ
3 առատաձեռնութիւն եղաւ ։ Ին-
չու որ ես կը վկայեմ որ իրենց կա-
րողութեանը չափովը՝ ու կարողու-
թենէն ալ աւելի յօժարակամ ըլլա-
4 լով, Շատ աղաչանքով կ՚աղաչէին
որ սուրբերը ու սուրբերուն համար
եղած պաշտօնին մասնակցութիւնը
5 ընդունինք ։ Ու չէ թէ որչափ որ
մենք կը յուսայինք, հապա անձեր-
նին ալ տուին, առաջ Տէրոջը ու
6 ետքը մեզի Աստուծոյ կամքովը ։ Որ
Տիտոսին աղաչեցինք թէ ինչպէս որ
անիկայ առաջուց սկսեր, անանկ ալ
ձեր մէջը կատարէ աս շնորհքն ալ ։
7 Բայց ինչպէս որ ամէն բանով ա-
ռատացած էք դուք, (հաւատքով
ու խօսքով ու գիտութիւնով և
ամէն ջանքով. ու ձեզմէ մեր վրայ
եղած սիրովը,) նայեցէ՛ք որ աս
շնորհքով ալ առատանաք ։ Չէ՛ 8
թէ հրամայելով մը կը զրուցեմ,
հապա ուրիշներուն ջանքին պատ-
ճառովը, և որ փորձեմ ձեր սիրոյն
հարազատութիւնը ։ Վասնզի դուք 9
գիտէք մեր Տէր Յիսուս Քրիստոսի
շնորհքը, թէ ինքը ձեզի համար
աղքատ եղաւ՝ ան որ հարուստ էր,
որ դուք անոր աղքատանալովը հա-
րըստանաք ։ Ու աս բանիս մէջ 10
խրատ մը կու տամ ։ ինչու որ ա-
սիկայ ձեր օգտին համար է, դուք
որ չէ՛ թէ միայն ընելը, հապա կա-
մենալն ալ առաջուց սկսեցիք ան-
ցած տարուընէ հետէ ։ Ուստի հի- 11
մա ընելն ալ կատարեցէք, որ ին-
չոր կամենալու յօժարութիւն կայ,
նոյնպէս ալ ընելը ունեցածներնուդ
չափովը ըլլայ ։ Վասն զի թէ որ 12
առաջ յօժարութիւնը ըլլայ՝ մարդ
ունեցածին չափովը ընդունելի է,
ու չէ թէ չունեցածին չափովը ։
Ինչու որ չէ՛ թէ ես ուրիշներուն 13
հանգստութիւն կ՚ուզեմ, ու ձեզի
նեղութիւն ։ Հապա հաւասարու- 14
թիւնով՝ հիմակուան ատենս ձեր
աւելին անոնց պակասութիւնը լեցը-
նէ ։ որպէս զի անոնց աւելին ալ օր
մը օգնութեան ըլլայ ձեր պակասու-
թեանը, որ հաւասարութիւն ըլ-
լայ ։ ինչպէս որ գրուած է թէ Ան 15
որ շատ ժողվեց՝, չաւելցաւ ։ ու ան
որ քիչ, չպակսեցաւ ։ Բայց գո- 16
հութիւն Աստուծոյ, որ նոյն հոգը
ձեր վրայ Տիտոսին սիրտը դրեց ։
Ինչու որ մեր աղաչանքը ընդունեց, 17
և իր յօժարամտութիւնը շատ ըլ-
լալով՝ իր կամքովը եկաւ ձեզի քո-
վը ։ Ու անոր հետ խրկեցինք ան 18
եղբայրը, որուն գովութիւնը աւե-
տարանին մէջն է՝ բոլոր եկեղեցի-
ներուն մէջ ։ Ու ոչ միայն այսքան, 19
հապա նաև եկեղեցիներէն ընտրուե-
ցաւ մեզի ճամբորդութեան ընկեր
ըլլալու աս սուրբերուն մէջ, որ
մենք կը ծառայենք Տէրոջը փառքին
համար, ու մեր յօժարութեանը ։
Բայց աս մասին զգուշութիւն կ՚ը- 20
նէինք, որ չըլլայ թէ մէկը արատ
մը դնէ մեր վրայ աս առատութեանս

մէջ , որուն մենք կը ծառայենք ․
21 Քանզի ոչ միայն Տէրոջը առջեւը ,
հապա մարդոց առջեւն ալ բարի
բաներ ընելու հոգ կը տանինք :
22 Նաեւ անոնց հետ մեր եղբայրը ղրկե-
ցինք , որն որ շատ բաներու մէջ
փորձելով՝ շատ անգամ յօժարամիտ
գտեր ենք ․ ու հիմա՝ ալ աւելի յօ-
ժարամիտ՝ այն մեծ վստահութենո-
23 վը որ ձեր վրայ ունի : Նայց թէ որ
Տիտոսին համար կը հարցնէք , ա-
նիկայ իմ ընկերս է , եւ ձեր մէջը իմ
գործակիցս ․ իսկ թէ որ մեր եղ-
բայրներուն համար , անոնք եկեղե-
ցիներուն խրկածներն են , ու Քրիս-
24 տոսի փառքը : Ուստի ձեր սիրոյն՝
եւ մեր ձեր վրայով պարծենալուն
ապացոյցը անոնց վրայ ցուցուցէք
եկեղեցիներուն առջեւը :

## ԳԼ․ Թ

1 Վասնզի սուրբերուն ըլլալու պաշ-
տօնին վրայով իմ աւելորդ
2 է ձեզի գրել ․ Ինչու որ գիտեմ
ես ձեր յօժարամտութիւնը , որուն
վրայով կը պարծենամ ձեզի համար
Մակեդոնացւոց մէջ , թէ Աքայե-
ցիք անցած տարուընէ հետէ պատ-
րաստ են ․ ու ձեր նախան-
3 ձանքը շատերը գրգռեց : Եւ
ահա եղբայրները խրկեցի , որ մեր
ձեզի համար պարծենալը աս մասին
մէջ պարապ չըլլայ , հապա պատ-
րաստ գտնուիք՝ ինչպէս որ ըսեր
4 եմ ․ Որ չըլլայ թէ երբոր Մակե-
դոնացիք իմ հետս գան ու ձեզ
անպատրաստ գտնեն , ալ մենք
(որ չըսենք թէ դուք ,) ամօթով
մնանք աս պարծանքին վստահու-
5 թեանը մէջ : Ուստի հարկաւոր
սեպեցի եղբայրներուն աղաչել , որ
առաջուց ձեզի գան ու առաջուց
կարգի դնեն ան ձեր առաջուց ծա-
նուցուած ընծան՝ որ պատրաստ ըլ-
լայ , անանկ որ ընծայի պէս ըլլայ ,
ու չէ թէ ագահութեան պէս :
6 Նայց անիկայ կը ծանուցանեմ թէ
ան որ խնայելով կը սերմանէ՝ խը-
նայելով պիտի հնձէ , ու ան որ ա-
ռատութեամբ կը սերմանէ՝ առա-
7 տութենով պիտի հնձէ : Ամէն
մէկը ինչպէս որ իր սրտովը կը յօ-
ժարի , թող անանկ տայ : չէ թէ
տրտմութեամբ կամ ստիպմամբ ․
Ինչու որ Աստուած յօժարակամ
տուողը կը սիրէ : Նայց կարող 8
է Աստուած բոլոր շնորհքները ձե-
զի առատօրէն տալու ․ որ ամէն
բանի մէջ ամէն ատեն բոլոր ձեզի
պէտք եղածը ունենալով , ամէն
բարի գործերով առատանաք ․
Ինչպէս որ գրուած է ․ Տարածեց 9
ու աղքատներուն տուաւ ․ անոր
արդարութիւնը յաւիտեան կը մը-
նայ : Եւ անիկայ որ սերմ ցանո- 10
ղին սերմ կը պարգեւէ ․ եւ կերակուրի
համար հաց , ձեր սերմանիքը պար-
գեւէ եւ աւելցընէ , ու ձեր արդարու-
թեան պտուղները շատցընէ ․ Որ ա- 11
մէն բանի մէջ հարստանաք ամէն
կերպ առատութենով , որ մեր ձեռ-
քովը կը պատճառէ գոհութիւն
առ Աստուծոյ : Ինչու որ աս պաշ- 12
տօնիս մատակարարութիւնը չէ թէ
միայն սուրբերուն պակասութիւնը
լեցընելու համար է , հապա նաեւ
աւելի շատցընելու Աստուծոյ գո-
հութիւն տալը ․ Որպէս աս ձեր 13
պաշտօնին փորձովը փառաւորեն
զԱստուած՝ Քրիստոսի աւետարանը
խոստովանելնուդ հնազանդութեա-
նը համար , եւ ան առատաձեռ-
նութեանը համար որով հաղորդակ-
ցութիւն կ'ընէք անոնց ու ամէ-
նուն ․ Եւ իրենց աղօթքը ձեզի 14
համար մատուցանեն , փափաքը ունե-
նալով ձեր վրայ՝ Աստուծոյ գերա-
զանց շնորհքին համար՝ որ ձեր մէջն
է : Եւ գոհութիւն Աստուծոյ՝ անոր 15
չպատմուելու պարգեւին համար :

## ԳԼ․ Ժ

Նայց ես Պօղոս ձեզի կ'աղաչեմ 1
Քրիստոսի հեզութիւնովը ու
քաղցրութիւնովը , որ երես առ ե-
րես գտնուած ատենս՝ խոնարհ եմ
ձեր մէջը , բայց հեռուէն կը հա-
մարձակիմ ձեզի ․ Կ'աղաչեմ՝ որ 2
չըլլայ թէ մօտէն ալ համարձակիմ
ան վստահութիւնովը՝ որով միտք
ունիմ յանդգնիլ մէկ քանիներուն
վրայ , որոնք որ մեր վրայով անանկ

կը կարծեն թէ մարմնաւորապէս
3 կը քալենք : Քանզի թէպէտ մար-
մնոյ մէջ կը քալենք , բայց չէ՛
թէ մարմնաւորապէս զինուորութիւն
4 կ'ընենք . Ինչու որ մեր զինուո-
րութեան զէնքերը մարմնաւոր չեն ,
հապա Աստուծմէ զօրութիւն ա-
ռած՝ ամրոցները քակելու . մենք
5 խորհուրդներ կը քակենք , Եւ Աս-
տուծոյ գիտութեանը դէմ բոլոր
հպարտացած բարձր բաները , ու
բոլոր միտքերը Քրիստոսի հնազան-
6 դութեանը գերի կ'ընենք . Եւ պատ-
րաստութիւն ունինք վրէժ առնելու
ամէն անհնազանդութենէ , երբոր
ձեր հնազանդութիւնը կատարեալ
7 ըլլայ : Դուք երեւութի՞ն կը նա-
յիք . Թէ որ մէկը վստահ ըլլայ իր
անձին վրայ՝ թէ ինք Քրիստոսինն
է , ան նորէն ինքիրմէ խորհի՝ որ
ինչպէս ինք Քրիստոսինն է , ա-
8 նանկ ալ մենք : Քանզի թէ որ
աւելի ալ պարծենալու ըլլամ աս
մեր իշխանութեանը վրայով՝ որ
Տէրը մեզի տուաւ ձեզ շինելու ,
ու չէ՛ թէ քակելու համար , պիտի
9 չամչնամ . Որ անանկ չերեւնամ՝
որպէս թէ ես թուղթերովս ձեզի
10 վախ մը կը դնեմ . Քանզի՝ Անոր
թուղթերը , կ'ըսէ մէկը , ծանր
ու զօրաւոր են , բայց անոր մար-
մնոյն երեւոյթը տկար է , ու խօս-
11 քը անարգ . Անանկ մարդը աս
թող խորհի , որ մենք հեռուէն
ինչպէս որ ենք խօսքով մեր թուղ-
թերովը , մօտէն ալ անանկ պիտի
12 ըլլանք գործքով : Ինչու որ մենք
չենք համարձակիր մեր անձը կցնել
դնել ու բաղդատել ոմանց հետ ,
որ ինքզինքնին կը գովեն . բայց ա-
նոնք իրենցմով իրենց անձերը չա-
փելով , և զիրենք իրենց հետ բաղ-
13 դատելով՝ չեն հասկընար : Բայց
մենք չափէ դուրս բաներով պիտի
չպարծենանք , հապա ան կանոնին
չափովը , որ Աստուած մեզի բաժին
14 տուաւ մինչև ձեզի հասնելու . Չէ՛
թէ որպէս թէ մենք ձեզի հասած
չենք , ու ինքզինքնիս չափէն աւելի
կ'երկընցընենք . Ինչու որ Քրիս-
տոսի աւետարանովը մինչև ձեզի
հասանք : Եւ չէ՛ թէ չափէ դուրս 15
բաներով ուրիշներուն աշխատանք-
ներովը կը պարծենանք , հապա յոյս
ունինք որ ձեր հաւատքը աճելու-
լուն՝ մեր կանոնին չափովը ձեզմով
աւելի ընդարձակինք , Ձեզմէ ան- 16
դին կողմերը աւետարանը քարո-
զելու , և չէ՛ թէ պատրաստ բա-
ներու վրայ պարծենալու ուրիշի մը
կանոնով : Բայց ան որ կը պար- 17
ծենայ , Թող Տէրոջմով պարծե-
նայ : Վասն զի չէ՛ թէ ան որ իր 18
անձը կը գովէ , անիկայ է ընտ-
րուածը , հապա ան որ Տէրը զա-
նիկայ կը գովէ :

ԳԼ. ԺԱ

Երանի՛ թէ քիչ մը ներէիք իմ 1
անմտութեանս . և իրաւցընէ
համբերեցէք ինծի : Վասն զի ձեր 2
վրայ նախանձաւոր եմ Աստուծոյ
նախանձովը . Ինչու որ ես ձեզ մէկ
էրկան մը նշանեցի՝ մաքուր կոյս մը
պէս Քրիստոսի դիմացը հանելու :
Միայն թէ կը վախնամ՝ չըլլայ թէ 3
ինչպէս որ օձը Եւան խաբեց իր
խորամանկութիւնովը , անանկ ալ
ձեր միտքերը ապականին Քրիստոսի
վրայ եղած միամտութենէն : Վասն 4
զի թէ որ մէկը գալու ըլլայ՝ և
ուրիշ Յիսուս քարոզէ՝ որ մենք ան
չքարոզեցինք , կամ ուրիշ հոգի
առնէք՝ որ չառիք , կամ ուրիշ
աւետարան՝ որն որ չէք ընդունած ,
անանկներուն աղէկ կը համբերէիք :
Քանզի ես անանկ կը սեպեմ՝ որ 5
ամէնէն երեւելի առաքեալներէն բա-
նով մըն ալ պակաս չեմ : Եւ 6
թէպէտ խօսքի կողմէ անհիրթ եմ ,
բայց չէ՛ թէ գիտութեան կողմէ ,
հապա ամէն բանի մէջ բոլորովին
անձերնիս ձեզի յայտնի ըրինք : Մի- 7
թէ յանցա՞նք գործած եղայ՝ որ Աս-
տուծոյ աւետարանը ձեզի ձրի քա-
րոզելով իմ անձս խոնարհեցուցի ,
որ դուք բարձրանաք : Ուրիշ ե- 8
կեղեցիները կողոպտեցի՝ անոնցմէ
թոշակ առնելով ձեզի ծառայելու
համար : Ու ձեր քովը գտնուած 9
ատենս՝ երբոր պակասութիւն մը ու-
նեցայ , չեղայ մէկուն ծանրութիւն

համար՝ որ առաջուց մեղք գործե-
ցին, ու չապաշխարեցին իրենց
գործած պղծութեանը և պոռնկու-
թեանը ու գիճութեանը վրայ :

### ԳԼ. ԺԳ

1 Աս երրորդ անգամ է որ ձեզի կու-
գամ. երկու կամ երեք վկա-
ներու բերնէ պիտի հաստատուի ա-
2 մէն բան : Առաջուց ըսեր եմ՝ և
նորէն առաջուց կը գուշակեմ (որ-
պէս թէ երկրորդ անգամ ներկայ
կը գտնուիմ՝ թէև հիմա հեռուէն
կը գրեմ) առջի մեղանչողներուն և
ուրիշ ամենուն, որ եթէ նորէն
3 գամ՝ պիտի չխնայեմ. Որովհետև
Քրիստոսի ինծմով խօսելուն ապա-
ցոյց կը փնտռէք, որ ինքը ձեր
վրայ տկարացած չէ, հապա ձեր
4 մէջը զօրացած է. Որ թէպէտ խա-
չուեցաւ տկարութենով, բայց
կենդանի է Աստուծոյ զօրութեամ-
բը. քանզի մենք ալ թէպէտ կը
տկարանանք անով, բայց կենդանի
պիտի ըլլանք անոր հետ Աստուծոյ
5 զօրութեամբը ձեր մէջը : Փոր-
ձեցէք ձեր անձերը թէ հաւատքին
մէջն էք. քննեցէք ձեր անձերը.
չէ՞ք գիտեր ինքզինքնիդ, որ Յի-
սուս Քրիստոս ձեր մէջն է, միայն
6 թէ որ խոտելի չըլլաք : Բայց կը
յուսամ որ պիտի գիտնաք թէ մենք
խոտելի չենք : Եւ կը խնդրեմ 7
Աստուծմէ որ դուք մէկ չարութիւն
մը չընէք. ոչ թէ որ մենք ընտիր
երեւինք, հապա որ դուք բարին
գործէք, թէև մենք իբրև խոտելի
ըլլանք : Վասն զի ճշմարտութեան 8
դէմ կարողութիւն մը չունինք,
հապա ճշմարտութեան համար : Ու- 9
րախ ենք՝ երբոր մենք կը տկարա-
նանք ու դուք զօրաւոր կ՚ըլլաք,
և մենք ալ աս ձեր հաստատու-
թեանը համար կ՚աղօթենք : Աս- 10
տի աս կը գրեմ ձեզի հեռուէն, որ
չըլլայ թէ երբոր գամ՝ սաստկու-
թեամբ վարուիմ այն իշխանու-
թեանը համեմատ, որ Տէրը ինծի
տուաւ շինելու և ոչ թէ քակելու
համար :

Վերջապէս, եղբայրնե՛ր՝ ողջ ե- 11
ղէք, հաստատ կեցէք, մխիթարուե-
ցէ՛ք, միաբան եղէք, խաղաղու-
թիւն ըրէք. և սիրոյ ու խաղա-
ղութեան Աստուածը ձեր հետը
պիտի ըլլայ : Բարե՛ւ տուէք իրա- 12
րու սուրբ համբուրով. բարև կ՚ը-
նեն ձեզի բոլոր սուրբերը : Տէր 13
Յիսուս Քրիստոսի շնորհքը և
Աստուծոյ սէրը ու Հոգւոյն Սրբոյ
հաղորդութիւնը ձեր ամենուն հետը
ըլլայ : Ամէն :

---

# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԳԱՂԱՏԱՑԻՍ

### ԳԼՈՒԽ Ա

1 Պօղոս առաքեալ, ոչ թէ
մարդոցմէ ու ոչ թէ մարդու
ձեռքով, հապա Յիսուս Քրիստո-
սի ձեռքովը, և Հօր Աստուծոյ՝
որ զանիկայ մեռելներէն յարոյց,
2 Եւ բոլոր եղբայրները որ իմ հետս
են՝ Գաղատիոյ եկեղեցիներուդ.
3 Շնորհք և խաղաղութիւն ձեզի
Հօր Աստուծմէ ու մեր Տէր Յի-
սուս Քրիստոսէն, Ան որ իր անձը 4
տուաւ մեր մեղքերուն համար, որ
մեզ փրկէ հիմակուան չար աշխար-
հէն՝ Աստուծոյ ու մեր Հօրը կա-
մացը համեմատ. Որուն փառք 5
յաւիտեանս յաւիտենից : Ամէն :
Կը զարմանամ որ այդչափ շու- 6
տով ուրիշ աւետարանի կը փո-
խուիք անկէ՝ որ ձեզ Քրիստոսի

7 շփոթողը կանչեց · Որ չկայ ուրիշ
աւետարան · միայն թէ կան ոմանք՝
որ ձեզ կը խռովեցընեն , ու կ՚ու-
զեն Քրիստոսի աւետարանը խան-
8 գարել : Բայց թէ որ մենք կամ
երկինքէն հրեշտակ մը գայ աւետա-
րանէ ձեզի անկէ ուրիշ՝ որ մենք
աւետարանեցինք ձեզի , նզովեալ
9 ըլլայ : Ինչպէս որ առաջ ըսինք ,
հիմա ալ նորէն կ՚ըսեմ : Եթէ որ
մէկը ձեր ընդունածէն ուրիշ ա-
ւետարան քարոզելու ըլլայ ձեզի ,
10 նզովեալ ըլլայ : Քանզի հիմա
մարդիկնե՞րը կը հաճեցընեմ թէ
զԱստուած . կամ մարդո՞ց հաճե-
լի ըլլալ կը փնտռեմ · ինչու որ
եթէ ես տակաւին մարդոց հաճելի
ըլլայի , ալ Քրիստոսի ծառայ չէի
ըլլար :
11 Կը ծանուցանեմ ձեզի , եղբայր-
ներ՝ այն աւետարանը՝ որ ինծմէ քա-
րոզուեցաւ , թէ անիկայ մարդու-
12 քան չէ : Որովհետեւ ես ալ մար-
դէ չառի անիկայ , և ոչ ալ սոր-
վեցայ , հապա Յիսուս Քրիս-
13 տոսի յայտնութենէն : Վասն զի
լսած էք դուք իմ առջի ժամանակի
վարմունքս Հրէութեան մէջ , ին-
չպէս չափէ դուրս կը հալածէի Աս-
տուծոյ եկեղեցին՝ ու կը կործանէի
14 զանիկայ · Եւ իմ հայրենի աւան-
դութիւններուս խիստ նախանձա-
ւոր ըլլալով՝ իմ ազգիս մէջ եղած
շատ հասակակիցներէս աւելի յա-
ռաջադէմ էի Հրէութեան մէջ :
15 Բայց երբոր ուզեց Աստուած՝ ( որ
որոշեց զիս իմ մօրս որովայնէն , և
16 իր շնորհքովը զիս կանչեց , ) Իր
Որդին յայտնել , որ զանիկայ
հեթանոսաց մէջ քարոզեմ , մէկէն
՚ի մէկ բան մը չիմացուցի մարմնին
17 ու արիւնին , Ոչ ալ Երուսաղէմ
ելայ ինծմէ առաջ առաքեալ եղող-
ներուն քովը , հապա Արաբիա
գացի , ու նորէն Դամասկոս դար-
18 ձայ : Ետքը երեք տարիէն ետեւ Ե-
րուսաղէմ ելայ Պետրոսը տեսնե-
լու , և տասնըհինգ օր անոր քովը
19 կեցայ · Սակայն առաքեալներէն
ուրիշ մէկը չտեսայ , բայց միայն
20 Յակոբոս Տէրոջը եղբայրը : Բայց
աս որ կը գրեմ ձեզի՝ ահա Աստու-
ծոյ առջեւը կը հաստատեմ , որ սուտ
չեմ զրուցեր : Ետքը եկայ 21
Սուրիայի ու Կիլիկիայի կողմերը ·
Եւ զիս դէմ առ դէմ չէին ճանչ- 22
նար այն եկեղեցիները՝ որ Հրէաս-
տանի մէջ էին Քրիստոսով · Մի- 23
այն թէ անոնք լսած էին թէ Ան
որ առաջ մեզ կը հալածէր , հի-
մա ինքը այն հաւատքը կը քարո-
զէ՝ որ ատեն մը կը կործանէր · Ու 24
ինծմով զԱստուած կը փառաւորէ-
ին :

## ԳԼ. Բ

Ետքը տասնըչորս տարիէն ետեւ 1
նորէն Երուսաղէմ ելայ Բառ-
նաբասին հետ՝ Տիտոսն ալ մէկտեղ
առնելով : Ու ելայ յայտնութիւ- 2
նով , և անոնց իմացուցի այն աւե-
տարանը՝ որ հեթանոսներուն մէջ
կը քարոզեմ , բայց առանձին ա-
նոնց որ երեւելիներ էին , որ չըլլայ
թէ պարապ տեղը վազեմ կամ
վազած ըլլամ : Բայց չէ՞ թէ իմ 3
հետս եղող Տիտոսն ալ՝ որ Յոյն
էր , պարտաւորեցաւ թլփատուիլ ·
Անհաւանող ներս սպրդուող սուտ 4
եղբայրներուն համար՝ որոնք սահե-
լով ներս մտան Քրիստոս Յիսուսով
մեր ունեցած ազատութիւնը լրտե-
սելու համար , որ մեզ ծառայեցը-
նեն · Որ անոնց քիչ մը ատեն 5
անգամ մտիկ չըրինք հպատակելու ,
որ աւետարանին ճշմարտութիւնը
հաստատուն մնայ ձեր մէջը : Բայց 6
անոնք որ կը կարծուէին բան մը
ըլլալ , ինչ որ էին՝ այն իմ
հոգս չէ · Աստուած մարդոց աչա-
ռութիւն չըներ · վասն զի անոնք
կարծուածները բան մը չիմացուցին
ինծի : Հապա անոր հակառակը՝
երբոր տեսան որ անթլփատներուն
աւետարանը ինծի յանձնուած է ,
ինչպէս Պետրոսին ալ թլփա-
տուածներուն . ( Վասն զի ան որ 8
Պետրոսին յաջողեց թլփատուած-
ներուն առաքելութիւն ընելու ,
ինծի ալ յաջողեց հեթանոսներու-
նը · ) Ու երբոր ինծի տրուած շը- 9
նորհքը գիտցան Յակոբոս ու Կե-

փաս և Յովհաննէս. որոնք սիւներ
սեպուած էին , աջ ձեռքերնին
տուին ինծի ու Բառնաբասին' ընկե-
րութեան հաղորդակցութեան , որ մենք
հեթանոսներուն մէջը երթանք , ու
10 անոնք թլփատուածներուն . Միայն
թէ կը խնդրէին որ աղքատները յի-
շենք . որ ես ալ փոյթ ունեցայ անի
11 բանը ընելու : Բայց երբոր Պետ-
րոս Անտիոք եկաւ , ես անոր դէմ
կեցայ . որովհետև ինքը մեղա-
12 դրուելու էր : Ինչու որ դեռ Յա-
կոբոսին քովէն մէկ քանի հոգի
չեկած , ինքը հեթանոսներուն հետ
անխտրաբար կ'ուտէր . բայց երբոր
եկան' մեկդի կը քաշուէր , ու ինք-
զինքը կը զատէր , վախնալով ա-
նոնցմէ' որ թլփատուածներէն էին :
13 Ու անոր հետ կեղծաւորեցան
միւս Հրեաներն ալ , անանկ որ
Բառնաբաս ալ անոնց կեղծաւո-
14 րութեանը ծռեցաւ : Բայց ես երբոր
տեսայ որ աւետարանին ճշմարտու-
թեանը մէջ շիտակ չէին քալեր ,
ամենուն առջին Պետրոսի զրուցե-
ցի , Եթէ դուն որ Հրեայ ես , հե-
թանոսի պէս ու չէ թէ Հրեայի
պէս կ'ապրիս , ի՞նչպէս հեթանոս-
ները կը ստիպես Հրեայի պէս վա-
15 րուելու : Մենք որ բուն Հրեայ
ենք , և չէ թէ հեթանոսներէն մե-
16 ղաւորներ , Ու գիտնալով' որ մարդ
օրէնքին գործքերէն չկրնար արդա-
րանալ , հապա Յիսուս Քրիստոսի
հաւատքէն , մենք ալ Քրիստոս
Յիսուսի հաւատացինք' որ արդա-
րանանք Քրիստոսի հաւատքէն , և
չէ թէ օրէնքին գործքերէն , որով-
հետև օրէնքին գործքերէն մէկ մար-
17 մին մը պիտի չարդարանայ : Իսկ
եթէ մենք որ կ'ուզենք Քրիստո-
սով արդարանալ , մեղաւոր գըտ-
նուինք , ուրեմն Քրիստոս մեղաց
պաշտօնեա՞յ եղաւ . քաւ լիցի :
18 Քանզի թէ որ ես իմ քակած բա-
ները նորէն կը շինեմ , իմ անձս
19 յանցաւոր կը ցուցնեմ : Ինչու
որ ես օրէնքով մեռայ օրէնքին , որ
Աստուծոյ կենդանի ըլլամ : Քը-
20 րիստոսի հետ խաչը ելայ . Եւ ալ
կենդանի եմ չէ թէ ես' հապա
Քրիստոս կենդանի է իմ մէջս .
բայց ես որ հիմա մարմինովս կ'ապ-
րիմ' Աստուծոյ Որդւոյն հաւատ-
քովը կ'ապրիմ ան որ զիս սիրեց ,
ու իր անձը ինծի համար մատնեց :
Ես Աստուծոյ շնորհքը չեմ խափա- 21
ներ . ինչու որ եթէ արդարութիւ-
նը օրէնքէն էր , ուրեմն Քրիստոս
պարապ տեղը մեռաւ :

## ԳԼ. Գ

Ո՛վ անմիտ Գաղատացիք' ո՞վ 1
ձեզ հրապուրեց . որ ձեր աչքե-
րուն առջևը Յիսուս Քրիստոս
ձեր մէջը խաչը ելած նկարագրուե-
ցաւ : Այսիկայ միայն կ'ուզեմ ձեզ- 2
մէ սորվիլ . Օրէնքի՞ն գործքե-
րովը դուք Հոգին առիք' թէ հա-
ւատքին լսելովը : Այդչափ ան- 3
մի՞տ էք . հոգիով սկսեցիք , ու
հիմա մարմինո՞վ կը վերջանաք :
Այնչափ դիպուածները պարա՞պ 4
տեղը ձեր վրայէն անցան , (թէ որ
պարապ ըլլայ ալ : ) Ուստի ան 5
որ ձեզի Հոգին բաշխեց , և ձեր
մէջը զօրութիւններ գործեց , օրէն-
քի՞ն գործքերովը էր' թէ հաւատ-
քին լսելովը : Ինչպէս որ Աբրա- 6
համ Աստուծոյ հաւատաց , ու անոր
արդարութիւն սեպուեցաւ : Ու- 7
րեմն գիտցէ՛ք թէ անոնք որ հա-
ւատքէն են , անոնք են Աբրահամի
որդիքը : Ու գիրքը' առաջուց 8
գիտնալով թէ Աստուած հեթա-
նոսները հաւատքով կ'արդարացը-
նէ , առաջուց աւետիս տուաւ Աբ-
րահամին թէ Քեզմով պիտի օրհ-
նուին բոլոր ազգերը : Ուստի 9
անոնք որ հաւատքէն են' կ'օրհնուին
հաւատացեալ Աբրահամին հետ :
Վասն զի անոնք որ օրէնքին գործ- 10
քերէն են , անէծքի տակ են . ինչու
որ գրուած է թէ Անիծեալ ըլլայ
ամէն մարդ' որ օրէնքին գիրքը ա-
մէն գրուածներուն մէջ չկենար' որ
զանոնք կատարէ : Ու թէ օրէն- 11
քով մէկը չկրնար արդարանալ
Աստուծոյ առջևը , ան յայտնի է .
քանզի Արդարը հաւատքէն պիտի
ապրի : Բայց օրէնքը հաւատքէն 12
չէ . հապա Ան որ կը կատարէ զան

10 Օրերը կը զննազանէք, ու ամիս-
նեը, և ժամանակները ու տարի-
11 ները: Կը վախնամ ձեզմէ, որ
գուցէ պարապ տեղը ձեր վրայ աշ-
խատած ըլլամ:
12 Ինծի պէս եղէք, ինչու որ ես
ալ ձեզի պէս եղայ, եղբայրներ՝ ձե-
զի կ'աղաչեմ. դուք ինծի վնաս մը
13 հասուցած չէք: Գիտէք դուք՝ որ
մարմնոյս տկարութեամբը ձեզի առա-
ջի անգամ աւետարանը քարոզեցի.
և իմ մարմնիս վրայ եղած փորձու-
14 թիւնս Զանարգեցիք ու չարհա-
մարհեցիք, հապա Աստուծոյ հրեշ-
տակի մը պէս զիս ընդունեցիք՝
15 Քրիստոս Յիսուսի պէս: Ուրեմն
ի՞նչ էր այն ձեր երանութիւնը.
քանզի ես կը վկայեմ ձեզի, որ
եթէ կարելի էր՝ ձեր աչքերը պիտի
16 հանէիք ու ինծի տայիք: Ուստի
ձեր թշնամի՞ն եղայ ձեզի ճշմարիտը
17 խօսելուս համար: Ձեզի նախանձա-
ւոր են անոնք՝ չէ թէ բարիին,
և կ'ուզեն ձեզ արգիլել, որ իրենց
18 նախանձաւոր ըլլաք: Սակայն աղէկ
է ամէն ատեն բարիին նախանձաւոր
ըլլալ, ու չէ թէ միայն երբոր ձեր
19 մէջը ըլլամ: Իմ որդեակներս՝ որ
ձեզմով նորէն ծննդական ցաւ կը
քաշեմ, մինչև որ Քրիստոս ձեր
20 մէջը ձևակերպի: Կ'ուզէի հիմա
ձեր մէջը ներկայ ըլլալ, ու փոխել
իմ ձայնս. ինչու որ ես ձեր վրայով
տարակուսած եմ:
21 Ըսէք ինծի, դուք որ օրէնքին
տակը կ'ուզէք ըլլալ, օրէնքը չէ՞ք
22 լսեր: Վասն զի գրուած է թէ
Աբրահամ երկու որդի ունէր, մէ-
կը՝ աղախինէն, ու միւսը՝ ազատ
23 կնիկէն: Բայց այն որ աղախինէն
էր՝ մարմնոյ կողմանէ ծնած էր, իսկ
այն որ ազատ կնիկէն՝ խոստումովին
24 համեմատ. Ասոնք բաները այլա-
բանօրէն կը մեկնուին. ինչու որ
ասոնք են երկու կտակարանները,
մէկը՝ Սինայ լեռնէն՝ որ ծառայու-
թեան համար կը ծնանի, որ է
25 Հագար. Ինչու որ Հագար Ա-
րաբիայի մէջ Սինայ լեռն է, և կը
համեմատի հիմակուան Երուսաղէ-
մին՝ որ իր զաւակներովը մէկտեղ
կը ծառայէ: Բայց վերի Երուսա- 26
ղէմը ազատ է, որ մեր ամենուն
մայրն է: Ինչու որ գրուած է, 27
Ո՛վ չծնանող ամուլ՝ ցնծա. ձայն
ծննդական ցաւ չքաշող՝ գոչէ՛ և
աղաղակէ՛. քանզի երեսէ ձգուա-
ծին տղաքները էրիկ ունեցողին որ-
դիներէն շատ պիտի ըլլայ: Ուստի 28
մենք Եղբայրներ՝ Իսահակին պէս
խոստումնանիքին որդիներն ենք: Բայց 29
ինչպէս որ այն ատենը մարմնոյ կող-
մանէ ծնածը կը հալածէր զանիկայ
որ հոգիին կողմանէ էր, անանկ ալ
հիմա: Սակայն գիրքը ի՞նչ կ'ը- 30
սէ. Դո՛ւրս հանէ այս աղախինը
ու անոր որդին, ինչու որ աղախի-
նին որդին ազատ կնկանը որդւոյն
հետ ժառանգութիւն պիտի չառ-
նէ: Ուստի Եղբայրներ՝ մենք ա- 31
ղախինին զաւակները չենք, հապա
ազատին:

## ԳԼ. Ե

Ուստի ամէնք կեցէք այն ազատու- 1
թիւնովը՝ որով Քրիստոս մեզ
ազատեց, և նորէն ծառայութեան
լուծի տակ մի՛ մտնէք: Ահա ես 2
Պօղոս կը յայտնեմ ձեզի, որ եթէ
թլփատուիք, Քրիստոս ձեզի օ-
գուտ մը չըներ: Ու դարձեալ ա- 3
մէն թլփատուող մարդու կը վկա-
յեմ թէ պարտական է բոլոր օ-
րէնքը կատարելու: Խափանած էք 4
դուք Քրիստոսէն, որ օրէնքով
արդարանալ կ'ուզէք, ու շնորհ-
քէն ինկած էք: Ինչու որ մենք 5
Հոգիով կը սպասենք արդարու-
թեան յոյսին՝ հաւատքով: Վասն 6
զի Քրիստոս Յիսուսի քով ոչ
թլփատութիւնը բանի մը կարող է,
ոչ ալ անթլփատութիւնը, հապա
հաւատքը՝ որ սիրով 'ի գործ կը
դրուի. Դուք աղէկ կը վազէիք. 7
Ո՞վ ձեզ ետ կեցուց՝ որ ճշմարտու-
թեան չհնազանդիք: Աս դրդումը 8
անկէ չէ՝ որ ձեզ կանչեց: Քիչ 9
մը խմորը բոլոր զանգուածը կը
խմորէ: Բայց ես յոյս ունիմ ձեր 10
վրայ Տէրոջմով, որ ուրիշ կերպ
բան մը պիտի չխորհիք. և այն որ
ձեզ կը խռովեցնէ, դատաստան-

տութիւն պիտի կրէ՝ ով որ ըլլայ ։
11 Սակայն ես եղբայրներ՝ թէ որ ես տա-
կաւին թլփատութիւն կը քարո-
զեմ , ալ ինչո՞ւ կը հալածուիմ .
ուրեմն խաչին գայթակղութիւնը
12 խափանուած է ։ Երանի՜ թէ բո-
լորովին կտրուէին անոնք որ ձեզ
կը խռովեցընեն ։
13 Վասն զի դուք ազատութեան
կանչուած էք՝ եղբայրներ . միայն
թէ ձեր ազատութիւնը մարմնոյ
ցանկութիւններու պատճառ չըլլայ ,
հապա սիրով իրարու ծառայու-
14 թիւն ըրէք ։ Ինչու որ բոլոր օ-
րէնքը սա մէկ խօսքին մէջ կը կա-
տարուի թէ Դուն ընկերդ սիրես
15 քու անձիդ պէս ։ Հապա թէ որ
իրար խածնէք և ուտէք , զգոյշ
կեցէք որ չըլլայ թէ իրարմէ սպա-
16 ռիք ։ Արդ թէ սա կը զրու-
ցեմ . Հոգիով քալեցէք , ու մար-
մնին ցանկութիւնը պիտի չկատա-
17 րէք ։ Ինչու որ մարմինը կը ցան-
կայ Հոգիին հակառակ , ու Հոգին
մարմնին հակառակ . և ասոնք ի-
րարու հակառակ են , որ չըլլայ թէ
18 ինչ որ կ՚ուզէք՝ ան ընէք ։ Բայց
թէ որ Հոգիէն կ՚առաջնորդուիք ,
19 ալ օրէնքին տակը չէք ։ Եւ մար-
մնին գործքերը յայտնի են ,
որ ասոնք են . շնութիւն , պոռ-
նկութիւն , պղծութիւն , գիճու-
20 թիւն , կռապաշտութիւն , կա-
խարդութիւն , թշնամութիւններ ,
կռիւներ , նախանձներ , բարկու-
թիւններ , հակառակութիւններ ,
երկպառակութիւններ , բաժանում-
21 ներ , Չար նախանձներ , մարդա-
սպանութիւններ , գինովութիւն-
ներ , անառակութիւններ , ու ինչ
որ ասոնց նման են . որ հիմակուց
ես ձեզի կը զրուցեմ , ինչպէս ա-
ռաջուց ալ կը զրուցէի , որ ասանկ
բաներ գործողները Աստուծոյ թա-
գաւորութիւնը պիտի չժառանգեն ։
22 Բայց Հոգիին պտուղը սա է . սէր ,
խնդութիւն , խաղաղութիւն , եր-
23 կայնմտութիւն , Քաղցրութիւն ,
բարութիւն , հաւատարմութիւն ,
հեզութիւն , ժուժկալութիւն . ա-
սանկ բաներուն դէմ օրէնք չկայ ։

Իսկ անոնք որ Քրիստոսիններն են՝ 24
իրենց մարմինը խաչ հանեցին իրա-
նց կիրքերով ու ցանկութիւննե-
րով մէկտեղ ։ Եթէ որ Հոգիով 25
կ՚ապրինք , Հոգիին համեմատ քա-
լենք ։ Սնապարծ չըլլանք մէկզմէկ 26
գրգռելով , ու իրարու վրայ նա-
խանձելով ։

## ԳԼ. Զ.

Եղբայրներ՝ թէ որ մէկը յանկարծ 1
ինչ և իցէ յանցանքով բռը-
նուելու ըլլայ , դուք որ հոգևոր էք՝
անանկը հեզութեան հոգիով ուղ-
ղութեան բերէք . քու անձիդ ալ
զգուշութիւն ըրէ որ չըլլայ թէ
փորձութեան մէջ իյնաս ։ Իրա- 2
րու նեղութիւնները կրեցէք , ու
անանկ Քրիստոսի օրէնքը կատա-
րեցէք ։ Վասն զի թէ որ մէկը 3
ինքզինքը բան մը ըլլալ կը սեպէ
ու չէ , անիկայ իր անձը կը խաբէ ։
Բայց ամէն մարդ իր գործը թող 4
փորձէ , ու հապա միայն իր անձին
վրայ պարծանք ունենայ , և չէ թէ
ուրիշին վրայ ։ Ինչու որ ամէն 5
մէկը իր բեռը պիտի կրէ ։
Խօսքին աշակերտութիւն ընողը 6
իր վարդապետը ամէն բարի բանե-
րու մասնակից ընէ ։ Մի՛ խա- 7
բուիք՝ Աստուած ծաղր չըլլար ։
Վասն զի ինչ որ մէկ մարդ մը կը 8
սերմանէ՝ նոյնը պիտի հնձէ . ան որ
իր մարմնին կը սերմանէ՝ ան մար-
մնէն ապականութիւն պիտի հըն-
ձէ . ու ան որ Հոգիին կը սերմա-
նէ , ան Հոգիէն յաւիտենական
կեանք պիտի հնձէ ։ Բայց բարի 9
գործելէն չձանձրանանք , վասնզի
յարմար ժամանակին պիտի հնձենք՝
թէ որ չթուլնանք ։ Ուստի քանի 10
որ ժամանակը ձեռքերնիս է , բարիք
ընենք ամէնուն , մանաւանդ հաւատա-
քին ընտանիներուն ։
Նայեցէք՝ ինչպէս գիրերով գրե- 11
ցի ձեզի իմ ձեռքովս ։ Որոնք որ 12
կ՚ուզեն մարմնոյ կողմանէ բարի ե-
րևնալ , անոնք ձեզ կը ստիպեն որ
թլփատուիք , միայն որ Քրիստոսի
խաչին համար չհալածուին ։ Վասն- 13
զի անոնք ալ որ թլփատուած են ,

իրենք օրէնքը չեն պահեր, հապա
կ'ուզեն որ դուք թլփատուիք, որ
իրենք ձեր մարմինովը պարծենան։
14 Բայց ես՝ քաւ լիցի որ պարծենամ,
հապա միայն մեր Տէր Յիսուս Քրի-
ստոսի խաչովը, որ անով աշ-
խարհ ինծի խաչը ելած է, ես ալ
15 աշխարհի։ Ինչու որ Քրիստոս
Յիսուսով ոչ թլփատութիւնը
բան մըն է, ոչ ալ անթլփատու-
թիւնը. հապա նոր ստեղծուած
ըլլալն է բանը։ Եւ ան ամէնը որ 16
աս կանոնիս համեմատ կը քալեն,
խաղաղութիւն ու ողորմութիւն ըլ-
լայ անոնց վրայ, ու Աստուծոյ Իս-
րայէլին վրայ։ Ասկէ ետև մէկը 17
զիս թող չյոգնեցընէ. ինչու որ
ես Տէր Յիսուսին վէրքի նշանները
իմ մարմնոյս վրայ կը կրեմ։ Ո՛վ եղ- 18
բայրներ՝ մեր Տէր Յիսուս Քրիստո-
սի շնորհքը ձեր հոգիին հետը ըլլայ։
Ամէն։

---

### ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԵՓԵՍԱՑԻՍ

### ԳԼՈՒԽ Ա

1 Պօղոս՝ Յիսուս Քրիստոսի առա-
քեալը Աստուծոյ կամքովը, Ե-
փեսոսի մէջ եղած սուրբերուն՝ և
Քրիստոս Յիսուսի հաւատացող-
2 ներուն. Շնորհք և խաղաղութիւն
ձեզի՝ Աստուծմէ մեր Հօրմէն ու
Տէր Յիսուս Քրիստոսէն։
3 Օրհնեալ է Աստուած և մեր Տէր
Յիսուս Քրիստոսի Հայրը, ան որ
մեզ օրհնեց ամէն հոգևոր օրհնու-
թիւններով երկնաւորներուն մէջ
4 Քրիստոսով. Ինչպէս որ մեզ
անով աշխարհիս սկիզբէն առաջ
ընտրեց, որ մենք սուրբ ու անա-
5 րատ ըլլանք իր առջևը սիրով. Եւ
առաջուց մեզ սահմանեց իրեն որ-
դեգիր ըլլալու Յիսուս Քրիստոսի
ձեռքովը իր կամքին հաճութեանը
6 պէս, Իր փառաւոր շնորհացը գո-
վութեանը համար, որով մեզ շնոր-
7 հարեց Սիրելիին ձեռքովը. Որ ա-
նով փրկութիւն ունինք մենք իր
արեանը միջոցով, մեղաց թողու-
թիւնը՝ իր շնորհքին ճոխութեանը
8 չափովը. Որ մեր վրայ աւելցուց
բոլոր իմաստութեամբ ու գիտու-
9 թեամբ, Մեզի յայտնելով իր
կամքին խորհուրդը իր հաճութեանը
պէս, որն որ իր մէջը նախասահ-
մաներ էր. Որ ժամանակաց լը- 10
րանալուն տնտեսութեանը մէջ
ամէն բան բովանդակէ Քրիստո-
սով՝ թէ՛ ինչ որ երկինքը ու թէ՛ ինչ որ
երկրի վրայ կայ, անով՝ Որով մենք 11
ալ ժառանգութիւն առինք՝ առա-
ջուց որոշուած ըլլալով անոր նա-
խասահմանութիւնովը, որ ամէն
բան իր կամքին խորհրդովը 'ի գործ
կը դնէ. Որ մենք անոր փառքին 12
գովութիւն ըլլանք՝ առաջուց Քրի-
ստոսի վրայ յուսացողներս. Որուն 13
վրայ դուք ալ յուսացիք՝ երբոր
լսեցիք ճշմարտութեան խօսքը՝ ձեր
փրկութեան աւետարանը, որուն
նաև հաւատալով՝ խոստացեալ
Սուրբ Հոգւոյն կնքովը կնքուե-
ցաք. Որ ան մեր ժառանգ ըլլա- 14
լուն գրաւն է մինչև ստացուածքին
փրկութիւնը՝ իր փառացը գովու-
թեանը համար։
Ասոր ես ալ երբոր լսեցի Տէր 15
Յիսուսի վրայ ունեցած հաւատք-
նիդ, ու բոլոր սուրբերուն վրայ
ձեր ունեցած սէրը, Չեմ դադա- 16
րիր ձեզի համար գոհութիւն ընելէն՝
ձեզ իմ աղօթքներուս մէջ յիշե-
լով. Որ մեր Տէր Յիսուս Քրիս- 17
տոսի Աստուածը՝ փառաց Հայրը

տայ ձեզի իմաստութեան ու յայտ-
նութեան Հոգին իր գիտութիւնովը.
18 Որպէս զի սրտերնուդ աչքերը լու-
սաւորուելով՝ գիտնաք թէ ինչ է
անոր յոյս կանչելուն յոյսը, ու ինչ
է անոր ժառանգութեանը փառքին
19 ճոխութիւնը սուրբերուն մէջ, Ու
ինչ է իր զօրութեանը գերազանց
մեծութիւնը հաւատացեալներուս
մէջ՝ իր կարող զօրութեանը ներ-
20 գործութեամբը, Որն որ Քրիս-
տոսի վրայ 'ի գործ դրաւ, երբոր
զանիկայ մեռելներէն յարուց, ու
նստեցուց իր աջ կողմը երկինքին
21 մէջ Ամէն իշխանութեան ու պե-
տութեան և զօրութեան ու տէրու-
թեան վրայ՝ և ամէն անուան վրայ
որ կ'անուանի, չէ՛ թէ միայն աս
աշխարհիս մէջ, հապա գալիքին
22 մէջ ալ. Ու ամէն բան անոր ոտ-
քերուն տակը հնազանդեցուց, և
զանիկայ ամէն բաներու վրայ եկե-
23 ղեցիին գլուխ դրաւ, Որ ան անոր
մարմինն է, անոր լրումը, որ կը
լեցընէ ամէնը ամէն բանի մէջ:

## ԳԼ. Բ

1 Ու դուք որ յանցանքներու ու մեղ-
քերու մէջ մեռած էիք, Ձեզ
2 ալ կենդանացուց. Որոնց մէջը ա-
տենօք կը քալէիք աս աշխարհիս
բռնած ճամբովը, աս օդուս իշխա-
նութեանը իշխանին ուզածին պէս,
ան ոգիին՝ որ հիմա անհնազանդու-
թեան որդւոցը ներսի դին կը ներ-
3 գործէ. Որ ատենօք մենք ամէնքս
ալ անոնց մէջը կը պտըտէինք մեր
մարմինին ցանկութիւններովը, և
մարմինին ու միտքին ուզածը կը
կատարէինք. և բնութեամբ բար-
կութեան որդիք էինք՝ ինչպէս ու-
4 րիշները. Բայց Աստուած որ մեծ է
ողորմութիւնով՝ իր առատ սիրոյն
5 համար՝ որով մեզ սիրեց, Երբոր
յանցանքներու մէջ մեռած էինք,
մեզ Քրիստոսի հետ կենդանացուց,
(դուք շնորհքով փրկուած էք,)
6 Ու անոր հետ մեզ յարուց, ու ա-
նոր հետ նստեցուց երկնաւորներուն
7 մէջ Քրիստոս Յիսուսով, Որ գա-
լու դարերուն մէջը ցուցընէ իր շը-
նորհքին գերազանց մեծութիւնը՝
Քրիստոս Յիսուսով մեզի ցուցու-
ցած քաղցրութիւնովը: Վասն զի 8
շնորհքով փրկուած էք դուք հա-
ւատքի միջոցով. և աս չէ՛ թէ ձեզ-
մէ է, հապա Աստուծոյ պարգեւն է.
Չէ՛ թէ գործքերէն, որ մէկը չը- 9
պարծի. Ինչու որ մենք անոր ձե- 10
ռագործն ենք, Քրիստոս Յիսու-
սով ստեղծուած բարի գործքերու
համար, որոնց Աստուած առաջուց
պատրաստեց մեզ, որ անոնց մէջը
քալենք:

Ասոր համար միտքերնիդ բերէք, որ 11
դուք ատեն մը մարմինով հեթա-
նոսներ ըլլալով, (որոնք անթլփա-
տութիւն կ'ըսուին անոնցմէ՛ որ
թլփատութիւն կ'ըսուին մարմինի
մէջ ձեռքով եղած,) Որ ան ատե- 12
նը դուք առանց Քրիստոսի էիք,
ու հեռացած էիք Իսրայէլի քաղա-
քակցութենէն, և օտարացած խոստ-
մունքին ուխտերէն, ու յոյս մը
ալ չունէիք, և աշխարհի մէջ ա-
նաստուած էիք: Բայց հիմա Քրի- 13
ստոս Յիսուսով դուք որ ատեն
մը հեռաւոր էիք, մերձաւոր եղաք
Քրիստոսի արիւնովը: Վասն զի 14
անիկայ է մեր խաղաղութիւնը, որ
երկուքը մէկ ըրաւ, ու մէջ տեղի
բաժանող պատը՝ այսինքն [illegible]
[illegible] եղած թշնամութիւնը իր մար-
մինովը քակեց, Ու հրամաններով 15
եղած պատուիրանքներուն օրէնքը
խափանեց. որ իրմով ան երկուքը
մէկ նոր մարդ մը հաստատէ, ու
այսպէս խաղաղութիւն ընէ. Ու 16
երկուքն ալ մէկ մարմին եղած հաշ-
տեցընէ Աստուծոյ հետ խաչովը.
ինչու որ անով սպաննեց թշնամու-
թիւնը. Ու եկաւ խաղաղութիւն 17
քարոզեց ձեզի՛ որ հեռուն էիք, ու
անոնց՝ որ մօտ էին: Քանզի անոր 18
ձեռքովը մենք երկուքնիս ալ մէկ
հոգիով Հօրը մօտենալու արտօ-
նութիւնը ունինք: Ուրեմն ալ 19
ասկէ ետև դուք օտար ու պան-
դուխտ չէք, հապա սուրբերուն
քաղաքակիցները և Աստուծոյ ըն-
տանիքը, Առաքեալներուն ու մար- 20
գարէներուն հիմին վրայ շինուած,

տրուած է Քրիստոսին պարգեւին
8 չափովը ։ Անոր համար կ'ըսէ թէ
Բարձրը ելլալ, գերութիւնը գերի
բռնեց, ու մարդոց պարգեւներ
9 տուաւ ։ Ան ելլալ ըսելը ի՞նչ է,
միայն թէ՝ որ ինքը առաջ երկրին
10 վարի կողմերը իջաւ ։ Ան որ իջաւ՝
նոյն ինքն է, որ բոլոր երկինքներէն
վեր ելաւ, որ ամէն բան լեցընէ ։
11 Ու ինքը մէկ քանին տուաւ ա-
ռաքեալներ ըլլալ, մէկ քանին
մարգարէներ, մէկ քանին աւետա-
րանիչներ, մէկ քանին հովիւներ ու
12 վարդապետներ. Սուրբերուն հաս-
տատութեանը համար, պաշտօնին
գործքին համար, Քրիստոսի մար-
13 մնոյն շինութեանը համար. Մին-
չեւ որ ամէնքս ալ հասնինք հաւատ-
քին ու Աստուծոյ Որդւոյն ճանաչ-
ման միաբանութեանը, կատարեալ
մարդ ըլլալու, Քրիստոսի լման
14 հասակին չափը ունենալու. Որ ալ
ասկէ ետեւ տղայ չըլլանք երերած ու
վարդապետութեան ամէն հովերէն
տարին անդին տարուբերուած մար-
դոց խաբէութիւնովը, որ խորա-
մանկութեամբ կը խաբեն մոլորցը-
15 նելու. Հապա սիրով ճշմարտու-
թեան հետեւելով՝ ամէն բան Անով
աճինք՝ որ գլուխ է՝ այսինքն
16 Քրիստոս, Որ անկէ բոլոր մարմի-
նը միասին կցուած ու ամէն յօ-
դուածներու իրարու հաղորդելովը
կցուած՝ ամէն մէկ մասին չափովը
ներգործելով՝ մարմինին աճում կու-
տայ իրեն շինութեանը համար սի-
րով ։
17 Ասոր համար կ'ըսեմ ու Տէրոջմով
վկայութիւն կ'ընեմ, որ դուք մէյ-
մըն ալ անանկ չքալէք, ինչպէս որ
ուրիշ հեթանոսները կը քալեն ի-
րենց մտքին ունայնութեանը մէջ.
18 Որոնց խելքերնին խաւարած
է, ու օտարացած են Աստուծոյ
կեանքէն, իրենց մէջը եղած տգի-
տութեան պատճառովը իրենց սըր-
19 տին կուրութեանը համար. Որոնք
անզգայ ըլլալով, ինքզինքնին անա-
ռակութեան տուին, ամէն կերպ
պղծութիւն գործելու ագահութիւ-
20 նով ։ Բայց դուք անանկ չսորվե-
ցաք Քրիստոսը. Թէ որ անոր 21
վրայով լսեցիք ու անկէ սորված
էք, ինչպէս որ ճշմարտութիւնը
Յիսուսի մէջ է. Որ ձեր վրայէն 22
մէկդի հանէք ան յէր առջի վար-
մունքին պէս եղած հին մարդը՝ խա-
բեբայ ցանկութիւններով ապակա-
նուածը. Ու ձեր միտքին հոգիովը 23
նորոգուիք, Ու նոր մարդը զգե- 24
նիք հագնիք, ան որ Աստուծոյ
պատկերին պէս ստեղծուած է ար-
դարութիւնով ու ճշմարիտ սրբու-
թիւնով ։ Ասոր՝ ստութիւնը 25
մէկդի ձգելով, ճշմարտութիւն
խօսեցէք ամէն մէկերնիդ իր ըն-
կերին հետ, ինչու որ մենք ի-
րարու անդամներ ենք ։ Թէ որ 26
բարկանաք՝ մեղք մի՛ գործէք. ա-
րեւը ձեր բարկութեանը վրայ մարը
չմտնէ ։ Ու Սատանային տեղ մի՛ 27
տաք ։ Ան որ գողութիւն կ'ընէր, 28
ալ թող չգողնայ, այլ ջանալով
աղէկ գործի մը պարապելով՝ իր
ձեռքերովը աշխատի, որ կարող
ըլլայ տալ կարօտ եղողին ։ Բնաւ 29
ձեր բերնէն ապականեալ խօսք մը
չելլէ, հապա ինչ որ աղէկ է
պէտք եղած շինութեանը համար,
որ լսողներուն շնորհք տայ ։ Ու 30
Աստուծոյ Սուրբ Հոգին մի՛ տրտմ-
ցընէք, որով դուք կնքուեցաք
փրկութեան օրուանը համար ։ Ա- 31
մէն դառնութիւն ու բարկութիւն
ու սրտմտութիւն ու աղաղակ ու
հայհոյութիւն վերցուի ձեզմէ ամէն
չարութիւններով մէկտեղ ։ Ու 32
իրարու հետ քաղցր եղէք, գթած,
ներելով իրարու, ինչպէս որ Աս-
տուած Քրիստոսով ներեց ձեզի ։

## ԳԼ. Ե

Ուրեմն Աստուծոյ նմանող եղէք սի- 1
րելի զաւակներու պէս. Ու 2
սիրով վարուեցէք՝ ինչպէս որ Քրի-
ստոս ալ մեզ սիրեց, ու իր
անձը մեզի համար մատնեց՝ անու-
շահոտ պատարագ ու զոհ ըլլալով
Աստուծոյ ։ Բայց պոռնկութեան 3
ու ամէն կերպ պղծութեան կամ
ագահութեան անունը անգամ չըլլը-

որ անոր անկիւնին գլուխը Յիսուս
21 Քրիստոս է. Որով բոլոր շէնքը
միկամէկ յարմարութեամբ կազ-
մուած՝ կ'աճի սուրբ տաճար մը կ'ըլ-
22 լայ Տէրոջմով. Որ անով դուք ալ
միկամէկ կը շինուիք՝ Աստուծոյ բը-
նակարան ըլլալու Հոգւով Սրբով:

## ԳԼ. Գ

1 Ասոր համար ես Պօղոս՝ Յիսուս Քրիս-
տոսի կապուածը ձեզի հեթա-
2 նոսներուդ համար. Որ դուք ան-
շուշտ լսած էք Աստուծոյ շնորհքին
տնտեսութիւնը, որ ինծի տրուած
3 է ձեզի համար, Թէ ինծի ան խոր-
հուրդը յայտնութիւնով ցուցուե-
ցաւ. (Ինչպէս առաջուց ալ ձեզի
4 համառօտաբար գրեցի, Որով կըր-
նաք կարդալ ու միտք առնել իմ
տեղեակ ըլլալը Քրիստոսի խոր-
5 հուրդին վրայով.) Որ ուրիշ դա-
րերուն մէջ մարդոց որդիներուն չէ-
րեւցաւ, ինչպէս որ հիմա Հոգւով
Սրբով յայտնուեցաւ իր սուրբ ա-
ռաքեալներուն ու մարգարէներուն.
6 Որ հեթանոսները Քրիստոսով ժա-
ռանգակից ու մարմնակից և անոր
խոստումներին հաղորդ ըլլան աւե-
7 տարանով. Որուն ես պաշտօնեայ
եղայ՝ Աստուծոյ շնորհաց պարգեւին
համեմատ՝ որ ինծի տրուեցաւ՝ իր
զօրութեանը ներգործութիւնովը,
8 (Ինծի՝ որ ամէն սուրբերուն փոքրա-
գոյնն եմ, աս շնորհքը տրուեցաւ,)
հեթանոսներուն մէջ Քրիստոսի
անքննելի ճոխութիւնը քարոզելու,
9 Եւ ամէնը լուսաւորելու, որ գիտ-
նան թէ ինչ է ան խորհուրդին
տնօրէնութիւնը, որ 'ի յաւիտենից
ծածկուած էր Աստուծոյ քով, որ
10 ամէն բանը ստեղծեց. Որ հիմա
Աստուծոյ բազմատեսակ իմաստու-
թիւնը եկեղեցիին ձեռքովը յայտնի
ըլլայ երկինքը եղող իշխանութիւն-
11 ներուն ու պետութիւններուն, Իր
յաւիտենական նախասահմանու-
թեանը համեմատ, որ ըրաւ մեր
Տէրոջը Քրիստոս Յիսուսի ձեռքո-
12 վը. Որով մենք ալ համարձակու-
թիւն ու մօտենալու [illegible]
ունինք վստահութեամբ՝ իրեն հա-
ւատալով:
Ասոր կ'աղաչեմ որ չձանձրանաք 13
իմ նեղութիւններուս պատճառովը,
որ ձեզի համար են, և որ ձեր փառքն
են: Ասոր համար ծունկի վրայ 14
գալով մեր Տէր Յիսուս Քրիստոսի
Հօրը առջեւը, Անկէց որ բոլոր 15
ազգատոհմը երկինքի մէջ ու երկրի
վրայ անուն կ'առնէ, Կ'աղաչեմ որ 16
տայ ձեզի իր փառաց ճոխութեանը
չափովը՝ զօրութիւնով հաստա-
տուիլ իր Հոգիովը ներքին մարդուն
մէջ. Որ Քրիստոս հաւատքով ձեր 17
սրտերուն մէջը բնակի, և դուք սի-
րով արմատացած ու հաստատուած
ըլլաք, Որ կարենաք հասկընալ 18
բոլոր սուրբերուն հետ միկամէկ,
թէ ինչ է լայնութիւնը ու երկայ-
նութիւնը և խորութիւնը ու բարձ-
րութիւնը. Նաեւ ճանչնալ 19
Քրիստոսի սէրը որ գիտութենէ
գերազանց է, որ լցուիք Աստուծոյ
ամէն լրութիւնովը: Արդ անոր 20
որ կարող է առատութեամբ ընել
ամէն բաներէն աւելի որ մենք կը
խնդրենք կամ կը խորհինք, ան զօ-
րութիւնովը՝ որ մեր մէջը կը ներ-
գործուի. Իրեն փառք եկեղեցւոյն 21
մէջ Քրիստոս Յիսուսով բոլոր
դարերուն մէջ յաւիտեանս յաւի-
տենից: Ամէն:

## ԳԼ. Դ

Ասոր կ'աղաչեմ ձեզի ես որ Տէ- 1
րոջը համար կապուած եմ, որ
դուք այնպէս քալէք՝ ինչպէս որ կը
վայլէ ան կոչմանը որով կանչուե-
ցաք, Բոլոր խոնարհութիւնով ու 2
հեզութիւնով, երկայնմտութեամբ,
սիրով իրարու ներողամիտ ըլլալով.
Ջանալով Հոգւոյն Սրբոյ միաբա- 3
նութիւնը խաղաղութեան կապովը
պահել. Մէկ մարմին ու մէկ հո- 4
գի, ինչպէս որ կանչուեցաք ձեր
կոչմանը մէկ յուսովը. Տէրը մէկ 5
է, հաւատքը մէկ, մկրտութիւնը
մէկ. Մէկ է Աստուած և ամենուն 6
Հայրը, որ ամենուն վրայ ու ամե-
նուն հետ և ձեր ամենուն մէջն է:
Բայց մեր ամէն մէկուն ալ շնորհք 7

տրուած է Քրիստոսի պարգեւին
8 չափովը ։ Անոր համար կ'ըսէ թէ
Վերը ելաւ, գերութիւնը գերի
բռնեց, ու մարդոց պարգեւներ
9 տուաւ ։ Ան ելաւ ըսելը ի՞նչ է,
միայն թէ՝ որ ինքը առաջ երկրին
10 վարի կողմերը իջաւ ։ Ան որ իջաւ՝
նոյն ինքն է, որ բոլոր երկինքներէն
վեր ելաւ, որ ամէն բան լեցընէ ։
11 Եւ ինքը մէկ քանին առաքեալներ ըրաւ, մէկ քանին
մարգարէներ, մէկ քանին աւետարանիչներ, մէկ քանին հովիւներ ու
12 վարդապետներ. Սուրբերուն կատարելութեանը համար, պաշտօնին
գործքին համար, Քրիստոսի մարմ-
13 նոյն շինութեանը համար. Մին-
չեւ որ ամէնքս ալ հաւատքին ու Աստուծոյ Որդւոյն ճանչնալուն միաբանութեանը, կատարեալ մարդ ըլլալու, Քրիստոսի լման
14 հասակին չափը ունենալու. Որ ալ
ասկէ ետեւ տղայք չըլլանք երերած ու
վարդապետութեան ամէն հովերէն
ասդին անդին տարուբերուած՝ մար-
դոց խաբէութիւնովը, որ խորամանկութեամբ կը խաբեն մոլորեցը-
15 նելու. Հապա սիրով ճշմարտու-
թեան հետեւելով՝ ամէն բան Անով
աճեցընենք՝ որ գլուխ է՝ այսինքն
16 Քրիստոս. Որ անկէ բոլոր մարմի-
նը մէկտեղ կազմուած և ամէն յօ-
դուածները իրարու հաղորդուելով
կցուած՝ ամէն մէկ մասին չափով
ներգործելով՝ մարմինին աճում կու-
տայ իրեն շինութեանը համար սի-
րով ։
17 Ասոր համար կ'ըսեմ ու Տէրոջմով
վկայութիւն կ'ընեմ, որ դուք մէյ-
մըն ալ անանկ չքալէք, ինչպէս որ
ուրիշ հեթանոսները կը քալեն ի-
րենց մտքին ունայնութեանը մէջ.
18 Որոնց իմացողութիւնը խաւարած
է, ու օտարացած են Աստուծոյ
կենդանքէն, իրենց մէջը եղած տգի-
տութեան պատճառովը իրենց սըր-
19 տին կուրութեանը համար. Որոնք
անզգայ ըլլալով, ինքզինքնին անա-
ռակութեան տուին, ամէն կերպ
պղծութիւն գործելու ագահութիւ-
20 նով ։ Բայց դուք անանկ չսորվե-
ցաք Քրիստոսը ։ Թէ որ անոր 21
վրայով լսեցիք ու անկէ սորված
էք, ինչպէս որ ճշմարտութիւնը
Յիսուսի մէջ է. Որ ձեր վրայէն 22
մէկդի հանէք ան յեր առջի վար-
մունքին պէս եղած հին մարդը՝ խա-
բէբայ ցանկութիւններով ապական-
նուածը. Եւ ձեր մտքին հոգիովը 23
նորոգուիք, Եւ նոր մարդը վրա- 24
նիդ հագնիք, ան որ Աստուծոյ
պատկերին պէս ստեղծուած է ար-
դարութիւնով ու ճշմարիտ սրբու-
թիւնով ։ Ասոր՝ ստութիւնը 25
մէկդի ձգելով, ճշմարտութիւն
խօսեցէք ամէն մէկերնիդ իր ըն-
կերին հետ, ինչու որ մենք ի-
րարու անդամներ ենք ։ Թէ որ 26
բարկանաք՝ մեղք մի՛ գործէք. ա-
րեւը ձեր բարկութեանը վրայ մարը
չմտնէ ։ Ու Սատանային տեղ մի՛ 27
տաք ։ Ան որ գողութիւն կ'ընէր, 28
ալ թող չգողնայ, այլ մանաւանդ
աղէկ գործ մը պարապելով՝ իր
ձեռքերովը աշխատի, որ կարող
ըլլայ տալ կարօտ եղողին ։ Նաեւ 29
ձեր բերնէն ապականեալ խօսք մը
չելլէ, հապա ինչ որ աղէկ է
պէտք եղած շինութեանը համար,
որ լսողներուն շնորհք տայ ։ Եւ 30
Աստուծոյ Սուրբ Հոգին մի՛ տրտմե-
ցընէք, որով դուք կնքուեցաք
փրկութեան օրուանը համար ։ Ա- 31
մէն դառնութիւն և բարկութիւն
ու սրտմտութիւն և աղաղակ ու
հայհոյութիւն վերցուի ձեզմէ ամէն
չարութիւններով մէկտեղ ։ Եւ 32
իրարու հետ քաղցր եղէք, գթած,
ներելով իրարու, ինչպէս որ Աս-
տուած Քրիստոսով ներեց ձեզի ։

ԳԼ. Ե

Արդ Աստուծոյ նմանող եղէք սի- 1
րելի զաւակներու պէս ։ Եւ 2
սիրով վարուեցէք՝ ինչպէս որ Քրի-
ստոս ալ մեզ սիրեց, ու իր
անձը մեզի համար մատնեց՝ անու-
շահոտ պատարագ ու զոհ ըլլալով
Աստուծոյ ։ Բայց պոռնկութեան 3
և ամէն կերպ պղծութեան կամ
ագահութեան անունը անգամ չըլ-

ձեր որդիները մի՛ բարկացնէք ,
հապա անոնք մեծցուցէք Տէրոջը
վարժութիւնովը ու խրատովը ։
5 Ծառաներ՝ հնազանդ եղէք ձեր
մարմնաւոր տէրերուն ահով ու դո-
ղով՝ ձեր սրտին միամտութիւնովը ,
6 որպէս թէ Քրիստոսի ։ Ոչ թէ
մարդահաճոյի պէս աչքի առջև ծա-
ռայելով , հապա Քրիստոսի ծա-
ռաներու պէս՝ սրտանց Աստուծոյ
7 կամքը ընելով ։ Յօժարութեամբ
ծառայելով որպէս թէ Տէրոջը , ու
8 ոչ՛ թէ մարդոց ։ Գիտնալով որ
ամէն մէկը ինչ բարիք որ ընէ ,
նոյնը Տէրոջմէն պիտի ընդունի ,
թէ՛ ծառայ ըլլայ և թէ ազատ ։
9 Դուք ալ տէրեր՝ նոյնը ըրէք ա-
նոնց , ու սպառնալիքը թո՛ղ տուէք ,
գիտնալով որ անոնց ալ ձեր ալ
Տէրը երկինքն է ։ ու անոր քովը
աչառութիւն չկայ ։
10 Ալ ասկէ ետև եղբայրներս՝ զօ-
րացէք Տէրոջմով ու անոր զօրու-
11 թեան կարողութիւնովը ։ Ամե-
նիդ հագէք Աստուծոյ սպառազի-
նութիւնը , որ կարող ըլլաք Սա-
տանային հնարքներուն դէմ դնելու ։
12 Ինչու որ մեր պատերազմը արիւնի
ու մարմինի հետ չէ , հապա իշ-
խանութիւններու ու պետութիւն-
ներու հետ , և աս խաւար աշխար-
հիս իշխաններուն հետ , երկնաւոր-
ներուն մէջը եղող չար ոգիներուն
13 հետ ։ Անոր համար վրանիդ առէք
Աստուծոյ սպառազինութիւնը , որ
կարող ըլլաք չարութեան օրը դէմ
14 դնելու , Ու ամէն բանը լմնցընե-
լէն ետև՝ հաստատուն կայնելու ։
Ուստի վեր ոտքի կայնեցէ՛ք , մէջ-
քերնիդ ճշմարտութեամբ ամրացը-
նելով , ու արդարութեան զրահը
հագնելով ։ Ու ոտքերնուդ հագ- 15
ցնելով խաղաղութեան աւետա-
րանին պատրաստութիւնը ։ Եւ 16
ամէն բանին վրայ հաւատքին վա-
հանը առէք , որով կարող պիտի
ըլլաք չարին ամէն կրակոտ նետերը
մարելու ։ Եւ փրկութեան սաղա- 17
ւարտը առէք , ու Հոգիին սուրը՝
որ Աստուծոյ խօսքն է ։ Ամէն ա- 18
ղօթքով ու խնդրուածքով ամէն ա-
տեն աղօթք ըրէք Հոգիով , ու
աս բանիս վրայ հսկեցէք կատա-
րեալ յարատեւութեամբ ու աղա-
չանքով՝ բոլոր սուրբերուն համար ։
Ինծի համար ալ , որ ինծի խօսք 19
տրուի որ բերանս բանամ՝ համար-
ձակութեամբ աւետարանին խոր-
հուրդը յայտնելու ։ Որուն համար 20
ես դեսպանութիւն կ'ընեմ կապան-
քովս , որ անով համարձակութիւն
ունենամ խօսելու՝ ինչպէս որ պէտք է ։

Բայց որ դուք ալ գիտնաք իմ 21
վրաս՝ թէ ինչ կ'ընեմ ես , ամէն
բանը պիտի ցուցընէ ձեզի Տիւքի-
կոս սիրելի եղբայրը ու հաւատարիմ
պաշտօնեան Տէրոջմով ։ Որն որ 22
յատկապէս աս բանին համար ձեզի
ղրկեցի , որ գիտնաք դուք մեր
վրայով , ու ինքը ձեր սիրտերը
մխիթարէ ։

Խաղաղութիւն եղբայրներուն և 23
սէր հաւատքով մէկտեղ Հօր Աս-
տուծմէն՝ ու Տէր Յիսուս Քրիս-
տոսէն ։ Շնորհք ան ամենուն 24
հետ՝ որոնք մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսը անկեղծութեամբ կը սիրեն ։
Ամէն ։

---

ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ՓԻԼԻՊՊԵՑԻՍ

### ԳԼՈՒԽ Ա.

1 Պօղոս և Տիմոթէոս՝ Յիսուս Քրի-
ստոսի ծառաները , Քրիս-
տոս Յիսուսով բոլոր սուրբերուն՝
որ Փիլիպպեցւոց կողմերն են՝ ե-
պիսկոպոսներով ու սարկաւագնե-
րով ։ Շնորհք ու խաղաղութիւն 2

կեցի որ դուք զանիկայ տեսնելով
նորէն ուրախ ըլլաք, ու ես ալ նուազ
29 տրտմութեան ըլլամ ։ Ուրեմն
ընդունեցէ՛ք անիկայ Տէրոջմով ա-
մէն ուրախութեամբ, ու անանկ-
ները պատուականներու կարգը
30 բռնեցէք. Վասնզի Քրիստոսի
գործին համար մինչև մահուան մօ-
տեցաւ՝ իր կեանքը վտանգի մէջ
ձգելով, որ ձեր ինծի ծառայելու
պակասութիւնը ինքը լեցնէ ։

## ԳԼ. Գ

1 Ուստի իմ եղբայրներս՝ ուրախ ե-
ղէք Տէրոջմով. նոյն բաները
ձեզի գրելը ինծի ձանձրութիւն չէ՛,
2 ու ձեզի ապահովութիւն է ։ Զգու-
շացէ՛ք շուներէն, զգուշացէ՛ք
չար մշակներէն, զգուշացէ՛ք կտրո-
3 տութենէն ։ Ինչու որ թլփատու-
թիւնը մենք ենք, որ հոգիով Աս-
տուած կը պաշտենք, ու կը պար-
ծենանք Քրիստոս Յիսուսով, և
մարմինի վրայ չէ վստահութիւննիս ։
4 Թէպէտ ես ալ նոյն վստահութիւնը
ունիմ մարմինի վրայ. թէ որ ու-
րիշ մէկը կը կարծէ թէ վստահու-
թիւն ունի մարմինի վրայ, ալ ա-
5 ւելի ես. Ութ օրուան թլփա-
տուած, Իսրայէլի ազգէն, Բենիա-
մինի ցեղէն, Եբրայեցի Եբրայեցի-
ներէ, օրէնքին նայելով փարիսեցի.
6 Նախանձաւոր ըլլալու կողմանէ՝
եկեղեցին կը հալածէի. օրէնքին
արդարութեանը կողմանէ անարատ
7 էի ։ Բայց ինչ որ ինծի շահ էր,
անիկայ Քրիստոսի համար վնաս
8 սեպեցի ։ Եւ իրաւ բոլոր բաներն
ալ վնաս կը սեպեմ իմ Տէրոջս
Քրիստոս Յիսուսի գերազանց գի-
տութեանը համար. որուն համար
ամէն բանէն զրկուեցայ, և աղտե-
ղութիւն կը սեպեմ, որ Քրիստոսը
9 շահիմ, Ու իր մէջը գտնուիմ, չէ՛
թէ իմ արդարութիւնս ունենամ
որ օրէնքէն է, հապա Քրիստոսի
հաւատքովը եղած արդարութիւնը՝
10 որ Աստուծմէ է հաւատքով. Ճանչ-
նալու անիկայ և անոր յարութեանը
զօրութիւնը ու անոր չարչարանք-
ներուն հաղորդ ըլլալը, անոր մա-
հուան կերպարանքը առնելով. Որ 11
ըլլայ թէ մեռելներուն յարութեա-
նը հասնիմ ։ Ոչ թէ ես ար- 12
դէն առեր եմ, կամ արդէն կատա-
րեալ եղեր եմ, հապա ետևէ ին-
կած եմ որ բռնեմ մրցանակը, որուն
համար ալ բռնուեցայ Քրիստոս
Յիսուսէն ։ Եղբայրներ՝ ես չեմ 13
սեպեր որ բռներ եմ. բայց մէկ
բան մը կայ, որ ետևի եղածները
մոռցած եմ, ու առջևի եղածնե-
րուն կը դիմեմ. Նպատակը դի- 14
տելով՝ Քրիստոս Յիսուսով եղած
Աստուծոյ վերին կոչմանը մրցանա-
կին կը վազեմ ։ Ուստի մենք ա- 15
մէնքս որ կատարեալ ենք, ասիկայ
խորհինք, և թէ որ բան մը ուրիշ
կերպով խորհելու ըլլաք, զանիկայ
ալ ձեզի պիտի յայտնէ Աստուած ։
Միայն թէ ինչ աստիճանի որ հա- 16
սեր ենք՝ նոյն կանոնին համեմատ
քալենք, նոյն խորհուրդը ունե-
նանք ։ Ինծի նմանող եղէք՝ եղ- 17
բայրներ, ու նայեցէ՛ք անոնց որ
այնպէս կը քալեն, ինչպէս որ մեզ
ձեզի օրինակ ունիք ։ Ինչու որ 18.
շատերը կը քալեն, որոնց համար
շատ անգամ ձեզի կ'ըսէի, և հիմա
լալով ալ կը զրուցեմ, այսինքն
Քրիստոսի խաչին թշնամիներուն
համար. Որ անոնց վերջը կորուստ 19
է, որոնց աստուածը իրենց որո-
վայնն է, ու անոնց փառքը իրենց
ամօթն է, որոնք միայն երկրաւոր
բաները կը մտածեն ։ Բայց մեր 20
քաղաքականութիւնը երկինքն է,
ուսկից ալ Փրկչին կը սպասենք՝ Տէր
Յիսուս Քրիստոսին. Որ պիտի 21
նորոգէ մեր խոնարհ մարմինը՝ իր
փառաւոր մարմինին կերպարանա-
կից ըլլալու, այն զօրութիւնովը՝ որ
կարող է ամէնը իր տակը հնազան-
դեցնելու ։

## ԳԼ. Դ

Ուստի իմ սիրելի ու բաղձալի 1
եղբայրներս՝ իմ ուրախութիւնս
ու պսակս, ասանկ հաստատուն կե-
ցէք Տէրոջմով՝ ո՛վ սիրելիներս ։
Եւոդիային կ'աղաչեմ ու Սիւն- 2
տիքէին կ'աղաչեմ՝ որ մի և նոյն

խորհուրդը ունենան Տէրոջմով ։
3 Իրաւ քեզի ալ կ'աղաչեմ՝ իմ
հարազատ լծակիցս, դուն ալ օգ-
նական եղիր անոնց, որոնք իմ
հետս աշխատեցան աւետարանին
մէջ Կղեմէսին և իմ ուրիշ գոր-
ծակիցներուս հետ, որոնց անուն-
4 ները կենաց գրքին մէջն են ։ Ու-
րախ եղէք Տէրոջմով ամէն ատեն.
դարձեալ կ'ըսեմ՝ ուրախ եղէք ։
5 Ձեր քաղցրութիւնը ամէն մար-
դոց թող յայտնի ըլլայ. Տէրը
6 մօտ է ։ Բանի մը համար հոգ մի
ընէք. հապա ամէն բանի մէջ ա-
ղօթքով ու աղաչանքով, գոհու-
թիւնով մէկտեղ ձեր խնդրուածքը
7 Աստուծոյ յայտնի ըլլայ ։ Եւ Աս-
տուծոյ խաղաղութիւնը որ ամէն
միտքէ վեր է, ձեր սիրտերը ու
միտքերը Քրիստոս Յիսուսով պի-
8 տի պահպանէ ։ Միւսանգամ, եղ-
բայրներ՝ ինչ որ ճշմարտութիւ-
նով է, ինչ որ պարկեշտութիւ-
նով, ինչ որ արդարութիւնով,
ինչ որ մաքրութիւնով, ինչ որ
սիրով, ինչ որ բարի համբաւով,
ինչ առաքինութիւն և ինչ գո-
վութիւն որ կայ, ան բաները խոր-
9 հեցէք ։ Ինչ որ սորվեցաք ու ա-
ռիք և լսեցիք ու տեսաք իմ վրաս,
ան ըրէք. և խաղաղութեան Աս-
տուածը ձեր հետը պիտի ըլլայ ։
10 Մեծապէս ուրախացայ Տէրոջ-
մով, որ իմ վրաս ունեցած հոգեր-
նիդ հիմա նորոգուեցաւ, ինչպէս
որ կը հոգայիք ալ. միայն թէ
11 պատեհութիւն չունէիք ։ Ոչ թէ
կարօտութեան համար կ'ըսեմ.
ինչու որ ես սորվեցայ գոհ ըլլալ
12 իմ գտնուած վիճակիս մէջ ։ Գի-
տեմ չքաւորութիւն քաշելը, գի-
տեմ շատը ունենալը. ամէն բանի
մէջ ամէն կերպով սորվեր եմ
թէ կշտանալը, թէ անօթենալը,
թէ շատ ունենալը և թէ պակ-
սութիւն քաշելը ։ Ամէն բանի 13
կարող եմ անով՝ որ զիս զօրա-
ցուց ։ Բայց աղէկ ըրիք որ իմ 14
նեղութեանս մէջ ինծի հաղորդ
եղաք ։ Դուք ալ գիտէք Փիլիպ- 15
պեցիներ, որ աւետարանին սկիզբը
երբոր ես Մակեդոնիայէն ելայ,
մէկ եկեղեցի մըն ալ հետս հաղոր-
դութիւն չըրաւ տալու և առնելու
կողմէ, հապա միայն դուք. Որ 16
Թեսաղոնիկէի մէջ ալ մէկ երկու
անգամ ինծի պէտք եղածը ղրկե-
ցիք ։ Ոչ թէ ես տուրք կը 17
փնտռեմ, հապա պտուղ կը փնտռ-
տեմ՝ որ ձեր հաշիւին վրայ աւելը-
նայ ։ Բայց ես ամէն բան առած 18
եմ ու առատօրէն ունիմ. լե-
ցուած եմ՝ Եպափրոդիտոսին ձեռ-
քովը ձեր ղրկածները ընդունելով,
որ անուշ հոտ մըն է՝ ընդունելի
պատարագ՝ Աստուծոյ հաճելի ։
Եւ իմ Աստուածս ձեր ամէն պի- 19
տոյքը պիտի լեցնէ իր ճոխու-
թեանը չափովը փառքով, Քրիս-
տոս Յիսուսի ձեռքովը ։ Իսկ Աս- 20
տուծոյ ու մեր Հօրը փառք յաւի-
տեանս յաւիտենից ։ Ամէն ։
Բարեւ ըրէք բոլոր սուրբերուն 21
Քրիստոս Յիսուսով ։ Ձեզի բա- 22
րեւ կ'ընեն իմ հետս եղող եղբայր-
ները ։ Ձեզի բարեւ կ'ընեն բոլոր 23
սուրբերը, մանաւանդ անոնք որ
Կայսրին տունէն են ։ Տէր Յի- 24
սուս Քրիստոսի շնորհքը ձեր ամե-
նուն հետը ըլլայ ։ Ամէն ։

## ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԿՈՂՈՍԱՑԻՍ

### ԳԼՈՒԽ Ա

1 Պօղոս՝ Յիսուս Քրիստոսի առա-
քեալը Աստուծոյ կամքովը, և
Տիմոթէոս եղբայրը, Կողոսայի մէջ 2
եղող սուրբ ու հաւատարիմ եղ-
բայրներուն Քրիստոսով ։ Շնոր- 3
հք և խաղաղութիւն ձեզի Աս-

Աստուծմէ մեր Հօրմէն և Տէր Յիսուս
Քրիստոսէն ։
Ամէն ատեն ձեզի համար աղօթք
ընելով՝ կը գոհանանք Աստուծմէ ու
մեր Տէր Յիսուս Քրիստոսին Հօր-
4 մէն , Լսելով ձեր հաւատքը՝ որ
Քրիստոս Յիսուսի վրայ , և այն
սէրը՝ որ բոլոր սուրբերուն վրայ
5 ունիք . Այն յոյսին համար որ եր-
կինքը կը պահուի ձեզի , որուն
վրայով առաջուց լսեցիք աւետա-
րանին ճշմարտութեան խօսքովը .
6 Որ ձեզի հասաւ , ինչպէս որ բոլոր
աշխարհ , ու պտղաբեր ըլլալով
կ'աճի , նոյնը ձեր մէջն ալ , այն
օրուընէն որ դուք լսեցիք ու ճանչ-
ցաք Աստուծոյ շնորհքը ճշմարտու-
7 թիւնով . Ինչպէս որ սորվեցաք
մեր սիրելի ծառայակիցէն՝ Եպափ-
րասէն , որ ձեզի համար հաւատա-
րիմ պաշտօնեայ մըն է Քրիստոսի .
8 Որ ինքն ալ մեզի պատմեց ձեր սէ-
րը հոգիով ։
9 Ասոր համար մենք ալ այն օրուընէ
որ լսեցինք՝ չենք դադարիր ձեզի
համար աղօթք ընելէն ու խնդ-
րուածք մատուցանելէն , որ կատա-
րեալ ըլլաք անոր կամքին գիտու-
թեամբը՝ բոլոր իմաստութիւնով
10 ու հոգեւոր հանճարով . Որ դուք
Տէրոջը արժանի կերպով քալէք ա-
մէն բանի մէջ զինքը հաճեցնելով ,
ամէն բարի գործքերու մէջ պտու-
ղաբեր ըլլալով , ու աճեցուն Ա-
11 ստուծոյ գիտութիւնովը . Իր փառա-
ւոր զօրութեանը համեմատ ամենայն
ուժով ուժովցած՝ բոլոր համբերու-
թեան ու երկայնմտութեան համար
12 ուրախութեամբ , Գոհանալով Հօր
Աստուծմէն , որ մեզ լոյսի մէջ Ե-
ղող սուրբերուն վիճակին մասնա-
13 կից ըլլալու արժանացուց . Որ մեզ
ազատեց խաւարին իշխանութենէն ,
ու իր սիրելի Որդւոյն թագաւորու-
14 թեանը փոխադրեց . Որ անով
մենք փրկութիւն ունինք իր արիւ-
նովը , այսինքն մեղաց թողութիւն .
15 Որ ինքը աներեւոյթ Աստուծոյ պատ-
կերն է՝ բոլոր ստեղծուածներուն
16 անդրանիկը . Ինչու որ անով ամէն
բան ստեղծուեցաւ , ինչ որ երկին-
քը ու ինչ որ երկրի վրայ , անոնք
որ կ'երեւնան և անոնք որ չեն երեւ-
նար , թէ՛ աթոռները՝ թէ տէրու-
թիւնները՝ թէ պետութիւնները՝
թէ իշխանութիւնները . բոլոր բա-
ները անով ու անոր համար ստեղ-
ծուեցան . Ու անիկայ ամէն բանէն 17
առաջ է , և ամէն բան անով հաս-
տատ կը կենայ . Ու անիկայ է 18
մարմինին՝ այսինքն եկեղեցւոյն գլու-
խը . որ ինքը սկիզբն է՝ մեռելնե-
րէն անդրանիկը , որ ինքը ըլլայ
ամէն բանի մէջ նախապատիւ .
Ինչու որ Հօրը հաճեցաւ որ Ա- 19
ստուածութեան բոլոր լիութիւ-
նը անոր մէջը բնակի . Ու անով 20
ամէնը հաշտեցընէ իրեն հետ , խա-
ղաղութիւն ընելով անոր խաչին
վրայ թափուած արիւնովը , թէ՛ երկրի
վրայ և թէ երկինքի մէջ եղողները ։
Ու ձեզ ալ՝ որ ատեն մը օտա- 21
րացած էիք , ու չար գործքերով
թշնամիներ ձեր խորհուրդներովը ,
Հիմա հաշտեցուց բուն իր մարմի- 22
նովը՝ մահուամբ , որ ձեզ անոր
դիմացը սուրբ ու անբիծ և անա-
րատ կայնեցընէ . Թէ որ կենաք 23
հաւատքին մէջ հիմնուած ու հաս-
տատ և առանց խախտելու աւե-
տարանին յոյսէն՝ որ լսեցիք , որ
երկինքին տակը եղած բոլոր ստեղ-
ծուածներուն քարոզուեցաւ , որուն
ես Պօղոս սպասաւոր եղայ ։ Հի- 24
մա ուրախ եմ՝ իմ ձեզի համար
կրած չարչարանքներուս վրայ , ու
Քրիստոսի կրած նեղութիւններուն
պակասութիւնը իմ մարմինիս մէջը
կը լեցնեմ՝ անոր մարմինին հա-
մար , որ եկեղեցին է . Որուն ես 25
սպասաւոր եղայ Աստուծոյ տնտե-
սութիւնովը՝ որ ինծի տրուեցաւ ձե-
զի համար՝ Աստուծոյ խօսքը լման
քարոզելու , Այն խորհուրդը՝ որ 26
ծածկուած էր ամէն դարերէն ու
ազգերէն հետէ , ու հիմա իր սուր-
բերուն յայտնուեցաւ . Որոնց ու- 27
զեց Աստուած գիտցընել , թէ ինչ
է աս խորհուրդին փառաւոր ճո-
խութիւնը հեթանոսներուն մէջ .
որ այն Քրիստոսն է ձեր մէջը՝ փա-
ռաց յոյսը . Որ անիկայ մենք կը 28

քարոզենք, ու ամէն մարդ կը խրատենք, և կը սորվեցնենք ամէն մարդ բոլոր իմաստութիւնով, որ ամէն մարդ կատարեալ կեցնենք
29 Քրիստոս Յիսուսով. Որուն համար ես ալ կ'աշխատիմ՝ ջանք ընելով իր ներգործութեանը համեմատ՝ որ զօրութիւնով իմ մէջս 'ի գործ կը դրուի:

## ԳԼ. Բ

1 Վասնզի կ'ուզեմ որ գիտնաք թէ
ինչպիսի մեծ անձկութիւն ու-
նիմ ձեզի համար ու Լաւոդիկեցւոց
համար, ու ամէն անոնց համար՝ որ
իմ երեսս մարմնով չեն տեսեր.
2 Որ անոնց սիրտերը մխիթարուին՝
սիրով միացած, ու կատարեալ
իմացողութեան բոլոր ճոխութեա-
նը հասնին, այսինքն Հօր Աստուծոյ
և Քրիստոսի խորհուրդին գիտու-
3 թեանը. Որուն մէջն իմաստու-
թեան ու գիտութեան բոլոր գան-
4 ձերը պահուած են: Ես աս կ'ը-
սեմ, որ չըլլայ թէ մէկը հրապու-
րական խօսքերով ձեզ մոլորցնէ:
5 Որ թէպէտ մարմնով հեռու եմ,
բայց հոգւով ձեզի հետ եմ, և
կ'ուրախանամ երբոր ձեր բարե-
կարգութիւնը կը տեսնեմ, ու ձեր
հաւատքին հաստատութիւնը Քրի-
6 ստոսի վրայ: Ուստի ինչպէս որ
ընդունեցիք Քրիստոս Յիսուս Տէ-
7 րը՝ անով քալեցէք, Արմատ կա-
պած ու անոր վրայ շինուած՝ և հա-
ւատքին մէջ հաստատուած՝ ինչպէս
որ սորվեցաք, և անոր մէջը առա-
8 տացէք գոհութիւնով. Զգուշացէք՝
չըլլայ որ մէկը ձեզ աւրէ փի-
լիսոփայութիւնով ու փուճ խա-
բէութիւնով, որ մարդոց աւան-
դութեան՝ այսինքն աս աշխարհիս
տարրերուն պէս, և չէ թէ
Քրիստոսի վարդապետութեանը պէս.
9 Ինչու որ անոր մէջը կը բնակի Աս-
տուածութեան բոլոր լեցունութիւ-
10 նը՝ մարմնապէս: Եւ դուք ալ
անով լցուած էք, որ ինքը գլուխն
է բոլոր իշխանութեան ու պետու-
11 թեան. Որ անով դուք անձեռա-
գործ թլփատութիւնով թլփա-
տուեցաք՝ մեղաց մարմինը մերկա-
նալով Քրիստոսի թլփատութիւ-
նովը. Թաղուելով անոր հետ 12
մկրտութիւնով, որով նաև անոր
հետ յարութիւն առիք Աստուծոյ
զօրութեանը հաւատալով. որ ինքը
զանիկայ մեռելներէն յարոյց: Եւ 13
ձեզ՝ որ ատեն մը յանցանքներու
մէջ ու ձեր մարմնին անթլփատու-
թեանը մէջ մեռած էիք, կենդա-
նացուց անոր հետը. ձեր ամէն
յանցանքները ներելէն մեզի, Եւ 14
հրամաններով եղած մեզի հակառակ
եղող ձեռագիրը՝ որ մեզի դէմ կը
կենար, ջնջեց, զանիկայ մէջ տե-
ղէն վերցուց ու խաչափայտին վրայ
գամեց. Եւ իշխանութիւնները ու 15
պետութիւնները մերկացուց, ու
յայտնապէս խայտառակեց՝ յաղթե-
լով անոնց անով:

Ուստի ալ մէկը թող չդատէ 16
ձեզ ուտելու կամ խմելու կամ
տօներու կամ ամսագլուխներու
կամ շաբաթներու կողմանէ.
Որոնք գալու բաներուն շուքն են. 17
բայց ինքն մարմինը Քրիստոսինն
է: Չըլլայ որ մէկը զրկէ ձեզ 18
մրցանակէն, որ ուզէ խոնարհու-
թիւնով ու հրեշտակներու կրօնքով
չտեսած բաներուն միջամտելով ըն-
թանալ, իր մարմնոյն մտքովը փուճ
տեղը հպարտանալով. Եւ չբռնէ 19
Գլուխը՝ ուսկից որ բոլոր մարմինը
յօդուածներով ու կապերով հա-
ղորդուած ու մէկտեղ կցուած՝ Աս-
տուծոյ աճումովը կ'աճի: Ուրեմն եթէ 20
դուք Քրիստոսի հետ աս աշխարհիս
տարրերուն մեռաք, ալ ինչո՞ւ
համար աշխարհիս մէջ կենդանի
եղողներու պէս տեսակ կանոններու
կը հնազանդիք, ըսելով. Մի՛ մօ- 21
տենար, համը մի՛ առներ, մի՛
դպչիր. (Որոնց ամէնը սպառման- 22
թեան համար են գործածութեամբ,)
մարդոց պատուիրանքներուն ու
սորվեցուցածներուն համեմատ.
Որոնք իմաստութեան երեւոյթը 23
մը ունին ինքնակամ կրօնքով ու
խոնարհութիւնով և մարմնի
չխնայելով, բայց չէ թէ պատիւի

մը արժանի են , հապա մարմինը յագեցընելու կը ծառայեն ։

## ԳԼ. Գ

1 Արդ թէ որ Քրիստոսի հետ յա-
րութիւն առիք , ուրեմն վերի
բաները փնտռեցէք , ուր որ Քրիս-
տոս կը նստի Աստուծոյ աջ կողմը ։
2 Վերի բաները մտածեցէք , չէ՛ թէ
3 աս երկրիս վրայինները ։ Ինչու
որ դուք մեռաք , ու ձեր կեանքը
պահուած է Աստուծոյ քովը Քրիս-
4 տոսի հետ ։ Երբոր Քրիստոս՝ մեր
կեանքը յայտնուի , այն ատենը
դուք ալ անոր հետ փառքով
պիտի յայտնուիք ։
5 Ուստի ձեր երկրաւոր անդամ-
ները սպաննեցէ՛ք . պոռնկութիւ-
նը , պղծութիւնը , անառակ կիրքը ,
չար ցանկութիւնը և ագահու-
թիւնը՝ որ կռապաշտութիւն է .
6 Որոնց համար Աստուծոյ բարկու-
թիւնը անհնազանդութեան որդւոց
7 վրայ կու գայ . Որ ատեն մը դուք
ալ անոնց մէջը կը քալէիք , երբոր
8 անոնց մէջը կ'ապրէիք ։ Բայց հի-
մա մէկդի՛ ձգեցէք դուք ալ այն ա-
մէնը . բարկութիւնը , սրտմտու-
թիւնը , չարութիւնը , հայհոյու-
թիւնը , անհամեստ խօսքերը ձեր
9 բերաններէն ։ Իրարու սուտ մի՛
զրուցէք . հին մարդը իր գործքե-
10 րովը ձեր վրայէն հանեցէ՛ք . Ու
հագէք այն նորը գիտութիւնով
նորոգուած՝ իր Ստեղծողին պատ-
11 կերին պէս . Ուր որ Յոյն ու Հը-
րէայ , թլփատութիւն ու անթլ-
փատութիւն , Բարբարոս , Սկիւ-
թացի , ծառայ կամ ազատ չկայ .
հապա Քրիստոս է ամէնը՝ և ամէն
12 բանի մէջ ։ Ուստի Աստուծոյ
ընտրեալ սուրբերու ու սիրելինե-
րու պէս փրանքի գ. հագէք գութը ,
ողորմութիւնը , քաղցրութիւնը ,
խոնարհութիւնը , հեզութիւնը ,
13 երկայնմտութիւնը , Իրարու համ-
բերելով և իրարու ներելով՝ թէ որ
մէկը մէկու մը դէմ տրտունջ մը
ունենայ . ինչպէս որ Քրիստոս ձե-
14 զի ներեց , անանկ ալ դուք ։ Ու
ալ ամէն բաներուն վրայ սէ՛րը հա-
գէք , որ կատարելութեան կապն
է . Ու Աստուծոյ խաղաղութիւնը 15
ձեր սրտերուն մէջը թագաւորէ ,
որ դուք անոր կանչուեցաք մէկ
մարմինով . ու գոհացո՛ղ եղէք ։
Քրիստոսի խօսքը ձեր մէջը բնակի 16
առատապէս ամէն իմաստութիւնով՝
իրար սորվեցընելու ու խրատելու ,
սաղմոսներով և օրհնութիւննե-
րով ու հոգևոր երգերով ձեր
սրտերուն մէջը շնորհքով զԱս-
տուած օրհնելու ։ Ու ամէն ինչ 17
որ կ'ընէք թէ՛ խօսքով և թէ գործ-
քով , բոլորը Տէր Յիսուսի անու-
նովը ըրէ՛ք , Աստուծոյ ու Հօրը
գոհութիւն մատուցանելով անոր
ձեռքովը ։
Կնիկներ՝ հնազանդ եղէք ձեր ե- 18
րիկներուն , ինչպէս որ կը վայլէ՝
Տէրոջմով ։ Էրիկներ՝ սիրեցէ՛ք 19
ձեր կնիկները , ու դառն մի՛ ըլլաք
անոնց ։ Որդիներ՝ ամէն բանի մէջ 20
հնազանդ եղէք ձեր ծնողքներուն ,
ինչու որ այն է Տէրոջը առջևը
հաճելի ։ Հայրեր՝ ձեր որդիները 21
մի՛ բարկացընէք որ չվհատին ։
Ծառաներ՝ ամէն բանի մէջ հնա- 22
զանդ եղէք ձեր մարմնաւոր տէրե-
րուն . չէ թէ աչքի առջև ծառայե-
լով մարդահաճոներու պէս , հապա
սրտի միամտութեամբ՝ Տէրոջմէ
վախնալով . Ինչ որ կ'ընէք՝ սըր- 23
տանց ըրէք , որպէս թէ Տէրոջը ու
չէ՛ թէ մարդոց , Գիտնալով որ 24
ժառանգութեան հատուցումը Տէ-
րոջմէ պիտի առնէք . ինչու որ Տէր
Քրիստոսին կը ծառայէք . Բայց 25
անօրէնը իր անօրէնութեանը պա-
տիժը պիտի ընդունի , և աչառու-
թիւն չկայ ։

## ԳԼ. Դ

Տէրեր՝ ձեր ծառաներուն իրա- 1
ւունք ու հաւասարութիւն
տուէք , գիտնալով որ դուք ալ
Տէր ունիք երկինքը ։
Շարունակ աղօթքի եռանդ ե- 2
ղէք , անոր մէջը արթուն մնալով
գոհութեամբ ։ Աղօթք ըրէք նաև 3
մեզի համար , որ Աստուած խօսքին

դուռը բանայ մեզի Քրիստոսի խոր-
հուրդը խօսելու, որուն համար
4 կապուած ալ եմ, Որ յայտնի ը-
նեմ զանիկայ՝ ինչպէս որ ինծի կը
5 վայլէ խօսիլ ։ Իմաստութեամբ
վարուեցէք դուրսիններուն հետ,
6 ժամանակը ծախու առնելով ։ Ձեր
խօսքը ամէն ատեն շնորհքով՝ որպէս
թէ աղով համեմուած ըլլայ, ու
գիտնաք թէ ինչպէս կը վայլէ ձեզի
ամէն մէկուն պատասխան տալ ։
7 Իմ վրայովս բոլորը պիտի
իմացնէ ձեզի Տիւքիկոս սիրելի եղ-
բայրը և հաւատարիմ պաշտօնեան
8 ու ծառայակիցը Տէրոջմով . Զինք
որ աս բանին համար ձեզի խըր-
կեցի, որ գիտնայ ձեր վրայով,
9 ու ձեր սիրտերը մխիթարէ, Ո-
նեսիմոս հաւատարիմ ու սիրելի
եղբօրը հետ մէկտեղ՝ որ ձեզմէ մէկն
է . իրենք ամէն բանը ձեզի պիտի
10 իմացնեն՝ ինչ որ հոս կայ ։ Բարեւ
կ'ընէ ձեզի Արիստարքոս՝ իմ գե-
րութեան ընկերս, և Մարկոս՝ Բառ-
նաբասին եղբօրորդին, (որուն հա-
մար պատուէր առիք . թէ որ ձեզի
գալու ըլլայ, ընդունեցէք անիկայ,)
11 Եւ Յիսուս՝ որ Յուստոս կոչուած
է, որոնք թլփատութենէն են . ա-
սոնք միայն ինծի գործակից եղան
Աստուծոյ թագաւորութեանը մէջ,
որոնք ինծի մխիթարութիւն եղան ։
Բարեւ կ'ընէ ձեզի Եպափրաս՝ Քրի- 12
ստոսի ծառան, որ ձեզմէ մէկն է,
ամէն ատեն աղօթքի մէջ ձեզի հա-
մար ջանք ընելով, որ դուք կա-
տարեալ ու լման կենաք Աստուծոյ
բոլոր կամքը մէջ ։ Քանզի անոր 13
վրայով ես կը վկայեմ թէ շատ
նախանձաւորութիւն ունի ձեզի հա-
մար ու Լաւոդիկէի և Յերապոլիսի
մէջ եղողներուն համար ։ Բարեւ 14
կ'ընէ ձեզի սիրելի Ղուկաս բժիշ-
կը ու Դեմաս ։ Բարեւ ըրէք 15
եղբայրներուն՝ որ Լաւոդիկիա են,
և Նիմփասին ու անոր տանը մէ-
ջի եկեղեցիին ։ Ու երբոր աս թուղ- 16
թը ձեր մէջը կարդացուի, Լա-
ւոդիկեցւոց եկեղեցիին մէջն ալ
կարդալ տուէք . և դուք ալ Լա-
ւոդիկիայէն եկած թուղթը կարդա-
ցէք ։ Ու ըսէք Արքիպպոսին, 17
Զգո՛յշ եղիր քու պաշտօնու-
թեանդ՝ որ Տէրոջմով առիր, որ
անիկայ կատարես ։ Այս բարեւը իմ 18
ձեռքովս՝ Պօղոսինն է . իմ կապերս
միտքերնիդ թող ըլլան ։ Շը-
նորհքը ձեզի հետ ։ Ամէն ։

---

# ԱՌԱՋԻՆ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ

### ԳԼՈՒԽ Ա

1 Պօղոս և Սիղուանոս ու Տիմո-
թէոս՝ Թեսաղոնիկեցւոց եկե-
ղեցւոյդ՝ Հայր Աստուծով ու Տէր
2 Յիսուս Քրիստոսով . Շնորհք և
խաղաղութիւն ձեզի Աստուծմէ մեր
Հօրմէն ու Տէր Յիսուս Քրիստո-
սէն ։

Կը գոհանանք Աստուծմէ ամէն
ատեն ձեր ամենուն համար՝ ձեզ յի-
շելով մեր աղօթքներուն մէջը .
Անդադար յիշելով ձեր հաւատա- 3
քին գործը ու սիրոյ աշխատութիւնը
և մեր Տէր Յիսուս Քրիստոսի յու-
սին համբերութիւնը՝ Աստուծոյ ու
մեր Հօրը առջեւը . Եւ գիտնալով՝ 4
Աստուծմէ սիրուած եղբայրներ՝ ձեր
ընտրութիւնը . Որ մեր աւետա- 5
րանը չէ՛ թէ միայն խօսքով եղաւ
ձեզի, հապա զօրութիւնով ալ և
Հոգւով Սրբով ու շատ ապա-
հովութիւնով, ինչպէս որ գիտէք
ալ թէ ինչպէս կեցանք ձեր մէջը

18 մեծ փափաքով ։ Անոր համար ես
Պօղոս մէկ երկու անգամ ուզեցի
ձեզի գալ, բայց Սատանան մեզ
19 արգիլեց ։ Ինչու որ ո՞վ է մեր
յոյսը կամ ուրախութիւնը կամ
մեր պարծանքին պսակը, եթէ ոչ
դուք՝ մեր Տէր Յիսուս Քրիստոսին
20 առջեւը անոր գալուն ատենը ։ Ո-
րովհետեւ դուք էք մեր փառքը և
ուրախութիւնը ։

## ԳԼ. Գ

1 Ուստի ալ չկրնալով աւելի համ-
բերել, աղէկ երևցաւ մեզի մի-
2 նակ Աթէնք մնալ ։ Եւ Տիմոթէոս
մեր եղբայրը ու Աստուծոյ պաշտօ-
նեան և մեր գործակիցը Քրիստոսի
աւետարանին մէջ՝ խրկեցինք ձեզ
հաստատելու ու մխիթարելու ձեր
3 հաւատքին համար ։ Որ այս նեղու-
թիւններուն մէջ չըլլայ մէկը խախ-
տի ։ Ինչու որ դուք ինքնիրեննիդ
գիտէք որ մենք աս բաներուն հա-
4 մար կեցեր ենք ։ Քանզի երբոր
մենք ձեր քովը էինք, առաջուց ձե-
զի կը զրուցէինք թէ նեղութիւննե-
րու պիտի հանդիպինք, ինչպէս որ
5 եղաւ ալ, ու գիտէք ։ Անոր հա-
մար ես ալ չկրնալով աւելի համբե-
րել, մարդ խրկեցի ձեր հաւատքը
գիտնալու, որ չըլլայ թէ փորձողը
ձեզ փորձած ըլլայ, և մեր աշխա-
6 տութիւնը պարապ ըլլայ ։ Բայց
հիմա երբոր Տիմոթէոս ձեզմէ մեզի
եկաւ, ու ձեր հաւատքին և սիրոյն
աւետիսը մեզի տուաւ, որ ամէն
ժամանակ մեր բարի յիշատակը
միտերնիդ ունիք, և կը փափաքիք
մեզ տեսնելու, ինչպէս որ մենք
7 ալ ձեզ, Անոր համար եղբայրներ՝
ձեր վրայ մխիթարուեցանք մեր բո-
լոր վիշտերուն ու նեղութիւններուն
8 վրայ՝ ձեր հաւատքովը ։ Ինչու որ
հիմա կենդանի ենք մենք, թէ որ
դուք հաստատուն կենաք Տէրոջմով ։
9 Քանզի ի՞նչ գոհութիւն կրնանք
մատուցանել Աստուծոյ ձեր վրայով՝
այն ամէն ուրախութեանը համար՝
որ կ'ուրախանանք ձեզի համար մեր
10 Աստուծոյ առջեւը, Եւ գիշեր ու
ցորեկ խիստ շատ աղաչանք կ'ընենք
ձեր երեսը տեսնելու, ու ձեր հաւատ-
քին պակասութիւնները լեցնելու ։
Բայց Աստուած ինքն ու մեր Հայ- 11
րը և մեր Տէրը Յիսուս Քրիստոս
մեր ճամբան դէպ 'ի ձեզի յաջողէ ։
Եւ Տէրը աճեցնէ ու առատցնէ ձեր 12
սէրը իրարու վրայ ու ամենուն վրայ,
ինչպէս որ մենք ալ ձեր վրայ ունինք,
Հաստատելով ձեր սիրտերը անա- 13
րատ՝ սրբութեան մէջ Աստուծոյ և
մեր Հօրը առջեւ՝ մեր Տէրոջը Յի-
սուս Քրիստոսին գալու ատենը իր
բոլոր սուրբերուն հետ միասին ։

## ԳԼ. Դ

Ալ հիմա, եղբայրներ՝ ձեզի կ'աղա- 1
չենք ու կը յորդորենք Տէր
Յիսուսով. որ ինչպէս մեզմէ ա-
ռիք՝ թէ ինչպէս պէտք է ձեզի քա-
լել ու Աստուծոյ հաճոյ ըլլալ, ալ
աւելի առաջ երթաք ։ Քանզի 2
գիտէք թէ ի՛նչ պատուէրներ
տուինք ձեզի Տէր Յիսուսով ։ Ին- 3
չու որ Աստուծոյ կամքը աս է՝ ա-
սիկա ձեր սուրբ ըլլալը, որ դուք ետ
կենաք պոռնկութենէ ։ Ձեզմէ ա- 4
մէն մէկը գիտնայ իր անօթը սրբու-
թիւնով ու պատուով ստանալ ։
Ոչ թէ ցանկութեան կիրքով՝ ինչ- 5
պէս հեթանոսները՝ որոնք Աստուած
չեն ճանչնար ։ Չըլլայ որ այս բանին 6
մէջ չափէ անցնի մէկը ու իր եղբայ-
րը զրկէ. ինչու որ Տէրը աս բոլոր
բաներուն համար վրէժխնդիր է ։
ինչպէս առաջուց ըսինք ձեզի ու
վկայութիւն տուինք ։ Ինչու որ 7
Աստուած մեզ պղծութեան չկան-
չեց, հապա սրբութեան ։ Ուստի 8
ան որ կ'անարգէ, չէ թէ անիկայ
մարդ մը կ'անարգէ, հապա զԱս-
տուած՝ որ իր Սուրբ Հոգին ալ
մեզի տուաւ ։

Բայց եղբայրսիրութեան վրայով 9
պէտք չէ ձեզի բան գրել, ինչու
որ դուք ինքնիրեննիդ Աստուծմէ
սորված էք մէկզմէկ սիրել ։ Եւ ի- 10
րաւ աս բանը կ'ընէք դուք բոլոր
Մակեդոնիայի մէջ եղող ամէն եղ-
բայրներուն, սակայն կ'աղաչենք ձե-
զի եղբայրներ՝ որ ալ աւելի առա-
տանաք ։ Եւ ջանք ըրէք որ հան- 11

6 մեզի համար ։ Դուք ալ մեզի ու
Տէրոջը նմանող եղաք՝ ընդու-
նելով խօսքը շատ նեղութեան մէջ
Հոգւոյն Սրբոյ ուրախութենովը ․
7 Այնպէս որ դուք օրինակ եղաք բոլոր
հաւատացեալներուն՝ որոնք Մակե-
դոնիայի ու Աքայիայի մէջ են ։
8 Ինչու որ ձեզմէ հնչեցուեցաւ Տէ-
րոջը խօսքը, չէ՛ թէ միայն Մակե-
դոնիայի ու Աքայիայի մէջ, հապա
նաև ամէն տեղ ձեր հաւատքը որ
դէպ 'ի Աստուած է՝ տարածուե-
ցաւ, անանկ որ ալ պէտք չէ՛ մեզի
9 բան մը խօսիլ ։ Վասնզի իրենք
կը պատմեն մեզի համար, թէ ինչ-
պէս եղաւ մեր ձեր քովը մտնելը, և
ինչպէս դուք դարձաք Աստուծոյ
կուռքերէն՝ կենդանի ու ճշմարիտ Աս-
10 տուծոյ ծառայելու, Եւ սպասելու
անոր Որդւոյն երկնքէն, որ մեռել-
ներէն յարոյց զանիկայ՝ այս-
ինքն Յիսուսը, որ կ'ազատէ մեզ
գալու բարկութենէն ։

ԳԼ․ Բ

1 Վասնզի եղբայրնե՛ր դուք ինքնի-
նիդ գիտէք ձեր մէջը մտնելը
2 նոյն՝ որ պարապ տեղը չեղաւ ․ Հա-
պա առաջ Փիլիպպէի մէջ չար-
չարանք կրելով ու անարգուելով՝
ինչպէս որ գիտէք, համարձակու-
թիւն ըրինք մեր Աստուծովը՝ ձեզի
պատմելու Աստուծոյ աւետարանը
3 մեծ հակառակութեան մէջ ։ Ին-
չու որ մեր յորդորանքը ոչ մոլո-
րութենէ է ու ոչ պղծութենէ
4 և ոչ խաբէութեամբ ․ Հապա
ինչպէս որ մենք Աստուծմէ ընտ-
րուեցանք ու աւետարանը մեզ հա-
ւատացուեցաւ, այնպէս կը խօսինք,
չէ՛ թէ մարդոց հաճոյ ըլլալու հա-
մար, հապա Աստուծոյ որ մեր սիր-
5 տերը կը քննէ ․ Ինչու որ մենք բը-
նաւ շողոքորթութեան խօսքեր չը-
գործածեցինք, ինչպէս որ գիտէք,
ոչ ալ ագահութեան պատճառանք,
6 Աստուած վկայ է, Եւ մարդոցմէ
փառք չփնտռեցինք, ոչ ձեզմէ,
7 ոչ ալ ուրիշներէն, թէև կրնա-
յինք իբրև Քրիստոսի առաքեալ-
ներ ծանրութիւն տալ ․ Բայց մենք
հեզ եղանք ձեր մէջը, ինչպէս որ
դայեակ մը իր երախաները կը խը-
նամէ ։ Նոյնպէս ալ մենք ձեր վրայ 8
փափաքս ունենալով կը յօժարէինք,
ոչ միայն Աստուծոյ աւետարանը
ձեզի տալ, հապա մեր անձերն ալ ․
Ինչու որ դուք մեզի սիրելիներ ե-
ղաք ։ Վասնզի կը յիշէք եղբայր- 9
ներ՛ մեր աշխատութիւնը ու ջանքը,
որ ձեզմէ մէկու մը ծանրութիւն
չտալու համար գիշեր ու ցորեկ
գործելով, ձեզի Աստուծոյ աւե-
տարանը քարոզեցինք ։ Դուք վկայ 10
էք, և Աստուած ալ թէ ինչպէս
սրբութեամբ ու արդարութեամբ
և անարատութեամբ վարուեցանք
ձեզի հետ՝ որ հաւատացիք ․ Ինչ- 11
պէս գիտէք ալ, որ ձեզմէ ամէն
մէկը՝ ինչպէս հայր մը իր որդիները՝
Այնպէս կը յորդորէինք ու կը մխի- 12
թարէինք և վկայութիւն կը տը-
նէինք որ դուք Աստուծոյ վայելուչ
պէս քալէք, ան որ ձեզ իր թա-
գաւորութեանը ու փառքին կան-
չեց ։ Ասոր համար մենք ալ ան- 13
դադար կը գոհանանք Աստուծմէ,
որ մեզմէ Աստուծոյ խօսքը լսելով
ընդունեցիք, չէ՛ թէ իբրև մարդոց
խօսք, հապա ինչպէս որ ճշմարտա-
պէս է, Աստուծոյ խօսք, որ նաև
կը ներգործէ ձեր մէջը որ կը հա-
ւատաք ։ Վասնզի դուք եղբայրներ՝ 14
նմանող եղաք Աստուծոյ եկեղեցի-
ներուն՝ որ Հրէաստանի մէջ են
Քրիստոս Յիսուսով ․ Ինչու որ
դուք ալ նոյն չարչարանքները կրե-
ցիք ձեր համազգիներէն, ինչպէս
որ անոնք ալ Հրէաներէն ․ Որոնք 15
Տէր Յիսուսն ալ մեռցուցին՝ մար-
գարէներն ալ, և մեզ հալածեցին,
ու Աստուծոյ անհաճոյ՝ և բոլոր
մարդոց հակառակ են ․ Ու մեզ 16
կ'արգիլեն հեթանոսներուն խօսելէն
անոնց փրկութեանը համար, որ
իրենց մեղքերուն չափը լեցընեն
ամէն ատեն ․ և բարկութիւնը ա-
նոնց վրայ հասեր է մինչև վերջը ։
Իսկ մենք եղբայրներ՝ իրաւ քիչ 17
մը ատեն ձեզմէ որբ մնացինք երե-
սով ու չէ՛ թէ սրտով, բայց ա-
ւելի ջանացինք ձեր երեսը տեսնելու

դադար կենաք ՝ ու ամէն մէկերնիդ
իր գործը գործէ , ու ձեր ձեռքերո-
վը աշխատիք , (ինչպէս որ ձեզի
պատուիրեցինք ,) որ դուրսիններ-
րուն հետ պարկեշտութեամբ վա-
րուիք , ու բանի մը կարօտ չըլլաք :
12 Չենք ուզեր՝ եղբայրներ՝ որ տգէտ
ըլլաք ննջեցեալներուն վրայով ) որ
չտրտմիք ինչպէս ուրիշները՝ որոնք
33 յոյս չունին : Վասնզի թէ որ կը
հաւատանք թէ Յիսուս մեռաւ ու
յարութիւն առաւ , անանկ ալ Աս-
տուած ննջեցեալները Յիսուսով պի-
14 տի բերէ անոր հետ : Վասն զի աս
կը զրուցենք ձեզի Տէրոջը խօսքովը ,
թէ մենք որ մինչև Տէրոջը գալուս-
տը ողջ կը մնանք , բնաւ ննջեցեալ-
15 ներէն առաջ պիտի չանցնինք : Ին-
չու որ Տէրը ինքն աղաղակաւորութեան
հրամանով՝ հրեշտակապետին ձայ-
նովը ու Աստուծոյ փողովը երկինքէն
պիտի իջնէ , և Քրիստոսով մե-
ռածները առաջ յարութիւն պիտի
16 առնեն : Ետքը մենք ալ որ ողջ
մնացած ենք՝ անոնցմով մէկտեղ
պիտի յափշտակուինք ամպերով
Տէրոջը առջևը ելլելու օդին մէջը ,
և անանկ յաւիտեան Տէրոջը հետ
17 պիտի ըլլանք : Ուստի մէկզմէկ
մխիթարեցէք աս խօսքերով :

## ԳԼ. Ե

1 Բայց ան ժամերուն ու ժամանակ-
ներուն համար եղբայրներ՝ պէտք
2 չէ բան մը գրել ձեզի . Վասնզի
դուք ինքնիրեննիդ աղէկ գիտէք թէ
Տէրոջը օրը գիշերուան գողի պէս
3 անանկ կը հասնի : Երբոր ըսելու
ըլլան թէ խաղաղութիւն ու ապա-
հովութիւն է , ան ատենը կորուս-
տը յանկարծակի անոնց վրայ պիտի
հասնի յղիին երկունքը պէս , ու
4 պիտի չազատին : Բայց դուք եղ-
բայրներ՝ խաւարի մէջ չէք , որ ան
օրը գողի մը պէս ձեր վրայ հասնի .
5 Ինչու որ դուք ամէնքդ լուսոյ որդիք
էք ու ցորեկուան որդիք . գիշե-
6 րուան չենք , խաւարինը չենք : Ու-
րեմն չքնանանք ինչպէս որ ուրիշնե-
րը , հապա արթուն ու զգաստ ըլ-
7 լանք : Վասնզի անոնք որ կը քնա-
նան՝ գիշերը կը քնանան , և անոնք
որ կ'արբենան՝ գիշերը կ'արբենան :
Բայց մենք որ ցորեկուան 8
ենք , զգաստ ըլլանք , և հաւատքին
ու սիրոյն զրահը վրանիս հագնինք ,
ու փրկութեան յուսոյն սաղաւար-
տը գլուխնիս դնենք : Ինչու որ Աս- 9
տուած մեզ բարկութեան համար
չորոշեց , հապա փրկութիւն ստա-
նալու համար մեր Տէր Յիսուս
Քրիստոսին ձեռքովը . Որ ինքը մե- 10
զի համար մեռաւ . որպէս զի թէ
արթուն ըլլանք և թէ քնանանք ,
իր հետը մէկտեղ ապրինք : Անոր 11
համար մէկզմէկ մխիթարեցէք և
իրարու շինութիւն տուէք , ինչպէս
որ կ'ընէք ալ :
Ու ձեզի կ'աղաչենք եղբայրներ՝ 12
որ ճանչնաք ձեր աշխատաւորները
ու վերակացուները Տէրոջմով , ու
ձեզի խրատ տուողները . Ու զա- 13
նոնք մեծապէս պատուեցէք սիրով
իրենց գործքին համար . իրարու
հետ խաղաղութիւն ունեցէք . Ու 14
ձեզի կ'աղաչենք եղբայրներ՝ անկարգ
վարմունք ունեցողները խրատեցէք ,
վհատասիրտները մխիթարեցէք ,
տկարներուն ձեռնտու եղէք , ա-
մենուն ալ երկայնամիտ եղէք :
Զգուշացէ՛ք՝ չըլլայ որ մէկը չա- 15
րութեան փոխարէն չարութիւն հա-
տուցանէ մէկու մը . հապա ամէն
ատեն բարիք ընելու ետեւէ եղէք
թէ՛ իրարու , և թէ ամենուն : Ա- 16
մէն ատեն ուրախ եղէք : Անդա- 17
դար աղօթք ըրէք : Ամէն բանի 18
մէջ գոհութիւն տուէք . ինչու որ
աս է Աստուծոյ կամքը Քրիստոս
Յիսուսով ձեր վրայ : Սուրբ Հո- 19
գին մի՛ մարէք : Մարգարէու- 20
թիւնները մի՛ արհամարհէք : Ա- 21
մէն բան փորձեցէ՛ք , բարին ամուր
բռնեցէք : Ամէն տեսակ գէշ բա- 22
ներէն ետ կեցէք : Ու ինքը խա- 23
ղաղութեան Աստուածը ձեզ բոլո-
րովին սուրբ ընէ , ու ձեր բոլո՛ր հո-
գին և շունչը ու մարմինը անարատ
պահուի մինչև մեր Տէր Յիսուս
Քրիստոսի գալու ատենը : Հա- 24
ւատարիմ է ան որ ձեզ կանչեց , որ
ինքը պիտի կատարէ ալ :

25 Եղբայրնե՛ր՝ աղօթք ըրէք մեզի
26 համար ։ Բարե՛ւ տուէք բոլոր եղ-
բայրներուն սուրբ համբուրով ։
27 Կ'երդմնեցընեմ ձեզ Տէրոջմով ,
որ այս թուղթը բոլոր սուրբ եղ-
բայրներուն կարդացուի ։ Մեր 28
Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը
ձեր հետը ըլլայ ։ Ամէն ։

---

# ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ԹԵՍԱՂՈՆԻԿԵՑԻՍ

### ԳԼՈՒԽ Ա

1 Պօղոս և Սիղուանոս ու Տիմոթէ-
ոս՝ Թեսաղոնիկեցւոց եկեղե-
ցւոյդ մեր Հայր Աստուծմով ու Տէր
2 Յիսուս Քրիստոսով · Շնորհք
և խաղաղութիւն ձեզի Աստուծմէ
մեր Հօրմէն ու Տէր Յիսուս Քրի-
ստոսէն ։
3 Պարտինք ամէն ատեն Աստուծմէ
գոհանալ ձեզի համար՝ եղբայրներ ,
ինչպէս որ կը վայլէ · քանզի ձեր
հաւատքը շատ աճելու վրայ է , և
ձեր ամէն մէկուն սէրը իրարու վրայ
4 կը շատնայ · Այնպէս որ մենք ալ
ձեզմով կը պարծենանք Աստուծոյ
եկեղեցիներուն մէջը՝ ձեր համբե-
րութեանը ու հաւատքին համար
ձեր բոլոր հալածանքներուն ու նե-
ղութիւններուն մէջ , որոնց որ դուք
5 կը համբերէք · Որ է Աստուծոյ
արդար դատաստանին ապացոյցը՝ որ
դուք արժանանաք Աստուծոյ թա-
գաւորութեանը , որուն համար ալ
6 նեղութիւն կը կրէք · Քանզի
Աստուծոյ առջևը իրաւունք է՝ ձեզի
նեղութիւն տուողներուն նեղութիւն
7 հատուցանել , Ու ձեզի նեղութիւն
կրողներուդ՝ մեզի հետ հանգիստ ,
Տէր Յիսուսի երկինքէն յայտնուե-
լու ատենը իր զօրաւոր հրեշտակնե-
8 րովը , Բորբոքած կրակով վրէժ
առնելու անոնցմէ՝ որ Աստուած չեն
ճանչնար , և որ մեր Տէր Յիսուս
Քրիստոսի աւետարանին չեն հնա-
9 զանդիր · Որոնք պիտի պատժուին
յաւիտենական սատակումով՝ Տէրո-
ջը երեսէն ու անոր զօրութեանը
փառքէն , Երբոր ինքը գայ փա- 10
ռաւորուելու իր սուրբերուն մէջը ,
և հիանալի ըլլալու բոլոր հաւա-
տացեալներուն մէջը , ( ինչու որ
մեր վկայութիւնը ձեր մէջը հաւա-
տացուեցաւ , ) այն օրը ։ Ասոր 11
պատճառաւ ալ ամէն ատեն ձեզի
համար աղօթք կ'ընենք , որ մեր
Աստուածը ձեզ արժանի ընէ իր
կոչմանը , և իր բարութեան բոլոր
հաճութիւնը կատարէ , ու հա-
ւատքին գործը զօրութիւնով · Որ 12
մեր Տէր Յիսուս Քրիստոսի ա-
նունը փառաւորուի ձեր մէջը , և
դուք ալ անոր մէջը՝ մեր Աստուծոյն
ու Տէր Յիսուս Քրիստոսի շնոր-
հացը համեմատ ։

### ԳԼ. Բ

Կ'աղաչենք ձեզի եղբայրներ՝ մեր 1
Տէր Յիսուս Քրիստոսի գալըս-
տեանը՝ ու մեր անոր քովը ժող-
վուելուն համար , Չըլլայ որ շուտ 2
մը խախտիք ձեր միտքէն , ու չըլ-
լայ որ խռովիք՝ ոչ հոգիով ու ոչ
խօսքով , ոչ ալ թուղթով մը
իբր թէ մեզմէ գրուած , որպէս թէ
Տէրոջը օրը եկած հասած ըլլայ ։
Չըլլայ որ մէկը ձեզ խաբէ մէկ 3
կերպով մը · ինչու որ այն օրը պիտի
գայ՝ թէ որ ապստամբութիւնը
առաջ չգայ , ու յայտնուի մեղաց
մարդը՝ կորստեան որդին , Ան հա- 4
կառակորդը հպարտացած ամենուն
վրայ որ Աստուած կըսուի կամ կը
պաշտուի , մինչև անիկայ Աստուծոյ
տաճարին մէջ պիտի նստի , և ինք-
զինքը ցուցընէ թէ Աստուած է ։

5 Չէ՞ք յիշեր որ երբ ձեր քովն էի,
6 աս բաները կ'ըսէի ձեզի ։ Ու
հիմա դուք ինքնիրեննիդ գիտէք
ինչ է ան որ կ'արգիլէ, որ ինքը
7 իր ատենին յայտնուի ։ Ինչու որ
անօրէնութեան խորհուրդը հիմա-
կուընէ կը զօրանայ. բայց ան որ
հիմա կ'արգիլէ, պէտք ատեն մըն-
8 չև որ ինքը մէջտեղէն վերնայ ։ Ու
ետքը պիտի յայտնուի ան անօրէ-
նը, որն որ Տէր Յիսուս իր բերնին
հոգիովը պիտի սպառէ, ու իր գալուն
9 յայտնուելովը պիտի կորսնցընէ. Ա-
նոր գալը Սատանայի ազդեցու-
թիւնովն է բոլոր զօրութիւնով և
նշաններով ու սուտ հրաշքներով,
10 Ու կորսուածներուն վրայ անիրա-
ւութեան բոլոր խաբէութիւնովը.
որովհետև անոնք ճշմարտութեան
սէրը չընդունեցին որ փրկուին.
անոր համար Աստուած ալ պիտի
ղրկէ անոնց ուժով մոլորութիւն
11 մը՝ որ ստութեան հաւատան. Որ
դատապարտուին ամէն անոնք որ
չհաւատացին ճշմարտութեան, հա-
պա անօրէնութեան յօժարեցան ։
12 Բայց մեզի պէտք է միշտ Աս-
տուծմէ գոհանալ ձեզի համար՝
Տէրոջմէ սիրուած եղբայրներ ։ ինչու
որ Աստուած առաջուց ձեզ ընտրեց
փրկուելու Հոգիին սրբելովը ու
13 ճշմարտութեան հաւատքովը. Որուն
ձեզ կանչեց մեր աւետարանելովը՝
մեր Տէր Յիսուս Քրիստոսի փառ-
քը ստանալու ։
14 Ուստի եղբայրներ՝ հաստատ կե-
ցէք, ու պինդ բռնեցէք այն ա-
ւանդութիւնները որ սորվեցաք թէ
խօսքով ու թէ մեր թուղթովը ։
15 Ու ինքը մեր Տէր Յիսուս Քրիս-
տոս ու մեր Հայրը Աստուած,
որ մեզ սիրեց ու տուաւ մեզի յա-
ւիտենական մխիթարութիւն և
16 բարի յոյս շնորհքով, Ձեր սիր-
տերը մխիթարէ և ձեզ հաստատէ
ամէն բարի խօսքերու և գործքերու
մէջ ։

## ԳԼ. Գ

1 Վերջապէս եղբայրներ՝ մեզի հա-
մար աղօթք ըրէք, որ Տէրոջը
խօսքը յառաջանայ ու փառաւոր
ըլլայ, ինչպէս որ ձեր մէջը. Ու 2
որ անիրաւ ու չար մարդիկներէն
ազատինք. ինչու որ ամէնը հա-
ւատք չունին. Բայց Տէրը հաւա- 3
տարիմ է, որ ձեզ պիտի հաս-
տատէ ու չարէն պահէ ։ Ու ձեր 4
վրայ վստահութիւն ունինք Տէրոջ-
մով, թէ ինչ որ ձեզի պատուիրե-
ցինք՝ կ'ընէք, ու պիտի ընէք ալ ։
Ու Տէրը ձեր սիրտերը Աստուծոյ 5
սիրոյն ու Քրիստոսի համբերու-
թեանը ուղղէ ։
Ու ձեզի կը պատուիրենք եղ- 6
բայրներ՝ մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսի անունովը, որ ետ քաշուիք
ամէն եղբօրմէ՝ որ անկարգութեամբ
կը վարուի, ու չէ՛ թէ ան աւան-
դութեանը պէս՝ որ մեզմէ առաւ ։
Ինչու որ դուք ինքնիրեննիդ գիտէք 7
թէ ինչպէս պարտիք մեզի նմանող
ըլլալ. քանզի մենք ձեր մէջը ան-
կարգութեամբ չվարուեցանք, Ո՛չ 8
ալ մէկուն հացը ձրի կերանք.
հապա ջանքով և աշխատանքով
գիշեր ու ցորեկ կը գործէինք՝ ձեզմէ
մէկուն ծանրութիւն չըլլալու հա-
մար. Չէ՛ թէ՝ որ մենք իշխանու- 9
թիւն չունեինք, հապա որ անձերնիս
ձեզի օրինակ ընենք՝ որ մեզի նմանող
ըլլաք ։ Վասն զի երբոր մենք ձեր 10
քովն էինք՝ աս ձեզի կը պատուի-
րէինք, թէ ան որ չուզեր գործ
գործել, հաց ալ թող չուտէ ։
Արդ կը լսենք որ ձեր մէջէն ոմանք 11
անկարգութեամբ կը վարուին, ու
գործ մը չեն գործեր, հապա հե-
տաքրքիր կը պտըտին ։ Անանկ- 12
ներուն պատուէր կու տանք ու
կ'աղաչենք մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսով, որ հանդարտութեամբ
գործեն և իրենց հացը ուտեն ։
Բայց դուք եղբայրներ՝ մի ձանձ- 13
րանաք բարիք գործելէն ։ Իսկ 14
թէ որ մէկը չմտադրէր մեր խօս-
քին աս թուղթով, դուք նշանա-
կեցէք անիկայ, ու անոր հետ մի
խառնուիք, որ ամչնայ ։ Բայց 15
չըլլայ թէ թշնամիի պէս սեպէք
անիկայ, հապա եղբօր պէս խրատե-
ցէք ։ Ու ինքը խաղաղութեան 16

րայովդ առաջուց եղած մարգարէու-
թիւններուն համեմատ, որ անոնց-
մով պատերազմիս այն բարի պա-
19 տերազմը, Ու ունենաս հաւատք
ու մաքուր խղճմտանք, որն որ մէկ
քանիները իրենցմէ մէկդի ձգելով
նաւաբեկութիւն կրեցին հաւատքին
20 կողմանէ. Որոնցմէ են Հիմենոս
ու Աղեքսանդրոս, որոնք ես Սա-
տանային մատնեցի, որ սորվին հայ-
հոյութիւն չընել։

## ԳԼ. Բ

1 Արդ կ'աղաչեմ ամէն բանէն ա-
ռաջ՝ աղօթք ընել, խնդ-
րուածք, աղաչանք, գոհութիւն
2 ամէն մարդոց համար, Մանաւանդ
թագաւորներուն և բոլոր իշխանա-
ւորներուն համար. որ խաղաղ ու
հանդարտ կեանք վարենք բոլորովին
աստուածպաշտութիւնով ու պար-
3 կեշտութիւնով։ Ինչու որ ան է
աղէկը ու ընդունելին մեր Փրկիչ
4 Աստուծոյն առջեւ. Որ կ'ուզէ թէ
ամէն մարդիկ փրկուին ու ճշմար-
5 տութիւնը ճանչնալու գան։ Քան-
զի մէկ Աստուած մը կայ, ու մէկ
միջնորդ մը Աստուծոյ ու մարդոց
մէջը՝ Քրիստոս Յիսուս մարդը,
6 Որ իր անձը ամենուն տեղը փրկանք
տուաւ՝ իր ատենին վկայութիւն ըլ-
7 լալու. Որ ես անոր քարոզիչ ու
առաքեալ դրուեցայ, (ճշմարիտ
կ'ըսեմ Քրիստոսով և սուտ չեմ
խօսիր,) հեթանոսներուն վար-
դապետ եղայ հաւատքով ու ճշմար-
8 տութիւնով։ Արդ կ'ուզեմ որ
էրիկ մարդիկ ամէն տեղ աղօթք
ընեն՝ սուրբ ձեռքեր վերցընելով ա-
ռանց բարկութեան ու երկմտու-
9 թեան։ Նոյնպէս ալ կնիկները
վայելուչ հագուստով, ամօթխա-
ծութեամբ և պարկեշտութեամբ
իրենքզիրենքին զարդարեն, ոչ թէ
հիւսուածքներով կամ ոսկիով կամ
մարգարիտներով կամ մեծածախ
10 հանդերձներով, Հապա բարի
գործքերով՝ ինչպէս որ կը վայլէ
աստուածպաշտութիւնը դաւանող
11 կնիկներուն։ Կնիկ մարդը թող սոր-
վի լռութեամբ՝ ամենայն հնազանդ-
դութիւնով։ Բայց կնիկ մարդու 12
հրաման չեմ տար սորվեցընելու,
ոչ ալ էրիկ մարդուն իշխելու,
հապա լուռ կենալու։ Ինչու որ 13
առաջ Ադամ ստեղծուեցաւ, ե-
տքը Եւա։ Ու Ադամ չխա- 14
բուեցաւ, հապա կինը խաբուե-
ցաւ ու յանցանք գործեց. Սակայն 15
պիտի փրկուի անիկայ որդեծնու-
թեամբ, թէ որ կենան հաւատքի
և սիրոյ ու սրբութեան մէջ պար-
կեշտութիւնով։

## ԳԼ. Գ

Աս խօսքը հաւատարիմ է, թէ որ 1
մէկը եպիսկոպոսութեան կը
ցանկայ՝ աղէկ գործի կը ցանկայ։
Ուստի պէտք է եպիսկոպոսին անա- 2
րատ ըլլալ, մէկ կնկան մը էրիկ,
զգաստ, խոհեմ, պարկեշտ, հիւ-
րասէր, սորվեցընող. Ո՛չ գինե- 3
մոլ, ոչ զարնող, հապա հան-
դարտ, ոչ կռուող, ոչ արծա-
թասէր. Որ իր տանը աղէկ վերա- 4
կացութիւն ընող ըլլայ, իր զա-
ւակները հնազանդութեան մէջ պա-
հելով բոլոր ծանրաբարոյութեամբ.
(Հապա թէ որ մէկը իր տանը 5
վերակացութիւն ընելը չգիտնայ,
ի՞նչպէս Աստուծոյ եկեղեցւոյն հո-
գաբարձու պիտի ըլլայ.) Ո՛չ ալ 6
նորահաւատ ըլլայ, որ չըլլայ թէ
հպարտանալով Սատանային դա-
տապարտութեանը մէջ իյնայ։
Հապա պէտք է անոր դուրսէն ե- 7
ղողներէն ալ բարի վկայութիւն
ունենալ, որ չըլլայ թէ նախատին-
քի մէջ ու Սատանային որոգայթին
մէջը իյնայ։
Նոյնպէս ալ սարկաւագները ըլ- 8
լան ծանրաբարոյ, ոչ երկլեզու,
ոչ գինեմէր, ոչ անարգ շահա-
խնդրութեան ետեւէ եղող. Հապա 9
հաւատքին խորհուրդը պահեն մա-
քուր խղճմտանքով։ Ու ասոնք 10
ալ առաջ թող փորձուին, ետքը՝
թէ որ անմեղադրելի գտնուին,
սարկաւագութեան պաշտօնը կա-
տարեն։ Անանկ ալ անոնց կնիկ- 11
ները՝ ծանրաբարոյ ըլլան, ոչ չա-
րախօս, հապա զգաստ, ամէն բանի

12 մէջ հաւատարիմ : Սարկաւագ-
ները մէկ կնկան մը էրիկ ըլլան ,
և իրենց զաւակներուն ու իրենց
տանը աղէկ վերակացութիւն ընող
13 ըլլան : Քանզի անոնք որ սարկա-
ւագութեան պաշտօնը աղէկ կը
կատարեն , բարի աստիճան մը ի-
րենց կը շահին՝ ու Քրիստոս Յի-
սուսի վրայ եղած հաւատքին մէջ
շատ համարձակութիւն :
14 Աս բաները կը գրեմ քեզի ,
յուսալով մօտերս քեզի գալ .
15 Բայց եթէ ուշանալու ըլլամ , որ
գիտնաս թէ ինչպէս պէտք է քեզի
Աստուծոյ տանը մէջ պտըտիլ , որ
կենդանի Աստուծոյ եկեղեցին է ,
ճշմարտութեան սիւնը ու հաստա-
16 տութիւնը : Նաև յայտնապէս մեծ
է աստուածպաշտութեան խորհուր-
դը . Աստուած մարմինով յայտ-
նուեցաւ , Հոգիով արդարացաւ ,
հրեշտակներուն երևցաւ , հեթանո-
սաց մէջ քարոզուեցաւ , աշխարհի
մէջ հաւատացուեցաւ , ու փառքով
համբարձաւ :

## ԳԼ. Դ

1 Բայց Հոգին յայտնի կ'ըսէ , թէ
վերջի ատենները մէկ քանիները
հաւատքէն պիտի ապստամբին , և
մոլորեցուցիչ ոգիներու ու դևաց
ուսմունքներու ուշադրութիւն պի-
2 տի տան , Ստախօսներուն կեղծա-
ւորութեամբը , որոնց խղճմտանքը
3 խանձուած է . Որոնք ամուսնանա-
լէն պիտի արգիլեն , ու եա պիտի
պահեն կերակուրներէն՝ որ Ա-
տուած ստեղծեր է որ հաւատա-
ցեալները և ճշմարտութիւնը ճանչ-
ցողները գոհութեամբ վայելեն :
4 Ինչու որ Աստուծոյ ամէն ստեղծա-
ծը բարի է՝ ու մերժելու բան մը
չկայ , թէ որ գոհութեամբ ըն-
5 դունուի . Քանզի Աստուծոյ խօ-
քովը ու աղօթքով կը սրբուի :
6 Աս բաները եղբայրներուն յիշեցը-
նելով՝ Յիսուս Քրիստոսի բարի
պաշտօնեայ մը պիտի ըլլաս , ու
պիտի սնանիս հաւատքին խօսքերո-
վը և ան բարի վարդապետութիւ-
7 նովը , որուն հետեւող եղար : Բայց
պիղծ ու պառաւական առասպել-
ներէն ետ կեցիր . և քու անձդ
աստուածպաշտութեան վարժե-
ցուր . Ինչու որ մարմինին վար- 8
ժութիւնը քիչ բանի օգտակար է ,
բայց աստուածպաշտութիւնը ամէն
բանի օգտակար է , որ թէ՛ ներկայ
և թէ ապառնի կենաց խոստմունքը
ունի : Աս խօսքը հաւատարիմ է 9
և բոլորովին ընդունուելու արժանի :
Ինչու որ անոր համար կ'աշ- 10
խատինք ու նախատինք կը կրենք .
վասն զի կենդանի Աստուծոյ յու-
սացեր ենք , որ ամէն մարդոց Փըր-
կիչն է , մանաւանդ հաւատացեալ-
ներուն : Աս բաները պատուիրէ՛ 11
ու սորվեցուր : Չըլլայ որ մէկը 12
քու մանկութիւնդ անարգէ . հա-
պա դուն օրինակ եղիր հաւատա-
ցեալներուն՝ խօսքով , վարմունքով ,
սիրով , հաւատքով և մաքրու-
թեամբ : Մինչև որ ես գամ՝ 13
մի՛տք դիր կարդալու , յորդորե-
լու , սորվեցընելու : Անհոգ մի՛ 14
ըլլար քու վրադ եղած պարգևին
վրայով , որ մարգարէութեամբ
քեզի տրուեցաւ՝ երէցներուն ձեռ-
քերը քու վրադ դրուելովը : Ա- 15
տոնց վրայ խորհէ ու ատոնց մէջը
պարապէ , որ քու յառաջադիմու-
թիւնդ ամենուն յայտնի ըլլայ :
Զգուշացիր քու անձիդ ու վար- 16
դապետութեանը՝ ու միշտ ատոնց
մէ՛ջը կեցիր . քանզի այդպէս ընե-
լով , քեզ ալ պիտի ազատես ,
ու անոնք ալ որ քեզի մտիկ կ'ը-
նեն :

## ԳԼ. Ե

Ծերը սաստիկ մի՛ յանդիմաներ , 1
հապա հօր պէս յորդորէ՛ անի-
կայ . երիտասարդները՝ եղբայրներու
պէս , Պառաւները՝ մայրերու պէս , 2
դեռահասակ կնիկները՝ քոյրերու
պէս՝ ամէն կերպ մաքրութիւնով :
Որբևայրիները պատուէ՛՝ անոնք որ 3
ճշմարտապէս որբևայրի են : Հա- 4
պա թէ որ մէկ որբևայրի մը զա-
ւակներ կամ թոռներ ունենայ ,
թող անոնք առաջ սորվին իրենց
տանը մէջ որդիական գութ ցու-

ցընել, ու փոխարէն հատուցանել ի-
րենց ծնողացը. քանզի որ աս է բարի
5 և ընդունելի Աստուծոյ առջեւ: Բայց
ան որ ճշմարտապէս որբևայրի է ու
մինակ մնացած, իր յոյսը Աստուծոյ
վրայ դրած է, և գիշեր ցորեկ ա-
ղօթքի ու աղաչանքի կը պարապի.
6 Բայց փափկասէր որբևայրին կեն-
7 դանւոյն մեռած է: Ասոնք ալ բա-
ները պատուիրէ՛ որ անարատ ըլ-
8 լան: Բայց թէ որ մէկը իրեննե-
րուն ու մանաւանդ իր ընտանեացը
հոգ չտանիր, անիկայ հաւատքը
ուրացած է, ու անհաւատէ մըն ալ
9 գէշ է: Որբևայրին որբևայրնե-
րուն կարգը թող անցուի, որ
վաթսուն տարուընէ պակաս չէ,
10 մէկ էրկան մը կնիկ եղած, Բարի
գործքերով վկայուած. թէ՛ զա-
ւակներ մեծցուցած ըլլայ, թէ հիւ-
րեր ընդունած ըլլայ, թէ սուրբե-
րուն ոտքերը լուացած ըլլայ, թէ
նեղեալներուն օգնութիւն ըրած
ըլլայ, թէ ամէն պէտք բարեգոր-
ծութեան մէջ յարատեւած ըլլայ:
11 Բայց երիտասարդ որբևայրները
մերժէ՛. քանզի երբոր Քրիստոսի
դէմ յանդգնելով հեշտասիրութեան
անձնատուր կ'ըլլան, ամուսնանալ
12 կ'ուզեն. Ասոնք դատապարտութիւն
կ'ընդունին, քանզի առջի հա-
13 ւատքնին մերժեցին: Նաեւ
ծոյլ ըլլալ կը սորվին, տունէ տուն
պտըտելով. և ոչ միայն ծոյլ,
հապա շատախօսներ ու հետաքըր-
քիրներ, և անպատեհ բաներ կը
14 խօսին: Ասոր կ'ուզեմ որ երիտա-
սարդ կնիկները ամուսնանան,
զաւակներ ծնանին, տնտեսներ ըլլան,
ու հակառակորդին պատճառ չտան
15 հայհոյութեան: Վասնզի արդէն
ոմանք Սատանային ետեւէն խոտորե-
16 ցան: Թէ որ հաւատա-
ցեալ էրիկ մարդ մը կամ կնիկ մը
որբևայրիներ ունենայ, թող օգ-
նութիւն ընէ անոնց, և եկեղեցին
չծանրաբեռնի, որ ճշմարտապէս որ-
բևայրիներուն օգնութիւն ընէ:
17 Աղէկ վերակացութիւն ընող ե-
րէցները կրկին պատուոյ արժանի
թող սեպուին, մանաւանդ անոնք

որ կ'աշխատին խօսքը քարոզելով ու
սորվեցընելով: Քանզի որ գիրքը 18
կ'ըսէ թէ՝ Կալի մէջ աշխատող ե-
զին դունչը չկապես. և թէ Մշա-
կը իր վարձքին արժանի է: Երէցի 19
վրայով ամբաստանութիւն մի՛ ըն-
դունիր, բայց միայն երկու կամ
երեք վկաներով: Անոնք որ մեղք 20
կը գործեն, ամենուն առջեւ յան-
դիմանէ՛, որ ուրիշներն ալ վախնան:
Վկայութիւն կը դնեմ Աստուծոյ 21
առջեւ և Յիսուս Քրիստոսի ու
ընտրեալ հրեշտակներուն, որ աս
բաները պահես առանց նախապա-
շարման, բան մը աչառութեամբ
չընելով: Շուտով մէկուն վրայ 22
ձեռք չդնես, և ուրիշներուն մե-
ղացը հաղորդ չըլլաս. դուն քեզ
մաքուր պահէ:
Ասկէ ետեւ լոկ ջուր չխմես, հա- 23
պա քիչ մը՛ ալ գինի գործածէ
քու ստամոքսիդ ու յաճախ հիւան-
դութիւններուդ համար:
Կան մարդիկ՝ որ իրենց մեղքերը 24
յայտնի են, ու առաջուց դատաս-
տանի հասած. և կան՝ որ իրենց
ետեւէն կ'երթան: Նոյնպէս ալ ո- 25
մանց բարի գործքերը յայտնի են.
ու անոնք որ ուրիշ կերպ բան մըն
են, չեն կրնար ծածուկ մնալ:

## ԳԼ. Զ

Ինչ ծառաներ որ ծառայութեան լուծի 1
տակ են, իրենց տէրերը ամէն
պատուոյ արժանի սեպեն, որ Ա-
ստուծոյ անունը ու վարդապետու-
թիւնը չհայհոյուի: Ու անոնք որ 2
հաւատացեալ տէրեր ունին, թող
չարհամարհեն եղբայրներ ըլլալնուն
պատճառաւը. հապա աւելի ծա-
ռայութիւն ընեն, քանզի որ անոնք
հաւատացեալ են ու սիրելի, որոնք
բարերարութեան ընելու մէջ մաս-
նակից են. աս բաները սորվեցուր
ու յորդորէ՛: Թէ որ մէկը ուրիշ 3
կերպ բան մը սորվեցընէ, ու մօտիկ
չըլլայ մեր Տէրոջը Յիսուս Քրիստո-
սի ողջամիտ խօսքերուն, և այն
վարդապետութեանը որ աստուածա-
պաշտութեան համեմատ է, Ինքնիրմէ 4
հպարտացած է ու բան մը չգիտեր,

ու Քրիստոս Յիսուս մեր Տէրոջ-
մէն ։
3 Շնորհակալ եմ Աստուծոյ՝ որն
որ կը պաշտեմ իմ նախնիքներէս
մաքուր խղճմտանքով, (երբոր ան-
դադար քեզ կը յիշեմ աղօթքներուս մէջ
4 կը փափաքիմ գիշեր ու ցորեկ, Յան-
կալով քեզ տեսնել, ու միտքս
բերելով քու արցունքներդ, որ ու-
5 րախութիւնով լեցուիմ.) Միտքս
ծելով քու վրադ եղած անկեղծ
հաւատքը, որ առաջ քու մեծ մօրդ
Լուսիդեայի ու քու մօրդ Եւնիկէին
վրայ բնակեցաւ, և համոզուած եմ
6 որ քու վրադ ալ կայ ։ Անոր հա-
մար քու միտքդ կը ձգեմ որ ար-
ծարծես Աստուծոյ պարգևը, որ
քեզի տրուած է իմ ձեռքերուս քու
7 վրադ դրուելովը ։ Ինչու որ Աս-
տուած մեզի երկչոտութեան հոգի
չտուաւ, հապա զօրութեան ու
8 սիրոյ և զգաստութեան ։ Ուստի
ամօթ մի՛ սեպեր մեր Տէրոջը վկա-
յութիւնը, ոչ ալ զիս անոր հա-
մար կապուածս. հապա մասնակից
եղիր աւետարանին չարչարանքնե-
րուն՝ Աստուծոյ զօրութեանը հա-
9 մեմատ. Որ մեզ փրկեց ու սուրբ
կոչումով կանչեց՝ չէ թէ մեր գործ-
քերուն նայելով, հապա իր նախա-
սահմանութեանը ու շնորհացը նա-
յելով, որ Քրիստոս Յիսուսով մեզի
տրուեցաւ յաւիտենական դարերէն
10 առաջ. Բայց հիմա յայտնուեցաւ
մեր Փրկչին Յիսուս Քրիստոսի
երևնալովը. որ մահը խափանեց,
և 'ի լոյս հանեց կեանքը ու անմա-
հութիւնը աւետարանին միջոցովը.
11 Որ ես անոր քարոզիչ ու առաքեալ
դրուեցայ ու հեթանոսներուն վար-
12 դապետ ։ Անոր համար աս չար-
չարանքներն ալ կը կրեմ. բայց
ամօթ մը չեմ սեպեր, ինչու որ
գիտեմ թէ որուն եմ հաւատացեր,
և համոզուած եմ որ իմ իրեն
աւանդած բանս կրնայ պահել մինչև
13 այն օրը ։ Ունէ՛ր բռնէ այն ող-
ջամիտ խօսքերուն օրինակը որ ինծմէ
լսեցիր, հաւատքով ու սիրով՝ որ
Քրիստոս Յիսուսով է ։
14 Այն բարի աւանդը պահէ՛ Հո-
գւոյն Սրբոյ ձեռքովը որ մեր մէ-
ջը բնակած է ։ Աս գիտես որ 15
ինծմէ երես դարձուցին այն ամէնը
որ Ասիա էին, որոնցմէ են Փի-
գեղոս ու Հերմոգինէս ։ Տէրը ո- 16
ղորմութիւն տայ Ոնեսիփորոսին
տանը, ինչու որ շատ անգամ զիս
հանգստացուց, ու իմ շղթաս ամօթ
չսեպեց. Հապա երբոր Հռոմ 17
եկաւ, շատ ջանքով փնտռեց զիս
ու գտաւ ։ (Տէրը իրեն տայ որ 18
այն օրը Տէրոջմէն ողորմութիւն
գտնէ.) և Եփեսոսի մէջ ալ ո՛ր
չափ սպասաւորութիւն որ ըրաւ ին-
ծի, դուն անիկայ շատ աղէկ գիտես ։

## ԳԼ. Բ

Արդ դուն՝ իմ որդեակս, զօրացի՛ր 1
այն շնորհքովը որ Քրիստոս
Յիսուսով է ։ Ու այն բաները որ 2
ինծմէ լսեցիր շատ վկաներով՝ հա-
ւատարիմ մարդոց յանձնէ, որոնք
կարող ըլլան ուրիշներուն ալ սոր-
վեցընելու ։ Արդ դուն նեղու- 3
թիւններու համբերէ՛ Յիսուսի
Քրիստոսի բարի զինուորի մը պէս ։
Մէկ զինուորեալ մը աս կեանքիս 4
գործառնութիւններովը չզբաղիր,
որ զօրավարին հաճոյ ըլլայ ։ Ու 5
թէ որ մէկը մրցի, չպսակուիր՝ թէ
որ ըստ օրինի չմրցի ։ Աշխա- 6
տող երկրագործին պէտք է առաջ
պտուղներէն վայելել ։ Իմացի՛ր 7
ինչ որ կ՚ըսեմ. Տէրը քեզի իմաս-
տութիւն տայ ամէն բանի մէջ.
Միտքդ բեր Դաւիթի ցեղէն եղող 8
Յիսուս Քրիստոսը մեռելներէն
յարութիւն առած՝ իմ քարոզած
աւետարանիս համեմատ. Որուն 9
մէջը չարագործի մը պէս կը չար-
չարուիմ մինչև անգամ կապերով.
բայց Աստուծոյ խօսքը կապուած
չէ ։ Ուստի ամէն բանի կը համ- 10
բերեմ ընտրեալներուն համար,
որ անոնք ալ հասնին այն փրկու-
թեանը որ Քրիստոս Յիսուսով
է յաւիտենական փառքով ։ Աս 11
խօսքը հաւատարիմ է. վասն զի
թէ որ անոր հետը մեռանք, անոր
հետն ալ պիտի ապրինք. Թէ որ 12
համբերենք, անոր հետն ալ պիտի

թագաւորենք . թէ որ զինք ուրա-
նանք , ինքն ալ մեզ պիտի ուրանայ .
13 Թէ որ չհաւատանք , ինքը հաւա-
տարիմ կը մնայ , իր անձը չկրնար
14 ուրանալ : Այս բաները անոնց
միտքը ձգէ՝ Տէրոջը առջեւը վկայու-
թիւն դնելով , խօսքերու վրայ վէճ
չընել՝ որ բանի մը օգտակար չէ ,
հապա միայն լսողներուն կործանմա-
15 նը համար է : Ջանք ըրէ քու
անձդ ընտիր ցուցընելու Աստուծոյ
առջեւը , անանկ բանուոր մը ըլլալով
որ պիտի չամչնայ , ճշմարտութեան
16 խօսքը շիտակ բաժանելով : Բայց
պիղծ ու փուճ խօսքերէն մէկդի
կեցի՛ր , քանզի անոնք աւելի յառաջ
կ'երթան ամբարշտութեան մէջ .
17 Ու անոնց խօսքը քաղցկեղի պէս
կը ճարակէ . որոնց կարգէն են Հի-
18 մենոս ու Փիղետոս . Որոնք ճշը-
մարտութենէն մոլորեցան , ու կ'ը-
սեն թէ Մեռելներուն յարութիւ-
նը արդէն եղած է , և կը կործանեն
19 մէկ քանիներուն հաւատքը : Բայց
Աստուծոյ հիմը հաստատուն կը
կենայ , ու այս կնիքը ունի , թէ
Տէրը կը ճանչնայ անոնք որ իրն են .
և՝ Անիրաւութենէ մէկդի թող կե-
նայ ան ամէնը՝ որ Քրիստոսի անու-
20 նը կ'անուանէ : Սակայն մէկ մեծ
տան մը մէջ չէ թէ միայն ոսկիէ
ու արծաթէ ամաններ կան , հապա
փայտէ ու հողէ ամաններ ալ կան .
և ոմանք պատուոյ համար են , ու
21 ոմանք անարգանաց համար : Ուս-
տի թէ որ մէկը իր անձը անանկ
բաներէն մաքրէ , անիկայ մէկ պա-
տուական աման մը պիտի ըլլայ՝
սրբուած ու իր Տէրոջը պիտանի՝
ամէն բարի գործքերու համար
22 պատրաստուած : Երիտասարդա-
կան ցանկութիւններէն ալ փա-
խի՛ր , ու գնա՛ արդարութեան՝ հա-
ւատքի՝ սիրոյ՝ խաղաղութեան ետեւէ
անոնց հետ՝ որ Տէրոջը անունը կը
23 կանչեն մաքուր սրտով : Բայց
յիմարական ու անխրատ վէճերէն
մէկդի քաշուէ , գիտնալով որ ա-
24 նոնցմէ կռիւներ կը ծնանին . Ու
Տէրոջը ծառային պէտք չէ կռիւ
ընել , հապա հեզահոգի ըլլալ
ամենուն , սորվեցընող , ու չարա-
25 հող . Հեզութեամբ խրատել
հակառակ կեցողները , որ ըլլայ
թէ Աստուած ապաշխարութիւն
տայ անոնց՝ ճշմարտութիւնը ճանչ-
26 նալու համար , Ու Սատանային
որոգայթէն զգաստանան , որ անկէ
բռնուած են իր կամքին ծառայե-
լու :

## ԳԼ . Գ .

1 Ու աս գիտցիր որ վերջի օրերը
չար ժամանակներ պիտի գան .
2 Ինչու որ մարդիկ պիտի ըլլան անձ-
նասէր , արծաթասէր , ամբարտա-
ւան , հպարտ , հայհոյիչ , ծնողաց
անհնազանդ , ապերախտ , անսուրբ ,
3 Անգութ , անհաշտ , բանսարկու ,
անժուժկալ , դաժանաբարոյ , բա-
4 րին չսիրող , Մատնիչ , յանդուգն ,
գոռոզ , աւելի հեշտասէր քան թէ
5 աստուածասէր . Որոնք աստուած-
պաշտութեան կերպարանքը ունին ,
բայց անոր զօրութիւնը ուրացած
են . և դուն ասոնցմէ մէկդի կե-
6 ցիր : Ինչու որ ասոնցմէ են որ
տուներէն ներս կը մտնեն , ու գերի
կ'ընեն մեղքով բեռնաւորուած ար-
կարամիտ կնիկները՝ զանազան ցան-
7 կութիւններէ վարուած , Որ միշտ
կը սորվին , ու բնաւ ճշմարտու-
թիւնը ճանչնալու չեն կրնար հաս-
8 նիլ : Հապա ինչպէս որ Յանէս
ու Յամբրէս հակառակ կեցան Մով-
սէսին , անանկ ալ ասոնք ճշմար-
տութեանը հակառակ կը կենան .
ապականած միտքով մարդիկներ ,
հաւատքի մէջ անպիտաններ են :
9 Բայց աւելի յառաջ պիտի չերթան ,
ինչու որ ասոնց անմտութիւնը ա-
մենուն յայտնի պիտի ըլլայ , ինչ-
10 պէս որ անոնցը եղաւ : Իսկ դուն
տեղեակ եղար իմ վարդապետու-
թեանս , վարմունքիս , դիտաւո-
րութեանս , հաւատքիս , երկայնմը-
տութեանս , սիրոյս , համբերու-
11 թեանս , Հալածանքներուս , չար-
չարանքներուս , ինչպէս որ ինծի ե-
ղան Անտիոքի և Իկոնիոնի ու
Լիւստրայի մէջ , ինչ հալածանք-
ներու համբերեցի , ու ամենէն զիս

# ԹՈՒՂԹ
# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ
## ԱՌ ՏԻՏՈՍ

### ԳԼՈՒԽ Ա

1 Պօղոս Աստուծոյ ծառայ և Յիսուս
Քրիստոսի առաքեալ, Աս-
տուծոյ ընտրեալներուն հաւատքին՝
ու աստուածպաշտութեան հետ եկող
ճշմարտութեանը գիտութեա-
2 նը համեմատ, Յաւիտենական կե-
նաց յուսովը, որ ինքն անսուտն
Աստուած խոստացաւ յաւիտենական
3 դարերէն առաջ, Բայց իր խօսքը
իր ժամանակին յայտնեց քարոզու-
թիւնով, որ ինծի յանձնուեցաւ
մեր Փրկիչ Աստուծոյ հրամանովը,
4 Տիտոսին իմ հարազատ որդւոյս հա-
սարակաց հաւատքովը՝ շնորհք և
խաղաղութիւն Հօր Աստուծմէն ու
մեր Փրկչէն՝ Տէր Յիսուս Քրիս-
տոսէն :
5 Անոր համար ես քեզ Կրետէ
թողուցի, որ ինչ պակաս բան որ
կայ, շտկես, ու ամէն մէկ քա-
ղաքի մէջ երէցներ կարգես, ինչպէս
6 որ ես քեզի պատուիրեցի. Թէ որ
մէկը անմեղադրելի ըլլայ՝ մէկ կնկան
մը էրիկ, հաւատացեալ զաւակներ
ունենայ, որ անառակութեան հա-
մբաւ առնած՝ կամ անհնա-
7 զանդ չըլլան: Ինչու որ եպիսկո-
պոսին պէտք է անմեղադրելի ըլլալ
Աստուծոյ տնտեսին պէս. ոչ յան-
դուգն, ոչ բարկացող, ոչ գի-
նեմոլ, ոչ զարնող, ոչ անարգ
շահախնդրութեան ետեւէ եղող,
8 Հապա հիւրասէր, բարեսէր, խո-
հեմ, արդար, սուրբ, ժուժկալ,
9 Հաստատ բռնելով վարդապետու-
թեան համաձայն խօսքը, որ կա-
րող ըլլայ ողջամիտ վարդապետու-
թիւնով յորդորել, և հակառակ
10 կեցողները յանդիմանել: Քանզի
շատ են անհնազանդները, ունայ-
նութիւն խօսողները, ու միտք խա-
բողները, մանաւանդ անոնք որ
թլփատութենէն են. Որոնց պէտք 11
է պապանձեցընել, որ ամբողջ տու-
ներ կը կործանեն, ու անպատեհ
բաներ կը սորվեցընեն անարգ շա-
հախնդրութեան համար: Անոնցմէ 12
մէկը զրուցեց՝ որ իրենց բուն մար-
գարէն էր, Կրետացիները միշտ
սուտլըզուց են, չար գազաններ,
դատարկապորտներ: Աս վկայու- 13
թիւնը ճշմարիտ է. անոր համար
սաստիկ յանդիմանէ՝ անոնք, որ ա-
ռողջանան հաւատքին մէջ. Ու չը- 14
նային Հրեական առասպելներուն
և ճշմարտութենէ հեռացող մարդոց
պատուէրներուն: Ամէն բան մա- 15
քուր է մաքուրներուն, բայց պղ-
ծերուն ու անհաւատներուն մէկ բան
մը մաքուր չէ, հապա անոնց միտքն
ալ խղճմտանքն ալ պղծուած են:
Կը խոստովանին թէ զԱստուած կը 16
ճանչնան, և իրենց գործքովը կ'ու-
րանան, պիղծ ու անհնազանդ ըլ-
լալով, և ամէն բարի գործքի
անպիտան:

### ԳԼ. Բ

Բայց դուն խօսէ ինչ որ կը վայլէ 1
ողջամիտ վարդապետութեանը.
Ծերերուն զգաստ ըլլալ, ծան- 2
րաբարոյ, խոհեմ, ողջամիտ՝ հա-
ւատքով, սիրով, համբերութիւ-
նով: Նոյնպէս ալ պառաւներուն ա- 3
նանկ վարմունք ունենալ, ինչպէս որ
կը վայլէ սրբութեան, ոչ բան-
սարկու ըլլալ, ոչ գինեմոլ, հապա
բարի խրատ տուող. Որ խրատեն 4
նորահասակ կիները՝ էրիկնին սի-
րել, զաւակնին սիրող ըլլալ,
խոհեմ, ողջախոհ, տնաշէն, բա- 5
րեգործ, իրենց էրիկներուն հնա-
զանդ, որ չըլլայ թէ Աստուծոյ
խօսքը հայհոյուի: Անանկ ալ 6
երիտասարդները յորդորէ խոհեմ
ըլլալ. Ամէն կողմէ քու անձդ բարի 7

գործքերու օրինակ ցուցընելով ,
վարդապետութեան մէջ անեղծու-
8 թիւն , պարկեշտութիւն , Ողջամիտ
ու անմեղադրելի խօսք , որ հակա-
ռակ կեցողը ամչնայ , ու մեր վրայով
գէշ բան մը չունենայ ըսելու ։
9 Ծառաներուն ազդէ՛ որ իրենց
տէրերուն հնազանդ ըլլան , և ամէն
բանի մէջ հաճելի . ոչ հակառա-
10 կախօսներ , Ոչ խորողներ , հապա
բոլորովին բարի հաւատարմութիւն
ցուցընեն , որ մեր Փրկիչ Աստու-
ծոյ վարդապետութիւնը ամէն բանի
11 մէջ զարդարեն ։ Ինչու որ Աս-
տուծոյ փրկարար շնորհքը բոլոր
12 մարդոց երեցաւ . Որ մեզ կը
խրատէ՝ որ ամբարշտութիւնը ու
աշխարհային ցանկութիւնները ու-
րանանք , և զգաստութիւնով ու
արդարութիւնով և բարեպաշտու-
թիւնով ապրինք աս աշխարհիս
13 մէջ , Ու սպասենք այն երջանիկ
յոյսին , և մեծ Աստուծոյ ու մեր
Փրկիչ Յիսուս Քրիստոսի փա-
14 ռացը յայտնուելուն . Որ իր անձը
մեզի համար տուաւ , որ մեզ ամէն
անօրէնութենէ ազատէ , ու մաքրէ
իրեն սեփհական ժողովուրդ ընէ՝
բարի գործքերու նախանձաւոր ։
15 Աս բաները խօսէ՛ և յորդորէ՛ ու
յանդիմանէ՛ բոլորովին սաստելով .
չըլլայ որ մէկը քեզ անարգէ ։

## ԳԼ . Գ

1 Անոնց միտքը ձգէ իշխանութիւ-
ններուն և պետութիւններուն
հնազանդիլ ու հպատակ ըլլալ ,
ու ամէն բարի գործքերու պատ-
2 րաստ գտնուիլ . Մէկու մը հայ-
հոյութիւն չընել , կռուարար չըլ-
լալ , հապա հեզահոգի , ամէն
մարդոց բոլորովին քաղցրութիւն
3 ցուցընել ։ Ինչու որ մենք ալ ա-
տեն մը անմիտ էինք , անհնազանդ ,
մոլորեալ , և զանազան ցանկու-
թիւններու ու հեշտութիւններու
կը ծառայէինք . չարութիւնով ու
նախանձով կը վարուէինք , ատելի
էինք և մէկզմէկ կ'ատէինք ։ Բայց 4
երբոր մեր Փրկիչ Աստուծոյն քաղց-
րութիւնը ու մարդասիրութիւնը
յայտնուեցաւ , Ոչ թէ արդարու- 5
թեան գործքերէն՝ որ մենք ըրինք ,
հապա իր ողորմութեանը համեմատ
մեզ փրկեց նորէն ծնանելու ա-
ւազանին միջոցովը ու Սուրբ Հոգիին
նորոգելովը , Որն որ առատօրէն 6
թափեց մեր վրայ Յիսուս Քրիստոս
մեր Փրկչին ձեռքովը , Որ անոր 7
շնորհքովը արդարացած՝ յաւիտե-
նական կենաց յուսով ժառանգ ըլ-
լանք ։ Աս խօսքը հաւատարիմ է . 8
և կ'ուզեմ որ ասոնք հաստատես ,
որ Աստուծոյ հաւատացողները հոգ
տանին բարի գործքեր ընելու վրայ
ըլլալ . ասոնք են բարի ու մարդոց
օգտակար բաները ։ Բայց զուր 9
յիմարական վէճերէն ու ազգահա-
մարներէն ու հակառակութիւննե-
րէն և օրէնքի վրայով եղած կռիւ-
ներէն մէկդի կեցիր , ինչու որ
անօգուտ են ու ունայն ։ Հեր- 10
ձուածող մարդէն՝ առաջին ու երկ-
րորդ անգամ խրատելէն ետև ետ
քաշուէ , Գիտնալով որ անանկը 11
խոտորած է , և մեղք կը գործէ
ինքզինքը դատապարտելով ։
Երբոր Արտեմանը կամ Տիւքիկոսը 12
քեզի խրկեմ , ջանա՛ ըրէ իմծի գա-
լու Նիկոպօլիս , ինչու որ միտքս
դրի ձմեռը հոն անցընելու ։ Զե- 13
նաս օրինականը ու Ապողոսը փու-
թով ճամբայ դիր , հոգ տանելով
որ անոնց բան մը չպակսի ։ Եւ 14
մերիններն ալ թող սորվին բա-
րի գործքեր ընելու վրայ ըլլալ հար-
կաւոր պարագաներու մէջ , որ
անպտուղ չըլլան ։ Բարև կ'ընեն 15
քեզի ամէնն ալ որ իմ հետս են .
բարև՛ տուր անոնց որ մեզ կը սիրեն
հաւատքով . շնորհքը ձեր ամենուն
հետ ըլլայ ։ Ամէն ։

# ԹՈՒՂԹ

# ՊՕՂՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԱՌ ՓԻԼԻՄՈՆ

1 Պօղոս՝ Յիսուս Քրիստոսի կա-
պեալը և Տիմոթէոս եղբայրը ,
Փիլիմոնին մեր սիրելիին ու գործակ-
2 ցին , Եւ Ապփիա սիրելիին , ու
Արքիպպոս մեր զինուորակցին , ու
3 քու տանդ մէջի եկեղեցիին . Շը-
նորհք և խաղաղութիւն ձեզի Աս-
տուծմէ մեր Հօրմէն և Տէր Յիսուս
Քրիստոսէն ։
4 Որ գոհանամ միշտ իմ Աստուծ-
մէս , քեզ իմ աղօթքներուս մէջ
5 յիշելով . Լսելով կը լսեմ քու
սէրդ ու հաւատքդ՝ որ ունիս Տէր
Յիսուսի վրայ և բոլոր սուրբերուն
6 վրայ . Որ քու հաւատքիդ հաղոր-
դակցութիւնը ազդարար ըլլայ ,
Քրիստոս Յիսուսով ձեր վրայ եղած
ամէն բարութեանը ճանչցուելովը ։
7 Քանզի շատ ուրախութիւն և մխի-
թարութիւն ունինք քու սիրոյդ
վրայ , որ սուրբերուն սիրտերը քեզ-
մով հանգստացած են՝ եղբայր ։
8 Ասոր համար թէև շատ համար-
ձակութիւն ունիմ Քրիստոսով՝
վայելուչ եղածը քեզի հրամայելու ,
9 Բայց յաւէտ սիրոյ համար կ'աղա-
չեմ , անանկ մէկը ըլլալով՝ ինչպէս
որ եմ ես Պօղոս ծերացած , ու
հիմա Յիսուս Քրիստոսի համար
10 կապուած ալ ։ Կ'աղաչեմ քեզի
իմ որդւոյս Ոնեսիմոսին համար՝ զոր
որ իմ կապանքներուս մէջը ծնայ .
11 Որ ատեն մը անպիտան էր քեզի ,
բայց հիմա քեզի ալ ինծի ալ պի-
12 տանի է . Զինքը ետ ղրկեցի .
դուն ալ ընդունէ զանիկայ՝ որ է
13 իմ աղիքս . Զոր որ կ'ուզէի իմ
քովս պահել , որ քու տեղդ ինծի
սպասաւորութիւն ընէ աւետարա-
նին կապանքներուն մէջ ։ Բայց 14
առանց քու կամքիդ չուզեցի բան մը
ընել , որ քու բարերարութիւնդ
իբր թէ ստիպմամբ եղած չըլլայ ,
հապա կամաւ ։ Քանզի գուցէ ասոր 15
պատճառով անկէ քիչ մը ատեն
զատուեցաւ , որ զանիկայ յաւի-
տեան ունենաս ։ Ոչ թէ ալ ծառա- 16
յի մը պէս , հապա ծառայէն վեր՝
սիրելի եղբօր պէս , և ինչ որ ինծի
պատուական է , որչափ աւելի քե-
զի ըլլայ քեզի՝ թէ մարմինի կող-
մանէ ու թէ Տէրոջը ։ Ուստի թէ 17
որ զիս իբր հաղորդ կը սեպես ,
ընդունէ զանիկայ՝ ինչպէս թէ զիս ։
Եւ թէ որ քեզի անիրաւութիւն 18
մը ըրած է կամ պարտք մը ունի ,
զան իմ հաշւիս անցուր . Ես Պօ- 19
ղոս իմ ձեռքովս գրեցի , ես կը
վճարեմ . որ չըսեմ քեզի թէ դուն
ալ քու անձդ ինծի պարտական
ես ։ Այո եղբայր՝ թող քեզմէ 20
ուրախանամ ես Տէրոջմով .
հանգստացուր իմ աղիքս Տէրոջ-
մով ։ Քու հնազանդութեանդ 21
վստահանալով քեզի գրեցի . գի-
տնալով որ ըսածէս ալ աւելի
պիտի ընես ։
Ասկէ զատ ինծի բնակարան 22
մըն ալ պատրաստէ . ինչու որ
կը յուսամ թէ ձեր աղօթքնե-
րուն միջոցովը ձեզի պիտի շնոր-
հուիմ ։ Բարև կ'ընէ ձեզի Ե- 23
պափրաս՝ իմ գերութեան ընկերս
Քրիստոս Յիսուսով . Նաև Մար- 24
կոս՝ Արիստարքոս՝ Դեմաս՝ Ղու-
կաս՝ իմ գործակիցներս ։ Մեր 25
Տէր Յիսուս Քրիստոսի շնորհքը
ձեր հոգիին հետ ըլլայ ։ Ամէն ։

8 կեցուցիր զանիկայ · Ամէն բան անոր
ոտքերուն տակը հնազանդեցուցիր ·
Ուստի ամէնը որ անոր հնազանդե-
ցուց, անոր չհնազանդուած բան մը
չձգեց · բայց հիմա դեռ չենք տես-
9 ներ ամէնը անոր հնազանդուած · Հա-
պա Յիսուսը փառքով ու պա-
տուով պսակուած կը տեսնենք՝ որ
հրեշտակներէն քիչ մը վար եղած
էր մահուան չարչարանքին համար,
որ Աստուծոյ շնորհքովը ամենուն
10 համար մահ ճաշակէ ։ Որովհետեւ կը
վայլէր Անոր, (որուն համար ամէնը՝
և անով ամէն բաները եղած են,)
շատ որդիներ փառքին մէջ մտցնելու
ատենը՝ անոնց փրկութեան Առաջ-
նորդը չարչարանքով կատարել ։
11 Վասն զի ան որ կը սրբէ ու ան
որ կը սրբուին, ամէնն ալ մէկէ
մըն են. · անոր համար ինքը ամօթ
չսեպեր եղբայր կոչել զանոնք ըսե-
12 լով. Քու անունդ եղբայրներուս
պիտի պատմեմ, ժողովքին մէջ
13 քեզ պիտի գովեմ ։ Նաև դարձեալ՝
Ես անոր պիտի յուսամ · ու դար-
ձեալ՝ Ահա ես ու ան զաւակները
14 որ Աստուած ինծի տուաւ ։ Ուստի
որովհետեւ զաւակները մարմինին ու
արիւնին հաղորդ եղան, ինքն ալ
նմանապէս անոնց բաժանորդ եղաւ,
որ իր մահովը փճացընէ զանիկայ որ
մահուան իշխանութիւնը ունէր,
15 այսինքն է Սատանան · Նաև ազատէ
զանոնք որ մահուան վախովը միշտ
ծառայութեան մէջ կ'ապրէին ։
16 Վասն զի բնաւ հրեշտակներուն ձեռք
չառներ, հապա Աբրահամի սե-
17 րունդին ձեռք կը բռնէ ։ Անոր
համար պէտք էր անոր բոլորովին
եղբայրներուն նման ըլլալ, որ ինքը
ողորմած ըլլայ ու հաւատարիմ քա-
հանայապետ Աստուծոյ կողմանէ,
ժողովուրդին մեղքերը քաւելու հա-
18 մար ։ Վասն զի ինչ բանով որ ինքը
չարչարուեցաւ՝ փորձութիւն կրե-
լով, կրնայ փորձանաւորներուն ալ
օգնական ըլլալ ։

ԳԼ. Գ

1 Ուստի սուրբ եղբայրներ՝ երկնային
կոչմանը մասնակիցներ, նայե-
ցէք մեր դաւանութեանը Առա-
քեալին ու Քահանայապետին՝ Քրիս-
տոսին Յիսուսի · Որ հաւատարիմ 2
է անոր՝ որ զինքը դրաւ, ինչպէս
որ Մովսէս ալ՝ անոր բոլոր տանը
մէջ ։ Ինչու որ ինքը Մովսէսէն 3
այնչափ աւելի փառքի արժանացաւ,
որչափ որ աւելի պատիւ կ'ունե-
նայ տանը շինողը քան թէ տա-
նը ։ Վասն զի ամէն տուն մէ- 4
կէ մը կը շինուի · բայց ան որ
ամէն բաները ըրաւ, Աստուած է ։
Նաև յիրաւի Մովսէս անոր բոլոր 5
տանը մէջ հաւատարիմ էր ծառայի
մը պէս՝ ըսուելու բաներուն վկայ
ըլլալու համար · Իսկ Քրիստոս 6
որդիի մը պէս իր տանը վրայ · ո-
րուն տունը մենք ենք, միայն թէ
ան համարձակութիւնը և յոյսին
պարծանքը մինչև վերջը հաստատ
բռնենք ։
Ուստի ինչպէս որ կ'ըսէ Հոգին 7
Սուրբ, Այսօր թէ որ անոր ձայնին
պիտի լսէք, Ձեր սրտերնիդ մի՛ 8
խստացնէք բարկացնելու ատենին
պէս անապատին մէջ փորձութեան
օրը · Ուր որ ձեր հայրերը զիս 9
փորձեցին, քննեցին զիս՝ [illegible]
քառասուն տարի իմ գործքերս տե-
սան · Անոր համար զզուեցայ ան 10
ազգէն, ու ըսի ։ Միշտ մոլորած
են սրտերնին, և իմ ճամբաներս
չճանչցան անոնք · Ուստի երդուայ 11
բարկութեանս մէջ թէ Իմ
հանգիստս պիտի չմտնեն ։ Զգու- 12
շացէք եղբայրներ, չըլլայ որ ձեզմէ
մէկուն ներսը գէշ անհաւատու-
թեան սիրտ ըլլայ՝ ապստամբ
ըլլալու կենդանի Աստուծմէն · Հա- 13
պա ամէն օր մէկզմէկ յորդորեցէք՝
քանի որ այսօր կ'ըսուի, որ չըլլայ
թէ ձեզմէ մէկը խստանայ մեղքին
խաբէութիւնովը ։ Վասն զի մենք 14
Քրիստոսի մասնակից եղած ենք,
միայն թէ ան հաստատութեան ըս-
կիզբը մինչև վերջը պինդ բռնենք ·
Վասն որ կ'ըսուի, Այսօր թէ որ 15
անոր ձայնին պիտի լսէք, ձեր սըր-
տերը մի՛ խստացնէք բարկացնե-
լու ատենին պէս ։ Վասն զի ոմանք 16
լսեցին ու բարկացուցին, բայց ոչ

թէ անոնք ամէնքը որ Եգիպտոսէն ելած
17 էին Մովսէսին ձեռքովը ։ Որոնցմէ՞
զզուեցաւ այն քառասուն տարին . չէ՞
որ մեղանչողներէն, որոնց ոսկոր-
18 ները անապատին մէջ ինկան ։ Եւ
որո՞նց համար երդում ըրաւ իր
հանգիստը չմտնելու, եթէ ոչ՝ ան-
19 հաւատներուն համար ։ Եւ կը
տեսնենք որ չկրցան մտնել իրենց
անհաւատութեանը համար ։

## ԳԼ. Դ

1 Ուրեմն ալ վախնանք, որ չըլլայ
թէ անոր հանգիստը մտնելու
խոստումնքը որ դեռ մնացեր է,
ձեզմէ մէկը անկէ զրկուած գտնուի ։
2 Ինչու որ մենք ալ անոնց պէս ա-
ւետիս առած ենք . բայց անոնց շահ
մը չըրաւ այն խօսքը լսելը, քանզի
հաւատքով խառնուած չէր լսողնե-
3 րուն մէջ ։ Իսկ մենք որ հաւա-
տացինք, հանգիստը կը մտնենք .
ինչպէս որ ըսաւ, Ուստի երդում
ըրի իմ բարկութեանս մէջ թէ Իմ
հանգիստս պիտի չմտնեն . թէև
իր գործքերը աշխարհի սկիզբէն ե-
4 ղած էին ։ Ինչու որ Գիրքը ատանկ
կ'ըսէ մէկ տեղ մը եօթներորդ օ-
րուանը համար, Եւ Աստուած
եօթներորդ օրը հանգչեցաւ իր բո-
5 լոր գործքերէն . Ու հոս նորէն կ'ը-
սէ թէ Իմ հանգիստս պիտի չմըտ-
6 նեն ։ Ուստի որովհետև ոմանց կը
մնայ հոն մտնել, և անոնք որ ա-
ռաջուց աւետիսը առած էին, ան-
7 հաւատութեան համար չմտան, Նո-
րէն օր մը կը սահմանէ՝ ու կ'ըսէ,
Այսօր Դաւիթին բերնովը այնքան
ժամանակէ ետև, ինչպէս որ ըսուե-
ցաւ, Այսօր թէ որ անոր ձայնին
պիտի լսէք, ձեր սիրտերը մի խըս-
8 տացընէք ։ Ինչու որ եթէ Յեսու
հանգչեցուցած ըլլար զանոնք, ալ
անկէ ետքը ուրիշ օրուան համար
9 չէր զրուցեր ։ Ուրեմն Աստուծոյ
ժողովուրդին ուրիշ հանգիստ մը կը
10 մնայ ։ Վասն զի ան որ անոր հան-
գիստը մտաւ, ալ հանգչեցաւ իր
գործքերէն, ինչպէս որ Աստուած
11 իր իրեններէն ։ Ուրեմն ջանանք
այն հանգիստը մտնելու, որ չըլլայ
թէ մէկը նոյն անհաւատութեան օ-
րինակին պէս իյնայ ։ Ինչու որ 12
Աստուծոյ խօսքը կենդանի է ու զօ-
րեղ՝ և ամէն երկսայրի սուրէ կըտ-
րուկ, որ կը թափանցէ մինչև
շունչը ու ոգին և յօդուածները ու
ծուծը բաժնելու, և կը քննէ սրտին
խորհուրդները ու մտածմունքները .
Եւ չկայ մէկ արարած մը անոր դի- 13
մացը չերևցած, հապա ամէն բան
բաց ու յայտնի է անոր աչքերուն
առջևը, որուն պիտի տրուի մեր
հաշիւը ։
Արդ մենք որ մեծ Քահանայա- 14
պետ մը ունինք երկինքը անցած,
Յիսուսը Աստուծոյ Որդին, ա-
մուր բռնենք մեր դաւանութիւնը ։
Քանզի չէ՞ թէ անանկ քահանայա- 15
պետ մը ունինք՝ որ կարող չըլլայ
մեր տկարութիւններուն կարեկից
ըլլալու, հապա ինքը ամէն կերպով
փորձը առած է մեզի նման, բայց
առանց մեղքի ։ Ուստի ալ հա- 16
մարձակութիւնով մօտենանք շնոր-
հաց աթոռին առջևը, որ ողոր-
մութիւն ընդունինք ու շնորհք
գտնենք պէտք եղած ատենը մեզի
օգնելու ։

## ԳԼ. Ե

Ինչու որ ամէն քահանայապետ 1
մարդոց մէջէն առնուած՝ մարդոց
համար կը կենայ Աստուծոյ կողմը,
որ պատարագներ ու զոհեր մատու-
ցանէ մեղքերու համար . Եւ կարող 2
է կարեկից ըլլալ անոնց՝ որ տգէտ
ու մոլորեալ են, ինչու որ ինքն
ալ տկարութիւնով պաշարուած
է . Եւ ասոր պատճառով պարտաւոր 3
է ինչպէս ժողովուրդին համար՝ ա-
նանկ ալ իր անձին համար մեղքի
պատարագ մատուցանել ։ Եւ չէ՞ 4
թէ մէկը ինքիրմէ այս պատիւը
կ'առնէ, հապա ան որ Աստուծմէ
կանչուած է՝ ինչպէս որ Ահարոն ։
Անանկ ալ Քրիստոս չէ՞ թէ իր 5
անձը մեծարեց քահանայապետ ըլ-
լալու, հապա անիկայ՝ որ զրուցեց
անոր թէ Դուն իմ Որդիս ես, ես
այսօր քեզ ծնայ . Ինչպէս ուրիշ 6
տեղ մըն ալ կ'ըսէ, Դուն յաւի-

դուն քահանայ ես Մելքիսեդեկի
7 կարգին պէս։ Որ իր մարմնին
օրերը սաստիկ գոչումով ու ար-
ցունքով աղօթք և աղաչանք մա-
տուց անոր՝ որ կարող էր զինքը
մահուանէ ազատելու, ու լսուեցաւ
իր բարեպաշտութեանը պատճառով.
8 Թէպէտև ինքը Որդի է, բայց իր չար-
չարանքներէն հնազանդութիւն սոր-
9 վեցաւ. Ու երբոր կատարուեցաւ,
բոլոր իրեն հնազանդողներուն յաւի-
տենական փրկութեան պատճառ ե-
10 ղաւ. Ու Աստուծմէ կոչուեցաւ Քա-
հանայապետ Մելքիսեդեկի կարգին
11 պէս։ Որուն վրայով շատ ըսելիք
ունինք, որ դժուարին ալ է մեկ-
նելու, քանզի որ ձեր լսելիքները
12 բթացած են. Որ պէտք էր ձեզի
ժամանակին նայելով սորվեցընող
ըլլալ. բայց նորէն պէտք է ձեզի
սորվիլ թէ ինչ են Աստուծոյ պատ-
գամներուն առջի սկզբունքները. ու
դուք կաթի կարօտ եղաք, և ոչ
13 թէ հաստատուն կերակուրի։ Քան-
զի ան ամէնը որ կաթնկեր է, ար-
դարութեան խօսքին անհմուտ է,
14 որովհետև տղայ է։ Բայց հաս-
տատուն կերակուրը կատարեալնե-
րուն է, որոնց զգայարանքները սո-
վորութեամբ կրթուած են բարին
ու չարը զանազանելու։

## ԳԼ. Զ.

1 Ասոր համար Քրիստոսի վրայով առջի
սորվելիքները ձգելով՝ կատա-
րեալին դանք. ատանկ նորէն հիմ
ձգելու մեռած գործքերէն ապաշ-
խարելու ու առ Աստուած հա-
2 ւատք ունենալու, Ու մկրտութիւն-
ներուն վարդապետութեանը, ու
ձեռք դնելուն, և մեռելներուն յա-
րութեանը, ու յաւիտենական դա-
3 տաստանին։ Ու աս պիտի ընենք,
թէ որ Աստուած հրամայէ։
4 Քանզի որ անկար է մէկ անգամ
լուսաւորուածներուն՝ որոնք երկնա-
ւոր պարգևին համը առին, ու
5 Հոգւոյն Սրբոյ հաղորդ եղան, Ու
Աստուծոյ բարի խօսքին ու գալու
աշխարհին զօրութիւններուն համը
6 առին, Թէ որ ինկան, նորէն ա-
պաշխարութիւնով նորոգուիլ. ո-
րովհետև կրկին Աստուծոյ Որդին
խաչը կը հանեն իրենց անձին, ու
կը խայտառակեն։ Քանզի որ ան 7
երկիրը՝ որ իր վրայ շատ անգամ
եկած անձրևը կը խմէ, և ար-
դիւնք կը բերէ պիտանի անոնց՝
որոնց համար որ կը մշակուի, Աս-
տուծմէ օրհնութիւն կ'ընդունի.
Բայց ան որ փուշեր ու տատասկներ 8
կը բերէ՝ անպիտան է ու անէծքի
մօտ. և անոր վերջը այրուիլ է։
Իսկ մենք սիրելիներ՝ ձեր վրայով 9
լաւագոյն և փրկութեան վերաբե-
րեալ յոյսեր ունինք, թէև ատանկ
կը խօսինք։ Քանզի Աստուած 10
անիրաւ չէ, որ ձեր գործը մոռնայ,
ու ան սէրը որ իր անուանը համար
ցուցուցիք, որ սուրբերուն ծառա-
յեցիք ու կը ծառայէք։
Բայց մենք կը բաղձանք որ ձեզմէ 11
ամէն մէկը նոյն ջանքը ցուցընէ յոյ-
սին հաստատուելուն մինչև վերջը.
Որ դուք չհեղգանաք, հապա նմա- 12
նող ըլլաք անոնց որ հաւատքով ու
համբերութիւնով խոստումները
ժառանգեցին։ Աստն զի երբոր 13
Աստուած Աբրահամին խոստմունք
ըրաւ, որովհետև իրմէ մեծը չկար՝
որ անոր վրայ երդում ընէր, Իր 14
անձին վրայ երդում ըրաւ ու ըսաւ.
Այժ օրհնելով պիտի օրհնեմ քեզ,
ու շատցընելով պիտի շատցընեմ
քեզ։ Ու այսպէս համբերելով 15
խոստմունքին հասաւ։ Քանզի 16
մարդիկ իրենցմէ մեծին վրայ երդում
կ'ընեն, ու անոնց բոլոր հակառա-
կութեանը հաստատ վճիռ փաստը
երդումն է։ Որ անով Աստուած 17
իր խորհուրդին անփոփոխ ըլլալը
ալ աւելի ցուցընել ուզելով խոստ-
մունքին ժառանգաւորներուն, եր-
դումը մէջ ձգեց. Որ երկու ան- 18
փոփոխելի բաներով՝ որոնցմով ան-
կարելի է Աստուծոյ սուտ գտուելը,
հաստատուն մխիթարութիւն ու-
նենանք մենք՝ որ ապաստանեցանք
առջևնիս դրուած յոյսը ամուր բռ-
նելու. Որ ան յոյսը ունենանք իբրև 19
մէկ հաստատ ու անշարժ խարիսխ
մը մեր անձին, որ վարագուրին

20 ներսի կողմը ալ կը մտնէ. Ուր որ
Յիսուս իբրև Առաջնորդ մտաւ մե-
զի համար՝ յաւիտենական Քահա-
նայապետ ըլլալով Մելքիսեդեկի
կարգին պէս։

## Գլ. Է.

1 Վասն զի այս Մելքիսեդեկը Սաղէ-
մի թագաւորն էր՝ Բարձրեալ
Աստուծոյ քահանան, որ ընդ Ա-
բրահամը դիմաւորեց՝ երբոր անի-
կայ թագաւորներուն կոտորածէն կը
2 դառնար, ու օրհնեց զանիկայ. Ո-
րուն Աբրահամ ալ տասանորդ
տուաւ բոլոր բաներէն. որ նախ
արդարութեան թագաւոր կը թարգ-
մանուի, ետքը Սաղեմի թագաւոր՝
որ է խաղաղութեան թագաւոր.
3 Առանց հօր՝ առանց մօր՝ ազգահա-
մար չունեցող, որ ո՛չ անոր օրե-
րուն սկիզբը կայ՝ ո՛չ ալ կեանքին
վերջը. և Աստուծոյ Որդւոյն նման
ըլլալով՝ կը կենայ ու կը մնայ միշտ
քահանայ։
4 Արդ նայեցէ՛ք թէ որչափ մեծ
մէկ մըն էր ասիկայ, որ անոր Ա-
բրահամ նահապետն ալ տասանորդ
5 տուաւ աւարէն։ Եւ Ղևիի որ-
դիներէն եղողները որ քահանայու-
թիւն կ'առնեն, պատուէր ունին
որ ժողովուրդէն տասանորդ առնեն
օրէնքին համեմատ, այսինքն իրենց
եղբայրներէն. թէպէտև անոնք Ա-
6 բրահամին երանքէն ելեր են. Բայց
անիկայ՝ որուն ազգահամարը անոնց-
մէ չէր, Աբրահամէն տասանորդ
առաւ, ու օրհնեց զանիկայ՝ որ խոստ-
7 մունքները առած էր։ Սակայն ա-
[illegible] անհակառակելի բան մըն է,
որ պզտիկը մեծէն կ'օրհնուի։
8 Եւ հոս մահկանացու մարդիկ
տասանորդ կ'առնեն. բայց հոն ա-
նիկայ կ'առնէ, որուն համար վկա-
9 յուած է թէ կենդանի է։ Եւ
կրնայ ըսուիլ թէ Ղևին ալ որ
տասանորդ կ'առնէ, Աբրահամին
10 ձեռքովը տասանորդ տուաւ. Ինչու
որ տակաւին իր հօրը երանքն էր,
երբոր Մելքիսեդեկ զանիկայ դիմա-
ւորեց։
11 Արդ թէ որ կատարելութիւնը
Ղևտացւոց քահանայութեան ձեռ-
քովը ըլլար, (որովհետև ժողովուր-
դը անոր անովը օրէնքին տակը
դրուեցաւ,) ալ ի՞նչ պէտք էր որ
Մելքիսեդեկի կարգին պէս ուրիշ
քահանայ մը ելլէ, ու չըսուի Ահա-
րոնի կարգին պէս։ Արդ քահա- 12
նայութիւնը փոխուելուն պէս,
հարկ էր որ օրէնքին ալ փոփոխու-
թիւն ըլլայ։ Եւ [illegible] եղաւ, 13
ինչու որ ան՝ որուն համար ասանկ
կ'ըսուի, ուրիշ ցեղէ հաղորդու-
թիւն ունեցաւ, որ այն ցեղէն բնաւ
մէկը սեղանին չծառայեց. Վասն զի 14
յայտնի է թէ Յուդայի ցեղէն յա-
ռաջ եկաւ մեր Տէրը, որ այն ցե-
ղին վրայով Մովսէս բան մը չըրու-
ցեց քահանայութեան համար։ Ու 15
ալ աւելի յայտնի է որ փոխուեցաւ,
քանի որ Մելքիսեդեկին նմանու-
թիւնովը ուրիշ քահանայ մը կ'ելլէ,
Որ ան չէ թէ մարմնաւոր պատուէ- 16
րի օրէնքին պէս եղաւ, հապա ան-
վախճան կենաց զօրութեանը պէս։
Ինչու որ կը վկայէ թէ Դուն յա- 17
ւիտեան քահանայ ես Մելքիսեդեկի
կարգին պէս։ Վասն զի առջի պա- 18
տուէրը կը խափանուի իր տկարու-
թեանը ու անշահութեանը համար,
(Ինչու որ օրէնքը մէկ բան մը կա- 19
տարեալ չըրաւ,) և անոր տեղը
կը մտնէ լաւագոյն յոյս մը՝ որով
Աստուծոյ կը մօտենանք։
Եւ որքան որ Յիսուս չէ թէ 20
առանց երդումի քահանայ եղաւ.
(ինչու որ անոնք առանց երդումի
քահանայ եղած են։ Բայց ասիկայ 21
երդումով՝ անոր ձեռքովը որ իրեն
ըսաւ, Տէրը երդում ըրաւ ու
պիտի չզղջայ, Դուն յաւիտեան
քահանայ ես Մելքիսեդեկի կարգին
պէս.) Այնքան աւելի աղէկ ուխ- 22
տի մը երաշխաւոր եղաւ Յիսուս։
Ու անոնք շատ քահանաներ եղած 23
են, ինչու միշտ մնալուն մահը ար-
գելք ըլլալուն համար. Բայց ասի- 24
կայ յաւիտեան կենալուն համար՝
անանցանելի ունի քահանայութիւ-
նը. Ուստի բոլորովին կարող ալ 25
է ազատելու անոնք՝ որ իրմով
Աստուծոյ կու գան. որովհետև ին-

քը միշտ կենդանի է անոնց համար
բարեխօս ըլլալու ։
26 Վասն զի մեզի ասանկ քա-
հանայապետ մը կը վայլէր, սուրբ՝
անմեղ՝ անարատ՝ մեղաւորներէն
զատուած ու երկինքէն վեր բարձ-
27 րացած. որուն ամէն օր հարկ
չէ ինչպէս ուրիշ քահանայապետ-
ներուն՝ առաջ իր մեղքերուն համար
պատարագ մատուցանել, ու ետքը
ժողովուրդին մեղքերուն համար.
վասն զի ինքը մէկ անգամ մը ըրաւ
ասիկայ, իր անձը պատարագ մա-
28 տուցանելով ։ Ինչու որ օրէնքը
տկարութիւնով պաշարուած մար-
դիկը քահանայապետ կը կարգէ.
բայց երդումին խօսքը որ օրէնքէն
ետև էր, Որդին՝ որ յաւիտեան
կատարեալ է ։

## ԳԼ. Ը.

1 Ու զրուցած խօսքերուս բովանդա-
կութիւնը աս է. անանկ քա-
հանայապետ մը ունինք մենք՝ որ ին-
քը երկինքը Աստուծոյ մեծութեա-
նը աթոռին աջ կողմը նստաւ.
2 Սրբարանին պաշտօնեայ, ու ճշմա-
րիտ խորանին՝ որ Տէրը կանգնեց
3 և ոչ թէ մարդ ։ Քանզի ամէն
քահանայապետ պատարագներ ու
զոհեր մատուցանելու համար որո-
շուած է. ուստի հարկ է որ ասիկայ
ալ բան մը ունենայ մատուցանելու ։
4 Որ եթէ երկրի վրայ ըլլար, քահա-
նայ անգամ պիտի չըլլար. ինչու որ
կան քահանաներ՝ որոնք պատարագ-
ներ կը մատուցանեն օրէնքին համե-
5 մատ. (Որ անոնք երկնայինին բանե-
րուն նմանութիւնովը ու շուքովը կը
ծառայեն ; ինչպէս որ Մովսէսին
հրամայուեցաւ՝ երբոր խորանը պի-
տի շինէր. քանզի ըսաւ, Նայէ
որ լեռը քեզի ցուցուած օրինակին
6 պէս շինես ամէնը.) Բայց հիմա
Յիսուս ալ աւելի գերազանց պաշ-
տօնի մը հասաւ, որչափ որ լաւա-
գոյն խոստմունքներով հաստատուած
լաւագոյն ուխտի մը միջնորդ է ։
7 Ինչու որ եթէ առաջինը անմե-
ղադրելի ըլլար, ուրիշ երկրորդին
8 տեղ չէր փնտռուեր ։ Քանզի կը
յանդիմանէ անոնք ու կ'ըսէ, Ահա
օրեր կու գան՝ կ'ըսէ Տէրը, որ Իս-
րայէլի տանը հետ ու Յուդայի տա-
նը հետ նոր ուխտ պիտի ընեմ ։
Ոչ թէ այն ուխտին պէս՝ որ անոնց 9
հայրերուն հետ ըրի, այն օրը որ ա-
նոնց ձեռքէն բռնեցի՝ զանոնք Եգիպ-
տոսի երկրէն հանելու համար. ին-
չու որ անոնք իմ ուխտիս մէջ չկե-
ցան, ես ալ անհոգ եղայ անոնց
վրայով՝ կ'ըսէ Տէրը ։ Քանզի աս 10
է այն ուխտը՝ որ Իսրայէլի տանը
հետ պիտի ընեմ այն օրերէն ետքը՝
կ'ըսէ Տէրը. իմ օրէնքներս անոնց
միտքին մէջը պիտի դնեմ, և անոնց
սրտին վրայ պիտի գրեմ զանոնք,
ու ես անոնց Աստուած պիտի ըլ-
լամ, և անոնք ինծի ժողովուրդ
պիտի ըլլան ։ Ու բնաւ պիտի չսոր- 11
վեցնեն ամէն մէկը իր ըն-
կերին, և ամէն մէկը իր եղբայրը,
ըսելով թէ Տէրը ճանչցիր. ինչու
որ անոնց պզտիկէն մինչև մեծը ա-
մէնը զիս պիտի ճանչնան. Վասն 12
զի ես անոնց անիրաւութիւններուն
ներող պիտի ըլլամ, և անոնց մեղ-
քերը ու անօրէնութիւնները ալ
պիտի չյիշեմ ։
Նոր ուխտ ըսելովը առաջինը 13
հինցուց. ու ան որ կը հիննայ և
կը ծերանայ, ալ կորսուելու մօտ է ։

## ԳԼ. Թ.

Արդ առաջին ուխտն ալ ունէր 1
պաշտամունքին կանոնադրու-
թիւնները ու աշխարհային սուրբ
տեղը ։ Ինչու որ առաջին խորանը որ 2
Սրբութիւն կ'ըսուէր, [illegible] կազ-
մուեցաւ, որուն մէջը կար աշտա-
նակը ու սեղանը և առաջաւորու-
թեան հացը ։ Ու երկրորդ վա- 3
րագոյրին ետին այն խորանը՝ որ
Սրբութիւն սրբութեանց կ'ըսուէր.
Որուն մէջն էր ոսկի բուրվառը, 4
և ուխտին տապանակը ամէն կող-
մէն ոսկիով պատած. որուն մէջն
էր ոսկիէ սափորը մանանայով լե-
ցուած, և Ահարոնին գաւազանը՝ որ
ծաղկեցաւ, և ուխտին տախտակ-
ները. Ու անոր վրայէն փառաց 5
քերովբէները՝ որ քաւութիւնին

վրայ հովանի կ'ընէին , որոնց հա-
մար պէտք չէ հիմա մէկիկ մէկիկ
զրուցել :
6 Եւ աս բաները այսպէս կարգա-
դրուած ըլլալով , առաջին խորանը
ամէն ատեն կը մտնէին քահանա-
ները՝ պաշտամունքը կատարելու .
7 Բայց երկրորդը՝ տարին անգամ մը
միայն քահանայապետը կը մտնէր .
ան ալ չէ՛ թէ առանց արիւնի , որն
որ իրեն համար ու ժողովուրդին
սխալմունքներուն համար կը մա-
8 տուցանէր , Հոգին Սուրբ աս ցու-
ցնելով՝ թէ սրբարանին ճանա-
պարհը յայտնի եղած չէր , քանի
որ տակաւին առջի խորանը կը կե-
9 նար . Որ ան օրինակ մըն էր ան
ժամանակին՝ որ պատարագներ ու
զոհեր կը մատուցուէին , որոնք
խղճմտանքի կողմանէ չէին կրնար
կատարեալ ընել պաշտօն մատու-
ցանողը , հապա միայն կերակուր-
10 ներով ու խմելիքներով , Եւ կերպ
կերպ լուացումներով՝ մարմնաւոր
արարողութիւններ էին , որոնք
մինչև ուղղութեան ատենը կը կե-
11 նային : Բայց Քրիստոս որ եկաւ՝
գալու բարիքներուն Քահանայա-
պետը՝ աւելի մեծ ու կատարեալ
և անձեռագործ խորանով , այս-
ինքն ան որ աս ստեղծուածներէն
12 չէ՛ , Ո՛չ ալ նոխազներու ու
զուարակներու արիւնով , հապա
իր արիւնովը մէկ անգամ մը
սրբարանը մտաւ՝ յաւիտենական
13 փրկութիւն ստանալով : Վասն
զի թէ որ ցուլերուն ու նոխազնե-
ներուն արիւնը և երինջին մոխիրը
սրսկուելով՝ պղծեալները կը սրբէր
մարմինի մաքրութեան կողմանէ ,
14 Ալ ո՞րչափ աւելի Քրիստոսի ա-
րիւնը՝ որ յաւիտենական Հոգիին
ձեռքովը իր անձը անարատ պատա-
րագ մատոյց Աստուծոյ , պիտի սըր-
բէ ձեր խղճմտանքը մեռած գործ-
քերէն՝ կենդանի Աստուածը պաշ-
տելու :
15 Եւ ասոր համար ինքը նոր ուխ-
տին միջնորդն է , որ երբ մահը առջի
ուխտին ժամանակը գործուած յան-
ցանքներուն քաւութեանը համար

եղած ըլլալով , հրաւիրուածները
յաւիտենական ժառանգութեան
խոստմունքը առնեն : Քանզի ուր որ 16
կտակ մը ըլլայ , հարկ է որ կտակը
ընողին մահը մէջ մտնէ . Ինչու որ 17
կտակը մեռնելէն ետև հաստատ
կ'ըլլայ . քանզի բնաւ վաւերակա-
նութիւն չունենար , քանի որ կը-
տակը ընողը ողջ է : Անոր համար 18
առջի ուխտն ալ առանց արիւնի
չէր հաստատուեր : Վասն զի 19
երբոր Մովսէս օրէնքին ամէն պա-
տուէրները բոլոր ժողովուրդին
պատմեց , ցուլերուն ու նոխազնե-
րուն արիւնը առնելով՝ ջուրով ու
կարմիր բուրդով և զոպայով բուն
գիրքին և բոլոր ժողովուրդին վրայ
սրսկեց . Եւ ըսաւ : Ասիկայ է ան 20
ուխտին արիւնը , որ Աստուած ձե-
զի պատուիրեց : Եւ խորանին 21
վրայ ու պաշտօնին բոլոր գործիք-
ներուն վրայ նոյնպէս սրսկեց արիւ-
նը : Եւ գրեթէ ամէն բան ա- 22
րիւնով կը մաքրուի օրէնքին նայե-
լով , ու արիւն չթափուած թո-
ղութիւն չըլլար :
Ուստի հարկ էր որ երկնաւոր բա- 23
ներուն օրինակները ասոնցմով մաք-
րուին . բայց բուն երկնաւորները
ասոնցմէ աւելի աղէկ զոհերով :
Քանզի Քրիստոս չէ՛ թէ ձեռա- 24
գործ սրբարանը մտաւ , որ ճշմարի-
տին օրինակն է , հապա բուն եր-
կինքը՝ որ հիմա մեզի համար Աս-
տուծոյ առջևը ներկայանայ . Չէ 25
թէ՛ որ շատ անգամ իր անձը պա-
տարագ մատուցանէ , ինչպէս քա-
հանայապետը՝ որ ամէն տարի սըր-
բարանը կը մտնէ իրը չեղած արիւ-
նով . Ապա թէ ոչ՝ պէտք էր իրեն 26
աշխարհի սկիզբէն հետէ շատ ան-
գամ չարչարուիլ . բայց հիմա մէկ
անգամ մը դարերուն վերջը իր ան-
ձին պատարագովը յայտնուեցաւ՝
մեղքը մէկդի ձգելու համար : Եւ 27
ինչպէս որ մարդոց սահմանուած է
մէկ անգամ մը մեռնիլ , ու անկէ
ետքը դատաստան , Անանկ ալ 28
Քրիստոս մէկ անգամ մը պատա-
րագ մատուցուեցաւ՝ շատերուն մեղ-
քերը վերցնելու համար , բայց

18 նոյն, ըստ ինքեան մեռած է: Նաև
կրնայ մէկը ըսել թէ Դուն հա-
ւատք ունիս, ես ալ գործքեր ու-
նիմ. դուն քու հաւատքդ ցուցուր
ինծի առանց գործքերու, ու ես
քեզի ցուցնեմ իմ հաւատքս իմ
19 գործքերէս: Դուն կը հաւատաս
որ Աստուած մէկ է, աղէկ կ'ընես.
դևերն ալ կը հաւատան և կը
20 սարսափին: Բայց կ'ուզե՞ս գիտ-
նալ դուն՝ ով սնոտի մարդ, որ
հաւատքը առանց գործքերու մեռած
21 է: Աբրահամ մեր հայրը գործ-
քերով չարդարացա՞ւ, երբոր իր
որդին Իսահակը սեղանին վրայ հա-
22 նեց ողջ ընծայ: Կը տեսնե՞ս որ
հաւատքը անոր գործքերուն հետ
մէկտեղ գործեց, ու այն գործքերով
23 հաւատքը կատարեալ եղաւ. Ու
Գրքին խօսքը կատարուեցաւ՝ որ
կ'ըսէ, Աբրահամ Աստուծոյ հա-
ւատաց, ու ան իրեն արդարութիւն
սեպուեցաւ. և ինքը Աստուծոյ բա-
24 րեկամ ըսուեցաւ: Կը տեսնէ՞ք
որ մարդս գործքերով կ'արդարա-
նայ, ու չէ՛ թէ միմիայն հաւատքով:
25 Նոյնպէս ալ Ռախաբ պոռնիկը չէ՞
որ գործքերով արդարացաւ, երբոր
լրտեսները ներս առաւ, և ուրիշ
26 ճամբայով արձակեց զանոնք: Վասն-
զի ինչպէս որ մարմինը առանց հո-
գիի մեռած է, նոյնպէս ալ հա-
ւատքը առանց գործքերու մեռած է:

## ԳԼ. Գ

1 Եղբայրներս՝ շատ վարդապետներ
մի՛ ըլլաք. գիտնալով որ աւե-
լի մեծ դատաստան պիտի ընդու-
2 նինք. Ինչու որ ամէնքս ալ շատ
յանցանքներ կ'ընենք. թէ որ մէկը
խօսքով յանցանք չընէ, անիկայ
կատարեալ մարդ է, որ կարող է
3 բոլոր մարմինն ալ սանձելու: Տես
որ ձիերուն բերանը սանձ կը դնենք՝
որ անոնք մեզի հնազանդին, ու ա-
նոնց բոլոր մարմինը կը կառավա-
4 րենք. Ահա նաւերն ալ՝ որչափ
մեծ բաներ են, և սաստիկ հովե-
րէն կը քշուին, բայց ամենա-
փոքր ղեկով մը կը կառավարուին՝
ղեկավարին կամքը որ կողմը որ
ուզէ: Նոյնպէս ալ լեզուն մէկ 5
պզտիկ անդամ մըն է, ու մեծ բա-
ներ կը խօսի. ահա քիչ մը կրակը
որչափ բան բոցի կու տայ: Լե- 6
զուն ալ կրակ մըն է՝ անիրաւու-
թեան աշխարհք մը. լեզուն մեր
անդամներուն մէջ անանկ դրուած
է, որ բոլոր մարմինը կ'ապականէ,
և բնութեան շրջանը կը բոցկըր-
նէ, ու ինքը գեհենէն կը բռնկի:
Բոլոր գազաններուն ու թռչուննե- 7
րուն և սողուններուն ու ծովու մէջ
եղածներուն բնութիւնը կը նուա-
ճի՝ և նուաճուած է մարդկային բը-
նութենէն: Բայց լեզուն մարդոց 8
մէկը չկրնար նուաճել. անիկայ ան-
զուսպ չար է, ու մահաբեր թոյնով
լեցուն. Անով կ'օրհնենք զԱստուած 9
ու Հայրը, և անով կ'անիծենք
մարդիկ՝ որոնք Աստուծոյ նմանու-
թեամբը ստեղծուած են: Մի և 10
նոյն բերնէն կ'ելլեն օրհնութիւն ու
անէծք. Եղբայրներս՝ պէտք չէ որ
ասոնք ասանկ ըլլան: Միթէ աղբիւր 11
մը մի և նոյն բերնէն անոյշ ու լե-
ղի կը բղխէ՞: Միթէ կարելի՞ է 12
Եղբայրներս՝ որ թզենին ձիթապը-
տուղ բերէ, կամ որթը՝ թուզ.
նմանապէս կարելի չէ որ մէկ աղբիւ-
րէ մը աղի ու անոյշ ջուր ելլէ:
Ձեր մէջը իմաստուն ու խելացի 13
ո՞վ կայ. թող անիկայ բարի վար-
մունքովը ցուցնէ՛ իր գործքերը
իմաստութեան հեզութիւնով:
Բայց թէ որ դառն նախանձ և 14
հակառակութիւն ունենաք սրտեր-
նուդ մէջ, մի՛ պարծենաք ու ճըշ-
մարտութիւնը սուտ հանէք: Այս 15
իմաստութիւնը վերէն իջած չէ՛,
հապա երկրաւոր՝ շնչաւոր և դիւա-
կան է: Վասն զի ուր որ նախանձ 16
ու կռիւ կայ, հոն է անկարգու-
թիւնը և ամէն չար բաները:
Բայց վերին իմաստութիւնը 17
նախ սուրբ է, ետքը խաղաղարար,
հեզ, հլու, ողորմութիւնով ու բա-
րի պտուղներով լեցուն, անկողմ-
նասէր ու անկեղծ: Եւ արդա- 18
րութեան պտուղը խաղաղութիւ-
նով կը սերմանուի անոնց՝ որոնք
խաղաղութիւն կ'ընեն:

## ԳԼ. Դ

1 Ուսկի՞ց են պատերազմները, և
ուսկի՞ց կռիւները ձեր մէջը.
չէ՞ որ ձեր ցանկութիւններէն, որ
ձեր անդամներուն մէջ կը պատե-
2 րազմին: Կը ցանկաք ու չունիք.
կը սպաննէք ու կը նախանձիք, և
չէք կրնար ձեր ուզածին հասնիլ. կը
պատերազմիք ու կը կռուիք, բայց
3 չունիք, ինչու որ չէք խնդրեր. Կը
խնդրէք ու չէք առներ, ինչու որ
չարաչար կը խնդրէք, որ ձեր ցան-
4 կութիւններուն բանեցընէք: Շը-
նացողներ՝ չէ՞ք գիտեր որ աս աշ-
խարհիս սէրը Աստուծոյ դէմ թշ-
նամութիւն է. ուստի ով որ կ՚ու-
զէ աշխարհի բարեկամ ըլլալ, ինք-
զինքը Աստուծոյ թշնամի կ՚ընէ:
5 Կամ թէ կը կարծէք որ Գիրքը
պարա՞պ տեղը կ՚ըսէ թէ Նախանձի
կը փափաքի մեր մէջը բնակող Հո-
6 գին. Սակայն աւելի շնորհք կու
տայ. անոր համար կ՚ըսէ, Աս-
տուած ամբարտաւաններուն հա-
կառակ կը կենայ բայց խոնարհնե-
7 րուն շնորհք կու տայ: Ուստի
հնազանդեցէ՛ք Աստուծոյ. Սատա-
նային հակառակ կեցէք, և ա-
8 նիկայ ձեզմէ պիտի փախչի: Աս-
տուծոյ մօտեցէք, ու անիկայ ձեզի
պիտի մօտենայ. սրբեցէ՛ք ձեռքեր-
նիդ՝ մեղաւորներ, և մաքրեցէ՛ք
9 սրտերնիդ՝ երկմիտներ. Տառա-
պանք քաշեցէք, սուգ ըրէք ու լա-
ցէ՛ք. ձեր ծիծաղը սուգի դառնայ,
ու ձեր ուրախութիւնը՝ տրտմու-
10 թեան: Տէրոջը առջեւը խոնար-
հեցէ՛ք, ու ան ձեզ պիտի բարձ-
րացընէ:
11 Մէկզմէկ մի՛ բամբասէք՝ եղ-
բայրներ. ան որ իր եղբայրը կը
բամբասէ կամ իր եղբայրը կը
դատէ, օրէնքը կը բամբասէ և
օրէնքը կը դատէ. հապա թէ որ
օրէնքը դատես, ալ դուն օրէնքը
կատարող չես՝ հապա դատաւոր:
12 Մէյ մէկ Օրէնսդիր [ու Դատա-
ւոր] մը կայ, որ ինքը կարող է
փրկելու և կորսնցընելու. դուն
ո՞վ ես որ ուրիշը կը դատես:
Հիմա մտի՛կ ըրէք դուք որ կ՚ը- 13
սէք. Այսօր կամ վաղը երթանք
այս անուն քաղաքը, ու հոն տարի
մը կենանք, և առուտուր ընենք ու
վաստըկինք. (Դուք որ վաղը չէք 14
գիտեր. Վասնզի ի՞նչ է ձեր կեան- 15
քը. շոգի մըն է, որ քիչ
մը ատեն կ՚երեւնայ ու ետքը կ՚ո-
չնչանայ.) անոր տեղը ըսելու
էիք, Թէ որ Տէրը կամենայ ու
ապրինք, աս կամ ան բանը ընենք:
Բայց հիմա ձեր ամբարտաւանու- 16
թիւնովը կը պարծենաք. բոլոր ա-
սանկ պարծանքները չարութիւն
են: Ուստի ով որ բարին ընելը 17
գիտնայ ու չընէ, ան մեղք է ա-
նոր:

## ԳԼ. Ե

Աղէ՛ հիմա հարուստներ՝ լացէ՛ք ու 1
ողբացէ՛ք ան թշուառութիւննե-
րուն համար՝ որ ձեր վրայ պիտի
գան: Ձեր հարստութիւնը ա- 2
պականած է, ու ձեր հանդերձները
ցեցի կերակուր եղած: Ձեր ոս- 3
կին ու արծաթը ժանգոտած է, և
անոնց ժանգը ձեզի դէմ վկայ պիտի
ըլլայ, ու ձեր մարմինը պիտի ու-
տէ կրակի պէս. վերջին օրերուն
համար գանձ դիզեցիք: Ահա ձեր 4
արտերը հնձող բանուորներուն վարձ-
քը որ դուք պահեցիք, կ՚աղաղակէ,
ու հնձողներուն բողոքը զօրութեանց
Տէրոջը ականջներուն հասաւ: Երկ- 5
րի վրայ փափկութեամբ և հեշտու-
թեամբ ապրեցաք, սիրտերնիդ սը-
նուցիք՝ որպէս թէ մորթուելու օ-
րուան համար: Դատապարտեցիք 6
ու սպաննեցիք արդարը, որ ձեզի
հակառակ չկենար:
Ուստի համբերող եղէք եղբայր- 7
ներ՝ մինչև Տէրոջը գալուստը. ահա
երկրագործը կը սպասէ երկրի պա-
տուական պտուղին, անոր համար
համբերելով, մինչև որ առջի ու
վերջի անձրևը առնէ: Դուք ալ 8
համբերութիւն ըրէք, սիրտերնիդ
հաստատ բռնեցէք. ինչու որ Տէ-
րոջը գալուստը մօտ է: Իրարու 9
դէմ մի՛ հառաչէք՝ եղբայրներ, որ
չդատապարտուիք. ահա Դատա-

10 ւորը դրանը քովը կայներ է։ Ո՛վ եղ-
բայրներս չարչարանքներու ու համ-
բերութեան օրինակ առէք մարգա-
րէները, որոնք Տէրոջը անունովը
11 խօսեցան։ Ահա համբերողներուն
երանի կու տանք։ Յոբին համբե-
րութիւնը լսեցիք դուք, եւ Տէրոջը
անոր ըրած վախճանը տեսաք, որ
Տէրը բազմագութ ու ողորմած է։
12 Բայց ամէն բանէն առաջ, եղ-
բայրներս՝ երդում չընէք, ո՛չ եր-
կինքին վրայ՝ ո՛չ երկրի վրայ, ո՛չ
ալ մէկ ուրիշ երդում մը։ Հապա
ձեր այոն այո ըլլայ, եւ ոչը՝ ոչ,
որ չըլլայ թէ դատապարտութեան
տակ իյնաք։
13 Թէ որ ձեզմէ մէկը նեղութեան
մէջ է, աղօթք թող ընէ։ Թէ որ
մէկը ուրախ է, սաղմոս թող եր-
14 գէ։ Թէ որ ձեզմէ մէկը հիւանդ
է, եկեղեցիին երէցները թող
կանչէ, ու անոր վրայ աղօթք թող
ընեն, ու Տէրոջը անունովը եղով
օծեն զանիկայ։ Ու հաւատքով ե- 15
ղած աղօթքը պիտի փրկէ հիւանդ-
դը, ու Տէրը զանիկայ ոտք պիտի
հանէ։ Եւ թէ որ մեղք ալ գործեր
է, պիտի ներուի անոր։ Ձեր 16
յանցանքները իրարու խոստովանե-
ցէք, ու աղօթք ըրէք իրարու հա-
մար որ բժշկուիք։ Արդարին ջեր-
մեռանդ աղօթքը շատ ազդու-
թիւն ունի։ Եղիան մեզի պէս 17
կիրքերու ենթակայ մարդ մըն էր, ու
աղօթքով ըրաւ որ անձրեւ չգայ, եւ
երեք տարի ու վեց ամիս երկրի վրայ
անձրեւ չեկաւ։ Ու նորէն աղօթք 18
ըրաւ՝ ու երկինքը անձրեւ տուաւ
եւ երկիրը իր պտուղը բուսցուց։
Եղբայրներ՝ թէ որ ձեզմէ մէկը 19
ճշմարտութենէն մոլորի, ու մէկը
զանիկայ դարձի բերէ, Գիտցած 20
ըլլայ թէ ան որ մեղաւորը իր մոլո-
րութեան ճամբայէն կը դարձնէ,
հոգի մը մահուանէ կ'ազատէ, ու
մեղաց բազմութիւնը կը ծածկէ։

---

## ԱՌԱՋԻՆ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՊԵՏՐՈՍԻ ԱՌԱՔԵԼՈՑՆ

### ԳԼՈՒԽ Ա

1 Պետրոս՝ Յիսուս Քրիստոսի առա-
քեալ, տարաբնակներուդ որ
ցրուած էք Պոնտոսի, Գաղա-
տիայի, Կապադովկիայի, Ասիայի
ու Բիւթանիայի մէջ, ընտրուած
2 Հօր Աստուծոյ կանխագիտութեա-
նը համեմատ՝ Հոգիին սրբացընե-
լովը, հնազանդութեան եւ Յիսուս
Քրիստոսի արեանը սրսկուելուն
համար. շնորհք եւ խաղաղութիւն
ձեր վրայ շատնայ։
3 Օրհնեալ է Աստուած ու մեր Տէր
Յիսուս Քրիստոսի Հայրը, որ իր
առատ ողորմութեանը համեմատ
մեզ նորէն ծնաւ կենդանի յոյսի
համար՝ Յիսուս Քրիստոսի մեռել-
4 ներէն յարութիւն առնելովը, Ա-
նեղծ ու անարատ եւ անթառամ
ժառանգութեանը համար՝ որ եր-
կինքը պահուած է ձեզի, Որ Աս- 5
տուծոյ զօրութեամբը պահպանուած
էք հաւատքով այն փրկութեանը
համար՝ որ պատրաստուած է վերջին
ժամանակը յայտնուելու. Որ ա- 6
նով կ'ուրախանաք, թէեւ հիմա
ինչպէս որ հարկը կը պահանջէ,
քիչ մը ատեն տրտմած էք զանա-
զան փորձութիւններով. Որպէս 7
զի ձեր հաւատքին փորձառութիւնը՝
(որ կորստական ոսկիէն աւելի պա-
տուական է, թէեւ անիկայ կրակով
կը փորձուի,) գտնուի գովութիւ-
նով ու պատուով եւ փառքով Յի-
սուս Քրիստոսի յայտնուելու ա-
տենը. Զոր դուք չտեսած՝ կը սի- 8
րէք, որ անիկայ հիմա չէք տեսներ,
բայց կը հաւատաք, եւ ուրախ էք
անպատմելի ու փառաւորեալ խըն-

9 դութիւնով ։ Ձեր հաւատքին
վախճանը ընդունելով, այսինքն
10 հոգիներնուդ փրկութիւնը ։ Որ
այն փրկութեան համար փնտռեցին
ու քննեցին մարգարէները՝ որոնք
մարգարէացան ձեզի ըլլալու շնորհ-
11 քին համար ։ Ու կը քննէին թէ
ո՞ր կամ ինչպիսի ատեն կ'իմացընէր
իրենց մէջը եղած Քրիստոսի Հո-
գին՝ որ առաջ կը վկայէր Քրիս-
տոսի չարչարանքը, ու անկէ ետք
12 փառաւորութիւնը ։ Որոնց յայտնուե-
ցաւ, որ ոչ թէ իրենց՝ հապա մեզի
մատակարարեցին այն բաները, ո-
րոնք հիմա ձեզի պատմուեցան անոնց
ձեռքովը՝ որ աւետարանը քարոզե-
ցին ձեզի Հոգւովն Սրբով որ եր-
կինքէն խրկուեցաւ ։ որ այն բանե-
րուն՝ հրեշտակները կը ցանկան
ակնկառոյց նայելու ։
13 Ուստի ձեր միտքերուն մէջքը
գօտեւորած արթուն կեցած, կա-
տարելապէս յուսացէք այն ձեր վրայ
հանուելու շնորհքը՝ Յիսուս Քրի-
14 ստոսի յայտնուելու ատենը, հը-
նազանդ զաւակներու պէս, ոչ թէ
ձեր տգիտութեան ատենին առջի
ցանկութիւններովը կերպարանելով ։
15 Հապա ձեզ կանչողը Սուրբին պէս
դուք ալ սուրբ եղէք ձեր բոլոր
16 վարմունքներուն մէջ ։ Ինչու որ
գրուած է թէ Սուրբ եղէք, քա-
17 նզի ես սուրբ եմ ։ Եւ թէ որ Հայր
կը կոչէք անիկայ որ առանց աչա-
ռութեան կը դատէ ամէն մէկուն
գործքին համեմատ, ուրեմն ձեր
պանդխտութեան ժամանակը վա-
18 խով անցուցէք, Գիտնալով որ
դուք ոչ թէ ապականացու արծա-
թով կամ ոսկիով փրկուեցաք ձեր
հայրերէն աւանդուած ունայն ճամ-
19 բաներէն, Հապա Քրիստոսի պա-
տուական արիւնովը՝ որպէս թէ
20 անբիծ ու անարատ գառի մը ։ Որ
առաջուց ճանչցուած էր աշխարհիս
սկիզբէն առաջ, ու վերջի ատեն-
ները յայտնուեցաւ ձեզի համար,
21 Որ անոր միջոցովը Աստուծոյ հա-
ւատացիք, որ զանիկայ մեռելներէն
յարոյց, և անոր փառաւորութիւն
տուաւ ։ որ ձեր հաւատքը ու յոյսը
Աստուծոյ վրայ ըլլայ ։ Ձեր ան- 22
ձերը մաքրելով Հոգիին միջոցովը
ճշմարտութեանը հնազանդելով,
եղբայրսիրութեան մէջ անկեղծ ըլ-
լալով, սուրբ սրտով մէկզմէկ
սիրեցէք ։ Նորէն ծնած ըլ- 23
լալով՝ ոչ թէ ապականացու սերմ-
մէն, հապա անապականացուէն Աս-
տուծոյ կենդանի ու յաւիտենական
խօսքովը ։ Վասն զի ամէն մարմին 24
խոտի պէս է, և մարդուն բոլոր
փառաւորութիւնը խոտի ծաղիկի
պէս ։ խոտը կը չորնայ ու անոր
ծաղիկը կը թափթփի ։ Բայց 25
Տէրոջը խօսքը յաւիտեան կը մնայ,
այսինքն է այն խօսքը՝ որ աւետարա-
նով ձեզի քարոզուեցաւ ։

## ԳԼ. Բ

Ուրեմն մէկդի ձգելով ամէն չա- 1
րութիւնը ու ամէն խաբէու-
թիւնը ու կեղծաւորութիւնները,
և նախանձը ու ամէն չարախօսու-
թիւնը, Նորածին մանուկներու պէս 2
բանական ու անխարդախ կաթին
փափաքեցէք, որ անով մեծնաք
[մինչև փրկութիւնը], Թէ որ Տէ- 3
րոջը քաղցր ըլլալուն համը առիք ։
Որուն մօտենալով այն կենդանի 4
Վէմին, որ թէպէտ մարդիկներէն
անարգուած է, բայց Աստուծմէ
ընտրուած ու պատուական է,
Դուք ալ կենդանի քարերու պէս 5
շինուիք հոգևոր տաճար մը,
սուրբ քահանայութիւն մը, Յի-
սուս Քրիստոսի ձեռքովը Աստուծոյ
հաճելի հոգևոր պատարագներ մա-
տուցանելու ։ Որովհետև գիրքին 6
մէջն ալ կայ թէ Ահա Սիոնի մէջ
ընտիր՝ պատուական անկիւնի վէմ
մը կը դնեմ ։ և ով որ անոր հա-
ւատայ, բնաւ պիտի չամչնայ ։
Ուստի ձեզի հաւատացեալներուդ 7
պատուական է այն, բայց անհա-
ւանողներուն՝ այն քարը որ շինողները
անարգեցին, անիկայ անկիւնին գը-
լուխը եղաւ ։ Եւ գլորման վէմ ու 8
գայթակղութեան քար անոնց՝ որ
չհաւանելով խօսքէն կը գայթակ-
ղին, որուն սահմանուած ալ էին ։
Բայց դուք ընտիր ցեղ մըն էք, 9

8 Վերջապէս ամէնքնիդ մէկ միտքի
վրայ ըլլաք, կարեկից, եղբայրսէր,
9 գթած ու քաղցրաբարոյ: Չըլ-
լայ որ չարութեան փոխարէն չա-
րութիւն հատուցանէք, կամ նա-
խատինքի փոխարէն՝ նախատինք.
այլ ընդհակառակն օրհնեցէ՛ք, գիտ-
նալով որ աս բանիս համար կան-
չուեցաք, որ օրհնութիւն ժառան-
10 գէք: Վասն զի ան որ կ'ուզէ
կեանքը սիրել ու բարի օրեր տես-
նել, իր լեզուն թող զսպեցընէ
չարութենէն, ու իր շրթունքները
11 նենգութիւն խօսելէն. Չարութենէ
ետ քաշուի ու բարութիւն ընէ,
խաղաղութիւն փնտռէ և անոր ե-
12 տեւէն երթայ: Ինչու որ Տէրոջը
աչքերը արդարներուն վրայ է, ու
իր ականջները անոնց աղօթքին.
բայց Տէրոջը երեսը չարագործնե-
13 րուն վրայ է: Ու ո՞վ ձեզի չարիք
մը պիտի հասցընէ՝ թէ որ դուք
14 բարիքին հետեւող ըլլաք: Նաեւ թէ
որ արդարութեան համար չարչա-
րուիք ալ՝ երանելի էք. և անոնց
ահէն մի՛ վախնաք ու մի՛ խռովիք.
15 Հապա Տէր Աստուածը սրտերնուդ
մէջ սուրբ պահեցէք. և միշտ
պատրաստ եղէք հեզութեամբ ու եր-
կիւղածութեամբ պատասխան տա-
լու ամենուն որ ձեր ունեցած յոյ-
սին պատճառը ձեզի կը հարցընեն.
16 Ու բարի խղճմտանք ունենաք, որ
ինչ բանով որ ձեզ կը բամբասեն
իբրև չարագործներ, ամօթով մնան
անոնք՝ որ Քրիստոսով եղած ձեր
բարի վարմունքը կը պախարակեն:
17 Ինչու որ աւելի աղէկ է բարեգոր-
ծութիւն ընելով չարչարուիլ՝ թէ
որ Աստուծոյ կամքը ան ըլլայ, քան
թէ չարագործութիւն ընելով:
18 Վասն զի Քրիստոս ալ մեղքի հա-
մար մէկ անգամ չարչարուեցաւ,
Արդարը անարդարներուն վրայ, որ
մեզ Աստուծոյ մօտեցընէ. որ թէ-
պէտ մեռաւ մարմինով, բայց կեն-
19 դանի եղաւ Հոգիով. Անով բանտի
մէջ եղած հոգիներուն ալ գնաց ու
20 քարոզեց. Որոնք առաջ մը ապըս-
տամբ էին, երբոր Աստուծոյ եր-
կայնմտութիւնը կը համբերէր անոնց
Նոյի օրերը՝ երբոր տապանը կը
շինուէր. որուն մէջը քիչ անձինք՝
այսինքն ութը հոգի ջուրէն ազատե-
ցան. Որ մեզ ալ ան օրինակին 21
պէս մկրտութիւնը հիմա կ'ազատե-
ցընէ, (չէ՛ թէ մարմինին աղտը
մէկդի ձգելը, հապա բարի խղճմը-
տանքին վկայութիւնը առ Աս-
տուած,) Յիսուս Քրիստոսի յա-
րութիւնովը. Որ անիկայ երկինք 22
գացած՝ Աստուծոյ աջ կողմն է՝ հը-
րեշտակները ու իշխանութիւնները
և զօրութիւնները իրեն հնազանդե-
լով:

ԳԼ. Դ

Ուստի Քրիստոս որ մեզի համար 1
չարչարուեցաւ մարմինով, դուք
ալ նոյն միտքով զինուորուեցէ՛ք.
վասն զի ան որ մարմինով չարչարուե-
ցաւ, մեղքէն դադարած է. Որ ալ 2
չէ՛ թէ մարդոց ցանկութիւններուն
պէս՝ հապա Աստուծոյ կամքին պէս
ապրիք մարմինի մէջ մնացած ա-
տենն: Ինչու որ հերիք է մեզի կենաց 3
անցեալ ժամանակը, որուն մէջ հե-
թանոսներուն կամքը կատարեցինք,
ու գիճութիւններով՝ ցանկութիւն-
ներով՝ գինեմոլութիւններով՝ անա-
ռակութիւններով՝ արբեցութիւն-
ներով ու անօրէն կռապաշտու-
թիւններով վարուեցանք: Ու աս 4
բանիս կը զարմանան՝ որ դուք նոյն
չափազանց անառակութեան մէջ
անոնց հետ չէք վազեր, ու հայհո-
յութիւն կ'ընեն. Որոնք պատաս- 5
խան պիտի տան անոր՝ որ պատ-
րաստ է դատելու կենդանիները ու
մեռելները: Քանզի ասոր համար 6
մեռելներուն ալ աւետարանը քա-
րոզուեցաւ, որ դատուին մարդոց
կողմանէ մարմինով, ու կենդանի
ըլլան Աստուծոյ կողմանէ Հոգիով:
Սակայն ամէն բանին վախճանը 7
մօտեցեր է. ուստի զգաստ եղէք
ու աղօթքի մէջ արթուն կեցէք:
Ու ամէն բանէն առաջ իրարու հետ 8
սրտանց սէր ունեցէք. ինչու որ
սէրը մեղաց բազմութիւնը կը
ծածկէ: Իրարու հիւրասիրու- 9

թէ որ անոր մտադրութիւն ընէք ,
որպէս թէ մութ տեղը լոյս տուող
ճրագի մը , մինչև որ ցորեկը լուս-
նայ ու արուսեակը սրտերնուդ մէջը
20 ծագի ։ Բայց առաջ ասիկա գիտնաք ,
որ գրոց ամէն մարգարէութիւն իր
21 յատուկ մեկնութիւնը չունի ։ Ին-
չու որ մարգարէութիւն մը երբէք
մարդոց կամքին պէս չըրուեցաւ ,
հապա Աստուծոյ սուրբ մարդիկը
Սուրբ Հոգիէն շարժուած՝ խօսե-
ցան ։

## ԳԼ. Բ

1 Բայց սուտ մարգարէներ ալ կ՚ըլ-
լային ժողովուրդին մէջ , ինչ-
պէս որ ձեր մէջն ալ սուտ վարդա-
պետներ պիտի ըլլան , որ գաղտուկ
պիտի մտցընեն կորուսիչ հերձուա-
ծողութիւններ , ու զիրենք ծախու
առնող Տէրը ուրանալով՝ իրենց
վրայ պիտի բերեն արագահաս կո-
2 րուստը ։ Ու շատերը անոնց կորըս-
տական ընթացքը ետևէն պիտի եր-
թան , որոնց համար ճշմարտութեան
3 ճամբան պիտի հայհոյուի ։ Ու ա-
գահութիւնով՝ խորամանկութեամբ
շինուած խօսքերով ձեզ վաճառա-
շահութեան պիտի գործածեն ։ ո-
րոնց դատապարտութիւնը շատոնց-
մէ պարապ չըլլալով չուշանար , ու
անոնց կորուստը չմրափեր ։
4 Վասն զի թէ որ Աստուած մեղք
գործող հրեշտակներուն չխնայեց ,
հապա խաւարի կապերով տարտա-
րոսը ձգած՝ դատաստանի պահել
5 տուաւ ։ Ու առջի աշխարհին ալ
չխնայեց ։ միայն թէ Նոյ ութերորդ
անձը՝ արդարութեան քարոզիչը պա-
հեց , երբոր ջրհեղեղը ամբարիշտ-
6 ներուն աշխարհին վրայ բերաւ ։ Ու
Սոդոմի ու Գոմորի քաղաքները մո-
խիր դարձընելով ու կործանելով
դատապարտեց , ետքէն ամբարըշ-
տութիւն ընելու մարդոց օրինակ
7 ընելով զանոնք ։ Ու ազատեց արդար
Ղովտը՝ որ անօրէններուն անառակ
8 վարմունքէն նեղացեր էր ։ (Ինչու
որ այն արդարը անոնց մէջը կենա-
լով՝ աչքովը տեսնելով ու ականջովը
լսելով , օրէ օր իր արդար հոգին
կը տանջէր անոնց անօրէն վար-
մունքովը ։) Տէրը գիտէ բարե- 9
պաշտները փորձութենէ ազատելը ,
և անիրաւները տանջանքի համար
դատաստանի օրուան պահելը ։
Մանաւանդ անոնք որ պղծալից 10
ցանկութեամբ մարմինի ետևէ կ՚եր-
թան , և տէրութիւնը կ՚անարգեն ,
ինքնահաւան ու յանդուգն են , չեն
վախնար փառաւորներուն դէմ հայ-
հոյելու ։ Երբոր հրեշտակները՝ որ 11
անոնցմէ շատ մեծ են զօրութիւնով
ու կարողութիւնով , Տէրոջը առ-
ջևը հայհոյութեամբ դատապար-
տութիւն չեն բերեր անոնց վրայ ։
Բայց ասոնք անբան անասուններու 12
պէս՝ ( որ բնականաբար որսի ու
ապականութեան համար եղած են ,)
չգիտցած բաներնուն դէմ կը հայ-
հոյեն , և իրենց ապականութիւ-
նովը պիտի ապականին , Անիրա- 13
ւութեան վարձքը ընդունելով ։ որ
ցորեկուան մէջ եղած զեղխութիւնը
զուարճութիւն կը սեպեն ։ արատ
ու բիծ են , իրենց խաբէութիւննե-
րովը զուարճանալով՝ ձեզի հետ կե-
րուխումի նստած ատեննին ։ Շը- 14
նութեամբ լեցուն աչքեր ունին ,
որ մեղքէ չեն դադարիր ։ անհաս-
տատ հոգիները կը խաբեն ։ ագա-
հութեան սովորած սիրտեր ունին ։
անիծեալ զաւակներ են ։ Շիտակ 15
ճամբան ձգելով մոլորեցան , Բէովր-
եան Բաղաամին ճամբուն հետևե-
լով ։ որ անիրաւութեան վարձքը
սիրեց ։ Բայց իր անօրէնութեանը 16
յանդիմանութիւնը առաւ ։ անխօս
էշը մարդկային ձայնով խօսելով՝
մարգարէին յիմարութիւնը արգի-
լեց ։ Ասոնք ջուր չունեցող աղ- 17
բիւրներ են , ու փոթորիկէ քշուած
մէգեր , որոնց համար թանձր խա-
ւարը պահուած է յաւիտեան ։
Վասնզի ունայնութեան հպարտ խօ- 18
քեր ընելով՝ գիճութիւններով մարմ-
նոյ ցանկութիւններով կը խաբեն
զանոնք որ քիչ մը առաջ փախեր
էին անոնցմէ՝ որ մոլորութեան մէջ
կը պտըտին ։ Ասոնց ազատութիւն 19
կը խոստանան , և իրենք ապակա-
նութեան ծառաներ են ։ վասն զի

ինչ բանէ որ մէկը յաղթուի , ա-
20 նոր ծառայ ալ կ'ըլլայ ։ Ինչու որ
եթէ Տէր ու Փրկիչ Յիսուս Քրի-
ստոսի գիտութիւնովը աշխարհիս
պղծութիւններէն հրաժարելէն ետք՝
դարձեալ անոնց բաներէն բռնուած
յաղթուին , անոնց վերջը առջինէն
21 գէշ կ'ըլլայ ։ Ինչու որ աղէկ էր
անոնց՝ որ բնաւ արդարութեան
ճամբան ճանչցած չըլլային , քան թէ
ճանչնալով ետ դառնային այն սուրբ
պատուիրանքէն՝ որ իրենց յանձ-
22 նուեցաւ ։ Սակայն անոնց հանդի-
պեցաւ այն ճշմարիտ առակին բանը ,
թէ Շունը նորէն իր փսխածին կը
դառնայ , ու լուացուած խոզը ցե-
խի մէջ թաւալըտըկելու ։

## ԳԼ․ Գ

1 Սիրելիներ՝ աս երկրորդ թուղթը
հիմա ձեզի կը գրեմ , որոնցմով
ձեր անկեղծ միտքը կ'արթընցընեմ
2 յիշելու , Որ սուրբ մարգարէներէն
առաջուց գրուցուած խօսքերը , և
մեր՝ այսինքն Տէրոջը ու Փրկչին ա-
ռաքեալներուս պատուէրները միտ-
3 քերնիդ բերէք ։ Նախ աս
գիտնալ , որ վերջի օրերը ծաղր
ընողներ պիտի գան , որոնք ի-
րենց ցանկութիւններուն համե-
4 մատ պիտի քալեն ․ Ու պիտի
ըսեն , Ո՞ւր է անոր գալուն
խոստմունքը ․ վասն զի քանի որ
հայրերը քնացան , ամէն բան ա-
նանկ կայ կը մնայ արարածոց ըս-
5 կիզբէն հետէ ։ Քանզի անոնք
( որ իրենց ուզածը աս է՝ ) ան բա-
նը մոռցեր են , թէ երկինքը առա-
ջուց եղաւ , ու երկիրը ջուրերէն և
ջուրերով հաստատ կեցեր է Աս-
6 տուծոյ խօսքովը ․ Ուստի հին
աշխարհը ջրհեղեղով ապականած
7 կորսուեցաւ ․ Իսկ հիմակուան եր-
կինքը ու երկիրը նոյն խօսքով
պահպանուած են , մինչև դատաս-
տանին ու ամբարիշտ մարդոց կո-
րըստեան օրը կրակի համար պա-
8 հուած ։ Իսկ աս մէկ բանը ձեզմէ
ծածուկ չմնայ՝ սիրելիներ , որ Տէ-
րոջը քով մէկ օրը հազար տարուան
պէս է , ու հազար տարին մէկ օ-
րուան պէս ։ Տէրը չուշացըներ 9
իր խոստմունքը , ինչպէս որ ոմանք
ուշացուցած կը սեպեն , հապա մեզի
երկայնամիտ կ'ըլլայ ․ ինչու որ չու-
զեր որ մէկը կորսուի , հապա որ
ամէնքը ապաշխարանքի գան ։ Սա- 10
կայն Տէրոջը օրը գողի պէս պիտի
գայ , որ ան ատենը երկինքը սաս-
տիկ շառաչիւնով պիտի անցնի ,
ու տարերքները բոցնկած պիտի
լուծուին , երկիրն ալ՝ ու ինչ
գործքեր որ անոր մէջը կը գտնուին ,
պիտի այրուին ։ Ուստի աս ամէն 11
բաները որ պիտի լուծուին , ձեզի
ինչպէս մարդիկ ըլլալ կը վայելէ
սուրբ վարմունքով ու բարեպաշ-
տութեամբ , սպասելով Ու ար- 12
տորալով՝ Աստուծոյ օրուանը գա-
լուն , որուն մէջ երկինքը կրակով
այրուած պիտի լուծուի , ու տա-
րերքները բոցնկած պիտի հալին ։
Սակայն իր խոստմունքին համեմատ 13
նոր երկինքի մը ու նոր երկրի մը կը
սպասենք , որոնց մէջ արդարու-
թիւն կը բնակի ։

Ուստի սիրելիներ՝ ասոնց սպա- 14
սելով ջանացէք , որ ան ձեզ ան-
բիծ ու անարատ գտնէ խաղաղու-
թիւնով ․ Ու մեր Տէրոջը երկայն- 15
մտութիւնը փրկութիւն սեպե-
ցէք ․ ինչպէս որ մեր սիրելի եղ-
բայրը Պօղոս ալ իրեն տրուած
իմաստութիւնովը գրեց ձեզի ․ Ինչ- 16
պէս որ ամէն թուղթերուն մէջ
ալ աս բաներուս վրայով կը խօ-
սի ․ որոնց մէջ քանի մը դը-
ժուարիմաց բաներ կը գտնուին ,
որ զանոնք տգէտները ու անհաս-
տատները ծուռ կերպը կը դարձը-
նեն , ինչպէս ուրիշ գիրքերն ալ՝
իրենց անձին կորստեանը համար ։
Ուրեմն դուք սիրելիներ՝ առաջուց 17
գիտնալով զգոյշ եղէք , որ չըլլայ
թէ անօրէններուն խաբէութենէն
բռնուած՝ ձեր հաստատութենէն
իյնաք ․ Հապա աճեցէք մեր Տէր 18
ու Փրկիչ Յիսուս Քրիստոսի շը-
նորհքովը ու գիտութիւնովը ․ անոր
փառք հիմա ալ , ու մինչև յաւիտե-
նական օրն ալ ։ Ամէն ։

# ԱՌԱՋԻՆ ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԳԼՈՒԽ Ա

1 Կենաց Բանին վրայով՝ որ սկիզբէն
էր, որուն համար լսեցինք, որն
որ մեր աչքերովը տեսանք, որուն
նայեցանք ու մեր ձեռքերը շօշա-
2 փեցին. (Իսկ կեանքը յայտնուե-
ցաւ, ու տեսանք և կը վկայենք
ու ձեզի կը պատմենք այն յաւիտե-
նական կեանքը, որ Հօրը քովն
3 էր ու մեզի յայտնուեցաւ.) Ան
որ տեսանք ու լսեցինք՝ ձեզի կը
պատմենք, որ դուք ալ մեզի հետ
հաղորդութիւն ունենաք. և մեր
հաղորդութիւնը Հօրը հետ է՝ ու
իր Որդւոյն Յիսուս Քրիստոսի
4 հետ: Եւ աս բաները կը գրենք
ձեզի, որ ձեր ուրախութիւնը կա-
տարեալ ըլլայ:
5 Եւ ասիկայ է այն պատգամը որ
իրմէն լսեցինք ու ձեզի կը պատ-
մենք, թէ Աստուած լոյս է, ու
անոր մէջը բնաւ խաւար չկայ:
6 Թէ որ ըսենք թէ Անոր հետ հա-
ղորդութիւն ունինք, ու խաւարի
մէջ պտըտինք, սուտ կը խօսինք
և ճշմարտութիւնը չենք ըներ:
7 Հապա թէ որ լուսոյ մէջ քալենք,
ինչպէս որ անիկայ լուսոյ մէջ է,
իրարու հետ հաղորդութիւն կ'ու-
նենանք, ու անոր Որդւոյն Յիսուս
Քրիստոսի արիւնը մեր ամէն մեղ-
8 քէ կը սրբէ: Թէ որ ըսենք թէ
Մենք մեղք մը չունինք, ինքզինք-
նիս կը խաբենք, ու մեր մէջը ճշմա-
9 րտութիւն չկայ: Թէ որ խոս-
տովանինք մեղքերնիս, հաւատա-
րիմ ու արդար է անիկայ մեր մեղ-
քերուն թողութիւն տալու, և մեզ
բոլոր անիրաւութենէ սրբելու:
10 Թէ որ ըսենք թէ Մեղք մը չգոր-
ծեցինք, սուտասխօս կ'ընենք անի-
կայ, ու անոր խօսքը մեր մէջը չէ:

## ԳԼ. Բ.

1 Իմ որդեակներս՝ աս բաները ձեզի
կը գրեմ որ մեղք չգործէք. և
թէ որ մէկը մեղք գործելու ըլլայ,
Հօրը քով բարեխօս ունինք Յի-
սուս Քրիստոս արդարը. Եւ անի- 2
կայ մեր մեղքերուն քաւութիւնն է,
և ոչ թէ միայն մերիններուն, հա-
պա բոլոր աշխարհքին ալ:
Ու ասով գիտենք թէ անիկայ 3
ճանչցանք, թէ որ անոր պատուի-
րանքները պահենք: Ան որ կ'ըսէ 4
թէ Ես անիկայ ճանչցայ, ու անոր
պատուիրանքները չպահեր, սու-
տախօս է, և անոր մէջը ճշմարտու-
թիւն չկայ: Բայց ան որ անոր 5
խօսքը կը պահէ, իրաւցընէ իր
մէջը կատարեալ է Աստուծոյ սէրը.
ասով կը ճանչնանք թէ անոր մէջն
ենք: Ան որ կ'ըսէ թէ անոր մէջը 6
կը բնակի, անանկ պէտք է որ քա-
լէ՝ ինչպէս որ անիկայ քալեց:
Եղբայրներ, չէ՝ թէ մէկ նոր պատ- 7
ուիրանք մը կը գրեմ ձեզի, հա-
պա այն հին պատուիրանքը որ ըս-
կիզբէն ՚ի վեր ունէիք. և հին
պատուիրանքը այն խօսքն է, որ
դուք սկիզբէն լսեցիք: Դարձեալ 8
նոր պատուիրանք մը կը գրեմ ձե-
զի, որ ճշմարիտ է անոր մէջը ու
ձեր մէջը. ինչու որ խաւարը կ'անց-
նի, ու ճշմարիտ լոյսը արդէն կ'ե-
րեւնայ: Ան որ կ'ըսէ թէ լուսոյ 9
մէջ է, ու իր եղբայրը կ'ատէ,
անիկայ տակաւին խաւարի մէջ է:
Ան որ իր եղբայրը կը սիրէ, լուսոյ 10
մէջ կը բնակի, ու իր մէջը գայ-
թակղութիւն չկայ: Բայց ան որ 11
իր եղբայրը կ'ատէ, խաւարի մէջ
է ու խաւարի մէջ կը քալէ, և
չգիտեր թէ ուր կ'երթայ, ինչու
որ խաւարը անոր աչքերը կուր-
ցուցեր է:
Կը գրեմ ձեզի՝ որդեակներ, ին- 12
չու որ ձեր մեղքերը թողուած են
անոր անուանը համար: Կը գրեմ 13
ձեզի՝ հայրեր, ինչու որ դուք ճանչ-
ցաք անիկայ որ սկիզբէն է: Կը
գրեմ ձեզի՝ երիտասարդներ, ինչու
որ դուք չարին յաղթեցիք: Կը 14

գրեմ ձեզի՝ տղաքներ, քանզի որ
դուք ճանչցաք Հայրը։ Գրեցի
ձեզի՝ հայրեր, քանզի որ դուք ճանչ-
ցաք անիկայ որ սկիզբէն է։ Գրեցի
ձեզի՝ երիտասարդներ, քանզի որ
դուք ուժով էք, և Աստուծոյ խօս-
քը ձեր մէջը կը բնակի, ու չարին
15 յաղթեցիք։ Մի՛ սիրէք աշխար-
հը, ո՛չ ալ ինչ որ աշխարհիս մէջ
16 է։ Թէ որ մէկը աշխարհը կը
սիրէ, անոր ներսի դին Հօրը սէրը
չկայ. քանզի ամէն բան որ աշխար-
հի մէջ է, մարմնոյ ցանկութիւնը
ու աչաց ցանկութիւնը և աս
կեանքիս ամբարտաւանութիւնը,
Հօրմէն չէ՛, հապա աս աշխարհէս
17 է։ Աշխարհս ալ կ'անցնի, անոր
ցանկութիւնն ալ. բայց ան որ
Աստուծոյ կամքը կը կատարէ, յա-
ւիտեան կը մնայ։
18 Որդեակներ՝ վերջին ժամանակն
է. ու ինչպէս որ լսեցիք թէ Նե-
ռը պիտի գայ, և արդէն շատ Նեռեր
եկած են. անկէ կ'իմանանք թէ
19 վերջին ժամանակ է։ Մեզմէ ելան
ոմանք, բայց մեզմէ չէին. քանզի
որ եթէ մեզմէ ըլլային, մեր հետը
պիտի մնային. հապա դուրս ելան,
որ յայտնի ըլլան թէ անոնք ամէնը
20 մեզմէ չէին։ Բայց դուք օծու-
թիւն ունիք Սուրբէն, ու ամէն
21 բան գիտէք։ Չգրեցի ձեզի իբր
թէ ճշմարտութիւնը չէք գիտեր,
հապա թէ գիտէք անիկայ, ու նաև
թէ ամէն սուտ ճշմարտութե-
22 նէ չէ՛։ Ո՞վ է ստախօս, եթէ
ոչ ան որ կ'ուրանայ թէ Յիսուսը
Քրիստոս չէ. անիկայ է Նեռը որ
23 կ'ուրանայ Հայրը ու Որդին։ Ա-
մէն մէկ որ կ'ուրանայ Որդին, ա-
նիկայ Հայրն ալ չընդունիր. [Բայց
ան որ կը խոստովանի Որդին, ա-
24 նիկայ Հայրն ալ կ'ընդունի։] Ու-
րեմն ինչ որ դուք սկիզբէն լսեցիք,
թող անիկայ ձեր մէջը բնակի. թէ
որ ան սկիզբէն լսածնիդ ձեր մէջը
բնակի, դուք ալ Որդւոյն ու Հօրը
25 մէջ պիտի բնակիք։ Եւ ասիկայ
է ան խոստմունքը որ ինքը մեզի
խոստացաւ, այսինքն յաւիտենական
26 կեանքը։ Աս բաները ձեզի գրեցի՝
ձեզ մոլորցնողներուն համար։ Եւ 27
ան օծութիւնը որ դուք իրմէն ըն-
դունեցիք, ձեր մէջը կը մնայ, ու
պէտք չէ որ մէկը ձեզի սորվեցընէ.
հապա ինչպէս որ նոյն օծութիւնը
ձեզի կը սորվեցընէ ամէն բանի վը-
րայով, և ճշմարիտ է ու սուտ չէ՛,
և ինչպէս որ անիկայ ձեզի սորվե-
ցուց, անոր մէջը կեցէ՛ք։
Ու հիմա որդեակներ՝ անոր մէջը 28
կեցէ՛ք, որ երբ անիկայ յայտնուի,
մենք համարձակութիւն ունենանք,
ու անկէ չամչնանք իր գալու ատե-
նը։ Թէ որ գիտէք թէ անի- 29
կայ արդար է, կ'իմանաք թէ ամէն
մէկ որ արդարութիւն կը գործէ,
անկէ ծնած է։

## ԳԼ. Գ

Տեսէ՛ք՝ Հայրը ինչպիսի սէր շնորհեց 1
մեզի, որ մենք Աստուծոյ որդիք
ըսուինք. ասոր համար աշխարհ
մեզ չճանչնար, քանզի որ զանիկայ
ալ չճանչցաւ։ Սիրելիներ՝ հիմա 2
մենք Աստուծոյ որդիքն ենք, և տա-
կաւին յայտնի չէ թէ ինչ պիտի
ըլլանք. բայց գիտենք որ երբ անի-
կայ յայտնուի, անոր պէս պիտի
ըլլանք. վասն զի անիկայ պիտի
տեսնենք՝ ինչպէս որ է։
Եւ ամէն մէկ որ աս յոյսը անոր 3
վրայ ունի, ինքզինքը կը մաքրէ,
ինչպէս որ անիկայ մաքուր է։ Ա- 4
մէն մէկ որ մեղք կը գործէ, անի-
կայ անօրէնութիւն ալ կը գործէ,
և բուն մեղքը անօրէնութիւն է։
Եւ գիտէք որ անիկայ անոր համար 5
յայտնուեցաւ, որ մեր մեղքերը
վերցընէ. ու իր մէջը մեղք չկայ։
Ամէն մէկ որ անոր մէջը կը կենայ, 6
մեղք չգործեր. ամէն մէկ որ մեղք
կը գործէ, զանիկայ տեսած չէ ու
զանիկայ ճանչցած չէ։ Որդեակ- 7
ներ՝ մէկը ձեզ չխաբէ. ան որ ար-
դարութիւն կը գործէ՝ արդար է,
ինչպէս որ Անիկայ արդար է։ Եւ 8
ան որ մեղք կը գործէ՝ Սատանայէն
է, քանզի որ Սատանան սկիզբէն
'ի վեր կը մեղանչէ. ասոր համար
Աստուծոյ Որդին յայտնուեցաւ, որ

9 Սատանային գործերը քանդէ։ Ա-
մէն մարդ որ Աստուծմէ ծնած է,
մեղք չգործեր, ինչու որ անոր սեր-
մը իր մէջը կը մնայ, ու չկրնար
մեղք գործել, քանզի Աստուծմէ
10 ծնած է։ Ասով յայտնի են Աս-
տուծոյ որդիքը ու Սատանայի որ-
դիքը։
Ամէն մարդ որ արդարութիւն չը-
գործեր, անիկայ Աստուծմէ չէ, և
ան ալ որ իր եղբայրը չսիրեր։
11 Ինչու որ ասիկայ այն պատուիրանքն
է որ դուք սկիզբէն լսեցիք, որ
12 մէկզմէկ սիրենք։ Ոչ թէ Կայէ-
նին պէս որ չարէն էր, ու իր եղ-
բայրը սպաննեց. և ինչու համար
զանիկայ սպաննեց. անոր համար
որ իր գործքերը չար էին, ու իր
13 եղբօրը գործքերը արդար։ Մի՛
զարմանաք եղբայրներս՝ թէ որ աշ-
14 խարհ ձեզ ատէ։ Մենք գիտենք
որ մահուընէն կեանքի փոխուեցանք,
ինչու որ եղբայրները կը սիրենք.
ան որ եղբայրը չսիրեր, մահուան
15 մէջ կը մնայ։ Ամէն մարդ որ իր
եղբայրը կ'ատէ, մարդասպան է.
ու գիտէք որ ամէն մարդասպան
իր մէջը բնակած յաւիտենական
16 կեանք չունի։ Ասով գիտցանք
Քրիստոսի սէրը, որ անիկայ իր
կեանքը մեզի համար դրաւ. մենք
ալ պարտաւոր ենք մեր եղբայրնե-
րուն համար դնել մեր կեանքը։
17 Բայց ան որ աշխարհիս բարիքը
ունի, և իր եղբայրը բանի մը կա-
րօտ կը տեսնէ ու իր գութը անկէ
կը գոցէ, ինչպէս Աստուծոյ սէրը
18 անոր մէջը բնակած կ'ըլլայ։ Որ-
դեակներս՝ չէ թէ խօսքով ու լե-
զուով սիրենք, հապա գործքով ու
ճշմարտութիւնով։
19 Ու ասով կը ճանչնանք թէ ճշ-
մարտութենէն ենք, ու մեր սրտե-
րուն համարձակութիւնովը անոր
20 առջևը պիտի երթանք։ Քանզի
թէ որ մեր սիրտերը մեզ կը մե-
ղադրեն, հապա Աստուած մեր սիր-
տերէն մեծ է և ամէն բան գիտէ։
21 Սիրելիներս՝ թէ որ մեր սիրտերը
մեզ չմեղադրեն, համարձակու-
թիւն կ'ունենանք Աստուծոյ առ-
ջևը. Ու ինչ որ խնդրենք, կ'առ- 22
նենք անկէ. ինչու որ իր պա-
տուիրանքները կը պահենք, ու իր
առջևը հաճոյ եղած բաները կ'ը-
նենք։ Ու ասիկայ է անոր պա- 23
տուիրանքը, որ իր Որդւոյն Յի-
սուս Քրիստոսի անուանը հաւա-
տանք ու մէկզմէկ սիրենք, ինչպէս
որ մեզի պատուէր տուաւ։ Ու 24
ան որ անոր պատուիրանքները կը
պահէ, անոր մէջը կը կենայ, ու
անիկայ ալ անոր մէջը. և ասկէ
գիտենք որ անիկայ մեր մէջը կը
կենայ, այսինքն այն Հոգիէն որ մե-
զի տուաւ։

## ԳԼ. Դ

Սիրելիներս՝ ամէն հոգիի մի՛ հա- 1
ւատաք. հապա հոգիները փոր-
ձեցէ՛ք թէ արդեօք Աստուծմէ՞ են.
ինչու որ աշխարհիս մէջ շատ սուտ
մարգարէներ ելած են։ Ասով կըր- 2
նաք ճանչնալ Աստուծոյ Հոգին.
ամէն հոգի որ Յիսուս Քրիստոսը
մարմինով եկած կը խոստովանի,
անիկայ Աստուծմէ է. Ու ամէն 3
հոգի որ Յիսուս Քրիստոսը մար-
մինով եկած չխոստովանիր, անի-
կայ Աստուծմէ չէ. ու ասիկայ Նե-
ռին Հոգին է, որուն համար լսեցիք
թէ պիտի գայ, ու հիմակուընէ ալ
աշխարհիս մէջ է։ Դուք Աս- 4
տուծմէ էք՝ որդեակներս, ու անոնց
յաղթեցիք. քանզի մեծ է անիկայ
որ ձեր մէջն է, քան թէ անիկայ
որ աշխարհիս մէջ է։ Անոնք 5
աշխարհէ են. անոր համար աշխար-
հի վրայով կը խօսին, և աշխարհս
մտիկ կ'ընէ անոնց։ Մենք Աս- 6
տուծմէ ենք. ան որ զԱստուած կը
ճանչնայ, մեզի մտիկ կ'ընէ. ան որ
Աստուծմէ չէ, մեզի մտիկ չըներ.
ասով կը ճանչնանք ճշմարտու-
թեան Հոգին ու մոլորութեան
հոգին։
Սիրելիներս՝ մէկզմէկ սիրենք, 7
ինչու որ սէրը Աստուծմէ է. ու
ամէն մարդ որ կը սիրէ, Աստուծմէ
ծնած է, ու կը ճանչնայ զԱս-
տուած։ Ան որ չսիրեր, զԱստուած 8

չճանչնար . քանզի որ Աստուած սէր
9 է ։ Ասով բանիս մէջ Աստուծոյ սէրը
մեր վրայ յայտնի եղաւ , որ Աս-
տուած իր միածին Որդին աշխարհք
խրկեց , որ անոր միջոցովը ապրինք ։
10 Ասով բանիս մէջ է սէրը , որ չէ
թէ մենք սիրեցինք զԱստուած , հա-
պա որ անիկայ մեզ սիրեց , ու իր
Որդին խրկեց մեր մեղքերուն քա-
11 ւութիւն ըլլալու ։ Սիրելիներ՝ թէ
որ Աստուած մեզ ասանկ սիրեց ,
ուրեմն մենք ալ կը պարտաւորինք
12 մէկզմէկ սիրել ։ Մէկը երբէք
զԱստուած տեսած չէ . թէ որ մէկ-
զմէկ կը սիրենք , Աստուած մեր
մէջը կը բնակի , ու անոր սէրը մեր
13 մէջը կատարեալ է ։ Ասով գի-
տենք թէ մենք անոր մէջը կը բնա-
կինք՝ ու անիկայ մեր մէջը , որ իր
14 Հոգիէն մեզի տուաւ ։ Նաև մենք
տեսանք ու կը վկայենք որ Հայրը
իր Որդին խրկեց աշխարհի Փրկիչը
15 ըլլալու ։ Ո՛վ որ կը խոստովանի
թէ Յիսուս Որդի Աստուծոյ է ,
Աստուած անոր մէջը կը բնակի ,
16 ան ալ Աստուծոյ մէջը ։ Նաև մենք
ճանչցանք ու հաւատացինք այն սէրը
որ Աստուած մեր վրայ ունի . Աս-
տուած սէր է . և ան որ սիրոյ մէջ
կը բնակի , Աստուծոյ մէջ կը բը-
նակի , ու Աստուած անոր մէջը ։
17 Ասով սէրը մեր վրայ կատարեալ
կ'ըլլայ , որ համարձակութիւն ու-
նենանք դատաստանին օրը . վասն
զի ինչպէս է ինքը , անանկ ալ մենք
18 ենք աս աշխարհիս մէջ ։ Սիրոյ
մէջ վախ չկայ , հապա կատարեալ
սէրը վախը մէկ դի կը ձգէ . ինչու
որ վախը տանջանքի ենթակայ է
ուստի ան որ կը վախնայ , սիրոյ
19 մէջ կատարեալ չէ ։ Մենք զա-
նիկայ կը սիրենք , ինչու որ առաջ
20 անիկայ մեզ սիրեց ։ Թէ որ մէկը
ըսէ թէ Ես Աստուած կը սիրեմ ,
ու իր եղբայրը ատէ , անիկայ ստա-
խօս է . քանզի ան որ իր եղբայրը
չսիրեր՝ որ կը տեսնէ , զԱստուած՝
որ չտեսներ , ինչպէ՞ս կրնայ սիրել ։
21 Նաև անկէ աս պատուէրը ունինք ,
թէ ան որ զԱստուած կը սիրէ , իր
եղբայրն ալ սիրէ ։

## ԳԼ. Ե

Ամէն ո՛վ որ կը հաւատայ թէ 1
Յիսուսը Քրիստոսն է , Աս-
տուծմէ ծնած է , և ամէն ո՛վ որ
ծնողը կը սիրէ , անկէ ծնածն ալ
կը սիրէ ։ Ասով կը ճանչնանք թէ 2
Աստուծոյ որդիները կը սիրենք ,
երբոր Աստուած սիրենք ու անոր
պատուիրանքները պահենք ։ Ին- 3
չու որ ասիկայ է Աստուծոյ սէրը ,
որ անոր պատուիրանքները պա-
հենք . և անոր պատուիրանքները
ծանր բան չեն ։ Վասն զի ան ա- 4
մէնը որ Աստուծմէ ծնած է , աշ-
խարհին կը յաղթէ . և ասիկայ է
յաղթութիւնը որ աշխարհին կը
յաղթէ , այսինքն մեր հաւատքը ։
Ո՞վ է որ աշխարհին կը յաղթէ , 5
եթէ ոչ անիկայ որ կը հաւատայ
թէ Յիսուս Որդի Աստուծոյ է ։
Ասիկայ է որ եկաւ ջուրով և 6
արիւնով , այսինքն Յիսուս Քրիս-
տոս . չէ թէ միայն ջուրով , հա-
պա ջուրով ու արիւնով . և Հո-
գին է որ կը վկայէ , ինչու որ Հո-
գին ճշմարտութիւն է ։ Վասն 7
զի երեք են որ [երկինքի մէջ կը
վկայեն , Հայրը՝ Բանը ու Սուրբ
Հոգին , և աս երեքը մէկ են ։ Ու 8
երեք են որ երկրի վրայ] կը վկայեն ,
Հոգին՝ ջուրը ու արիւնը , և երե-
քը միաբան են ։ Թէ որ մարդոց 9
վկայութիւնը կ'ընդունինք , Աստու-
ծոյ վկայութիւնը աւելի մեծ է .
ինչու որ ասիկայ է Աստուծոյ վը-
կայութիւնը , որ իր Որդւոյն հա-
մար վկայեց ։ Ան որ Աստուծոյ 10
Որդւոյն կը հաւատայ , վկայութիւ-
նը իր մէջը ունի . ան որ Աստուծոյ
չհաւատար , ստախօս կ'ընէ անի-
կայ զ. ինչու որ չհաւատար այն վը-
կայութեանը՝ որ Աստուած իր Որ-
դւոյն համար վկայեց ։ Նաև վը- 11
կայութիւնը աս է , որ Աստուած
մեզի յաւիտենական կեանք տուաւ ,
ու աս կեանքը անոր Որդւոյն մէջն
է ։ Ան որ Որդին ընդունած է , 12
կեանք ունի , և ան որ Աստուծոյ
Որդին ընդունած չէ , կեանք չու-
նի ։

13 Այս բաները գրեցի ձեզի՝ որ գիտ-
նաք թէ յաւիտենական կեանք ու-
նիք դուք՝ որ Աստուծոյ Որդւոյն
14 անուանը կը հաւատաք ։ Եւ այն
համարձակութիւնը որ մենք անոր
քովը ունինք՝ աս է, որ ինչ բան
որ խնդրելու ըլլանք իր կամքին հա-
15 մեմատ՝ կը լսէ մեզի ։ Եւ թէ որ
գիտնանք թէ մեզի կը լսէ, ինչ որ
խնդրելու ըլլանք, ապա կը գիտ-
նանք թէ կ'առնենք խնդիրքներնիս, որ
կը խնդրենք իրմէն ։
16 Թէ որ մէկը տեսնէ որ իր եղ-
բայրը մեղք մը գործեց՝ չէ թէ
մահուան, թող խնդրէ ու Աս-
տուած անոր կեանք պիտի տայ այն
մահուան չեղած մեղքը գործողին ։
մեղք կայ որ մահուան է, չեմ ըսեր
որ անոր համար խնդրէ ։ Ամէն 17
անիրաւութիւն մեղք է, և մեղք
կայ որ մահուան չէ ։
Գիտենք որ ան ամէնը որ Աս- 18
տուծմէ ծնած է, մեղք չգործեր ։
հապա ան որ Աստուծմէ ծնած է,
իր անձը կը պահէ, ու չարը իրեն
չդպչիր ։ Գիտենք որ մենք Աս- 19
տուծմէ ենք, ու բոլոր աշխարհք
չարին մէջն է ։ Եւ գիտենք որ 20
Աստուծոյ Որդին եկաւ, ու մե-
զի միտք տուաւ, որ ճշմարիտը
ճանչնանք ։ և ան ճշմարիտին
մէջն ենք՝ իր Որդւոյն Յիսուս
Քրիստոսի մէջ ։ ասիկայ է ճշմա-
րիտ Աստուած ու յաւիտենա-
կան կեանք ։ Որդեակներ՝ ինք- 21
զինքնիդ կուռքերէն պահեցէք ։

---

## ԵՐԿՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

1 Երէցէն ընտրեալ Տիկնոջը ու անոր
որդիներուն, որ ես ճշմարտու-
թեամբ կը սիրեմ, (և չէ թէ
մինակ ես, հապա ամէնքն ալ՝ որ
ճշմարտութիւնը կը ճանչնան,)
2 Այն ճշմարտութեանը համար՝ որ մեր
մէջը կը մնայ, ու յաւիտեան մեր
3 հետը պիտի ըլլայ ։ Շնորհք՝ ո-
ղորմութիւն՝ խաղաղութիւն Հայր
Աստուծմէն և Տէր Յիսուս Քրի-
ստոսէն՝ Հօրը Որդիէն ձեր հետը
ըլլայ ճշմարտութիւնով ու սի-
րով ։
4 Շատ ուրախ եղայ ես, որ քու
որդիներէդ գտայ որ ճշմարտու-
թեամբ կը քալեն այն պատուիրան-
քին համեմատ, որ Հօրմէն առինք ։
5 Եւ հիմա քեզի կ'աղաչեմ՝ ով Տի-
կին, ոչ իբր թէ նոր պատուիրանք
մը քեզի կը գրեմ, հապա ան որ
սկիզբէն ունէինք, որ մէկզմէկ սի-
6 րենք ։ Եւ սէրը աս է՝ որ անոր
պատուիրանքներուն համեմատ քա-
լենք ։ աս պատուիրանքը աս է՝ որ
ինչպէս սկիզբէն 'ի վեր լսեցիք,
7 անոր համեմատ քալէք ։ Ինչու որ
շատ մոլորեցուցիչներ ելան աշխար-
հիս մէջ, որոնք Յիսուս Քրիստոսը
մարմինով եկած չեն խոստովանիր ։
անանկ մէկը մոլորեցուցիչ ու Նեռ
է ։ Զգուշացէք ձեր անձերուն, 8
որ աշխատանքնիս չկորսնցընենք,
հապա որ լման վարձք առնենք ։ Ա- 9
մէն ով որ յանցանք կը գործէ ու
Քրիստոսի վարդապետութեանը
մէջ չկենար, անիկայ Աստուած
չունի ։ ան որ Քրիստոսի վարդա-
պետութեանը մէջ կը կենայ, ա-
նիկայ Հայրն ալ ունի՝ Որդին ալ ։
Թէ որ մէկը ձեզի գայ ու աս վար- 10
դապետութիւնը չբերէ, անիկայ
տուներնիդ մի ընդունիք, և անոր
Բարև մի ըսէք ։ Քանզի ով որ 11
անոր Բարև կ'ըսէ, անոր չար
գործքերուն հաղորդ կ'ըլլայ ։
Շատ բան ունէի ձեզի գրելու, 12
բայց չուզեցի թղթով ու մելանով
ընել ։ ինչու որ յոյս ունիմ որ ձեզի
գամ, ու բերան առ բերան խօսիմ,
որ մեր ուրախութիւնը կատարեալ
ըլլայ ։ Բարև կ'ընեն քեզի քու 13
ընտրեալ քրոջդ որդիքը ։

## ԵՐՐՈՐԴ ԹՈՒՂԹ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

1 Երէցէն Գայիոս սիրելիին, որն որ
ես կը սիրեմ ճշմարտութեամբ։
2 Սիրելի՛ աղօթք կ'ընեմ որ ամէն
կողմէ յաջողութեան մէջ ու առողջ
ըլլաս, ինչպէս որ քու հոգիդ ալ
3 յաջողութեան մէջ է։ Ինչու որ
շատ ուրախացայ, երբոր քանի մը
եղբայրներ եկան, ու քու ճշմար-
տութեանդ վրայով վկայեցին,
ինչպէս որ դուն ճշմարտութեամբ
4 կը քալես։ Ասկէ մեծ ուրախու-
թիւն մը չունիմ, որ կը լսեմ թէ
իմ որդիներս ճշմարտութեան մէջ
5 կը քալեն։ Սիրելի՛ դուն հաւա-
տարմաբար կ'ընես, ինչ որ կ'ընես
եղբայրներուն և օտարներուն.
6 Որոնք եկեղեցիին առջեւը վկայեցին
քու սիրոյդ վրայով. որ եթէ աս-
տուածահաճոյ կերպով զանոնք
ճամբայ դնես, աղէկ պիտի ընես։
7 Ինչու որ Աստուծոյ անուանը համար
ելան, ու հեթանոսներէն բան մը չեն
8 առներ։ Ուստի մենք պարտաւոր
ենք անանկներն ընդունել, որ
ճշմարտութեանը գործակից ըլլանք։
9 Եկեղեցիին գրեցի. բայց Դիոտ-
րեփէս՝ որ մէջերնին առաջին ըլլալ
կ'ուզէ, մեզ չընդունիր։ Ասոր 10
համար թէ որ գամ, անոր ըրած
գործքերը պիտի յիշեմ, որ մեզի
դէմ չաղակրատելով չարախօսու-
թիւն կ'ընէ. և ասով ալ գոհ չէ-
ղած՝ ինքը չընդունիր եղբայրները,
ու անոնք որ կ'ուզեն ընդունիլ՝
կ'արգիլէ, ու եկեղեցիէն ալ կը
հանէ։ Սիրելի՛ չարին նմանող 11
մի՛ ըլլար, հապա բարիին. ան որ
բարիք կը գործէ, Աստուծմէ է.
բայց ան որ չարիք կը գործէ,
անիկայ զԱստուած տեսած չէ։
Դեմետրիոսին համար ամէնն ալ կը 12
վկայեն, նոյն իսկ ճշմարտութիւնն
ալ. մենք ալ կը վկայենք, և դուք
գիտէք որ մեր վկայութիւնը ճշմա-
րիտ է։
Շատ բան ունէի գրելու, բայց 13
չեմ ուզեր մելանով ու գրիչով
քեզի գրել։ Սակայն յոյս ու- 14
նիմ մօտերս քեզ տեսնելու, ու
բերան առ բերան պիտի խօսինք։
Խաղաղութիւն քեզի. բարեկամ- 15
ները քեզի բարեւ կ'ընեն. բարե՛ւ
ըրէ մեր բարեկամներուն՝ ամէն մէ-
կուն անունովը։

---

## ԸՆԴՀԱՆՐԱԿԱՆ ԹՈՒՂԹ

# ՅՈՒԴԱՅԻ ԱՌԱՔԵԼՈՅՆ

1 Յուդա Յիսուս Քրիստոսի ծա-
ռայ ու Յակոբոսին եղբայրը,
ձեզի՝ որ Հայր Աստուծմէն սըր-
բուած էք, և Յիսուս Քրիստոսէն
2 պահուած ու կանչուած. Ողորմու-
թիւն ու խաղաղութիւն և սէր
ձեր վրայ շատնայ։
3 Սիրելինե՛ր՝ բոլոր ջանքը վրան
առնելով ձեզի գրելու հասարակաց
փրկութեանը համար, իմ անձիս
հարկ սեպեցի ձեզի գրել ու յոր-
դորել, որ մրցիք ան հաւատքին
համար որ անգամ մը սուրբերուն
աւանդուեցաւ. Քանզի մէկ քանի 4
մարդիկ գաղտուկ մտան, անոնք որ
առաջուց աս դատապարտութեանը
համար որոշուած էին, ամբարիշտ-
ներ, որ մեր Աստուծոյ շնորհքը
անառակութեան դարձուցին, և մի
միայն Իշխանը ու մեր Տէր Յիսուս
Քրիստոսը ուրացան։ Արդ կ'ու- 5
զեմ միտքերնիդ բերել, թէև աս-

դէն գիտէք ասիկայ, թէ Տէրը որ
ժողովուրդը Եգիպտոսի երկրէն
ազատեց, ետքը չհաւատացողները
6 կորսնցուց։ Նոյն ան հրեշտակները՝
որ իրենց իշխանութիւնը չպահե-
ցին, հապա իրենց բնակութիւնը
ձգեցին, մշտնջենաւոր կապերով
խաւարի մէջ պահեց մեծ օրուան
7 դատաստանին։ Ինչպէս Սոդոմ
ու Գոմոր և անոնց բոլորտիքը
եղած քաղաքները՝ որոնք ասոնց
նման պոռնկեցան ընկերներուն մար-
մինին ետևէն երթալով, առջևնիս
օրինակ կեցեր են՝ յաւիտենական
կրակին դատապարտութիւնը ըն-
8 դունելով։ Նմանապէս աս ցնո-
րածներն ալ մարմինը կը պղծեն,
տէրութիւնը կ'անարգեն, փառա-
ւորներուն դէմ կը հայհոյեն։
9 Բայց Միքայէլ հրեշտակապետը
երբոր Սատանային դէմ դնելով՝
Մովսէսին մարմինին համար կը
վիճէր, չհամարձակեցաւ հայհոյու-
թեան դատապարտութիւն բերել
անոր վրայ, հապա ըսաւ, Տէրը
10 յանդիմանէ քեզ։ Իսկ ասոնք՝
ան բաներուն որ չեն հասկընար,
հայհոյութիւն կ'ընեն. և ան բա-
ները որ բնականաբար անբան ա-
նասուններու պէս գիտեն, անոնց
11 մէջ կ'ապականին։ Վա՜յ անոնց՝
որ Կայէնին ճամբովը գացին, ու
Բաղաամին մոլորութեանը պէս
ցանկութեամբ վարձքի ետևէ գա-
ցին, և Կորխին հակառակութեա-
12 նը պէս կորսուեցան։ Ասոնք ձեր
սիրոյ խնջոյքներուն մէջ արատներ
են, ու ձեզի հետ կերուխումի նըս-
տած առանձինն աներկիւղ իրենց
անձը կը կերակրեն. անջուր ամպեր
հովերէն քշուած. պտուղին կոր-
սընցուցած ծառեր, բերքը չունե-
ցող, երկու անգամ մեռած, ար-
13 մատէն խլուած. Ծովու կատաղած
ալիքներ, որ իրենց անձերուն ա-
մօթը կը փրփրացընեն. մոլորական
աստղեր, որոնց համար խաւարին
մէգը պահուած է յաւիտեան։
14 Անոնց վրայ մարգարէացաւ Ե-
նովք ալ՝ որ եօթներորդ էր Ադա-
մէն, ու ըսաւ, Ահա Տէրը իր
բիւրաւոր սուրբերովը եկաւ, Ա- 15
մենուն դատաստան ընելու, ու
բոլոր ամբարիշտները յանդիմանե-
լու իրենց ըրած ամբարշտութեանը
բոլոր գործքերուն համար, և բոլոր
խիստ խօսքերուն համար՝ որ ամ-
բարիշտ մեղաւորները անոր դէմ
խօսեցան։ Ասոնք տրտնջողներ ու- 16
քըթմնջողներ են, որոնք իրենց
ցանկութիւններուն համեմատ կ'եր-
թան. և իրենց բերանները ամ-
բարտաւան խօսքեր կը զրուցեն.
և շահի համար երեսպաշտութիւն
կ'ընեն. Բայց դուք սիրելիներ՝ 17
միտքերնիդ բերէք ան խօսքերը որ
մեր Տէր Յիսուս Քրիստոսի առա-
քեալներէն առաջուց զրուցուեցաւ.
Որ ձեզի կ'ըսէին թէ Վերջի ժա- 18
մանակը ծաղր ընողներ պիտի ըլ-
լան, որոնք իրենց ամբարիշտ ցան-
կութիւններուն համեմատ պիտի
երթան։

Ասոնք ինքզինքնին զատող, շնչ- 19
աւորներ են, որ Հոգին չունին։
Բայց դուք սիրելիներ՝ անձերնիդ 20
շինելով ձեր ամենասուրբ հաւատ-
քին վրայ, և Սուրբ Հոգիով ա-
ղօթք ընելով, Անձերնիդ Աստու- 21
ծոյ սիրոյն մէ՛ջ պահեցէք, մեր
Տէր Յիսուս Քրիստոսի ողորմու-
թեանը սպասելով յաւիտենական
կենաց համար։ Ու խտրութիւն 22
ընելով՝ ոմանց ողորմեցէք. Ու 23
ոմանք վախով ազատեցէք՝ կրակէն
յափշտակելով զանոնք, ատելով
մարմինէն աղտոտուած հանդերձն
ալ։

Ու անոր՝ որ կարող է ձեզ ան- 24
բիծ պահել, և իր փառքին առ-
ջևը անարատ կայնեցընել ցնծու-
թիւնով, Մեր Փրկչին մի միայն 25
Աստուծոյ [մեր Տէր Յիսուս Քրիս-
տոսի ձեռքովը] փառք ու մեծու-
թիւն, զօրութիւն ու իշխանու-
թիւն [բոլոր դարերէն առաջ,] և
հիմա ու բոլոր դարերու մէջ։
Ամէն։

## ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

# ՅՈՎՀԱՆՆՈՒ ԱՌԱՔԵԼՈՅՆ

## ԵՒ ԱՍՏՈՒԱԾԱԲԱՆ ԱՒԵՏԱՐԱՆՉԻՆ

### ԳԼՈՒԽ Ա

1 Յիսուս Քրիստոսի յայտնութիւ-
նը, որ Աստուած անոր տուաւ
իր ծառաներուն ցուցընելու ինչ որ
շուտով պէտք է ըլլալ. և իր հրեշ-
տակին ձեռքովը խրկելով՝ իր Յով-
2 հաննէս ծառային իմացուց, Որ
Աստուծոյ խօսքին վկայութիւնը ը-
րաւ, ու Յիսուս Քրիստոսի վկա-
3 յութիւնը, ինչ որ տեսաւ: Ե-
րանի՜ անոր որ կը կարդայ, ու ա-
նոնց որ կը լսեն այս մարգարէու-
թեանս խօսքերը, և կը պահեն ինչ
որ անոր մէջը գրուած է. ինչու որ
ժամանակը մօտ է:
4 Յովհաննէսէն եօթը եկեղեցինե-
րուն որ Ասիայի մէջ են. շնորհք
և խաղաղութիւն ձեզի Անկէ որ է
և որ էր և որ պիտի գայ, ու եօ-
թը հոգիներէն՝ որ անոր աթոռին
5 առջևն են, Ու Յիսուս Քրիստոս
հաւատարիմ վկայէն, որ մեռելնե-
րուն անդրանիկն է ու երկրի թա-
գաւորներուն իշխանը. անոր որ
մեզ սիրեց, ու մեզ իր արիւնովը
6 մեր մեղքերէն լուաց, Ու մեզ
թագաւորներ ու քահանաներ ըրաւ
Աստուծոյ ու իր Հօրը, անոր փառք
և զօրութիւն յաւիտեանս յաւիտե-
նից: Ամէն:
7 Ահա ամպերով կու գայ. ու ա-
մէն աչք պիտի տեսնէ զանիկայ, և
անոնք որ զանիկայ խոցեցին. և ա-
նոր վրայ կոծ պիտի ընեն երկրիս
8 բոլոր ազգերը: Այո, Ամէն: Ես
եմ Ալֆա և Օմէղա՝ կ'ըսէ Տէր
[Աստուած], որ է և որ էր և որ
պիտի գայ՝ Ամենակալը:
9 Ես Յովհաննէս ձեր եղբայրը՝ և
Յիսուս Քրիստոսի նեղութեանը
ու արքայութեանը և համբերու-
թեանը մէջ ընկերակիցը, Պատ-
մոս ըսուած կղզին էի, Աստուծոյ
խօսքին համար ու Յիսուս Քրիս-
տոսի վկայութեանը համար: Ես 10
կիրակի օրը Հոգին իմ վրաս եկաւ,
ու ետևէս մեծ ձայն մը լսեցի փողի
ձայնի պէս, որ կ'ըսէր: Ինչ որ 11
կը տեսնես գիրքի մը մէջ գրէ, ու
խրկէ եօթը եկեղեցիներուն, որ
Եփեսոսի, ու Զմիւռնիայի, և
Պերգամոնի, ու Թիւատիրի, և
Սարդիկէի, ու Փիլադելփիայի, և
Լաւոդիկիայի մէջ են: Ու դար- 12
ձայ ան ձայնը տեսնելու՝ որ ինծի կը
խօսէր. ու երբոր դարձայ՝ եօթը
ոսկեղէն աշտանակներ տեսայ. Ու 13
եօթը աշտանակներուն մէջ մէկը
Որդւոյ մարդոյ նման՝ ոտքերուն
պատմուճան մը հագած, ու կուրծ-
քին վրայ ոսկի գօտի մը կապած.
Ու իր գլուխը ու մազերը՝ բուրդի 14
պէս ճերմակ ու ձիւնի պէս, ու իր
աչքերը՝ կրակի բոցի պէս. Ու իր 15
ոտքերը ոսկեպղնձի նման՝ որպէս
թէ հնոցի մէջ կրակ դարձած, ու
իր ձայնը շատ ջուրերու ձայնի պէս.
Ու իր աջ ձեռքին մէջ եօթը աստղ 16
ունէր, ու իր բերնէն սրած երկբե-
րան սուր մը կ'ելլէր, և իր երեսը
արեւու պէս էր՝ որ իր զօրութեամբը
կը փայլի: Ու երբոր տեսայ անի- 17
կայ, իր ոտքը ինկայ մեռելի պէս.
ու իր աջ ձեռքը իմ վրաս դրաւ ու
ըսաւ ինծի, Մի վախնար. ես եմ
Առաջինը ու Վերջինը. Ու ես 18
կենդանի եմ, ու ես ան եմ որ մե-
ռայ, և ահա կենդանի եմ յաւի-
տեանս յաւիտենից. և ես ունիմ
մահուան ու դժոխքին բանալիները:
[Ուստի] գրէ ինչ որ կը տեսնես, 19
ան որ կայ ու ան որ ետքը պիտի
ըլլայ. Եօթը աստղերուն խորհուր- 20
դը՝ որ իմ աջ ձեռքիս մէջը տեսար,
և եօթը ոսկեղէն աշտանակները.
ան եօթը աստղերը եօթը եկեղե-
ցիներուն հրեշտակներն են. և եօ-

թը աշտանակները եօթը եկեղեցի-
ները են ։

## ԳԼ. Բ

1 Եփեսոսի մէջ եղած եկեղեցւոյն
հրեշտակին գրէ ։ Այսպէս կ՚ը-
սէ անիկայ որ իր աջ ձեռքին մէջ
եօթը աստղերը ունի, ու եօթը
ոսկեղէն աշտանակներուն մէջը կը
2 պտըտի ։ Գիտեմ քու գործքերդ
և քու աշխատութիւնդ ու քու
համբերութիւնդ, և որ չարերուն
չես կրնար տանիլ, ու փորձեցիր
անոնք՝ որ կ՚ըսեն թէ իրենք առա-
քեալ են ու չեն, և գտար թէ
3 ստախօս են ։ Ու համբերութիւն
ունենալով՝ նեղութիւն կրեցիր իմ
անունս համար ու չթուլցար ։
4 Բայց քեզի դէմ բան մը ունիմ, որ
5 քու առջի սէրդ ձգեցիր ։ Միտքդ
բեր հիմա ուսկից որ ինկար, ու ա-
պաշխարէ և քու առջի գործքերդ
ըրէ ։ Եթէ ոչ՝ շուտով կու գամ
քեզի, ու քու աշտանակդ իր տե-
ղէն պիտի շարժեմ՝ թէ որ չապաշ-
6 խարես ։ Բայց ասիկայ ունիս, որ
Նիկողայոսեանց գործքերը կ՚ատես,
7 որոնք ես ալ կ՚ատեմ ։ Ան որ ա-
կանջ ունի՝ թող լսէ թէ Հոգին
ինչ կ՚ըսէ եկեղեցիներուն ։ Ան որ
կը յաղթէ՝ անոր ուտել պիտի տամ
կենաց ծառէն, որ Աստուծոյ դրախ-
տին մէջն է ։
8 Ու Զմիւռնիայի մէջ եղած եկե-
ղեցւոյն հրեշտակին գրէ, Այսպէս
կ՚ըսէ Առաջինը ու Վերջինը, որ
9 մեռաւ ու կենդանացաւ ։ Գիտեմ
քու գործքերդ ու նեղութիւնդ և
աղքատութիւնդ, (բայց հարուստ
ես,) ու անոնց հայհոյութիւնը՝ որ
կ՚ըսեն թէ իրենք Հրեայ են ու
չեն, հապա Սատանայի ժողովք
10 մը ։ Բնաւ մի վախնար ան բա-
ներէն որ պիտի կրես ։ ահա Բան-
սարկուն ձեզմէ մէկ քանիները բան-
տը պիտի ձգէ որ փորձուիք, և
տասը օր նեղութիւն պիտի ունե-
նաք ։ մինչև 'ի մահ հաւատարիմ
եղիր, ու քեզի կենաց պսակը պի-
11 տի տամ ։ Ան որ ականջ ունի՝
թող լսէ թէ Հոգին ինչ կ՚ըսէ
եկեղեցիներուն ։ Ան որ կը յաղթէ՝
երկրորդ մահէն պիտի չվնասուի ։
Ու Պերգամոնի մէջ եղած եկե- 12
ղեցւոյն հրեշտակին գրէ ։ Այսպէս
կ՚ըսէ անիկայ որ սրած երկբերան
սուրը ունի ։ Գիտեմ քու գործ- 13
քերդ, և թէ ուր կը բնակիս՝ այ-
սինքն Սատանային աթոռին եղած
տեղը, ու իմ անունս կը պահես,
և իմ հաւատքս չուրացար ան օ-
րերը անգամ՝ որ Անթիպաս իմ
հաւատարիմ վկաս սպաննուեցաւ
ձեր մէջը, ուր որ Սատանան կը
բնակի ։ Բայց քեզի դէմ քիչ մը 14
բան ունիմ, որ հոդ Բաղաամին
վարդապետութիւնը բռնողներ ու-
նիս որ Բաղակին սորվեցուց Իսրա-
յէլի որդւոց առջևը գայթակղու-
թիւն դնել, որ անոնք կռոց զո-
հուածներ ուտեն ու պոռնկութիւն
ընեն ։ Այսանկ ալ դուն Նիկողա- 15
յոսեանց վարդապետութիւնը բռնո-
ղներ ունիս, որն որ ես կ՚ատեմ ։
[Ուստի] ապաշխարէ ։ Եթէ ոչ՝ շու- 16
տով կու գամ քեզի, ու իմ բե-
րնիս սուրովը պիտի պատերազմիմ ա-
նոնց հետ ։ Ան որ ականջ ունի՝ 17
թող լսէ թէ Հոգին ինչ կ՚ըսէ
եկեղեցիներուն ։ Ով որ կը յաղ-
թէ՝ պահուած մանանայէն ուտել
պիտի տամ անոր, ու ճերմակ խիճ
մը պիտի տամ անոր, և ան խիճին
վրայ նոր անուն մը գրուած, որն որ
մէկը չգիտեր, բայց միայն ան՝ որ
կ՚ընդունի ։
Ու Թիւատիրի մէջ եղած եկե- 18
ղեցւոյն հրեշտակին գրէ ։ Այսպէս
կ՚ըսէ Աստուծոյ Որդին, որ կրակի
բոցի պէս աչքեր ունի, ու իր ոտ-
քերը ոսկեպղինձի նման են ։ Գի- 19
տեմ քու գործքերդ և սէրդ ու
ծառայութիւնդ, և քու հաւատքդ
ու համբերութիւնդ, և թէ քու
վերջին գործքերդ առաջիններէն շատ
են ։ Բայց քեզի դէմ բան մը ու- 20
նիմ, որ թող կու տաս Յեզաբէլ
կնոջը, որ ինքզինքը մարգարէուհի
կ՚անուանէ, ու իմ ծառաներս մո-
լորցընելով՝ կը սորվեցընէ պոռնկու-
թիւն ընել և կռոց զոհուածներ
ուտել ։ Ու ես անոր ժամանակ 21

տուի իր պոռնկութենէն վրայ ա-
պաշխարելու, ու չապաշխարեց։
22 Ահա ես զանիկայ անկողինը պիտի
ձգեմ, ու անոր հետ շնութիւն
ընողները՝ մեծ նեղութեան մէջ,
թէ որ իրենց գործքերուն վրայ չա-
23 պաշխարեն։ Նաեւ անոր զաւակնե-
րը մահով պիտի սպաննեմ. ու
բոլոր եկեղեցիները պիտի գիտնան
թէ ես ան եմ՝ որ երիկամունքները
ու սիրտերը կը քննեմ. և ամէն
մէկերնուդ ձեր գործքերուն համե-
24 մատ պիտի հատուցանեմ։ Բայց
ձեզի կ'ըսեմ միւսներուդ որ Թիւ-
ատիրի մէջ էք, ու աս վարդա-
պետութիւնը չունիք, որ չճանչ-
ցաք Սատանային խորունկ բաները
(ինչպէս որ կ'ըսեն.) Ձեր վրայ
ուրիշ ծանրութիւն չեմ ձգեր.
25 Հապա ան որ ունիք՝ պահեցէք
26 մինչև որ ես գամ։ Նաեւ ան որ կը
յաղթէ ու իմ գործքերս մինչև
վերջը կը պահէ, անոր իշխանու-
թիւն պիտի տամ ազգերուն վրայ,
27 (Նաեւ պիտի հովուէ զանոնք երկաթէ
գաւազանով. անոնք բրուտի ա-
մաններու պէս պիտի փշրուին.)
28 Ինչպէս որ ես ալ իմ Հօրմէս առի.
ու անոր պիտի տամ առաւօտեան
29 աստղը։ Ան որ ականջ ունի՝ թող
լսէ թէ Հոգին ինչ կ'ըսէ եկեղե-
ցիներուն։

## ԳԼ. Գ

1 Նաեւ Սարդիկէի մէջ եղած եկեղե-
ցւոյն հրեշտակին գրէ, Ասպէս
կ'ըսէ անիկայ որ ունի Աստուծոյ
եօթը Հոգիները ու եօթը աստ-
ղերը. Գիտեմ քու գործքերդ՝
որ անուն ունիս թէ կենդա-
2 նի ես, ու մեռած ես։ Արթուն
կեցիր և հաստատէ մնացած բա-
ները որ մեռնելու վրայ են, ինչու
որ քու գործքերդ Աստուծոյ ա-
3 ռջև կատարեալ չգտայ։ Հիմա
միտքդ բեր թէ ինչպէս ընդունե-
ցիր ու լսեցիր, ու պահէ, և ա-
պաշխարէ. բայց թէ որ արթըն-
նալու չըլլաս, գողի պէս քու վրադ
պիտի գամ, ու բնաւ պիտի չգիտ-
նաս թէ որ ժամին քու վրադ
պիտի գամ։ Սակայն քանի մը 4
անձինք ունիս Սարդիկէի մէջ,
որոնք իրենց հանդերձները չաղ-
տոտեցին, և ճերմակներով պիտի
պտըտին ինծի հետ, քանզի ար-
ժանի են։ Ան որ կը յաղթէ 5
ճերմակներ պիտի հագնի. ու ես
անոր անունը կենաց գիրքէն պիտի
չաւրեմ, և անոր անունը պիտի
դաւանիմ իմ Հօրս առջեւ՝ ու անոր
հրեշտակներուն առջևը։ Ան որ 6
ականջ ունի՝ թող լսէ թէ Հոգին
ինչ կ'ըսէ եկեղեցիներուն։
Նաեւ Փիղադելփիայի մէջ եղած 7
եկեղեցւոյն հրեշտակին գրէ, Աս-
պէս կ'ըսէ ան Սուրբը՝ ան Ճշմա-
րիտը որ Դաւիթի բանալին ունի,
կը բանայ ու մէկը չկայ որ գոցէ,
և կը գոցէ ու մէկը չկայ որ բանայ.
Գիտեմ քու գործքերդ. ահա քու 8
առջևդ բացուած դուռ մը դրի, որ
մէկը չկրնար գոցել. ինչու որ
դուն քիչ մը կարողութիւն ունիս,
և իմ խօսքս պահեցիր ու իմ ա-
նունս չուրացար։ Ահա ես քեզի 9
կու տամ Սատանային ժողովքէն
եղողները՝ որոնք կ'ըսեն թէ իրենք
Հրեայ են, ու չեն, հապա սուտ
կ'ըսեն. ահա պիտի ընեմ զա-
նոնք որ գան ու երկրպագութիւն
ընեն քու ոտքերուդ առջևը, և
ճանչնան թէ ես քեզ սիրեցի։
Որովհետև իմ համբերութեանս 10
խօսքը պահեցիր, ես ալ քեզ պի-
տի պահեմ փորձութեան ժամա-
նակը, որ պատրաստ է գալու բո-
լոր աշխարհի վրայ՝ երկրիս երեսը
բնակողները փորձելու համար։
Ահա ես շուտով կու գամ. ունե- 11
ցածդ ամուր բռնէ, որ մէկը չառ-
նէ քու պսակդ։ Ան որ կը յաղ- 12
թէ՝ անիկայ իմ Աստուծոյս տաճա-
րին մէջ սիւն մը պիտի ընեմ, ու
ալ դուրս պիտի չելլէ. և անոր
վրայ իմ Աստուծոյս անունը պիտի
գրեմ, ու իմ Աստուծոյս քաղաքին
անունը, այսինքն նոր Երուսաղէ-
մին, որ երկինքէն իմ Աստուծմէս
կ'իջնէ, և իմ նոր անունս. Ան որ 13
ականջ ունի՝ թող լսէ թէ Հոգին
ինչ կ'ըսէ եկեղեցիներուն։

14 Եւ Լաւոդիկեցւոց մէջ եղած եկե-
ղեցւոյն հրեշտակին գրէ . Ասիկա
կ'ըսէ Ամէնը՝ հաւատարիմ ու ճըշ-
մարիտ Վկան , Աստուծոյ արարա-
15 ծոց Սկիզբը . Գիտեմ քու գործ-
քերդ. որ ո՛չ պաղ ես ու ո՛չ
տաք . երանի՜ թէ պաղ ըլլայիր
16 կամ տաք ։ Ուստի դուն որ
գաղջ ես , ու ո՛չ տաք՝ ո՛չ ալ
պաղ , քեզ բերնէս դուրս փսխե-
17 լու վրայ եմ . Քանզի կ'ըսես , Ես
հարուստ եմ ու մեծցայ և բանի
մը կարօտ չեմ . ու չես գիտեր որ
դուն խեղճ ու թշուառական ես՝ և
18 աղքատ ու կոյր ու մերկ ։ Ես
քեզի խորհուրդ կու տամ . ինծմէ
կրակի մէջ փորձուած ոսկի ծախու
առ որ հարստանաս , ու ճերմակ
հանդերձներ՝ որ հագնիս , որ քու
ամօթալի մերկութիւնդ չերեւնայ .
և աչքերդ դեղ դիր որ տեսնես ։
19 Ես իմ ամէն սիրածս կը յանդի-
մանեմ ու կը խրատեմ . ուստի
նախանձաւոր եղիր ու ապաշխարէ՛ ։
20 Ահա ես դրանը կայներ եմ ու կը
զարնեմ . թէ որ մէկը իմ ձայնս
լսէ ու դուռը բանայ , անոր քովը
պիտի մտնեմ և անոր հետ ընթ-
րիք պիտի ընեմ , ան ալ իմ հետս .
21 Ան որ կը յաղթէ , իմ հետս իմ ա-
թոռս նստել պիտի տամ անոր ,
ինչպէս որ ես ալ յաղթեցի ու իմ
Հօրս հետ անոր աթոռը նստայ ։
22 Ան որ ականջ ունի՝ թող լսէ թէ
Հոգին ինչ կ'ըսէ եկեղեցիներուն .

ԳԼ. Դ

1 Ասոր ետեւէն տեսայ , և ահա
երկինքին մէջ բացուած դուռ մը
կար , և առջի ձայնը որ լսեցի ,
փողի նման էր , որ ինծի հետ կը
խօսէր ու կ'ըսէր , Հո՛ս ելի՛ր՝ ու
ասկէ ետքը ըլլալու բաները քեզի
2 ցուցընեմ ։ Եւ շուտ մը Հոգին
իմ վրաս եկաւ . և ահա աթոռ մը
3 դրուած էր երկինքին մէջ . Ու ա-
թոռին վրայ մէկը նստեր էր . և
նստողը յասպիս ու սարդիոն քա-
4 րերու երեւոյթին նման էր . Եւ
աթոռին բոլորտիքը ծիածան՝ զմը-
րուխտի երեւոյթի նման . ու աթո-
ռին բոլորտիքը քսանըչորս ա-
թոռներ , և այն աթոռներուն վրայ
քսանըչորս երէցներ նստեր էին
ճերմակ հանդերձներ հագած , ու
գլուխնին ոսկիէ պսակներ ունէին .
Եւ աթոռէն փայլակներ ու ձայներ 5
և որոտումներ կ'ելլէին , ու աթո-
ռին առջին եօթը հատ բորբոքած
կրակի ջահեր կային , որոնք
Աստուծոյ եօթը Հոգիներն են ։
Եւ աթոռին առջեւ բիւրեղ ապակե- 6
ղէն ծով մը՝ ակնեղենի նման , և
աթոռին մէջը ու աթոռին բոլոր-
տիքը չորս կենդանիներ , որ աչքե-
րով լեցուն էին առջեւէն ու ետեւէն ։
Եւ առջի կենդանին առիւծի նման 7
էր , ու երկրորդ կենդանին՝ զուա-
րակի նման , և երրորդ կենդանին
մարդու երես ունէր , ու չորրորդ
կենդանին՝ թռչող արծիւի նման ։
Եւ չորս կենդանիներուն ամէն մէկը 8
շուրջանակի վեց վեց թեւ ունէր ,
ու ներսէն աչքերով լեցուն էին ,
ու չէին հանգչեր ո՛չ ցորեկը ո՛չ
ալ գիշերը՝ ըսելով , Սուրբ՝
Սուրբ՝ Սուրբ՝ Տէր Աստուած Ամե-
նակալ , որ էր և որ է և որ
պիտի գայ ։ Ու երբոր այն կենդա- 9
նիները փառք ու պատիւ և գոհու-
թիւն կու տային աթոռին վրայ
նստողին՝ որ կենդանի է յաւիտեանս
յաւիտենից , Քսանըչորս երէցնե- 10
րը աթոռին վրայ նստողին առջեւը
կ'իյնային ու երկրպագութիւն կ'ը-
նէին յաւիտեանս յաւիտենից կեն-
դանի եղողին , և իրենց պսակները
աթոռին առջեւը կը ձգէին՝ ըսե-
լով . Արժանի ես՝ Տէ՛ր՝ փառք ու 11
պատիւ և զօրութիւն առնելու .
ինչու որ ամէն բան դուն ստեղծե-
ցիր , ու քու կամքովդ եղան ու
ստեղծուեցան ։

ԳԼ. Ե

Եւ աթոռին վրայ նստողին աջ 1
ձեռքը մէկ գիրք մը տեսայ՝
ներսէն ու դուրսէն գրուած , և
եօթը կնիքով կնքուած ։ Ու մէկ 2
զօրաւոր հրեշտակ մը տեսայ՝ որ
մեծ ձայնով կը կանչէր . Ո՞վ ար-
ժանի է այս գիրքը բանալու և

10 բռնողք ունէին. Եւ մեծ ձայնով ա-
ղաղակեցին ու ըսին, Մինչեւ ե՞րբ ու
Ճշմարիտ Տէր՝ մինչեւ Սուրբ չես դա-
տեր ու մեր արիւնին վրէժը երկրի
11 բնակիչներէն պահանջեր։ Եւ ճեր-
մակ հանդերձներ տրուեցաւ անոնց,
ու ըսուեցաւ անոնց՝ որ քիչ մը ա-
տեն ալ հանգչին, մինչեւ որ անոնց
ծառայակիցները ու անոնց եղբայր-
ները լմնան ըլլան, որոնք իրենց պէս
պիտի սպաննուէին։
12 Եւ տեսայ՝ երբոր վեցերորդ կնի-
քը բացաւ, ու մեծ շարժ մը եղաւ,
ու արեւը սեւցաւ մազեղէն քուրձի
մը պէս, եւ լուսինը [բոլորովին] ա-
13 րիւնի պէս եղաւ. Ու երկնից աստ-
ղերը գետինը թափթփեցան, ինչ-
պէս որ սաստիկ հովէն շարժուած
թզենին իր տհաս պտուղները կը
14 թափէ. Եւ երկինքը գալարուող
տոմսի պէս կը քաշուէր. ու բոլոր
լեռները եւ կղզիները իրենց տեղերէն
15 շարժեցան։ Ու երկրի թագաւոր-
ները եւ մեծամեծները ու հարուստ-
ները, հազարապետները եւ զօրա-
ւորները, ու բոլոր ծառաները ու
բոլոր ազատները այրերուն եւ լեռանց
ապառաժներուն մէջ պահուըտե-
16 ցան. Եւ լեռներուն ու ապառաժ-
ներուն կ՚ըսէին, Վրանիս ինկէք
ու մեզ ծածկեցէք անոր երեսէն՝ որ
աթոռին վրայ կը նստի, ու Գառ-
17 նուկին բարկութենէն. Ինչու որ
անոր բարկութեանը մեծ օրը եկաւ,
ու ո՞վ կրնայ դիմանալ։

ԳԼ. Է.

1 Եւ անկէ ետեւ տեսայ չորս հրեշ-
տակներ՝ որոնք երկրի չորս ան-
կիւնը կեցեր էին, ու երկրի չորս
հովերը բռներ էին, որ երկրի վրայ
հով չփչէ, ու ոչ ծովու վրայ, ոչ
2 ալ մէկ ծառի մը վրայ։ Եւ մէկ
ուրիշ հրեշտակ մը տեսայ որ ա-
րեւելքէն ելաւ, ու կենդանի Աս-
տուծոյ կնիքը ունէր. եւ մեծ ձայ-
նով մը աղաղակեց այն չորս հրեշ-
տակներուն, որոնց իշխանութիւն
տրուած էր երկրին ու ծովուն վնա-
3 սելու, Ու ըսաւ, Երկրին վնաս
մի՛ ընէք, ոչ ծովուն, ոչ ալ
ծառերուն, մինչեւ որ մեր Աստու-
ծոյն ծառաներուն ճակատները կնի-
քենք։ Եւ կնքուածներուն համրան- 4
քը լսեցի՝ որ եւ հարիւր քառասուն-
նուչորս հազար՝ Իսրայէլի որդւոցը
բոլոր ցեղերէն կնքուած. Յուդայի 5
ցեղէն տասներկու հազար կնքուած,
Ռուբէնի ցեղէն տասներկու հա-
զար կնքուած, Գադի ցեղէն տաս-
ներկու հազար կնքուած, Ասերի 6
ցեղէն տասներկու հազար կնքուած,
Նեփթաղիմի ցեղէն տասներկու
հազար կնքուած, Մանասէի ցե-
ղէն տասներկու հազար կնքուած,
Շմաւոնի ցեղէն տասներկու հա- 7
զար կնքուած, Ղեւիի ցեղէն տաս-
ներկու հազար կնքուած, Իսա-
քարի ցեղէն տասներկու հազար
կնքուած, Զաբուղոնի ցեղէն տաս- 8
ներկու հազար կնքուած, Յով-
սէփի ցեղէն տասներկու հազար
կնքուած, Բենիամինի ցեղէն տաս-
ներկու հազար կնքուած։
Անկէ ետքը տեսայ, եւ ահա մեծ 9
բազմութիւն՝ որուն որ մէկը չէր կրր-
նար համրել, բոլոր ազգերէն ու
ցեղերէն եւ ժողովուրդներէն ու լե-
զուներէն, որոնք աթոռին առջեւ
ու Գառնուկին առջեւ կեցեր էին՝
ճերմակ հանդերձներ հագած եւ
ձեռքերնին արմաւենիներ բռնած.
Եւ մեծաձայն կ՚աղաղակէին ըսե- 10
լով, Փրկութիւնը մեր Աստուծոյ՝
որ աթոռին վրայ կը նստի, ու
Գառնուկին։ Եւ բոլոր հրեշտակ- 11
ները աթոռին ու երէցներուն եւ չորս
կենդանիներուն բոլորտիքը կեցեր
էին, ու իրենց երեսներուն վրայ
աթոռին առջեւ ինկան ու Աստու-
ծոյ երկրպագութիւն ըրին, Ըսե- 12
լով, Ամէն. օրհնութիւն ու փառք
եւ իմաստութիւն ու գոհութիւն եւ
պատիւ ու զօրութիւն եւ կարողու-
թիւն մեր Աստուծոյն յաւիտեանս
յաւիտենից։ Ամէն։ Ու երէցնե- 13
րէն մէկը պատասխան տալով՝ ին-
ծի ըսաւ, Ասոնք որ ճերմակ հան-
դերձներ հագած են՝ ո՞վ են, եւ
ուրկէց եկան։ Ես ալ ըսի անոր, 14
Տէ՛ր իմ՝ դուն գիտես. ու ըսաւ
ինծի, Ասոնք են մեծ նեղութենէ

եկողները , որ իրենց հանդերձնե-
րը լուացին , ու զանոնք Գառնու-
15 կին արիւնովը ճերմկցուցին · Անոր
համար Աստուծոյ աթոռին առջեւն
են , և իրեն կը ծառայեն ցորեկ ու
գիշեր իր տաճարին մէջը · և աթո-
ռին վրայ նստողը իր վրանը պիտի
16 տարածէ անոնց վրայ · Ասկէ ետեւ
ոչ պիտի անօթենան ու ոչ ծա-
րաւին , ոչ ալ արեւը կամ մէկ
տաքութիւն մը անոնց վրայ պիտի
17 իյնայ · Վասն զի Գառնուկը որ ա-
թոռին մէջն է , պիտի հովուէ զա-
նոնք , ու կենդանի ջուրերու աղ-
բիւրները պիտի առաջնորդէ զա-
նոնք · և Աստուած բոլոր արցունք-
ները պիտի սրբէ անոնց աչքերէն ։

## ԳԼ. Ը

1 Ու երբոր եօթներորդ կնիքը բա-
ցաւ , լռութիւն եղաւ երկինքը
կէս ժամու չափ ։
2 Ու տեսայ այն եօթը հրեշտակ-
ները , որ Աստուծոյ առջեւը կը
կայնէին · ու անոնց եօթը փող
3 տրուեցաւ ։ Ու ուրիշ հրեշտակ
մը եկաւ սեղանին առջեւը կայնե-
ցաւ , ու ոսկեղէն խնկանոց մը
ունէր · և իրեն շատ խունկ տրուե-
ցաւ , որ բոլոր սրբոց աղօթքնե-
րուն հետ աթոռին առջեւը եղող
ոսկի սեղանին վրայ մատուցանէ ։
4 Ու խունկերուն ծուխը սրբոց ա-
ղօթքներուն հետ հրեշտակին ձեռ-
5 քէն Աստուծոյ առջեւը ելաւ ։ Ու
հրեշտակը առաւ խնկանոցը ու
զանիկայ սեղանին կրակէն լեցուց ,
և ձգեց երկրին վրայ · ու եղաւ ձայ-
ներ և որոտումներ ու փայլակներ
6 ու երկրաշարժ ։ Ու եօթը հրեշ-
տակները որ եօթը փողերը ունէին՝
պատրաստուեցան որ փչեցընեն ։
7 Ու առջի հրեշտակը փողը փչե-
ցուց , ու եղաւ կարկուտ ու կրակ
արիւնով խառնուած , ու երկրի
վրայ ձգուեցաւ , [ու երկրին երրորդ
մասը այրեցաւ , և ծառերուն եր-
րորդ մասը այրեցաւ ,] ու ամէն
կանանչ խոտ այրեցաւ ։
8 Ու երկրորդ հրեշտակը փողը
փչեցուց , և որպէս թէ մէկ մեծ
լեռ մը կրակով բորբոքած՝ ծովը
ձգուեցաւ , ու ծովուն երրորդ մասը
արիւն եղաւ · Ու ծովուն մէջի շըն- 9
չաւոր արարածներուն երրորդ մասը
մեռաւ , ու նաւերուն երրորդ մասը
կորսուեցաւ ։
Ու երրորդ հրեշտակը փողը փչե- 10
ցուց , ու երկինքէն մէկ մեծ աստղ
մը ինկաւ ղամբարի պէս բորբոքած ,
և գետերուն ու ջուրի աղբիւրներուն
երրորդ մասին վրայ ինկաւ ։ Ու 11
այն աստղին անունը Օշինդր էր ·
ու ջուրերուն երրորդ մասը օշինդր
եղաւ , և շատ մարդիկ ջուրերէն
մեռան , քանզի դառն եղան ։
Ու չորրորդ հրեշտակը փողը 12
փչեցուց , ու արեւին երրորդ մա-
սը և լուսնին երրորդ մասը ու
աստղերուն երրորդ մասը զար-
նուեցաւ , անանկ որ անոնց երրորդ
մասը խաւարի , և օրուան երրորդ
մասը լոյս չտայ , նոյնպէս ալ գի-
շերուանը ։
Ու նայեցայ՝ ու երկնից մէջ թռ- 13
չող հրեշտակի մը ձայն լսեցի , որ
մեծ ձայնով կ'ըսէր , Վա՜յ, վա՜յ, վա՜յ
երկրի վրայ բնակողներուն՝ այն մը-
նացած փողի ձայներուն համար , որ
իրեք հրեշտակները պիտի փչեցընեն ։

## ԳԼ. Թ

Ու հինգերորդ հրեշտակը փողը 1
փչեցուց , ու տեսայ որ երկին-
քէն աստղ մը ինկաւ երկրի վրայ ,
և անդունդի գուբին բանալին
անոր տրուեցաւ · Ու անդունդին 2
գուբը բացաւ , ու այն գուբէն ծուխ
կ'ելլէր մեծ հնոցի մը ծուխին պէս ·
ու խաւարեցաւ արեւը ու օդը գու-
բին ծուխէն ։
Ու ծուխէն մարախներ կ'ելլէր 3
երկրի վրայ · ու անոնց զօրութիւն
տրուեցաւ երկրի կարիճներուն ու-
նեցած զօրութեանը պէս · Ու ա- 4
նոնց ըսուեցաւ որ չվնասեն երկրի
խոտին , ոչ ալ կանանչեղէնի մը
և ոչ մէկ ծառի մը , հապա միայն
այն մարդոց , որոնք իրենց ճակատ-
ներուն վրայ Աստուծոյ կնիքը չու-
նին ։ Ու անոնց հրաման տրուեցաւ 5
որ չսպաննեն զանոնք , հապա չար-

չարին զանոնք հինգ ամիս . ու ա-
նոնց տուած չարչարանքը կարիճի
տուած չարչարանքին պէս էր՝ երբոր
6 մարդը կը զարնէ ։ Եւ այն օրերը
մարդիկ մահը պիտի փնտռեն ու
պիտի չգտնեն . և պիտի ուզեն
մեռնիլ , ու մահը անոնցմէ պիտի
7 փախչի ։ Եւ մարախներուն նը-
մանութիւնը՝ պատերազմի պատ-
րաստուած ձիերու պէս , ու անոնց
գլուխներուն վրայ ոսկեղէն պսակ-
ներու պէս , և անոնց երեսները
8 մարդոց երեսներու պէս էր . Ու
անոնք մազեր ունէին կանանց մա-
զերուն պէս , ու անոնց ակռաները
առիւծներու ակռաներուն պէս էր ։
9 Եւ զրահներ ունէին երկաթէ զրահ-
ներու պէս . ու անոնց թեւերուն
ձայնը պատերազմի վազող շատ
ձիեր լծուած կառքերու ձայնին պէս
10 էր ։ Եւ կարիճներու նման պոչեր
ունէին , ու պոչերնուն վրայ խայ-
թոց . և իշխանութիւն ունէին
հինգ ամիս մարդոց վնասելու ։
11 Եւ իրենց վրայ թագաւոր ունէին
անդունդին հրեշտակը , որուն ա-
նունը Եբրայեցերէն Աբադոն , և
Յոյն լեզուով կ'ըսուի Ապողղիոն ։
12 Մէկ վայը անցաւ . ասկէ ետև
ահա երկու վայեր ալ կու գան ։
13 Եւ վեցերորդ հրեշտակը փողը
հնչեցուց , ու ձայն մը լսեցի Աստու-
ծոյ առջևը եղող ոսկի սեղանին
14 չորս եղջիւրներէն , Որ կ'ըսէր
վեցերորդ հրեշտակին որ փողը
ունէր , Եփրատ մեծ գետին վրայ
կապուած չորս հրեշտակները ար-
15 ձակէ՛ ։ Եւ այն չորս հրեշտակները
արձակուեցան , որ պատրաստուած
էին ժամի ու օրուան և ամիսի
ու տարիի համար , որ մարդոց եր-
16 րորդ մասը մեռցընեն ։ Եւ ձիա-
ւոր զօրքերուն համրանքը երկու
բիւրք բիւրուց էր , ու լսեցի անոնց
17 համրանքը ։ Եւ տեսիլքին մէջ
այսպէս տեսայ ձիերը , ու անոնց
վրայ հեծնողները , որ ունէին հրե-
ղէն ու յակնթեղէն և ծծմբեղէն
զրահներ . և ձիերուն գլուխները
առիւծներու գլուխներուն պէս էր ,
ու անոնց բերնէն կրակ ու ծուխ և
ծծումբ կ'ելլէր ։ Այս երեք [հա- 18
րուած]ներէն մարդոց երրորդ մասը
մեռաւ , այսինքն կրակէն ու ծու-
խէն ու ծծումբէն՝ որ անոնց
բերնէն կ'ելլէր ։ Ինչու որ անոնց 19
զօրութիւնը բերաններնուն մէջն է
ու պոչերնուն մէջ . քանզի անոնց
պոչերը օձերու նման էին , ու գը-
լուխներ ունէին որոնցմով կը վը-
նասէին ։ Եւ ուրիշ մարդիկ որ 20
աս հարուածներէն չսպաննուեցան ,
իրենց ձեռացը գործքերէն չապաշ-
խարեցին , որ երկրպագութիւն չը-
նեն դեւերուն՝ ու ոսկիէ և արծաթէ
ու պղնձէ և քարէ ու փայտէ շի-
նուած կուռքերուն , որոնք ո՛չ
կրնան տեսնել , ո՛չ ալ լսել ու
ո՛չ քալել . Նաև չապաշխարեցին 21
իրենց մարդասպանութիւններէն ,
ո՛չ ալ իրենց կախարդութիւննե-
րէն , ո՛չ ալ իրենց պոռնկութե-
նէն և ո՛չ իրենց գողութիւննե-
րէն ։

## ԳԼ. Ժ.

Եւ տեսայ ուրիշ զօրաւոր հրեշ- 1
տակ մը որ երկինքէն կ'իջնէր ,
ու ամպ հագած էր . և իր գլխուն
վրայ ծիածան կար . ու իր երեսը
արեւի պէս էր , և իր ոտքերը կրակէ
սիւներու պէս . Եւ իր ձեռքը գըր- 2
քոյկ մը ունէր բացուած . ու իր
աջ ոտքը ծովուն վրայ դրաւ , և
ձախը՝ ցամաքին վրայ . Եւ մեծ 3
ձայնով աղաղակեց առիւծի մը գո-
չելուն պէս . ու երբոր աղաղակեց ,
եօթը որոտումները իրենց ձայնե-
րովը խօսեցան ։ Ու երբոր եօթը 4
որոտումները խօսեցան , պիտի գը-
րէի . ու երկինքէն ձայն մը լսեցի որ
կ'ըսէր , Կնքէ՛ այն բաները որ եօ-
թը որոտումները խօսեցան , ու
զանոնք մի՛ գրեր ։ Եւ այն հրեշ- 5
տակը որ ծովուն վրայ ու ցամաքին
վրայ կայնած տեսայ , իր [աջ] ձեռքը
երկինքը վերցուց . Ու երդում 6
ըրաւ յաւիտեանս յաւիտենից Կեն-
դանի եղողին վրայ , որ ստեղծեց
երկինքը ու ինչ որ անոր մէջն է ,
ու երկիրը և ինչ որ անոր մէջն է ,
և ծովը ու ինչ որ անոր մէջն է ,

թէ ալ ժամանակ պիտի չըլլայ .
7 Հապա եօթներորդ հրեշտակին
ձայնին օրերը՝ երբոր փողը փչեցը-
նէ , Աստուծոյ խորհուրդը պիտի կա-
տարուի , ինչպէս որ իր ծառանե-
րուն մարգարէներուն աւետիս տը-
ւաւ ։
8 Այն ձայնը որ երկինքէն լսեցի ,
նորէն խօսեցաւ ինծի ու ըսաւ ,
Գնա՛ առ այն բաց գրքոյկը՝ որ ծո-
վուն ու ցամաքին վրայ կայնող հը-
9 րեշտակին ձեռքն է ։ Ես ալ հրեշ-
տակին գացի ու ըսի անոր ; Տո՛ւր
ինծի այս գրքոյկը . ու ըսաւ ինծի ,
Ա՛ռ ասիկայ ու կե՛ր . և քու փո-
րիդ մէջ դառնութիւն պիտի պատ-
ճառէ , բայց բերնիդ մէջ մեղրի
10 պէս անոյշ պիտի ըլլայ ։ Ես
գրքոյկը հրեշտակին ձեռքէն առի
ու կերայ զանիկայ . և իմ բերնիս
մէջը մեղրի պէս անոյշ էր , և ու-
տելէս ետքը փորիս մէջը դառնու-
11 թիւն եղաւ ։ Ու ըսաւ ինծի ,
Պէտք է որ դուն նորէն մարգարէ-
ութիւն ընես շատ ժողովուրդնե-
րու և ազգերու ու լեզուներու և
թագաւորներու վրայով ։

## ԳԼ . ԺԱ

1 Ու ինծի մէկ եղէգ մը տրուեցաւ
գաւազանի պէս , և հրեշտակը
կայներ էր ու կ'ըսէր , Ելի՛ր ու
չափէ՛ Աստուծոյ տաճարը ու սե-
ղանը՝ և անոր մէջ երկրպագու-
2 թիւն ընողները ։ Ու գաւիթը
որ տաճարին դուրսն է , ձգէ՛ և մի՛
չափեր , ինչու որ անիկայ հեթա-
նոսներուն տրուած է , ու անոնք
սուրբ քաղաքը պիտի կոխկռտեն
3 քառասուներկու ամիս ։ Ու իմ
երկու վկաներուս զօրութիւն պիտի
տամ , և անոնք քուրձ հագած հա-
զար երկու հարիւր ու վաթսուն օր
4 մարգարէութիւն պիտի ընեն ։ Ա-
նոնք այն երկու ձիթենիները ու
երկու աշտանակներն են , որ երկրին
5 Տէրոջը առջևը կը կենան ։ Ու
թէ որ մէկը ուզէ անոնց վնաս ը-
նել , անոնց բերաններէն կրակ
կ'ելլէ ; ու իրենց թշնամիները
կ'ուտէ . և թէ որ մէկը ուզէ անոնց
վնաս ընել , պէտք է որ անիկայ
այսպէս սպաննուի ։ Ասոնք իշխա- 6
նութիւն ունին երկինքը գոցելու՝
որ իրենց մարգարէութեան օրերը
անձրև չգայ , ու ջուրերուն վրայ
իշխանութիւն ունին՝ անոնք արիւն
դարձընելու , և ամէն կերպ պա-
տուհասներով երկիրը զարնելու՝
քանի անգամ որ ուզեն ։ Ու երբ- 7
որ իրենց վկայութիւնը կատարեն ,
այն ատենը անդունդէն ելլող գա-
զանը անոնց հետ պատերազմ պիտի
ընէ , և անոնց պիտի յաղթէ ու
պիտի սպաննէ անոնք ։ Ու անոնց 8
դիերը ինկած պիտի մնան այն մեծ
քաղաքին հրապարակին մէջ , որ
հոգևորապէս կ'ըսուի Սոդոմ ու
Եգիպտոս , ուր որ մեր Տէրն ալ
խաչուեցաւ ։ Ու ժողովուրդներէն 9
ու ցեղերէն և լեզուներէն ու ազ-
գերէն պիտի տեսնեն անոնց դիերը
իրեք ու կէս օր . ու թող պիտի
չտան անոնց դիերը գերեզմաններու
մէջ թաղելու ։ Ու անոնք որ 10
երկրի վրայ կը բնակին , ուրախ
պիտի ըլլան ու խնդան անոնց վրայ .
մինչև անգամ իրարու ընծաներ
պիտի խրկեն . ինչու որ այս երկու
մարգարէները երկրի բնակիչները
չարչարեցին ։
Ու իրեք ու կէս օրէն ետև Աս- 11
տուծմէ կենդանութեան հոգի մտաւ
անոնց մէջ , ու իրենց ոտքերուն
վրայ կայնեցան . և զանոնք տեսնող-
ներուն վրայ մեծ վախ ինկաւ ։ Ու 12
երկինքէն մեծ ձայն մը լսեցին , որ
կ'ըսէր անոնց , Վեր ելէք՝ հոս
եկէք . և անոնք ամպով երկինքը
վերացան . ու անոնց թշնամիները
զանոնք տեսան ։ Ու նոյն ժամուն 13
մեծ երկրաշարժ մը եղաւ , ու քա-
ղաքին տասներորդ մասը կործանե-
ցաւ , և այն երկրաշարժէն եօթը
հազար մարդիկ մեռան , ու մնա-
ցածները վախով լեցուեցան ու
փառք տուին երկնից Աստուծոյն ։
Երկրորդ վայը անցաւ . ահա եր- 14
րորդ վայը շուտով կու գայ ։
Ու եօթներորդ հրեշտակը փողը 15
փչեց . ու երկինքի մէջ մեծ ձայ-
ներ եղան որ կ'ըսէին , Աշխարհին

թագաւորութիւնները մեր Տէրոջը
ու իր Օծեալինը եղան, և ինքը պի-
տի թագաւորէ յաւիտեանս յաւի-
16 տենից : Եւ քսանուչորս երէցնե-
րը որ իրենց աթոռներուն վրայ
նստած էին Աստուծոյ առջևը, ի-
րենց երեսներուն վրայ ինկան, և
Աստուծոյ երկրպագութիւն ըրին՝
17 ըսելով, Քեզի գոհութիւն կը մա-
տուցանենք՝ Ամենակալ Տէր Աս-
տուած՝ որ ես և որ էիր, որ քու
մեծ զօրութիւնդ առիր ու թա-
18 գաւորեցիր : Եւ ազգերը բարկա-
ցան. ու քու բարկութիւնդ եկաւ,
և մեռելներուն ժամանակը՝ որ դա-
տուին, ու վարձք տաս քու ծա-
ռաներուդ մարգարէներուն և սուր-
բերուն ու քու անունէդ վախցողնե-
րուն՝ պզտիկներուն ու մեծերուն,
և երկրի ապականիչները ապակա-
նես :
19 Եւ երկնքի մէջ Աստուծոյ տա-
ճարը բացուեցաւ, և անոր ուխտին
տապանակը իր տաճարին մէջը երե-
ցաւ. ու եղան փայլակներ ու ձայ-
ներ և որոտումներ ու երկրա-
շարժ և խոշոր կարկուտ :

## ԳԼ. ԺԲ

1 Եւ երկնքի մէջ մեծ նշան մը երե-
ցաւ. մէկ կնիկ մը արեւը իր
վրան առած, ու լուսինը իր ոտքե-
րուն տակը. և իր գլխուն վրայ
2 տասներկու աստղէ պսակ մը. Եւ
յղի էր, ու երկանց մէջ ըլլալով
և ծնանելու համար շատ նեղութիւն
քաշելով կը պոռար :
3 Եւ երկնքի մէջ ուրիշ նշան մը
երեւցաւ, և ահա մէկ մեծ շառագոյն
վիշապ մը, որ եօթը գլուխ ու տա-
սը եղջիւր ունէր, և իր գլուխնե-
4 րուն վրայ եօթը թագ : Եւ անոր
պոչը երկնքի աստղերուն երրորդ-
մասը կը քաշէր, ու անոնք երկրի
վրայ ձգեց. և վիշապը կեցեր էր
այն կնկանը առջևը որ ծնանելու
վրայ էր, որ երբոր ծնանի, անոր
5 զաւակը կլլէ : Եւ ինքը արու զա-
ւակ մը ծնաւ, որ երկաթէ գաւա-
զանով պիտի հովուէր բոլոր ազգե-
րը. և անոր զաւակը յափշտա-
կուեցաւ Աստուծոյ քովը ու անոր
աթոռին քովը : Եւ կնիկը անա- 6
պատը փախաւ, ուր որ անոր տեղ
պատրաստուած էր Աստուծմէ, որ
հոն կերակրուի հազար երկու հա-
րիւր ու վաթսուն օր :
Եւ երկնքի մէջ պատերազմ ե- 7
ղաւ. Միքայէլ ու իր հրեշտակնե-
րը վիշապին հետ պատերազմեցան.
վիշապն ալ իր հրեշտակներովը պա-
տերազմեցաւ. Եւ չկրցան դէմ կե- 8
նալ, ու երկնքի մէջ՝ ալ տեղ
չգտնուեցաւ անոնց : Եւ վար ձը- 9
գուեցաւ մեծ վիշապը՝ այն առջի օ-
ձը որ Բանսարկու ու Սատանայ
կ'ըսուի, որ բոլոր աշխարհ մոլոր-
ցուց. ու իր հրեշտակները իրեն
հետ վար ձգուեցան երկրի վրայ :
Եւ մեծ ձայն մը լսեցի երկնքի մէջ՝ 10
որ կ'ըսէր, Հիմա եղաւ մեր Աս-
տուծոյ փրկութիւնը ու զօրութիւ-
նը և թագաւորութիւնը, ու անոր
Օծեալին իշխանութիւնը. Ինչու
որ մեր եղբայրներուն դէմ չար խօ-
սողը վար ձգուեցաւ, որ անոնց դէմ
չարախօսութիւն կ'ընէր մեր Աս-
տուծոյն առջևը ցորեկ ու գիշեր :
Եւ անոնք անոր յաղթեցին Գառ- 11
նուկին արիւնովը, ու իրենց վկա-
յութեանը խօսքովը. և իրենց
կեանքը չսիրեցին մինչև 'ի մահ :
Ասոր համար ուրախացէ՛ք ով եր- 12
կինք ու անոր մէջը բնակողներ.
վա՜յ երկրին ու ծովուն, որ Բան-
սարկուն ձեզի իջաւ, որ շատ բար-
կութիւն ունի՝ գիտնալով որ քիչ
ժամանակ պիտի կենայ :
Եւ երբոր վիշապը տեսաւ որ ին- 13
քը երկրի վրայ ձգուեցաւ, արու
զաւակ ծնանող կնկանը ետևէն ին-
կաւ : Եւ այն կնկանը մեծ արծիւի 14
երկու թևեր տրուեցան, որ անա-
պատ իր տեղը թռչի, ուր որ պի-
տի կերակրուէր ժամանակ ու ժա-
մանակներ ու կէս ժամանակ՝ օձին
երեսէն : Եւ օձը իր բերնէն գետի 15
պէս ջուր վազցուց կնկանը ետևէն,
որ զանիկայ հեղեղով ընկղմէ : Եւ 16
երկիրը օգնեց կնկանը, ու երկիրը
իր բերանը բացաւ և կլլեց այն գե-
տը, որ վիշապը իր բերնէն վազց-

իրենց ճակատներուն վրայ գրուած ։
2 Ու երկինքէն ձայն մը լսեցի շատ
ջուրերու ձայնի պէս ու մեծ որո-
տումի ձայնի մը պէս, ու լսած ձայնս
քնարահարներուն իրենց քնարնե-
րը զարնելուն ձայնին կը նմանէր ։
3 Եւ նոր երգ կ'երգէին աթոռին
առջեւը ու չորս կենդանիներուն
ու երէցներուն առջեւը. եւ մէկը
չէր կրնար այն երգը սորվիլ, բայց
'ի այն հարիւր քառասունըչորս
հազարէն, որոնք երկրէն փրկուած
4 էին ։ Ասոնք անոնք են որ կինե-
րու հետ չպղծուեցան, քանզի
կոյս են. ասոնք Գառնուկին ետեւէն
կ'երթան՝ ուր որ ան երթայ. ասոնք
մարդոց մէջէն փրկուեցան Աստու-
ծոյ ու Գառնուկին երախայրիք ըլ-
5 լալու. Եւ անոնց բերանը սուտ
չգտնուեցաւ, քանզի որ անբիծ
են ։

6 Եւ ուրիշ հրեշտակ մը տեսայ՝
որ կը թռչէր երկինքին մէջ, և
ունէր յաւիտենական աւետարան՝
քարոզելու բոլոր ազգերուն ու ցե-
ղերուն և լեզուներուն ու ժողո-
վուրդներուն որ երկրի վրայ կը
7 բնակին. Եւ մեծ ձայնով կ'ըսէր,
Աստուծմէ վախցէ՛ք ու փառք տուէք
անոր, քանզի որ անոր դատաստա-
նին ժամը եկաւ. ու երկրպագու-
թիւն ըրէք անոր՝ որ ստեղծեց եր-
կինքը ու երկիրը և ծովը ու ջուրե-
րուն աղբիւրները ։

8 Եւ անոր ետեւէն ուրիշ հրեշտակ
մը եկաւ ու ըսաւ, Ինկաւ՝ ինկաւ
մեծ Բաբելոնը, քանզի որ բոլոր
ազգերը արբեցուց իր կատաղի
9 պոռնկութեանը գինիէն ։ Եւ ա-
նոնց ետեւէն երրորդ հրեշտակ մըն
ալ եկաւ, ու մեծ ձայնով մը ը-
սաւ, Մէկ որ գազանին ու անոր
պատկերին երկրպագութիւն կ'ընէ,
և դրոշմը իր ճակատին վրայ կամ
10 իր ձեռքին վրայ կ'ընդունի, Անի-
կայ Աստուծոյ սրտմտութեանը գի-
նիէն պիտի խմէ՝ որ անխառն լե-
ցուած է անոր բարկութեանը բա-
ժակին մէջ, և կրակով ու ծծում-
բով պիտի տանջուի սուրբ հրեշ-
տակներուն առջեւը ու Գառնուկին
առջեւը ։ Եւ անոնց տանջանքին 11
ծուխը կ'ելլէ յաւիտեանս յաւիտե-
նից. և ցորեկ ու գիշեր հանգստու-
թիւն չունին անոնք՝ որ գազանին
ու անոր պատկերին երկրպագու-
թիւն կ'ընեն, և անոր անուանը
դրոշմը կ'ընդունին ։ Հոս է 12
սուրբերուն համբերութիւնը, ո-
րոնք Աստուծոյ պատուիրանքները
ու Յիսուսի հաւատքը կը պահեն ։
Ու երկինքէն ձայն մը լսեցի՝ որ կ'ը- 13
սէր ։ Գրէ՛, Այսուհետեւ երանելի
են այն մեռելները՝ որոնք Տէրոջմով
կը մեռնին. այո՛ կ'ըսէ Հոգին, որ
իրենց աշխատութիւններէն հանգչին.
ու իրենց գործերը իրենց ետեւէն
կ'երթան ։

Եւ տեսայ՝ և ահա ճերմակ ամպ 14
մը, ու այն ամպին վրայ մէկը նըս-
տեր էր Որդւոյ մարդոյ նման. և իր
գլուխը ոսկիէ պսակ մը՝ ու իր ձեռ-
քը սուր մանգաղ մը ունէր ։

Եւ տաճարէն ուրիշ հրեշտակ մը 15
կ'ելլէր, որ ամպին վրայ նստողին
մեծ ձայնով կ'աղաղակէր ու կ'ըսէր,
Երկնցո՛ւր քու մանգաղդ ու հնձէ՛.
քանզի որ հնձելու ժամանակը եկաւ,
քանզի որ երկրի հունձքը հասուն-
ցած է ։ Եւ ան որ ամպին վրայ 16
կը նստէր, իր մանգաղը երկրին
վրայ երկնցուց՝ ու երկիրը հնձուե-
ցաւ ։

Ու երկինքին մէջի տաճարէն ու- 17
րիշ հրեշտակ մը ելաւ, և անիկայ
ալ սուր մանգաղ մը ունէր ։ Ու 18
սեղանէն ուրիշ հրեշտակ մը ելաւ,
որ կրակի վրայ իշխանութիւն ու-
նէր, ու մեծ ձայնով կանչեց անոր՝
որ սուր մանգաղը ունէր, ու ըսաւ,
Երկնցո՛ւր քու սուր մանգաղդ, ու
երկրի այգիին ողկոյզները կթէ՛.
քանզի որ անոր խաղողները հասուն-
ցած են ։ Եւ այն հրեշտակը իր 19
մանգաղը երկրին վրայ երկնցուց,
ու երկրին այգիին խաղողները կթեց,
ու Աստուծոյ բարկութեանը մեծ
հնձանին մէջ ձգեց ։ Եւ հնձանը 20
քաղաքէն դուրս կոխուեցաւ. ու
հնձանէն արիւն կ'ելլէր, որ մինչեւ
ձիերուն սանձերը — հազար վեց
հարիւր ասպարէզ կը հասնէր ։

## ԳԼ. ԺԵ

1 Ու ուրիշ մեծ ու զարմանալի նը-
շան մը տեսայ երկինքի մէջ ,
եօթը հրեշտակներ՝ որոնք եօթը
վերջին հարուածները ունէին ; ո-
րովհետեւ անոնցմով կը կատարուէր
2 Աստուծոյ բարկութիւնը ։ Ու
տեսայ որպէս թէ ապակեղէն ծով
մը կրակով խառնուած . և անոնք
որ յաղթեցին գազանին ու անոր
պատկերին և անոր անուանը թը-
ւոյն , ապակեղէն ծովուն վրայ կայ-
ներ էին , ու Աստուծոյ քնարները
3 ունէին . Ու Աստուծոյ ծառային
Մովսէսին երգը կ'երգէին , ու
Գառնուկին երգը՝ ըսելով , Մեծ
ու զարմանալի են քու գործքերդ՝
ով Տէր Աստուած Ամենակալ .
արդար ու ճշմարիտ են քու ճամ-
բաներդ՝ ով Թագաւոր սրբոց .
4 Տէ՛ր՝ ո՞վ պիտի չվախնայ քեզմէ ,
ու քու անունդ չփառաւորէ , ին-
չու որ դուն միայն սուրբ ես . քան-
զի բոլոր ազգերը պիտի գան ու
քու առջիդ երկրպագութիւն պիտի
ընեն , ինչու որ քու արդար դա-
տաստաններդ յայտնուեցան ։
5 Ու անկէ ետեւ տեսայ՝ ու բա-
ցուեցաւ վկայութեան խորանին տա-
6 ճարը , որ երկինքն է . Ու եօթը
հարուածները ունեցող եօթը հրեշ-
տակները մաքուր ու պայծառ կտաւ
հագած՝ և իրենց կուրծքերուն վը-
րայովը ոսկեղէն գօտի կապած՝ տա-
7 ճարէն ելան ։ Ու չորս կենդանի-
ներէն մէկը եօթը հրեշտակներուն
եօթը ոսկեղէն սկուտեղներ տուաւ
յաւիտեանս յաւիտենից կենդանի
եղող Աստուծոյ բարկութիւնովը
8 լեցուն ։ Ու տաճարը Աստուծոյ
փառքէն ու անոր զօրութենէն ծը-
խով լեցուեցաւ . ու մէկը չէր կըր-
նար տաճարը մտնել , մինչև որ
կատարուէին եօթը հրեշտակներուն
եօթը հարուածները ։

## ԳԼ. ԺԶ

1 Ու տաճարէն մեծ ձայն մը լսեցի՝
որ եօթը հրեշտակներուն կ'ը-
սէր ; Գացէ՛ք Աստուծոյ բարկու-
թեանը [եօթը] սկուտեղները երկ-
րի վրայ թափեցէ՛ք ։
Ու առջի հրեշտակը գնաց ու իր 2
սկուտեղը երկրի վրայ թափեց .
ու չարաչար պալարներ եղաւ այն
մարդոցը վրայ որոնք գազանին դը-
րոշմը ունէին՝ ու անոր պատկերին
երկրպագութիւն կ'ընէին ։
Ու երկրորդ հրեշտակը իր սկու- 3
տեղը ծովուն վրայ թափեց , ու
ջուրերը մեռած մարդու արիւն
դարձան և ծովուն մէջի բոլոր կեն-
դանիները մեռան ։
Ու երրորդ հրեշտակը իր սկուտե- 4
ղը գետերուն և ջուրերու աղ-
բիւրներուն վրայ թափեց , ու ա-
նոնք արիւն դարձան ։ Ու ջուրե- 5
րուն հրեշտակէն լսեցի՝ որ կ'ըսէր ,
Արդար ես դուն , որ ես և որ էիր ,
և սուրբ ես , որ ասանկ դատաս-
տաններ ըրիր . Ինչու որ անոնք 6
սուրբերուն ու մարգարէներուն ա-
րիւնը թափեցին . և դուն անոնց
արիւն խմել տուիր , քանզի ար-
ժանի են ։ Ու սեղանէն լսեցի՝ որ 7
կ'ըսէր , Այո՛ Ամենակալ Տէր Աս-
տուած , քու դատաստաններդ ար-
դար ու ճշմարիտ են ։
Ու չորրորդ հրեշտակը իր սկու- 8
տեղը արևին վրայ թափեց ։
Ու անոր զօրութիւն տրուեցաւ որ 9
խորշակահար ընէ մարդիկները կը-
րակով . և սաստիկ տաքէն խոր-
շակահար եղան մարդիկ , և հայ-
հոյեցին Աստուծոյ անունը , որ այս
հարուածներուն վրայ իշխանութիւն
ունի . ու՛ չապաշխարեցին որ անոր
փառք տան ։
Ու հինգերորդ հրեշտակը իր սը- 10
կուտեղը գազանին աթոռին վը-
րայ թափեց , ու անոր թագաւո-
րութիւնը խաւարեցաւ . և ցաւէն
լեզուներնին կը ծամէին . Ու երկ- 11
նից Աստուածը հայհոյեցին իրենց
ցաւերուն և իրենց պալարներուն
պատճառովը . ու իրենց գործքերէն
չապաշխարեցին ։
Ու վեցերորդ հրեշտակը իր սկու- 12
տեղը մեծ գետին Եփրատին վրայ
թափեց , ու անոր ջուրերը ցամքե-
ցաւ , որ արևելքի թագաւորնե-

13 րուն ճամբան պատրաստուի ։ Եւ
տեսայ որ վիշապին բերնէն ու գա-
զանին բերնէն եւ սուտ մարգարէին
բերնէն երեք պիղծ ոգիներ ելելին
14 գորտերու նման ։ Ինչու որ անոնք
դեւերու ոգիներ են՝ որ նշաններ կ՚ը-
նեն, ու բոլոր աշխարհքին թագա-
ւորներուն կ՚երթան, որ զանոնք
Ամենակալ Աստուծոյ այն մեծ օրուա-
նը պատերազմին համար ժողվեն ։
15 ( Ահա գողի պէս կու գամ ։ Երանի՜
անոր՝ որ արթուն կը կենայ ու իր
հանդերձները կը պահէ, որ մերկ
չպտըտի, ու իր ամօթը երեւնայ ։)
16 Եւ զանոնք մէկ տեղ մը ժողվեցին,
որ Եբրայեցերէն Արմագեդոն կ՚ը-
սուի ։
17 Ու եօթներորդ հրեշտակը իր սկա-
ւառակը օդին վրայ թափեց ։ ու
երկինքին տաճարէն՝ աթոռէն մեծ
ձայն մը ելաւ՝ ըսելով ։ Եղաւ ։
18 Եւ փայլակներ ու ձայներ եւ որո-
տումներ եղան ։ ու մեծ երկրաշարժ
մը եղաւ, անանկ որ մարդոց երկրի
վրայ ըլլալէն ՚ի վեր անանկ մեծ
19 երկրաշարժ մը եղած չէր ։ Եւ մեծ
քաղաքը երեք մաս եղաւ, ու ազ-
գերուն քաղաքները կործանեցան,
եւ մեծ Բաբելոնը Աստուծոյ առջեւը
յիշուեցաւ, որ իր սաստիկ բար-
կութեանը գինիին գաւաթը անոր
20 տայ ։ Եւ ամէն կղզի փախաւ, ու
21 լեռները չգտնուեցան ։ Եւ խոշոր
կարկուտ գրեթէ մէկ տաղանդի մը
կշռով երկինքէն կ՚իջնէր մարդոց
վրայ ։ ու մարդիկ հայհոյեցին զԱս-
տուած կարկուտին հարուածին հա-
մար ; ինչու որ խիստ մեծ էր անոր
հարուածը ։

## ԳԼ. ԺԷ

1 Եւ եօթը սկաւառակները ունեցող
եօթը հրեշտակներէն մէկը ե-
կաւ, ու ինծի հետ խօսեցաւ՝ ըսե-
լով ։ Եկուր ու քեզի ցուցնեմ
այն մեծ պոռնիկին դատաստանը,
որ շատ ջուրերուն վրայ կը նստի ։
2 Որուն հետ երկրի թագաւորները
պոռնկեցան, ու երկրի բնակիչները
անոր պոռնկութեանը գինիովը գի-
նովցան ։ Եւ զիս առաւ անապա- 3
տը տարաւ հոգիով ։ ու տեսայ մէկ
կնիկ մը՝ որ կարմիր գազանի մը
վրայ նստեր էր ։ եւ այն գազանը լե-
ցուն էր հայհոյութեան անուննե-
րով, ու եօթը գլուխ եւ տասը եղ-
ջիւր ունէր ։ Եւ կնիկը ծիրանի ու 4
կարմիր հագած էր, եւ զարդարուած
էր ոսկիով ու պատուական քարե-
րով եւ մարգարիտներով, եւ իր
ձեռքը ոսկիէ գաւաթ մը ունէր
պղծութիւններով ու իր պոռնկու-
թեանը անմաքրութիւններով լե-
ցուն ։ Եւ անոր ճակատին վրայ 5
անուն մը գրուած էր խորհուրդ ։
Մեծ Բաբելոն՝ պոռնիկներուն ու
երկրի պղծութիւններուն մայրը ։
Եւ տեսայ այն կնիկը որ սուրբերուն 6
արիւնովը ու Յիսուսի վկաներուն
արիւնովը գինովցած էր ։ ու երբոր
տեսայ անիկայ, մեծ զարմանքով
զարմացայ ։ Եւ հրեշտակը ինծի 7
ըսաւ, Ինչո՞ւ զարմացար ։ Ես քե-
զի ըսեմ այն կնկանը խորհուրդը,
ու այն գազանին՝ որ զանիկայ վրան
կը կրէ, ու եօթը գլուխ եւ տասը
եղջիւր ունի ։ Այն գազանը որ տե- 8
սար, կար ու չկայ, եւ անդունդէն ելլելու ու կորուստը երթալու
վրայ է ։ ու երկրի վրայ բնակողները՝
որոնց անունները աշխարհքի սկիզ-
բէն ՚ի վեր կենաց գրքին մէջը գը-
րուած չեն, պիտի զարմանան երբ-
որ տեսնեն այն գազանը թէ կար
ու չկայ, թէեւ կայ ։ Հոս պէտք է 9
իմաստութիւն ունեցող միտք մը ։
այն եօթը գլուխը եօթը լեռներ են,
ուր որ կնիկը անոնց վրայ կը նստի ։
եւ եօթը թագաւորներ են ։ Հին- 10
գը ինկած են՝ մէկը կը կենայ, եւ
միւսը դեռ եկած չէ, ու երբոր
գայ՝ քիչ ատեն պիտի մնայ ։ Եւ 11
այն գազանը որ կար ու չկայ, ա-
նիկայ ալ ութերորդ է, ու եօթ-
ներէն է, ու պէտք ՚ի կորուստը կ՚եր-
թայ ։ Եւ տասը եղջիւրը որ տե- 12
սար, տասը թագաւորներ են, ո-
րոնք դեռ թագաւորութիւն առած
չեն ; հապա գազանին հետ մէկ
ժամու չափ թագաւորներու պէս
իշխանութիւն կ՚առնեն ։ Ասոնք 13

մէկ կամք ունին, ու իրենց զօրու-
թիւնը և իշխանութիւնը գազանին
14 կու տան։ Ասոնք Գառնուկին հետ
պիտի պատերազմին. և Գառնուկը
անոնց պիտի յաղթէ, քանզի անի-
կայ տէրերուն Տէրն է ու թագա-
ւորներուն թագաւորը. և անոր
հետը եղողները կանչուած ու ընտ-
15 րուած և հաւատարիմ են։ Ու
ըսաւ ինծի, Այն ջուրերը որ տե-
սար՝ որոնց վրայ պոռնիկը նստեր է,
ժողովուրդներ են ու բազմութիւն-
16 ներ և ազգեր ու լեզուներ։ Եւ
տասը եղջիւրները որ գազանին վրայ
տեսար, անոնք պիտի ատեն պոռ-
նիկը, ու զանիկայ աւերի ու մերկ
պիտի ընեն, և անոր մարմինը պի-
տի ուտեն, ու զանիկայ կրակով
17 այրեն։ Քանզի որ Աստուած անոնց
սրտին մէջը դրաւ որ իր կամքը կա-
տարեն ու մէկ կամք ըլլան, և ի-
րենց թագաւորութիւնը գազանին
տան, մինչև որ Աստուծոյ խօսքերը
18 կատարուին։ Եւ կինը որ տե-
սար, այն մեծ քաղաքն է, որ կը
թագաւորէ երկրի թագաւորներուն
վրայ։

## ԳԼ. ԺԸ.

1 Ասկէ ետքը [ուրիշ] հրեշտակ մը
տեսայ որ երկինքէն կ'իջնէր, և
մեծ իշխանութիւն ունէր, ու եր-
կիրը անոր փառքէն լուսաւորուե-
2 ցաւ։ Եւ զօրաւոր ձայնով աղա-
ղակեց՝ ըսելով. Ինկաւ՝ ինկաւ մեծ
Բաբելոնը, և դևերու բնակարան
եղաւ, ու բոլոր պիղծ ոգիներու
արգելարան, և բոլոր պիղծ ու ա-
3 տելի թռչուններու վանդակ. Քան-
զի որ անոր կատաղի պոռնկութեա-
նը գինիէն խմեցին բոլոր ազգերը,
ու երկրի թագաւորները անոր հետ
պոռնկեցան, և երկրի վաճառա-
կանները անոր չափազանց փափկու-
4 թենէն հարստացան։ Ու երկին-
քէն ուրիշ ձայն մը լսեցի որ կ'ը-
սէր, Ելէ՛ք անոր մէջէն՝ իմ ժո-
ղովուրդ, որ անոր մեղքերուն
հաղորդ չըլլաք, ու անոր հարուած-
5 ներէն բաժին չառնէք. Քանզի որ
անոր մեղքերը մինչև երկինք հա-
սան կցուեցան. ու Աստուած անոր
անիրաւութիւնները յիշեց։ Հա- 6
տուցէ՛ք անոր՝ ինչպէս որ ինք հա-
տուց. ու իր գործքերուն համեմատ
կրկնապատիկ փոխարինեցէ՛ք անոր.
այն գաւաթը որ ինք լեցուց՝ կրկ-
նապատիկ լեցուցէ՛ք իրեն։ Որ- 7
չափ որ փառաւորեց զինքը և զեղ-
խութեամբ ապրեցաւ, այնչափ ալ
տանջանք և սուգ հատուցէ՛ք անոր.
քանզի որ իր սրտին մէջը կ'ըսէ թէ
Ես թագուհի կը նստիմ, ու որբ-
ևայրի չեմ, ու բնաւ սուգ պիտի
չտեսնեմ։ Անոր համար մէկ օ- 8
րուան մէջ պիտի գան անոր հա-
րուածները՝ մահ ու սուգ և
սով, ու կրակով պիտի այրի. քան-
զի որ հզօր է Տէր Աստուած որ
զանիկայ դատեց։ Ու երկրի թա- 9
գաւորները՝ որ անոր հետ պոռնկե-
ցան ու հեշտացան, պիտի լան ու
կոծեն անոր վրայ երբոր անոր հրդե-
հին թեժանը ծուխը տեսնեն. Եւ 10
անոր տանջանքին վախէն հեռուն
պիտի կայնին ու ըսեն, Վա՜յ վա՜յ
քեզ, մեծ Բաբելոն քաղաք՝ հզօր
քաղաք, որ մէկ ժամու մէջ եկաւ
քու դատաստանդ։ Ու երկրի վա- 11
ճառականները պիտի լան ու սուգ
ընեն անոր վրայ. քանզի որ ալ մէ-
կը ծախու չառներ անոնց վաճառքը,
Ոսկիի՝ ու արծաթի՝ և պատուական 12
քարերու՝ ու մարգարիտներու՝ և
բեհեզի՝ ու ծիրանիի՝ և մետաքսի՝
ու որդան կարմիրի վաճառքը՝ և ա-
մէն խունկի փայտերը՝ ու ամէն փղ-
ոսկրեայ ամանները՝ և ամէն պա-
տուական փայտէ ու պղինձէ և եր-
կաթէ ու մարմարիոնէ ամանները,
Եւ կինամոմը՝ ու ամոմոնը՝ և խուն- 13
կերը՝ ու անուշահոտ եղը՝ ու կնդրու-
կը՝ և գինին՝ ու ձէթը՝ և նաշի-
հը՝ ու ցորենը՝ և անասունները՝ ու
ոչխարները՝ և ձիերը՝ ու կառքերը՝
և մարմինները ու մարդոց հոգինե-
րը։ Եւ քու հոգիիդ ցանկացած 14
պտուղները քեզմէ գացին, ու բոլոր
չաղ ու փայլուն բաները քեզմէ
կորսուեցան, և ալ բնաւ պիտի
չգտնես զանոնք։ Այս բաներուն 15

վաճառականները՝ որ անկէ հարըս-
տացած էին, հեռուն պիտի կայնին
անոր տանջանքին վախէն՝ լալով ու
16 սուգ ընելով, Ու պիտի ըսեն,
Ա՜յ՝ վա՜յ մեծ քաղաք՝ որ բեհեզ ու
ծիրանի և որդան կարմիր հագած
էիր, ու ոսկիով և պատուական
քարերով ու մարգարիտներով զար-
17 դարուած էիր. Ինչու որ այնքան
հարստութիւնը մէկ ժամու մէջ
փճացաւ։ Ու ամէն նաւավարնե-
րը՝ և ան ամէնը որ նաւով տեղ
տեղ կ'երթան, ու նաւաստիները
և որոնք որ ծովու մէջ կը բանին,
18 հեռուն կայնեցան. Ու տեսնելով
անոր հրկիզութեանը ծուխը, կ'ա-
ղաղակէին ըսելով՝, Ո՞վ նման է
19 սա մեծ քաղաքիս. Ու իրենց գը-
լուխներուն վրայ հող ցանեցին, և
լալով ու սուգ ընելով կ'աղաղա-
կէին ըսելով. Ա՜յ՝ վա՜յ ան մեծ
քաղաքին, որուն մէջ իր պատուա-
կանութենէն հարստացան ամէնքը
որ նաւեր ունէին ծովուն վրայ. Ին-
չու որ մէկ ժամու մէջ ամայացաւ։
20 Ուրախացէ՛ք անոր վրայ, երկինք
ու սուրբ առաքեալներ և մար-
գարէներ, որ Աստուած ձեր վրէժը
անկէ առաւ։
21 Ու մէկ զօրաւոր հրեշտակ մը
քար մը առաւ աղօրիքի մեծ քարի
նման, ու ծովը ձգեց՝ ըսելով. Ա-
սանկ ուժով վար պիտի ձգուի Բա-
բելոն մեծ քաղաքը, ու ալ պիտի
22 չգտնուի։ Ու քնարահարներուն ու
երաժիշտներուն և սրնգահարներուն
ու փողահարներուն ձայնը ալ պի-
տի չլսուի քու մէջդ. և արհեստի
վարպետ մը ալ բնաւ պիտի չգըտ-
նուի քու մէջդ, ու աղօրիքին ձայնը
23 ալ պիտի չլսուի քու մէջդ. Ու
ճրագին լոյսը ալ պիտի չերևնայ քու
մէջդ. ու փեսային ձայնը և հարսին
ձայնը ալ պիտի չլսուի քու մէջդ.
քանզի քու վաճառականներդ երկ-
րի մեծամեծները էին. Ինչու որ
քու կախարդութիւնովդ բոլոր ազ-
24 գերը մոլորեցան։ Ու մարգարէ-
ներուն ու սուրբերուն ու երկրի
վրայ բոլոր սպաննուածներուն ա-
րիւնը անոր մէջը գտնուեցաւ։

## ԳԼ. ԺԹ

Անկէ ետքը շատ բազմութեան մեծ 1
ձայն մը լսեցի երկինքը՝ ըսելով.
Ալէլուիա. փրկութիւն ու փառք և
պատիւ ու զօրութիւն մեր Աստու-
ծոյն. Ինչու որ ճշմարիտ ու ար- 2
դար են անոր դատաստանները,
քանզի դատեց ան մեծ պոռնիկը,
որ իր պոռնկութիւնովը երկիրը
ապականեց, ու իր ծառաներուն
արեան վրէժը անոր ձեռքէն պա-
հանջեց։ Ու կրկին անգամ ըսին. 3
Ալէլուիա. ու անոր ծուխը յաւի-
տեանս յաւիտենից կ'ելլէ։ Ու 4
քսանուչորս երէցները ու չորս կեն-
դանիները ինկան ու երկրպագու-
թիւն ըրին Աստուծոյ՝ որ աթոռը
կը նստի, ըսելով. Ամէն, Ալէ-
լուիա։ Ու աթոռէն ձայն մը ե- 5
լաւ՝ ըսելով. Մեր Աստուծոյն
օրհնութիւն տուէք՝ իր բոլոր ծա-
ռաները, ու դուք որ իրմէն կը
վախնաք՝ պզտիկներ ու մեծեր։
Ու լսեցի շատ բազմութեան ձայնի 6
պէս՝ ու շատ ջուրերու ձայնի պէս,
ու սաստիկ որոտումներու ձայնի պէս՝
որ կ'ըսէին. Ալէլուիա, Ինչու որ
[մեր] Ամենակալ Տէր Աստուածը
թագաւորեց։ Խնդանք և ուրա- 7
խանանք ու փառք տանք անոր,
քանզի Գառնուկին հարսնիքը հա-
սաւ, ու անոր կինը ինքզինքը
պատրաստեց։ Ու իրեն տրուե- 8
ցաւ որ մաքուր ու լուսափայլ բե-
հեզ հագնի, (որ ան բեհեզը սուր-
բերուն արդարութիւնն է։) Ու 9
ինծի ըսաւ, Գրէ՛. Երանելի են
անոնք որ Գառնուկին հարսնեացը
ընթրիքին կանչուած են. ու ինծի
ըսաւ. Ասոնք են Աստուծոյ ճըշ-
մարիտ խօսքերը։ Ու ես ալ անոր 10
ոտքերուն առջևը ինկայ, որ անոր
երկրպագութիւն ընեմ. ու ըսաւ
ինծի. Զգուշացի՛ր՝ մի՛ ըներ. Ին-
չու որ ես ալ քու ծառայակիցդ
եմ ու քու եղբայրներուդ, որոնք
Յիսուսի վկայութիւնը ունին.
Աստուծոյ երկրպագութիւն ըրէ.
(Ինչու որ Յիսուսի վկայութիւնը
մարգարէութեան հոգին է։)

11 Ու տեսայ երկինքը բացուած .
և ահա մէկ ճերմակ ձի մը , ու ա-
նոր վրայ հեծնողը Հաւատարիմ
ու Ճշմարիտ կ'ըսուի . և արդա-
րութեամբ դատաստան կը տեսնէ
12 ու կը պատերազմի . Ու անոր աչ-
քերը կրակի բոցի պէս էր , ու անոր
գլխուն վրայ շատ թագեր կար , ու
գրուած անուն մը ունէր՝ որ մէկը
13 չգիտեր , բայց միայն ինքը . Ու
արիւնով ներկուած հանդերձ մը
հագեր էր . ու անոր անունը Բանն
14 Աստուծոյ կ'ըսուի ։ Ու երկնից
մէջ եղող զօրքերը անոր ետեւէն
կ'երթային ճերմակ ձիերով , ճեր-
մակ ու մաքուր բեհեզներ հագած ։
15 Ու անոր բերնէն սրած սուր մը
կ'ելլէր , որ անով ազգերը զարնէ .
ու ինքը երկաթէ գաւազանով պի-
տի հովուէ զանոնք ; ու Ամենակալ
Աստուծոյ սաստիկ բարկութեանը
գինիին հնձանը ինքը պիտի կոխէ ։
16 Ու իր պատմուճանին վրայ ու իր
ազդրին վրայ գրուած գիր մը ու-
նէր , ԹԱԳԱՒՈՐ ԹԱԳԱՒՈ-
ՐԱՑ ԵՒ ՏԷՐ ՏԵՐԱՆՑ ։
17 Ու մէկ հրեշտակ մը տեսայ՝ որ
արեւին մէջը կայներ էր , ու մեծ
ձայնով աղաղակեց երկինքի մէջ
թռչող բոլոր թռչուններուն՝ ըսե-
լով , Եկէք՝ Աստուծոյ մեծ ընթ-
18 րիքին ժողվուեցէք . Որ ուտէք
թագաւորներուն մարմինները՝ ու
հազարապետներուն մարմինները՝ զօ-
րաւորներուն մարմինները՝ ու ձիե-
րուն և անոնց վրայ հեծնողներուն
մարմինները՝ ու ամենուն մարմին-
ները՝ թէ՛ ազատներուն և թէ ծա-
ռաներուն , թէ պզտիկներուն և
թէ մեծերուն ։
19 Ու տեսայ գազանը ու երկրի
թագաւորները ու անոնց զօրքերը
մէկտեղ ժողվուած պատերազմ ը-
նելու անոր հետ , որ ձիուն վրայ
հեծեր էր , ու անոր զօրքերուն
20 հետ ։ Ու գազանը բռնուեցաւ ,
ու անոր հետ սուտ մարգարէն՝ որ
անոր առջեւը նշաններ ըրաւ , որոնց-
մով մոլորեցուց գազանին դրոշմը
ընդունողները , և անոր պատկերին
երկրպագութիւն ընողները . եր-
կուքն ալ ողջ ողջ ծծումբով վա-
ռած կրակին լիճը ձգուեցան ։ Ու 21
ուրիշներն ալ սպաննուեցան ձիուն
վրայ հեծնողին սուրէն , որ իր բեր-
նէն կ'ելլէր , ու բոլոր թռչունները
անոնց մարմիններէն կշտացան ։

ԳԼ. Ի

Ու հրեշտակ մը տեսայ՝ որ երկին- 1
քէն կ'իջնէր , ու անդունդին
բանալին և մեծ շղթայ մը ունէր իր
ձեռքը . Ու բռնեց վիշապը՝ այսինքն 2
առջի օձը՝ որ Բանսարկուն ու Սա-
տանան է , և կապեց զանիկայ հա-
զար տարի . Ու անդունդը ձգեց 3
զանիկայ՝ և գոցեց ու վրայէն կնքեց ,
որ ալ չմոլորեցնէ ազգերը՝ մինչև
որ հազար տարին լմննայ , և անկէ
ետքը պէտք է որ արձակուի անիկայ
քիչ մը ժամանակ ։
Ու աթոռներ տեսայ , ու նստան 4
անոնց վրայ . և անոնց դատաստա-
նութիւն տրուեցաւ . նաև Յիսու-
սի վկայութեանը համար ու Աս-
տուծոյ խօսքին համար գլխատուած-
ներուն հոգիները տեսայ , և անոնք
որ երկրպագութիւն չըրին գազա-
նին՝ ոչ ալ անոր պատկերին , ու
անոր դրոշմը իրենց ճակատներուն
վրայ ու իրենց ձեռքին վրայ չըն-
դունեցին . և ապրեցան՝ ու Քրիս-
տոսի հետ հազար տարի թագա-
ւորեցին ։ Ու ուրիշ մեռելները 5
չապրեցան մինչև որ հազար տա-
րին կատարուեցաւ . ասիկայ է առ-
ջի յարութիւնը ։ Երանելի և 6
սուրբ է ան որ առջի յարութեանը
մէջ բաժին ունի . ասոնց վրայ երկ-
րորդ մահը իշխանութիւն չունի .
հապա անոնք Աստուծոյ և Քրիս-
տոսի քահանաները պիտի ըլլան ,
ու անոր հետ հազար տարի պիտի
թագաւորեն ։
Ու հազար տարին լմննալուն՝ 7
պիտի արձակուի Սատանան իր
բանտէն . և պիտի ելլէ ու մոլոր-
ցնէ երկրի չորս անկիւնները ե-
ղող ազգերը՝ Գոգը ու Մագոգը ,
որ զանոնք պատերազմի ժողվէ ,
որոնց համրանքը ծովու աւազին
չափ է ։ Ու երկրի ընդարձակու- 8

թեւանք մէջ ելան , և սուրբերուն
բանակը ու սիրելի քաղաքը չորս
9 կողմէն պատեցին . Եւ երկինքէն
Աստուծմէ կրակ իջաւ , ու զանոնք
կերաւ . և բանսարկուն որ զանոնք
մոլորեցուց , ձգուեցաւ կրակի ու
ծծումբի լիճին մէջ , ուր որ էր
10 գազանը , Եւ սուտ մարգարէն . ու
պիտի չարչարուին ցորեկ ու գիշեր
յաւիտեանս յաւիտենից :
11 Եւ մեծ ճերմակ աթոռ մը տե-
սայ , ու անոր վրայ մէկը նստած ,
որուն երեսէն երկիրը ու երկինքը
փախան , և տեղ չգտնուեցաւ ա-
12 նոնց : Եւ տեսայ պզտիկ ու մեծ
մեռելները՝ որ Աստուծոյ առջեւը
կայնած էին , ու գիրքերը բացուե-
ցան , և ուրիշ գիրք մը բացուե-
ցաւ՝ այսինքն կենաց գիրքը . և
գիրքերուն մէջը գրուածներէն մե-
ռելները դատուեցան իրենց գործ-
13 քերուն համեմատ : Եւ ծովը իր
մէջի մեռելները տուաւ , ու մահը
և դժոխքը իրենց մէջի մեռելները
տուին . ու ամէն մէկը իրենց գործ-
քերուն համեմատ դատուեցան :
14 Եւ մահը ու դժոխքը կրակի լիճին
մէջը ձգուեցան . ասիկայ է երկրորդ
15 մահը : Եւ ով որ կենաց գիրքին
մէջը գրուած չգտնուեցաւ , կրակի
լիճին մէջը ձգուեցաւ :

## ԳԼ. ԻԱ.

1 Եւ նոր երկինք մը ու նոր երկիր մը
տեսայ . քանզի որ առջի երկին-
քը ու առջի երկիրը անցաւ . ու
2 ալ ծով չկար : Եւ սուրբ քաղա-
քը նոր Երուսաղէմը տեսայ՝ որ եր-
կինքէն Աստուծմէ կ'իջնէր , իր էր-
կանը համար զարդարուած հարսի
3 մը պէս պատրաստուած : Ու եր-
կինքէն մեծ ձայն մը լսեցի՝ որ կ'ը-
սէր . Ահա Աստուծոյ խորանը մար-
դոց մէջը , ու անիկայ անոնց հետ
պիտի բնակի . և անոնք անոր ժո-
ղովուրդը պիտի ըլլան , և Աս-
տուած ինքը անոնց հետը պիտի
4 ըլլայ իրենց Աստուածը . Եւ
ինքը անոնց աչքերէն բոլոր ար-
ցունքները պիտի սրբէ , ու ալ
մահ պիտի չըլլայ , ոչ սուգ և ոչ
աղաղակ և ոչ ցաւ պիտի ըլլայ
ասկէ ետեւ . քանզի առջի բաները
անցան : Եւ ան որ աթոռին վրայ 5
կը նստէր , ըսաւ , Ահա ամէն բա-
ները նոր կ'ընեմ . ու ըսաւ ինծի ,
Գրէ . քանզի այս խօսքերը ճշմա-
րիտ ու հաւատարիմ են : Նաեւ 6
ըսաւ ինծի , Եղաւ . ես եմ Ալֆան
ու Օմեղան՝ սկիզբը ու վերջը . ես
ծարաւին ձրի պիտի տամ կենաց
ջուրին աղբիւրէն . Ան որ կը յաղթէ 7
ամէն բաները պիտի ժառանգէ .
ու ես անոր Աստուած պիտի ըլլամ ,
ան ալ ինծի որդի պիտի ըլլայ :
Բայց վախկոտներուն՝ ու անհաւատ- 8
ներուն՝ և պղծերուն՝ ու մարդաս-
պաններուն՝ ու պոռնիկներուն՝ և
կախարդներուն՝ ու կռապաշտներու-
նուն՝ և բոլոր ստախօսներուն բաժի-
նը կրակով ու ծծումբով վառած
լիճին մէջը պիտի ըլլայ , որ է երկ-
րորդ մահը :
Եւ եօթը վերջին հարուածներով 9
լեցուն եօթը սկաւառակները ունե-
ցող եօթը հրեշտակներէն մէկը
եկաւ , ու ինծի խօսեցաւ ու ըսաւ
ինծի , Եկուր ցուցնեմ քեզի հարսը՝
Գառնուկին կինը : Եւ հոգիով 10
մեծ ու բարձր լեռան մը վրայ
տարաւ զիս , և ցուցուց ինծի սուրբ
Երուսաղէմ քաղաքը , որ երկինքէն
Աստուծմէ կ'իջնէր . Ու Աստուծոյ 11
փառքը ունէր . և անոր լուսաւո-
րութիւնը խիստ պատուական քարի
նման էր , ականակիտ բիւրեղանման
յասպիս քարի պէս : Եւ անոր 12
պարիսպը մեծ ու բարձր էր , և
տասնըերկու դռներ ունէր , ու
դռներուն վրայ տասնըերկու հրեշ-
տակներ կար , և դռներուն վրայ
անուններ գրուած էր՝ այսինքն Իս-
րայէլի որդւոցը տասնըերկու ցեղե-
րուն անունները . Արեւելեան կող- 13
մէն իրեք դուռ , ու հիւսիսային
կողմէն իրեք դուռ , և հարաւային
կողմէն իրեք դուռ , ու արեւմտեան
կողմէն իրեք դուռ : Եւ քաղաքին 14
պարիսպը տասնըերկու հիմեր ունէր ,
ու անոնց վրայ՝ Գառնուկին տաս-
նըերկու առաքեալներուն անուննե-

15 հու անունները գրուած էր ։ Ու
իմ հետ խօսողը ձեռքը ոսկի
եղէգ մը ունէր, որ անով քա-
ղաքը ու անոր դռները ու անոր
16 պարիսպները չափէ ։ Ու քաղաքը
քառակուսի էր ․ ու անոր երկայ-
նութիւնը լայնութեանը չափ էր ․
և քաղաքը նոյն եղէգով տասներ-
կու հազար ասպարէզ չափեց ․ անոր
երկայնութիւնը ու լայնութիւնը և
17 բարձրութիւնը հաւասար էր ։ Ու
անոր պարիսպը հարիւր քառասուն-
նուչորս կանգուն չափեց՝ մարդու
չափով, այսինքն հրեշտակին չա-
18 փով ։ Ու անոր պարսպին շինուած-
քը յասպիս քարէ էր ․ ու քաղաքը
զուտ ոսկի էր մաքուր ապակիի
19 նման ։ Ու քաղաքին պարսպին
հիմերը ամէն տեսակ պատուական
քարերով զարդարուած էին ․ առջի
հիմը յասպիս էր ․ երկրորդը՝ շա-
փիւղայ, երրորդը՝ քաղկեդոն,
20 չորրորդը՝ զմրուխտ, հինգերորդը՝
եղնգնաքար, վեցերորդը՝ սարդիոն,
եօթներորդը՝ ոսկեքար, ութերոր-
դը՝ բիւրեղ, իններորդը՝ տպազիոն,
տասներորդը՝ քրիսոպրասոս, մե-
տասաներորդը՝ յակինթ, երկոտա-
21 սաներորդը՝ ամեթիստ ։ Ու տաս-
ներկու դռները տասներկու մար-
գարիտ էին ․ ամէն մէկ դուռը
մէյմէկ ամբողջ մարգարիտէ էր ․ ու
քաղաքին հրապարակը մաքուր ոսկի
էր թափանցիկ ապակիի նման ։
22 Ու անոր մէջը տաճար չտեսայ ․
ինչու որ Տէր Աստուած Ամենակալն
ու Գառնուկը անոր տաճարն է ։
23 Ու քաղաքը արեւի ու լուսնի պէտք
չունի, որ զանիկայ լուսաւորեն ․
ինչու որ Աստուծոյ փառքը զանիկայ
կը լուսաւորէ, ու անոր ճրագը
24 Գառնուկն է ։ Ու [փրկուած] ազ-
գերը անոր լոյսովը պիտի քալեն,
ու երկրի թագաւորները իրենց
փառքը ու պատիւը անոր մէջը պի-
25 տի բերեն ։ Ու անոր դռները
ցորեկը պիտի չգոցուին ․ (վասն զի
26 հոն գիշեր պիտի չըլլայ ․) Ու ազ-
գաց փառքը ու պատիւը անոր մէջը
27 պիտի բերեն ։ Ու հոն բնաւ ան-
մաքրութիւն մը պիտի չմտնէ, ոչ
ալ պղծութիւն ու ստութիւն գոր-
ծող մը ․ հապա միայն անոնք՝ որ
Գառնուկին կենաց գրքին մէջը
գրուած են ։

## ԳԼ. ԻԲ

Ու ինծի կենաց ջուրի գետ մը ցու- 1
ցուց ակնեղէնի պէս պայծառ,
որ կ'ելլէր Աստուծոյ ու Գառնու-
կին աթոռէն ։ Ու ան փողոցին 2
հրապարակին մէջ, ու գետին
մէկ կողմէն ու միւս կողմէն կենաց
ծառ կար՝ որ տասներկու անգամ պը-
տուղ կը բերէր, ու ամէն ամիս իր
պտուղը կու տար ․ և այն ծառին
տերեւները հեթանոսներուն բժշկու-
թեան կ'ըլլար ։ Ու ալ բնաւ 3
նզովք պիտի չըլլայ ․ ու անոր մէջը
պիտի ըլլայ Աստուծոյ ու Գառնու-
կին աթոռը, և անոր ծառաները
պիտի պաշտեն զանիկայ ․ Ու անոր 4
երեսը պիտի տեսնեն, ու անոր
անունը իրենց ճակատներուն վրայ
պիտի ըլլայ ։ Ու հոն՝ ալ գիշեր 5
պիտի չըլլայ, և ճրագ ու արեւու
լոյս պէտք չէ ․ քանզի Տէր Աս-
տուած պիտի լուսաւորէ զանոնք,
և յաւիտեանս յաւիտենից պիտի
թագաւորեն ։

Ու ըսաւ ինծի ․ Այս խօսքերը 6
հաւատարիմ են ու ճշմարիտ ․ և
սուրբ մարգարէներուն Տէր Աս-
տուածը իր հրեշտակը ղրկեց՝ իր
ծառաներուն ցուցնելու ինչ որ
շուտով պէտք է ըլլալ ։ Ահա ես 7
շուտով կու գամ ․ երանի անոր՝
որ կը պահէ աս գրքիս մարգարէու-
թեան խօսքերը ։

Ու ես Յովհաննէս լսեցի ու տե- 8
սայ աս բաները ․ և երբ լսեցի ու
տեսայ, ինկայ որ երկրպագութիւն
ընեմ այն հրեշտակին ոտքերուն առ-
ջեւը՝ որ աս բաները ինծի կը ցու-
ցնէր ։ Ու ըսաւ ինծի ․ Զգու- 9
շացի՛ր՝ մի՛ ըներ ․ ինչու որ ես քու
կից ու քու եղբայրներուդ մարգա-
րէներուն՝ և աս գրքիս խօսքերը
պահողներուն ծառայակիցն եմ ․
Աստուծոյ երկրպագութիւն ըրէ ։
Ու ըսաւ ինծի ․ Աս գրքիս մարգա- 10
րէութեան խօսքերը մի՛ կնքեր,

# ՍՈՒՐԲ ԳՐՈՑ ՄԷՋ ՅԻՇՈՒԱԾ ՉԱՓԵՐՈՒՆ, ԿՇԻՌՆԵՐՈՒՆ ԵՒ ԴՐԱՄՆԵՐՈՒՆ ՑԱՆԿԸ

## 1. ԵՐԿԱՅՆՈՒԹԵԱՆ ՉԱՓԵՐ

| | Էնդազէ եւ 100որդ. | Մեթր եւ 100որդ. |
|---|---|---|
| Ուղունկ, չորս մատնաչափ, | 0 · 12 | 0 · 08 |
| Թիզ, 3 ուղունկ, | 0 · 36 | 0 · 23 |
| Կանգուն, 2 թիզ, | 0 · 71 | 0 · 46 |
| Գրկաչափ, 4 կանգուն, | 2 · 85 | 1 · 85 |
| Եզեկիէլի եղէգը, 6 կանգուն, | 4 27 | 2 · 77 |
| Ասպարէզ, 100 գրկաչափ, | 284 · 62 | 184 · 94 |
| Շաբաթ օրուան ճամբայ, 6 ասպարէզ, | 1,707 71 | 1,109 · 62 |
| Մղոն, 8 ասպարէզ, | 2,276 · 95 | 1,479 · 50 |

## 2. ՀԵՂԱՆԻՒԹՈՑ ՉԱՓԵՐ*

| | Օխա | Տրմ. | Լիտր եւ 100որդ. |
|---|---|---|---|
| Ճաշակ, | 0 | 100 | 0 · 32 |
| Հին, 12 ճաշակ, | 3 | | 3 · 83 |
| Մար, 6 հին, | 18 | | 22 · 97 |
| Քոռ կամ խոմէր, 10 մար, | 180 | | 229 · 68 |

## 3. ԱՐՄՏԵԱՑ ՉԱՓԵՐ*

| | Օխա | Տրմ. | Լիտր եւ 100որդ. |
|---|---|---|---|
| Կապիճ, | 1 | | 1 · 27 |
| Օմէր, կամ տասանորդ, արդուին 10երորդ մասը, | 1 | 320 | 2 · 30 |
| Գրիւ, 6 կապիճ, | 6 | | 7 · 65 |
| Արդու, 3 գրիւ, | 18 | | 22 · 97 |
| Քոռ կամ խոմէր, 10 արդու, | 180 | | 229 · 68 |

## 4. ԿՇԻՌՆԵՐ

| | Օխա | Տրմ. եւ 100որդ. | Կրամ եւ 100որդ. |
|---|---|---|---|
| Կերա, | | 0 · 23 | 0 · 71 |
| Սիկղ, 20 կերա, | | 4 · 68 | 14 · 25 |
| Մնաս, 100 սիկղ, | 1 | 46 · 88 | 1,425 · 51 |
| Տաղանդ, 3000 սիկղ, | 33 | 206 · 10 | 42,765 · 50 |

## 5. ԵԲՐԱՅԵՑՒՈՑ ԱՐԾԱԹ ՈՒ ՈՍԿԻ ԴՐԱՄՆԵՐՈՒՆ ԵՒ ԿՇԻՌՆԵՐՈՒՆ ԱՐԺԷՔԸ

| ԱՐԾԱԹԻ | Ղրշ. | Փր. | Ֆրանք եւ 100որդ. |
|---|---|---|---|
| Սիկղ, | 12 | 24 | 2 · 86 |
| Մնաս, | 1,260 | 26 | 286 · 46 |
| Տաղանդ, | 37,812 | 29 | 8,598 · 75 |
| **ՈՍԿԻՈՑ** | | | |
| Սիկղ, | 201 | 27 | 45 · 83 |
| Մնաս, | 20,166 | 27 | 4,583 · 33 |
| Տաղանդ, | 605,000 | | 187,500 |

## 6. ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ ԴՐԱՄՆԵՐՈՒՆ ԱՐԺԷՔԸ

| | Ղրշ. | Փր. եւ 100որդ. | Ֆրանք եւ 100որդ. |
|---|---|---|---|
| Լումայ, | | 1 · 57 | 0 · 01 |
| Նաքարական, 2 լումայ, | | 3 · 15 | 0 · 02 |
| Դանգ, 4 նաքարական, | | 12 · 60 | 0 · 07 |
| Դահեկան, 10 դանգ, | 3 | 06 | 0 · 72 |
| Երկդրամեան, 2 դահեկան, | 6 | 12 | 1 · 43 |
| Սատեր, 4 դահեկան, | 12 | 24 | 2 · 86 |
| Մնաս, 100 դահեկան, | 315 | 00 | 71 · 59 |

* Յիշեալ չափերը, յատկապէս հեղանիւթոց եւ արմտեաց, ոմանք աւելի եւ ոմանք պակաս կը հաշուեն։